# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

---

# ՈՍԿԵԲԵՐԱՆ

ԵՐԱՆԵԼԻՈՅՆ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ԵՍԱՅԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ



*ՎԵՆԵՏԻԿ*
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ
1880 — ՌՅԻԹ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ի բազում ժամանակաց հետէ իղձ լեալ մեզ հրատարակութեամբ մատենիս 'ի լոյս ածել և զկարևոր զայս մասն Թարգմանութեան մատենագրութեանց Սրբոյ Ոսկեբերան Հայրապետին, և վասն բազում պատճառաց յերկարեալ ձգեցաւ ցայսօր ժամանակի։ Գլուխ պատճառաց յապաղելոյ տպագրութեանս, որպէս և ակնարկեալ է 'ի յառաջաբանի Մեկնութեան Թղթոցն Պօղոսի, եղեն հանգամանք ձեռագիր օրինակի սորին, որոյ մի ևեթ գոլով, և այն լի վրիպակօք և 'ի տեղիս տեղիս պակասաւոր, տայր ակնկալել մեզ նորոգ օրինակաց, որովք մարթ լինէր լրացեալ և ուղղագիր ընծայել զայն 'ի լոյս. մանաւանդ զի լուեալ իսկ է մեր եթէ գտանին առ ոմանս յազգայնոց 'ի պակասեալ կտորակաց օրինակիս մերոյ. այլ քանզի ցարդ չեղեն մեզ դէպք 'ի ձեռս բերելոյ զնոսին, վասն որոյ լաւ վարկանիմք ընծայել յօգուտ Եկեղեցւոյ և ուսումնասէր աշխարհի զչքնաղ զայս գանձ ամբարեալ յերանաշնորհ նախնեաց մերոց 'ի գանձատան մատենագրութեանց Սրբոյ Հայրապետին, հանդերձ թերութեամբք, քան թէ սպասեալ մնալ այլ ևս՝ անստոյգ օրինակաց, ուր եթէ

հրատարակեսցին 'ի հայրենասէր խնամոց՝ բազում յոյժ գործեն օգուտ, լրացուցանելով զպակասաւոր մասունս սորին, և զանստոյգսն և զտարակուսականս բացայայտելով։

Պարտք պատշաճից տան մեզ հարկ համարել ստանօր կարճ 'ի կարճոյ զեկուցանել զեղանակ տպագրութեանս և զհանգամանաց ձեռագիր օրինակին։ Որպէս 'ի վերոյ յիշեցաք՝ մի միայն օրինակ էր առ մեզ գրոցս, և այն անթուական՝ առանց ինչ յիշատակարանաց, 'ի սկզբանէ, 'ի միջի և 'ի վերջոյ թերի, որպէս նշանակեալ է 'ի տպագրին յիւրաքանչիւր տեղւոջ։ Եղանակ գրութեանն՝ որ է միջին անուանեալ երկաթագիր, և արտաքին երևոյթ մատենին, յօրինեալ 'ի բամբակեայ թղթոյ՝ տան մեզ գուշակել յերկոտասաներորդ դարու գաղափարեալ լինել։ Ի գրութեանն ոչ երբեք միօրինակ իմն ուղղագրութիւն պահէ բառից կամ յատուկ անուանց. զոր օրինակ խառն դնէ յաճախ տնանկք և տնանգք, ընկեր և ընգեր, երկիւղ և երկիղ. այսպէս և զայլս 'ի լծորդաց. իսկ 'ի յատուկ անուանս՝ Յորոբովամ և Յորաբովամ, Գոմոր և Գումոր, Ախազ, և Աքազ, Յովախ և Յովաք, Ակիւղաս և Ակիղաս, Թէոդոտոն և Թէոդոտովն և Թէոդիտոն և Թէոդոտիովն և Թէոդոն, և այլն. յորոց զկնտին զերկոսին անուանս անփոփոխ պահեցաք, իսկ զառաջինսն և զնմանիս նոցին եդաք միօրինակ ըստ սովորական տառադարձութեան Աստուածաշունչ գրոց, բաւական ևեթ համարեալ ծանուցանել ստանօր. այսպէս և զլծորդ տառսն եդաք ըստ սովորական գրութեան, որպէս և զերկբարբառն ու և զըն փափուկ 'ի հասարակ անուանս միայն փոխեցաք յօ և 'ի ւ առ 'ի դիւրութիւն ընթերցանելեաց. թող զի և 'ի ձեռագրին բառք ինչ ուրեք ուրեք լերկ լինին են գրեալ և այլուր ՚նիւ, որպէս դուն ուրեք և շաղկապն այլ փոխանակ այլի։ Դարձեալ և

ուրեք ուրեք յայտնապէս խառնակութիւն և անկապակցութիւն իմաստից երևի, և այլ ուրեք առանց զյառաջագոյն խոստացեալն ասելոյ՝ անցանէ յայլ իմաստ, զոր օրինակ յէջսն 110, տող 4-5, և 111, տող 2-4, և այլն, որ ընդօրինակողին թերութիւն է անշուշտ և ոչ հեղինակին։

Զվերնագիր մատենիս և զգլուխսն 'ի մէնջ յօդեցաք, բաժանելով զայն ըստ գլխոց մարգարէութեանն Եսայեայ։ Աւելորդ վարկաք զառաջին գլուխն զպակասեալն՝ նորոգ թարգմանութեամբ յաւելուլ 'ի սմա, զի ակն ունիմք եթէ յաջողեսցի մեզ ընթեռնուլ գեղեցիկ թարգմանութեամբ նախնեաց ։ Տրոհութիւն մատենիս արարաւ ըստ պահանջելոյ կարգի բանիցն, քանզի յօրինակին ոչ ուրեք միօրինակ կանոնաւ էր կետադրեալ, բազում ուրեք յաւելորդս շռայլեալ, և այլ ուրեք և 'ի կարևորս վերջացեալ. վասն որոյ պատշաճ թուեցաւ մեզ ըստ կարի յամենայն տեղիս միապէս կետադրել։ Ուր ուրեք կարևոր պէտք էին՝ ուղղեցաք զյայտնի վրիպակս օրինակին, 'ի սակաւ տեղիս միայն նշանակելով զվրիպեալն 'ի ստորև, այլ յաճախ զանց արարաք՝ զի մի տաղտուկ ածիցեմք ընթերցանելեաց։ Մարթ էր և 'ի բազում տեղիս գուշակօրէն սրբագրել զվրիպակ թուեցեալս օրինակին և զտարակուսական իմաստս, այլ կամաւ զանց արարաք զայսու առաւելութեամբ, ընտրելով յաւէտ զհետ գնալ մերոյս վկայեալ հաւատարմութեան 'ի տպագրութիւնս նախնեաց, մանաւանդ մի միայն ունելով օրինակ 'ի ձեռին և այն ոչ սակաւ սխալագիր։ Իսկ 'ի սակաւ տեղիս նորօրինակ հոլովմունք ինչ բառից և խոնարհմունք ժամանակաց բայից ոմանց՝ երևելոց 'ի մեկնութեան աստ, թուին մեզ առաւել 'ի գաղափարողաց մուծեալ, քան թէ 'ի թարգմանչէ ոսկեղենիկ դարուն։

Ցայսօր ժամանակի առ բանասէրս Եւրոպիոյ ան-

ծանօթ եկաց մատենագրութիւնս այս Արքայ Հայ-
րապետին, բայց միայն յեօթանեցունց առաջին գլխոցն
և յութերորդէն մինչև ցհամար մետասաներորդ. որոց
յոյն բնագիրն երևի նոյն լինել, զորոյ գիւտն ծանու-
ցանէ և օրինակս մեր յէջ 102, եթէ «Մինչև ցայս-
վայր գտաւ իւրով ձեռօվք գրեալ երանելոյն Յօհան-
նու յունարէն». որով և յայտնապէս տայ մեզ գիտել
եթէ ամբողջութիւն գործոյս կորուսեալ էր և առ
Նախնեօք, և զի հայկական թարգմանութիւն սորին
եղեալ էր յառաջ քան զկորուստ բնագրին, ընդ այլ
թարգմանութիւնս մատենագրութեանց Ս. Հայրա-
պետին, որպէս և հաւանական յոյժ երևի 'ի սեղմ և
'ի հայկաբան ոճոյ գրութեանն, որ բազում ուրեք
յիշեցուցանէ մեզ զոճիպս կերպարանաց բանից թարգ-
մանչի մեկնութեանն Մատթէի:

Ի վերայ մեկնութեան գրոցս երեք գլխաւոր խնդ-
դիրք կային առ արևմտեան բանասէրս. առաջին, եթէ
արդեօք բեմախօսելո՞վ ճառեալ իցէ Ոսկեբերանի
զմեկնութիւնս զայս, եթէ առանձինն 'ի վարժու-
թիւն ևեթ անձին գրեալ. արդեօք յԱնտիո՞ք եթէ 'ի
Կոստանդնուպօլիս յօրինեաց զայս մեկնութիւն. հուսկ
ուրեմն, արդեօք զթերի մեկնութիւնն, զոր 'ի ձե-
ռին ունէին մինչև ցորս ցայս՝ լրացուցեա՞լ իցէ Ոսկե-
բերանի եթէ ոչ:

Նոյնին լուծումն վերջին և կարևոր հարցմանս,
որոյ առաւելապէս բացասական ընտրէին տալ պա-
տասխանի բանագէտք, պահեալ էր հայկականս մա-
տենագրութեան, որ ոչ հաւաստէ կարծեօք, այլ
անժխտելի վկայ արձանանայ բովանդակութեան գոր-
ծոյն: — Իսկ թէ արդեօք առաջի ժողովրդեա՞ն խօ-
սեցեալ իցէ կամ եթէ ոչ, ոչ սակաւ դժուարին է
առ 'ի լուծանել. քանզի արդարև 'ի բազում տեղիս
թուի առ ժողովուրդն զդէմս բանիցն դարձուցանել,
զոր օրինակ յէջսն 5, տող 29. — 12, 2-8. — 40, 23-39.

— 63, 13-20. — 107, 13-16. — 111, 1-3. — 120, 20-30. — 374, 18, նայլն, նայլն. և այլ ևս բազում բանք գտանին 'ի մեկնութեան աստ, որք այնպէս իմն ցուցանեն եթէ Ոսկեբերանի խօսեցեալ իցէ զճառս զայսոսիկ առ ժողովուրդն. այլ ինձ, ասէ հռչակաւորն Մոնֆոքոն, դժուարին է ընդգրկել զկարծիս զայս, եթէ զոր այժմն ունիմք, զնոյն ամենևին առ ժողովուրդն խօսեցեալ իցէ նորա։ Արդ և նորոգ գտեալ շարայարութիւնս այս 'ի հայումն՝ առաւել զօրացուցանէ զկողմն կարծեաց Մոնֆոքոնի, այլ և այլ թարգմանչացն բանից ընդ միմեանս մանր բաղդատութեամբք, և ըստ ասելոյ Մինյի « Առաւել իբրև մեկնիչ քան թէ ճարտարախօս » երևելով 'ի սմա, կամ ըստ բանից Տիւբենի « Ուսումնօրէն և առաւել պատմական-աստուածաբանական՝ քան թէ բարոյական մեկնութեամբ », թէպէտ և վերջին մասնս այս անպակաս իցէ 'ի սմա, այլ ոչ այնչափ ընդարձակեալ։ Դարձեալ և 'ի բովանդակ մեկնութեան ոչ ուրեք տեսանի յառաջաբան ինչ, զոր սովոր էր կանխել Ոսկեբերան յայլ ամենայն ճառս իւր՝ ճարտարարուեստ յոյժ առ 'ի յերիւրել և զարդարել զխօսս. ոչ ուրեք 'ի վերջոյ յորդորական բանք, փառաւորութեամբ Քրիստոսի կամ Սրբոյ Երրորդութեանն, որ և անվրէպ սովորութիւն է Ոսկեբերանի յամենայն ճառս իւր։ — Իսկ ո՞ւր արդեօք յօրինեաց զմեկնութիւնս զայս Ոսկեբերան։ Զառաջինն վեր 'ի վերոյ հայեցիւք, թերևս ամբողջութիւն հայ թարգմանութեանն այնպէս իմն ցուցանիցէ, զի գոնեա յաքսորանս իւրում 'ի Կոկիւսոն լրացուցեալ իցէ զըսկըսեալն յառաջագոյն. զոր և հաստատել թուիցին բանք օրինակիս մերոյ յէջ 102, որպէս թէ 'ի Հայաստան լեալ իցէ գիւտ առաջնոյ մասին յոյն բնագրին՝ գրեալ ինքնին յՈսկեբերանէ։ Այլ որ միանգամ ոք զմտաւ ածիցէ զհանգամանս վարուց Ս. Հայրապետին յաքսորանս իւրում, զտառապալից զերկամեայ ևեթ

զկեանս նորա՝ զբաղեալ միշտ 'ի քարոզութիւն, 'ի կրթութիւն և 'ի դարձ անհաւատից, տկար գոլով 'ի մարմնի, և զմեծ մասն ցրտաշունչ աւուրց ձմերայնոյն հիւանդութեամբ անցուցանելով, և որչափ և սիրալիր ընդունելութեան համարիցիմք դիպեալ 'ի Դիոսկորոսէ հայկազն հայրապետէ տեղւոյն, սակայն և 'ի կարևոր իրաց անգամ պակասեալ, այսոքիւք ասեմ մտածութեամբք՝ կարծեմ ոչ ումեք համարձակել՝ զայսպիսի իմն գրութիւն, որ հանդարտութեան մտաց և երկար և անխոնջ աշխատանաց կարօտի, յայնպիսում ժամանակի համարել յօրինեալ Սրբոյ Հայրապետին: — Ո՞ւր ուրեք ուրեմն յօրինեալ իցէ նորա զայս մատեան, 'ի Կոստանդնուպօլիս արդեօք եթէ յԱնտիոք: Ընդհանուր կարծիք են բանասիրաց, զի յԱնտիոք գրեաց զգիրս զայս և ոչ 'ի Կոստանդնուպօլիս. զոր այսպէս պարզաբանէ Թիլլըմոն. « Ոչ ոք երկուանայ Ոսկեբերանի լինելոյ մեկնութեանս, որ և գերազանց յոյժ աղբիւր է վայելչաբանութեան: Զոր ինչ զհռովմէական պետութենէն ճառէ, յէջ 9, ամենևին 'ի դէպ ելանէ աւուրց Սրբոյն Ոսկեբերանի, մանաւանդ յառաջ քան զամն 377, (չորս ամօք յառաջ քան զսարկաւագութիւն Սրբոյն): Զգործս զայս կամ յառանձնութեան և կամ 'ի ժամանակս սարկաւագութեան յօրինեալ ինձ թուի. քանզի զկնի քահանայութեան անմարթ իմն երևի այնքան պարապ և ժամանակ գտանել, առ 'ի ձեռն արկանելոյ յօրինել գործ իմն այսպիսի »: Ցոր յաւելու ասել Մոնֆոքոն, եթէ « Զայս կարծիս Թիլլըմոնի մտադիւր ընդգրկեմք. և արդարև մարթ իսկ է ասել եթէ մինչ դեռ ևս չէր ընկալեալ զպաշտօն քարոզութեան, (յետ ընդունելոյ զաստիճան քահանայութեան, որ եղև յամին 383), 'ի վարժութիւն անձին առ 'ի քարոզութիւն յօրինեալ իցէ զճառս զայսոսիկ »: Դարձեալ և 'ի յոլովագոյն բանից անտի ընդդէմ Հրէից, կարեմք իմաս-

տասիրել զի յԱնտիոք յօրինեալ իցէ գնոյն. քանզի զայնու ժամանակօք առ Անտիոքացիս յաճախեալ էին վէճք և հակառակութիւնք քրիստոնէից ընդ Հրէայս, զոր իմանամք ոչ միայն յութեցունց ճառից անտի, զորս գրեաց Ոսկեբերան ընդդէմ Հրէից և ծիսից և անտի աւանդութեանց նոցին, այլ և յայլ ամենայն ճառս՝ զորս խօսեալ իցէ նորա յԱնտիոք։ Եւ ևս՝ անհնարին իմն երևի եթէ յաւուրս պատրիարքութեան իւրոյ այնքան պարապ գտեալ իցէ Ոսկեբերանի առ 'ի յօրինել զմեկնութիւնս, որ՝ ըստ ասացելոցս՝ բազում տքնութեանց և քննութեանց են արգասիք։

Մնայ արդ ասել և սուղ ինչ՝ առ 'ի ցուցանել եթէ նորոգ հրատարակեալս 'ի մէնջ Մարգարէ շարունակութիւն իցէ գրութեանն Ոսկեբերանի՝ ինքնին 'ի Սրբոյ Հայրապետէն գրեալ, և ոչ նոր ումն Երզընկացի վարդապետ 'ի մերոցս՝ զշնորհաբանն յօրինեալ շարայարութիւն, որպէս 'ի Մատթէի մեկնութեան Շնորհալւոյն։ Առ այս ոչ անուղղակի ևեթ ընծայութիւն մատուցանէ օրինակս մեր, ոչ ինչ նշանակելով յոր վայր դադարէ այժմեան յոյն բնագիրն, որով յայտ արասցէ այլում ումեք լինել շարայարութեան գործոյն, այլ և ուղղակի հաւաստիս ընծայէ յասել անդ 'ի խորագրին, յէջ 185, եթէ « Երանելւոյն Տեառն Յովհաննու Ոսկեբերանի 'ի մարգարէն Եսայիաս »։ — Իսկ 'ի տեղեկութենէ օրինակիս, յէջ 102, եթէ « Մինչև ցայս վայր գտաւ իւրովք ձեռօք գրեալ՝ երանելւոյն Յովհաննու յունարէն », թուի մեզ թէ մարթ իցէ իմանալ, եթէ Ս. Հայրապետին ոչ կամեցեալ 'ի լոյս ընծայել զմեկնութիւնս զայս Եսայեայ, որպէս թէ 'ի կրթութիւն ևեթ անձին գրեալ, առ իւր պահեալ իցէ նաև յաքսորանս իւրում. որով և զկնի փառաւորեալ մահուան նորա, ընդ այլ մատենագրութիւնս Սրբոյն, և զայս մեկնութեան գիրս յեղեալ իցեն 'ի հայ Թարգմանիչքն մեր, որոյ վկայ է ոս-

կեղծնիկ շարադրութիւն մատենին։ Եւ յետոյ յաղէտս անդ Հայաստանի յետ սուղ ժամանակաց 'ի վերայ անցանելոյ՝ իսպառ անհետացեալ իցեն սակաւ օրինակք բնագրին՝ իսկագրաւն հանդերձ. և յետ ժամանակաց 'ի յայտ եկեալ առաջնոյ մասին, (զորոյ զլոյն բնագիրն ունիմք այժմ 'ի ձեռին), բազմացուցեալ իցեն զօրինակս նորին. և այսր ժամանակի հանդիպեալ և գրչի ծանօթութեամբ, յաւելեալ իցէ զայս տեղեկութիւն յամբողջութեան հայերէն թարգմանութեան։

Դարձեալ, չիք ինչ յայսմ շարայարութեան՝ որ ընդդէմ իցէ ոճոյ գրութեան կամ սկզբանց և կամ ժամանակաց աւուրց Ոսկեբերանի, այլ 'ի հակառակէն բազում ինչ տեսանին 'ի սմա յատուկք Ս. Հայրապետին. զոր օրինակ, ուր ուրեք բանք լինին զաղօթից, զողորմածութենէ, զեկեղեցւոյ, զպարտուց մեծատանց առ աղքատս, զգարշութենէ կրօնից հեթանոսաց, զարբեցութենէ, զզեղխութենէ, զխաբէութենէ կախարդաց և զդիւթից, զորոց յայլ ամենայն Ճառս Ոսկեբերանի երկայնօրէն են ճառեալ, սոյնպէս երկարօրէն բանք լինին զայսցանէ և 'ի համառօտութեան մեկնութեանս։ Այսպէս և աստուածաբանական ընծայութիւնք, որովք կշտամբէ 'ի սմա զՎաղենտիանոսս, զՄարկիոնիտս, զԱնոմեանս և զընդհանուր Արիոսեանս, և զայլ ևս ազգի ազգի մոլորվարդապետութիւնս և խոտոր ուսմունս հերետիկոսաց, գրեաթէ բառ առ բառ գտանին յայլ մատենագրութիւնս Սըրբոյ Հայրապետին. բաւական գրեսցի առ այս 'ի բաղդատութիւն արկանել զերկուս և զերիս հատուածս որ գտանին 'ի սմա ընդդէմ Անոմեանց, յէջ 66, և այլն, ընդ երկոտասան ճառսն մակագրեալս Ընդդէմ Անոմեանց կամ Յաղագս անհասանելւոյն, յորոց եօթն միայն կան առ մեզ[1], թերևս խօսեցեալքն միայն յԱն-

1 Տե՛ս 'ի Ճառսն Ոսկեբերանի. էջ 557.

տիոք ։ Եւ որպէս յառաջնում մասին խօսի յաճախ ընդդէմ Հրէից, այսպէս և 'ի յաջորդութեանս երկարօրէն վիճի ընդ Նոսա, զոր օրինակ յէջսն 189, 245, 295, 304, 329, 385, 389, 392, 402-404, 422, 442, 450, 486, և այլն, և այլն. որոյ հաւանական պատճառ յայտնեցաք 'ի վերոյ զյաճախութիւն հակառակութեանց Հրէից և քրիստոնէից ժամանակին առ Անտիոքացիս ։

Դարձեալ, որպէս Թարգմանութիւն առաջնոյ մասին ընդ ճշդութեանն՝ է և ամենընտիր հայկաբան, նոյնպէս Նորին Թարգմանչի է հրաշալի բարբառ՝ որ խօսի և 'ի շարայարութեան անդ, Նորին ոճ սեղմն և հայկաբանութիւն ճարտար և կորովի՝ փայլէ և յամենայն ասացուածս վերջնոյ մասին ։

Դարձեալ, որպէս յամենայն մեկնութիւնս Ս. Գրոց, սոյնպէս և 'ի մեկնութեան աստ Եսայեայ, զմիջինն ունի շաւիղ Ոսկեբերան 'ի մէջ երկուց հակառակ դպրոցաց Աղեքսանդրիայ և Անտիոքայ. յորոց առաջինն ներշնչումն աստուածային դնէ ոչ յիմաստս միայն, այլ և յամենայն բառս Սուրբ Գրոց. իսկ Ոսկեբերան հակառակ աղեքսանդրեանցն՝ ոչ եթէ զբառս Սուրբ Գրոց, այլ զբարոյական և զաստուածաբանական իմաստս եթ համարի ներշնչեալս. և 'ի հակառակէն ոչ ըստ անտիոքեան դպրոցին մերժէ իսպառ զայլաբանական իմաստս Սուրբ Գրոց, այլ միայն զգոյշ կալ պատուիրէ մի կարի յաճախել և ընդլայնել զնոսին, զորս և 'ի կարևորս իսկ չհամարի 'ի մեկնութեան Ս. Գրոց ։ Այսպէս բազում ուրեք և 'ի մեկնութեան աստ Եսայեայ խօսի զայսմանէ որոշակի, որպէս յորժամ ասիցէ, եթէ « Եւ այսպէս մտացն կարգի միտ դնեմք, և ոչ բանիցն ասացելոց. էջ 2. — Յորժամ Գիրք այլասացիկ բարբառոյք զիրս ինչ նշանակիցեն, մի միայն եթէ հաստատել կալ, այլ ըզմտացն զհետ վարել, և ոչ յայլասացիկ բարբառն

հաստատել. էջ 50. — Վայրապար է ցանկութիւն այնոցիկ, որ զայլասացիկսն հաստատել կամին, զի մոլորեալ իմն այնու այսր անդր հարկանիցին. էջ 50 ». տես զայսմանէ դարձեալ յէջսն 44, 47, 100, և այլն: Արդ որ աստէն այսպէս ասէ, յայտնի ցուցանէ յետոյ՝ զի ոչ իսպառ անհետ կամի առնել և զմեկնութիւնս այլասացիկ իմաստից Սուրբ Գրոց. քանզի յէջ 461, յետ մեկնելոյ զսկզբնաւորութիւն ԿԳ Գլխոյն Եսայեայ, առնու կրկնել զնոյն բնաբան՝ այլասացիկ մեկնութեամբ յէջ 463, յասել անդ, եթէ « Միտ դիցուք և այլասացիկ բանիցն, և այլն »: Եւ է իսկ վասն այսորիկ, որպէս Թուի մեզ, զի առաջի ունելով զվեցիջեանն Որոգինի, բազում ուրեք 'ի բաղդատութիւն ածէ և զբանս Թէոդոտիոնի և Սիմաքոսի և Եօթանասնիցն, յորոց՝ ըստ ասելոյ Իսիւքոսի Երուսաղեմացւոյ 'ի մեկնութեան իւրում Յոբայ գրոցն, « Թէոդոտոս և Սիմաքոս հեբրայական բանին ծառայեցին, իսկ եօթանասունք՝ մտաց աստուածային գրոց ծառայեցին և ոչ բանի »:

Եթէ գուցէ ինչ նորութիւն կամ զանազանութիւն ընդ երկուս մասունս յայսոսիկ, յայսմ ևեթ է միայն՝ զի յառաջնում մասին ոչ ուրեք երևին բաղդատութիւնք Թարգմանութեանց Ս. Գրոց ընդ միմեանս, որպէս բազում անգամ գտանեմք 'ի վերջնում մասին: Առ այս ասելի է, զի Թէպէտ և ոչ գտանին բաղդատութիւնք բանից Ակիւղասայ, Սիմաքոսի և Թէոդոտիոնի յառաջնում մասին, այլ մի անգամ ևեթ առեալ է 'ի բաղդատութիւն զեբրայականն և զասորին, (էջ 92, տող 12). զեբրայականն բազում ուրեք յիշատակէ և 'ի վերջին մասին, իսկ զասորին աստ միայն և ոչ այլ ուրեք 'ի բովանդակ մատենին. Թերևս և զասորին 'ի Թիւս այնոցիկ դասելի իցէ, յորժամ ասիցէ իսկ այլքն ասեն կամ իսկ այլ թարգմանքն ունին այսպէս կամ այնպէս: Դարձեալ մարԹ

իսկ է համարել եթէ յայլ և այլ ժամանակս գրեալ իցէ զառաջին և զերկրորդ մասն մեկնութեանս, թէպէտ և զամենայնն յԱնտիոք յառաջ քան զպատրիարքութիւնն:

Ոչ միայն ցայսվայր ասացելովքս և այլովք ևս բազում ներքին ընծայութեամբք մարթի հաւաստի ցուցանել զհարազատութիւն հայերէն շարայարութեանս, այլ առ այս ոչ պակասեն մեզ և արտաքին աւանդութիւնք և վկայութիւնք 'ի նախնեաց մերոց: Որպէս Դաւիթ ոմն վարդապետ յերկոտասաներորդ դարու, որ 'ի յորդորանաց Պետրոսի վարդապետի իւրոյ գրեաց զծաղկաքաղ մեկնութիւն իւր Եսայեայ, յոլով ուրեք 'ի կարգի բանից Ս. Եփրեմի և Ս. Կիւրղի Աղեքսանդրացւոյ և այլոց Սրբոց Հարց, 'ի մէջ բերէ ըստ բառից անգամ և զբանս Ոսկեբերանի 'ի մեկնութենէ աստի Եսայեայ: Սոյնպէս և Գէորգ վարդապետ Սկևռացի, 'ի վերջ կոյս ԺԳ դարու, 'ի խմբագիր մեկնութեան իւրում Եսայեայ, գրելոյ յաւուրս «արքային Հայոց Հեթմոյ միակեացն կոչեցելոյ» (1289-1305) որպէս աւանդեալ է 'ի յիշատակարանին, բազում ուրեք փոքու իւիք փոփոխութեամբ յառաջ բերէ և զբանս 'ի մեկնութենէ աստի Եսայեայ՝ յանուն Ոսկեբերանի: Դարձեալ և 'ի փոքրիկ ծաղկաքաղ մեկնութեան Եսայեայ՝ Գրիգորի Տաթևացւոյ, 'ի վախճան ԺԴ դարու, զոր ժողովեալ է 'ի բանից վարդապետին իւրոյ Յովհաննու Որոտնեցւոյ՝ կախիկ մականուանեալ վարդապետի, նոյնպէս 'ի ԺԴ դարու, բազում ուրեք ըստ մեկնութեանն Ոսկեբերանի ունի զիմաստն, թէպէտ և շարադրութիւնն օտար իցէ 'ի վերջնոյս և ոչ յիշատակիցէ զանունն Ոսկեբերանի: Թող զայսոսիկ, և 'ի զանազան ճառընտիրս որ առ մեզ, գտանին այլ և այլ ընտիր հատուածք քաղեալք 'ի մեկնութենէ աստի յանունն Ոսկեբերանի. զորոց զտարբերութիւնսն յօրինակէս մերմէ՝ տեսցես 'ի վերջ կոյս մատենիս,

յէջսն 473-487. այլ Թէ որչափ կեղակարծ իցէ հաւատարմութիւն ճառընտրաց 'ի քաղել անդ զհատընտիր կտորակս 'ի մատենագրութեանց՝ ամենեցուն է յայտ. վասն որոյ և զանց արարեալ զտարբերութիւնս նոցին կարգելոյ 'ի ստորև իւրաքանչիւր հատուածոցն, ընտրեցաք յաւելուլ միայն 'ի վերջս, 'ի զբօսումն և 'ի վայելս բանասէր մտաց։

Արդ՝ զմատեանս զայս, որպէս և իցէն, նուիրեմք յօգուտ ազգիս և 'ի փառս հրաշալի հանճարոյն՝ որ անկարօտն է փառաց առ 'ի մէնջ ընծայելոց, և 'ի պարծանս նախնեաց մերոց՝ սիրողաց և պաշտողաց զայնպիսի հանճար. որք և յետ բազմադարեան աւուրց տան յունկն մեր հնչեցուցանել զհրաշալին արձագանգ ճարտարախօս բարբառոյ Ոսկեբերան Դեմոսթենեայ Եկեղեցւոյ՝ ոսկեբարբառ հայացի խօսիւք։

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ԵՍԱՅԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

---

## ԳԼՈՒԽ Բ*

. . . . . . . . . . *ժամանակաց. զոյն և մարգարէս ասէ, թէ «Եղիցի յաւուրս յետինս»: Իսկ լեառն՝ զեկեղեցի կոչէ և զկրօնիցն ամրութիւնս. զի զոր օրինակ յորժամ զամուր լերամբք թէպէտ և բիւրք բիւրուց զօրաց պատիցին, աղեղունս լարիցեն, 'ի կռիւս մատչիցին, տէգս արձակիցեն, գեղարդունս շողացուցանիցեն, մեքենայս կազմիցեն[1], հնարս հնարիցին, տակայն ամուր և անառիկ լերանցն՝ ինչ ոչ վնասիցեն, զիւրեանց զոյժ[2] և զօրութիւն թափիցեն, և նման ինչ ոչ ազդիցեն. սոյնպէս և որ ընդ եկեղեցւոյ մարտեան հանապազ, զնա ինչ ոչ կարացին շարժել, և ինքեանք անկան յիւրեանց զօրութենէ. 'ի տանջելն ամաչեցին, 'ի հարկանելն հիւանդացան, և 'ի չարչարելոցն յաղթահարեցան: Քանզի նոր իսկ և չքնաղ են յաղթութեանս կերպարանք, որ ոչ մարդկան վայելէ, այլ միայն մեծազօրն Աստուծոյ. և այս իսկ զարմանալի է եկեղեցւոյ, ոչ զի յաղթեաց, այլ զի այսպէս յաղթեաց. հալածեալ, մերժեալ, պէսպէս*

* Յօրինակին պակասի մեկնութիւն Ա գլխոյն և 1 համարոյ Բին:

1 Յօր. Կազմեցին: 2 Յօր. Ջոյժ:

նեղութեամբք կռփեալ, և ոչ միայն նուաղի, այլ ևս քան զևս աձէ և բազմանայ. և առ այնչափ հնարս զոր մեծաւ փութով հնարէին, չարչարանօքն միայն խափանէր զամենայն. որպէս և անդամանդ ցուցանէ ըզհանդէս, զի հարկանելովն միայն լուծանէ զզօրութիւն հարողին, և խթան՝ աքացելեաց, որ ինքն ոչ վնասի, և զոտս աքացողացն ծակոտէ. վասն այսր ամենայնի յիրաւի կոչեաց լեառն զեկեղեցի: Ապա եթէ ոչ առնուցու յանձն հաւանել Հրէայն, 'ի միւս այլաշըջիկ այլակերպ յորջորջանս՝ անդստին անձամբ անձին առցէ զյանդիմանութիւնն. քանզի սոյն իսկ մարգարէ զգայլս և զգառինս արօտակիցս միմեանց, ասէ, լինել. և ճանճոց և մեղուաց, ասէ, շըչել զԱստուծոյ. և գետ յորդ և սաստիկ, ասէ, գալ հասանել 'ի վերայ Հրէից վասն չկամելոյ զխաղաղ ջուրն Սիլովհայ: Եւ եթէ յախուռն 'ի բանսն ոք ևեթ հայիցէ, յոյժ և անհնարին դժուարին են առ իմանալ, այլ վասն որոյ իրիք որ ինչ 'ի սոցանէ նշանակելոց էր, առամն բանքս 'ի վերայ նոցա. և այսպէս մնացին կարգի միտ դնեմք և ոչ բանիցն ասացելոց: Եւ արդ զինչ ինչ արդեւք նշանակեցան 'ի սոցանէ. 'ի գայլոցն և 'ի գառանցն՝ խուռաքանչիւր բարք մարդկան. զի կէսն վայրենամիտք և կէսն զգօնաբարոյք. իսկ 'ի ճանճոցն անամօթականէ՝ Եգիպտացւոցն[1] լպրշութիւն, և յորդախաղաց գետոցն՝ բազմութիւն զօրացն Ասորեստանեաց. քանզի ոչ կամեցան զջուրն Սիլովհայ, այս ինքն զհեզ և զհանդարտ զյուդայական ազգին զթագաւորութիւն: Եւ այսմ որ և կարի ոք յոյժ անմիտ իցէ՝ չկարէ ոք բանընդդէմ լինել, թէ չիցէ այսպէս: Արդ զոր օրինակ այս ամենայն այլ իմն անուամբք նշանակեցաւ և յայլ իրս կատարեցան, սոյնպէս և զհաստատութիւնն եկեղեցւոյ, զանշարժութիւնն, զանմեղկութիւնն, զբարձրութիւնն, զամրութիւնն՝ յորջորջման[2] լերինն նշանակեաց: Միւս ևս մարգարէ զյուսացեալսն 'ի Տէր՝ լերին Սիոնի նմանեցուցանէ, զի զամրական զանսառիկ միտսն յայտ առնիցէ. և աստ այժմ և ոչ բանից ինչ մեկնութեանն պէտք են, քանզի ինքնին իրքն իբրև զփող

1 Յօր. Գետացոցն:

2 Յն. Ի ձեռն յորջորջման:

հնչեն, և լուսաւոր ամենն զչարդ եկեղեցւոյ. քանզի ոչ այնպէս պայծառագոյն է արեգակն՝ որպէս և իւր եկեղեցւոյ լուսաւորագոյնք։

« Եւ տուն Աստուծոյ 'ի վերայ գլխոց լերանց »։ Եւ զայս զխորհուրդ կամիցի մեկնել Հրէայն. քանզի ոչ եթէ 'ի վերայ գլխոց լերանց շինեցաւ տաճարն. իսկ եկեղեցւոյ զօրութիւնն և արդ իսկ 'ի բարձունս երկնից եհաս, և որպէս տաճարի՝ որ 'ի գլուխս լերանց շինեալ իցէ և ամենեցուն յայտնի իցէ, սոյնպէս և ասէ յայտնի եղև ամենայնի։

« Եւ բարձրասցի 'ի վերայ բլրոց »։ Զնոյն մեկնէ, որ 'ի վերայ տաճարին ոչ երբեք կատարեցաւ, և ոչ մինչ կարծելին թէ զքարիս ինչ գործեցին. քանզի և 'ի նոցուն իսկ 'ի Հրէիցն բազում անգամ թշնամանէր տաճարն, և 'ի ձեռաց այլազգեաց աւերեցաւ։ Իսկ եկեղեցւոյ զօրութիւն կրեաց պատերազմ, եւս աւելի և դժնդակ քան զնորայն, այլ ոչ երբեք ետ ձեռս պատերազմողացն, այլ բարձրագոյն և առաւել յայտնագոյն գտաւ քան զթշնամիսն, մարտիրոսացն գունդք, դաւանելոցն բանակօքն, որոց առաւել քան զերկաթ հաստատուն ընտրէին աղիքն, և լուսաւորագոյն քան զաստեղս երկնից. զի թէպէտ և մարմինքն ծայրակտուր կտորէին, սակայն միտքն 'ի պարտութիւն ոչ մատնէին, այլ հանդուրժէին և ժուժկալէին, և անթառամական պսակօքն պսակէին։ Ո՞ ետես, ո՞ լուաւ, թէ սպանութիւնք պսակս բոլորիցեն, և խողխողումն յաղթութիւնս գործիցէ, և առաւել քան զզօրականն լուսաւորագոյնք, յորժամ սպանեալքն առաւել քան զսպանողսն յոլովագոյն գտանէին։

« Եւ եկեսցեն հասցեն 'ի վերայ նորա ամենայն հեթանոսք »։ Յառաջ մատուցեալ մարգարէիս՝ եւս յայտնագոյն ասէ զբանն, և լուսաւորագոյն զմարգարէութիւնն, և յայտ յանդիման կարկէ զբերանս Հրէիցն. զի որչափ և լրբիցեն՝ սակայն ոչ կարեն զայս 'ի տաճարն կատարել. քանզի վճարեալ իսկ էր և սահմանեալ, զի ոք 'ի հեթանոսաց 'ի տաճարն մի իշխեսցէ մտանել. և զինչ ասացից թէ 'ի տաճարն, ուր և նոցա իսկ ստէպ ստէպ սպառնային օրէնքն, զի մի իշխեա-

ցեն խառնակել ընդ հեթանոսս, նաև պատիժ եւս պատուհասի կրէին վասն այսպիսի իրաց. քանզի Մաղաքիա զամենայն իսկ զմարգարէութիւնն յայս ծախէ, առ 'ի պատուհասել, առ 'ի սպառնալ, առ 'ի պատիժս պահանջել եթէ մի ոք իշխեսցէ ընդ օտարազգիս ամուսնանալ: Իսկ առ մեզ ոչ այսպիսի ինչ, այլ ամենայն համարձակութեամբ ընդարձակեալ զգօգս եկեղեցւոյ, տարածեալ զգիրկս, զամենայն ազգս տիեզերաց ընդունի օր ըստ օրէ. զայն և նախ ինքն իսկ կրօնիցն վարդապետք նախին հրամանի Տեառն....[1] եթէ Երթայք աշակերտեցէք զամենայն հեթանոսս:

Եւ արդ միտ դիր, զի ոչ միայն զկոչումն հեթանոսաց ակնարկէ մարգարէս, այլ և զյօժարութիւն հնազանդութեանն. քանզի ոչ ասէ՝ եթէ ածցեն ազգս բազումս, այլ թէ՝ եկեսցեն, զոր և միւս եւս մարգարէն յայտնագոյն ասէ, թէ Մի եւս ուսուսցանիցեն[2] իւրաքանչիւր զքաղաքացի իւր և իւրաքանչիւր զեղբայր իւր, թէ ծանիր զՏէր, այլ ամենեքեան իսկ ծանիցեն զիս 'ի փոքրկանց մինչև ցմեծամեծս: Իսկ առ Հրէիւքն և արարածք իսկ դղրդէին, և սպառնալիքն յաճախ և տանջանք հանապազորդ և նշանք յոլովագոյնք և մարգարէիցն ընթացք և օրէնսգրին երկիղ և պատերազմաց սպառնալիք և հինից արշաւանք և բարկութիւնք աստուածապատիժք և արհաւիրք յերկնից. և նոքա կային մնային խստապարանոցք և անթլփատք՝ որպէս և գրեալ է. Խստասիրտք և խստապարանոցք: Իսկ հեթանոսաց բաւական են բանք միայն և լուր լոկ, և ամենեքին վաղվաղակի ընթանան. զոր և Դաւիթ ասէ ակնարկելով, եթէ Ժողովուրդ զոր ոչ գիտէի՝ ծառայեաց ինձ. և զպայման հնազանդութեանն յաւելու զարմանալով. Եւ 'ի լուր ականջաց, ասէ, լուան ինձ: Զսոյն և Յակովբ առակաւ իմն գուշակեալ ճառէ. Կապեսցէ, ասէ, զորթոյն զաւանակն, և զգնդակէն զյաւանակ իշոյն. և ով ոք եւս կապեալ զգնդակէ զյաւանակ, և հաստատեալ զորթոյ և որթւոյն ոչ մերձանիցէ, և զպտուղն ոչ ապականիցէ. յանաստուածս ոչ ոք

1 Յօր. Բառս մի ընջացիր 'ի մաշմանէ թղթոյն:

2 Յօր. Ուսանիցեն:

գտանէ զայս, իսկ 'ի մարդիկ եղև և կատարեցաւ հաստատեաւ։ Հրէայք կապեալք թիւրապատիկ կապանօք, զկապանս խզեցին, զլուծն ընկեցին, որպէս և մարգարէն ասէ. իսկ հեթանոսք և ոչ միով իւիք այսպիսի կապանօք կապեալք 'ի հարկէ, պատրաստագոյն գտան անսալ, իբրև զյաւանակ մի տրմուղ, կապեալ զգնդակէ, և ոչ ինչ եղծին 'ի հրամանացն, այլ զգօնացեալ կացին մնացին, ցուցեալ ամենեւին զհնազանդութիւն։

« Հասանիցեն ժողովուրդք բազումք և ասիցեն, եկայք ելցուք 'ի լեառն Տեառն և 'ի գաւիթս Աստուծոյ Յակովբայ »։ Տեսանե՞ս, զի խնդան, ցնծան[1], և ժողովին, և զմիմեանս ժողովեն, միմեանց հրամայեն, և իւրեանց լինին վարդապետք. ոչ մի կամ երկու կամ երեք, այլ ամենայն ազգք խառնեալք 'ի միասին ընթանան։ Եկեսցեն հասցեն, ասէ, ազգք բազումք յամենայն գաւառաց. որ ոչ երբէք եղև Հրէից, այլ ոմանք թէպէտ և նուազունք ոք եկք մերձեցան, և նոքա մեծաւ քննութեամբ, և ոչ երբէք ազգք կոչեցան, այլ եկք. Եւ եկք, ասէ, առ քեզ մտանիցեն, և քեզ ծառայեսցեն։ Իսկ եթէ կայ և մնայ տակաւին, յայլասացեն յայլակերպ յորջորջման մարգարէն, կոչել լեառն Տեառն և տուն Աստուծոյ Յակովբայ, ընդ այն ինչ մի զարմանայցես, որպէս յառաջագոյնն ասացի. մերթ բանայ մերթ խնու զմարգարէութիւնն, զի միոյն տացէ պատճառս իմաստնոց առ 'ի միտ առնուլ զասացեալսն, և միւսոյն կարճիցէ զյանդգնութիւն անհաւատիցն, և յամենայն կողմանց առնէ բազմադիմի զճառն։ Եւ ընդ այն ինչ մի խռովիցիս, եղբայր, զի ասէ Աստուած Յակովբայ, զի և միածին Աստուծոյ Որդին՝ Աստուած Յակովբու էր, քանզի նա եւս զօրէնսն և զամենայն արուեստս նա ետոյց առ նոսա. և զայս մանաւանդ 'ի հին կտակարանաց է ուսանել, քանզի 'ի նորումն բնաւ և ոչ ճաք ինչ են Հրէիցն. զի Երեմիա այսպէս ասէ, իբրև յերեսաց Որդւոյ, եթէ Հաստատեցից ընդ ձեզ կտակ նոր, ոչ ըստ կտակին՝ որ հաստատեցի ընդ հարսն ձեր. և յայտ առնէ եթէ եր-

1 Յօր. Ցնծացան։

կացուցից օրինացն ինքն է օրէնսդիր, և զի յԵգիպտո-
սէ ևս նա եհան զնոսա՝ յարէ 'ի նոյն, թէ Յաւուր՝
յորում կալայ զձեռանէ նոցա հանել յերկրէն Եգիպ-
տացւոց։ Տեսանե՞ս, զի նա է որ եհան զնոսա, և նոյն
արար զնշանս և զարուեստս և յԵգիպտոս և յանա-
պատին։

«Եւ պատմեսցէ մեզ զճանապարհս իւր, և գնաս-
ցուք ընդ նա»։ Տեսանե՞ս, զի այլ իմն օրէնս խնդ-
րեն, քանզի գիրք ճանապարհ զպատուիրանս Աստու-
ծոյ սովոր են կոչել. զի եթէ զառաջինն ինչ կտակա-
րանացն ճառէր, ոչ ասէր թէ պատմեսցէ մեզ, քան-
զի յայտնի և երևելի և ծանօթ ամենեցուն էր. և
զի ոչ վայրապար ինչ ճարտարեալ ասիցէ ոք զայսպիսի
բանս, ընթերցուածս իսկ կարէ հաւանեցուցանել և
զայնոսիկ որ յոյժ անամօթք իցեն. քանզի զճանա-
պարհէ յիշեաց, ասէ՝ և զորպիսի ճանապարհէ, և բա-
զում նշանակ 'ի մէջ դնէ, և մանաւանդ յաջորդաւն։

«Ի Սիովնէ ելցեն օրէնք և բան Տեառն յԵրուսաղէ-
մէ». և առ այս և ոչ բերան[1] անգամ կարեն բանալ
լպրշականն Հրէից ազգի որդիքն. այլ զի զնորոց կտա-
կարանաց են ճառքս՝ և 'ի տեղւոջէն և 'ի ժամանա-
կէն, և յայնցանէ որք ընկալան զօրէնսն, և ամե-
նայն ուստեք միանգամայն է իմանալ։ Եւ նախ 'ի տեղ-
ւոջէն իսկ 'ի Սիովն լեռնէ. զի մովսէսական օրէնքն
'ի լերինն Սինեայ տուան նախնեացն նոցա. և աստ
զիա՞րդ իցէ զի 'ի Սիովնէ տացին։ Եւ ոչ զայս միայն
համարի բաւական, այլ և զժամանակն ևս դնէ. քան-
զի ոչ ասաց թէ ելին օրէնք, այլ թէ ելցեն, որ հան-
դերձելոց ժամանակաց էր, և իրաց՝ որ չև ևս էին
լեալ։ Քանզի յորժամ մարգարէս զայս ճառէր, բա-
զում ժամանակօք յառաջ քան զայս ժամանակս
տուեալ էին օրէնքն. իսկ նոր կտակարանք յետ բա-
զում ամաց հանդերձեալ էին տալ, վասն այնորիկ ոչ
ասէ թէ ելին, այլ թէ ելցեն, այսինքն առ յապա ժա-
մանակս. դարձեալ անդրէն 'ի տեղին իմն ապաւինի։
«Եւ բան Տեառն յԵրուսաղեմէ»։ Հաւաստեաւ իմն
նշանս զնորոց կտակարանաց տայ. քանզի և յորժամ

1 Յօր. պակասէր բառս բերան։

եկն Տէրն՝ մերթ ՚ի լերինն նստեալ, և բարձրագոյն և զերկնից արժանի հրամանան տայր օրէնս, և մերթ յերուսաղէմ շրջէր և ուսուցանէր. և իբրև նշանակեաց զտեղին և զժամանակն, ապա յաւելու ձայնել զայնցանէ որք ընդունելոց էին զօրէնսն, զի յամենայն կողմանց կարկեսցէ զբերանս հակառակորդաց։ Եւ արդ ո՞ ոք իցեն որ ընդունելոց են զօրէնսն. մի եթէ Հեբրայեցւոցն բազմամբոխն, կամ հրէական ժողովականքն. և ոչ ուրեք, այլ ՚ի հեթանոսաց հաւատացեալք. վասն որոյ և ասէ զնորին հետ, թէ «Դատեսցի ՚ի մէջ հեթանոսաց». քանզի այս օրէնն է իսկ օրինացն՝ զի դատիցին, ընտրիցեն ՚ի մէջ ընդունելեացն։ Եւ զի ոչ վասն հնոյն է ձայնս, անդստին իսկ յիրացն յայտ է. քանզի ոչ շաբաթ պահեմք, և ոչ թլփատութիւն ընդունիմք, և ոչ տօնս տարեկանաց, ունկնդիր լեալ Պաւղոսի՝ որ ասէր. Զի եթէ թլփատիք՝ Քրիստոս ինչ ձեզ ոչ օգնէ. և դարձեալ, եթէ՝ Զաւուրս խտրէք և զամիսս, և զժամանակս և զտարեկանս. երկնչիմ գուցէ ընդունայն ինչ ուրեք ՚ի ձեզ վաստակեցի. ուստի յայտ իսկ է թէ վասն նորոյս են ձայնք. զի ՚ի մէջ հեթանոսաց դատի՝ մեկնեսցէ առաքեալն որ ասէր, թէ Յաւուր յորում դատի Աստուած զգաղտնիս մարդկան. և որպէս ինչ դատի, ըստ հի՞ն կտակարանացն. և ոչ երբեք. այլ ըստ աւետարանիս իմում, ասէ։ Տեսանես, զի թէպէտ և այլակերպք իցեն, սակայն միտքն միաբանք. Եսայի ասէ. Դատիցի ՚ի մէջ հեթանոսաց, և Պաւղոս ասէ, թէ Դատեսցի ըստ աւետարանիս իմում։ «Եւ յանդիմանեսցէ զժողովուրդս բազումս». զայնոսիկ որ չընդունիցին և անցանիցեն զօրինօքն. զոր և Քրիստոս յայտ յանդիմանն ասէր, եթէ Ես ոչ դատիմ զձեզ՝ այլ բանն իմ։

«Եւ ձուլեսցեն զսուսերս իւրեանց ՚ի խոփս, և զնիզակունս իւրեանց ՚ի մանգաղս, և ոչ ևս առնուցուն ազգ յազգի վերայ սուր, և ոչ ուսանիցին տալ պատերազմ»։ Ոչ համարի բաւական զառաջին նշանակն՝ մարգարէս, քանզի բազում է ճշմարտութեանն առաւելութիւն, վասն այնորիկ և այլ իմն ծանօթս տայ զնորոյ կտակարանաց, որ լուսաւորելոց էին զամենայն աշխարհս համօրէն։ Եւ զի՞նչ ինչ այն իցէ. խաղա-

ղութիւն և պատերազմացն 'ի մէջոյ բառնալ. զի յոր-
ժամ, ասէ, այս ամենայն լինիցի, այսպիսի ինչ յապա-
հովութիւն աշխարհի լինիցի, զի և զպատերազմաց
գործիսն 'ի հողագործաց գործիս ձուլեսցեն, զոր ոչ ոք
երբեք 'ի ժամանակս Հրէիցն գտանէ կատարեալ, այլ
հակառակ սմին ամենայն ինչ 'ի նոցա յառաւելեան
գործէր, ճակատամարտ պատերազմունք 'ի հեռաւո-
րաց և 'ի մերձաւորաց, նաև անդէն իսկ ընդ միմեանս
բազում անգամ կռուէին, և 'ի միմեանց կոտորէին.
և զայս ամենայն 'ի Թագաւորութեանն ոք հաւաստեաւ
ուսանի, որ ամենեւին զպատերազմացն յայտ առնէ:
Պատմեն և ամենայն իսկ մարգարէքն կանխատես-
ցիկ բարբառովքն; զպատերազմունսն և զնեղու-
թիւնսն որ հասանելոց էին 'ի վերայ նոցա առ յապա.
և այսպէս յորէն իսկ յորմէ հետէ զերծան 'ի բանու-
թենէ հնազանդութեան Եգիպտացւոցն, զամենայն
աւուրս կենաց իւրեանց 'ի պատերազմունս ծախեցին:
Իսկ այժմ ոչ այսպիսի ինչ, այլ 'ի բազում խաղաղու-
թեան բնակեալ են ամենայն տիեզերք. թէպէտ և
լինիցին ուրեք պատերազմունք՝ սակայն ոչ ըստ առա-
ջնոցն, զի յայնժամ քաղաքք ընդ քաղաքս և գիւղք
ընդ գեւղս, և միանգամ ցեղընտիր լեալ 'ի բազում
ցեղս բաժանէր. կամ զՑեսու կամ զԴատաւորսն թէ
ոք ընթեռնուցու գտանէ, որչափ պատերազմունք 'ի
սակաւ ժամանակի 'ի Պաղեստինացւոց աշխարհին
գործեցան. և ոչ այս միայն բռնութիւն էր, այլ և
ամենեցուն իսկ զէն առնուլ հրամայէին օրէնքն, և ոչ
ոք կարէր ազատել զանձն յայնմ հարկէ. և ոչ առ
Հրէայս եւեթ պաշտէին այսպիսի օրէնք, այլ և յա-
մենայն աշխարհի, ուր ճարտարախօսք և փիլիսոփայք,
որք աւելի քան զաղաբաղոնն այլ ինչ ոչ արկանէին
զանձամբ, որ ինչ իրք 'ի հարկէ 'ի վերայ հասանէին,
ասպարս և սուսերս առնուին և ճակատս յօրինէին.
որ և յԱթենացւոց իսկ 'ի քաղաքին, որ 'ի գատար-
կութիւն և 'ի պարապս դեգերէին, Սոկրատ Սոփրո-
նիսկեանց, և միանգամայն և երկիցս ելեալ պատրա-
տէր 'ի պատերազմ. և գլխաւորն նոցուն ճարտարա-
խօսացն Դեմոսթենէս, յատենէ հրահանգացն բա-
զում անգամ յարուցեալ ելանէր 'ի պատերազմ. զի

եւ թէ զճարտարախօսն եւ զփիլիսոփայսն ոչ առնէին ազատ 'ի պատերազմաց օրէնք ժամանակացն, զիարդ եւս արդեւք այլ բազմամբոխքն լինէին ազատ յայսպիսի հարկաց։ Այլ այժմ ոչ այսպիսի ինչ տեսանեմք. քանզի արդարութեան արեգակն ծագեաց, եւ քաղաքք եւ բազմամբոխ ժողովք, եւ ազգք ամենայն այնպէս ազատաբար կեան յայսպիսի ճգանց, զի եւ 'ի ձեռին անգամ ունել ոչ գիտեն զպատերազմական գործիսն, այլ 'ի մէջ քաղաքաց ընդ անհոգ պարապօք բնակեալ են յապահովս եւ այլ իմն օտար 'ի պատերազմաց ուսանին ճշմարտութիւն. եւ բազմամբոխ ժողովք ազատութեամբ կեան եւ անհոգ յապահովլեն յայսպիսի դժնդակ հարկաց։ Զի թէպէտ եւ լինիցին հեռի ուրեք պատերազմունք արտաքոյ քան զհռովմոց իշխանութեան սահմանս, ոչ քաղաքաց առ քաղաքս որպէս յառաջն լինէին, այլ դուն ուրեք յանկարծ. իսկ այժմ աւասիկ արեւ ընդ երկիր ծագէ, 'ի Դիկղաթ գետոյ մինչեւ 'ի Բրետանացւոց կղզիսն, եւ հանդերձ այնու Լիբէացւոց կողմանքն, եւ առ հասարակ ամենայն երկիրն Եգիպտացւոց, եւ Պաղեստինացւոց աշխարհն, իբրեւ զմի ազգ կայ ընդ հնազանդութեամբ՝ ընդ Հռովմոց տէրութեամբն. եւ դուք ձեզէն իսկ գիտէք որչափ ազգք եւ աշխարհք նստին յապահով 'ի խաղաղութեան, զլուր եւեթ լսեն զպատերազմաց եւ զհանդէս արդեանց ոչ երբեք տեսանեն. կարէր Քրիստոս եւ զսակաւ ինչ մնացորդս պատերազմաց խափանել, այլ թոյլ ետ զի խրատու պատճառք լինիցին ծուլացելոցն, զի որք 'ի խաղաղութեանն յողանայցեն, յասպատակէ հինիցն զարթնուցուն։ Նաեւ մարգարէս իսկ՝ որոց հաւաստեաւ կարասցեն նայել, զոյն իմն ակնարկէ, որպէս յառաջագոյն իսկ ասացի. ոչ ասէ թէ բնաւ չլինիցի պատերազմ, այլ ասէ. «Ոչ առնուցու ազգ յազգի վերայ սուր». եւ զի բազմամբոխ[1] ժողովոցն նշանակիցէ զազատութիւն, «Եւ ոչ եւս, ասէ, ուսանիցին տալ պատերազմ»։ Ապա ուրեմն գիտէ՞ ոք տալ պատերազմ. եւ ոչ երբեք. բայց 'ի սակաւ զինուորաց՝ որ յայն միայն իցեն կրթեալ եւ կարգեալ։

1 Յօր. Բազմամբոխ։

« Եւ արդ դու տունդ Յակովբայ, եկայք եկցուք 'ի լոյս Տեառն, զի եթող նա զժողովուրդ իւր զտունն Յակովբայ »: Եւ իբրեւ կատարեաց զեկեղեցւոյ մարգարէութիւնն՝ դարձեալ իջանէ անդէն 'ի կարգ ընթերցուածոցն, զի կարգաւ զբանսն վարիցէ յառաջ. զի այսպիսի իմն սովորութիւն է մարգարէիցն, ոչ միայն ասացելոցն անյայտութեան, այլ եւ կարգելոցն[1] կերպարանօք ծածկել զմարգարէութիւնն. վասն որոյ ոչ կատարէ իսկ զբանն, այլ իբրեւ թէղ ք[2] մի արձակեալ. դարձեալ անդրէն դառնայ տալ խրատ Հրէից: « Եւ դու, ասէ, տուն Յակովբայ, եկայք երթիցուք մեք 'ի լոյս Տեառն », 'ի պատուիրանս նորա, յօրէնսն. զի ճրագ են պատուիրանք օրինացն եւ լոյս եւ կեանք եւ յանդիմանութիւն եւ խրատ. եւ մարգարէն Դաւիթ ասէ. Պատուիրանք Տեառն լոյս են եւ լոյս տան աչաց. եւ ճրագ են բանք քո ոտից իմոց, եւ լոյս շաւղաց իմոց. եւ 'ի բազում տեղիս գտանես զի լոյս կոչին օրէնք. եւ Պաւղոս ասէ. Յուսացեալ ես յանձն քո, առաջնորդ լինել կուրաց, լոյս խաւարելոց եւ վարդապետ տղայոց. զի ոչ այնչափ լուսաւորեն ճառագայթք արեգական զաչս՝ որպէս պատուիրանք օրինացն լուսաւորեն զաչս ոգւոցն: Եւ արդ, զի յայտ առնիցէ մարգարէն, թէ յառաջ քան զհատուցումն վարձուց, 'ի կատարել պատուիրանացն տան մեզ զհատուցումն պատուիրանքն, վասն այնորիկ լոյս կոչէ ըզնոսա. զոր օրինակ աչքն լուսաւորելովն զարծէ մեզ շահս, նոյնպէս ոգիքն հաւանելով օրինացն՝ յաճախեն մեզ պտուղս. յորժամ սրբիցեն եւ ազատիցեն 'ի չարեացն, եւ յառաքինութիւնս եւեթ ուշ եղեալ նայիցեն. որպէս զի ոյք յանցանեն եւ յառաջ քան զտանջանսն՝ խղճիւ յանցանացն հաշին, եւ առաւել քան զայնոսիկ որ նստիցեն 'ի խաւարի՝ եւս հիքագոյնք են, յորժամ ահն եւ երկիւղն եւ կասկած սրտին զհիւանն հարկանիցէ, 'ի միջօրէի իբրեւ 'ի գիշերի զարհուրին յիրաւադատէ մտացն խղճէ: « Եթող, ասէ, զժողովուրդ իւր՝ զտունն Յակովբայ »: Ընդ վայր եհար, անտես ա-

1 Յօր. չկարգելոցն. չ օտար գրչաւ:

2 Այսպէս Յօր. իսկ Ցն. որ- րայ, այսինքն՝ չգիթայ:

րար, 'ի ձեռաց եԹող, մերկ կապուտ կացոյց յամենայն զարմանոց: Այս իբրեւ երկեցոյց՝ ասէ և զպատճառս իրացն, զի ուղղեսցէ ածցէ զնոսա 'ի ճանապարհն: Իսկ արդ զի՞նչ իցեն պատճառքն:

«Լցաւ, ասէ, իբրեւ զառաջինն[1] երկիր նոցա հըմայիւք՝ իբրեւ զայլազգեացն»: Վերադոյնն վասն գինեվաճառին արուեստի և վասն արծաԹսիրուԹեան, և անտես առնելոյ զորբս և զայրիս պատուհասէ, իսկ աստ վասն կրօնից իմն չարաց և խմորոյ ամբարշտուԹեան, որ առ սակաւ սակաւ ձգէին զնոսա 'ի գիւղաց մոլորուԹիւն. և զի առաւել մոլորեցուցանիցէ, ոչ ասէ Թէ հմայէին լոկ, այլ Լցաւ, ասէ, երկիր նոցա հմայիւք, զի զառաւելուԹիւն չարեացն յայտ առնիցէ. որպէս և վերադոյնն՝ ոչ ասաց ԵԹէ ժողովուրդ մեղաւոր, այլ՝ ժողովուրդ լի մեղօք, և աստ՝ Թէ լցաւ. և զի ձգիցէ զնախատինսն, յաւելու՝ Իբրեւ զառաջինն. զառաջինն յորժամ զԱստուած ճանաչէին, և զօրէնսն չեւ էր ընկալեալ, և զերախտեացն ինչ փորձ չեւ էր առեալ, մինչ ընդ հեԹանոսս էին, որ ամենեւիմբ իսկ[2] արտասաւանք էին. զի յետ այնչափ խնամոց և զարմանոց ոչ երբեք եղեն պիտանիք: Եւ ոչ յայս միայն կայ, այլ զի եւս կսկծեցուցանիցէ, յաւել Թէ Իբրեւ զայլազգեաց. համեմատուԹեամբ երեսայն սաստկացուցանէ զամբաստանուԹիւնն. զոր և Պաւղոս սովոր է ստէպ առնել. յորժամ ասէ, եԹէ Վասն ննջեցելոցն ոչ կամիմ եԹէ տգէտս իցէք, եղբարք, զի մի տրտմիցիք իբրեւ զայլսն՝ որք ոչ ունիցին յոյս. և դարձեալ, Թէ Ճանաչել իւրաքանչիւր զիւր աման ստանալ 'ի սրբուԹիւն. մի 'ի հարուածս ցանկուԹեան. և չշատացաւ այսու միայն, այլ յաւել, Թէ Որպէս այլ հեԹանոսքն որ ոչ գիտիցեն զԱստուած. զի այսպէս իմն մանաւանդ սովոր է բանն կսկծեցուցանել և զայնոսիկ որ կարի ոք յոյլք իցեն: Զի եԹէ Հրէայք այսպիսի բանիւք պատուհասէին, մեք զի՞նչ պատասխանի ունիցիմք, կամ ներեալ ԹողուԹեան, որք յետ այսչափ շնորհաց և անճառ պատուոյ, և անմահական յուսոյ,

1 Յօր. Պակասի Իբրեւ զառաջինն:

2 Յօր. Աւելն և 'ի միակ: Յե. յետին պարսաւանք:

դարձեալ անդրէն 'ի նոյն մոլորութիւն փութացեալ կործանիցիմք: Քանզի և այժմ բազումք են որ այսպիսի ախտիւ ջերանին, և տարականեն զիւրեանց վարուցն առաքինութիւնս. որք զհմայսն անհանճար միտօք հմայեն, և Աստուծոյ հրամանացն հակառակ գտանին, և աւելորդ տրտմութիւնս անձանց գանձեն, և զառաքինութեան քաջութիւն՝ ծուլութեամբ կորուսանեն. քանզի յայն խոկ փութացեալ ստիպէ սատանայ ամենեւին զանմիտսն, կարծեցուցանել թէ ոչ զառաքինութիւնսն յանձանց գործիցեն, և ոչ զչարութիւն, և ոչ ազատութեամբ անձնիշխանութեանն իցեն պատուեալք. զերկուս զայս յառութիւնս կամեցաւ ուղղել Աստուած, զորս ջանացաւ խանգարել թշնամին, զի և յառաքինութենէ վատակոցն մեղկացուցանիցէ, և զմեծ պարգևս անձնիշխանութեանն բառնայցէ. հմայիւք, կիւսիւք, խտրանօք աւուրց և ժամանակաց, դժնդակ կրօնիւք, բախտաբաշխին հրամանօք, կարծական ճակատագրօք, և բազում ևս այլ այսպիսի դժնդակ հիւանդութիւն եմոյծ 'ի վարս մարդկան. և զամենայն մեր 'ի վայր հարեալ կործանեաց, զի յԱստուծոյ օգնականութեանցն կարիցէ մերկացուցանել. վասն այնորիկ մարգարէս յոլովագոյն իմն զամբաստանութիւնն 'ի մէջ բերէ, զի արմատաքի խլեսցէ զայսպիսի ցաւս անհնարինս:

« Որդիք բազումք այլազգիք ծնան նոցա »: Զի՞նչ իցեն որդիքն այլազգիք. այլ օրէնք 'ի վաղուց հետէ էին առ նոսա, վասն այսր և անդր դանդաչական միտացն, և արագախաբիկ խորհրդոցն իւրեանց, զի մի՛ երբէք ընդ այլազգիս խնամութիւնս խառնիցեն, և այնպիսի աղգախառնութիւնն լինիցի նոցա պատճառք ամբարշտութեան. զի ոչ եթէ զայլս միայն չկարէին ուղղել, այլ և ոչ զայլոց փնասակարութիւնս կարէին յանձանց 'ի բաց մերժել, օրինօքն պարապեաց[1] զնոսա, և 'ի խառնակելոյ ընդ այլազգիսն զգուշացոյց, զատ մեկնեաց, ուրոյն բնակեցոյց. օրէնք ուրոյնք, կարգք ուշոգիք, պարտ և պատշաճ էր նոցա

1 Ցոյ. Պարսաւեաց:

որք սիրեցանն յԱստուծոյ՝ պահել զամենայն զգուշութիւնսն որ հրամայեցան յԱստուծոյ. այլ որպէս զայլով պատուիրանօքն անցին՝ և յայսմ գտան ծուլացեալք. զի ընդ մերձաւոր այլազգիսն խնամութիւնս խառնէին, և նովանս[1] 'ի տունս՝ 'ի Մովաբացւոցն և յԱմմոնացւոց աշխարհէն ածէին, և յայլ ևս ազգաց ամբարշտելոց. և այսպէս ընդ օտարոտին ազգախառնութիւնս առնէին, զի ածիցեն զչարեաց վարդապետսն 'ի տուն, և զհայրենի անմեղ ազնուականութիւնսն դժրիցեն. արդ վասն այնորիկ հանդերձ այլովքն և այսու ևս պատուհասէ զնոսա մարգարէն:

«Լցաւ երկիր նոցա ոսկւով և արծաթով, և ոչ էր համար գանձուց նոցա. լցաւ երկիր նոցա երիվարօք, և ոչ էր թիւ կառաց նոցա»: Եւ թերևս ասիցէ ոք, թէ զի՞նչ վնաս էր ինչս առնել և երիվարս ստանալ, և մանաւանդ այնպիսում ազգի՝ որք զգաստական կրօնիցն ճշմարտութեան չէին ընդելք: Եւ արդ զի՞նչ ասասցուք առ այս: Ոչ եթէ զպէտս ընչիցն խոտէ, այլ զդժընդակ միտսն, զի ոչ յօգուտ զինչսն ստանային, այլ 'ի վնաս. զոր օրինակ յորժամ ասիցէ, թէ Վա՜յ ձեզ հզօրքդ Իսրայելի, ոչ եթէ զզօրութիւնն ինչ աղարտիցէ, այլ զայնոսիկ որ զզօրութիւնն 'ի չարիս ինչ ծախիցեն. նոյնպէս և աստ, ոչ եթէ ստանալ ընչիցն խոտան իցէ, այլ զի բազում յանձնաւութեամբ, և աւելի քան զպէտսն ժողովէին: «Եւ ոչ գոյր, ասէ, համար գանձուցն նոցա». և ոչ այս միայն, այլ զի յղփութեամբ ընչիցն զԱստուած ոչ յիշէին, հըպարտացեալք յընչիցն մեծութիւնն, յերիվարացն զօրութիւն, և յԱստուծոյ յուսոյն զանձինս 'ի բաց մերժէին. որպէս և յայլում վայրի ասէ մարգարէն. Վա՜յ այնոցիկ որ յուսացեալ իցեն 'ի զօրութիւն իւրեանց և 'ի բազում մեծութեան իւրեանց պարծենցին. և Դաւիթ ասէ, թէ Ոչ ապրեսցի թագաւոր 'ի բազում զօրս իւր, և հսկայ բազում զօրութեամբ իւրով. և 'ի միւսում սաղմոսի, թէ Ոչ ընդ զօրութիւնս ձիոյ կամեսցի, և ոչ ընդ իրանս[2] առն հսկայի հաճի, այլ հաճի Տէր ընդ երկիւղածս իւր:

1 Այսինքն՝ հարսունս կամ նուանս:   2 Օր. Արանց:

«Եւ լցաւ երկիր նոցա գարշելեօք գործոց ձեռաց իւրեանց, և երկիր պագին այնոցիկ զորս արարին մատունք իւրեանց»: Զոր օրինակ բժիշկ մի իմաստուն, նոյնպէս և մարգարէս նախ քան զցաւսն՝ զպատճառսն ուստի ախտն բղխելոց իցէ՝ ասէ. քանզի պատուհասելոց էր զամբարշտութիւն նոցա, յառաջագոյն զպատճառս ախտին յայտ առնէ. զարծաթսիրութիւնն, զամբարտաւանութիւնն, զանարժան խնամութիւնն. եթէ յայսպիսի իրաց առ սակաւ սակաւ կործանեցան անկան 'ի խորխորատ կորստեան, զի և կռոց երկիր պագին. և արդ զի հեգնիցէ՝ յերգ արկեալ զպաշտօն նոցա, ասէ զնոյնքն թէ՝ գործոց ձեռաց իւրեանց: Զի՞նչ ինչ քան զայն ծաղր կայցէ, յորժամ մարդ՝ արարիչ աստուածոց լինիցի. իսկ գարշելիս՝ գիրք սովոր են զկուռսն կոչել, ուստի և զզծութիւն աւերածոյ կոչէ պատկերսն՝ որ կանգնեցաւ 'ի տաճարին Աստուծոյ. Յորժամ տեսանիցէք, ասէ, զպղծութիւն աւերածոյն, զի կայցէ 'ի սուրբ տեղւոջն, որ ընթեռնուն 'ի միտ առցէ: Վասն որոյ և հրաման եա վճիռ արար յանապատին, եթէ ամենայն պատկերի երկիր մի պագանիցէք, զորս պիղծս և գարշելիս իսկ կոչեաց, զի հեռացեալ կարճեցուսցէ զնոսա յամբարշտութենէն. զի գարշելի այն ինչ կոչի՝ որ կարի աղտեղին իցէ, պիղծ ինչ, նողկ, անսուրբ: Եւ արդ գարշելի զայն ինչ որ ատելի իցէ և զերեսս դարձուցանելի՝ կոչեն գիրք. ամենայն կուռք այսպիսի ինչ են:

«Եւ երկիր պագին այնոցիկ, զոր արարին մատունք իւրեանց. և խոնարհեցաւ մարդ, և յերկիր կործանեցաւ այր»: Զի զոր օրինակ Աստուծոյ երկրպագութիւնն 'ի բարձունս հանէ, նոյնպէս և կռոցն՝ խոնարհեցուցանէ և յերկիր կործանէ: Ո՞ ոք թշուառական քան զայն մարդ կայցէ, որ 'ի փրկութենէն վրիպիցէ, և զամենեցունն Աստուած թշնամի անձինն ստանայցէ, անշնչականացն անկեալ երկիր պագանիցէ, և զանմռունչ քարինս՝ թաւալեալ աղաչիցէ. զի Աստուած յայնպիսի ինչ պատիւ եհան զմեզ, զի և քան զերկինս բարձրագոյնս արասցէ. իսկ սատանայ այնպէս փութացաւ իջուցանել 'ի վատթարութիւն զիւր հաւանեալսն, զի և քան զանհանճարսն անհանճարս-

գոյնս արասցէ. վասն որոյ և մարգարէս իսկ ասէ, եթէ խոնարհեցաւ մարդ և յերկիր կործանեցաւ այր։ Եւ թէպէտ և այսպիսի ամբաստանութիւն բաւական էր զմնացեալս ազատել յայնպիսի ախտէ, այլ քանզի բազումք 'ի մարդկանէ ոչ այնպէս 'ի մեղացն որպէս 'ի պատժոցն երկնչէին, ածէ յարէ 'ի նոյն և զտանջանսն։

« Եւ արդ ոչ, ասէ, ներեցից նոցա ». չանսացից, չթողից, այլ պահանջեցից վրէժս, և ածից պատիժս յանցուցելոցն։ « Եւ արդ երթայք մտէք 'ի քարանձաւս, և թաքերուք յերկիր յերեսաց ահի Տեառն »։ Յորժամ յերգ արկեալ հեգնեաց զերկրպագութիւն կռապաշտիցն, ապա և 'ի կերպարանաց գործոցն եցոյց զնոցա անհանճարութիւնն, և զկռոցն տկարութիւնն՝ ջանայ բանիւ միւսանգամ զհանդէս իրացն յայտ առնել. բաւական էին այսմ, ասէ, և ինքեանք մարդիկ անզգամեալ զիւրեանց անմտութիւնն, բայց քանզի առաւել իմն արբեցութեամբ ամբարշտութեան թմբրեալ էին, և զյայտնի և զերևելի իրս չտեսանէին կուրութեամբն, այնպիսի ինչ չարիք գայցեն հասանիցեն 'ի վերայ քաղաքին, զի և որ կարի ոք անմտագոյնք իցեն՝ կարիցեն վարդապետք լինել, թէ որչափ Աստուծոյ զօրութիւնն է, և որչափ կռոցն տկարութիւն. և վասն այնորիկ յառաջ քան զհէնն ձայնէ զայն ինչ որ 'ի հինէն անցք անցանելոց իցեն, հրամայէ առնել, 'ի քարանձաւս մտանել, և 'ի փապարս երկրի թաքչել. ոչ զի զայս այսպէս առնիցեն, այլ զի յայսմանէ ուսանիցին զԱստուծոյ զանհանդուրժական արձակեալ բարկութիւնն։

« Թաքերուք, ասէ, յերեսաց ահի Տեառն, և 'ի փառաց զօրութեան նորա, 'ի ժամանակի իբրև յարիցէ վանել զերկիր »։ Եւ ոչ ասէ լոկ 'ի զօրութենէ, այլ 'ի փառաց զօրութեան նորա. քանզի այսպիսի ուղղութիւնք են նորա, այսպիսի նշանք յաղթութեանց, երևելիք և յայտնիք։ Եւ ինձ այսպէս թուի թէ զյաղթութիւնսն որ առ Եզեկիայիւ արքայիւ եղև նշանակէ աստ. երկիր՝ զբազմութիւն զօրացն կոչէ, և վանել՝ զկործանումնն, և յարութիւն՝ զվերականգնութիւնն. քանզի և Դաւիթ այսպէս ասէ, թէ Յարիցէ Աստուած և ցրուեսցին ամենայն թշնամիք նորա. և

գարձեալ, թէ Արի Աստուած և դատեա զերկիր։ Ի մարդկեղէն կերպարանաց զԱստուծոյ զազդեցին զօրութիւնսն նշանակէ դրոշմէ։

« Ձի աչք Տեառն բարձունք են և մարդ խոնարհեալ և տառապեալ »։ Իսկ զի մի ոք յայնցանէ որ 'ի ժամանակին լսիցեն՝ չաւատայէ առասցելոցն, քանզի անյայս և անկարծ իմն լինելոց էին իրքն առ յապա, փախստական անկանի 'ի զօրութիւն այնորիկ որ զայնն կատարելոց էր. և զի զանկարութիւն այնոցիկ որ ընդունելոց էին զպատիժսն՝ յայտ արասցէ, ասէ՝ ոչ քան զԱստուած ոք բարձրագոյն է և ոչ քան ըզմարդ ոք խոնարհագոյն։ Եւ արդ մի ինչ երկմտիցեն, ասէ, թէ այնպիսի մեծն և հզօրն, զտառապեալսն այնպէս խոնարհեցուցանել կարէ։ Եւ բարւոք ասաց՝ եթէ Աչք Տեառն բարձունք, և ոչ՝ զօրութիւն Տեառն, զի ցուցցէ եթէ երեւացն միայն երևելոյն բաւական է զամենայն հակառակորդսն կործանել. զոր և Դաւիթ այլազգ իմն ասէ, թէ Ո հայի յերկիր և տայ դողալ նմա. և այլուր, թէ Նայեցայց առ նա և յաղթեցից նմա։

« Եւ խոնարհեսցի բարձրութիւն մարդկան, և բարձրասցի Տէր միայն յաւուր յայնմիկ ». զի յորժամ զարմանալի յաղթութիւնն լինէր, և լուսաւոր և չքենաղ նշանք յաղթութեանցն կանգնէին, ապա և գեք յանդիմանէին և կուռք անարգէին, և սուտ մարգարէքն կարկէին, և բռնութիւն հինին 'ի պարտութիւն մատնէր, և ամենայն բերան բացեալ ընդդէմ Աստուծոյ՝ պապանձէր։ Վասն այնորիկ ասէ, թէ Բարձրասցի Տէր միայն, և ոչ ևս ոք իցէ որ ընդդէմ դառնայցէ, և ոչ այն որ երկմիտ լինիցի յԱստուծոյ զօրութենէն, որ այնպէս և զհանդէս իրացն կատարելոցն յայտնագոյն ցուցանէ. քանզի բնութեամբ ունի մշտնջենաւոր զմնութիւնն, և ոչ եթէ սկզբամբ ինչ սկսանի բարձրանալ, այլ է իսկ միշտ բարձրեալ 'ի բարձունս. և բարձրանալ յայն սակս ասի՝ յորժամ միտք հակառակորդաց և ընդդիմակաց առնուցուն հանդէս յիրաց ինչ՝ որ գայցեն 'ի վերայ նոցա յԱստուծոյ բարձրութենէն, առ 'ի խոնարհել և զպատշաճ փառաւորութիւնն տալ միայն բարձրելոյն։

«Զի օր Տեառն հասանելոց է 'ի վերայ ամենայն թըշնամանողաց և ամբարտաւանից, և 'ի վերայ ամենայն բարձանց և հպարտից, և խոնարհեսցին. և 'ի վերայ ամենայն մայրից բարձանց Լիբանանու, և 'ի վերայ ամենայն ծառոց կաղնեաց Բիշանու, և 'ի վերայ ամենայն պարսպաց բարձրացելոց, և 'ի վերայ ամենայն նաւաց ծովու, և 'ի վերայ ամենայն տեսլեան գեղեցկութեան նաւաց. և խոնարհեսցի ամենայն բարձրութիւն մարդկան, և բարձրասցի Տէր միայն յաւուր յայնմիկ»: Պարիսպս և մայրս և բլուրս՝ աստ զմարդիկ զօրաւորս կոչէ. բարձրութեան, ծառոց փոփոխականն յորջորջմամբ՝ զզօրութիւնս նոցա յայտ առնէ. և նաւուք և գեղեցիկ տեսլեամբ նաւաց՝ զշահաւէտ զմեծութիւնս նոցա ակնարկեաց. և զոր ասելս կամի՝ այսպիսի ինչ է, եթէ՝ ամենայն հզօր և ամենայն բռնաւոր և ամենայն զօրավար և ամենայն մեծութիւն և ամենայն իսկ զօրութիւն և վայելչութիւն մարդկան՝ կասեսցի և խափանեսցի. և ոչ ինչ իսկ է որ կարիցէ ապրել յԱստուծոյ բարկութենէն. ոչ մարմնոյ զօրութիւն և ոչ տեղեկութիւն պատերազմաց, ոչ ընչից առաւելութիւնք, ոչ բռնաւորաց ճոխաճանութիւնք, ոչ զօրավարաց յաճախագունդ գումարութիւնք, և ոչ այլ ինչ յայսպիսեաց: Մայրից Լիբանանու վասն այնորիկ նմանեցուցանէ՝ զի առ նոսա մեծ է Լիբանան. կամ որպէս մայրքն մերձ էին, նոյնպէս և բարկութիւնն ընդ հուպ ժամանակս գալոց էր: Իսկ 'ի տեսիլ գեղեցկութեան նաւաց՝ ըզզօրավարացն փառաւորութիւն, զընչիցն յաճախութիւն, զզինուցն յօլովութիւն՝, զսպասաւորացն վայելչութիւնս առակէ: Դարձեալ զի և 'ի հեռուստ գալոց էին թշնամիքն, թուի ինձ թէ յայն սակս տարադիմիկ նաւուց նմանեցուցանէ:

« Եւ զձեռագործս իւրեանց զամենայն տարցին և թաքուսցեն յայրս և 'ի փապարս վիմաց, և 'ի սորս երկրի յերեսաց ահի Տեառն, և 'ի փառաց զօրութեան նորա, 'ի ժամանակի՝ իբրև յարիցէ հնազանդել զերկիր »: Զի այնչափ 'ի ձեռաց թողուցուն զնոսա դիքն իւրեանց առ 'ի տալոյ զմարտիցն օգնականութիւն, զի ոչ միայն զմարդիկ կոչիցեն

յօգնականութիւն, այլ և զտեղեացն ամրութիւնս առ 'ի չանկանելոյ 'ի թուռն: «Եւ յերեսաց ահի Տեառն և 'ի փառաց զօրութեան նորա, 'ի ժամանակի' իբրև յարիցէ վանել զերկիր»: Զի մի ոք հինին ասպատակի համարեսցի զգործն, եթէ իւրեանց ինչ զօրութեամբ աւարեսցեն զաշխարհն' հանէ զերկիւղն առ ամենեցունն Աստուած. նա է, ասէ, որ ածէ զպատերազմն, և նորա է զօրութիւնն. զի այսպիսի ապաստանելեօք ածցէ յուղղութիւն զայնոսիկ' որ 'ի վաղուց հետէ էին մոլորեալ:

«Յաւուր յայնմ բարձցէ մարդ զզարշելիս իւր զարծաթեղէնս և զոսկեղէնս' զոր արար իւր' երկիր պագանել սնոտոցն չղջիկանացն, մտանել 'ի ծակս առապար վիմաց և 'ի փապարս քարանձաւաց, յերեսաց ահի Տեառն և 'ի փառաց զօրութեան նորա, 'ի ժամանակի' իբրև յարիցէ վանել զերկիր»: Բաւական և այն էր' որով և յերդ խոկ արկեալ հեգնէր զնոսա. բայց յայտ առնէ թէ հանդերձ աստուածովքն թաքչելոց էին յերկրի և ընդ փապարս մտանելոց, այնպէս զի և դարանքն ևս չէին բաւական առ 'ի ծածկել 'ի խուճապական բարկութենէն, որ եկեալ կայցէ 'ի վերայ: Դարձեալ և գիշերի չղջիկանս ևս կոչէ զկուռսն' վասն անհնարին տկարութեան կամ վասն խաւարին մոլորութեանն, և զի ամենայն ինչ դիւացն 'ի ծածուկ գործեր. զոր օրինակ գիշերականն չղջիկ' աչս և լոյս թշնամի են, և գիշեր և խաւար սիրելի, նոյնպէս և դիւաց և որոց 'ի նոցանէ իցեն մոլորեալք' չարիք և անօրէնութիւնք ընդելականք և սիրելիք, և առաքինութիւնք և լուսոյ գործք' թշնամիք. զի 'ի ծագել լուսոյն խաւարին: Եւ որք 'ի քաջութիւնսն կեցցեն' չեն ինչ կարօտ աշխատութեան և վաստակոյ, քանզի բաւական է յայտնութիւն միայն քաջութեանն, և վաղվաղակի խափանին դանդաղականքն:

«Լռել ձեզ 'ի մարդոյն' յորում գոյ շունչ յռընգունս նորա. զի որո՞ւմ արդեւք նմանութեան նմանեցաւ սա նոցա»: Աստ ինձ այսպէս թուի' թէ զԵզեկիա արքայէ ակնարկիցէ. քանզի յահէն և 'ի բազում խուճապանացն, և իբրև ընդ աղօտ իմն շունչ յռընգունս առնէին: Քանզի 'ի վարմարկել զնա հինին,

այնպէս համարէին թէ արդ եկեալ անկեալ իցէ 'ի բուռն որսն, զի և ոչ աշխատութեան ինչ պէտք իցեն առնուլ զքաղաքն, և վարել զթագաւորն 'ի գերութեան. և զայն ոչ առնուին 'ի միտ, թէ այն եղեռն' 'ի նոցին գլուխն կատարէր. վասն այնորիկ ասէր մարգարէն, թէ « Լուեալ ձեզ 'ի մարդոյ անօրի յայնմանէ' յորում գոյ շունչ յարնգունս նորա ». եթէ « Ո՞ւմ նմանեցուցէք զդա ». միթէ անօրէն թագաւորացն, որք ոչ ունէին շունչ փրկութեան. դա' ասէ, զոր առ ոչինչ համարեցայքդ, զոր անգոսնեցէքդ' թէ երթամք և առանց աշխատութեան առնումք զքաղաքն, գտանիցի փառաւորեալ քան զամենեսեան յԱստուծոյ օգնականութենէն, զձեզ հարկանիցէ աղօթիւք և ինքն զանձն և զքաղաքն ապրեցուցանէր: Այն իսկ է' զի յոչինչ համարեցաւ, զի իբրև յասպատակի իմն կարծէին զամենայն առնուլ, և դիպեցաւ ամենեին նորին հակառակն. որ ոչն ինչ համարէր ձեզ, այլ արհամարհելի և դիւրաւ հնազանդելի, նա քան զամենեսեան պայծառագոյն երևեցի վայելեալ յԱստուծոյ օգնականութեանն:

## ԳԼՈՒԽ Գ.

« Ահաւասիկ Տէր, Տէր զօրութեանց բարձցէ 'ի Հրէաստանէ և յԵրուսաղեմէ զայր հզօր և զկին զօրաւոր »: Զոր օրինակ բժիշկ ճարտար մերթ խարիցէ, մերթ հատանիցէ, մերթ դառն ինչ դեղս ըմպել տացէ, առ 'ի հնարել զցաւածացն առողջութիւն, սոյնպէս և մարդասէրն Աստուած պէսպէս սպառնալեօք' առ 'ի պնդել զծուլութիւնն և զմեղկութիւնն Հրէից, մերթ հինից ասպատակօք երկեցուցանէ զանհաւատսն. իսկ արդ' ահաւասիկ յառաջ քան զհինին արշաւանսն' այլով իմն սաստիկ սպառնալեօք երկեցուցանէ, և պէսպէս սպառնալեօք յասատուոջ պահէ 'ի նոսա զերկիւղն. զի մերթ հիւանդութեամբ սպառնայ և սովով և երաշտութեամբ, ոչ միայն

կարեւորօք, այլ այնպիսեօք՝ որ ոչ ինչ նուաղագոյն քան զպիտոյսն՝ ունիցին հաստատուն զկեանս մեր. զի ոչ սոսին միայն դառնագոյն է, այլ և անվերակացու յառաջնորդաց կալ, որ և զկրութիւնն՝ դժնդակագոյն քան զսոսին սովոր է ցուցանել: Զինչ օգուտ իցէ թէ իբրև զաղբեւրս արտաքուստ բարութիւնքն բղխեսցեն, և 'ի ներքս յընտանեացն կոտորածք գործիցին, և կամ յորժամ ծով յուզիցի և զալիսն վէր 'ի վայր կուտակիցէ, և ոչ ուղղիչ նաւին 'ի թիկանց, և ոչ յառաջապահք դիտաւորք որ ընդ ալիսն կռուիցին՝ պտանիցին, առ զերծուցանել զնաւն 'ի նաւահանգիստ. իսկ յորժամ ոչ առաջնորդք իցեն, և սոսին սաստկացեալ՝ անհնարին աղէտք և կորուստ: Զայս ամենայն սպառնացեալ Աստուած, և նախ՝ որ քան զամենայնն ահագինն է. «Ահաւասիկ, ասէ, Տէր զօրութեանց»: Զահաւասիկն իմն առաջի դնեն ստէպ մարգարէքն՝ յորժամ հաւանել զլսօղսն կամիցին վասն իրաց ինչ՝ զոր ճառիցեն. զահաւասիկն յաճախագոյն դնեն, ոչ աստ միայն, այլ անդուստ 'ի վերուստ իսկզբանէ, և 'ի բնէ է իմանալ. և զի մարմնաւոր հիւանդութիւնք բազում անգամ վասն մեղաց գան 'ի վերայ, որպէս Կայենին, քանզի ոչ բարւոք վարեցաւ զօրութեամբն, յիրաւի եղև անդամալոյծ. նոյնպէս և յայնմ որ յաւազանին Բեդ-հեզդա անկեալ դնէր՝ մեղք էին պատճառք անդամալուծութեանն, քանզի և ասէր իսկ Քրիստոս, թէ Ահաւադիկ ողջացար, այլ մի ևս մեղանչիցես. և Պաւղոս ասէ. Վասն այնորիկ են 'ի ձեզ բազում հիւանդք և ախտաժետք, քանզի մեղանչէին և անսուրբ մտօք 'ի սուրբ խորհրդոյն հաղորդէին. և պոռնկեցելոցն պատճառ հիւանդութեան մարմնոյ՝ նոյն մեղքն էին: Բայց ոչ եթէ ամենայն ուրեք պատճառք հիւանդութեան՝ մեղք իցեն, այլ է՛ ուրեք զի և պսակաց ևս բարւոք լինի, որպէս Ղազարու և Յովբայ: Եւ ոչ միայն հիւանդութիւն, այլ և ուրկութիւնք ևս 'ի մեղացն լինին, որպէս և Ոզիայ վասն յանդգնութեանն բորոտութիւնն, և Յորաբովամու արքայի գօսութիւն ձեռինն՝ վասն ամբարտաւանութեանն և հպարտութեանն, և Զաքարիայի լեզուն այլ ուստեք ոչ խրատեցաւ՝ բայց յիւրոց մտացն մեղաց. և

քանզի Հրէիցն՝ առողջութիւնն և ողջանդամութիւնն եղեն պատճառք գալոյ յամբարտաւանութիւն, կորէ զարմատս հպարտութեանն, զի յանպիտանեացն արասցէ պիտանիս, և մեծ իմն քան զոր առնուն՝ շնորհէ։ Քանզի զինչ վնաս իցէ թէ 'ի մարմնոյն հիւանդանալ՝ ոգիքն խրատիցին։ Իսկ զի մի՛ կարծիցեն եթէ մարմնոյ ինչ բերք իցեն ցաւք՝ որ 'ի վերայ հասանիցեն, յառաջագոյն գուշակէ մարգարէն. զի ոչ միայն արանց յաճախէ զպատուհասս, այլ և առ կանանց ևս ազդս ձգէ զպատիժս. քանզի յերկուց իսկ կողմանց եղծեալ էին կարգք. և մատուցեալ յառաջագոյն վասն առաւելութեան չարեացն, առ կանայսն իսկ առանձինն արձակէ զպատուհասն. որով ամենեքին իսկ զքաղաքն 'ի հիմանց կործանէ, վասն այնորիկ և զկանայսն ընդ նոքին համատարած հարուածովքն փակէ. քանզի ինձ այսպէս թուի թէ զհամատարած հարուածսն նշանակէ այնու՝ եթէ «Բարձից զայր հզօր և զկին զօրաւոր», և կամ այլ ինչ զմարմնաւոր հիւանդութիւնս հասարակաց, որում և ոչ բժիշկք ամենեքին կարիցեն հնարս[1] գտանել. քանզի այսպիսի են Աստուծոյ պատիժքն։

«Զզօրութիւն հացի և զզօրութիւն ջրոյ»։ Դառն պատիժք՝ յորժամ ոչ զկերակուրն 'ի միջոյ բառնայցէ, այլ զզօրութիւնն որ 'ի նմա է՝ առնուցու. զի թէպէտ և տեսանել աչօք տեսանիցեն, սակայն առ սրայն ոչ երբեք յագեսցին, և անտի առնուցուն 'ի միտ եթէ աստուածապատիժ է բարկութիւնն։

«Զայր հսկայ, զայր հզօր»։ Հսկայ՝ գիրք զհարուստ ոք սովոր են կոչել, և կամ որ անդամօք ոք յաղթ իցէ. յԱրարածս յորժամ ասէ, թէ Նոքա են սկայք՝ արք անուանիք, ոչ եթէ այլ ազգ ինչ զսկայիցն պատմելով զայս ասէր, այլ զի հարուստք էին և առողջ և պինդք։

«Եւ զայր պատերազմող, և զայր դատաւոր»։ Ծանր են պատիժքն և վերջին կորստեան նշանակ. զի թէպէտ և պարիսպքն ևս կայցեն և աշտարակքն կանգունք, բայց քանզի անմարդիքն են՝ վաղվաղակի մատնի քաղաքն 'ի պարտութիւն։ Զի զգուշութիւն քաղաքացն ոչ 'ի քարանցն և 'ի փայտիցն կամ 'ի պարըս-

1 Յօր. Համարս։

պացն և 'ի պատուարաց իցէ, այլ յիմաստութենէ բնակչաց քաղաքին. զի եթէ իմաստունք ոք 'ի ներքս իցեն՝ թէպէտ և պատերազմունք շուրջ փակիցեն, առաւել քան զպարիսպն լինիցին իմաստութեամբն ամրութիւն. ապա թէ այնպիսիք ոք 'ի ներքս ոչ գտանիցին, թէպէտ և ոչ ոք պաշարիցէ՝ ինքնին իսկ կործանեալ յաւեր բերէ մէտ։ Եւ արդ զնոսա և զայլս իսկ զամենեսեան որք լսիցեն, ոչ սակաւ այսպիսի բանիւք խրատեաց մարգարէս, զի մի երբէք 'ի բարձրաբերձ շինուածս ապաստան լինել, և մի 'ի մեքենայս և 'ի հնարս, այլ յարանց հեզոց 'ի կատարեալն առաքինութիւնս։ Եւ արդ երկեցուցանէ զնոսա՝ թէ ոչ յայն սակս միայն աւերի քաղաքն, զի զարս պատերազմողս միայն բառնայ 'ի միջոյ, այլ զի և զդատաւորս իմաստունս, որք ոչ նուաղագոյն քան զպատերազմողսն լինիցին օգնական խաղաղութեան քաղաքաց, զի հնարագէտ իւրեանց իմաստութեամբն՝ և զպատերազմունսն ցածուցանիցեն, և քաղաքաց խաղաղութեան տիրեսցեն. և քանզի ճակատամարտքն իսկ յաճախ 'ի մեղաց արմատոյ բուսանին, պարտ և պատշաճ է այնոցիկ որ զօրէնսն 'ի ձեռին ունիցին, իրաւանցն ճշմարտիւ սպասել, զի զբազում մեղս կարճիցեն որ պատերազմացն պատճառք են։ Եւ արդ ընդէ՞ր բառնայցէ զնոսա Աստուած. այլ զի մինչ կային 'ի գլուխ առաջնորդութեան՝ ոչ օրինօք վարէին զկարգս իրաւանցն. զի զոր օրինակ ուղիղ հրամանք նոցա բազում շահս գանձեն աշխարհի, նոյնպէս և թիւր դատաստան՝ կորուստ բազմաց։ Քանզի առ Հրէից ժողովն խօսէր, անյայտութեամբ իմն ծածկէ զասացեալսն, քանզի ոչ ունէին ուշ ճառելոցն. նոյնպէս և զայսպիսի պարգևս զմեծամեծս, ուր զբազում փրկութիւնն յորդէր, բազում անգամ 'ի միջոյ բառնայր. քանզի որք ընդունէինն՝ ոչ ինչ կամէին շահել պարգևօքն։

Վասն այնորիկ ասէ. «Զայր մարգարէ և զայր կարծող»։ Ոչ սակաւ բարկութեան նշանակ է այս, յորժամ մարգարէութիւնքն խափանեսցին. զի յորժամ վասն չարեաց Հրէիցն Աստուած զերեսս 'ի նոցանէ դարձուցանէր, ապա և զմարգարէութիւնն կարճէր։ Բան Տեառն, ասէ, պատուական էր և ոչ գոյր տեսիլք որ

կատարելին. պատուականն՝ այսինքն է չքնաղ, ահաւոր։ Եւ առ Ողիա արքայիւ այսպիսի ինչ եղև, և ոչինչ սակաւ շահս շահէին աստի՝ թէ կամեցեալ էր. զի յորժամ ուսանէին զԱստուծոյ հրամանսն, թէ առ յապա չարիք գալոց էին 'ի վերայ նոցա, և թէ մերթ մատնին 'ի ձեռս գերեվարաց, և մերթ փրկին, զիարդ ոչ տրտմականքն՝ փրկութեան պատճառք լինէին նոցա։ Այլ քանզի ուսանէին և չառնէին, վասն այնորիկ և զուսանելն ևս բառնայր 'ի նոցանէ. որ և այս իսկ բազում մարդասիրութեանն Աստուծոյ է նշանակ, զի և ցուցանէր զհանդերձեալսն, և գիտէր իսկ զի թէ և ցուցանիցէ՝ ոչ ինչ օգտին, և սակայն 'ի գուշակելոյն ոչ դադարէր։ Եւ ընդ մարգարէին՝ և զկարծողէն ևս, ասէ, բառնալ 'ի միջոյ. և ինձ այսպէս թուի՝ եթէ կարծող զայնպիսին կոչէ՝ որ 'ի բազում իմաստութենէ կարծէր զհանդերձեալս ինչ որ լինելոց էին՝ իբրև հմուտ և փորձ իրաց։ Քանզի այլ ինն կարծիքն են և այլ իմն մարգարէութիւնն. զի մին աստուածեղէն հոգւով բարբառի և յիւրմէ ինչ ոչ նորոգէ, և միւսն 'ի վաղուց ինչ իրաց կատարելոց՝ առնու պատճառս իմաստութեանն, և բազում անգամ 'ի դէպ կարծէ, և ասէ յառաջագոյն զիրս ինչ՝ որ առ յապա իցեն գործելոց։ Այլ յոյժ խտրոց 'ի միջի կայ ընդ մարգարէն և ընդ կարծողն, որչափ ընդ մարդկեղէն իմաստութիւն և Աստուծոյ շնորհ։ Եւ օրինակ ևս 'ի մէջ բերեալ՝ առնիցեմք զբանս յայտնագոյն։ Նայեաց ընդ Սողոմոնի և ընդ Եղիշէա, զի երկոքեան զծածուկ իրս 'ի մէջ բերին, այլ ոչ նովին զօրութեամբ. զի մին մարդկեղէն իմաստութեամբ առ 'ի մարդկան բարուցս առեալ զպատճառս՝ ածէր յայտ զգաղտնիս կնոջն պոռնկի, և միւսն՝ ոչ բնաւ և զմտաւ իսկ ինչ ածէր. քանզի որպիսի՞ միտք կարէին յայտնել զԳեհեզայ գողութիւնն, եթէ ոչ Աստուծոյ շնորհն զիրսն՝ որ բազում 'ի բաց գործեցան՝ յայտնեցին։

« Զայր ծեր, զայր յիմնապետ ». զի և ծերքն և յիմնապետքն բառնայցին 'ի միջոյ։ Ծեր՝ ոչ որ վայրապար ոք ծերացեալ էր, այլ ըստ ալեացն արժանի և զիմաստութիւնն պահեալ։ Եւ յիմնապետ յորժամ ասէ, ոչ եթէ զմիոջէ ումեքէ ճառէ, այլ զամենայն իշխանսն

ակնարկէ, զի չիք ինչ դժնդակ քան զայն՝ յորժամ իշխան ոք 'ի գլուխ ոչ կայցէ. որպէս քան զնաւ կոծեալ այլ ինչ ոչ լինիցի՝ յորժամ ուղղիչ նաւին ոչ գտանիցի։ Այլ ոչ յայսմ և եթ կայ, այլ և զայլ իմն զգուշութենէ սպառնայ 'ի միջոյ բառնալ՝ բարեխրատիցն խորհրդականացն, որ ոչ ինչ սակաւ քան ըզզինուց ցուցանեն ամրութիւնս քաղաքաց։

« Բարձից, ասէ, զզարմանալին զխորհրդականն, զիմաստունն զճարտարապետն և զհանճարեղն զունկընդիր[1] »։ Եւ աստ ոչ զտնաշէն ինչ ճարտարապետաց ճառէ, այլ զայնպիսեաց որ բազում իրաց տեղեակ իցեն, և իմաստութեամբ զամենայն իրս քաղաքաց հաճիցեն։ Եւ հանդերձ սոքօք և զունկնդիրն ես 'ի միջոյ բառնայ. զի եթէ ունկնդիր ուրեք չիցէ, թէպէտ և այլքն ամենեքեան իցեն՝ ոչինչ աւելի յաւելուած լինիցի քաղաքաց. թէպէտ և մարգարէք իցեն կամ խորհրդականք կամ դատաւորք, և ունկնդիր ոք ոչ իցէ՝ զուր վայրապար է այն ամենայն։ Բայց ինձ այսպէս թուի եթէ բարձիցն ասել աստ՝ թողից և ընդ վայր հարից. որպէս և Պաւղոս ասէ, թէ Մատնեաց զնոսա 'ի միտս անփորձս, ոչ զայս ինչ ցուցանէ՝ եթէ անմիտս արար զնոսա, այլ եթող, ընդվայր եհար զանմիտսն՝ որք ինքեանք անձամբ եղեն անմիտ։

« Եւ կացուցից 'ի վերայ նոցա մանկունս իշխանս ». որ քան զանիշխանն լինել և՛ս վատթարագոյն և առաւել դժնդակագոյն է այս. զի որ իշխանն չունիցի՝ զրկեալ յառաջնորդութենէ. իսկ որ ստահակ իշխանն ունիցի, այնպէս համարէ՛ թէ քարավէժ լինիցի հանապազ։ Իսկ մանկունս ասելով՝ ոչ եթէ զտիս մանկութեան աղարտէ, այլ զյաճախ անմտութիւնս նոցա յայտ առնէ. քանզի գտանին և մանկունք իմաստունք, և ծերք անմիտք. այլ քանզի այս անօրագոյն իմն երեւի և այն յաճախագոյն, վասն այսորիկ անուամբ մանկութեանն՝ զանմտութիւն նշանակէ։ Այլ զի ոչ մանկութիւն ինչ առնէ և ոչ ծերութիւն, բայց միայն միտք հաստատունք, տե՛ս զՏիմոթէոս՝ զի մանուկ եհաս

1 Յոբ. Պակասի և զհանճարեղն զունկնդիր։

յառաջնորդութիւնն, և քան զբազում ծերս զգաստացեալս՝ առաւել ուղղեաց զեկեղեցիս։ Եւ Սողոմոնն մինչ երկոտասանամեան էր՝ ընդ Աստուծոյ խօսէր, և բազում համարձակութիւն առ ամենայն ազգս ունէր, զի ընդ ամենայն երկիր ելեալ էր համբաւ իմաստութեան[1] նորա, և այնպէս զի ոչ միայն արք, այլ և կանայք 'ի հեռաստանէ վասն այնր եկեթ գային, զի լուիցեն ինչ և ուսանիցին 'ի նորա իմաստուն բերանոյն. իսկ իբրև 'ի ծերութիւն եհաս, յոյժ յուլացեալ յառաքինութենէ։ Հայր սորա երանելին Դաւիթ զանարժան մեղսն՝ ոչ մինչ մանուկ էր և համբակ՝ գործեաց, այլ 'ի կատարեալ հասակի. մինչդեռ մանուկ մատաղ էր՝ արութիւն զարմանալի եցոյց, և զայլազգին կործանեաց, և բազում զգաստութիւն յանձին ունէր, և ոչ ինչ եղև նմա խափան մանկութիւնն առ ուղղութիւնն։ Եւ Երեմիա՝ որ զմանկութիւնն բարուրս առնէր՝ ոչ առ յանձն Աստուած, այլ առաքեաց առ ժողովուրդն Հրէից. Չէ ինձ, ասէ, խափան մանկութիւնդ, որովհետև միտք առողջ են։ Նոյն տիս էր և Դանիէլ և մանաւանդ և՛ս մատաղագոյն՝ յորժամ զծերսն դատեցաւ. և Յովսիա՝ և ոչ երկոտասանամեայ լեալ էր, յորժամ յաթոռ թագաւորութեանն նստաւ, և յայնժամ առաքինի էր, թէպէտ և յետոյ սկսաւ ծուլանալ, և սակաւ սակաւ լուծանիլ յառաքինութենէն։ Իսկ Յովսէփ չէ՞ր մատաղ յորժամ դժնդակ պատերազմին դիպէր, և ոչ ընդ արս տայր պատերազմ, այլ ընդ բռնութիւն մարմնոյն բնութեան։ Եւ 'ի միջոյ հնոցին բորբոքելոյ, 'ի պարսկաստանն աշխարհի, անշիջ և անարատ հանէր առաքինութիւնն՝ զերիս մատաղ մանկունսն. զի զոր օրինակ նոքա զմարմինս հանդերձ հերովք, առանց հոտոյ և առանց խանձատելոյ, իբրև յաղթերէ ն. ոչ իբրև 'ի հնոցէ հանէին, նոյնպէս և սա 'ի պիղծ ձեռաց կնոջն եգիպտացւոյ զերծանէր՝ առանց շօշափելոյ և բանս խօսելոյ, առանց տեսլեան մխասելոյ և՛ առանց հոտոցն իւղոց և խնկոցն, որք առաւել քան զործն և զձիւթ և զնաւթ՝ տոչորէին ըզբոց ցանկութեանն։ Մի եթէ մատաղ հասակաւն նե-

1 Յշ. Նիկողին վերջին բառքս օտար գրչաւ գրեալ են։

ղեցան ինչ 'ի ցանկութեանէն, որպէս այլ մարդիկ նեղին 'ի ցանկութիւնս: Եւ երեք մանկունքն 'ի նոյն տիս հասակաց, մինչ դեռ յանձել և 'ի ծաղկի էին, և որովայնի ճգանցն յաղթեցին և զերկիւղ մահու կոխեցին, և զօրացն և թագաւորին' որ բազմապատիկ զհընոցն ջեռուցանէին' յաղթեցին, և ոչ ինչ կարաց բռնանել նոցա, այլ կացին մնային հաստատուն յանձառայական միտսն ազատաբար: Եւ արդ ոչ եթէ զտիս մանկութեանն խոտիցէ զայն ասելով, քանզի Պաւղոս յորժամ ասէ. Մի մատաղատունկ, զի մի հպարտացեալ 'ի դատաստանս[1] անկանիցի սատանայի, ոչ զմատաղ հասակէ ինչ ասէ, այլ զխակ տնկոյ' որ այն ինչ յերախայից 'ի ձեռնադրութիւն մատչիցի. զի տնկեալն զերախայութեանն խրատ' մինչդեռ 'ի կնիքն ոք յօժարեցուցանէ' յայտ առնէ. ըստ այնմ, թէ Ես տնկեցի, Ապողոս ջուր ետ: Իսկ Քրիստոս զայսպիսի իմն տնկոյ ճառէ յասելն, եթէ Ամենայն տունկ որ ոչ 'ի Հօրէ իմմէ երկնաւորէ է տնկեալ' արմատաքի խլեսցի: Զի եթէ նորատունկ ասէ' մանուկ ոք կոչէր, ապա ոչ զՏիմոթէոս, որ այնչափ կարի մանուկ էր և այնպիսի մանուկ, քանզի ասէր' թէ Մի ոք զքո մանկութիւնդ արհամարհիցէ, յայնպիսի մեծ իշխանութիւն հասուցանէր, և այնչափ եկեղեցեաց հրամանատար առնէր:

« Խաբեբայք, ասէ, տիրեսցեն նոցա[2] »: Տեսանես, զի ոչ վայրապար զտիս մանկութեանն աղարտէ, այլ զապականեալ միտս, քանզի և յաջորդաւս յայտնագոյն առնէ: Իսկ խաբեբայս ասէ' զվրիպեցուցիչսն, զպատրիչսն, որ քծինս տալով և պատիր բանիւք խաբիցեն և առնիցեն սատանայի:

« Եւ կործանեսցի ժողովուրդն այր առ այր, և այր առ ընկեր »: Զոր օրինակ շինուածոց յորժամ պահանգքն, որ պինդ ունիցին զշինուածսն' փտիցին և ապականիցին, ապա որմքն 'ի հարկէ խարխարին և անկանին, նոյնպէս և նոքա ամենեքին զոր վերագոյնն ասացաք, յորժամ 'ի միջոյ բառնայցին իշխանքն, խորհըրդականքն, դատաւորքն, մարգարէքն, չիք ինչ այնուհետև որ զխառնիճաղանճն ունիցի:

1 Ցոր. Պակասէր 'ի դատաստանս:
2 Ցոր. Պակասէր տիրեսցեն նոցա:

« Ընդհարցի մանուկն ընդ ծերոյն և անարգն ընդ պատուականին ». այսինքն ընդդէմ դառնայցէ որդի ընդ հօր, անգոսնիցէ և արհամարհիցէ։ Այս և քան զհէնն ևս չար հէն է՝ յորժամ ծերն 'ի մանկանէն անարգիցի, և անարգք և վատթարք՝ զպատուականս և զմեծամեծս արհամարհիցեն. չիցէ ինչ ընդհատ 'ի հողմակոծեալ նաւէ քաղաք՝ որոյ այսպիսի կարգք իցեն։

« Չի բուռն հարկանիցէ այր զեղբօրէ իւրմէ կամ զընտանոյ հօր իւրոյ և ասիցէ. հանդերձք գոն քո, առաջնորդ լեր դու մեզ և կերակուր մեր առ 'ի քէն լիցի։ Պատասխանի տացէ յաւուր յայնմիկ և ասիցէ. ոչ եղէց առաջնորդ ժողովրդեանս այսմիկ »։ Ասէ ինձ այսպէս թուի թէ պաշարումն իմն դժնդակ է՝ որ յանհնարին նեղութիւնս իջուցանէ զնոսա, կամ առանց պաշարման՝ սով ինչ անհնարին, և բազում պիտոյից նուաղութիւն. և որպէս բազումք ըստ հասարակաց սովորութեանն, եթէ այնպիսի ինչ դէպք լինէին, զի ամենայն քաղաք դանգի միոջ վաճառէր, սակայն և ոչ այնպէս ոք կարէր գնել։ Եւ այսու զանհնարին աղքատութիւնն յայտ արարեալ, այսպէս մարգարէն ասէ, եթէ կապերտի միոջ և պատառոյ հացի վաճառեսցին իշխանութիւնք, սակայն ոչ ոք իցէ որ գնիցէ, զի այնպիսի նուաղութիւն եղիցի, ասէ, ամենայն պիտոյից։

« Չի լքաւ Երուսաղէմ ». ընդվայր հարաւ, աւարեցաւ, մերկ մնաց յԱստուծոյ խնամոցն։ « Եւ Հրէաստան կործանեցաւ 'ի միասին ». զի լցան խռովութեամբ և խուճապանօք և անկարգութեամբ։ « Եւ լեզուք նոցա անօրէնութեամբ 'ի Տեառնէ ապստամբեցին ». զի և պատճառք իսկ չարեաց՝ լեզուոյն անհամութիւնն է, որում և Ովսէէ մեղադիր լինի, և Մաղաքիա՝ թէ Որ զկծեցուցանէիք զԱստուած բանիւք ձերովք, և ասէիք՝ թէ իւ զկծեցուցաք զնա, յասելն ձեր՝ թէ ամենայն որ առնէ չար՝ բարի է առաջի Տեառն, և ընդ այն իսկ հաճեցաւ. և ո՞ւր է Աստուած արդարութեան։ Զայսն և սա բերեալ 'ի մէջ պատուհասէ, եթէ ոչ միայն անհաւանք են, և ոչ միայն զօրինօքն անցանեն, այլ պարտ էր գէթ այսու ամաչել և կորանալ,

և ընդ դետին մտանել. իսկ սոքա ևս քաջանան անցանել զառաջնովքն, և հանդերձ չառնելով զհրամայեալսն՝ բանս ևս ծանունս և անպարտս խօսին, իբրև ծառայ մի ստամբակ թողեալ զհրամանսն՝ և վիճիցի ևս ընդ տեառնն։

« Վասն որոյ այժմ խոնարհեցան փառք նոցա և ամօթ երեսաց նոցա եղև հակառակ նոցին »։ Դիւրձեալ զհանդերձելոց իբրև զանցելոց ճառէ, սովորութեամբ օրինաց մարգարէութեանցն վարեալ։ Խոնարհութիւն փառաց՝ զգերութիւնն կոչէ, քանզի ոչ սակաւ ինչ ամօթ էր, եթէ որք յաշտիճանս թագաւորաց էին, պիղծ և խուժադուժ մարդկան լինիցին վտարանդիք. սաստ ամօթ երեսաց՝ զայն որ 'ի մեղացն լինիցին՝ ասէ։ Եւ քանզի յառաջագոյն արարին յամօթ զանձինս գործովքն զոր գործէին, վասն այնորիկ և Աստուած 'ի փառացն մերժեաց զնոսա, և մատնեաց ոչ սակաւ պատժոց, զոր ինքեանք անձամբ անձանց ածէին. զի ոչ այնչափ միայն լինէին նախատինս, մինչ յօտար աշխարհին բնակէին, որպէս զի մինչ յիւրեանց քաղաքին էին և անօրինէին. զի յայնժամ և կասէին իսկ 'ի չարեաց, իսկ մինչդեռ յաշխարհին էին՝ 'ի մեծամեծ չարիս մտաբերէին։ Եւ արդ մեծ կրօնս դնէ նոցա մարգարէս և իրաւէ, զի յառաջ քան զտանջանս փախիցեն 'ի չարեաց. և արդ պջողեսցին և ամաչեսցեն, ոչ յորժամ թշնամիքն վտարանդեալ 'ի ծառայութիւն տանիցին, այլ յորժամ մեղաց բռնութիւնն վարիցէ զերի։

« Եւ զմեղս իւրեանց իբրև զՍոդոմայեցւոցն յայտնապէս պատմեցին »։ Զոր բազում անգամ ասացի և այժմ ասեմ, զի ցուցանիցէ զԱստուծոյ մարդասիրութիւնն, ոչ զոր կրելոց էին պատիժս՝ ասէ յառաջագոյն, այլ թէ որպիսի ինչ արժանի էին կրել. զի մեղքն նոցա հանգոյն Սոդոմայեցւոցն էին, և պատիժքն նուազագոյն քան զնոցայն, զի ոչ արմատաքի. խլեաց զնոսա, և ոչ զքաղաքն 'ի հիմանց բրեաց, և ոչ զմնացորդս ազգին բնաւին ջնջեաց։ Զյայտնապէսն պատմեցին՝ մարդկօրէն իմն ասէ. քանզի ոչ եթէ յայնժամ ուսանի Աստուած՝ յորժամ իրք ինչ գործիցին, որ զամենայն մինչ չև լեալ իցեն գիտէ, այլ զի զվշտաց յոլովու-

թիւն յայտ առնէ, որպէս և այլուր ասէ, թէ Ել աղաղակ չարութեան նոցա առ իս. իբր ոչ եթէ այնպէս յայտ առնիցէ, եթէ Աստուած հեռի ուրեք իցէ, և յերկինս միայն սահմանեալ, այլ զմեծութիւն մեղացն յայտ առնէ. նոյնպէս և աստ պատմեցին ասելով՝ զմեծութիւն [1] չարեացն ցուցանէ. զի զոսկաւ ինչ մեղս թաքուցանել մարթ է, իսկ բազում ինչ և մեծամեծք՝ ամենեցուն յայտնի և ծանօթք են, թէպէտ և չիցէ՝ որ ամբաստան լինիցի և յանդիմանեսցէ, ինքեանք զինքեանց պատմեն և յայտնի առնեն: Կամեցաւ մարգարէս ցուցանել զյաճախութիւն չարեացն, ասէ՝ յայտնապէս պատմեցին, այսինքն՝ մեծաւ համարձակութեամբ, յայտնի գործէին զչարիսն, ոչ ամաչէին և ոչ ակնածէին, այլ զբօսանս իմն զմեղսն առնէին:

« Վայ անձանց նոցա զի խորհեցան խորհուրդ չար առանձինն և ասեն. Եկայք կապեսցուք զարդարն՝ զի դժպհի եղև մեզ »: Յաճախութիւն չարեաց է և այս՝ յորժամ ոչ միայն զի մեղանչենն, և ոչ միայն զի յայտնի համարձակ մեղանչեն, այլ զի և զայնոսիկ որ յուղղութիւնս ինչ իցեն՝ հալածիցեն. զոր օրինակ որ՝ի մտաց անկեալ իցեն՝ բազում անգամ զբժիշկսն կոծկոծիցեն, նոյնպէս և նոքա որ զանբժշկական ախտն ծընկէին, զայրանային առ ցաւսն՝ արկանել զարդարն յարդարութենէ: Զի այնպէս իմն է առաքինութիւնն, և յայտնելովն միայն կարէ տրտմեցուցանել զայնոսիկ որ՝ի չարիսն կեցցեն. և այնպիսի իմն են չարիքն՝ և ոչ յորժամ յանդիմանիցի, բազում անգամ և՝ի գալստենէն տաղտկայ այնոցիկ որ արդարութեամբքն կամին կեալ: Եւ արդ կրկին իմն է ամբաստանութիւնն. նախ զի կապեն զարդարն, և ապա իբրև զդժպհի զոմն կապեն. յորժամ ոչ միայն ոք զօգտակարսն չընդունիցի, այլ և զվնասակարս եւս զօգտակարսն համարիցի, զի՞նչ ինչ այնուհետև ուղղութեան պատճառք ՝ի միջի գտանիցեն: Վասն որոյ իբրև ետես մարգարէն թէ յայնպէս վերջին կորուստ կործանեցան, ձայն առնոյր, ողբս յօրինէր. ոչ ամբաստանութեամբ ինչ

1 Յր. Զմեծութիւն: Ցն. Զգերազանցութիւն:

մեղադիր լինելով, այլ աշխարելով և ողբալով։ Վայ, ասէ, անձանց նոցա, և զայլոյն մի ըստ միոջէ իմաստութեամբ. զի խորհեցան, ասէ, զխորհուրդս չարս զանձանց. թէպէտ և իրքն կարծիցին թէ արդարոյն ինչ ստնանիցեն, այլ թէ ոք հաւաստեաւ քննիցէ՝ վնասն անդէն 'ի չարչարեալսն դառնայ։ Եւ անտի ուսանիմք զի արդարն թէպէտ և բազում անգամ վիշտս կրիցէ՝ ոչ ինչ վնասի, իսկ որք դժրեն՝ նոքա անձամբ անձին սրեն սուսեր. զոր օրինակ և սոքա արդարոյն վնաս ինչ ոչ արարին 'ի կապելն, և զանձինս 'ի խաւարի և յաւերակի նստուցին, վասն զի մերժեցին զճրագն յաչացն։

« Արդ. այսուհետև ըստ գործոց ձեռաց իւրեանց կերիցեն ». զի այնպիսի ինչ են չարիքն, զի ինքն անձամբ յանձնէ ունի զպատիժս. որպէս և աստ, ասէ, 'ի պտղոյ գործոց իւրեանց վայելեսցեն, զի ինքեանք հաստատեցին 'ի վերայ իւրեանց զաւերածն, և անձամբ զանձինս արարին քարավէժ։

« Վայ անօրինին, չարիք անցցեն ընդ նա ըստ գործոց ձեռաց իւրոց »։ Տեսանե՞ս, զի միշտ 'ի մէնջ է չափ պատժոցն, և 'ի մէնջ սկիզբն լինելոյ. վասն այսորիկ մարգարէս դարձեալ աշխարէ և ողբայ, զի ինքեանք զանձինս նենգեցին Հրէայք, և առաւել քան զամենայն զդժնդակ պատերազմն, անձամբ եղծին զանձանց փրկութիւնն, քան զոր ոչ այլ ինչ մեծ լինիցի թշուառութիւն։

« Ժողովուրդ իմ, հարկահանք ձեր ճռաքաղ առնեն զձեզ »։ Այս իմաստուն վարդապետի է, յորժամ բանին բազում դէմս դնիցէ. զի ոչ միայն ըղխիստն և ոչ միայն զկակուղն, այլ մերթ զայն, մերթ զայս, զի բազմադիմի բանիւն յաճախիցէ շահ օգտի. վասն այնորիկ մարգարէս ոչ միայն պատուհասէ, այլ և ողբայ, որ ծանրագոյն է քան զպատուհասն և սակաւ ինչ ազդէ զցաւն։ Եւ զարմանք այս են, զի վէրքն հատած 'ի խոր է, և ցաւքն մեղմագոյնք. և ոչ միայն ողբայ՝ այլ և բժշկէ. և այլ իմն զվարդապետութեանն՝ զարմանալի ցուցանէ օրինակ. և զի՞նչ իցէ. զի ոչ ամենեցուն միանգամայն սաստէ, այլ քակէ զժողովուրդն յիշխանացն, և 'ի նոցա գլուխն թափէ զպատուհասն, և այսպէս իմն շահաւոր ցուցանէ զօրինակս.

իբրև զՄովսէսն բազում յաճախութեամբ առնել զնոյնս. զի սա թէպէտ և ամենեքեան ընդ պատժովք էին, զիշխանսն ևեթ պատուհասէ. և Մովսէս՝ թէպէտ և զժողովուրդն եգիտ գործեալ զգործ անօրէնութեան, զԱհարոնն պատուհասէր, որ չէր ինչ այնպիսի պատուհասից արժանի, թողեալ զայնոսիկ՝ որ բուն պատժապարտքն էին, և յայն՝ որ ոչ այնպէս մնասակար էր՝ ածէր զմեղադրութիւնն, և պատուհասիւքն՝ որովք զիրագէտ չարեացն նոցա պատուհասէր, մեծամեծ պատիժս 'ի վերայ ամպարշտելոցն ածէր, որ և եղև իսկ. զի առ նոսա և ոչ բանս ծախեաց որպէս առ Ահարոնին, այլ զարդիւնս եցոյց. զի այնչափ հազարս իբրև զմի մարդ տապաստ արկանէր. և ահ և երկիւղ նոքօք ամենայն բանակին արկանէր: Զի յառաջագոյն տեսեալ Մովսէսի, մինչդեռ իջանէր 'ի լեռնէն, զտախտակսն վաղվաղակի 'ի բաց ընկենոյր, և զԱհարոնն պատուհասել մատչէր, եթէ Զի՞ արար քեզ ժողովուրդն, զի արարեր ոտնհար թշնամեացն. այնպէս և մարգարէս նմանել սրբոյն երկուք օրինակօք. ոչ միայն պատուհասէր յայնժամ Մովսէս, այլ և վշտակից լինէր, և ապա զպատուհասն 'ի մէջ բերէր. նոյնպէս և սա երկոքումբք նմանող լինի Մովսէսի: « Ժողովուրդ իմ, հարկահանք ձեր ճռաքաղ առնեն զձեզ ». և զիշխանս պատուհասէ և ժողովրդեանն վշտակից լինի: Իսկ հարկահանս աստ թուի ինձ թէ ոչ միայն զհարկահանսն կոչէ, այլ և զյափշտակողսն, որք անիրաւութեամբ մերկանային զժողովուրդն: Իսկ եթէ և զհարկահանացն իսկ ճառիցէ, սակայն և աստ տես զիմաստութիւնն մարգարէին, զի ոչ զարդար հարկն խօսէ, այլ զաւելորդն և զանչափն. քանզի ոչ ասէ՝ եթէ հարկս հանեն, այլ զի ճռաքաղ առնեն, այս ինքն է մերկանան, ընչաթափ առնեն: Ի դէմս հարկահանութեան զայս բան փոփոխեալ յորջորջումն այգեկըթաց և հնձողաց ճառէ, զի ճռաքաղն և հասկաքաղն առնել այն է՝ զի և զմնացեալն ևս պտուղ և զհասկն 'ի կթոց և 'ի հնձոց որոնիցեն, և մի ինչ ամենևին թողուցուն յանդին, զոր և նոքայն իսկ առնէին, զբարին զամենայն յափշտակէին և մերկանային զնոսա:

« Որք պահանջենն զձեզ՝ տիրեն 'ի վերայ ձեր ». որ

Եւս անհնարին դժնդակագոյն է, զի ոչ միայն յագահութեան կային, այլ եւս յառաջ ձգէին զբռնաւորութիւնն, զի զազատս եւս 'ի ծառայութիւն արկանէին։ «Ժողովուրդ իմ, որ երանեն զձեզ՝ դոքա խաբեն զձեզ»։ Աստ թուի ինձ թէ զսուտ մարգարէիցն ակնարկէ, և կամ զայնցանէ՝ որք բանիւք պաշտօն առնէին, զի մեծամեծ փառք և յայսպիսի իմն ստկանաց լինէին, վասն որոյ յարէ 'ի նոյն, թէ «Զշաւիղս ոտից ձերոց խռովեցուցանեն». ոչ տան թոյլ ուղիղ գնալ, կամակորեն, մեղկեն, 'ի ծուլութիւնս դարձուցանեն։

«Այլ հասանէ Տէր ինքնին յատեան դատաստանի, և դատի զժողովուրդս իւր, ինքն Տէր 'ի դատ եկեսցէ ընդ ծերս ժողովրդեան իւրոյ և ընդ իշխանս նոցա»։ Տակաւին 'ի նմին ուղղութեան կայ. զի 'ի ժողովրդենէն՝ առ ծերունիսն և առ իշխանսն դարձուցանէ ըզսաստն, և ահագին իմն տայ զպատգամսն, իւրովի զԱստուած յատեան մատուցանէ, և զժողովրդոցն մեղս յիշխանացն պահանջէ։ Վասն որոյ ասէ. «Այլ արդ հասանէ Տէր ինքնին յատեան դատաստանի». քանզի պատուհասն ծախեաց զբանսն, և անհանճարացն ոչ այնպէս պատուհասքն ծանունք թուին՝ որպէս տանջանքն ահագինք, յայտնէ եթէ ոչ բանից եւեթ սպառնալիք են, այլ և արդեանց պահանջմունք, նորին իւրովին 'ի դատ մատուցեալ պահանջէ, և ըստ նոցա զիջանելն՝ զԱստուծոյ զբազում զերկայնմտութիւնն յայտ առնէ, և մորմոքեցուցանիցէ բանիւք, զի մնացեալ աւելի ահ և երկիւղ 'ի միտս արկանիցէ, ոչ վասն այնր միայն որ վերագոյնն ասացի, թէ 'ի ժողովրդենէն դարձեալ զիշխանսն և զծերսն պատուհասէ, այլ և ուսուցանէ զամենեսեան թէ քան ռամկին՝ իշխանացն պատիժքն ծանունք են. զի մին վասն իւր միայն պատժի, և միւսն վասն իւր և վասն ժողովրդեանն՝ որ նմա յանձն իցէ՝ տացէ համարս։ Զի ծերքն ոչ այնպէս յանիրաւի ինչ պահանջին, զի մանկտոյն՝ սկիզբն կենաց, ծերոցն՝ կատարած հասակաց է. արժանի է և մանուկն պատուհասից վասն անարժան ինչ մեղաց, իսկ որ կատարեալն իցէ հասակաւ և յուզից եռանդման մանկութեան կասեալ, այնպիսի ինչ վտանգ ինչ իցէ, նմա

դիւրին է կարգացն ուղղութիւն, զի ընդ բազում իրս և անցեալ իցէ. ապա եթէ 'ի լկտութիւնս ինչ անառակութեանց 'ի կատարեալ հասակին անկանիցի, ևս աւելագոյն պատժոց արժանի է, զի 'ի ծերութեանն՝ զխակութեան գործ եցոյց։

« Դուք մի՛ հրկէզ արարէք զայգի իմ, և յափշտակութիւն տնանկին է 'ի տունս ձեր »։ Ամենայն ուրեք Աստուծոյ փոյթ վասն զրկելոց է, և զաղքատաց նեղութիւն՝ գրեթէ յիւր դէմս ընդունի, և է ուրեք զի և աւելի յայնժամ բարկանայ՝ յորժամ 'ի ծառայակիցսն իւրեանց մեղանչիցեն մեղանչականքն. և յայտ այնու է, յորժամ զպոռնիկ ոք կին ունիցի՝ հանել հրամայէ, թէպէտ և զմի մեղսն 'ի նմա մեղանչիցեն, և զմիւսն մարդիկ առ մարդիկ. և զպատարագն 'ի վերայ սեղանոյն թողուլ հրամայէ, զի նախ երթիցէ ընդ ընկերին հաշտեսցի, և ապա եկեալ՝ նմա պատարագ մատուսցէ. և որում զբազում տաղանդն էր տուեալ, որ են լտերք, և պահանջէր վասն իւր, և ոչ չար անգամ կոչեաց զծառայն, այլ վաղվաղակի հաշտեցաւ և զպարտսն եթող. իսկ յորժամ պարտապանն զհարիւր դահեկանն 'ի ծառայակցէն պահանջէր, և չար ծառայ կոչէր և դահճաց մատնէր, և չտայր թոյլ մինչ զամենայն պարտսն պահանջէր. և յորժամ ինքնին Քրիստոս զապտակն առնոյր 'ի ծառայէն, ոչ ինչ զայրանայր ծառային, այլ մեղմագոյնս տայր պատասխանի. Թէ չար ինչ խօսեցայ, վկայեա վասն չարին, ապա թէ բարի խօսեցայ, ընդէ՞ր հարկանես զիս։ Իսկ յորժամ Յորոբովամ ձգեաց զձեռն ունել զմարգարէն, գօսացոյց զձեռն՝ զի զքեզ խրատեսցէ. զի յորժամ քո ինչ իրք իցեն, զայն վրէժսն մի խնդրեր, և յորժամ տէրունի ինչ իրք իցեն, անդ մահու չափ մարտնչիցիս։ Վասն որոյ և յօրէնսն ուսուցանէ, զի թէպէտ և երկրորդ պատուիրան իցէ զընկերն սիրել, սակայն առաջնոյն նման է. որպէս զառաջինն զառաւելն՝ մեծաւ զգուշութեամբ պատուիրէ, նոյնպէս և զերկրորդն. զի անդ ասէ, թէ Յամենայն սրտէ քումմէ և յամենայն մտաց քոց սիրեսցես զտէր Աստուած քո, և աստ՝ թէ Զընկերն իբրև զանձն։ Եւ ամենայն ուստեք է իմանալ եթէ որպիսի՛ ինչ սէր հրամայէ ունել ընդ միմեանս, որպէս և

տաստ ահագինս իմն բարբառի, եթէ «Դուք ընդէ՞ր հրկեզ արարէք զայգի իմ». զոր օրինակ հէն և այլազգիք անողորմ լինիցին, նոյնպէս և դուք առ ձեր ընտանիսն անողորմ գտայք։ Այգի՝ զժողովուրդն կոչէ վասն բազում դարմանոցն՝ զոր յերկնից դարմանեաց զնոսա. և մեծ իմն ցուցանէ զպատուհասն. ոչ, ասէ, զծառայակիցս ձեր հրկեզ արարէք և ոչ զեղբարս կամ զընկերս, այլ զիմդ, ասէ, կորուսէք, զիմդ աւերեցէք. և ապա զօրինակ հրկիզութեանն յայտ առնէ։

«Յափշտակութիւն, ասէ, տնանկին է 'ի տունս ձեր». զի ոչ այնչափ ապականէ հուր զայգիս, որպէս անիրաւութիւն զաղքատս և զտնանկս. քան զամենայն մահ ևս դառնագոյն է, ամենայն ուրեք չար է յափշտակութիւն, առաւել ևս յայնժամ՝ յորժամ աղքատ իցեն որ յափշտակիցին. և ոչ միայն սաստէ, այլ և ուղղել կամի զվնասն։

«Դուք ընդէ՞ր զրկէք, ասէ, զժողովուրդ իմ». որպէս անդ ասէ զայգիդ իմ, նոյնպէս աստ՝ զժողովուրդ իմ։ «Եւ զերեսս տնանկաց ամաչեցուցանէք». զորս կանգնել պարտ էր՝ գլորէին, զորս յարուցանել՝ կործանէին, զի հանդերձ յափշտակութեամբն և այպն ևս առնէին, և քան զծառայս ևս չար կափէին. ընդ ագահութեանն և ամբարտաւանէին ևս, քանզի լծակից իմն են ամբարտաւանութիւն և ագահութեանն ախտ. զի որչափ մեծանայ ոք, այնչափ աճեցաւ հպարտութիւնն։

«Այսպէս ասէ Տէր զօրութեանց». այսինքն է հրեշտակաց, հրեշտակապետաց, վերնոց զօրութեանց ամենեցունց. յերկրէ յերկինս առաքէ զլուրն, զվերին մեծապատիւ թագաւորութեան ձայնս 'ի միտ արկանէ, զի գէթ այնու զարթուցանիցէ առնել զգաստագոյնս, առ 'ի ցուցանել թէ երկայնամտութեամբ ներէ և ոչ 'ի տկարութենէ արգելու։ «Այսպէս ասէ Տէր զօրութեանց. փոխանակ զի հպարտացան դստերք ձեր և գնային 'ի բարձր պարանոց, յոնովք ակնարկէին, և 'ի գնացս իւրեանց քարշէին զստորոտս իւրեանց, և ոտիւք կաքաւէին։ Եւ խոնարհեցուցանէ Աստուած զիշխանս դստեր Սիովնի, և մերկասցէ Տէր զզարդ նոցա յաւուր յայնմիկ, և հանցէ· զփառս հան-

դերձից նոցա և զզարդս նոցա, և զհիւսս և զծամակալս և զպսակակալս և զմահիկս նոցա և զպաճուճանս երեսաց նոցա, զքօղեայս և զապարանջանս և զմեհեանդս նոցա, զգինդս և զմատանիս և զկշտապանակս իւրեանց, զերզբածիրանին և զմիջնածիրանին, զառանին արկանելիս, և զարտաքին խլայնեռս լակոնացիս, զծիրանին և զկարմիրն, զանհեզն, զոսկեհուռն, զերկնագոյնն, զշղարշատեան, զճամկաւորն, զոսկեճամուկն, զոսկետառուննն և զկապուտակագործն։ Եւ եղիցի փոխանակ հոտոցն անուշից՝ փոշի, և փոխանակ կամարացն՝ չուան գօտի, և փոխանակ զարդուգլխոցն՝ կնտութիւնն, վասն գործոց քոց. փոխանակ ոսկեհուռ դիպակին՝ քուրձ զգեցցիս. և այս վասն գործոց քոց։ Եւ որդին քո գեղեցիկ զոր սիրես՝ սրով մեռցի. հզօրքն ձեր 'ի սուր անկցին և խոնարհեսցին, և սուգ զգեսցին սապատք զարդուց ձերոց. և մնասջիր միայն և յերկիր կործանեսջիր[1] »։

Նոր իմն իրս արար զայս մարգարէս՝ զի այսչափ երկայնեաց զբանս առ կանայս, զոր ոչ երբեք գտանեմք այսպիսի ինչ 'ի գիրս. և արդ զի՞նչ պատճառք իցեն նոր իրայս։ Ինձ այսպէս թուի, թէ բազում իմն աւելի պերճանք էին 'ի ժամանակին կանանցն, այնպէս զի և զարամբք ելանէին չարիք նոցա, վասն որոյ և ուրոյն առ նոսա ձգէ զսաստիկ պատուհասն. և իբրև յերեսաց Աստուծոյ բարբառի առ նոսա ահագինս։ « Այսպէս ասէ բա Տէր կամարար. փոխանակ զի հպարտացան դստերք Սիովնի, և գնացին 'ի բարձր պարանոցս ». զգլխաւոր չարեաց նոցա ամբաստանէ՝ զամբարտաւանութիւն և զհպարտութիւն, զի ամենայն ուրեք նոքա են անհնարին չարիք, և մանաւանդ յորժամ 'ի կանանց ազգի ծնանիցին. քանզի թեթևամիտ և մեղկախորհուրդք են, յորժամ մտանիցէ հպարտութիւն՝ վաղվաղակի կործանէ զնոսա յամենայն չարիս։ Թուի ինձ թէ առ Երուսաղեմացւոց կանայսն ձգէ զբանսն, քանզի և դստերս Սիովնի կոչէ զնոսա։ « Եւ գնացին, ասէ, 'ի

[1] Յօբ. Յաւելեալ կայ աստէն ընդ բնաբանիս՝ բովանդակ Դ գլուխն Յովսայեայ, որ չիք 'ի Յօ. և քանզի յօբ. 'ի կարգի մեկնութեան եդեալ է ըստ Յօ. վասն որոյ իբրև աւելորդ իմն 'ի բաց թողաք աստէն։

բարձր պարանոցս»։ Հեգնէ աստ և զկանացի բարսն. յայտ առնէ՝ թէ և 'ի միտս անգամ չժուժան, այլ յայտ յանդիման մարմնոյն ձեմելեօքն ցուցանեն զհըպարտութիւնն. ոչ միայն յամբարտաւանութիւն, այլ զի և ձեմելովն ևս յանառակութիւնս կործանեցան՝ բամբասէ և, զայս յայտ առնէ յաջորդաւն. «Ցօնովք, ասէ, ակնարկէին». որ պոռնիկ կանանց իմն սեփական նշանակ է, զայս յեղյեղուլ, և զշքթանս և զշռայլութիւնս ցուցանել, ձեմել, ձօձել, զհաստակօքն նայել։ «Եւ 'ի գնացս իւրեանց քարշէին զստորոտս իւրեանց», որ հտպիտ անառակութեան նշանակ է, զի մեղկին իմն և երկայնեն զստորոտս իւրեանց. զայս և յարտաքնոցն յերգ արկեալ մրմնջէ. Զիւր զոտս և զհանդերձսն, ասէ, զպճղմամբքն քարշէր։ «Եւ ոտիւք կաքաւէին». և այս ոչ ինչ սակաւ լկտութեան օրինակ է, զի ամենևին և աչօք և հանդերձիւք և ոտիւք և գնացիւք մերկացեալ զցածութիւն՝ 'ի լկտութիւն կործանէին։ Զի բարուց ոգւոցն 'ի ներքս բնակելոց՝ իբրև քարոզք իմն են անդամքն հտպիտ խաղալիկք. զի զոր օրինակ նկարչաց խառնեալ զերանգս՝ զինչ կամիցին պատկեր նկարել նկարիցեն, նոյնպէս և անդամոց մարմնոց խաղալիկք՝ զբարս մտացն հաւաստեաւ նկարեն, և յայտ յանդիման ամենեցուն ցուցանեն. վասն որոյ և Իմաստունն ասէ, թէ Հանդերձ մարդոյ և ծաղր շրթանց և գնացք ոտից՝ գուշակեն զնմանէն։

« Եւ խոնարհեցուսցէ Տէր զիշխանս զդստերս Սիոնի. և մերկասցի զզարդ նոցա յաւուր յայնմիկ, և հանցէ Տէր զփառս հանդերձից նոցա»։ Եւ արդ երկուս մնասս դնէ, զհպարտութիւնն և զմարմնոյն լկտութիւնն. և ըստ իւրաքանչիւր երկոցունց բերէ դեղս 'ի մէջ. առաջնոյն ըստ առաջնումն, և վերջնոյն ըստ նմին. հպարտութեանն՝ զխոնարհութիւնն, պաճուճանացն՝ զմերկանալն զարդուցն. զի յորժամ հէնն գայցէ, ասէ, ամենայն միանգամայն կորիցէ. որք խորշէին 'ի պատուհասից և զղջանայցեն՝ ապրիցեն 'ի պատժոյն, և որք պերճացեալք միշտ գգուէին 'ի փափկութիւնս, վարեալ 'ի գերութեան՝ մերկասցին յերջանիկ փափկութեանցն։ Զի ծանրագոյն առնիցէ զբանն և կսկծեցուցանիցէ՝ մի ըստ միոջէ 'ի թիւ արկեալ ուր-

ուրոյն թուէ զզարդսն զգլխոց և զոտից և զայլոց ան֊
դամոց իւրաքանչիւր. և ևս յառաջ մատուցեալ՝ և ըղ֊
ձանցն զարդարանս համարի. զի ոչ միայն զմարմինս
պաճուճէին, այլ և 'ի տունս զօրմն զարդարէին, յոչ֊
ինչ պէտս ծախեալ զոսկին. և զծամն հիւսէին որ են
թևք ամեն [1] ամենայն պատրանացն, զի ամենևին
չքթիցին. վասն որոյ ասէ, թէ «Մերկասցէ զփառս
հանդերձից նոցա և զզարդ նոցա և զհիւսս և զծա֊
մակալս և զպսակակալս», որ պսակ իմն զարդ զգլխոյն
պատէին. մահիկք՝ լուսնաձև իմն զարդ պարանոցացն
են: «Եւ զպաճուճանս երեսաց նոցա», թուի ինձ թէ
զսնգոյր և զծարիր՝ որով զաչս և զերեսս պաճուճէին.
քօղէք՝ որ արմկանց վերոյ զոսկի ապարանջան 'ի տիգմն
արկանեն, և ապարանջանքն որ 'ի դաստակ ձեռացն:
«Եւ զմեհեանդս և զգինդս և զմատանիս և զկշտամ֊
բանեակս և զձեղանակս, զեզքածիրանին և զմիջնա֊
ծիրանին զառտնին արկանելիս և զարտաքին խլա֊
տեռս լակոտնացիս»: Վասն զի այնպիսի իմն փոյթ էր
նոցա 'ի լկտութիւնս, զի ոչ միայն որ յաշխարհին հան֊
դերձք գտանէին, այլ և 'ի հեռաստանէ և յօտար աշ֊
խարհէ ժողովել, զի ընդ ծով յօտար աշխարհ յղէին
և բերէին. քանզի մեծ վայրք 'ի միջի են ընդ Պաղես֊
տինացւոց աշխարհն և ընդ Ալակեդոնացիս, և ծով
մեծ և լայնատարած: Քանզի ոչ վայրապար զանուն
ազգին յիշէ, ուստի այնպիսի հանդերձք գային. և զի
ևս առաւել զզարդասէր լկտութիւնս նոցա յանդիմա֊
նեսցէ, «Զբեհեզեղէնն, ասէ, և զերկնագոյնն, զկար֊
միրն և զծիրանին, զբեհեզն ոսկեհուռ, զկապուտա֊
կագործն և զշաղաշատեռն, զոսկեճամուկն և զոս֊
կէտառուննս». զի ոչ ուրեք հանդերձս թողուին, և ոչ
զարդս ազգի ազգիս, եթէ ոչ իւրեանց ազտեղու֊
թեանցն առնէին պարար, առ մոլուցս անհնարին ցան֊
կութեանց: Եւ այսպիսի իրք եթէ յառաջ քան ըղ֊
շնորհսն և պատուհասից արժանի են, մերքս որպիսում
ներելոյ թողութեան լինիցին արժանի, որք յերկինս
են հրաւիրեալ և 'ի վերին կոչումն առաքինութեանց,
որ հրեշտակաց նմանել, զի առաւել քաջութեամբք

1 Այսպէս յօրինակին:

յաղթեսցեն լկտութեանցն։ Եւ այս ևս չար, զի մեղս
ևս չհամարին զլկտի պաճուճանսն. վասն որոյ և առ
ստոա, որպէս և առ նոսա, 'ի դէպ ելանէ բան մարգա-
րէիս, թէ «Եղիցի ձեզ փոխանակ հոտոցն անուշից՝ փո-
շի»։ Տեսանե՞ս, և զիարդ զօծութիւն իւղոյն խոտէ, և
մեծամեծ պատիժս ընդ այն սպառնայ. զի փոշի՝ զնոյն
նշանակէ յորժամ քաղաքն աւերեցաւ, և նոքա 'ի փո-
շոյ աւերածոյն հեղձնուլին, և զհիւնին գալ. քանզի հրով
և երկաթով բրէին զատակ քաղաքին. զի զկեանս աւե-
րեցին և զկէսն հրձիգ արարին։ Եւ զայն յառաջագոյն
ասէր մարգարէն, թէ «Փոխանակ հոտոցն անուշից՝
փոշի, և փոխանակ կամարացն՝ չուան գօտի»։ Յառաջա-
գոյն զգերութեանն նշանս տայր, և զանողորմ գերեվա-
րայն։ «Եւ փոխանակ զարդուց՝ գլխոյն կնդութիւն».
զի առ վիշտսն հերքն թափէին. կամ գերիչք կտրէին
և առնէին նշաւակ, կամ ինքեանք զանձինս. քանզի
սովորութիւն էր առաջնոցն 'ի սուգ և 'ի վիշտս՝ կտրել
կամ գերծուլ, որպէս և Յովբ, յորժամ լուաւ զգոյժ
որդւոցն՝ զհերսն հատանէր, զմորուսն գերծոյր։ Եւ
մատուցեալ ևս յառաջ մարգարէիս, քրձազգած հրա-
մայէ 'ի սուգ մտանել, և խզել և գերծուլ. որպէս և
միւս մարգարէ ասէ, եթէ Խզեա՛ց և գերծի՛ր 'ի վե-
րայ փափուկ որդւոյն քոյ։

«Եւ փոխանակ ոսկեհուռ դիպակագործ պատմու-
ճանիդ՝ քուրձ զգեցիր»։ Եւ արդ չթուիցե՞ն այս ա-
հագին և անհնարին աղէտք։ Այլ մեզ ոչ այնպիսի
միայն պատիժք են. այլ և որդնն թունաւոր և խա-
ւարն անվախճան սպառնացեալ՝ առնուցու, որպէս նո-
ցա գերութիւնն՝ փոխանակ զարդուցն և պաճուճա-
նացն։ Եւ զի յայտ յանդիմանն ընդ այսպիսի մեղաց ած
զպատիժս պատուհասից, լուր զիարդ յորժամ մի ըստ
միոջէ թուեաց զամենայն, ածէ յարէ 'ի նոյն զպատ-
ճառսն. «Այս ամենայն քեզ, ասէ, վասն զարդուց պա-
ճուճանաց քոց»։ Զի եթէ Հրէից կանայք զարդասէրք՝
այնպիսի պատիժս կրեցին, զի և քաղաքն նոցա 'ի հի-
մանէ բրեցան, և յետ այնչափ փափկութեանց՝ գերիք
'ի ստրկութիւն չոգան յօտար երկիր, և սովք և սրոյ
և պէսպէս մահուց մատնեցան, զիա՞րդ ոչ իցէ յայտ,
թէ և մեք աւելի ևս պատիժս եմք կրելոց, եթէ նովին

ախտիւ ախտանայցեմք. զի որպէս պատիւքն մեր մեծամեծք են, նոյնպէս և պատիժքն սաստիկք: Ապա եթէ ոք կին պաճուճող վայրապարազարդ՝ ոչինչ պատիժս կրեաց, մի ինչ յայն ապաստան լինիցիս. զի սովորութիւն է Աստուծոյ այնպէս զպատիժսն իւր կարգել. ընդ մի ոք և ընդ երկուս՝ աստէն հանէ, և զի նոքովք զայլս ամենեսեան խրատեսցէ: Եւ զի յայտնագոյն եւս արարից զբանս, մեղան Սոդոմացիքն զայնպիսի անհնարին մեղանս, և ետուն վրէժս բարկութեան հրոյն, որ 'ի վերայ տեղայր առ 'ի սատակումն քաղաքացն և մարդկանն, և առ հասարակ ամենայն երկրին. և արդ զինչ ասիցեմ, և յետ նոցա ո՞չ ոք յանդըգնեցաւ գործել. այլ բազումք բազում անգամ ընդ ամենայն տիեզերս. և ընդէ՞ր ոչ կրեցին զնոյն պատիժս. քանզի պահեալ են այլում ևս մեծ պատժոց: Վասն այնորիկ միանգամ վասն այնպիսի չարեաց ած Աստուած բարկութիւն և լռեաց. զի որք զնոյն գործ ժպրհիցին գործել, թէպէտ և աստ ոչ տայցեն զտոկոսիս, գիտասցեն ստոյգ թէ չեն ապրելոց անդ: Զի՞արդ մարթիցի լինել իրացն, թէ որք յառաջ քան զշնորհսն և զօրէնսն էին, և 'ի մարգարէիցն ինչ չէր լուեալ, կրեցին զայնպիսի դառն պատիժս վասն այնպիսի մեղաց, իսկ որք յետ նոցա, այսչափ և այսպիսի խնամովք վայելեալ, և զնոսա օրինակ ունիցին առ 'ի զգաստանալ, որ և անհնարին իսկ առնէ ապրել 'ի պատժոց զայնոսիկ՝ որ զնոյն գործիցեն:

Եւ եթէ ասիցես թէ ընդէ՞ր և նոքա զնոյն պատիժս ոչ կրեցին, գիտասջիր զի ևս մեծամեծ պատժոց պահեալ էին. զի ևս անհնարին պատիժք կան մնան այնպիսեացն՝ լուր Քրիստոսի որ ասէրն, թէ Դիւրագոյն լինիցի երկրին Սոդովմայեցւոց և Գումորացւոցն յաւուրն դատաստանի, քան քաղաքին այնմիկ: Որպէս զի թէ և ոչինչ պատիժս կրեցին լկտէզարդ ընդվայրապաճոյճ կանայք, որպէս և Հրէից զարդասէր կանայքն, յայն ինչ ապաստան մի լինիցին, զի երկայնմտութիւնն՝ ևս առաւել բորբոքէ զհնոցն հըրոյն գեհենին: Այսպիսի ինչ Անանիայ և կնոջ իւրում Սափիրայ դիպեցաւ. զի 'ի սկզբան քարոզութեանն գողացան յընչիցն, և մեռան սատակամահ. և բազումք

յետ նոցա զնոյն յանդգնութիւնս յանդգնէին, և ոչինչ պատժէին։ Զիա՞րդ պատշաճ իցէ արդար դատաւորին՝ որ ամենեցուն հասարակաց ըստ իւրաքանչիւր պատշաճիցն հատուցանէ. եթէ զսակաւամեղսն տանջեաց, և մեծամեղացն ներիցէ. և ո՞չ ապաքէն յայտ է թէ որոշեաց օր մի՝ յորում դատելոց է զտիեզերս միանգամայն։ Վասն այնորիկ յապաղէ զպատիժս՝ զի երկայնմտութեամբն լինիցին պիտանիք. ապա եթէ ի նմին յանցանս կայցեն մնայցեն՝ և՛ս մեծամեծ պատիժս կրեսցեն։ Արդ յորժամ զնոյն մեղս՝ զոր այլոց վաղուց գործեալ իցէ՝ գործիցեմք, մի ինչ յայն ապաստան լեալ խնդասցուք, այլ առաւել ևս զահի հարկանիցիմք, քանզի իբրև զօրէնս ինչ զնոցա պատիժս հաստատեաց ամենեցունն Աստուած. որ և խրատէ և ուսուցանէ՝ թէ վասն այնորիկ զայն՝ որ յառաջ ինչ գործեալ մեղս տանջեցի, զի դու այնպիսի ինչ մի գործիցես. և եթէ գործիցես, և՛ս վաղվաղակի դառնայցես. ապա թէ ոչ՝ գիտասջիր, զի որք զայնպիսի ինչ մեղս գործիցեն, որովք պատժեցան առաջինքն, և որք յետ նոցա զնոյն գործիցեն՝ նոցին պատժոց արժանի են, թէպէտ և առ ժամայն վաղվաղակի ոչ գայցեն 'ի վերայ։

Եւ յայսպիսի բանս ոչ վայրապար յամեցի, այլ զի չար ցաւք մտին 'ի տունս արանց առ 'ի կանանց հրապիտ պերճանաց և զարդասիրիկ ցանկութեանց, որ և զընչասիրութեանն բռնաւորութիւն պարարէ, ուր և արանց վաստակք ընդ վայր ծախեալ կորնչին, և հանապազորդ կագոյ և կռուոյ և չարահաւանութեան են պատճառք, ուստի և զաղքատսն յորովայնն ամանան։ Քանզի յորժամ կին մարդ զամենայն ինչ զառնն առեալ՝ զանդամօքն վառիցէ, տառապանք են առնն և ընչիցն ծախք և թշնամանք՝ կնոջն անուղղայ զարդարանքն։ Զի յորժամ զոսկին 'ի գլուխ և յականջս և 'ի բազուկս վառիցէ, կարճին այնուհետև ձեռք առնն՝ յողորմութիւնս առնելոյ և 'ի տնանկացն խնամածութենէ. և բազում և այլ մեղք ծնանին յայսպիսի իրաց։ Այլ զայս թողեալ, զի նոքա զգայցեն վիրացն՝ որք այսպիսի ախտիւ ջերանիցին, մեք զկարգ ընթերցուածոյ՝ յորում էաքն՝ յառաջ վարեսցուք։

Ցետ յայտ առնելոյ զնշանս գերութեանն, և ասելոյ, եթէ՝ այդ քեզ փոխանակ զարդուն պաճուճանաց է, ապա և զանհնարին վիշտսն ասէ ։ « Եւ որդին քո, ասէ, գեղեցիկ զոր սիրես՝ սրով մեռցի, և հզօրքն ձեր 'ի սուր անկանիցին »։ Այս և քան զգերութիւնն ևս դժըն-դակագոյն. զի են կեանք՝ որ քան զմահ ևս դառնա-գոյն են. յորժամ հանդերձ ծառայութեամբ՝ և զտա-րաժամ սուգն ևս սգայցեն. միտ դիր, որչափ ևս յաճա-խագոյն վիշտք իցեն և առանձինն դառնութիւն, զի մի 'ի միոյ վերայ հասանէին. եթէ 'ի գերութեան լի-նիցի և այն անհնարին աղէտք են, և եթէ անդէն 'ի քաղաքին այնպիսի սուգ, սակայն ևս քան զմահ դառ-նագոյն են կեանքն։ Այլ այժմ, ասէ, երկոքեան մօտ առ միմեանս լինիցին. և մանաւանդ ոչ միայն երկուս, այլ և երիս և չորս աղէտս պարտ է անուանել զայն-պիսի եղեռն, զի և որդին մեռանի և գեղեցիկն և սիրելին, և այն՝ սրով 'ի ձեռաց այլազգեաց. և ոչ ըստ հասարակաց բնութեան վախճանիցի 'ի կենաց. և հանդերձ նոքիմք և ամենեքեան որ 'ի կատարեալ հա-սակի իցեն՝ չունիցին ինչ յոյս բարութեան, որ մարդ-կեղէն բնութեանն զօրավիգն օգնականութիւնն իցէ։

« Եւ խոնարհեսցին և սուգ զգեցցին սապատք զար-դուց ձերոց, և մնասջիր միայն և յերկիր կործանես-ջիր »։ Ամենևին բազմացուցանէ զսուգն, յաճախեցու-ցանէ զերկիւղն, աճեցուցանէ զահն, յոլովէ զկասկածն, երկայնէ զվշտացն պատմութիւն, յամենայն կողմանց ընթացեալ ժողովէ զտրտմականսն վասն անմտութեան լտողացն։ Զի պարտ էր նոցա այսպիսի սաստիկ սպառ-նալեօք ստանալ զհանճար, և առնուլ 'ի միտ զվախճան բանիցն ասացելոց. այլ քանզի ոչ իմաստնացան ա-ռաջնովքն, ած և զայս 'ի մէջ իբրև զողորմագին իմն, թէ և զսապատս զոսկւոյ և զզարդուց՝ տեսանիցէք ու-նայնացեալք. զի յուշ առնիցէ, թէ յորժամ տեսա-նիցէք 'ի գերութիւնն փոխանակ զարդուցն պաճու-ճանացն՝ փոշոտեալ երիթացեալ զերեսս, զսիրտ և զմիտս ուտիցէք, թէ յորպիսի՜ փառաց յոր թշուա-ռութիւն հասաք։ Զի յայնժամ կարի կսկծէին 'ի նե-ղութիւնն, յորժամ առաջին ինչ բարութիւնք 'ի միտ անկանիցին. զոր և Յովբ յայտ առնէ ողբալովն, թէ Ո՞

տայր ինձ ամիս ըստ ամսոց աւուրցն առաջնոցն. և համարի կարգաւ զմեծութիւնն՝ որ իբրև յաղբերաց բղխէին բարութիւնք, զպատիւսն, զսպասն, զհարկսն՝ որ գային նմա, զի յորպիսի փառաց՝ յոր տառապանս իջեալ նստէր. վասն որոյ և մարգարէս յուշ առնէ զստապատս զարդուցն, նա և զայգեացն և զբուրաստանացն՝ զոր լքեալ յիշեցուցանէ։ «Մնասջիր, ասէ, միայն». զի ոչ ոք է զօրավիգն. ոչ յԱստուծոյ դարմանք, ոչ 'ի մարդկանէ՝ բանից ընկերութիւնք. յամենայնէ մերկ և կողոպուտ մնացես. շուրջանակի հինիւ և պատերազմովք պաշարիցիս։ Եւ զի զյաճախութիւն թշուառութեանցն ցուցանիցէ, ասէ՝ «Յերկիր կործանեսջիր». ոչ միայն զի անկանիցիս, այլ զի յատակսն հասանիցես։

## ԳԼՈՒԽ Դ

«Յաւուր յայնմիկ բուռն հարկանիցեն եօթն կին զառնէ միոջէ՝ և ասիցեն. հաց զմեր կերիցուք, և հանդերձ զմեր զգեցցուք, բայց միայն անուն քո կոչեսցի 'ի վերայ մեր. բարձ 'ի մէնջ զնախատինս մեր»։ Զնուազութիւն մարդկանն որ 'ի պատերազմացն լինելոց էր՝ յայտ կամի առնել, եթէ որպիսի ինչ անօսրելոց էին ազգ որդւոցն Հրէից, զի և ոչ դարման անգամ յարանց գտանիցեն կանայք նոցա, թող թէ զսէր և զգութ՝ որ բնաւ ուրեք ոչ գտանիցի. զի գոնեա անուամբ միայն բառնայցին նախատինք այրութեանն. քանզի մեծ նախատինք էին այրութեան՝ 'ի մէջ Հրէից։

«Յաւուր յայնմիկ ծագեսցէ Աստուած խորհրդով հանդերձ փառօք յերկիր, բարձրացուցանել և փառաւոր առնել զմնացորդս Իսրայէլի»։ Քանզի յոյժ տըրտմեցոյց զնոսա տրտմականացն սպառնալեօք, շրջի մխիթարէ հեշտականացն աւետեօք. զի այս իսկ է իմաստուն բժշկի նշանակ իմաստութեան, զի ոչ հատանէ եւեթ և խարէ, այլ և զցաւս վիրացն հեշտական դեղովքն կակղացուցանէ. նոյնպէս և մարգարէս առնէ,

ոչ միայն զտխրեցուցիչսն ասէ, այլ և յետ չար պատգամայն՝ զբարիսն ընծայեցուցանէ. ոչ միայն զառ 'ի վշտացն ազատանալ, այլ և զփառաւորելն և զերևելին լինել։ Ծագումն Աստուծոյ կոչէ՝ որ զխաւար տրտմութեանն մերժէ, և տիւ ծագէ և լուսաւորէ. իսկ խորհրդովքն հանդերձ փառօք, զի իմաստութեամբ որպէս Աստուծոյ վայելէին գործք՝ գործէին։

« Եւ եղիցին մնացորդքն Իսրայելի 'ի Սիոն, և մնացեալքն Սիոնի սուրբ կոչեսցին՝ որ գրեալ իցեն յԵրուսաղէմ 'ի կեանս ». զի ուսանիցիս, զի ոչ յանկարծադէպ ինչ իրօք եղև փրկութիւն զերծելոցն 'ի վշտացն, այլ յերկնից կարգեալ հրամանքն. զի իբրև ընդվարմաւ փակեալ էին և ոչ ըմբռնեցան. վասն այնորիկ ասէ, թէ սուրբ կոչեցան՝ որ գրեալ են յԵրուսաղէմ 'ի կեանս, զատեալքն, ընտրեալքն, նկատեալքն չմտանել 'ի պատիժս։ Նմանագոյնս 'ի սուրբս կոչեաց զնոսա, զի յայտ արասցէ թէ ոչ վայրապար փրկեցան, այլ Աստուծոյ հրամանաւն։ Այլ և այլ իմն լաւութիւնք գործէին. զի թէպէտ և էին պիտանիք և հեզք, սակայն յետ վշտացն ևս հաստատունք և առաքինիք լինէին. զոր օրինակ ոսկի ի հուր մտեալ՝ զամենայն աղտն մերկանայ, նոյնպէս և պիտանիքն ևս պիտանագոյնք լինէին 'ի փորձութիւնս, զի զամենայն իսկ ծուլութիւնն 'ի բաց մերժեն։

« Լուասցէ Տէր զաղտ ուստերաց և դստերաց Սիոնի, և զարիւնն Երուսաղեմի սրբեսցէ 'ի միջոյ նորա, հոգւով դատաստանի և հոգւով կիզման »։ Թուի ինձ թէ աստ կրկին իմն սրբութիւն ասէ, և պատիժս՝ ընդ մեղացն զոր գործեցին կրել, և փութագոյնս առ հանդերձեալ իրս լինել։ Եւ արիւն Երուսաղեմի՝ զտարապարտ հպարտութիւնսն ասէ. զի ոչ գաղտ ինչ կամ ծածուկ կոտորէին զմարդիկն՝ որպէս աւազակք կամ գողք, զի նոքա 'ի ծածուկ, և սոքա յայտնի առաջի արեգական 'ի հրապարակս և յատեանս։ Այլ և որ անտի աղտն լինիցի եկեալ 'ի պատերազմ 'ի բաց սրբեսցէ. քանզի և 'ի ժամանակի հեշտութեանցն, զառաջին տրտմութեանցն պատմէ ճառս, և իբրք վշտագինք յայն սակս անցանէին ընդ նոսա, զի լուանայցեն, սրբիցին, ընդ եռանդն անցանիցեն, և զամենայն աղտն 'ի բաց ընկենուցուն,

և 'ի մեղացն և 'ի սպանութեան նախատանացն սրբիցեն զանձինս. և վասն այսորիկ իսկ շրջէ զբանն յայտասացիկ յորջորջումն յիւրաց ինչ՝ որ մտեալ 'ի բովս՝ սրբիցին. «Հոգւով, ասէ, դատաստանի և հոգւով, ասէ. կիզման». զի զոր օրինակ անդ հողմն մտեալ 'ի փուքսն՝ զեռանդն հորդիցէ, և զամենայն աղտ իւրաց ինչ որ 'ի բովսն իցեն՝ սրբեսցէ, նոյնպէս և աստ աստուածապատիժ բարկութիւնն, որով հէնն եկեալ հասանիցէ, մտեալ իբրև զհուր 'ի քաղաքն՝ սրբեսցէ զամենայն. ոչ առ ուտել և ծախել, այլ առ 'ի զտել և սրբել. հոգւով դատաստանի՝ զվրէժսն կոչէ, զպատիժսն։

«Եւ եկեսցէ հասցէ Տէր». գալուստ՝ զազդեցիկ նորա զօրութիւնն կոչէ. «Եղիցի ամենայն տեղի լերինն Սիոնի, և ամենայնի որ շուրջ զնովաւ իցեն, հովանի յամպոյ 'ի տուէ և իբրև զծուխ և զլոյս հրոյ բորբոքելոյ 'ի գիշերի. Եւ ամենայն կողմանքն փառօք ծածկեսցին. Եւ եղիցի հովանի 'ի տուընջեան առ 'ի տօթոյ և 'ի ծածկոյթ թաքստեան՝ 'ի խստութենէ և յանձրևոյ». Ամպ աստ՝ յետ չարչարանացն որ անդորրութիւնն լինելոց էր՝ կոչէ, և հուր բորբոքեալ՝ զմխիթարութիւնն, որ յետոյ լուսաւորելոց էր զնոսա. զի որպէս ամպն 'ի տօթոյն զովացուցանէ, նոյնպէս և մթին գիշերի՝ լոյս խարուկի սթափանք են. զի մին 'ի խորշակէ ապրեցուցանէ, և միւսն 'ի խաւարի լոյս առնէ. Զփառաւորութիւնն որ յետ վշտացն՝ հրոյ բորբոքելոյ նմանեցուցանէ, և զդիւրութիւնն՝ ամպոյ. և զի յայտ արասցէ եթէ ոչ առ սակաւ սակաւ փարատել վշտացն լինիցի դիւրութիւն, այլ վաղվաղակի մինչդեռ վիշտն սաստկացեալ իցեն՝ փարատեսցի տրտմութիւնն. զի այնու ևս ուսանիցին, զի ոչ յանկարծադէպ ինչ եղև նոցա վշտացն փարատումն, այլ 'ի վերին զօրութենէն. «Եւ եղիցի հովանի տուընջեան առ 'ի տօթոյ». Աստուծոյ օգնականութիւնքն և զօրավիգն լինելն. զի զոր օրինակ հովանի ինչ 'ի տօթոյ, կամ յարկ կամ քարայր, 'ի սաստիկ անձրևի լինիցի անքոյթ այնմ՝ որ անդր մտանիցէ, նոյնպէս և Աստուծոյ զօրավիգն օգնականութիւն՝ չտայցէ ինչ վշտանալ, թէպէտ և քան զանձրևն ևս սաստիկ զօրքն գայցեն, սակայն կարող է փրկել և ապրեցուցանել։

## ԳԼՈՒԽ Ե

«Օրհնեցից զսիրեցեալն՝ յօրհնութիւն այգւոյ սիրելոյ»։ Երկեցոյց տրտմականօքն, ուրախ՝ հեշտականօքն արար, ազգի ազգի իմն հնարս բժշկութեան կազմեաց. դարձեալ անդրէն 'ի սկիզբն հանէ զբանն՝ նմանեցուցեալ գլխոյ մարգարէութեանս, զի որպէս 'ի սկզբանն՝ զերախտիսն Աստուծոյ որ առ նոսա գործէ՝ պատմէ. Որդիս, ասէ, ծնայ և բազմացուցի. և զանօրէնութիւնսն որ առ 'ի նոցանէ գործեցան յանդգնութեամբ՝ թուէ. ապա ածէ յարէ 'ի նոյն, թէ Եւ նոքա զիս անարգեցին, և Իսրայէլ զիս ոչ ծանեաւ, և ժողովուրդ իմ զիս 'ի միտ ոչ առ. նոյնպէս և աստ, թէպէտ և այլագոյնս իմն բանս ճառէ, սակայն միտս զնոյն, զի յայտ արասցէ թէ այն բանք և իսկզբանն՝ միմեանց նման են։ Եւ արդ ընդէ՞ր արդեւք զի պատուհասելոց էր՝ զպատուհասն օրհնութիւնս կոչէ։ Նախ Մովսէս իսկ հանդերձ քերբն իւրով Մարեմաւ՝ զյաղթութեան երգս օրհնութիւնս կոչէ. Օրհնեսցուք, ասէ, զՏէր, զի փառօք է փառաւորեալ, զհեծեալսն և զերիվարս ընկեց 'ի ծով։ Եւ Դեբովրա յետ աքանչելի յաղթութեանն՝ նմանագոյն իմն զյաղթութիւնն նուագեալ՝ օրհնութիւնս մատուցանէր Աստուծոյ. նոյնպէս և սա, թէպէտ և 'ի պատուհաս մատչելոց էր, ուր սաստիկ բանից պէտք էին, և սրտի քաջի և մտաց զայրացելոց, օրհնութիւն իմն պատմէ, և զպատուհասն օրհնութիւն կոչէ. և ոչ սա միայն, այլ և մեծն Մովսէս յորժամ զյաղթութեան երգսն երգէր, զպատուհասն Հրէից՝ օրհնութիւն անուանէր. քանզի այսպէս ասէր. Զայս Տեառն հատուցանէք, և այս՝ ժողովուրդ յիմար և ոչ իմաստուն. և բազում անգամ զպատուհասն նոցա՝ օրհնութիւնս կոչէ յօրէնսն։ Եւ արդ ընդէ՞ր զպատուհասն յօրհնութիւնս հանիցեն. այլ Հոգւոյն Սրբով իմացեալ, թէ բազում շահ է այնոցիկ՝ որք ախորժելով կամիցին լսել. զի չիք այնպիսի ինչ օգտակար

յորժամ միշտ յանցանացն յիշատակք 'ի մտի կայցեն, և չտայցեն յապաղել և դանդաղել առ 'ի դառնալ յապաշխարութիւն և ապրել. զի յորժամ յիշատակք յանցանաց միշտ 'ի մտի կայցեն, հանապազ զայն մըրմընջէ, ընդ այն զբօսնու, և գութ գեղգեղանացս օրհնութեան՝ իբրև վարդապետ իմն լինի ածել յուղղութիւնս։

Եւ դուք ձեզէն իսկ գիտէք թէ այլ գիրք այնպէս ընտանի ումեք ոչ են՝ որպէս սաղմոսքն, զորս յամենայն ժամ ընդ բերան ածեն. և անդստին իսկ յիրացն յայտ է թէ որչափ օգուտ մտաց լինի՝ յորժամ բանք սաղմոսիցն յօրինեալ ձայնիւք միշտ ընդ բերանսն գայցեն. վասն այնորիկ և մարգարէն ասէ, թէ « Երգեցից սիրեցելոյն՝ զերգս այգւոյ իմոյ սիրելւոյ ». զնորին երգս սիրելւոյն, ասէ, նմա երգեցից. քանզի և պատճառք օրհնութեանն վասն նորա են և վասն նորին ինչ իրաց։ Իսկ եթէ 'ի ժամանակի պատուհասիցն սիրելի և սիրեցեալ կոչէ, ընդ այն ինչ մի զարմանար, զի և սիրեցեալք՝ ես և այնչափ վայելեալք յԱստուծոյ խնամոցն, սակայն ոչինչ եղեն պիտանիք։ Զայս և միւս ես մարգարէ ակնարկէ. Իբրև զխաղող, ասէ, յանապատի գտի զԻսրայէլ, և իբրև զդիտակ վաղահասուկ 'ի թզենւոջ տեսի զհարս նոցա. և զգութն և զխընամն զոր ունէր ընդ նոսա՝ այսպիսի պտղոց նմանեցոյց. ոչ վասն գործոց ինչ նոցա ունէր գութ ընդ նոսա, այլ վասն իւրոյ բարերարութեանն՝ Աստուած։ Եւ զոր ասէն՝ այսպիսի ինչ է. այնպէս, ասէ, սիրեցի զնոսա, որպէս ոք զի գտանիցէ խաղող յանապատի, կամ իբրև զդիտակ վաղահասու 'ի թզենւոջ. զի թէպէտ և չիցեն ինչ արժանի Աստուծոյ օրինակքս, այլ նոցա որկորըստութեանն 'ի դէպ են. զի նոքա, ասէ, որ յայսպիսի սիրոյ վայելէին, օտարացան և մտին 'ի Բէելփեգովր. նոյնպէս և աստ սիրեցեալ և սիրելի կոչէ զնոսա. զի Աստուած, ասէ, զիւր զամենայն զերախտիսն եցոյց, և ոչ վասն նոցա նախ սկիզբն առնելոյ, այլ Աստուծոյ նախ զսէրն ցուցանելոյ. քանզի և նոքա և ոչ յետ երախտեացն՝ ցուցին զանձինս արժանի երախտեացն, այլ յամենայնի յետս ընդդէմ խոտորնակի գտան։

« Այգի եղև սիրեցելոյն յաջէր 'ի տեղի պարար-

տութեան »: Անուամբ այգւոյ զամենայն դարմանս և զխնամս որ 'ի նմանէ նոցա լինէին՝ նշանակէ. և ոչ այսչափ միայն, այլ և զայլն ամենայն երախտիս համարի. և նախ զկայեանս տեղւոյն ցուցանէ, զի եղջերըն և պարարտութեամբ տեղւոյն՝ զկայեանս երկրին գովեալ ասէ. որպէս և Դաւիթ 'ի սաղմոսն, թէ Երուսաղէմ՝ լերինք շուրջ են զնովաւ, և Տէր շուրջ է զժողովրդով իւրով. զի պարսպեաց զնա և տեղւոյն իսկ կայենեօք. և ոչ այսչափ միայն, այլ և ինքն իսկ պարիսպ հզօր եղև շուրջանակի, զոր և մարգարէս իսկ նշանակէ, զամրութիւն տեղւոյն՝ եղջիւրն և բարձրաւանդակ կոչելով: Եւ յառաջ քան զայս՝ զԱստուծոյ օգնականութիւնն ակնարկէ, փոփոխական եղջերն յորջորջմամբ. նաև առակք Իմաստնոյն զայս յայտնապէս ցուցանեն 'ի զգուշութիւն ապաւինելոցն. քանզի ուժգին քան զբազում անասունս է զուարակ, և 'ի նմա զօրագոյն անդամ՝ եղջիւրն է, զի իբրև զինու իմն վարի նովաւ, որով և ոչ վաղվաղակի 'ի բուռն ուրուք անկանի. նաև գիրք՝ բազում անգամ եղջեր միեղջիւրոյ կոչեն զայնոսիկ՝ որ յամրութեան և 'ի զգուշութեան իցեն. վասն այնորիկ և աստ եղջիւր՝ զամրութիւն և զբարձրութիւնն կոչէ, որպէս մօտ 'ի սկիզբնն ասէ, թէ Որդիս ծնայ և բարձրացուցի: Եւ տեղի պարարտութեան այն է՝ զոր և Մովսէսն ասէ, թէ Երկիր՝ որ բղխէ զկաթն և զմեղր:

« Ցանկով փակեցի, և ամրութեամբ պարսպեցի »: Ցանկ՝ կամ զպարիսպն ասէ կամ զօրէնսն, և զառ 'ի նմանէ խնամսն. քանզի օրէնքն ևս ամրածածուկ քան զպարիսպն պահէին զնոսա: « Ամրութեամբ պարըսպեցի ». այս ինքն է՝ հաստատուն յամենայն կողմանց արարի զամրութիւնն. քանզի ցանկ դիւրաւիկ իմն կարծի, վասն այնորիկ, ասէ, և այլովք զօրավիգն ամրութեամբ պարսպեցի:

« Եւ տնկեցի որթ սորեկք ». Թէպէտ և յամէ 'ի փոփոխումն անուանցն, չէ ինչ հարկ մի ըստ միոջէ ըստ բանիցն մեկնել, այլ հայեցեալ 'ի միտսն՝ շատանալ նովին: Սորեկքն ասելով՝ զազնուութիւն և զառաւելութիւն որթոյն յայտ առնէ, եթէ ոչ յառի տնկոց, այլ յազնուաց և յընտրոց. քանզի բազում

ազգք են որթոց։ « Եւ չինեցի 'ի նմա աշտարակ »։ Ոմանք զտաճարն ասեն աշտարակ, և գուբ հնձանն՝ զսեղանն. վասն զի պտուղք իւրաքանչիւր առաքինութեանց, ասեն, անդր ժողովէին՝ պատարագք և ընծայք. այլ ես որպէս յառաջագոյն ասացի և այժմ՝ զնոյն ասեմ, եթէ ոչ 'ի փոփոխումն անուանցն պարտ է հայել, այլ 'ի միտսն. զի ամենևին այսպիսի իմն կամի ասել, թէ ես՝ որ յինէն էր՝ զամենայն կատարեցի, զամենայն դարմանս ցուցի, ոչինչ աշխատ արարի զնոսա վաստակով, ոչ նոցա ետու գործել և բրել և տնկել, այլ կատարեալ գործեալ ետու 'ի ձեռս նոցա. և ոչ այսու միայն ցուցի զմարդասիրութիւն իմ։ « Այլ և կայի մնացի բազում ժամանակս, յերկարեցի երկայնմտութեամբ, զի բերցէ խաղող, եւ նա եբեր փուշ և տատասկ »։ Փուշ և տատասկ՝ զանպտղութիւն գործոցն, զխստութիւնն և զանպտղութիւնն յայտ առնէ։ Եւ արդ որպիսում ներելոյ թողութեան լիցին արժանի որք զայնպիսի պտուղս ետուն մշակին։

« Եւ արդ, այր Յուդայ և բնակիչք Երուսաղեմի, դատ արարէք ընդ իս և ընդ այգի իմ »։ Բազում իրաւանց առաւելութիւն է, յորժամ զպատժապարտսն դատաւորս նստուցանէ իւրոց երախտեացն, և նոցա ապախտաւորութեանն։ Եւ արդ չասեմ, ասէ, զհինն ինչ. այլ այժմ պատրաստ եմ 'ի դատ մտանել. զի ոչ երբեք նուազեցուցի ինչ՝ թէ ոչ զիմն զամենայն կատարեցի, նաև դուք զձեր չարիսն լցէք։

« Եւ արդ զինչ պարտ էր առնել այգւոյ իմոյ և ես ոչ արարի նմա ». զամենայն ինչ արարի, բայց այն միայն զի պտուղ ոչ առնուի. և ոչ ասեմ թէ բազում երախտիս արարի, այլ թէ՝ զամենայն զերախտիսն կատարեցի. արդ պահանջեմ 'ի ձէնջ՝ որ վայելեցէքդ, և վկայք երախտեացն՝ զձեզ կոչեմ 'ի դատաստան, ոչ զօտարս և զանտեղեակս։ « Վասն որոյ կացի մնացի, եւ նա եբեր փուշ և տատասկ »։ Եւ զոր ասէն՝ այսպիսի ինչ է. « Զինչ ինչ պարտ էր առնել այգւոյ իմոյ և ես ոչ արարի նմա » զի այնչափ մեղան. զինչ մեղ դնիցեմ, զինչ պակասեաց նոցա՝ զի այնչափ չարիս գործեցին։

« Արդ ես ինձէն պատմեցից թէ զինչ արարից ընդ այգի իմ »։ Յորժամ զիւր յաղթութիւնն եցոյց, և զնո-

ցա ամեստութիւնն[1] յայտ արար, այս ածէ զվճիռն 'ի մէջ՝ որ տալոց էր նոցա, ոչ զի դատապարտեսցէ, այլ զի երկիւղիւ սպառնալեացն՝ 'ի համեստութիւն դարձուսցէ։ «Առից զամրութիւն ցանկոյն եւ եղիցի յափշտակութիւն. քակեցից զպարիսպ նորա եւ եղիցի կոխան»։ Ի բաց արարից զզօրավիգն օգնականութիւնն, մերկ եւ կողոպուտ կացուցից 'ի պաշտպանութենէն, 'ի դարմանոցն եւ 'ի խնամոցն, զի փոխանակ բարութեանցն յորս վայելէին՝ 'ի թշուառութիւն հասուցից։

«Լքից զայգի իմ, զի մի՛ յատցի եւ մի՛ գործեսցի»։ Դարձեալ զփոփոխական յորջորջումն 'ի մէջ բերէ. զի եթէ ջերմագոյն ոք 'ի միտսն կամիցի նայել, զօրինացն խնամոց ասէ, զպատուիրանացն դարմանոց, զի մի՛ վայելեսցեն 'ի նոսա՝ որպէս յառաջագոյնն, մի՛ վարդապետս ունիցին, մի՛ իշխանս, մի՛ մարգարէս, որք զնոյն զեղծութիւնս ուղղիցեն։ Զոր օրինակ որք զայգիսն գործիցեն՝ բրեն, կակղեն, յատանեն, նոյնպէս եւ որ զոգիսն դարմանիցեն՝ սպառնան, երկեցուցանեն, ուսուցանեն, մխիթարեն. եւ արդ ասէ, թէ թափուր յամենայնէ երթիցեն վտարանդի յօտար աշխարհ։

«Բուսցի եւ կցեսցի 'ի նմա փուշ իբրեւ 'ի խոպանի. հրաման տաց ամպոց իմոց զի մի՛ տեղասցեն յայգի իմ»։ Կամ զաւերած քաղաքին նշանակէ, կամ զիւրաքանչիւր ոգւոց քաղաքահեղձոյցն լինելոյ 'ի չարիս։ Ամպս աստ՝ ասեն ոմանք՝ զմարգարէսն կոչէ, որք 'ի վերուստ իբրեւ զանձրեւ առնուին զվարդապետութիւնն, եւ տեղային 'ի ժողովուրդն զպատգամսն, զի եւ այն եւս սովորութիւն բառնայցէ 'ի միջոյ. թէպէտ մի եւ երկու չոգան ընդ նոսա 'ի գերութիւն, սակայն բազմութիւն մարգարէիցն 'ի ժամանակին լռեաց։

«Զի այգի Տեառն զօրութեանց՝ տունն Իսրայելի է, եւ մարդն Յուդայ՝ նորատունկ սիրելի. կացի մնացի զի արասցէ իրաւունս, եւ արար անիրաւութիւն[2], եւ ոչ արդարութիւն՝ այլ աղաղակ»։ Քանզի բազում անգամ 'ի մէջ բերեր զփոփոխականն յորջորջումն, զի այգի եւ մշակ եւ գուբ հնձան եւ ցանկ, բրել եւ յատանել զորթն՝ ասէ. եւ զի մի՛ ոք յանմտաց որ էին 'ի ժամանակին՝ կար-

1 Յն. Անիմաստութիւն կամ անճանաչողութիւն։
2 Յոյ. Պակասէր ն ուրաք անիրաւութիւն։

ծիցէ թէ վասն այդուր ինչ իցեն ճառք, դայ վաղվաղակի յետոյ միանգամայն զամենայն մեկնէ ասելովն, թէ «Այգի Տեառն զօրութեանց՝ տունն Իսրայելի է»․ ոչ զանկոց ինչ խօսիմ, ասէ, և ոչ զանշունչ երկրէ, և ոչ զքարանց կամ զպարսպաց, այլ զձերոց ժողովրդոցն․ քանզի և յարէ իսկ ՚ի նոյն՝ եթէ «Մարդն Յուդայ՝ նորատունկ սիրելի»․ զի գրեթէ ամենայն տան ազգն անդ էին, և տաճարն ՚ի միջի նոցա, և այլ ևս դարմանքն, զի քան զայլսն առաւել ևս ծաղկեալ էին, և մանաւանդ զի թագաւորաց ազգն անդ էր, վասն այնորիկ կոչէ զնոսա սիրեցեալ, զի այնու առաւել կսկծեցուսցէ, թէ որ այնպէս սիրելիք էին՝ այնպիսի ապախտաւորք գտան։ Այնպիսի իմն են օրէնքն այնոցիկ որ սիրիցեն, և ՚ի պատուհասն չթաքուցանեն զիւրեանց սիրոյն առաւելութիւնն։ Եւ ասել այլ իմն ոչ սակաւ ուսանիմք․ և զի՞նչ իցէ զոր ուսանիցիմքն․ զի յորժամ գիրք այլասացիկ բարբառովք զիրս ինչ նշանակիցեն, մի՛ միայն ևեթ հաստատել կալ, այլ զմտացն զհետ վարել, և ոչ յայլասացիկ բարբառն հաստատել։ Եւ զոր ասեմ՝ այսպիսի ինչ է․ ասացին այժմ գիրք՝ ցանկ և գուբ հնձան, և ոչ թողին զմիտս լսողին յայնմ հաստատել կալ, թէ որպէս լուան՝ և զնոյն իմանայցէ, այլ ինքնին զամենայն մեկնեն գիրք․ որպէս և աստ իսկ թէ «Այգի Տեառն զօրութեանց է տունդ Իսրայելի»․ և Եզեկիէլ ասէ, թէ Արծուին մեծ լայնաթևն երկայնատարածն եկեալ մտանէր ՚ի Լիբանան, և կոտորէր զծայրս մայրիցն․ սակայն և նա ոչ տայ թոյլ մտաց լսողացն՝ յայնմ հաստատել կալ, այլ և զմեկնութիւնն ՚ի մէջ բերեալ ցուցանէ, թէ ո՛ արծուին իցէ և կամ զինչ մայրքն։ Եւ սա մատուցեալ յառաջագէտ իմն յորժամ ասէ գալ յերկիրն Հրէաստանի․ և զի մի՛ իշխեսցէ լսողն ըստ իւրոց մտացն պատշաճել զերեսս բանին, յայտ առնել զթագաւորն զոր գետն կոչեաց․ և ամենայն ուրեք գրոց այնպիսի իմն օրէնք են, յորժամ այլասացիկ բարբառով իրս ինչ ճառիցեն, անդէն վաղվաղակի զմեկնութիւնն այլասացիկ յորջորջմանն ՚ի մէջ բերեն, զի յայտ արասցեն՝ եթէ վայրապար է ցանկութիւն այնոցիկ, որ զայլասացիկն հաստատել կամին․ զի մոլորեալ իմն այնու այսր անդր հարկանիցին։ Եւ

ընդ այս զի՞ զարմանաս, թէ մարգարէքն այսպիսի բար-
բառովք խօսին. ուր և առակագիրն ասէր, թէ Եզն
տիրոջ և յաւանակ շնորհաց խօսեսցի ընդ քեզ. և աղ-
բիւր ջուրց եղիցի քեզ միայն առանձինն. և մեկնէ, թէ
վասն էր ասիցէ զայս. վասն ամուսնոյ և օրինաւոր կնոջ,
զի կարճեսցէ 'ի պոռնիկն և յօտարոտին մերձենա-
լոյ. սոյնպէս և սա ասաց՝ այգի, և մեկնեաց թէ զինչ
այգին իցէ։ Եւ իբրև ասաց զպատուհասն և զպատիժն
որ 'ի վերայ գալոց էին, դառնայ այնուհետև յաղերս.
« Կացի մնացի, ասէ, զի արասցէ իրաւունս, և արար
զանօրէնութիւն, և ոչ արդարութիւն՝ այլ աղաղակ »։
Ցիրաւի պահանջեմ զվրէժս, քանզի կացի մնացի իրա-
ւանց արդարութեան, և նոքա զանիրաւութիւն և զան-
օրէնութիւն և զաղաղակ ցուցին։ Աղաղակ աստ՝ զա-
գահութիւնն կոչէ, զանիրաւ ցասումն, զանհանճար
բարկութիւնն, զկռիւսն, զհակառակութիւնն։

« Վայ այնոցիկ որ յարեն տուն 'ի տուն և ագարակ
առ ագարակ մերձեցուցանիցեն, զի զընկերին հանի-
ցեն »։ Աղաղակ, ասէ, ցուցին, այսինքն է զյափշտա-
կութիւնն, և զնշանակ ևս զապիրատութեան և զա-
գահութեան, որ լի՛ն է չարագործութեամբ՝ ցուցա-
նէ։ Դարձեալ ողբս առեալ ողբայ, զի զբազմութիւն
մեղացն յայտ արասցէ, և զանբժշկական ցաւս նոցա։
Զայս և այժմ տեսանեմք, զի բազումք խնամածու-
թեամբք թեկն ածեն դրացեաց, ոչ զի օգնիցեն ինչ,
զի առաւել նենգիցեն զմերձաւորս. որպէս և հրդեհ
զի ոճով ուտիցէ զամենայն, սոյնպէս և զդրացեաց
զաղքատաց՝ ճարակին հարուստք զամենայն ինչ։

« Մի եթէ միա՞յն ինչ բնակելոց իցէք յերկրի. դա-
ւադիկ ազդ եղև յականջս Տեառն զօրութեանց այդ-
ամենայն »։ Զի յայտ արասցէ՝ եթէ 'ի զուր ջանան,
ընդ վայր վաստակին, զի պատիժքն և տանջանքն ու-
սուսցեն հաւաստեաւ թէ չէք վայելելոց յայդմ՝ զոր
յափշտակիցէք, թէպէտ և վաստակիցէք և զմեղս ան-
ձանց գանձէք, սակայն ոչ վայելիցէք, զի կործանելոց
էն, զի ոչ դադարեսցէ ակն արթուն։ « Ազդ եղև յա-
կանջս Տեառն զօրութեանց ». ոչ զայն ինչ յայտ առնէ՝
թէ լուաւ զչարիսն, այլ զառ 'ի պատիժսն յայտ առ-
նելոյ, թէ յայնմ հետէ խնդրելոց է վրէժ յափշտակու-
թեանցն։

«Զի թէ եղիցին տունք բազումք՝ սակայն յաւեր դարձցին, և եթէ մեծամեծք և գեղեցիկք իցեն, սակայն ոչ գտցին՝ որ բնակիցեն 'ի նոսա»։ Զի այսպէս իմն է ագահութիւնն. յորժամ բազում ինչ յաճախէ գոյաւորացն, ապա և յառաջնոցն եւս արկանէ. զոր և աստ իսկ ակնարկէ, թէ յորժամ շինիցէք զամենայն կողմ, և համարիցիք թէ ամենայնիւ ձեր իցէ, ապա և յառաջին արարոցն անկանիցիք, և լքեալ մնացեալ տունք առանց բնակչաց, զի առաւել քան զփող հնչեալ աղաղակէ զյափշտակողացն թշուառութիւն։

«Ուր գործիցեն տասն լուծք եզանց, եղիցի անօթ կաւեակ մի, և որ սերմանիցէ արդուս վեց, եղիցի անօթ գրիւք երեք»։ Ի քաղաքէն մինչև յանդոցն անդորրութիւնն ձգէ զբանն, զի յամենայն կողմանց մերմեքեցուցէ զկողմն. ոչ տունք, ասէ, ունիցին զբնակիչսն, և ոչ երկիրն տայցէ զզօրութիւնն. քանզի և իսկզբանն վասն Ադամայ մեղացն՝ փուշ և տատասկ հրամայեցաւ բուսանել երկրի, և 'ի բազում արմտեաց սակաւ արդիւնս ժողովել Կայենի, վասն անհնարին անօրէնութեանցն։ Եւ բազում և այլ ուսանեք է իմանալ, զի վասն մեղաց մարդկան երկիր տանջի. և ընդ այն մի զարմանար եթէ կարճէ զերս երկրի և զծնունդս մարդկան՝ անօրէնութիւն, ուր զի և ապականացու իսկ վասն մեր եղև, և անապականացու դարձեալ վասն մեր է լինելոց. և քանզի ամենևին իսկ վասն մեր եղև նոքա լինել և վասն մերոյ օպաստաւորութեանն, և այսպէս և այնպէս։ Նոյնպէս և առ Նոյիւ, քանզի յանհնարին չարիս կործանեցաւ բնութիւն մարդկան, ամենայն երկիր շփոթէին և սերմանիք և տունկք և անասնոց ազգք և երկիր և ծով և օդք և լերինք և բարձունք և բլուրք և քաղաքք և պարիսպք և տունք և աշտարակք և ամենայն ինչ միանգամայն յահագին համատարած ծովուն ծածկէին։ Եւ դարձեալ յորժամ աճել պարտ էր միւսանգամ ազգաց և ծննդոց, դարձեալ զիւր յօրինաւոր վայելչութիւնն առնոյր անդէն միւսանգամ երկիր։ Եւ այլ եւս իմն իմանալ է, թէ վասն մարդկան պատուոյ և ծով ցամաքեցաւ և դարձեալ անդրէն խառնարհեցաւ և արեգակն նահանջեցաւ և լուսին կասեաց յընթացից և հուր՝ զՋքոյ գործ եցոյց

և երկիր զծովու և ծով զերկրի. և ամենայն ինչ վասն մարդկան օգտի փոփոխէր, զի քան զամենայն ինչ՝ մարդ է պատուական և ամենայն ինչ վասն նորա եղև. և անդ վասն զի մեղաւ[1] ժողովք Հրէիցն՝ արգելլոյր Աստուած զծնունդս երկրի. և Թէպէտ և բազում անգամ վաստակէին և խանչէին, սակայն ոչ բանայր Աստուած զարգանդս երկրի, զի անտի ևս իմանայցեն Թէ ոչ միակաց ձեռաց է Հարստարութիւն, և ոչ եզանցն և ոչ ըծոցն և արօրոյ, և ոչ երկրին բնութեանն, և ոչ այլ իրիք ինչ այսպիսեաց. այլ ամենեցուն Տէր է, որ առատ ձեռամբ զեղու զամենայն, և յորժամ կամի՝ արգելու զնա:

« Վայ այնոցիկ՝ որ յառնեն ընդ առաւօտս և զհետ լինին ցքոյն, որ երեկանանն 'ի նմին, զի գինին անդէն զնոսին այրէ. փողովք և քնարաւ, երգով զգինին ըմպեն, և 'ի գործս Տեառն ոչ հայեն, և զգործս ձեռաց նորա ոչ առնուն 'ի միտ»: Պատուհասեաց զբազում ագահութիւն նոցա, և արմատս չարեաց ցուցանէ զարբեցութիւնն, որ է պատճառք ամենայն չարեաց, և մանաւանդ յորժամ այնպէս յանդգնութիւն իցէ: Եւ տես, զիարդ հենգնէ. զօրն իսկ ցերեկի, ասէ, յայն ծախէք. ոչ յորժամ Ճաշս մեծարանաց ումեք առնիցեն, այլ զամենայն ժամանակս, ասէ, արբեցութեանն ժամանակ առնեն. և յայգուէ իսկ հետէ յորում նոցա՝ յանցանաց պարտ էր զգուշանալ, անապակին, ասէ, տան զանձինս, և մինչև ցերեկոյ յայն ծախեն զօրն. զի յորժամ ընկղմիցին յանխառնութեանն խորս, և 'ի մտաց անկանիցին և զօգիսն 'ի գերութիւն չարաչար արբեցութեանն մատնեսցեն. իբրև զնաւ առանց առագաստի և առանց ուղղչի և առանց նաւորդացն՝ որ այսր անդր կածիցի յալեացն սաստկութենէ, և նոքա նոյնպէս ծփիցին. վասն որոյ ասէ՝ Թէ յարուցեալք յառաւօտէ մինչև յերեկոյ զցքոյն զհետ ընԹանան. ոչ եԹէ զպէտսն ևեԹ վճարեն, այլ գործ իմն զայն արարեալ՝ հանապազ արբենային: Իսկ ցքի՝ որ յամբրաւոյն առնէին և 'ի պէտս գինւոյ փոխէին՝ զայն կոչէ, քանզի Թմբրեցուցիչ իմն և արբեցուցիչ է. սա-

1 Յօր. Մեղացն:

կայն նոքա ոչ խորշէին, այլ միշտ զայնր զհետ երթա-յին. «Որ 'ի նմին, ասէ, երեկանան. զի գինին, ասէ, անդէն զնտախն այրէ». քանզի այսպէս է արբեցութիւն, որչափ ըմպէ ոք՝ առաւել պապաքեցուցանէ։

Դարձեալ և այլ իմն պատուհաս 'ի մէջ բերէ. «Փողովք, ասէ, և Թմբկաւ և քնարաւ զգինին ըմ-պեն». զայս և միւս մարգարէ բամբասէ. Որք ըմպէին, ասէ, պարզեալ գինի, և անոյշ անոյշ իւղովք օծա-նէին, որք ուրախ էին 'ի ձայնս փողոց իբրև 'ի հաս-տատնոց ինչ և աննշանակ ոգւոց մեղկացելոց, որք լկտեցուցանեն զանձինս յայսպիսի ինչ երգս զեղեալք. զի որպէս արբեցութիւնն ցնորեցուցանէ, նոյնպէս և երգք մեղկեն զմտացն հաստատութիւնն, զջիլս ոգւոցն հարկանեն և յանպայման անառակութիւնս կործա-նեն։ «Եւ 'ի գործս Աստուծոյ ոչ հայէին, և զգործս ձեռաց նորա ոչ առնուին 'ի միտ»։ Զսքանչելիս նորա ասէ, և զարարածոցս տեսիլ. քանզի զիա՞րդ կարէին լինել տեսողք՝ որք զտիւն գիշեր առնէին, և զգիշերն ևս ծանրագոյն քան զմահ. զիա՞րդ կարէին տեսանել զարեգակն ծագեալ, կամ զերկինս զարդուք պայծա-ռացեալ, կամ զաստեղս լուսաւորեալս յերեկուն և յառաւօտին ժամանակի, կամ զայլ ևս վայելչութիւն զարարածոց և զպատուարութիւն, որոց ներքոյ և արտաքոյ փակեալ են աչք հանապազ 'ի Թմբիր ար-բեցութենէ։

«Եւ արդ 'ի գերութիւն մատնեցաւ ժողովուրդ իմ. զի ոչ գիտացին ճանաչել նոքա զԱստուած, և բա-զում եղեն դիակունք նոցա, վասն սովոյ հացի և ծա-րաւոյ ջուրց»։ Տես, և 'ի պատիժն որպիսի ինչ խրատ կայ. քանզի ոչ վաղվաղակի հերձու զմէրն 'ի խոր, և ոչ ածէ վաղվաղակի զգերութիւն, այլ նախ սով և ե-րաշտութիւն. զի մինչդեռ յաշխարհին իցեն, և 'ի սո-վոյն նեղիցին, լինիցին պիտանիք, և մի ծնկիցեալք յանհնարին ախտոմն՝ ածէն 'ի վերայ անձանց զզօրս հինին։ Եւ քանզի ոչ ինչ անսացին, և ոչ ինչ շահե-ցան, յայն սակս ածէ 'ի վերայ նոցա զանհնարին պա-տիժսն. այլ նախ քան զայս՝ զայն սպառնայ, և մեծա-ցուցանէ զճառս սովոյն։

«Լայնեցին, ասէ, դժոխք զանձինս իւրեանց»։ Ի-

քրև ոչ ասէ՝ թէ անձն կամ շունչ ինչ իցէ դժոխոց, այլ երեսս առեալ՝ կամի առնել զբանն յայտնագոյն. քանզի և յամէ 'ի նմին, եթէ «Բացին զբերանս իւրեանց՝ զի մի ինչ պակասեսցէ». իբրև զահագին ինչ գազանէ ձայնէ. և այն ևս չար է, զի ոչ միայն բերանաբաց է, այլ զի և յագուրդ ոչ գիտէ: «Եւ իջցեն փառաւորք, մեծամեծք, մեծատունք, որկորեայք, ժանտք»: Ժանտք յայն սակս ասին, զի ոչ միայն ինքեանք էին ժանտք, այլ և յայլս ևս տային զժանտութիւնն. զի գիտասցես՝ թէ ոչ վայրապար ինչ եկին իրքն որ գործելոց էին, այլ Աստուծոյ պատիժք և յերկնից հրամանք: «Եւ 'ի վերայ փառաւորաց և զօրաւորաց և յղփացելոց». ամենեքին նոքա, ասէ, իջանիցեն 'ի դժոխս. որ փափուկն իցէ, որ համարիցի թէ 'ի բարիսն իցէ և ոչ անցանիցէ 'ի նմանէ բարիքն, և նա խոնարհեսցի և կործանեսցի:

«Խոնարհեսցի, ասէ, մարդ, և անարգեսցի այր, և աչք հպարտք և ամբարտաւանք՝ խոնարհեսցին. և բարձրասցի Տէր զօրութեանց»: Տես դարձեալ զզարմանս խնամոցն Աստուծոյ, զի ոչ զամենեսեան առ հասարակ սատակէ, և ոչ զամենեսեան 'ի միջոյ բառնայ, այլ յորժամ ոմանք 'ի գերութիւն վարիցին, այլք նոքօվք խրատեալք՝ պիտանիք լինիցին: Արդ զայս ինձ ակնարկեալ ասէր, եթէ խոնարհեսցին մնացեալքն:

«Եւ բարձրասցի Տէր զօրութեանց իրաւամբք, և սուրբն Աստուած փառաւորեսցի արդարութեամբ»: Եւ արդ երկուս ինչ բարութիւնս առնէ, զի և նոքա ապրեալք 'ի բարկութենէն՝ լինիցին պիտանիք, և Աստուած փառաւորեսցի առ ամենեսեան. և զի յորժամ հարկանէն և պատժէ՝ յայնժամ փառաւորի և բարձրանայ իրաւամբք վրէժխնդրութեանն: «Արածեսցին զրկեալք՝ իբրև զուլս, և զաւերակս մնացելոցն գառինքն կերիցեն»: Զնուազութիւն մնացելոցն և զաւեր երկրին յայտ առնէ այսուիկ:

«Վայ որք կորզեն զմեղս իւրեանց՝ իբրև երկայն չուանով, և իբրև սամետէիւք երինջոց լծոյ՝ զանօրէնութիւնս իւրեանց. որք ասիցեն՝ եթէ փութասցի զոր առնելոց իցէ Աստուած՝ զի տեսցուք, և եկեսցէ հասցէ խորհուրդ սրբոյն Իսրայէլի՝ զի գիտասցուք»:

Յորժամ մարգարէքն սպառնային և զահագինն յառաջագոյն ասէին, սուտ մարգարէքն պաշտօն առնելով ժողովրդեանն՝ զջինջն հարկանէին, զմարգարէիցն բանս սուտ առնէին, և զիւրեանցն՝ ճշմարիտս։ Ապա այնուհետև բազումք մոլորեալք ՚ի նոցանէ և ոչ հաւատային իսկ մարգարէիցն. քանզի մարգարէութիւնն՝ ոչ անդէն միանգամայն ասէին և իսկ և իսկ իրացն վճիռ առնէին. զի մարգարէութեանն բանք էին՝ յառաջագոյն գուշակել, և յետ բազում ժամանակաց գալ բանիցն յարդիւնս. և զի ճառէին բազում անգամ և զսովոյ և զսրոյ, և իրքն իսկ և իսկ ոչ կատարէին, քանզի առ յապա էին գործելոց, ՚ի թերահաւատութիւն կործանէին բազումք ՚ի մոլորելոցն. լիցի, ասէ, զի՞նչ լինելոցն իցէ, սուտ գտեսցին իրքն, ցուցէք արդեամբք զխորհուրդն Աստուծոյ։ Եւ քանզի երկայնմտութիւնն Աստուծոյ՝ անհաւատութեան պատճառք լինէր, և յայնմանէ ևս յաճախէին ՚ի մեղս առ ՚ի չհաւատալոյ և ՚ի չհաւատալոյն՝ ծուլալ, յիրաւի մարգարէն ողբայ և ասէ, եթէ իբրև երկայն չուանօք՝ այնպէս ձգէք յանձինս զբարկութիւնն Աստուծոյ և անձեցուցանէք զչարիսն ձեր. և զի չհաւատայք բանիցն այն, և եթէ պակասէ զի զարդեանց հանդէս տեսանիցէք, դուք ձեզէն էք՝ որ զչարիսն ձգէք ՚ի ձեզ՝ չհաւատալով ասացելոցն. վասն այնորիկ և ասէ իսկ, թէ «Վայ այնոցիկ ոյք կորզիցեն զմեղս իւրեանց», այսինքն է զհատուցումն մեղացն՝ իբրև երկայն չուանաւ ձգէին ՚ի բացուստ, զվաղուցն կատարեալ զբարկութիւն վրիժուցն. «Եւ իբրև սամետէիւք լծոյ երինջոյ՝ զանօրէնութիւնս». զի որպէս ուժգին սամետէիւք լուծ ձգիցի, նոյնպէս և նոքա թերահաւատութեամբ ձգէին յանձինս զբարկութիւնն Աստուծոյ։ Ապա ասէին[1], թէ որպէս ձգէին. «Ոյք ասէին, ասէ, փութացի մերձեսցի զոր ինչ առնելոց իցէ Աստուած, զի տեսցուք». և միւս ևս մարգարէ մեղադիր լինի, թէ Վայ ոյք ցանկայցեն աւուր Տեառն. զի՞ կայ ձեր և աւուրն այնորիկ. զի խաւար է նա և ոչ լոյս, և մէգ, և ոչ գոյ ՚ի նմա ճաճանչ լուսոյ. որպէս նոքայն չհաւատային թէ չիցէ գալոց օրն դատաստանի և պատժոց։

1 Ես. Առ։

«Վայ այնոցիկ՝ որք ասիցեն զչարն բարի և զբարին չար. և որք դնիցեն զխաւարն լոյս և զլոյսն խաւար. և որք դնիցեն զքաղցրն դառն և զդառնն քաղցր»: Դարձեալ զնոյն իրաց ասէ. զի զմարգարէսն Թշնամանէին և խաբեբայս կոչէին, և զսուտ մարգարէսն պատուէին և յարգէին՝ աշխարէ զանմտութիւն նոցա և ասէ. «Վայ որք ասիցեն զչարն բարի», զսուտ մարգարէութիւնն՝ ճշմարտութիւն, և զճշմարիտն՝ ստութիւն: Զի Թէպէտ և բանքն ծանունք իցեն, սակայն չիք ինչ քաղցր քան զմարգարէութիւնն՝ որք սպառնալեօք բանից՝ փարատէին զբարկութիւնն. և Թէպէտ և քաղցր են բանք սուտ մարգարէիցն, ոչ ինչ գոյր դառն քան զայն, զի պաշտօն առնելով յաղացուցանէին[1] և առնէին արժանիս պատժոց: Սոյնպէս զխաւարն և զլոյսն է իմանալ. զի նոքա 'ի խաւար ձգէին, և մարգարէքն 'ի լոյսն առաջնորդէին:

«Վայ այնոցիկ՝ որք զանձինս առ իմաստունս ունիցին, և յաչս անձանց խորհրդականս երևեցին»: Զի և այս չէ ինչ փոքր մնաս զանձն առ իմաստունս ունել և ըստ իւրոց մտացն ևեթ գնալ. զի յայսմանէ լինի և այն՝ զոր և Պաւղոս առ արտաքին իմաստունսն ասէր. Զանձինս առ իմաստունս ունէին՝ յիմարեցան. քանզի յայսպիսի մտաց յիմարեցան. և Առակագիրն ասէր. Տեսի զմարդն յանձն պանծացեալ՝ թէ իմաստուն իցէ. և յանմտին առաւել յոյս գոյր քան 'ի նմա: Վասն որոյ և Պաւղոս սաստէ՝ թէ Մի՛ լինիք իմաստունք յանձինս ձեր. և դարձեալ, թէ Որ կամիցի իմաստուն լինել՝ յիմար լիցի. մի՛ յիւր իմաստութիւնն ևեթ պանծանալ և ըստ իւրոց մտացն ևեթ գնալ, այլ զիւր խորհուրդն զիջուցանիցէ, և այնմ ևեթ տացէ զանձն՝ որ զվարդապետութիւն Հոգւոյն ուսուցանիցէ: Եւ արդ քանզի և էին 'ի Հրէիցն ոմանք, որք մարգարէիցն չանսային իբրև հովուաց առաջնորդաց, և անձամբ ևեթ կամէին իմաստնանալ, որ հպարտութեան պատճառ էր նոցա, յիրաւի ողբայ՝ թէ «Վայ այնոցիկ՝ որ զանձինս առ իմաստունս ունիցին»:

«Վայ հզօրացդ՝ որ ըմպէն զգինիդ, և իշխանացդ՝

1 Յօր. Յղացուցանէին:

որ խառնեն զօղի »։ Ամենայն ուրեք չար է արբեցութիւն, մանաւանդ իշխանաց՝ որոց ամենայն իք յանձն իցեն։ « Որ երթան զհետ ամբարշտութեան վասն կաշառոց, և զիրաւունս գողանան զարդարոյ »։ Կրկին չարիք են, զի զարդարն պարտաւորեցուցանեն և զպարտաւորն արդարացուցանեն, և երկոցունց մեղաց՝ կաշառքն են պատճառք. վասն որոյ և զպատճառն 'ի մէջ բերէ, թէ « Որպէս վառի եղէգն 'ի հրոյ, այնպէս բորբոքեսցի բոց 'ի վերայ նոցա, և այրեսցէ զնոսա իբրև զմղեղ »։ Զի վաղվաղակի հատանելոց էին 'ի վերայ նոցա պատիժքն։ « Եւ ծաղիկ նոցա իբրև զփոշի »։ Զհաստատուն կարգս նոցա մաղեսցէ և ցանեսցէ իբրև զփոշի։

« Զի ոչ կամեցան զօրէնս Տեառն զօրութեանց առնել, այլ գրգռեցին զպատգամն առաւել Սրբոյն Իսրայէլի »։ Պատգամն՝ զօրէնսն կոչէ։ « Եւ բարկացաւ Տէր զօրութեանց 'ի վերայ ժողովրդեանն, բարկացաւ 'ի վերայ լերանց, և անկան դիակունք նոցա իբրև աղբ զճանապարհաւ։ Ի վերայ այսր ամենայնի ոչ դադարեաց բարկութիւնն, այլ տակաւին ձեռն իւր բարձրացեալ է »։ Պատերազմ իմն անհնարին ակնարկէ, զի և զդիակունս նոցա չառնէ արժանի թաղելոյ. ոչ զի նոքա տանջեսցին ինչ, այլ զի կենդանիքն այլոց հարուածովքն կարճեսցին 'ի չարեացն։ Եւ տես, զխորդ սաստիկս իմն բարբառի. ոչ ասէ թէ մի թաղեսցին, այլ քան զաղբ եւս անարգագոյն ընդ վայր անկանիցին ոսկերք վախճանելոցն. որ կենդանեացն ահագին իմն թուի, և քան զմահ եւս դառնագոյն։ Նա և այն եւս չար է, զի թէպէտ և այնպիսի ինչ անցք անցանիցեն ընդ նոսա, սակայն և այնպէս ոչ իմաստնանայցեն, այլ 'ի նոյնս մնայցեն. և քանզի ոչ ինչ էին գալոց 'ի լաւութիւն, վասն այնորիկ սպառնայ զհինին անհնարին հարուածսն. վասն որոյ և ածէ իսկ զնովիմբ. « Այսուհետև բարձրացուսցէ նշան 'ի հեթանոսս ». զի մի և երկայնութիւն ճանապարհացն դանդաղութիւն ինչ լինիցի նոցա, այնպէս դիւրին է Աստուծոյ ածել զնոսա, որպէս ով զի բառնայցէ նշան ինչ որ կանգնեալ կայցէ. զոր և 'ի ձիոց հրահանգս գոռական ասպարիզացն տեսանեմք, զի յորժամ ըզ-

նշանն 'ի միջոյ բառնան, ինքնակամինքն դրդուեալք յանկարծ արշաւեն 'ի գլուխ ապարիզացն։ Վասն որոյ մարգարէս ակնարկէ, թէ մտադիւր յօժարութեամբ գայցեն, իբրև յԱստուծոյ կոչեցեալք. նա եւս վաղուց եկեալ էին՝ թէ ոչ Աստուծոյ երկայնմտութիւնն էր խափանեալ։ Եւ դարձեալ զի եւս դիւրագոյն ցուցանիցէ զգալուստն, «Եւ շնչեսցէ, ասէ, նոցա 'ի ծագաց երկրէ»։ Եւ ընդ այն ինչ մի զարմանար թէ յորժամ Աստուած խօսի՝ թանձրագոյն իմն բանիւք բարբառիցի. ըստ անմտութեան լսողացն՝ նոյնպէս և կերպարանս բանիցն զգեցուցանէ՝ թէ Աստուծոյ դիւրին է և իրքն լինելոց է. վասն որոյ և յարէ 'ի նոյն. «Թէ ահաւասիկ վաղվաղակի 'ի թեթեւագոյնս հասանիցեն»։

«Ոչ քաղցիցեն և ոչ վաստակեսցեն, ոչ նիրհեսցեն և ոչ ննջեսցեն»։ Զայս յաճախաբար իմն ասէ. քանզի անհնար էր ոչ քաղցնուլ և ոչ ննջել, զի մարդիկ էին և զհասարակաց պէտսն ունէին. այլ զարագութիւն զօրացն, զյօժարութիւնն, զանարգելական մտադիւրութիւնն նշանակէ, որպէս և վաղագոյնն։ «Ոչ լուծցեն զգօտիս 'ի միջոյ իւրեանց և ոչ զխրացս կօշկացն լուծանիցեն։ Որոց նետք իւրեանց սրեալ են և աղեղունք լարեալք. սմբակք երիվարաց նոցա՝ իբրև զվէմ հաստատուն համարեցան և անիւք կառաց նոցա՝ իբրև զմրրիկ փոթորկեալ։ Մռնչեսցեն իբրև առիւծունք և հասցեն յափշտակեսցեն իբրև զկորիւնս առիւծուց. գոչեսցեն, յարձակեսցին, հանցեն գաղտնաբար, [illegible] ոչ ոք իցէ որ փրկիցէ 'ի նոցանէն։ Աղաղակ լիցի վասն նոցա յաւուր յայնմիկ՝ իբրև ծովու խռովելոյ ալեաց. հայեսցին յերկինս 'ի վեր և յերկիր 'ի խոնարհ, և ահա խաւար խստութեան 'ի վարանս տուայտութեան նոցա»։ Եւ ամենևին զբանսն մեծացուցանէ և զահն յաճախէ և զբարոյիցն պատմէ և ըզզօրութենէ և զզինուց և զերիվարաց և զկառաց. զի 'ի բազմացուցանել բանիցն՝ ահ 'ի միտս արկցէ լսողացն։ Նաև առիւծուց և կորեանց առիւծուց նմանեցուցանէ զնոսա. և ոչ այսչափ միայն, այլ և գոչեսցեն ևս, ասէ, և յարձակեսցին գաղտնաբար. և այսպէս յամէ իմն 'ի փոփոխական յորջորջմանն. զի 'ի գաղանացն՝ և

'ի ծով եւս փոխէ զգանձն. և այնպիսի ինչ խաղաղութիւն լինիցի՝ որպէս ծովու 'ի կուտակել ալեացն յարուցելոցն. և ամենայն հնարիւք ջանայ, զի զահն սաստկացուսցէ, զի ընտանիքն մի ինչ կարօտ լինիցին իրացն հանդիսից: Եւ այն եւս չար է՝ զի ոչ վերակացու ոք դատիցի նոցա, ոչ յերկրէ և ոչ յերկնից. այլ ամենեքեան 'ի մերոյն պաշտպանութենէն և 'ի ներքին օգնականութենէն՝ մատնեսցին 'ի ձեռս պատերազմողացն: Խաւար աստ՝ զվիշտս որ գալոց էին 'ի վերայ նոցա՝ կոչէ. զի ոչ եթէ արեգական ճառագայթք մթանային, այլ նոցա միջօրեայն 'ի խաւար էր դառնալոց, որ միշտ նեղելոց և վշտագնելոց խաւար թուի լցեալ՝ 'ի նեղութիւնսն. վասն որոյ և յաւելու 'ի նոյն, թէ « Խաւար խաւարութեան 'ի վարանս տուայտութեան նոցա »:

## ԳԼՈՒԽ Զ

« Եւ եղև յամին՝ յորում մեռաւ Ոզիա արքայ »:
Եւ զխորհուրդ իցէ զի զայլ ժամանակսն 'ի կենաց թագաւորացն նշանակէ և զայս ժամանակ 'ի մահուանէ թագաւորին. քանզի ոչ ասաց՝ թէ եղև յաւուրս Ոզիայ, այլ եղև, ասէ, յամին՝ յորում մեռաւ Ոզիա: Եւ զայս ոչ վայրապար, այլ և զծածուկս ինչ ակնարկէ: Եւ զինչ իցէ ծածուկն. զի Ոզիա յորժամ մեծացաւ և յղփացաւ, սկսաւ և այլ ինչ պատիւ ըղձանալ. և քանզի թագաւոր էր, կարծեաց թէ և 'ի քահանայութիւնն պարտ է նմա մատչել. յանդգնեցաւ մտանել 'ի տաճարն և 'ի սրբութիւն սրբոցն. զժկամակ լինէր և ոչ անսայր քահանայիցն. և զի յանդգնեցաւ և եմուտ, վարեաց Աստուած 'ի ճակատ թագաւորին բորոտութիւն. և քանզի ըղձանայր աւելի եւս պատիւ՝ քան զոր ունէրն՝ առնուլ, և յայնմանէ եւս զոր ունէրն՝ անկաւ. զի ոչ միայն զքահանայութիւնն չառ, այլ և 'ի թագաւորութենէ անտի եւս անկաւ բորոտութեամբն. քանզի 'ի ծածուկ սենեկի բնակէր զամենայն աւուրս կենաց իւրոց, և ոչ կարէր յամօթոյն արտաքս ելա-

նել. նա և ժողովուրդն ամենայն ընդ նմին պատժէին յԱստուծոյ բարկութենէն. զի անփոյթ արարին զօրինացն, և զքահանային՝ որ թշնամանեցաւ՝ վրէժ ոչ խնդրեցին: Եւ զիա՞րդ արդեւք կրեցին ընդ նա պատիժս յԱստուծոյ բարկութենէն՝ ժողովուրդն. այլ զի մարգարէութիւնն դադարեաց, քանզի ցասուցեալ էր նոցա Աստուած, և ոչ ումեք ինչ տայր նոցա պատասխանի. զի որչափ ժամանակս թագաւորն 'ի կեանս էր, նոյնչափ ժամանակս և պատիժքն ձգեցան. և 'ի մեռանել թագաւորին եբարձ զպատիժսն Աստուած. զայն ակնարկէ մարգարէն՝ յուշ առնելով զժամանակս վախճանելոյ թագաւորին. վասն որոյ և այսպէս իսկ առնէ սկիզբն մարգարէութեանն:

« Եւ եղև, ասէ, յամին՝ յորում մեռաւ Ոզիա արքայ, տեսի զՏէր զի նստէր »: Թէպէտ և յաւետարանի ասէ Քրիստոս, թէ զԱստուած ոչ ոք երբէք ետես, բայց Միածինն՝ որ է 'ի ծոց Հօր՝ նա պատմեաց. և դարձեալ, թէ Ոչ ոք ետես զՀայր, եթէ ոչ որ էն յԱստուծոյ. և ցՄովսէս զնոյնն ասէր, թէ Ոչ ոք տեսցէ զերեսս իմ և կեցցէ. և արդ սա զիա՞րդ ասիցէ՝ թէ տեսի զԱստուած. « Տեսի, ասէ, զՏէր »: Ոչ եթէ հակառակ իցէ սորայս այնմ՝ որ 'ի Քրիստոսէ ասացաւ, այլ առաւել միաբանութիւն. զի Քրիստոս վասն ճշմարիտ տեսանելոյն ասաց՝ թէ Ոչ ոք ետես. քանզի մերկ և առանց կերպարանօք ինչ երևելոյ զէութիւնն Աստուծոյ՝ ոչ ոք ետես, բայց միայն Միածինն. և մարգարէն իսկ որ ինչ իւր մարթն էր տեսանել՝ զայն պատմէր. քանզի ոչ եթէ որպիսին է Աստուած՝ զայն կարաց տեսանել, այլ զկերպարանսն յոր փոխեցաւ. զի այնչափ խոնարհեցաւ, որչափ տկարութիւն տեսողին՝ տեսանել կարէր: Եւ զի ոչ մերկ ետես զաստուածութիւնն՝ ոչ սա և ոչ այլ ոք 'ի մարգարէիցն, 'ի բանից անտի զոր պատմենն՝ յայտ է. քանզի և ասէ իսկ, թէ « Տեսի զՏէր՝ զի նստէր ». զի Աստուած ոչ նստի, զի նստելն՝ մարդկան կերպարանք են. և ոչ վայրապար նստէր, այլ յաթոռ. և Աստուած ոչ բովանդակի և ոչ ընդ սահմանաւ անկանի. քանզի զիա՞րդ որ ամենայն ուրեք մօտ է և զամենայն լնու, որոյ 'ի ձեռին են ամենայն ծագք երկրի՝ նստէր արդեւք, և 'ի սակաւ չափ աթո-

ուրոյն ժողովեալ. ուստի յայտ իսկ է՝ զի ըստ մեզ զիջանելոյ զԱստուծոյ նշանակէ՝ որ երեւեցաւն։ Զնոյն և միւս եւս մարգարէ իբրև յերեսաց Աստուծոյ ակնարկեալ ասէր, եթէ Ես տեսիլս յաճախեցի. այսինքն է՝ թէ 'ի պէսպէս տեսիլս երեւեցայ. զի եթէ մերկ զաստուածութիւնն ոք կարէր տեսանել, ապա ոչ պէսպէս տեսլեամբք երեւէր. այլ զի ըստ մարդկան զիջանէ, երբեմն այլովք և երբեմն միւսովք կերպարանօք երեւէր մարգարէիցն։ Ըստ ժամանակացն՝ որ առաջի կային՝ նոյնպէս և զկերպարանսն փոփոխէր. վասն այսորիկ, ասէ, թէ Ես տեսիլս յաճախեցի, և 'ի ձեռն մարգարէից նմանեցայ, ոչ որպիսի ինչ էին՝ ասէ, երեւեցայ, այլ որպիսի դուքն կարէք տեսանել՝ այնմ նմանեցայ։ Տեսանէ՞ս, զի երբեմն նստեալ յաթոռ երեւի և երբեմն վառեալ և երբեմն իբրև վարսաւոր հինաւուրցն և երբեմն հողմով և երբեմն հրով և երբեմն 'ի թիկանց և երբեմն 'ի վերայ քերովբէից և երբեմն 'ի քրէական նիւթոց կերպարանս։ Եւ արդ, ընդէ՞ր արդեւք երբեմն փառեալ և երբեմն 'ի թիկանց, երբեմն յերկինս, երբեմն յաթոռ և մերթ 'ի քերովբէս։ Ոչ այժմ ժամանակ է ասել. զի մի՛ որ այժմ գործն ինչ իցէ՝ մեծ քան զգործն լինիցի. այլ առ այժմ 'ի պէտս մօտաւոր տեսլեան իրացս փութասցուք խօսել, թէ ընդէ՞ր այժմ այսպէս նստեալ յաթոռ, հանդերձ սերովբէիւք՝ մարդկեղէն իմն սովորութեան նմանի։ Քանզի և վասն մարդկան իսկ էին պէտք, զի վճիռ իմն տալոց էր մեծամեծ իրաց, և ամենայն իսկ տիեզերաց, մանաւանդ Երուսաղեմացւոցն՝ կրկին իմն դնէ զվճիռն, զի և պատիժս ածէ քաղաքին և ամենայն հեթանոսաց զբարերարութիւնն, և բազում յոյս խոստանայ և պատիւս անմահականս։ Զի յորժամ դատաւորք յատենի նստիցին՝ զայսպիսի իրս ոչ եթէ գաղտ վճարիցեն, այլ յաթոռ բարձրութեան նստեալ յատենի. անդ սպասաւորք, անդ սրահանկք 'ի սպասս ձգեն և մերկանան յայնպիսի իրաց. նման այնմ՝ շուրջ զիւրեաւ ցուցանէր սպասաւորս սրոբէս, և յաթոռ բարձրութեան նստէր և տայր այսպիսի վճիռ։ Եւ զի ուսանիցիս թէ ոչ կարծիք ինչ են իրքն, այլ այսպիսի իմն սովորութիւն է Աստուծոյ, կամիմ և 'ի միւսմէ եւս մարգարէէ

յայտ առնել. քանզի և առ Դանիէլիւ յորժամ զահագին վճիռն էր տալոց, նախ քան զտանջանս և զպատիժս Հրէից և զբարութիւնսն՝ որ ամենայն աշխարհաց լինելոց էին, և անդ աթոռ լուսաւոր և ահագին երևէր և ժողովք հրեշտակաց և գունդք հրեշտակապետաց 'ի սպաս և Միածինն նստէր և դպրութիւնք բանային և գետ հրեղէն յորդեալ ելանէր և ամենևին յօրինեալ չափք ատենից երևէին. զի և այն՝ այսմ որ աստ ասին՝ նման է. Թէպէտ և այն յայտնագոյն էր քան զայս. քանզի և ժամանակն՝ յորս իրքն կատարելոց էին՝ մօտ էր, և առ դուրս իսկ եկեալ հասեալ կայր մարգարէութիւնն: Այլ զայն ուսումնասիրաց թողցուք, զժողովել 'ի մի վայր և զերկոցունց մարգարէութեանցն զհամաձայնութիւնն ուսանել միանգամայն. և մեզ զայսց իրացս որ առաջիս կան՝ փոյթ յանձին ունիցիմք առնել հաւաստեաւ՝ որպէս մեզ մարթ իցէ. զի յորժամ զամենայն զբանսն յեղյեղիցեմք՝ այնպէս և մեզ և ձեզ լուսաւորագոյն լինիցի ասացելոցն իմաստ:

Եւ արդ զի՞նչ իցէ, «Տեսի, ասէ, զՏէր նստեալ». Նստելն յաթոռ՝ զատենի իմն օրէնս մեզ յայտ առնէ, որպէս և Դաւիթ ասէ, թէ Նստար յաթոռ դատաւոր արդարութեան. և Դանիէլ ասէ, թէ Աթոռք արկան և ատեանն ուղղեցաւ: Իսկ զլոյն նշանակել՝ այլ իմն նշանակէ մարգարէ՝ զհաստատութիւնն, զանեղծութիւնն, զմշտնջենաւորութիւնն, զյաւէժ կենդանութիւնն. վասն որոյ և ասէ իսկ, թէ Դու նըստիս յաւիտեան և մեք կորնչիմք իսպառ. այս ինքն է, թէ դու կաս մնաս նոյն միշտ կենդանի, միշտ նոյնպիսի. և զի ոչ վասն յաթոռ նստելոյ ասէ, անդէն առընթերակայ խորոցաւն յայտ առնէ. քանզի ոչ ասէ՝ թէ մեք յառն կամք և դու նստիս, այլ՝ թէ դու նստիս և մեք կորստականք եմք: Իսկ յաթոռ նստելն՝ զդատելն յայտ առնէ. վասն այսորիկ տեսանէ նստեալ յաթոռ բարձրութեան և վերացելոյ. կամ թէ պատմութիւն է՝ զմին ասէ զբարձրացելոյն և ըզվերացելոյ, կամ թէ այլ իմն զսա և այլ իմն զնա ակնարկիցէ, զի բարձր էր աթոռն, այսինքն է՝ մեծ և վերացեալ յերկրէ, քանզի անչափ բարձրութեան երևէր:

« Եւ լի էր տունն փառօք նորա »։ Ո՞ր տուն. տա-
ճարն. քանզի անտի հրաման տայր, նմանագոյն իսկ
այնպիսի զքանչելի տեսլեանն՝ անդ նստեալ երեւէր.
զանճառ փառսն՝ զոր բանիւ չէ հնար մեկնել՝ փառս
կոչեաց. լոյս ասէ՝ զմեծապայծառ փառսն կոչէ, զան-
ճառն, զանքննին, զոր ոչ ոք կարէ բանիւ մեկնել. և ոչ
վայրապար փառս, այլ Աստուծոյ փառս։

« Եւ սրովբէք կային շուրջ զնովաւ »։ Եւ զի՞նչ իցեն
սրովբէքն. անմարմնական զօրութիւնքն, 'ի վերնոցն
դնդացն, զորոց զառաքինութիւնն և զերանութիւնն՝
յանուանց է իմանալ. զի 'ի հեբրայեցի լեզու՝ հրեղէն
բերանք թարգմանին սրովբէք։ Եւ զի՞նչ իցէ ասել ի-
մանալ. զսրբութիւն էութեան նոցա, զանքծուն բնու-
թիւնն, զերագութիւնն, զանարատութիւնն, զագ-
դական զօրութիւնն. զի այսպէս և միւս մարգարէն,
յորժամ զանխափան վերին զօրութեանցն զպաշտա-
ւորութիւն կամէր ցուցանել և զերագականատար պաշ-
տօնն՝ Որ առնէ, ասէ, զհրեշտակս իւր հողմս և զը-
պաշտօնեայս իւր՝ հուր կիզելոյ. զերագութիւնն, զթե-
թեւութիւնն, զվաղվաղակի կատարեալ զհրամանսն
ցուցանէ այս երկու արարածովք։ Այսպիսի իմն են
և այն զօրութիւնք, զի սրբասաց բերանովք միշտ
փառաւորեն զՏէրն. զի այն իսկ գործ է նոցա, զի
միշտ զօրհնութիւնս ևեթ ունիցին 'ի բերան, զան-
դադար պաշտօնն։ Դարձեալ ցուցանէ զպատիւ նո-
ցա՝ մերձաւորութեամբ նոցա զաթոռովն. զոր օրինակ
առաջի երկրաւոր թագաւորացն, նոյնպէս և սրովբէիցն
զօրութիւնք վասն առաւել առաքինութեանցն զվե-
րին աթոռովն շուրջ պատեալ են, և յանվախճան ե-
րանութիւնսն վայելեն հանապազ, և զուարճանան
յերանեալ կայանսն սպասաւորութեան։

« Վեց թեւք միոյ և վեց թեւք միոյ. երկուքն
ծածկէին զերեսս իւրեանց, և երկուքն ծածկէին
զոտս իւրեանց, և երկուքն թռուցեալ՝ աղաղակէին
մի առ մի և ասէին. սուրբ, սուրբ, սուրբ, Տէր զօ-
րութեանց՝ լի է ամենայն երկիր փառօք նորա »։ Եւ
արդ զի՞նչ կամիցին մեզ թեւքն այնպիսիքն նշանակել.
քանզի ոչ եթէ թեւք իցեն անմարմնական զօրու-
թեանցն, այլ զի թանձրութեան կերպարանօքն զծա-

ծուկս ինչ յայտնեացէ մեզ մարգարէս և ըստ նոյա տկարութեան զիջանելով, որք 'ի ժամանակի անդ զբանսն լսէին, բայց ըստ զիջանելոյն՝ և իմաստ ինչ որ ըստ ամենայն միտս անցանէն՝ հաւաստեաւ ցուցցէ մեզ։ Եւ արդ զի՞նչ առնիցեն թեւքն. զհամբառնալն, զվերացութիւնն այնպիսի զօրութեանց. որպէս Գաբրիէլ թռուցեալ իջեալ յերկնից երեւէր, զի ուսանիցիս զթեթեւութիւնն և զվերացութիւնն։ Եւ ընդ այս զի՞ զարմանաս թէ զհարկաւոր զօրութեանցն այսպիսի բանս թանձունս խօսի, ուր և զամենեցունն իսկ Աստուծոյ ըստ զիջանելոյ՝ ոչ ինչ դանդաղի այսպիսի բանս 'ի կիր արկանել, թէ կամ զանմարմնաւորութիւնն կամի ցուցանել, կամ զվերացութիւնն, զի յամենայն տեղիս բաւական է. Որ շրջին, ասէ, 'ի վերայ թեւոց հողմոց. թէպէտ և հողմոց թեւք չեն և ոչ նա 'ի վերայ թեւոց շրջի, քանզի յամենայն վայրի է. և որպէս յառաջագոյնն ասացի, թէ ըստ տկարութեան լսողաց զիջեալ, այնոքիւք որով մարթն է լինել՝ հանէ զմիտս նոցա 'ի վեր։ Եւ դարձեալ, զի զօգնականութիւնն նոցա յայտ առնիցէ և որ յայնմանէ զգուշութիւնն իցէ՝ սոյնպիսի բանս 'ի մէջ բերէ, թէ ի հովանի թեւոց քոց ծածկեսցես զիս. և աստ՝ թեւօքն ոչ միայն զվերացութիւնն ակնարկէ մարգարէս, այլ և այլ ինչ ահագին։ Զի թէպէտ և ըստ զիջանելոյ մարդկան էր տեսիլն, քանզի և էր իսկ վասն այնորիկ, սակայն և ոչ վերին զօրութիւնքն լինէին ժուժկալ այնմիկ. և ծածկեն իսկ զոտս և զերեսս և զթիկունս՝ զդողալն, զզարհուրելն, ըստ չժուժալ փառաց աթոռոյն՝ յայտ առնէ. վասն այսորիկ իբրև պարսպով իւիք՝ թեւոցն ամբառնալովք՝ ծածկէին զերեսս իւրեանց. որպէս մեք իսկ սովոր եմք առնել, յորժամ որոտմունք ճայթիցեն, փայլատակմունք շողայցեն, զգլուխ 'ի վայր արկանեմք, զերկիր նշմարեմք, նոյնպէս և նոքա յահէ փառացն զարհուրին։ Զի եթէ սրովբէից մեծամեծ և սքանչելի զօրութիւնքն, զԱստուած մինչդեռ յաթոռ նստէր, ոչ կարէին համարձակ տեսանել, այլ և զերեսս և զոտս ծածկէին, ո՞ այնչափ ոք անմիտ կայցէ, որ ժպրհիցի ասել՝ թէ Աստուած յայտ յանդիման տեսանի, կամ թէ անմահ էութիւնն

քննիցի։ «Եւ երկուքն թռուցեալ՝ աղաղակէին»։ Եւ զի՞նչ ինչ թուչէն յայտ առնիցէ. այլ զի միշտ հանապազ առաջի Աստուծոյ կան և 'ի նմանէ հեռանալ ոչ իշխեն. քանզի այն իսկ է նոցա առաքինութիւն, զի զմշտնջենաւոր օրհնութիւնսն Արարչին միշտ 'ի բերան ունիցին։ Եւ ոչ ասէ՝ թէ աղաղակեցին, այլ թէ աղաղակէին. զի յայտ արասցէ թէ միշտ այն գործ է նոցա։ «Աղաղակէին մի ցմի և ասէին. սուրբ, սուրբ, սուրբ»։ Եւ այս օրհնութիւն ոչ միայն փառաւորութիւն է, այլ և մարգարէութիւն բարութեանցն՝ որ լինելոցն էին յաշխարհի և կրօնից հաստատութեան։ Ընդէ՞ր ոչ ասացին սուրբ՝ և լռեցին, և կամ երկիցս՝ և դադարեցին, և կամ երիցս՝ և այլ յաւելին. ո՞չ ապաքէն յայտ է թէ Երրորդութեանն մատուցանէին ըղփառաւորութիւնն. վասն այնորիկ երիցս՝ և այլ ոչ յաւելին. զոր Յովհաննէս ասէ՝ թէ զՈրդւոյ ասացաւ, և Ղուկաս՝ թէ զՀոգւոյն, և մարգարէս՝ թէ զՀօրէ։ Այլ և յաջորդաւն ևս յայտ են մեզ բանիս, զի յետ զփառաւորութիւնն մատուցանելոյ՝ յարէ 'ի նոյն, թէ «Լի է ամենայն երկիր փառօք նորա». որ ճշմարիտ մարգարէութեանն էր՝ յառաջագոյն գուշակել զհանդերձելոց փառացն Աստուծոյ՝ որով լնլոց էին ամենայն տիեզերք, այսինքն է գիտութեամբն նորա։ Քանզի յայնժամ՝ յորժամ այս բանք ճառեցան, ոչ միայն մի կողմ տիեզերաց կամ երկու, այլ զի և Հրէաստանի երկիրն իսկ լի էր ամբարշտութեամբ, և ոչ ոք ուրեք էր որ փառաւորէր զԱստուած. և վկայէ սոյն մարգարէ. Վասն ձեր, ասէ, անուն իմ հայհոյի 'ի մէջ հեթանոսաց։ Իսկ յո՞ր ժամ լի եղև փառօք ամենայն երկիր. յորժամ օրհնութիւնս այս էջ յերկիր, և գնդակիցք եղեն մարդիկ վերին զօրութեանցն, և զմի փառաւորութիւն նուագեալ յօրինէին առհասարակ վերինք և ներքինք։ Ապա եթէ յամառիցի Հրէայն առ այս զոր ասացաքս, ցուցցէ թէ ե՞րբ լցաւ ամենայն երկիր փառօք նորա, այսինքն է՝ ե՞րբ ծանեաւ զնա առհասարակ ամենայն երկիր. այլ գիտեմ՝ թէպէտ և յամառիցին՝ չկարեն ցուցանել։

«Եւ վերացաւ դրանդն 'ի ձայնէն զոր աղաղակէին»։ Տեսանե՞ս, զի զամենայն կարգաւ մի ըստ միոջէ

յառաջագոյն գուշակէ մարգարէութիւնն. զի յետ օրհնութեանս այսորիկ և ընդ ամենայն երկրի փառօք նորա, դադարեցին ամենայն հրէական կրօնքն. քանզի վերանալ դրանդւոյն՝ զաւերած տաճարին նշանակէր. զի 'ի տաճարին աւերելն՝ և այլն ևս ամենայն ընդ նմին քակէր. և զի ուսանիցիս թէ նորս զհինն դադարեցոյց, «Ի ձայնէն, ասէ, վերացաւ դրանդին». այս ինքն է՝ 'ի գալ հասանել այսր փառաւորութեան և 'ի ծագել շնորհաց և 'ի յայտնել փառացն ընդ ամենայն տիեզերս, ամենայն կարգք ստուերին 'ի միջոյ բառնային:

«Եւ տունն լի եղև ծխով»: Թուի ինձ թէ այս՝ պաշարման ինչ նշանակ է և հինական հրոյ՝ որով այրեցին զքաղաքն: «Եւ ասեմ. վայ ինձ՝ զի ես եմ այր տառապեալ և կամ հիացեալ. զի մարդ եմ ես և պիղծ շրթունս ունիմ, և 'ի մէջ պղծախօս ժողովրդեան բնակեալ եմ, և զՏէր կամարար տեսի աչօք իմովք»: Զարհուրեցոյց տեսիլն զմարգարէն, շտապեաց ահն, շարժեաց 'ի հաստատուն խոստովանութիւն, 'ի միտ առնուլ զիւրոյ անձինն զնուաստութիւնն: Զի այսպիսիք իսկ են սուրբք ամենայն, յորժամ մեծապատիւ մեծարիցին՝ յայնժամ առաւել խոնարհութիւն ցուցանեն. այսպիսի էր և Աբրահամ, զի թէպէտ և ընդ Աստուծոյ խօսէր, սակայն հող և մոխիր կոչէր զանձնն. սոյնպէս և Պաւղոս յորժամ տեսլեանն արժանի եղև, յայնժամ տրուպ ընկեցիկ առնէր զանձն. նոյնպէս և սա՝ տառապեալ կոչէր զանձնն. նախ զտկարութիւն բնութեանն իսկ խոստովանի, և ապա զմտացն խոստովանութիւն յայտ առնէ: «Եւ պիղծ շրթունս ունիմ» ասէ: Պիղծ շրթունս՝ ինձ թուի եթէ յայս սակս ասէ՝ առ 'ի համեմատութիւն հրեղէնն բերանոյ և բոցեղէնն աչաց սրբոց զօրութեանցն՝ որք 'ի ճշմարիտ պաշտաման կային, եթէ՝ զի՞նչ նման եմ ես նոցա: Եւ ոչ այսչափ միայն, այլ և ընդ ամենայն իսկ ժողովրդեանն խոստովան լինի. քանզի յարէ իսկ 'ի նոյն, թէ «Ի մէջ պղծախօս ժողովրդեան բնակեալ եմ ես»: Եւ ընդէ՞ր բամբասիցէ զշրթունս պիղծս, այլ զի զանհամարձակութիւն ցուցանիցէ. քանզի և երեք մանկունքն 'ի հնոցին գրեթէ զնոյն բանս խօսեցան. Եւ

ոչ գոյ մեզ, ասեն, բանալ զբերան. և ասա՝ քանզի օրհնութեան և փառաւորութեան ժամանակ էր, և մանաւանդ զի զվերին զօրութիւնսն յայնպիսի օրհնութիւնս տեսանէր, նմանագոյն պիղծ շրթունս ասէր իւր, յայնպիսի յահեղ պաշտօնն կոչեցեալ զիւր շրթունսն՝ յայս միտս կոչէր. «Եւ զՏէր Սաբաւովթ տեսի աչօք իմովք»։ Վասն այնորիկ հեծեմ և ողբամ, զի այսպիսի պատուոյ արժանի եղէ, որում չեմ արժանի, զի 'ի վեր է քան զիս պատիւս, անդր 'ի վեր բարձրագոյն քան զիմ բնութիւնս։ Իսկ յորժամ ասէ՝ թէ տեսի, մի զճշմարիտ տեսիլ աստուածութեանն կարծիցեն, այլ այնպիսի ինչ՝ որ ինչ նմա մարթ էր տեսանել։

Եւ արդ միտ դիր, որպիսի՜ շահք են 'ի խոստովանութենէ. խոստովան եղև զանձն, խոշտանգեաց, և վաղվաղակի և առժամայն սրբեցաւ. և քանզի այսպիսի բանս խոնարհութեան խօսեցաւ, «Առաքեցաւ, ասէ, մի 'ի սրովբէից, և 'ի ձեռինն իւրում ունէր կայծակն ունելովք 'ի սեղանոյն, և մերձեցաւ 'ի շրթունս իմ, և ասէ. Ահաւասիկ մերձեցաւ այդ 'ի շրթունս քո, և բարձցէ զմեղս և զանօրէնութիւնս քո և սրբեսցէ ըզքեզ»։ Ոմանք վասն հանդերձեալ խորհրդոցն որ լինելոցն էին, ասեն՝ թէ էր այն օրինակ. զսեղանն և զհուրն որ 'ի վերայ կայր՝ զմատակարարելն 'ի նորումն զօրութեանն՝ որ մերձենայ 'ի բերանս և սրբէ զմեղս։ Բայց մեք առ այժմ զպատմութիւնն վարեսցուք յառաջ, թէ վասն էր իրքն գործեցան։ Քանզի առաքելոյ էր զմարգարէն առ հրէական ժողովուրդն՝ ահագինս իմն և անհնարին իրս սպառնալ, առաքէր զսրոբէն զի և զերկիւղն մերժեսցէ և համարձակութեամբ լնուցու. զի մի պատճառիցէ որպէս Մովսէսն՝ թէ նըրբաձայն եմ և ծանրալեզու, և Երեմիա ասէր՝ թէ մանուկ եմ, նոյնպէս և նա ասիցէ՝ թէ պիղծ շրթունս ունիմ, չկարեմ սպասաւոր լինել այդպիսի հրամանաց, դայր հասանէր սրովբէն և սրբէր զմեղս նորա. ոչ իւրով զօրութեամբ, զի այս Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ միայն է, այլ հրամանաւ և տալով զկայծակնն։ Եւ ոչ ասաց՝ թէ ահաւասիկ բառնամ, այլ թէ ահաւասիկ սա բարձցէ զմեղս քո և սրբեսցէ զքեզ, այս-

ինքն հրամմնաւ այնորիկ՝ որ առաքեացն։ Եւ ընդէ՞ր արդեւք ունելեօք առնոյր սրոբէն զկայծակնն. ո՞չ ապաքէն և նա յանմարմնական զօրութեանցն էր՝ որք ոչ վնասին 'ի կայծականց։ Ասեմք՝ թէ ըստ յաւլում զիջանելոյն Աստուծոյ ընդ մարդկան. քանզի և 'ի սեղանոյն՝ ուր պատարագքն մատչէին և սրբութիւնքն լինէին՝ անտի առ զկայծակնն։ Իսկ եթէ ասիցէ ոք՝ թէ բերան մարգարէին ընդէ՞ր ոչ այրեցաւ, ասեմք՝ թէ և ոչ հուրն՝ հուրս այս երևելի էր։ Եւ այլազգ ևս, թէ յորժամ Աստուած գործ ինչ գործիցէ՝ դու զայն մի քններ և մի յանդգնիր 'ի խոյզ և 'ի խնդիր արկանել. քանզի և երևելի իսկ և զննելի հուրս՝ երբեմն մերձեցաւ 'ի մարմինս և ազդ ինչ հրոյ ոչ եցոյց. զի եթէ ուր որթն և ձիւթն այրէին 'ի միասին և բորբոքէին, մոռացաւ զիւր բնութիւնն բոցն, զայն զի՞ զարմանաս՝ ուր այնպիսի սքանչելի և նորակերտ իրք գործէին, զի սրբեաց և ոչ այրեաց հուրն։

« Եւ լուայ զձայն բարբառոյ Տեառն՝ զի խօսէր և ասէր. Զո՞ առաքեցից և կամ ո՞ երթիցէ առ այն ժողովուրդ »։ Տեսանե՞ս, որչափ ինչ վճիռ եցոյց տեսիլն, որչափ ինչ ուղղութիւն պարգևեաց երկիւղն. զի և առ Մովսիսիւ այնպիսի ինչ իրք գործէին, թէպէտ և ոչ սրոբէք ուրեք երևէին, և ոչ ինքն նստեալ յաթոռ, սակայն այլ իմն սքանչելի տեսիլ երևէր մարգարէին, այնպիսի ինչ՝ զի և ոչ հայել իսկ կարէր 'ի տեսիլն, քանզի մորենին, ասէ, բորբոքեալ էր և չայրէր։ Սակայն յետ այնր և յետ այլ բազում թելադիր լինելոյ՝ դանդաղէր Մովսէս և այսր անդր հարկանէր և բազում պատճառս հնարէր գտանել. Նրբաձայն եմ, ասէ, և ծանրալեզու, և տե՛ս քեզ զայլ ոք զոր առաքեսցես. և Երեմիաս՝ զտիս մանկութեանն առաջի դնէր. և Եզեկիէլ՝ յետ և զհրամանն իսկ առնլոյ՝ զեօթն օր երեկօթս առնոյր յափն գետոյն, քանզի դանդաղէր և վհատէր. վասն որոյ և զառակն ևս յաւելոյր նմա Աստուած, եթէ Դէտ ետու զքեզ տանն Իսրայելի, և զհոգիս նոցա 'ի ձեռաց քոց պահանջեցից. և Յովնան ոչ միայն հրաժարէր, այլ և փախստական լինէր։ Եւ արդ զիա՞րդ համարձակագոյն քան զամենեսեան, և քան զմեծն իսկ Մովսէս՝ Եսայի ևեթ գտանի. զի նո-

րա և հրամանն առեալ՝ և դանդաղէր. և ոմն և ոչ յայտնի ինչ տուաւ հրամանն, և ընդ առաջ գնաց. քանզի ոչ ասաց՝ թէ երթ, այլ իբրև լուաւ յԱստուծոյ՝ թէ զի՞ առաքեցից, յափշտակելով արար զհրամանն։ Ոմանք ասեն՝ թէ վասն զի յանցեաւ, զի զՈզիա ոչ յանդիմանեաց որ ժպրհեցաւ 'ի չհրամայեալն մտանել, զայն յանցանսն, ասեն, կամեցաւ մաքրել յօժարութեամբն խաղաղել. յայն սակս, ասէին, ընդ առաջ գնաց հրամանին, զի քաւեսցէ Աստուած զմեղսըն. և պիղծ շրթունս իւր, ասեն, վասն անհամարձակութեանն կոչէ։ Այլ ես ոչ առնում յանձն նոցա՝ որ զայս այսպէս ասեն. զի հաւատարմագոյն քան զնոսա է Պաւղոս, որ համարձակն կոչէ զնա. Եսայի, ասէ, համարձակի և ասէ։ Վասն որոյ, որպէս և ասեն, և ոչ հասարակ օրինօք մձարեաց զկեանսն, այլ չարաչար տանջանօք մեռաւ 'ի Հրէից. զի ոչ կարէին ժոյժ ունել համարձակութեանն նորա։ Այլ 'ի մտաց կարծեն՝ որ զայս այսպէսն կարծեն։ Եւ արդ զի՞նչ իցէ առ այս ասել. միթէ չէի՞ն զոյգ Մովսիսի իրաց՝ նորա իրք, զի զնա յօտար և յայլազգի աշխարհն առաքէ, և առ խիստ իշխանն որ մոլեալն և կատաղեալն էր, և զսա առ ընտանիս՝ որ բազում ինչ լուեալ էր և զբազում ժամանակս խրատեալք։ Ոչ նոյն քաջութիւն էր որպէս և անդ՝ նոյնպէս և աստ հնազանդ լինել հրամանին։ Իսկ ոմանք ասեն՝ այլ ինչ յորդորեաց զյօժարութիւնն նորա. քանզի վասն իւր և վասն ժողովրդեանն խոստովան եղև, և առաքեցաւ սրոբէն և սրբեաց զշրթունս նորա, կարծէր՝ թէ այնպիսի ինչ իրք լինելոց էին և ժողովրդեանն, և երթիցէ տայցէ աւետիս. յայն սակս, ասեն, յօժարագոյնս արար յափշտակելով զհրամանն. քանզի որպէս աստուածասէրքն էին՝ նոյնպէս գթած առաւել քան զամենայն մարդիկ սուրբքն. կարծէր՝ եթէ թողութիւն մեղաց երթեալ աւետարանեսցէ, վասն այսորիկ վաղվաղակի գնայր ընդ առաջ բանին։

« Ես աւասիկ, ասէ, Տէր, կամ. առաքեա զիս »։ Եւ այլ ևս ազգ, զի յոյժ ժուժկալ միտ առ նեղութիւնսն ունէր, և զայս ամենայն իսկ 'ի մարգարէութենէս է իմանալ. քանզի յանձն առ երթալ, չիշխէր այնուհե-

տեւ յետս կալ. և ապա յետոյ լսէր զտրտմականսն։ Զի և Աստուած իսկ իմաստութեամբ ըմբռնեաց զնա. զի ոչ նախ ասաց՝ թէ մերթ և ասա զայս ինչ, այլ զբօսուցիկ իմն արար զբանն, և անյայտ զառաջքելութեանն պայմանն. և իբրև մտադիւրութեամբ ունկնդիր եղև, ապա և զչարիսն որ հասանելոց էին Հրէից՝ յայտնեաց։

«Գնա դու, ասէ, և ասա ժողովրդեանն. լսելով լուիջիք և մի իմասջիք, և տեսանելով տեսջիք և մի տեսջիք, զի խստացաւ սիրտ ժողովրդեանդ այդորիկ. ականջօք իւրեանց լուան և ոչ առին 'ի միտ, և զաչս իւրեանց կափուցին, զի մի երբեք տեսցեն աչօք և լուիցեն ականջօք և իմասցին սրտիւք և դարձցին և բժշկեցից զնոսա»։ Այսմ և ոչ մեկնութիւն ինչ պիտի, քանզի որք Ճշմարտութիւն գիտէին, նոքա բերին 'ի մէջ և մեկնեցին. Որոտմանն որդին Յովհաննէս և Պաւղոս, որ զՀին և զնոր կտակարանսն գիտէր հաւաստեաւ. զի մինն 'ի Հռովմ քաղաքի առ ժողովեալսն առ նա, որք եկեալ էին լսել և յետոյ փախստական լինէին, քանզի խոյզէին 'ի բանիցն, հրապարակագոյժ աղաղակէր, թէ Բարւոք ասաց վասն ձեր Հոգին Սուրբ, թէ լսելով լուիջիք և մի իմասջիք. և Որոտմանն որդին՝ նայէր ընդ Հրէայսն, զի զսքանչելիսն տեսանէին և ոչ հաւատային, և կրօնս լսէին և ոչ անսային. յարոյց զՂազար, և զնա սպանանել խորհէին. առ Հայր մերձեցուցանէր, և զնա մոլորեցուցիչ կարծէին, և այլ ընդ այլոյ իմն կարծիս կարծէին զնմանէն, յիշէ զմարգարէութիւնս զայս և ասէ. Բարւոք ասաց Եսայի մարգարէ, թէ լսելով լուիջիք և մի իմասջիք, և տեսանելով տեսջիք և մի տեսջիք[1]։ Քանզի ներքոյ՝ աչք մտացն կուրացեալ էին, չէր ինչ օգուտ արտաքին աչացն տեսանել. վասն այնորիկ՝ տեսանէին և ոչ տեսանէին, և լսէին և ոչ լսէին։ Այլ զպատճառ չլսելոյն և չտեսանելոյն յայտ առնէ՝ զի ոչ եթէ զգայութիւնք[2] ինչ ապականեալ էին և ոչ բնութիւնն ինչ խեղեալ. «Թանձրացաւ, ասէ, սիրտ ժողովրդեանս այսորիկ»։ Թանձրութիւն

1 Յօր. Պակասէր ի մի փեղջին։
2 Յօր. Օտար գրչաւ՝ զգայութիւնք։

մտաց՝ 'ի մեղաց լինի, յերկրաւոր ցանկութեանց. և զայսպիսի թանձրութեանէ Պաւղոսի ճառեալ ասէր. Ոչ կարացի ընդ ձեզ իբրև ընդ իմաստունս խօսել, այլ իբրև ընդ մարմնաւորս, քանզի և ոչ ևս կարէիք. նա և արդ իսկ ոչ կարէք. և զպատճառս չկարելոյն բերէ 'ի մէջ. Ուր հեռ 'ի ձեզ և նախանձ և հերձուածք և պառակտութիւնք, ո՞չ ապաքէն մարմնաւոր էք: Եւ քանզի և նոքա հեռիւ և նախանձու ծնկէին, և բազում և այլ ևս չարեօք հեղձեալ էին, թանձրացուցանէին, շլացուցանէին զաչս մտացն, և սուրբ նայել ոչ կարէին. քանզի այլ ընդ այլոյ իմն կարծէին զոր տեսանէին: Զայս ամենայն տեսեալ մարգարէին՝ հաւաստեաւ յառաջագոյն գուշակէր. նա և զպատճառս իսկ ախտին նշանակէր: Եւ արդ միտ դիր, զի երկու մարգարէութիւնք են 'ի ճառիս, զմինն որ վասն եկեղեցւոյ է և վասն ամենայն աշխարհաց լինելոց բարութեանցն, առ որ սրոբէքն աղաղակէին՝ թէ սուրբ, սուրբ, սուրբ. Տէր զօրութեանց՝ լի են երկինք և երկիր փառօք նորա. և զմիւսն՝ որ վասն պաշարմանն և վասն պատժոց հրէական ազգացն էր՝ մարգարէին թողին, զի և այսու ուսանիցիս թէ ո՞րչափ առաւելութիւն է եկեղեցւոյ:

« Եւ ասացի, ասէ, թէ մինչև ցե՞րբ Տէր »: Տեսանե՞ս, թէ ո՞րչափ վայրապար կարծեցաք զմտադիւր յօժարութիւն մարգարէին: Եւ արդ քանզի այլ իմն փոխանակ այնր զոր կարծէրն՝ լուաւ, զաւերն, զբնաւ սատակումն, աղաչէ զի գոնեա զչափ պատժոցն ուսանիցի. քանզի ոչ իշխէր աղաչել և բնաւ թափել զբարկութիւնն. զի Աստուած յառաջագոյն եցոյց թէ առանց ներելոյ և թողութեան են մեղքն. զի ոչ ընդ խափս ինչ էին յանդգնութիւնքն, և ոչ մտաց յանկարծ յափշտակելոց, այլ ոգւոց գործ արարեալ յանհնազանդութիւնն. իբրև յայն իմն խոկային և 'ի նոյն զբօսնուին, զի մեծաւ իմն փութով կային հակառակ Աստուծոյ հրամանացն: Եւ արդ զայս իմն ակնարկեալ ասէր. Զի մի երբեք տեսցեն աչօք և իմասցին սրտիւք և դարձցին առ իս և բժշկեցից զնոսա: Որպէս որ առ երկիւղածութեան ինչ ջանասցէ բարի ինչ ուսանել, նոյնպէս և նոքա բազում փոյթ

յանձին ունէին զիւրեանց միտսն կուրացուցանել։ Եւ քանզի անբաստանութիւնն ծանր էր և պատիժքն անհրաժեշտք, որ ինչ անյայտն էր՝ զայն կամի ուսանել մարգարէս. մանաւանդ զի ոչ ուսանել, այլ 'ի դէմս ուսանելոյ պաղատանս առաջի դնէ։

Եւ քանզի ոչ կարէր յայտնի վասն այնպիսի իրաց աղաչել, ուսանելոյ պատճառանօք հարցանէր աղաչելով. « Մինչև յե՞րբ Տէր », ասէ. և առ պատասխանի. « Մինչև աւերեսցին քաղաքք 'ի բնակչաց, և տունք՝ զի ոչ գուցէ մարդ 'ի նոսա. և լքցի երկիրն աւերակ, և ապա ընդերկարեսցէ Աստուած մարդկան և բազմասցին մնացեալք յերկրի։ Եւ 'ի նմա եղիցի 'ի վեր քան զտասներորդն և դարձեալ յափշտակութիւն մատնեսցին, իբրև զբևեկնի տերևաթափ, իբրև ըղկաղին՝ զի թօթափեալ իցեն յիւրաքանչիւր պատենից. սերմն սուրբ արձան նորա »։ Իբրև զմարգարէութիւնն՝ որ առ ամենայն աշխարհ էր լինելոց՝ կատարեաց, ապա փոխէ զբանն 'ի պաշարումնն, և զտասն ազգաց հրաւիրել 'ի գերութիւն գուշակէ յառաջագոյն. և առ երկուս ազգս զերկայնմտութիւնն Աստուծոյ՝ որ յայնմ ժամանակի լինելոց էր՝ ցուցանէ. թէպէտ և նոքա յետոյ երթալոց էին 'ի գերութիւն. քանզի ոչ ինչ եղեն պիտանիք երկայնմտութեամբն, և ոչ այնու՝ զի միայն մնացեալ էին և 'ի բարութեան էին։ Զի յորժամ ասէ, թէ « Աւերեսցին քաղաքք 'ի բնակչաց », զտասն ազգացն գերութիւնն ակնարկէ. քանզի միանգամայն ամենեքին առան և վարեցան 'ի միասին 'ի գերութիւն յօտարն աշխարհ. զի ամենևին իսկ քաղաքքն ամենայն՝ մնացին լոկ 'ի մարդկանէ. և լքաւ երկիրն ամենայն և եղև աւերակ 'ի բնակչաց։ Եւ յորժամ ասէ, թէ « Աւերեսցին քաղաքք 'ի բնակչաց, և տունք՝ զի ոչ գուցէ 'ի նոսա մարդ », յայնժամ զգերութիւնն ակնարկէ. և յորժամ ասէ՝ թէ « Յետ այսորիկ յերկարեսցէ Աստուած մարդկան », զամենեցուն ազգացն զդիւրութիւնն, որ յետ գերութեանն լինելոց էր՝ է իմանալ։ Եւ դարձեալ յետ տասն ազգացն վարելոյ 'ի գերութիւն, զերկուց ազգացն՝ որ ընդ այն ժամանակս լինելոց էին բարիքն՝ է իմանալ. զի յորժամ ապրեսցին 'ի Սենեքերիմայ և 'ի

խուժադուժ զօրացն, զուարձացեալք պքանչելի յաղթութեամբքն՝ 'ի բազմութիւն սերէին յերկայնակեաց ժամանակս. զի ոչ ուստեք այնուհետև զարհուրեցուցանէր զնոսա պատերազմ։ Եւ յորժամ ասէ, թէ «Ընդերկարեսցէ Աստուած մարդկան», կամ զմարդկանն բազմութիւն կամ զամացն երկայնութիւն նշանակէ։ Եւ զի ուսանիցիս եթէ վասն երկուց ազգացն ասաց զայս, յարէ 'ի նոյն եթէ «Ի նմա իցէ 'ի վեր քան զտասներորդն». տասներորդ զայն ասէ՝ որ ինչ աւելի իցէ քան զտասն, այսինքն երկու ազգքն։ Այսպիսի ինչ և Պաւղոսի է ասացեալ, թէ Ի վեր քան զհինգ հարիւր եղբարս, այսինքն բազում ևս քան զհինգ հարիւր։

«Եւ դարձեալ 'ի յափշտակութիւն մատնեսցին, իբրև զբևեկնի տերևաթափ». այսինքն երկու ազգն։ «Եւ իբրև զկաղնին՝ զի թօթափեալ իցեն յիւրաքանչիւր պատենից». զոր օրինակ մերկ 'ի վայելչութենէ լինի կաղնին, յորժամ թօթափեսցի 'ի պատենից, նոյնպէս և նոքա ձաղ և նախատ լինիցին՝ յորժամ ելանիցեն 'ի քաղաքէն և մերկանայցեն 'ի փառացն։ «Սերմն սուրբ արձանն նորա». սակայն ոչ եթէ առանց բժշկութեան իցեն պատիժքն կամ առանց վախճանելոյ, այլ սերմն նորա՝ սուրբ եղիցի, հաստատուն կալ մնալ, անշարժ, առանց փոփոխման։ Ի բարեացն, ասէ, անկանելոց են, բայց ինքեանք ամենեքեան չեն սատակելոց, այլ կալոց մնալոց են՝ մինչև առնուցուն անգէն զառաջին զկարգսն, և հասանիցեն յառաջին առաքինութիւնսն։

## ԳԼՈՒԽ Է

«Եւ եղև յաւուրս Աքազու՝ որդւոյ Յովաթամայ Ոզիանց, արքայի Հրէաստանի»։ Զոր բազում անգամ ասացի և արդ զնոյն ասեմ, զի ոչ յայն սակս յառաջագոյն գուշակէին մարգարէութիւնքն, զի ուսանիցեն միայն Հրէայքն զնոսա ինչ որ գալոց էին, այլ զի յուսա-

նեղն՝ և շահս ինչ ցուցանեն, և ահիւ սպառնալեացն՝ լինիցին զգաստացեալք, և բարութեանցն աւետեօք՝ յօժարագոյն լինիցին 'ի գործս առաքինութեանց. զի յերկոցունց կողմանց և Աստուծոյ զօրութեանցն ակահ լինիցին և իւրեանց խնամոցն՝ որ առ 'ի նմանէ: Քանզի սմին իրի իսկ ճառէր յառաջագոյն որ ինչ յապա լինելոց էր, զի մի կարծիցեն եթէ վայրապար ինչ և յանկարծադէպ իրքն գործիցին. այլ զի 'ի միտ առնուցուն թէ 'ի վերուստ և յԱստուծոյ հրամանացն կատարին իրքն երկոքեան, որ զնոսա մեծ իմն յաստուածգիտութեան շահն ձգէր: Այլ քանզի որպէս վերագոյնն իսկ ասացի, եթէ մարգարէութիւնն ոչ 'ի նմին ժամանակի զվճիռ իրացն ցուցանէր, այլ բանքն յայնժամ ասէին, իրքն յետ բազում ժամանակաց կատարէին, զի ոմանք որք լսէին՝ բազում անգամ և մեռանէին իսկ, և ոչ կարէին քննիչ իրացն լինել. տես, զիարդ հնարէր Աստուած. մարգարէութիւն 'ի մարգարէութիւնս յարէր, զի մօտն՝ մարգարէութեամբն որ 'ի նոցա ժամանակսն կատարէր, զայլոց մարգարէութեանցն որ առ յապա ժամանակսն լինելոց էին՝ ցուցանիցէ զճշմարտութիւնն: Իսկ յաւետարանսն և այլազգ իմն շահս հնարի ցուցանել. զի սքանչելիս ընդ մարգարէութիւնս խառնէ, և այլովք իրովք այլ իմն ցուցանէ: Այսպիսի ինչ է զոր ասեմս. մերձեցաւ առ նա բորոտն և սրբեցաւ, և յետ նորա՝ հարիւրապետին ծառայ ապաքինեցաւ յայնպիսի չարաչար հիւանդութենէ. և երկոքեան նշանք այսոքիկ մեծամեծք էին. բայց սակայն ոչ յայսմ եւեթ կաց մնաց, այլ և մարգարէութիւն եւս յաւել. քանզի հարիւրապետն զայնպիսի մեծ հաւատս եցոյց, որով բուժեցաւ մանուկն 'ի հիւանդութենէ անտի, ածէ յարէ 'ի նոյն Քրիստոս, եթէ Բազումք յարեւելից և յարեւմտից եկեսցեն և բազմեսցին ընդ Աբրահամու և ընդ Սահակայ և ընդ Յակովբայ, և որդիք արքայութեանն ելցեն 'ի խաւարն արտաքին. զայս ասելով՝ զհեթանոսաց կոչումն և զՀրէից խոտումն միանգամայն յառաջագոյն գուշակեաց: Որպէս և այժմ արդեամբք իսկ դիպեցաւ և քան զարեգակն եւս յայտնագոյն երեւի. բայց սակայն յայնժամ անյայտ էր և

անհաւատիցն դժուարընկալ, վասն այսորիկ զնշանսն առաջի արկ, զի որ ինչ յայնժամ լինիցի, զայնս որ յետ այնորիկ լինելոց էին՝ արասցէ հաւատալիս. զոր օրինակ և մարգարէութիւնն՝ որ յայնժամ ասացաւ, նշանօքն որ 'ի նմին ժամանակի գործէին, և չհաւանականն իսկ անհաւատիցն՝ առաւել հաստատեսցի 'ի միտս: Եւ արդ զինչ ունի անհաւատն ասել. սրբեցա՞ւ քորոտն թէ չսրբեցաւ. ապա և մարգարէութիւնն ճշմարիտ է. զի յորժամ մարգարէութեանն ոչ հաւատայցեն, յանդիմանեսցէ զնոսա քորոտն՝ որ սրբեալ կայր առաջի, զի և անտի զհանդերձելոցն առնուցուն առհաւատչեայ: Տեսանե՞ս, զի այլ իրք այլովքն կազմին. զայս և 'ի հնումն է տեսանել. քանզի և Յօրոբովամ մոլորեցաւ յայնպիսի մոլորութիւն և կանգնեաց զորթսն ոսկի. եկն մարգարէն, յառաջագոյն գուշակէր և նշանս ցուցանէր, զի մի ոք թերահաւատ լիցի իրացն՝ որ յետ երեք հարիւր ամի գործելոց էին. զբագինն ընդ մէջ հերձոյր և զճարպ ողջակիզացն հեղոյր և զձեռն թագաւորին գօսացուցանէր, և իրօքն՝ որ անդէն առաջի աչաց գործեցան, և զայլոցն եւս՝ որ յետ բազում ժամանակաց գործելոց էին՝ ցուցանէր զհանդէս: Եւ բազում այսպիսի ինչ եթէ ոք կամի՝ գտանէ և 'ի նորումս և 'ի հնումն, որով Աստուած ազգի ազգի իրօք յուցանէ զմերոյ փրկութեան զհնարս. որպէս և անդ իսկ եղև բազում առաւելութեամբ. զի ոչ միայն նշան, այլ և մարգարէութիւն և նշան 'ի միասին հիւսեալ: Այլ զի եւս լուսաւորագոյն լինիցին ասացեալքս, ընդ ամենայն իսկ ճառս անցցուք կարգաւ:

« Եւ եղև, ասէ, յաւուրս Աքազու՝ որդւոյ Յովաթամայ Ոզիանց, արքայի Հրէաստանի, ել Հռամասիմ արքայ Արամայ և Փակէէ՝ որդին Հռամելայ արքայի Իսրայելի՝ 'ի վերայ Երուսաղեմի, տալ պատերազմ ընդ նմա. և ոչ կարացին պաշարել զքաղաքն. և ազդ եղև 'ի տունն Դաւթի՝ թէ միաբանեաց Արամ ընդ Եփրեմայ »:

Են զորոց իսկ բանքս և իրաց պատմութիւնք, այլ որ միտս ոք ունիցի և աչս 'ի տեսանել, սակայն և աստի բազում ինչ շահի, յորժամ յԱստուծոյ 'ի բազում խնամատութիւնն հայիցի և 'ի Հրէից խնամսն որ յԱստուծոյ լինէին. զի ոչ իսկզբանն սրգել զպատերազմն և ոչ

յորժամ եկն եհաս՝ ետ թոյլ՝ առնել զնաս քաղաքին. այլ սպառնալեացն թոյլ ետ լինել և զփորձ իւրացն արգել. զի միանգամայն և զնոսա զարթուսցէ 'ի ծուլութենէն, և զիւր զօրութիւնն ցուցցէ, թէ կարող է՝ զի յորժամ վախճան ինչ իրաց չարայ եկեալ հասեալ կայցէ 'ի վերայ, այնպէս՝ որպէս թէ սկիզբն իսկ իցէ լեալ՝ կարէ խափանել և զնոսա պահել անարատս։ Զոր բազում անգամ է իմանալ որչափ ինչ արար, 'ի հնոցէն Բաբելացւոց՝ զերիս մանկունս, և 'ի գբոյն առեւծուց՝ զԴանիէլ, և այլ ևս բազում իրս այսպիսիս. զի և աստ եկին պաշարեցին, զպարսպօքն պատեցան, և զմիտս պաշարելոցն խռովեցուցին, սակայն ոչ ինչ կարացին գամ և մուտ գտանել։ Այլ և աստի է իմանալ զտասն ազգացն անօրէնութիւնն, զի ոչ միայն ընդ ընտանիսն կռուէին և ընդ եղբարսն տային պատերազմ, այլ զի և յայլազգիսն ևս յօտարոտիսն յարեցան. որոց և ոչ լոկ հաղորդութիւնս առնել հրամայեալ էր նոցա ընդ հեթանոսս, նոքա և յօգնականութիւնս ևս կոչէին, և միաբանեալք ընդ նոսա՝ գային 'ի վերայ քաղաքին, զի զայլազգին Հռասիմ 'ի վերայ քաղաքին՝ որ էր մայր քաղաքացն՝ յարուցանէին։ Եւ էր մարտն անզուգական, զի նոքա բազումք և անհամարք, և քաղաքք և ազգք և զօրք միաբանեալ, և սոքա սակաւաւորք և մի քաղաք՝ մայր քաղաքացն ևեթ՝ պաշարեալ։ Զի և յայսմ երևեսցի առաւելութիւն Աստուծոյ զօրութեանն. զի ոչ զէն զանձամբ ոք առնոյր և ոչ արտաքս քան զքաղաքն ելանէր. և նոքա այնպէս անկեալ կործանեալ էին յիւրեանց յանդուգն չարութենէն։ «Եւ ոչ, ասէ, կարացին պաշարել զքաղաքն». յայտ է թէ ոչ այլ ինչ արգելոյր՝ եթէ ոչ Աստուծոյ ձեռնն՝ որ 'ի ծածուկ մերժէր զնոսա. բայց սակայն որպէս յառաջագոյն ասացի՝ զպատերազմն մերժեաց, այլ զերկիւղն ոչ եբարձ։

«Ազդ եղև, ասէ, 'ի տուն Դաւթի՝ եթէ միաբանեաց Արամ առ Եփրեմ, և զարհուրեցաւ անձն նորա և անձն ժողովրդեան նորա»։ Զի յորժամ իրս ինչ նորս կամիցի առնել Աստուած՝ ոչ վաղվաղակի ցուցանէ զսքանչելիսն. այլ նախ այնոցիկ՝ որ փըրկելոցն իցեն՝ թոյլ տայ 'ի կասկածի լինել, զի յոր-

ժամ ապրեցին 'ի չարեացն՝ մի ինչ ապախտաւորու-
թիւնս ցուցցեն։ Զի բազումք 'ի մարդկանէ կամ
վասն հպարտութեան կամ վասն ծուլութեան մոռա-
նան զվիշտս ինչ՝ յորոց ապրեցան Աստուծոյ օգնակա-
նութեամբն, կամ թէ իւրեանց ինչ համարեցին
զքաջութիւնսն։ Թոյլ տայ նախ տրտմականացն խու-
ճապել, և ապա ցուցանէ զազատութիւն իւրացն՝ որ
ծանրացեալ կայցեն 'ի վերայ, զոր և աստ իսկ արար։
Նախ թոյլ ետ սրտաբեկ սրտատապախ լինել, և ապա
զազատութիւն 'ի պատժոցն եցոյց. յորժամ հանդեր-
ձեալ էր զնա նահատակել 'ի պատերազմին և զայն-
պիսի մեծաքանչ նշան յաղթութեան նովաւ կան-
գնել 'ի մէջ երկրին Իսրայելացւոց, ոչ իսկզբան պատե-
րազմին եցոյց զայսպիսի առաքինութիւն, այլ նախ՝
քան զքառասուն օր խուճապեաց զնոսա երկիւղ, և
յորժամ հատանէր յոյս փրկութեան 'ի մտաց և բա-
զում թշնամանօք այլազգւոյն կսկծէին, և տակայն
ոչ ոք կարէր յօժարել և 'ի դիմի հարկանել, ապա
իբրև պարտութիւն տկարութեան նոցա յայտնի լի-
նէր, ածէր զհամբակն զմանուկն, և զնորանշան յաղ-
թութիւնն ցուցանէր։ Թէպէտ և յետ այնչափ հան-
դիսից տկարութեանն նոցա ապրեցաւ թագաւորն
յանհնարին պատերազմէն՝ որ կայր 'ի վերայ, առ հեռ
և առ նախանձ ծնկեալ նենգաւ գնայր ընդ Դաւթի,
որ ախտացեալ ախտիւ՝ լինէր ապախտաւոր առն ե-
րախտաւորի։ Զոր և այլուր բազում անգամ գտանեմք
այսպիսի ինչ գործս գործեալ Աստուծոյ՝ որպէս և
աստ, քանզի քակելոց էր զպատերազմն և ազատելոց
զնոսա 'ի տրտմականացն, թոյլ ետ նախ փոքր մի զգալ
կարեացն։

« Զարհուրեցաւ, ասէ, անձն նորա և անձն ժողո-
վրդեան նորա, զոր օրինակ շարժիցի 'ի մէջ անդաս-
տանաց մատաղատունկ ծառ 'ի հողմոյ »։ Եւ այս մար-
գարէութեանն առանձինն սեպհական իմն է՝ զծա-
ծուկս 'ի մէջ բերել և յայտնել, զի ցաւք ինչ որ 'ի
սիրտս կայցեն և յայտ լինիցին, այն կամ 'ի մարգա-
րէութենէ կամ յԱստուծոյ՝ որ զսիրտս քննէ։ Եւ
զի՞նչ ասէ։ Խռովեցաւ, ասէ, անձն նորա, չհաւատայր
փրկութեան, չունէր ակն դիւրութեան. ոչ միայն նա,

այլ և ամենայն ժողովուրդն. իւրաքանչիւր զանձինս մատնեալ՚ի գերութիւն համարէին։ Եւ արդ զինչ առնիցէ Աստուած. նախ յառաջագոյն գուշակէ զաւզատութիւնն, և ապա զհանդէս իրացն ցուցանէ, զի մի այլ ումեք համարիցին զքաղաքին փրկութիւնն, առաքէ զմարգարէն երթալ առնել ազդ հանդերձելոցն։

«Եւ ասէ Տէր ցԵսայի. Ել դու ընդ առաջ Աքազու, դու և մնացեալ որդին քո Յասուբ, հանդէպ աւազանի Թափչաց ագարակին վերին ճանապարհին. և ասասցես ցնա. Ահա պատուէր քեզ՝ հանդարտ լինել, և մի երկիցես և մի տկարասցին միտք քո, և մի զարհուրեսցիս յերկուց փայտիցն խանձողացն՝ որ ծխեցին, յորժամ բարկութիւն սրտմտութեան իմոյ հասանիցէ՝ դարձեալ բժշկեցից»։ Եւ զինչ իցէ՝ թէ «Ել ընդ առաջ Աքազու». այլ քանզի յահէն և յերկիւղէն ոչ դադարէր թագաւորն և ոչ՚ի տան զտեղի ունել կարէր, այլ որպէս սովորութիւն իսկ է պաշարելոց՝ զպարսպօքն շրջել, դրացն զգուշանալ, նոյնպէս և նա ջանայր հնարէր թէ զիարդ մարթասցէ զիրս պատերազմին վճարել. վասն այնորիկ ասէ, թէ «Ել ընդ առաջ Աքազու»։ Եւ զինչ իցէ՝ թէ «Դու և մնացեալ որդին քո Յասուբ»։ Յասուբա, յեբրայեցի լեզու՝ թէ զիարդ իցեն կամ զիարդ կայցեն՝ թարգմանի։ Քանզի Յեսսէ յորժամ յղեաց զԴաւիթ՝ ասէ. Երթ և բեր ինձ զաստուբայն նոցա. այսինքն թէ՝ զիարդ իցեն, զիարդ կայցեն՝ բեր ինձ զրոյց։ Եւ աստ ինձ այսպէս թուի՝ թէ մարգարէս առ հրաման բազումս տանել ընդ իւր, զի մի յորժամ իրքն վճարիցին՝ յապախտաւորութիւն դառնայցէ թագաւորն և ասիցէ՝ թէ իմ այդպիսի ինչ իրս ՚ի մարգարէէն չէ լուեալ։ Եւ զոր ասէն՝ այսպիսի ինչ է, թէ՝ Ել դու և մնացորդք ժողովրդեանդ։ Եւ ընդ այն մի ինչ զարմանար թէ որդի կոչէ զժողովուրդն. զի յառաջագոյն ևս մատուցեալ ասէ. Ահաւասիկ ես և մանկունք իմ՝ զոր ետ ինձ Աստուած. զի զհօր գութ և զխնամ ունելին սուրբք ընդ ժողովուրդս, նա և անցանեն ևս քան զհայրենի գութս։ Մնացեալս յայն սակս կոչէ, քանզի զբազումս տարեալ էր գերի ընդ ճանապարհս Թափչաց ագարակին. և ինձ այսպէս

թուի՝ թէ բազում դժուարաւ են միտք բանիս. զի
թէ արգելականքն և պաշարեալքն, որք ոչ և նայել
համարձակ արտաքս քան զդրունսն և քան զպարիսպն
կարէին, զիա՞րդ կարէին անդ յայն ճանապարհի
գտանել. զի ճանապարհ թափչաց ագարակին՝ ար-
տաքոյ պարսպաց քաղաքին է այժմ: Եւ արդ զինչ
իցէ ասել առ այն. այլ զի հին իմն պարիսպ էր արտա-
քոյ. և զայս դիւրագոյն ուսանել 'ի միւսմէն ևս մար-
գարէէն է, որոց կամիցին միտ դնել: Արդ ելանե-
լոյն՝ զսիրտս կործանեալս կանգնէ և համարձակել
հրամայէ առ աւետիս հանդերձելոցն բարեաց. քան-
զի դադարեա, ասէ, մի երկնչիցիս: Եւ զի փայտ խան-
ձողս կոչէ զթագաւորս, զի միանգամայն և զաստա-
կութիւն զօրացն և զվաղվաղակի խափանելն յայտ
արասցէ. և զծխելն յայն սակս յաւելու՝ զի զարագ-
շիջանելն նորա ցուցցէ, և զի իմացուսցէ թէ ոչ իւ-
րեանց ինչ զօրութեամբ, այլ նորա թոյլ տալով եկին
գումարեցան:

Ասէ. « Յորժամ սրտմտութիւն բարկութեան իմոյ
հասանիցէ, դարձեալ բժշկեցից: Եւ որդին Արամայ
և որդին Հռոմելայ, զի խորհեցան խորհուրդս չար
'ի վերայ քո և ասեն. ելցուք մեք յերկիրն Հրէա-
ստանի և չարչարեսցուք զնոսա, խօսեսցուք ընդ նոսա
և դարձուսցուք զնոսա առ մեզ, և կացուսցուք նոցա
արքայ զորդին Տաբէլայ. այսպէս ասէ Տէր զօրու-
թեանց. մի կասցէ խորհուրդն այն և մի եղիցի. այլ
գլուխ Արամայ՝ Դամասկոս, և գլուխ Դամասկոսի՝
Հռասիմ. և այլ ևս վաթսուն և հինգ ամ, և ապա
պակասեսցէ թագաւորութիւնն Եփրեմայ 'ի ժողո-
վրդենէ անտի: Եւ գլուխ Եփրեմայ՝ Սամորոն, և
գլուխ Սամորոնի՝ որդին Հռոմելայ. և եթէ ոչ հա-
ւատայջիք, և մի 'ի միտ իսկ առջիք »: Դարձեալ մար-
գարէն մեծ իմն վճիռ ցուցանէ զմարգարէութեան,
քանզի առ հն պախեցոյց և չարիքն առաջի աչաց կային,
և հեշտականացն յուսոյ՝ ոչ ուստեք կայր ակն ունել,
և լուրքն ոչ այնչափ ինչ հաւատացեալք, տե՛ս զինչ
գործէն. նշան իմն մեծ տայ զլինելոց իրաց. զխոր-
հուրդս պատերազմողացն 'ի մէջ բերէ և զմիտսն՝
յոր սակս դիմեցին 'ի վերայ քաղաքին, և որ ինչ առ-

անձինն ընդ ինքեանս խօսեցան, և զփարդ ուխտ ե-
դին ընդ միմեանս՝ յայս առնել, և կամ թէ մնասնու-
թեան ինչ իրք էին; քանզի ասէ, թէ «Խօսեցաւք
ընդ նոսա, և դարձուցաք զնոսա առ մեզ», կամ
թէ բաղում հպարտութեանն դանդաչէին՝ իբրև
զարբեալս, թէ և ոչ զինուց անգամ պէտք ինչ իցեն
և ոչ կառուց, այլ երթայցեն և առնուցուն առանց
աշխատութեան զքաղաքն։ Երևելն մեր միայն, ասեն,
և խօսելն՝ բաւական է, և առնուցուք վարիցեմք
զերրի զամենեսեան։ Զօր և կրեն հպարտք, զի այլ
ինն կարծեն և այլ ինն պատահէ. Նոյնպէս և նոքա
հպարտացեալք՝ յորժամ զքաղաքն, ասեն, առնումք,
ապա զոր և կամիմք թագաւոր եւ կացուցանեմք։
Եւ նոցա բանքն այսչափ ինչ. իսկ աստուծոյքն խա-
փանիչք էին ամենայն խորհրդոց նոցա։ Վասն որոյ
յարէ 'ի նոյն, թէ «Այսպէս ասէ Տէր». և ոչ միայն
զայս, այլ և զՍաբաւովթն յաւելու, այսինքն՝ զօ-
րութեանց. զի ուր մեծամեծս ինչ առնել խոստա-
նայցէ՝ զզօրութիւնն Աստուծոյ յիշէ, զվերին թա-
գաւորութիւնն, զաքանչելագործ իշխանութիւնն։ Եւ
արդ զինչ ասիցէ Աստուած. «Մի, ասէ, կացցէ խոր-
հուրդն այն և մի եղիցի. այլ գլուխ Արամայ՝ Դա-
մասկոս», այսինքն է՝ իշխանութիւն նորա և տէ-
րութիւն նորա 'ի Դամասկոս կացցէ, և այլ ուրեք
մի եղցէ. «Եւ գլուխ Դամասկոսի՝ Հռասիմ». զոր
ունիմն՝ կացցի, և այլ ուրեք մի իշխեսցէ խաղալ։

«Եւ այլ եւս վաթսուն և հինգ ամ, և ապա պա-
կասեսցէ թագաւորութիւնն Եփրեմի 'ի ժողովրդենէ
անտի»։ Յայտ յանդիմանն ցուցանէ զճշմարտութեանն
հաստատութիւն, յորժամ և զժամանակս յառաջա-
գոյն ասիցէ, յայնժամ ճշմարտիւ զզօրութիւն մար-
գարէութեանն ցուցանէ։ Այժմ, ասէ, մերժեսցին 'ի
քաղաքէդ, և յետ վաթսուն և հինգ ամի՝ բնաւին
իսկ կորիցէ ազգն, և բարձցի թագաւորութիւնն Իս-
րայելի, և առցեն գերեվարքն և տարցեն զամենե-
սեան. բայց յառաջ քան զայն հինաւանդութիւնն՝[1]
ոչ ինչ աւելի քան զիւրեանցն զոր ունիցին՝ առնու-

1 Յն. Առումն կամ կործանումն։

յուն։ Չի մի՛ յորժամ լուիցէ Թագաւորն թէ զի յետ վաթսուն և հինգ ամի բառնայցեն, ասիցէ 'ի միտս իւր՝ թէ զմեզ այժմ առնուն և նոքա յայնժամ բառնալոց իցեն, և մեզ զինչ շահ յայնցանէ լինիցի, քաջալերեա՛ց, ասէ, և մի՛ ինչ կասկածեր և վասն մերձաւորացդ. զի ամենեքին, ասէ, յայնժամ առցին, բայց աւելի ինչ քան զոր ունին այժմ՝ մի՛ ինչ կալցին. այլ գլուխն Եփրեմի՝ այսինքն է տասն ազգացն Սամարիայ, զի անդ էր նոցա թագաւորութիւնն, և այլ ուրեք մի՛ ելանիցէ. և գլուխ Սամարիայ՝ արքայն Իսրայէլի. զոր 'ի վերայ Դամասկացւոցն ասաց, զնոյն և աստ, թէ մի՛ ինչ աւելի զոր ունին՝ ունիցի։ Եւ քանզի այնպիսի ինչ իրս, որ ըստ մարդկեղէն միտս անցանէին և 'ի վերոյ քան զմարմնաւոր խորհուրդս էին, և մանաւանդ զի մարգարէութիւն ևս էր, նմանագոյնս յարէ 'ի նոյն, զի «Թէ ոչ հաւատասջիք, և մի՛ առնջիք 'ի միտ»։ Մի՛ խնդրեր, ասէ, թէ զիարդ կամ որպիսի կերպարանօք այսպիսի իրք լինիցին. Աստուած է, ասէ, որպէս կամի՝ և առնէ, և հաւատոց միայն են քեզ պէտք. զի յորժամ իմանայցես զզօրութիւն սքանչելագործին, ապա լինիցիս հաստ և ասացելոցն հաստատութեան։ Վասն որոյ և մարգարէն Դաւիթ ասէ, թէ Հաւատացի՝ վասն որոյ և խօսեցայ. և Պաւղոսի նմանագոյնս առեալ զբանն՝ նա 'ի մեծ իմն իրս ձգէ. Ունիմք, ասէ, զնոյն հոգի հաւատոց, որպէս և գրեալ է, թէ հաւատացի՝ վասն որոյ և խօսեցայ, և մեք հաւատամք՝ վասն որոյ և խօսիմք իսկ։ Չի եթէ հինքն հաւատոց կարօտէին, որ այնչափ հեռի էին 'ի նորոյս, որչափ երկիր յերկնաւորականաց, որչափ ևս առաւել՝ որ այսչափ բարձրագոյն աստուածագէտ կրօնից գիտութիւն է, որ ոչ և 'ի միտս ուրուք երբեք անկանէր, զորմէ և ինքն իսկ ձայնէ, թէ Զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ՝ զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց։

« Եւ յաւել Տէր խօսել ընդ Աքազու՝ և ասէ. Խնդրեա դու քեզ նշան 'ի Տեառնէ Աստուծոյ քումմէ 'ի բարձրութիւնս կամ 'ի խորութիւնս։ Եւ ասէ Աքազ. Ոչ խնդրեցից և ոչ փորձեցից զՏէր։ Եւ ասէ Եսայի. Լուարուք, տունդ Դաւթի. մի եթէ թեթե՞ւ ինչ

Թուիցի ձեզ հասուցանել աշխատութիւն մարդկան, և զիա՞րդ իշխէք դուք աշխատ առնել զՏէր: Վասն այսորիկ տացէ ձեզ ինքնին Տէր նշան. ահաւասիկ կոյսն յղասցի և ծնցի որդի և կոչեսցեն զանուն նորա Եմմանուէլ»: Բազում անչափ էր Աստուծոյ զիջանելն ըստ Աքազու, և յոյժ Թագաւորին ապախտաւորութիւն. պարտ և պատշաճ էր նմա յորժամ լուաւ 'ի մարգարէէն՝ չերկմտել յասացելոցն. ապա եթէ երկմտեաց եւս, իբրև լուաւ զնշանէն՝ պարտ էր հաւատալ, զոր և բազումք 'ի Հրէիցն արարին: Բայց քանզի մարդասէր է Աստուած, և զայս եւս չհրաժարեաց շնորհել. Թէպէտ և Թանձրասրտացն՝ որ միշտ յերկիր եւեթ հայէին և ընդ գետին պշնուին՝ առնէր այնպէս ինչ՝ որպէս առ Գեդէոնիւն: Զի Թէպէտ և քան զամենեսեան վատԹարագոյն և Թանձրամիտ էր Աքազ, տես, ուստի յո իջանէր Աստուած, կամ որպէս ինքն զինքն խոնարհեցուցանէ և յորդորէ՝ զի նշան ինչ խնդրեսցէ: Թէպէտ և այն չէր փոքր ինչ նշան՝ զի զծածուկս սրտի նորա յայտնեաց, զմիտս մերկեաց և զկեղծաւորութիւն նորա յայտնեաց, զի մարգարէն ասէ. «Խնդրեա դու քեզ նշան», և կարի իմն հաւատացեալ զանձն ցուցանէր կեղծաւորուԹեամբ. «Ոչ, ասէ, խնդրեցից և ոչ փորձեցից զՏէր»: Եւ արդ, տես, զիա՞րդ սաստիկս կորէ մարգարէն. զի յորժամ զմիտսն յայտնեաց համարձակ, ապա և զմեղադրութիւնն 'ի մէջ բերէ, որով զնա և պատասխանւոյ անգամ արժանի ոչ առնէ: Եւ դարձուցեալ զբերեանս 'ի նմանէ առ ժողովուրդն՝ ասէ. «Լուարուք, տունդ Դաւթի, միթէ Թեթև՞ ինչ Թուիցի աշխատութիւն հասուցանել մարդկան, և զիա՞րդ իշխէք աշխատ առնել զՏէր»: Անյայտ է ասացուածս, վասն որոյ պարտ է հաւաստեաւ բանալ զբանս. զի զոր ասէն՝ այսպիսի իցէ. մի եթէ իմ իցեն բանքս, մի եթէ իմ իցէ վճիռ. զի եթէ մարդկան վայրապար չհաւատալ ծանր է և մեղադրութեան արժանի, որչափ եւս առաւել Աստուծոյ. զի աշխատութիւն հասուցանել այլ ինչ ոչ է՝ եթէ ոչ չհաւատալն: Եւ արդ ասէ[1],

1 Յոր. Այս է:

միթէ թէ եւ թէ՛ ինչ չիք իցէ կամ սակաւ մեղադրու-թեան՝ մարդկան չհաւատալ. և եթէ այս ծանր չիցէ է, որչափ ևս առաւել Աստուծոյ չհաւատալ: Եւ յայտ սակս այն է զայս, զի ուսանիցին ամենեքեան թէ մար-գարէին ոչ խաբեցաւ, և ոչ 'ի բանիցն Աքազու պատ-րեցաւ, այլ ըստ մտացն ած զպատուհասն 'ի վերայ: Զայս և Քրիստոս բազում անգամ եցոյց յաւետարանի. զի յառաջ քան զփրկչականն ցուցանել զշնորհութիւնն՝ որ 'ի սիրտս նոցա մածեալ կայր՝ յայտ առնէր. և այս ոչ սակաւ ինչ նշան էր. որպէս և յանդիմանութիւն իսկ եցոյց. քանզի յորժամ ասաց ցնա, թէ Որդեակ, թո-ղեալ լիցին քեզ մեղք քո, նոքա ասէին՝ թէ հայհոյէ. նախ քան զայն՝ յանդիմանելով զանդգամութիւնն՝ Զի՞, ասէ, խոր-հուրդս չարութեան 'ի սիրտս ձեր. որ մեծ նշանակ ցու-ցանէր զաստուածութեանն՝ ճանաչել զծածուկս մը-տացն. ըստ այնմ՝ թէ Դու միայն ճանաչես զսիրտս. և Դաւիթ ասէ, թէ Միայն որ քննէ զսիրտս և զե-րիկամունս՝ Աստուած:

Զայս և մարգարէիցն տայր բազում անգամ ճանա-չել, զի որք լսիցեն՝ ուսանիցին թէ չէ ինչ մարդկեղէն յասացելոցն, այլ 'ի վերուստ յերկնից հրամանք են ի-ջեալ: Վասն այնորիկ և մեծաքարոզն Եսայի, քան-զի բազում անգամ խօսեցաւ ընդ թագաւորին և 'ի չարեացն ազատեաց և վասն եկելոց հասելոց իրացն համարձակութիւն ետ, և նշան այսմիկ՝ զխորհուրդս զայնոցիկ՝ որ յարուցեալք էին 'ի վերայ նորա՝ գուշա-կեաց, և զժամն՝ որ անդէն յընտանեացն լինելոց էր՝ յանդիմանեաց. և զամենեւին զգերութիւնն Իսրա-յէլի՝ յառաջագոյն պատմեաց, նաև զժամանակն ևս եցոյց: Եւ ոչ միայն զայս բաւական համարի, այլ ևս ինքն յառաջ մատչի. զի զնա՝ որ վասն բազում անհաւա-տութեանն ոչ կամէր, նշան ևս յօժարեցուցանէ խնդ-րել. և ոչ վայրապար, այլ տէր առնէ զնա կամացն. ոչ ասաց՝ եթէ զայս ինչ կամ զայն, այլ զոր կամիս ընտ-րեսցես: Մեծ է Տէրն, բաւական է զօրութիւնն. եթէ յերկնից կամիցիս՝ չէ ինչ որ արգելու, և եթէ յերկրէ՝ չիք ինչ որ խափանիցէ. քանզի 'ի բարձրու-թեանն և 'ի խորութեանն խնդրել՝ այս է: Եւ այլ ոչ ևս յորդորեաց զնա և ոչ լռեաց 'ի նշան տալոյ, այլ

զյանդիմանութիւնն 'ի վերայ բերէ. և զայն՝ վասն ուղղութեան լսողին, և առ 'ի ցուցանել՝ եթէ ոչ խաբել կարաց և ոչ արհամարհել, յայտնէ մարգարէութիւն իւր ծածուկ՝ որ 'ի փրկութիւն ամենայն աշխարհի լինելոց էր, յուղղութիւն ամենայն իրաց: Եւ տայ նշան, ոչ այսուհետև Աքազու, այլ հասարակ ամենայն ժողովրդեանն Հրէից. զի նախ առ նա ձգեաց զբանն, բայց քանզի նա չարար զանձն արժանի, թողեալ զնա՝ այսուհետև ընդ ամենայն ժողովրդեանն խօսի. վասն այնորիկ ասէ՝ տացի ոչ քեզ նշան, այլ ձեզ. ձեզ, ծ.մ. հասարակ տանն Դաւթի, քանզի ամենայն բղխեաց նշանն:

Եւ զինչ իցէ նշանն. «Ահաւադիկ, ասէ, կոյսն յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ»: Որպէս և յառաջագոյն իսկ ասացի, թէ ոչ Աքազու տայր այնուհետև զնշանն, և զի ոչ կարծիք ինչ են, ինքնին իսկ մեղադիր լինի. «Մի եթէ թեթեւ իցէ աշխատութիւն հասուցանել մարդկան». և յաւել՝ եթէ «Վասն այնորիկ տացէ Տէր ինքնին նշան». և զինչ նշան. «Ահաւասիկ, ասէ, կոյսն յղացի». զի եթէ կոյս չէր, և ոչ նշանն՝ նշան ինչ. զի նշանն՝ արտաքոյ 'ի միջոյ բանն ալ զհասարակաց կարգն և զբնութեան սովորութիւն, և նոր ինչ և չքնաղ լինել, զի հասարակաց նշանակ իցէ նշանն, և տեսողացն և լսողացն. քանզի վասն այնորիկ իսկ նշան ասի, վասն նշանակ ինչ ցուցանելոյ. և նշանակն՝ նշանակ ինչ չէ, եթէ այլոց հասարակ իրաց ծածկելոց իցէ: Զի եթէ զկանանց ինչ բանք էին, ըստ օրինաց սովորութեան բնութեանն ծնանել, վասն է՞ր նշան կոչէր զայն ինչ՝ որ հանապազ լինէր: Եւ յայն սակս իսկ 'ի ծնանելն՝ ոչ վայրապար ասէ՝ թէ ահաւասիկ կոյս, այլ թէ՝ ահաւադիկ կոյսն, յաւելուածով վերադրին նշանաւոր իւր և միայն զայն այնպէս իւր անկնարկէ, և յաւելուած վերադրիս զայս ինչ յայտ առնէ՝ զոր ասացաք: Եւ յաւետարանէ մարթ է ճշգրտիւ ուսանել. յորժամ առաքեցին առ Յովհաննէս Հրէայքն և հարցանէին, թէ Դու ո՞վ ես, ոչ ասացին՝ թէ դո՞ւ ես Քրիստոս, այլ թէ՝ Դո՞ւ ես Քրիստոսն. և ոչ ասացին՝ թէ դո՞ւ ես մարգարէ, այլ եթէ՝ Դո՞ւ իցես մարգարէն. որոց

իւրաքանչիւր առաքինութիւնն յայտնէ վերադրաւն։ Վասն այնորիկ և Յովհաննէս Իսկզբան աւետարանին ոչ ասաց, եթէ Իսկզբանէ էր Բան, այլ եթէ՝ Իսկզբանն էր Բանն, և Բանն էր առ Աստուած։ Այնպէս և աստ ոչ ասաց՝ եթէ ահաւասիկ կոյս, այլ եթէ՝ ահաւասիկ կոյսն. և պատուով ևս հանդերձ՝ որպէս և մարգարէի վայել է՝ ահաւասիկ ասել. քանզի ոչ եթէ առ զբօսանս ինչ ասել, այլ և բազում իսկ հաստատութիւն առնել զձառելոյն. զի քան զմեր աչս զերևելիսն՝ նոքա ևս լուսաւորագոյնս տեսանէին զաներևոյթսն. զի աչաց մարթ է և պատրել և այլ և այլ տեսանել, իսկ շնորհք Հոգւոյն՝ անվրէպ շնորհէին զհրամանն։ Եւ ընդէր, ասեն, ոչ յաւել՝ եթէ 'ի Հոգւոյն է ծնունդն. ասեմք՝ եթէ մարգարէութիւն է՝ որ ասէր, և ծածուկս պարտ էր ձառել. զոր բազում անգամ ասացի, թէ վասն անհաւանութեանն լսողացն. զի մի յորժամ յայտնագոյնս ուսանիցին, և զգիրսն ևս այրեսցեն. զի եթէ 'ի մարգարէսն չխնայէին, որչափ ևս առաւել և 'ի գիրսն չխնայէին։ Եւ զի ոչ կարծ ինչ էն զոր ասեմ, մի թագաւորն առ Երեմիայիւ և զմատեանսն իսկ կոտորեաց և 'ի հուր ընկէց։ Տեսանե՞ս զյանդգուգն կատաղութիւնն, հայիս յանհանձար բարկութիւնն. զի ոչ միայն զայն բաւական համարեցաւ՝ զի կոտորեաց, այլ և 'ի կրակ ևս ընկենոյր, զի զչարակամ բարսն կատարել կարասցէ։ Բայց թէ ոչ յայտնագոյն ասաց, սակայն զամենայնն յայտնի եցոյց. զի կոյս յորժամ ծնանիցի և կոյս մնասցէ, ուստի՞ այլ ուստեք ծնանիցի, եթէ ոչ 'ի Հոգւոյն Սրբոյ. զի զօրէնս բնութեան լուծանել այլ ուրուք ոչ է, բայց եթէ բնութեանն իսկ արարչի. որպէս զի ասելովն՝ թէ կոյսն ծնցի, զամենայն ինչ յայտ արար։

Եւ արդ, իբրև ասաց՝ թէ ծնցի, ասաց՝ թէ և զի՞նչ անուն է ծննդեանն, ո՛չ որ եդաւ ինչ նմա անուն, այլ որ ինչ ըստ դիպաց իրացն պատշաձ իցէ. զի զոր օրինակ զԵրուսաղէմ կոչէ քաղաք արդարութեան, թէպէտ և ոչ երբէք կոչեցաւ քաղաք արդարութեան, այլ ըստ դիպաց իրացն կալաւ 'ի ժամանակին զյորջորջումն, զի բազում՝ իմն 'ի ժամանակին եղև նմա փոփոխումն 'ի լաւութիւն, և վասն արդարոյն

պաշտպանութեան. և քանզի յորժամ պոռնիկ կոչի՝ ոչ վասն զի այն անուն եդաւ քաղաքին, այլ ըստ չարեացն՝ որ 'ի ժամանակին գտան 'ի նմա, նոյնպէս և վասն արդարութեանն՝ արդարութեան քաղաք։ Եւ արդ զոյն ասէ վասն Քրիստոսի, եթէ ըստ դիպաց իրացն կոչեցաւ նմա Եմմանուէլ անուն. զի յայնմ ժամանակի եղև ընդ մեզ մանաւանդ Աստուած՝ յորժամ յերկրի երևեցաւ և ընդ մարդկան շրջեցաւ և զբազում խնամսն եցոյց առ մեզ. զի ոչ հրեշտակ ոք և ոչ հրեշտակապետ եղև ընդ մեզ, այլ ինքնին Տէր էջ և ուղղեաց զամենայն ուղղութիւնս. ընդ պոռնիկս խօսեցաւ, ընդ մաքսաւորս բազմեցաւ և 'ի մեղաւորաց տունս եմուտ, աւազակաց համարձակութիւն ետ, զմոգս առ ինքն ձգեաց, ընդ ամենայն չափս էանց, և զամենայն ինչ ուղղեաց և զբնութիւնս մարդկան ընդ իւր միաւորեցոյց։ Եւ արդ զայս ամենայն՝ մարգարէս յառաջագոյն գուշակէ, զի միանգամայն և զծնունդն ասիցէ և զբազում եւս զշահ զծննդեանն պատմիցէ։ Զի յորժամ Աստուած ընդ մարդկան իցէ, չիք այնուհետև ոչ երկիւղ ուստեք և ոչ կասկած յումեքէ, այլ համարձակութիւն առ ամենայն ինչ. որ եղև իսկ. զի առաջին և անշարժ չարիքն քակեցան, և պատիժքն որ 'ի վերայ ազգի մարդկան կային՝ 'ի միջոյ բարձան, և մեղաց ջիլք հարան և սատանայի բռնութիւնն շիջաւ, և անկոխ դրախտին ճանապարհ՝ մարդակոտոր աւազակաւն նախ բացաւ, երկնից կամարքն յայտնեցան, մարդիկ ընդ հրեշտակս խառնեցան, և յաթոռն իսկ արքունական համանէր մեր բնութիւնս, և դժոխոց կապանք կոտորեցան և մահու անունն ևեթ լոկ մնաց, զի ոչ ուրեք են որդիւնք 'ի միջի, և գունդք մարտիւրոսաց և կանայք եւ՛ փշրեն զխայթոցս մահու։ Զայս ամենայն տեսեալ յառաջագոյն մարգարէս, խաղայր, ցնծայր, և միով բանիւ զամենայն միանգամ մարգարէացեալ՝ Եմմանուէլ անուանեցուցանէր։

« Եւ եւղ և մեղր կերիցէ. մինչև ծանուցեալ իցէ նորա կամ ածեալ զմտաւ, ընտրեսցէ զբարին »։ Քանզի որ ծնաւ մանուկն՝ ոչ մարդ լոկ էր և ոչ Աստուած միայն, այլ Աստուած մարդացեալ, և ոչ 'ի մարմին

դարձեալ. Նմանապէս և մարգարէն այլ և այլ կեր-
պարանօք զբանսն ձևաւէ, զի մերթ զայս և մերթ զայն
ասէ, և զսքանչելիսն պատմէ և զտեսչութիւնն յայտնէ
անհաւատալի՝ վասն առաւել զարմանալեացն։ Քանզի
ասաց՝ թէ կոյս ծնցի, իբր որ 'ի վերայ քան զբնու-
թեան էին. և կոչեսցի անուն նորա Էմմանուէլ, որ
և այս իսկ մեծի յուսոյ նշանակ է. զի մի ոք յորժամ
զԷմմանուէլն անուն լուիցէ, զմարմնաւորական ախտն
ախտանայցէ և 'ի Վաղենտինոսականաց ցաւս Ներանեցի,
միանգամայն և զմեծամեծս աստուածութեան և
զտեսչութեան լուսաւորագոյն ընծայութիւն ցուցա-
նէ, և մանաւանդ յայսպիսի նշանոյ առնէ հաւա-
տալի զտնտեսութիւնն։

« Եղ և մեղր, ասէ, կերիցէ », որ ոչ էութեան աս-
տուածութեանն է, այլ մերոյ բնութեանս, զոր առ
իւր մարմնովն փակել է[1]։ Վասն այսորիկ ոչ զմարդ ող վայ-
րապար ստեղծ և բնակեցաւ 'ի նմա, այլ իմիք իսկ
յղանալոյ յարգանդի կուսին առ յանձն՝ ինմանանալոյ
ժամանակ կատարելով և երկանց և ծննդոց և խան-
ձարուրաց և այսպիսի կերակրոց 'ի մանկտղական տիս հա-
սակին. զի անմնելին կարկեսցէ զբերանս այնոցիկ՝
որք զտնտեսութիւն տեսչութեանն 'ի մէջս յանդուգն-
նիցեն բառնալ։ Զայս ամենայն յառաջագոյն տեսեալ
մարգարէիս, ոչ միայն զսքանչելի ծնունդն ասէ, և
զխանձարուրսն թաքուցանէ. զի այնու ոչ աւելի ինչ
քան զայլոյ մարդկան և ոչ նոր ինչ քան զնոցա, քան-
զի ոչ զամենայն ինչ այլակերպեաց, և ոչ զամենայն
ինչ զհասարակացն եցոյց. զի 'ի մարդոյ[2] ծնանելն՝ այն
հասարակաց է, իսկ 'ի կուսէ, և զկոյսն 'ի կուսու-
թեան պահել, այն մեծ և 'ի վեր քան զհասարա-
կացն. սնանելն կերակրովք՝ ըստ օրինաց մարդկան
բնութեան էր, իսկ անապատ մնալ 'ի չարեաց՝ տէրու-
նական մարմնոյն եւեթ. և բնաւ իսկ 'ի փորձ չգալ 'ի
մեղաց՝ այն նոր և չքնաղ և նորա միայն. վասն որոյ
զայն և զայս առհասարակ իսկ եդ։ Քանզի ոչ ասէ՝
եթէ 'ի փորձ չարեաց եկն և ապա հեռացաւ 'ի չա-
րեացն, այլ 'ի բնէ և իսկզբանէ իսկ եցոյց յիւրում

1 Այսպէս յօրինակին։ 2 Ծն. ի կնոջէ։

մարմնին զկատարեալ զքաջութիւնն, որպէս և ինքն իսկ ասաց, թէ Ո՞վ ՚ի ձէնջ յանդիմանեսցէ զիս վասն մեղաց. և Գայ իշխան աշխարհիս այսորիկ և առ իս ինչ ոչ գտանէ զիւր։ Եւ սոյն մարգարէ մատուցեալ յառաջագոյն և ասէ, եթէ Զմեղս ոչ արար և ոչ գտաւ նենգութիւն ՚ի բերան նորա. զսոյն և աստ յայտ առնէ՝ թէ մինչչև ծանուցեալ էր նորա և կամ նախ կամեցեալ զչարութիւն՝ անդստին յանփորձ չարեաց, յառաջին տիոցն իսկզբանէ ընկալցի զառաքինութիւնս, և ոչ ինչ եկեսցէ ՚ի հասարակաց չարութիւն։

« Զի մինչչև ծանուցեալ իցէ մանկանն զչար կամ զբարի, անարգեսցէ զչարն՝ առ ընտրել զբարին » ։ Դարձեալ նովին բանիւք՝ զնոյն միտս նշանակէ, և յայտ է ՚ի բանիցն. զի յոյժ բարձրագոյն է որ ասացաւն, վասն այսորիկ յաճախէ և զպատմութիւնն, զի հաստատուն արասցէ՝ զոր վերագոյն ասաց, թէ « Մինչչև ծանուցեալ իցէ նորա կամ նախ կամեցեալ զչարութիւն ». զնոյն և աստ կրկնէ, թէ « Մինչչև իցէ ծանուցեալ մանկանն զբարի կամ զչար, անարգեսցէ զչարն՝ առ ընտրել զբարին »։ Այս առաւելութիւն նորա միայն է, զոր և Դաւիթ յառաջագոյն իմն յերգսերգէ, և Յովհաննէս իբրև ետես զայսպիսի զարմանալիս՝ աղաղակ եդեալ բարբառէր, եթէ Ահաւասիկ գառն Աստուծոյ՝ որ բառնայ զմեղս աշխարհի։ Եւ եթէ զայլոց մեղս բառնայ, ապաքէն ևս առաւել անարատ իցէ ՚ի մեղաց։ Եւ քանզի հանդերձեալ էր մեռանել, զի մի ոք կարծիցէ՝ եթէ վասն իւրոց մեղաց հատուցանիցէ զպարտս վճարուց, յաճախագոյնս Պաւղոս բարբառի զանմեղութիւն նորա, զի զմահ նորա մերոց մեղացն քաւութիւն ցուցցէ. վասն որոյ ասէ, թէ Քրիստոս յարուցեալ է ՚ի մեռելոց, այսուհետև չմեռանի. և որ մեռաւն՝ մեղաց մեռաւ միանգամայն, քանզի ոչ եթէ իբրև զպարտապան մեղաց մեռաւ, այլ փոխանակ հասարակաց ամենեցուն մեղաց, զի եթէ առաջինովն յայտ է՝ եթէ ոչ իբրև զպարտապան մեռաւ, և յայտնագոյն՝ եթէ այլ ևս ոչ մեռանի։

« Եւ մնասցէ երկիրդ՝ յորում դու ես պակուցեալ առաջի երկուց թագաւորաց »։ Որպէս և բազում

անգամ առնէ մարգարէս, նոյնպէս և աստ զնոյն ցուցանէ. զի յետ մարգարէութեանն՝ ապա անդրէն 'ի կարգն ածէ զբանն: Զայն և 'ի սրոբէիցն Ճառս յօրինեալ ցուցաք յայտնագոյն, որպէս և աստ իսկ. զի յորժամ ասաց զհանդերձելոցն բարութեանց՝ որ լինելոցն էին տիեզերաց, ապա 'ի Թագաւորն շրջէ զբանն. վասն որոյ յառաջ ևս մատուցեալ՝ ասէ. «Եւ մնասցէ երկիրդ»: Զի՞նչ իցէ մնասցէն. առանց ըկանաց մնասցէ, ազատ կացցէ, ոչ ինչ չարչարեսցի 'ի պատերազմաց: «Եւ մնասցէ երկիրդ՝ յորմէ դու ես պակուցեալ». վասն որոյ երկնչիսդ, վասն որոյ կասկածեսդ՝ յերեսաց երկուց Թագաւորացդ, 'ի Դամասկացւոցն և յԻսրայելացւոցն:

Իսկ զի մի՛ բարեացն մարգարէութեամբն ծուլացեալք գտանիցին, և խաղաղութեանն աւետեօք՝ յուլութիւնս հատանիցին, պնդէ դարձեալ զմիտսն ասելովն. «Ածցէ Տէր 'ի վերայ քո և 'ի վերայ ժողովրդեան քո և 'ի վերայ տան հօր քո աւուրս՝ որ չև իցեն եկեալ, յօրէ՝ յորմէ հանցէ Եփրեմ 'ի Հրէաստանէ զարքայն Ասորեստանցի»: Այսու՝ զհինին այլազգեաց զասպատակն յայտ առնէ, որով զամենայն քաղաքն իսկ 'ի հիմանց բրելոց էր, և առնուին զամենեսեան և տանէին 'ի գերութիւն. և ոչ յայն սակս ասիցէ յառաջագոյն զի լինիցին, այլ զի ահն արկանելով զգաստանայցեն և մերժեսցեն զսպառնալիսն. և քանզի ոչ հեշտականօք՝ որոց չէին արժանի և վայելեցին, զայն միտք Թագաւորին յայտ առնեն, և առաւել անհաւատութիւնն, զի ոչ ահիւ սպառնալեացն փոխեցան ինչ 'ի չարութեանցն, այլ յերկաւին կողմանս շահիցն դեզզոց գտանէին դիմադարձք, ածէ այնուհետև 'ի վերայ զխոր մրրին զհատածն՝ զի զփուտն հարկանիցէ[1], և որք զանբժշկական ցաւսն ջերանիցին՝ 'ի միջոյ բառնայցէ: Եւ զի՞նչ ինչ այն իցէ, «Յօրէ՝ յորմէ հետէ հանցէ Եփրեմ զարքայն Ասորեստանի». զի եկն եհար հէնն և առ զամենեսեան, բայց զՀրէաստան միայն թողին, զազգս զերկոսեան, և ձի արկին վարեցին 'ի գերութեան զամենայն Իսրայելացիս: Եւ զոր ինչ ասէս

1 Ցն. Հատանիցէ:

այժմ՝ այսպիսի ինչ է. յայնմ օրէ հետէ, յորմէ տասն ազգն ձգիցեն ածիցեն 'ի վերայ անձանց զզօրս հինին, 'ի ձեռն մերժիցեն, և իւրեանց չարութեամբքն անձամբ անձին ածեալ զպարկութիւնն՝ վարեսցին 'ի գերութիւն, յայնմ օրէ հետէ պարտ էր և ձեզ կասկածել, զի յորժամ զխանձ առնուցուն Ճանապարհացն և 'ի ձեր վերայ եւս գայցեն, եթէ ոչ դառնայցէք. յայնմ օրէ հետէ, ասէ, ածցէ զնոսա. զի ոչ եթէ յորժամ Խորայելացիքն գերեցան՝ 'ի նմին ժամանակի և Հրէաստանեայքն առան, այլ ժամանակք ինչ անցին ընդ մէջ։ Եւ զոր այժմս ասէ՝ այսպիսի ինչ է. զի զվճիռն ածել 'ի վերայ՝ յայնմ օրէ հետէ պարտ էր, այլ երկայնամիտ լինէր Աստուած և ներէր. թէպէտ և մեղացն արժանք՝ յայնմ հետէ իսկ պահանջէին զպարտիսն։ Զոր բազում անգամ սովոր է առնել Աստուած, զբուն ժամանակն յապաղել և յամեցուցանել, որ և նորա մարդասիրութեանն մեծ առաւել նշանակ է, և ստահակութեան այնոցիկ՝ որք և երկայնմտութեամբքն ոչ առնեն զանձինս պիտանիս։ Սոյնպիսի ինչ և աստ ասէ, եթէ յայնմ հետէ իսկ են սպառնալիքն, յայնմ հետէ վճիռ պատժոցն, յայնմ հետէ աստուածասաստ բարկութիւնն. զի յորժամ 'ի դուրս իսկ ածեալ հատուցանիցէ զպատիժսն, զարթուցէ յապաշխարութիւն և արասցէ պիտանիս, և նոցա գերութեամբքն՝ արկանիցէ ահ սոցա, զի մի յորժամ կէսքն գերիցին և կէսքն մնայցեն, լինիցին այնու ծուլացեալք։

« Եւ եղիցի յաւուր յայնմիկ շնչեսցէ [1] 'ի Ճանճիռ՝ որ տիրեսցէ 'ի վերայ կողման գետոյն Եգիպտացւոց»։ Տեսանես, զի ոչ վայրապար ինչ ասէր, եթէ զի զերկիւղն կամէր աճեցուցանել, վասն այնորիկ յայնմ օրէ շարժէր զսպառնալիսն, զի որ յետոյ գան բանքն յայտ առնեն՝ որովք զերկիւղն յաճախէ. և զի զօրացն գալ պատմէ՝ որ կարի զարհուրեցուցանէր զնոսա, և զդարձին դիւրութիւն. զի յաճախագոյն իմն պախեցոյց զմիտս նոցա բազմութեամբ զօրացն. և զայս ամենայն յաջորդաքն նշանակէ. և միտ դիր. « Եղիցի, ասէ,

1 Յն. Շչեսցէ։

յաւուր յայնմիկ՝ շնչեսցէ Տէր 'ի ճանճիրան »: Ճանճիրան ասէ՝ զԵգիպտացիսն կոչէ, վասն լպրշութեանն և ըղբութեանն, զի ստէպ հալածէին, և նոքա դարձեալ ստէպ գային, և ոչ տային ժամանակս տալոյն ոչ անուլ, այլ հանապազ ձանձրացուցանէին. որպէս և ճանճք՝ որ հալածին 'ի վերայ, և դարձեալ ստէպ անդրէն դառնային: Եւ փուտս, ասէ, ածցէ Աստուած. և ոչ ասէ՝ թէ ածցէ, այլ նոցա շնչեսցէ. զի յայտ արասցէ՝ թէ այնպէս դիւրաւ է Աստուծոյ զօրութեանն, զի միայն ակնարկէ, և վաղվաղակի ամենայն ինչ կատարէ զկամս նորա: Եւ նմանապէս զոկիզըն ապառնալեացն 'ի նոցանէ առնէ, զորոց և արդեանքն իսկ զփորձն գիտէին. և մեղուացն ասէ՝ որ իցեն յերկրին Ասորեստանեայց: Իսկ եբրայեցին և սարի՝ ոչ մեղուս ասեն, այլ ձիաստաց, զի ոչ ինչ այնչափ գիտէին զփորձ նոցա, որպէս կար ձիաստացին արկանէ նոցա ահ, զի զյաղթահարութիւնն ցուցցէ զխայթողութեանն, զսրակալութիւնն, զդաժանութիւն հարուածոցն, զերագութիւն գալստեանն, զանսասանելին լինել:

« Եւ եկեսցեն հասցեն, ասէ, 'ի ձորս ձեր և 'ի քարածերպս վիմաց և յայրս և 'ի փապարս և յամենայն փայտս »: Յորժամ ասաց զահաւորութիւն ազգացն և զերագութիւն զօրացն, ապա ասէ և զբազմութիւնն, և ոչ ասէ՝ թէ բնակեսցին, այլ թէ հանգիցեն. զի ոչ եթէ իբրև 'ի թշնամեաց երկիր երթայցեն 'ի պատերազմ, այլ իբրև յիւրեանց երկրի փերեւետիցեն համարձակ, զի ոչ աշխատ լինիցին և ոչ ջանայցեն ինչ, այլ միայն յայտնեսցին և ցուցանիցեն զյաղթութիւնն, և պատրաստ գտեալ անկուցանեն զառն. վասն այսորիկ ասիցէ՝ թէ հանգիցեն, որ յաղթաթեանն և դիւրին առնի նշանակ է. որք և զկատարուածս են յաճախիցեն. և ոչ 'ի դաշտս միայն հանգիցեն, այլ բազմութեանն զօրացն՝ որում ոչ հանդարտիցէ երկիրն՝ և ձորքն լնուցուն և ծերպք վիմաց և այրք և լերինք և բարձունք և ամենայն առհասարակ հեղեղուտն ծածկիցին: Չի թէպէտ և սատակք չէին և ոչ ժիրք և քաջք, սակայն բազմութիւն բաւական էր հարկանել. իսկ յորժամ ժիրք ևս իցեն և բազումք, և որ քան զամենայն դաժանագոյն է, զի յԱստուծոյ բարկու-

Թենչէն եկեալ հասեալ էին 'ի վերայ, զինչ ինչ այնու-
հետեւ կայր ակն յուսոյ փրկութեան։ Իսկ 'ի ծերպսն եւ 'ի փապարս հանգչել՝ զբազմութիւնն յայտ առնէ. եւ ոչ եթէ մարդիկն 'ի ծերպս եւ 'ի ծակս հանգչէին։

« Յաւուր յայնմիկ գերծցէ Տէր ածելեաւն մեծաւ՝ որ արբեալն իցէ »։ Իբրեւ անձնգոյ Տէր զահ զօրացն, ձգէ գարշեալ զբանն եւ հանէ յերկրէս, եւ յայտ առնէ՝ եթէ ոչ այլազգիք եւ ոչ Եգիպտացիք եւ ոչ Ասորիք, այլ Աստուած է՝ որ մերժանչի ընդ Հրէայս։ Իսկ ածելի ասէ՝ զանհնարին բարկութիւնն կոչէ, որում ոչն ոք կարէր համբերել կալ առաջի, որ դիւրաւն եւ վաղվաղակի ծախէր. որպէս մազ գլխոյ ոչ կարէ կալ առաջի սրոյն, այլ վաղվաղակի գերծու եւ անկանի, նոյնպէս եւ ոչ Հրէիցն բարութիւնքն կարէին առաջի կալ Աստուծոյ բարկութեանն։ Ածելի արբեցեալ՝ զսաստկացեալ, զլցեալ, զկատարեալ զԱստուծոյ զբարկութիւնն կոչէ։

« Յայնկոյս գետոյ թագաւորին Ասորեստանեայց »։ Արածանի [1] գետոյ, զի յայնկոյս Արածանւոյ էին Ասորեստանեայք եւ Պարսիկք, Հրէաստանի եւ Պաղեստինացւոց աշխարհին։ Զամենայն, ասէ, միանգամայն աւերեսցէ, գլխոյն եւ մազոյն եւ մօրուացն եւ ոտիցն. զբնաւ իսկ զերկիրն նմանեցուցանել զմարմնոյ նշանակէ. որպէս եւ իսկզբանն ասէ, թէ Ամենայն գլուխ 'ի ցաւս, եւ ամենայն սիրտ 'ի տրտմութիւն [2]. եւ ոչ զմիոջէ մարմնոյ ասէ, այլ զամենայն աշխարհն ակնարկէ, նոյնպէս եւ աստ. քանզի զանհնարին պատիժսն էր կրելոց ամենայն երկիրն առհասարակ, ածէ յառակ զածելի եւ զմարմին. զի որպէս ածելի հատու է, նոյնպէս եւ Աստուծոյ բարկութիւնն. զի մերկ եւ աւերակ մնացէ ամենայն երկիրն։ Եւ որ յետոյ բանքն ասէ՝ Թուի անտեղեկաց եթէ բարեաց ինչ աւետիք իցեն, որ եւ նոքին իսկ աւերի նշանակ են։

« Եւ եղիցի, ասէ, յաւուր յայնմիկ սնուցէ մարդ երինջ մի յարջառոց եւ մաքիս երկուս. եւ եղիցի 'ի բազմութենէ կաթինն՝ ուտել իւղ, զի իւղ եւ մեղր

1 Յն. Ընդհանուր անուամբ՝ Եփրատ գետոյ։
2 Յօր. Սրտմտութիւն. ուղղեցաւ ըստ Յն։

կերիցեն ամենայն՝ որ մնացեալ իցեն յերկրին »։ Եւ այս բազում աւերածի նշանակ է. զի որ ցորեանն և գարին բերէր երկիրն, յորժամ աւեր մնայցէ 'ի մարդկանէ՝ խոտալից ճարակաշատ լինի անասնոց. և այնպէս խոտալից, զի երկու ոչխարք և մի երինջ բաւական լինիցին տալ կաթն առատութեամբ՝ ստացողին, որպէս զի ընդարձակութիւն անասնոց ճարակոց՝ լինիցի նուազութեան մարդկանն նշանակ։ Եւ մեղըն զնոյն յայտ առնէ, զի ուր մարդիկ չիցեն՝ անդ բնակեն մեղուք, զի յայնժամ շատ գտանեն ծաղիկս՝ յորժամ ոչ ուստեք լկիցեն։ Եւ զի ուտանիցեն՝ եթէ ըղսաստկացեալ զաւերածն նշանակէ, միտ դիր յաջորդացս։

« Եւ եղիցի, ասէ, յաւուր յայնմիկ՝ զի ուր իցէ հազար որթ, հազար կշռոյ գինք. խոպանասցի և փուշ դարձցի. կապարճեալք լիաձիգք լեռագիրկք մտցեն անդր. զի խոպանացեալ և փշաբեր լիցի ամենայն երկիր »։ Բազում և այս իսկ նուազութեան նշանակ է, յորժամ ոչ միայն լերինք և բարձունք, այլ և շէն երկիր, որ զբազում դալարմանս ընդունէր, լիցի փշաբեր. նաև զգինոյ որթոյն ոչ վայրապար ինչ դնէ, այլ զի և զերկրին զառողութիւնն ցուցցէ և զմշակացն բազում դարմանս։ Սակայն և որ այնպէս, ասէ, պտղաբեր էր և 'ի ձեռաց հողագործաց այնպիսի դարմանօք դարմանեալ՝ յայնչափ աւերուած հասցէ՝ զի փուշ փոխանակ որթոյն բերիցէ։ Այնպիսի ինչ ահ արկանէ բնակչացն, եթէ այնպէս ինչ լինելոց է երկիրն, զի ոչ ոք մերձ և անդէն իշխեսցէ 'ի ներքս մտանել. և այսու զաւերն յայտ առնէ և զգաղթականացն հանդիսանալ։

Եւ յորժամ եհար զմիտս ահագին պատգամօքն և խուճապեցոյց երկիւղիւն, ապա դառնայ և զհեշտականսն ևս խառնէ, և 'ի լաւ անդր դառնալ, զի յետ երկացունց[1] կողմանց ուսանիցեն զԱստուծոյ զօրութիւնն։ Այլ 'ի տրտմականսն յաւէ, և զհեշտականսն հարեանցի իսկ պատմէ. և ընդէ՞ր արդեւք. այլ զի սաստիկ դեղոց էին պէտք մանաւանդ 'ի ժամանակին, վասն որոյ զայն իսկ յորդէ. և զի փոքր մի ոգի առ-

1 Ծն. Զի յերկոցունց։

նուցուն և այնու յօժարիցին յառաքինութիւնս՝ խառնել և զհեշտականսն ։

« Ամենայն, ասէ, լեառն արօրադիր՝ ակօսաբեկ լիցի »։ Զի որպէս 'ի բարկութեանն Աստուծոյ և չէին երկիրն յաւեր դառնայր, նոյնպէս և 'ի հաշտութեանն՝ խիստն և առապարն՝ զպարարտ երկիր 'ի գործ անկանիցի [1] ։ Եւ յորժամ այս ամենայն լինիցի, այնուհետև խաղաղութիւն իցէ և յապահով ժամանակ, և մի ինչ երկնչել և սրտապատ-լինել իբրև զառաջինն ։

« Եւ մի հասցէ անդր երկիւղ. զի եղիցի 'ի խոտանէսն և 'ի փշաբեր տեղւոջէ՝ արօտ զուարին և կոխան եզին »։ Եւ այսու ևս զշինութիւնն նշանակէ՝ որպէս և զառաջինն. քանզի յառաջ երթեալ՝ ասէ. Երանի որ սերմանիցեն ընդ ամենայն ջրով՝ ուր եզն և էշ կոխիցեն։ Զի զոր օրինակ յորժամ զաւերածոյն կամի պատմել, զհամբարուս և զյուշկապարիկս 'ի մէջ բերէ, նոյնպէս և յորժամ զխաղաղութիւնն և զշինութիւնն նշանակէ՝ զձեռասուն և զընտանի անասունս և զմշակս և զգործ երկրի ։

## ԳԼՈՒԽ Ը

« Եւ ասէ Տէր ցիս. Ա՛ռ դու քեզ տոմս մի քարտէս նոր մեծ, և գրեա դու 'ի նմա գրչաւ մարդոյ, արագարագ զաւար հարկանել, փաղփաղակի զապուռ ժողովել. զի առհաւատիկ հասեալ է։ Եւ վկայս կացուցեալ է արս հաւատարիմս, զՈւրիա քահանայ և Զաքարիա որդի Բարաքեայ։ Եւ մերձեցայ ես առ կինն իմ մարգարէ, և յղացաւ և ծնաւ որդի. և ասէ ցիս Տէր. Կոչեա զանուն նորա՝ Արագ Արագ կապտեսջիր. քանզի մինչչև ծանուցեալ իցէ մանկանն զանուն հօր կամ զմօր, առցէ զզօրութիւն Դամասկոսի և զաւար Սամարեայ, առաջի Թագաւորին Ասորեստանեայց »։ Թուի եթէ բարժանեալ իմն իցեն ըստ բանիս ըստ այսմիկ

1 Այսպէս յօրինակին ։

երկրորդին իսկ հրամանքս այսորիկ, և ոչինչ հաղորդութիւն ունիցին առ միմեանս. իսկ եթէ ոք հաւատեաւ քննեսցէ զմտացն զօրութիւն, բազում հաւանութիւն գտանէ 'ի միջի և միաբանութիւն։ Եւ արդ, հարկ է ասել՝ եթէ վասն էր մարգարէութեանն նշանակ խոնարհեցաւ 'ի մարդկան վարս. քանզի յաւել և յապաղել սովոր է Աստուած առ ածել պատիժս մեղաւորաց, որպէս և փոյթ և երագ 'ի բարերարութիւն այնոցիկ՝ որք զուղղութիւնս կատարիցեն։ Եւ քանզի այս զծուլացեալսն պարապէ զյուլութիւն, զի ոչ անդէն վաղվաղակի գան հատանեն պատիժք յանցաւորացն, և արդ զի և զերկայնմտութիւնն իւր ցուցցէ Աստուած, և զի մի յերկայնմտութեանն յապաղմ՝ նոքա ծուլանայցեն ինչ, կամի գեղս մարգարէութեանցն. ոչ զփորձ ցուցանելով զատանջանաց, այլ կանուխ զխօսութեամբ՝ խրատէ զյանցաւորս. զի թէ յորժամ լսիցեն զսպառնալիսն և աղետանայցեն, մերժեսցեն զփորձ տանջանացն. ապա եթէ 'ի նմին հաստատեալ կայցեն անհանճարութեամբ, ապա և զպատիժսն ածեալ հասուցանիցէ 'ի վերայ։

Զայս իմացեալ սատանայի, և եթէ զինչ շահք յայնմանէ լիցին, դրդէր զսուտ մարգարէսն սպառնալ մարգարէիցն, որք զսուրն և զսովն և զառհասարակ եղծականն հարուածսն և զհէն և զպատերազմ յառաջագոյն իմացեալ՝ գուշակէին. նոքա զհեշտականսն և զծուլացուցիչսն քարոզէին։ Զի որպէս Աստուած ահագին բանիւքն զփորձ պատժոցն կամէր կարճել, նոյնպէս և սատանայ՝ հեշտականացն աւետեօք լուծանէր և ածէր 'ի պատժոցն հանդէս։ Եւ քանզի յետ այսր ամենայնի սուտ մարգարէիցն հաւատային և լաւութեանցն միտ ոչ դնէին, այլ 'ի նոյն մեղս կային և անձամբ յանձինս ձգէին զպատիժս, ուստի իսկ և մարգարէիցն ճշմարտութիւնն երևէր և սուտ մարգարէիցն ստութիւնն յանդիմանէր, այլ իմն հնարս հնարէ սատանայ՝ վասն կորստեան կորուսելոցն։ Քանզի հաւանեցոյց զնոսա՝ զինքնականսն պատրեալ 'ի խաբէութիւն, թէ ամենայն ինչք 'ի գիւտոյն բարկութենէ անցանեն ընդ նոսա, քանզի արհամարհէին և անարգէին զնոսա։ Արդ զի զայսպիսի պատիրս բառնայցէ

'ի միջոյ՝ յառաջագոյն քան զբազում ժամանակս գուշակէ զչարիսն՝ որ հասանելոց էին 'ի վերայ նոցա. զի մի՛ իշխեսցեն ոչք խաբէին զնոսա՝ դիւաց բարկութեանն համարել զպատիժսն և ոչ Աստուծոյ։ Եւ զի ոչ կարծեսջիք ինչ ասեմ, լուր սմին Եսայեայ՝ որ ասէ, եթէ Ես ինձէն գիտեմ զի խիստ ես դու, և ջիլք երկաթիք պարանոց քո. վասն այնորիկ իսկզբանէ խօսեցայ ընդ քեզ, զի մի՛ ասիցես՝ եթէ կուռքն իմ արարին զայս և դրօշեալքն ինձ կազմեցին զայս, նա և ոչ գիտէիր իսկ և ոչ լսելի երբեք եղև քեզ։ Եւ արդ, որպէս վերագոյնն ասացի և 'ի վկայութեանցս յայտնանէ է իմանալ, զի չիք ասել նոցա՝ եթէ այլ ուստեք եղեն իրքն. քանզի բաւական է մարգարէութիւնս՝ բառնալ 'ի միջոյ զխաբէութիւնն, որ յառաջ քան զբազում ժամանակս գուշակէր, վասն իրացն՝ որ լինելոցն էին։ Այլ և այլ ինչ պատշաճ էր ասել ապախտաւորութեանն նոցա, թէ յառաջագոյն չասացէք ինչ այդպիսի, և ոչ լուաք ինչ 'ի ձէնջ յայնժամ, արդ ինձ յօդէք, արդ ինձ կցկցէք, յորժամ իրքս եկին հասին 'ի վերայ. քանզի ոչ գիտէիք զինչ անցք անցանելոց իցեն. և ուստի՞ յայտ իցէ՝ եթէ յառաջագոյն ասիցէք։ Եւ արդ տես, զիարդ կազմէ յառաջագոյն զանվրէպ յանդիմանութիւնն, և կարկէ զբերանս լրբախօսս. զի ոչ միայն ասել տայ, այլ և 'ի քարտին միանգամայն գրել. և ոչ վայրապար գրել, զի մի՛ ասիցեն եթէ յետոյ ստեղծին 'ի մտաց, այլ և վկայս գրելոցն կոչէ արս հաւատարիմս, զի և 'ի պատուոյն և 'ի վարուց պատուական արանցն՝ առնիցէ զգիրն հաստատուն. « Կացուսցես ինձ վկայս, ասէ, արս հաւատարիմս, զՈւրիա քահանայ և Զաքարիա որդի Բարաքեայ ». զի յորժամ վճիռ իրացն լինիցի, և ասիցեն՝ եթէ մեր երբեք զայդ չիք լուեալ, բերիցեն զգիրն 'ի մէջ և ածիցեն զվկայսն և ըմբերանիցեն զլրբութիւն նոցա։

Վասն այնորիկ ասէ. « Ա՛ռ դու քեզ տոմս մի նոր մեծ ». զի մի՛ հնացեալ՝ փաղփաղակի կորնչիցի, այլ կայցէ մնայցէ պահեալ 'ի բազում ժամանակս յամբաստանութիւն նոցա՝ յորժամ ժխտիցեն։ « Եւ գրեա 'ի նմա գրչաւ մարդոյ », այսինքն՝ եղեգամբ, որ լինելոցն իցէ առ յապա պատերազմն, յաղթութիւն հինաւան-

դին, յաւարի բաժանել, յասպատակէ յափշտակել. զայս ամենայն, ասէ, գրեսջիր. «Արագ արագ զաւար հարկանել, վաղվաղակի զապուռ ժողովել. զի ահաւասիկ հասեալ է»։ Երկոքեան բանքն զմի ինչ յայտ առնեն, զի բազմութիւն մեղացն՝ զվրէժխնդրութիւնն կոչէ, և պատիժքն եկեալ հասեալ կան առ դուրս, և նա յապաղելով՝ մարգարէութեամբն կամի առնել զնոսա պիտանիս և անցուցանել զպատիժսն. զի դիւրին է նմա ակնարկել և զամենայն 'ի գլուխ տանել։ Եւ քանզի հինի ճառք էին՝ որ հանդերձեալ էին ասպատակել, մի ինչ կարծիցէք, ասէ, եթէ ճանապարհացն երկայնութիւն կամ զօրացն բազմութիւնն առնիցէ զյաղթութիւնն, որ ըստ մարդկան լինի այնպիսի ինչ. այլ Աստուծոյ, ասէ, և հեռին՝ մօտ է, և այսպէս դիւրին՝ որպէս զի և 'ի միում ժամու 'ի ծագաց երկրէ ածել հասուցանել զբազում վաղվաղակի։

«Եւ վկայս կացուսցես ինձ արս հաւատարիմս, զՈւրիա քահանայ և զԶաքարիա որդի Բարեքեայ»։ Զի թէպէտ և զգիրն չառնիցէ վաւեր, վկայքն՝ որ կենդանի իցեն և զժամանակն գիտիցեն՝ առնիցեն յամօթ զանամօթսն։ Եւ 'ի հաստատութիւն՝ յարէ զյաջորդսն. «Մերձեցայ[1], ասէ, առ կինն իմ մարգարէ». զի կինն մարգարէի՝ մարգարէ կոչէր յայնժամ, և թերևս և հոգևոր ինչ շնորհաց արժանի եղեալ էր կինն. քանզի ոչ յարս ևեթ հանդչէին շնորհք, զի ոչ եթէ որպէս ըստ աշխարհիս իրաց բաժանեալ են ազգքն 'ի միմեանց. և այլազգք պէտք արանց և այլազգ իմն կանանց, և ոչ կարեն յիւրաքանչիւր բնութենէն փոփոխել, նոյնպէս ինչ 'ի հոգևորսն իցէ. այլ զոյգ են ճրգնութիւնքն, քանզի հասարակաց են պսակքն. և զայս 'ի հին և 'ի նոր կտակարանս՝ եթէ կամի ոք՝ գտանէ հաւաստեաւ։ Եւ արդ 'ի կինն իւր յամուսին առ հրամանն մերձենալ, զի յղասցի և ծնցի որդի, և կոչեսցի անուն նորա նոր, չքնաղ, սքանչելի, որ զդէպս իրացն՝ յանուննն նշանակել ունիցի։

«Կոչեա, ասէ, զանուն նորա արագ արագ կապտեսջիր, և փոյթ ընդ փոյթ զաւար հարկանիջիր»։ Զի

1 Յօր. Մերձեաց. Յն. Մերձեցայ, ասէ, առ կինն մարգարէ։

Թէպէտ և տոմսն գրեալ՝ չլինիցի վաւերական, սակայն անուն մանկանն՝ որ զդէպս իրացն նշանակեր և 'ի վաղուց հետէ այնու անուամբ կոչէր, և զկարի անամօթիցն խնուցու զբերանս, եթէ ոչ յետ 'ի գլուխ ելանելոյ իրացն կցկցեալ ինչ մարգարէն, այլ անդուստ 'ի վաղուց յառաջագոյն գիտէր: Նա և մեկնութիւն իսկ անուան մանկանն՝ զժամանակն հաւաստեաւ նշանակէ:

« Զի մինչև ծանուցեալ իցէ զանուն հօր կամ զմօր, առցէ զզօրութիւն Դամասկոսի և զաւար Սամարեայ, առաջի Թագաւորին Ասորեստանեայց »: Եւ զոր ասէն՝ այսպիսի ինչ է. 'ի ժամանակի տհաս հասակի մանկանն, մինչև բարբառել իսկ կարիցէ, երևեսցի յաղթութիւնն: Ոչ զի մանուկն կարող իցէ 'ի մարտ պատերազմի պատրաստել և հարկանել զձակատս, այլ յայն տիս մանկանն, մինչև խօսելն կարիցէ՝ մատնեալ լիցի ամենայն ինչ գերեվարացն:

« Եւ յաւել ևս խօսել ընդ իս Տէր՝ և ասէ. փոխանակ զի ոչ ախորժեաց ժողովուրդս այս զջուրն Շիլովհայ՝ որ գնայ խաղաղ, այլ կամեցան զՀռասիմ և զորդին Հռոմելեայ՝ թագաւորել իւրեանց, վասն այսորիկ՝ ահաւասիկ ածցէ Տէր 'ի վերայ ձեր զջուր գետոյն ըզհզօրն և զյորդն՝ զարքայն Ասորեստանի »: Որպէս ավոր իսկ է Աստուած՝ ոչ միայն զպատիժսն ասել յառաջագոյն, այլ և զպատճառսն ևս յայտ առնէ, զի այնու ևս խրատեսցէ զլսողսն. որպէս և աստ՝ յորժամ ասաց զաւարն առնուլ, զկապուտն ժողովել, զհինին գալ հասանել, ապա և զպատճառսն ասէ պատերազմին, զանհնազանդութիւն բնակչաց քաղաքին: Քանզի, ասէ, Թագաւոր հեզ, հանդարտ և զգօն ունին, և կիցս ընկենուն, այլում բռնաւոր իշխանի ցանկանան, զի զիւրեանց բարիսն չգիտեն, և զայլոց չարիսն անձանց բաղձան. շրջէ զբանն յայլասացիկ բարբառն, և զբարս աշխարհին Թագաւորի և զխստութիւն այլազգւոյն պատմէ: « Փոխանակ, ասէ, զի ոչ ախորժեաց ժողովուրդդ այդ զջուրն Շիլովհայ՝ որ գնայ խաղաղ ». քանզի աղբիւրն Սելովհայ խաղաղ գնայ և ձայն ինչ ոչ հանէ, զհեզութիւն և զհանդարտութիւն Թագաւորին՝ գնացից խաղաղ ջրոյն Սելովհայ նմանեցուցա-

նէ, և զԹագաւորն իսկ Սեղավամ կոչէ, զի ոչ զոք նեղէր և ոչ զոք լլկէր, և զարհամարհութիւն քաղաքին որում տիրէր՝ ներելով անցուցանէր։ Եւ քանզի ոչ լուծ ծանր ունէին ՚ի վերայ, այլ առ խակութեանն յօտարազգիսն ձեռս տային, փոխանակ, ասէ, զի ոչ ախորժեցէք զհեզդ և զհանդարտ, այլ զՀռասիմ դամասկացի և զորդին Հռոմելայ՝ Թագաւոր Իսրայելի, ածից ՚ի վերայ ձեր զԱսորեստանեայցն՝ հանդերձ յորդզօրօքն. « Զջուրն գետոյն զհզօրն և զյորդն ». և անդէն մեկնէ զայլասացիկ անունն, եթէ « Զարքայն Ասորեստանեայց »։ Տեսանե՞ս, զի ոչ ընդ վայր ինչ ասացաք վերագոյնն, եթէ ամենայն ուրեք զայլասացիկն՝ ինքնին մեկնեն գիրք. որպէս և աստ՝ նախ կոչեաց գետ, և ապա եհան զգետն՝ յարքայն Ասորեստանի և յամենայն փառս նորա։

« Եկեսցէ հասցէ յամենայն ձորս և ՚ի խորս ձեր, ճեմեսցի և ծօճեսցի ՚ի վերայ պարսպաց ձերոց, և բարձցէ յերկրէդ Հրէաստանէ զայր՝ որ կարող իցէ վերացուցանել զգլուխ իւր և կամ կատարել ինչ ՚ի վերայ երեսաց երկրի. եկեսցէ բանակեսցի և խճողեսցի, զի ոչ իցէ տեղի բաւական բանակի նորա »։ Ցուցանէ եթէ ոչ մարդկեղէն ինչ զօրութիւն է, այլ աստուածասաստ բարկութիւն իրքն՝ որ լինելոց էին. զի ոչ իբրև զպատերազմող ՚ի ճակատ եկեալ համարի զնա, այլ իբրև պատրաստ եկեալ յառ և յապուռ և յափշտակութիւն. ոչ ասէ՝ կացցէ և ճակատեսցի, այլ լնուցու բազմութեամբ զերեսս երկրիդ և դիւրաւ անխափան ժողովեսցէ զամենայն։ Այլ և ՚ի բարկութեանն՝ մարդասիրութիւն առնէ. զի ոչ բնաւին, ասէ, ՚ի հիմանց բրեսցէ զքաղաքն, այլ գերութիւն պատմէ, զի զմնացորդս գերւոյն՝ պատժովքն առնիցէ զգաստագոյնս։ « Բարձցէ, ասէ, ՚ի Հրէաստանէ զայր՝ որ կարող իցէ վերացուցանել զգլուխ իւր »։ Զհզօրացն ասէ՝ որ զամենայն ինչ այսր և անդր հարկանել կարէին, զոր բազմութեամբ զօրացն վարիցեն գերի և առնիցեն ծառայս վտարանդիս, զի տնանկացն լինիցի փոքր մի ոգի առնուլ. և ահիւ գերելոցն՝ առնիցէ ըզնոսա պիտանիս։ Վասն այսորիկ ասիցէ, եթէ որ կարիցէ կատարել ինչ. այսինքն զհզօրն՝ որ գործ ինչ կա֊

րիցէ ցուցանել. զի և յառաջ քան զգերութիւնն, միայն երևեալ այլազգւոյն՝ պախնեցուցանիցէ. զի ընացու զամենայն երկիր Հինին ասպատակով:

Վասն որոյ և յարէ 'ի նոյն, եթէ «Եղիցի բանակ նորա ընդ զլայնութիւն երկրիդ: Ընդ մեզ Աստուած, գիտասջիք, հեթանոսք, և պարտեցարուք. լուարուք մինչև 'ի ծագս երկրի, և զօրացեալք պարտեցարուք: Զի թէպէտ և դարձեալ զօրասջիք, դարձեալ 'ի պարտութիւն մատնեսջիք: Եւ զոր ինչ խորհուրդ խորհիջիք՝ խափանեսցէ Տէր. և զոր ինչ բանս խօսեսջիք՝ և այն մի կայցէ. զի ընդ մեզ Աստուած է »: Ինձ այսպէս թուի, եթէ զԵզեկիեայ զյաղթութիւնն գուշակէ աստ և զպատճառս յաղթութեանն. զի թէպէտ և զէնք և զօրք բազումք հմուտ պատերազմաց ընդ նոսա իցեն, այլ որ քան զամենայն զօրագոյն օգնականութիւնն է՝ ընդ մեզ է, այսինքն՝ Աստուած: Քանզի եկն օտարազգին՝ որպէս սպառնացաւ յառաջագոյն, և առ քաղաքս բազումս և գնաց. և յետ այսր ամենայնի՝ եկն յերկիրն Հրէաստանի, և որում ոչն ակն կայր՝ այնու հարաւ: Եւ արդ մարգարէս՝ զայս գուշակէ և զպատճառս յաղթութեանն քարոզէ յառաջագոյն, և յօտարազգիսն ձգէ զբանսն, եթէ մի ինչ ապաստան լինիցիք յառաջինն յաղթութիւնն, քանզի յարդի գալ հասանելդ ձեր 'ի վերայ, մեծ զօրավիգն ունիմք զԱստուծոյ օգնականութիւնն: «Գիտասջիք, ասէ, զայս, և մերժեցարուք ». և մի իբրև 'ի վերայ վատթարաց յանդգնիցիք: Եւ զյաղթութիւնն յայտ առնէ. և զի մինչ 'ի ծագս աշխարհի երթալոց է համբաւ առաքինութեանն. «Լուարուք, ասէ, մինչև 'ի ծագս երկրի ». քանզի ոչ ոք էր՝ որ ոչ լուաւ զիրսն՝ որ յայնժամ գործեցան յԵրուսաղէմ. վասն այնորիկ ասէր՝ «Լուարուք մինչ 'ի ծագս երկրի. և հզօրացեալքդ պարտեցարուք ». զի 'ի մեծ իմն զօրութիւն հըպարտացեալ էր յայնժամ օտարազգին: Իսկ հզօրս աստ՝ ոչ միայն զայնոսիկ՝ որ մարմնով հզօրք իցեն՝ կոչեսցէ, այլ և զմեծատունս և զփառաւորս և զամբարտաւանս: «Զի թէպէտ և դարձեալ հպարտասջիք, դարձեալ 'ի պարտութիւն մատնեսջիք. և զոր ինչ խորհուրդ խորհեսջիք՝ խափանեսցէ Տէր. և զոր ինչ

բանս խոստովանիք՝ այն մի կայցեն. զի ընդ մեզ Աստուած է »: Քանզի չար խորհուրդք կային 'ի մտի, և զքաղաքն կամէին 'ի հիմանց քակել: և զամենեսեան գերի տանել յիւրեանց աշխարհն: Եւ զխորհուրդս նոցա 'ի մէջ բերէ մարգարէս, և յայտ առնէ, եթէ բանք միայն են, ոչ արդիւնք լինին, և զի այնպիսի իրք են՝ որ ըստ մարդկան բնութիւն անցանեն: Եւ զի հաւատարիմ առնիցէ զբանն, 'ի պատիւ այնորիկ ապաւինի՝ որ զամենայնն կարէ ուղղել և կարգել. առէպ ունի զբանն 'ի բերան, թէ « Վասն զի ընդ մեզ Աստուած է », որ կարող է զամենայն մեքենայս նոցա խափանել:

*Մինչև ցայսվայր գտաք [1] իւրով ձեռովք գրեալ Երանելոյն Յոհաննու յունարէն.*

1 Յոր. Գրչ., զոր մարթ է և ընթեռնուլ գրչ.: Աստանօր դադարէ և տպագրութիւնն յունարէն 'ի հատորին Մոնֆոքոնի: Հա. Զ. 93:

« Այսպէս ասէ Տէր՝ որ զօրութեան ձեռին ընդդէմ դառնան »։ Այսինքն Հրէայք անհաւատք, որ ոչ հաւանէին օրինացն։ « Ի գնալս ժողովրդեանս այսորիկ. փարթար, մի ինչ խօսիք, զի մի երբեք խօսեսցին խստութիւն ինչ կամ հայհոյութիւն կամ ծանրութիւն. զի զամենայն ինչ զոր խօսի ժողովուրդս այս՝ խստութիւն է ». կամ որպէս միւս թարգմանն Սիմաքոս ասէ՝ անտարսիս[1]։ Այսինքն՝ միթէ բանիւք ինչ կռիւ վճարիցի. որպէս օտարազգին ասէր. Միթէ 'ի խորհուրդս կամ 'ի բանս շրթանց պատերազմ վճարիցի։ Մի բանս ինչ սպառնալեաց առաջի դնիցէք, զի մի համարիցեն՝ եթէ վճարիցեն ինչ. զի ցասմամբ բարբառել՝ օտարազգեացն է։ « Բայց յերկիւղէ նոցա մի երկնչիք »։ Ոչ յայն սակս արգելում զձեզ սպառնալ նոցա, եթէ՝ երկնչել ինչ պարտ իցէ ձեզ 'ի նոցանէ, այլ սպառնալիս ինչ մի սպառնայցէք. սակայն և մի երկնչիցիք ինչ, այլ « Եւ մի խռովեսջիք »։

« ԶՏէր զնոյն սուրբ արասջիք, և նա եղիցի ձեզ յերկիւղ »։ Եւ զի՞նչ իցէ, եթէ « ԶՏէր զնոյն սուրբ արասջիք ». այլ զի յուսասցիս 'ի նա և զնոյն փառաւորեսցես և 'ի նոյն պանծացեալ պարծիցիս և 'ի նմանէ երկնչիցիս. զի մի յայլմէ երկնչիցիս՝ զնա պատուել։ « Եւ եթէ 'ի նա լիցիս յուսացեալ՝ եղիցի քեզ 'ի սրբութիւն. և ոտն քո զքարի ոչ հարկանիցի, և գայթակղութիւն քեզ ոչ պատահիցէ ». զի և ոչ սակաւ ինչ կարիցեն զձեզ տրտմեցուցանել իրքս՝ որ գայցեն 'ի վերայ։

« Բայց տունն Յակովբայ յորոգայթ և 'ի ծործորս դարանակալաց Երուսաղեմի ». վասն հինին՝ որ շուրջ զնովաւ գալոց էին՝ գուշակէ։ « Վասն այսորիկ տկարասցին 'ի նմա բազումք և խորտակեսցին և մերձեսցին 'ի կործանումն, և մատնեսցին 'ի գերութիւն մարդիկ ». և այսպիսի ինչ գերեսցին՝ քանզի զարտաքին քաղաքսն առին։ Մի, ասէ, հասարակաց համարիցիք զվրկութիւնն, զի է ինչ աւելի 'ի քաղաքին, ոչ վասն տաճարին՝ այլ վասն բնակչացն։

1 Այսինքն՝ Ἄνταρσις, Ապստամբութիւն։

Եւ զի մի՛ հասարակաց ոք համարիցի զկորուստն և զփրկութիւնն, յարէ 'ի նոյնն. « Ցայնմ ժամանակի, ասէ, յայտնեսցին՝ որ կնքիցեն զօրէնսն՝ առ 'ի չուսանել ». այսինքն յայտնի են ապստամբք յօրինացն՝ բռնակիչք արտաքին քաղաքացն. զի որպէս 'ի հնոցին զարտաքինսն այրեաց և ներքնոցն ինչ ոչ վնասեաց, նոյնպէս և անդ եղև: « Ապա ասիցես. կացից մնացից Աստուծոյ՝ որ դարձոյց զերեսս իւր 'ի տանէն Յակովբայ, և յուսացեալ եղէց 'ի նա »: Զի՞նչ խօսիս. նմա՞ կայցես մնայցես՝ որ զայլսն 'ի գերութիւն մատնեաց. այո, ասէ, նմա. և 'ի բարիոք իմն նուազէ, զի և նոքա ուսանիցին զհամբերութիւն. ապա թէ ոչ՝ և նոքա զնոյն պատիժս կրեսցեն. զի բանս՝ զհամբերութիւն վշտացս յիշեցուցանէ, որով զգուշանայցեն: Նմին, ասէ, որ եհարն և ած զպատիժսն 'ի վերայ՝ կացից մնացից համբերութեամբ: Զի եթէ յորժամ ընդ հօր կամ ընդ մօր կռուիցիմք, ոչ այլ հայր և մայր խնդրեմք, այլ ընդ նոյնս փութամք հաշտել, ո՞րչափ ևս առաւել ընդ Աստուծոյ, յորժամ բարկանայցէ՝ 'ի նորին ապաստան լինել՝ որ բարկացաւն, և ոչ յայլ ոք որ չիցէ բարկացեալ. զի յորժամ բարկանայցէ՝ յայնժամ հանդարտագոյն գտանի առ քեզ. զի Լաւ է գան բարեկամաց, քան զքծինս թշնամեաց. ո՞րչափ ևս առաւել Աստուծոյ խրատն. քանզի Լաւ են հարուածք բարեկամաց, քան զկամակար համբոյրս թշնամեաց: Լուր և Դաւթի՝ զի՞նչ ասէրն, եթէ՝ Դարձո զտապանակդ Տեառն 'ի տեղի իւր. զի թէ գտից շնորհս առաջի Տեառն և դարձուսցէ զիս այսրէն և տեսից զվայելչութիւն դորա. ապա թէ ոչ կամեսցի զիս, ահաւասիկ կամ ես, արասցէ ինձ զինչ հաճոյ իցէ առաջի նորա: Մի՛ օրէնսդիր ինչ լինիցիմք նմա և մի՛ իրաւունս ինչ, ասէ, պահանջեսցեմք զիրաց՝ որ գայցեն 'ի վերայ մեր. այլ մի ինչ միայն, զոր յորժամ խրատիցիմք՝ գոհութեամբ ընդունիցիմք զխրատն:

« Ահաւասիկ, ասէ, ես և մանկունք իմ՝ զոր ետ ինձ Աստուած » և ոչ բնութիւն. զի եթէ նա ետ՝ և նոյն պահեսցէ զնոսա. և ոչ միայն ես, այլ հանդերձ մանկամբքն՝ ահաւասիկ եմ. որպէս և Դաւիթն ասէր, եթէ Ահաւասիկ արասցէ ինձ զինչ հաճոյ թուեսցի

առաջի նորա։ Նմա նմանող լինէր ծառային տեառնն, որ մատնեաց զանձնն և ասէր, եթէ ահաւասիկ կամ. միթէ իմ ինչ իցէ. այլ այս է խնայելն 'ի նմա՝ զոր ետ ինձ. և ես ահաւասիկ զանձն և զորս ետ ինձ՝ նմին մատուցանեմ։ Եւ մեք նոյնպէս ասասցուք 'ի միշտ, որպէս և Յոբն ասաց, եթէ Տէր ետ և Տէր առ։ Եթէ պատիժք գայցեն 'ի վերայ և եթէ զինչ և իցեն իրք, իբրև 'ի բաւական իմն առ 'ի ցուցանել զհնազանդութիւնն՝ զահաւասիկն առաջի դնէ. «Ահաւասիկ ես և մանկունք իմ՝ զոր ետ ինձ Աստուած»։

«Եւ իսկ և իսկ եթէ եղիցին նշանք և արուեստք 'ի վերայ տանն Իսրայելի 'ի Տեառնէ զօրութեանց, որ բնակեալն է 'ի լերինն Սիովնի»։ «Ի Տեառնէ զօրութեանց»՝ բարւոք իմն ասացեալ է. իսկ եթէ՝ «Որ բնակեալն է 'ի լերին Սիովնի», վասն էր արդեւք. այլ զի ծանուսցէ զիրսն, և զնշանակ օգնականութեանն յայտ արասցէ։ «Ահաւասիկ ես և մանկունքս. և եղիցին նշանք և արուեստք»։ Տեսանե՞ս, զինչպիսի արտուղ համբերութեանն է։ «Եւ եղիցին, ասէ, նշանք և արուեստք». ոչ միայն զփրկութիւնն, այլ զփառաւորութիւնն յայտ առնէ. զոր օրինակ այր տէր՝ տեսցէ զծառայ՝ զի յանձն առնուցու զգան և զպատիժ, զիջանիցի 'ի ցասմանէ, սոյնպէս և Աստուած։ Զի Տէր ինքնին զօրութեանց՝ իջեալ բնակեալ է 'ի լերին Սիովնի, և չօգնելոյն՝ քո չարութիւնդ է պատճառք. զի եթէ ոչ կամէր օգնել՝ և ոչ բնակէր 'ի լերինդ։ Զի մարգարէքն ոչ միայն յառաջագոյն գուշակեն, այլ և յայտնեն զվճիռ ասացելոցն, թէ որպիսի՞ ոք ասիցէ. և ոչ բռնադատէ Աստուած, այլ կամի՝ զի իւրեանց յօժարութեամբ դարձուցանեն զբարկութիւնն։

«Եւ եթէ ասիցեն ցձեզ. խնդրեցէք դուք զվհուկս և զգետնակոչս և զընդվայրախօսս, զորովայնակոչս, ոչ որպէս ազգք ինչ՝ որ յԱստուծոյ իւրեանց խնդրեսցեն. զինչ խնդրեսցեն վասն կենդանեաց 'ի մեռելոց անտի»։ Մի՛ միայն յանձանց ևեթ չհաւանիցէք, այլ յորժամ և այլք յօժարեցուցանիցեն՝ մի՛ առնուցուք յանձն 'ի դիւթս ապաւինել։ Քանզի սովորութիւն իսկ է՝ յորժամ պատերազմունք շարժիցեն և վիշտք ինչ 'ի վերայ հասանիցեն՝ զհանդերձեալսն ընձիւք

ճառել.[1] քանզի միշտ աներևոյթ ինչ իրաց ցանկայ գիտակ լինել բնութիւն մարդկան. զի քննող իմն է և ընդվայրախոյզ, և մանաւանդ զիւր միշտ կամի յառաջագոյն գիտել, զի մի յախուռն անկանիցի 'ի վիշտս։ Եւ արդ, լուր, զինչ ասէն. յառաջագոյն, ասէ, գուշակեցի ձեզ, եթէ եղիցին նշանք և արուեստք, զի մի կարօտանայցէք ինչ այլոց ըղձական կարեաց, թէպէտ և նոքա 'ի բանս ինչ արկանիցեն և պատրիցեն. ապա թէ այլոց խրատուցն անսայցէք՝ չառնիք արժանի ներելոյ Աստուծոյ և թողութեան, որք անձամբ անձանց ածէք զչարիսն 'ի վերայ։

Եւ արդ զինչ մխիթարութիւն 'ի դիւթացն գտանիցես, ով մարդ, յորժամ պատիժքն եկեալ 'ի վերայ կայցեն. եթէ վասն ինչից կորստեան ծախիցես ինչս և զդիւթս հարցանիցես, զինչ օգուտ գործիցես՝ եթէ զինչսն գտանիցես, զի դու հանդերձ ինչիւքն՝ 'ի գերութիւն ես վարելոց. բայց զի զոգիսդ կորուսանիցես և ինչ ոչ օգտիցիս։ Եւ եթէ զինչ ինչ վհուկն իցէ՝ պարտ է ասել. դև իմն չար է, որ յորովայնէ կանանց խօսի, և կամի նոր իմն իրօքն՝ հաւատացուցանել զմոլորութիւնն. զի ոչ ըստ սովորութեան բնութեանն խօսի, այլ յորովայնէն. և զարմացուցանէ զտգէտս հաւատալ՝ թէ իբրև զճշմարիտ ինչ իրս խօսիցի. զի յայնմանէ և գետնակոչաց արուեստն լինիցի հաւատարիմ և ընդվայրախօսացն՝ որք յորովայնէն բարբառիցին։ Իսկ Ակիղաս՝ Զհաւգէտսն, ասէ, և զձայնատուրս, իսկ Սիմաքոս՝ Զգէտսն, ասէ, որ ճրճռիցեն և ճըղլիցեն. Թէոդիտոնն՝ Զկանխագէտսն ձագացեալս, այսինքն՝ ձագուց նմանեալս։ Եւ ինձ այսպէս թուի, թէ այս՝ և զառ 'ի մեռելոցն հարցութիւնս նշանակէ. զի նոր բարբառոյն իմն՝ զարմացուցանիցէ, որպէս և այլ թարգմանիչքն ցուցին։ Քանզի սովորութիւն է դիւաց՝ ճուղել, զհաւու ձայնս արձակել. զոր եօթանասունքն[2] ընդվայրախօսութիւն կոչեցին։ Զի ամենայն ուստեք և նորաձայն բարբառովքն՝ զմոլորութիւնն հաստատիցեն. զի թէպէտ և այս դիւի հնարք են,

1 Յոր. Օտար գրչաւ՝ ճառաչէլ։
2 Յոր. [illegible]։

կարծեցուցանել՝ եթէ զմեռելոց ոգիսն կոչել կարիցէ, զի զդատաստանաց Ձաւուն գողացի. այլ մեք այսպէս ասեմք՝ եթէ յորժամ ելանիցէ շունչ 'ի մարմնոց՝ յըշտեմարանս ուրեմն երթայ դադարէ, ուստի չէ մարթ նմա ելանել։ Իսկ դեւն հակառակի ցուցանել՝ եթէ ոչ միայն առ ոսկերսն բնակեալ է, այլ եւ երթեալ անդր եւ ընդ վայր շրջի. եւ ոչ ընդ տէրութեամբ ինչ է եւ ոչ ընդ աստուածեղէն խնամովք, եւ ոչ պատիժս ինչ կրելոց է՝ վասն յանցութեան ինչ զոր գործեաց. եւ բազմաց կարծեցոյց՝ եթէ յետ վախճանելոյն՝ ընդ վայր իմն ոգիքն թափթափիցին։ Եւ այս մանեկլոտոյ կամ պառաւանց առասպելք իցեն, զի մի յորժամ յայսպիսի ինչ դիւթութիւնս յօժարեցուցանիցեն՝ յանձն առնուցուք։ Քանզի վհհուկն՝ երբեմն հան իմն Շաւուղի՝ Աստուծոյ թոյլ տալով, զի ցուցցէ նմա յաղթութիւն, որ չէր յաղթութիւն. զի գոնեա այնու հաւատասցէ՝ թէ եւ կենդանեաց եւ մեռելոց՝ Աստուած է տէր. քանզի եւ որ երեւեցաւն իսկ նմա, թէպէտ եւ չէր Սամուէլ, ոչ իշխեաց զնա յԱստուծոյ խոտորեցուցանել։

« Ոչ ազգ ինչ՝ որ յԱստուծոյ իւրեանց խնդրեսցեն ». զի որ զայսպիսի իրս կամ ասիցեն կամ գործիցեն՝ հեռի են յԱստուծոյ. որպէս եւ Սաւուղն կրեաց զպատիժսն. յԱստուծոյ հեռացաւ եւ զվհհուկն եհարց եւ ոչ ինչ ոչ օգտեցաւ, այլ եւ ընդ մեծամեծ պատժովք անկաւ, զի յառաջ քան զժամանակն եհաս չարաչար վախճանի։

Տես, զիարդ հեգնէ. « Ցինչ խնդրեսցեն, ասէ, վասն կենդանեաց՝ 'ի մեռելոց անտի »։ Կամ զդեւսն կոչէ մեռեալս կամ զմեռեալսն. եւ այս իսկ շատ բաւական է 'ի ցուցանել զստութիւնն. զի եթէ կենդանիքն չգիտեն ինչ, որչափ եւս առաւել մեռեալքն եւ թաղեալքն, որք եւ զայս եւս չգիտեն՝ զոր ինչ մեքս գիտեմք։

« Զի զօրէնսն յօգնականութիւն տուեալ է. զի ասիցեն եթէ ոչ իբրեւ զբանս զայս, վասն որոյ ոչ է տալ կաշառս »։ Եւ ոչ ասէ՝ եթէ զբանս զայս, այլ՝ եթէ իբրեւ զբանս զայս. քանզի բազում անգամ հրաժարէ ոք 'ի դիւթութեանն կերպարանաց, այլ յայլ ինչ

մոլորութիւն յօժարէ. և արդ միանգամայն իսկ վճիռ տան օրէնքն, թէ ամենևին ինչ մի պատճառս պատճառիցիք. զի յորմէ խնդրէ Աստուած արգելուլ՝ հաւանել պարտ է. մի լինել դատաւոր իրաց ինչ՝ զոր արգելուցու։ Բարւոք ասաց, եթէ «Զօրէնսն յօգնականութիւն տուեալ է»։ Դրդեն խորհուրդք, պատրեն մարդիկ. բազում ինչ է՝ որ խախտէ զմիտս, վիշտք, նեղութիւնք ստիպեն զայս ամենայն. բաւական են օրէնքն ոչ միայն արգելուլ, այլ և առանց թողութեան յայտ առնել զայսպիսի չարիս։ Միթէ այնպիսի՞ մեղք իցեն՝ որ բժշկիցին իւիք. անբժշկական են մեղքս այս և առանց մխիթարութեան յանցանք։ Ոչ միայն ասէ՝ թէ մի գործեսցեն, այլ թէ և բնաւ մի ճառեսցեն. իսկ որպէս զի ոչ միայն թէ գործիցեն, այլ եթէ և ճառիցեն՝ մեղք են, անդստին 'ի բնէ զարմատն կամեցաւ հատանել Աստուած. վասն այնորիկ զկէսն մեղացն՝ հրամայեաց պատարագօք բժշկել, և զկէսն յայտ արար թէ անբժշկական են։ Եւ ընդէ՞ր արդեւք. այլ զի սոսկալի է և փախչել պարտ է։ Եւ այն միայն բաւական է՝ յորժամ լուիցես թէ Աստուծոյ արգելեալ է, և ցածուցանես զքո մտացդ զցանկութիւն։

Եւ արդ գուշակէ յառաջագոյն զչարիսն. «Եկեսցէ հասցէ 'ի վերայ ձեր սով խստութեան, և եղիցի յորժամ քաղցիցէք՝ տրտմեսջիք, և հայհոյել սկսանիցիք զիշխանն և զհայրենիսն», այսինքն զկուռսն։ Տեսանե՞ս, վասն էր սովն գայր հասանէր. և յառաջագոյն գուշակէ և կամի զչարիսն ցուցանել և զտկարութիւն կռոցն յայտ առնել, եթէ որք զսովն չկարացին շիջուցանել, զիա՞րդ զարտաքին պատերազմունսն խափանիցեն։ «Եւ եղիցի յորժամ քաղցիցէք՝ տրտմեսջիք, և հայհոյել սկսանիցիք զիշխանն և զհայրենիսն». տեսանե՞ս, յետ տկարութեանն՝ և զամբաստանութիւն կռոցն, զի և զհայհոյութիւնն որ 'ի նոսա լինելոց էր՝ չկարէին խափանել և ոչ զսովն արգելուլ։

«Եւ հայեսջիք յերկինս 'ի վեր և յերկիր 'ի խոնարհ աչնուցուք»։ Տե՞ս, զիա՞րդ զԱստուած հայհոյէին, զի խղճէին 'ի միտսն և թշնամանէին. և աչնուցուն, ասէ, յերկիր 'ի խոնարհ. զի ոչ ունիցին համար-

ձակութիւն վասն չարեացն որ գործեցան։ «Եւ ահաւասիկ կարօտութիւն և անձկութիւն, խաւար և նեղութիւն, զի ոչ ոք կարիցէ տեսանել»․ իսկ Ակիղաս՝ փոխանակ ասելոյ, զի ոչ ոք կարիցէ տեսանել՝ լուծութիւն ասէ․ և այլ թարգմանիչքն՝ զխաւար տեսանել աչօք բացօք, այս ինքն՝ զի աչք ևս շլացեալ նուաղիցեն ՚ի տեսանելոյ։ «Եւ մի նուաղեսցի նեղութիւն նոցա՝ մինչև ՚ի ժամանակ»։ Այսինքն չարիքս այս մինչև ՚ի ժամանակ մի լինիցին, զի ուսանիցեն զկռոցն վատթարութիւն։

## ԳԼՈՒԽ Թ

«Հայպա, նախ զայդ արբ վաղվաղակի, երկիր Զաբուղոնի, երկիր Նեփթաղեիմ և այլք ևս ծովեզերայքդ, և որ յայնկոյս Յորդանան գետոյ․ Գալիլեա հեթանոսաց, կողմանք Հրէաստանի։ Ժողովուրդ՝ որ գնայր ՚ի խաւարի՝ լոյս մեծ տեսցէ․ որ բնակեալ են յերկրի և յստուերս մահու՝ լոյս ծագեաց ՚ի վերայ նոցա»։ Զպատիժսն, ասէ, արբ նախ․ և այս նախ շուրջ զԵրուսաղեմաւ կատարեցաւ՝ սովն։ «Ժողովուրդ՝ որ գընայր ՚ի խաւարի՝ տեսցէ լոյս մեծ»․ և զիա՞րդ իցէ այս լոյս․ «Զմեծ մասն ժողովրդեանդ, ասէ, զոր իջուցեր դու յուրախութիւն․ և ուրախ լինիցին առաջի քո»։ Եւ քանզի իբրև փախստականք էին, եկն Քրիստոս յաշխարհ նոցա և ած զնոսա յուրախութիւն․ ոչ իբրև զպատժապարտս և ոչ իբրև զփախստականս ամաչեցեալս։ Եւ բարւոք ասաց, եթէ «Զմեծ մասն ժողովրդեանդ»․ զի և ՚ի նոցանէ բազումք հաւատացին, և որ ընդ նոսա և որ շուրջ ընդ նոքօք հեթանոսք՝ գալոց էին յուրախութիւն։ Տես, ուստի նախ սկսանի լոյսն․ և զի՞նչ հաղորդութիւն ունէին առ այսոսիկ հեթանոսք․ այլ ՚ի գալստեանն Քրիստոսի, ծնաւ ՚ի Բեթղահէմ, և ծագեաց անտի ՚ի հեթանոսս․ անդէն իսկզբանն իսկ հալածէին զնա ամենեքեան ՚ի Հրէաստանէ․ երթայր հասանէր յԵգիպտոս, զի ծա-

գեսցէ զլոյսն 'ի հեթանոսս. և ոչ եթէ աչօք տեսա-
նեմք զլոյսն, այլ սրտիւն և մտացն աչօք։ « Ժողովուրդ՝
որ գնայր 'ի խաւարի ». զվարս նոցա զառաջինս՝ խա-
ւար կոչէ. և զի 'ի խաւարի գնային՝ ես քեզ ցուցից,
զվէրս նոցա և զհարուածս։ « Որք նստէին յերկրի և
'ի ստուերս մահու ». երկիր և ստուերս մահու՝ զմոլո-
րութիւն կռապաշտութեանն կոչէ, որով մոլորեալ և
յերկիր կործանեալ էին։ « Տեսցէ լոյս մեծ ». ոչ միայն
զայսպիսի ինչ իրս՝ որ լուսաւոր ցուցան մեզ, այլ մա-
նաւանդ և՛ս առաւել զերկնաւորականսն որ յայտնե-
ցան մեզ, եթէ զի՛նչ մահ իցէ կամ զի՛նչ կեանք կամ
զի՛նչ չար իցէ կամ զի՛նչ բարի. զի մի՛ զքարեղէնսն և
զփայտեղէնս տեսանիցեմք և մի՛ ընդ երկիր պշնու-
ցումք, այլ յիմանալիսն, յանքնինսն, յերկնաւորսն
նայիցիմք։ Արդարև լոյս մեծ և նորանշան է, զոր ա-
ւետարանիչն՝ լոյս ճշմարիտ կոչէ, զի ճշմարիտ իրացն
'ի վերայ հաստուցանէ. քանզի երևելիքս փութան յա-
պականութիւն, սահին, անցանեն և ուրեք ոչ անուն
զտեղի. իսկ այն՝ հաստատուն և անշարժ կայ, զի զմե-
ծամեծսն և զճշմարիտս ցուցանէ՝ մեծ լոյս և ճշմա-
րիտ։ « Զմեծ մասն ժողովրդեանդ՝ զոր իջուցեր դու
յուրախութիւն »։ Եւ այս՝ Աստուծոյ միայն սեփական
է, ուրախ լինել ընդ գիւտ փրկելոցս. ուրախութիւն՝
զխաչն կոչէ։

« Եւ ուրախ լինիցին առաջի քո, որպէս ուրախ լի-
նիցին յաւուրս ամարանւոյ »։ Զի որպէս նոքա ընդ
արմտիս բարեացն ուրախ լինիցին, նոյնպէս և սոքա որ
աշխատութեամբ կամ քրտամբք, այլ զամենայն պա-
տրաստ գտանիցեն։ « Եւ ցնծասցեն իբրև զայնոսիկ՝
որ բաժանիցեն զաւար ». զի վիշտք ինչ այնուհետև
մի՛ գայցեն 'ի վերայ, այլ զի յանվշտականսն եւեթ
վայելիցեն։

« Եւ վերացաւ լուծն՝ որ կայր 'ի վերայ նոցա, և
գաւազանն՝ որ 'ի վերայ պարանոցի նոցա. զի զգաւա-
զան պահանջողացն խափանեաց, իբրև յաւուր ժա-
մանակին Մադիամու »։ Զի զոր օրինակ յայնժամ ոչ
մարդկեղէն զօրութեամբ փլաւ ճակատն, նոյնպէս և
ոչ աստ՝ սատանայական պատերազմն. անդ սափորք և
ջահք, իսկ աստ՝ ոչ սափորք և ոչ ջահք, այլ 'ի մի-

մեանս անկեալ դևք և 'ի բաց մերժեցան ։ Գիտէք զպատերազմն, ապա եթէ անտեղեակք իցէք՝ ես ձեզ պատմեցից ։ « Զամենայն պատմուճանս և զհանդերձս՝ որ նենգութեամբ ժողովեալ իցէ՝ տուգանօք տուժեսցին » ։ Զայս այսուհետև վասն հանդերձելոցն ակնարկէ․ այսինքն՝ թէ զամենայն սաստիւ և տոկոսիւք հատուսցեն ։

« Եւ նոքա կամէին թէ արդէն իսկ հրձիգ լեալ էին․ զի մանուկ ծնաւ մեզ և որդի տուաւ մեզ » ։ Ուստի, ասա ինձ․ այլ զի միայն՝ որ ծնաւն՝ եղծ և կորոյս զնոսա․ նա իսկ հաշեաց զնոսա՝ զի մեզ ծնաւ ։ Թէպէտ և Պաւղոս ասէ՝ թէ վասն նոցա ծնաւ, այլ քանզի ոչ կամեցան՝ մեզ ծագեաց․ և մանուկն մեզ և որդին մեզ ։ Եւ արդ տե՛ս, զիա՛րդ զմարդկեղէն բնութիւնն յառաջագոյն քարոզէ, և զծնանելն անդուստ 'ի վերուստ ուսուցանէ՝ յորմէ արդեւք ծնաւ ։ Եւ արդ, ուսի՛ր՝ ով արդեւք նա իցէ, կամ որպիսի՛ ինչ անուն նորա ։ « Որոյ իշխանութիւն 'ի վերայ ուսոց իւրոց է » ։ Եւ այսմ չէ մարթ, եթէ 'ի վերայ այլոյ մարդոյ կատարեսցի․ այսինքն ոչ յայլմէ ումեքէ ունի զիշխանութիւն, այլ յանձնէ և առ յիւրմէ բնութենէն, զի ինքն իւր բաւական իսկ է ։

« Եւ կոչի անուն նորա մեծաց խորհրդոց հրեշտակ » ։ Եւ արդ, ո՞ւր իցեն երկոքեան կողմանքն, Հրէայք և հերետիկոսք․ զի և այս՝ Հոգւոյն Սրբոյ շնորհք են, զի արժանի արար զմեզ զարմանալ և ոչ քննել․ ոչ զարարիչն՝ արարած, և ոչ զմինն՝ երկուս, և կամ բնաւ որդի իսկ չխոստովանել, որպէս Հրէայքն ժպրհին ։ Եւ նշանակ վիրաց նոցա այն է ; զի և ոչ հասարակաց դեղովք կամեցան բժշկել․ զի անդ ասէ․ Ընդ մեզ Աստուած, և աստ ասէ․ « Մեծաց խորհրդոց հրեշտակ » ։ Եւ արդարև մեծաց հայրենի խորհրդոց․ զի զհօր զանուն այլ ոք ոչ յայտնեաց, բայց որ 'ի նորին բնութենէն է, և առ յանձն լինել կամօք հրեշտակ․ ոչ զի 'ի հրեշտակ փոխեցի, այլ զի զգործ հրեշտակին՝ իւրով մարդասիրութեամբն Աստուածն յԱստուծոյ՝ կատարիցէ, ըստ այնմ՝ եթէ Ես ցուցից նմա զանուն քո ։ « Մեծաց խորհրդոց հրեշտակ »․ յայլ ևս երեսս․ զի ժառանգակիցս և մարմնակիցս և հա-

ղորդս կամեցաւ առնել իւրում Որդւոյն Հայր՝ զհեթանոսս, ասէ, զի՞նչ խորհեցաւն ընդ Որդւոյն և ընդ Հոգւոյն Սրբոյ. զի զմեր բնութիւնս՝ 'ի վերոյ քան զհրեշտակս և զհրեշտակապետս, և զքրոբէս և զսրաբէս հանցէ նստուցէ։ «Եւ կոչի անուն նորա հրեշտակ մեծաց խորհրդոց». զի զհօղն և զմոխիրն՝ յերկինս վերացուսցէ. այլ գտանի և ինքն իսկ խորհուրդ և կամք, զի խորհեցաւ և կամեցաւ և սիրեաց զաշխարհ և եկն և փրկեաց 'ի չարեաց։

«Եւ սքանչելի խորհրդակից»։ Այս բան յեօթանասնիցն թարգմանութիւն ոչ գտանի. բայց յայլոց թարգմանացն և յեբրայեցին կայ. և այլքն եւս՝ որ սոցին յաջորդքն են. ուստի արժան իսկ է զարմանալ ընդ Ղուկիանոս մարտիրոս, որ զմնացեալսն բարւոք ժողովեաց և եդ, զի զհանգիտապատիւ զուգականութիւնն Որդւոյ ընդ Հօր յայտնեսցէ մեզ. և զսուր բան բասեն զնա իբրև զհերետիկոս։ Եւ զիա՞րդ ասէ, թէ Ո՞ եղև նմա խորհրդակից. տեսանես, զի ոչն ոք ասելով, ոչ ընդ Որդւի և ընդ Հօր անջրպետութիւն ինչ է 'ի միջի, այլ չաստուածսն անուանել աստուածս։ Զարմանալի լիցի, ասէ, անուն իմ[1] սքանչելի։ Ազնուագոյն իմն և այլուր ասէ, եթէ Զի՞ խնդրես զանուն իմ, և նա է սքանչելի. և դարձեալ, թէ Տէր Տէր մեր, սքանչելի է անուն քո յամենայն երկրի. և անունն՝ որ զմոլորութիւնն շիջոյց և զտիեզերս լուսաւորեաց և առ ինքն և առ Հայր մերձեցոյց, զիա՞րդ չիցէ զարմանալի։

«Աստուած հզօր», որ 'ի մէջ այլոցն՝ որ չէին աստուածք՝ անջրպետութիւն իշխանական։ Զիա՞րդ ասիցէք՝ եթէ ընդ[2] իշխանութեամբ է, զոր մարգարէս իշխանական կոչէ. զի իշխանականն յայտ է՝ թէ չէ ընդ իշխանութեամբ ուրուք։ «Իշխան խաղաղութեան, Հայր հանդերձեալ աշխարհին»։ Եւ արդ, զիա՞րդ ոչ գիտիցէ զօրն, զի ահաւասիկ և հայր ևս կոչի Որդի։ Եւ քանզի յայսմ աշխարհի ոչ յայտնեցաւ անհաւատիցն, և անդ ամենեքեան են ճանաչելոց զնա։ Բարւոք ասէ՝ թէ «Հայր հանդերձեալ աշխար-

1 Յոր. իմ։
2 Յոր. Պակասի ընդ։

հին». քանզի և զհանդերձեալսն նա արար, և ոչ միայն զմօտաւորս եւեթ։

Եւ քանզի նախ կոչեաց զնա Հրեշտակ մեծաց խորհրդոց, ապա համարձակ զամենայն մեծամեծսն ասէ։ Եւ զի մի բնաւ անծին իսկ կարծիցես զնա, ասէ. «Ածից զխաղաղութիւն 'ի վերայ իշխանաց նորա, և առողջութիւն նմա». այսինքն՝ յաւուրս մարմնաւորութեան նորա՝ նովաւ առողջ արարից զանդամս նորա՝ զհաւատացեալս ամենայն։ «Մեծ է իշխանութիւն նորա, և խաղաղութեան նորա չիք սահման». զի անբաւ է խաղաղութիւնն նորա, և չիք ինչ՝ որ զնա ընդ մէջ հատանիցէ. վասն որոյ և ասէ իսկ, եթէ Զխաղաղութիւնն իմ թողում ես ձեզ։

«Յաթոռն Դաւթի և յարքայութիւնն նորա»։ Անդրէն 'ի գլուխ բանիցս երթիցուք, և զսոյն բանսն՝ որպէս յայլոց թարգմանացն ասացեալ իցէ՝ երկրորդեսցուք։ Եօթանասունքն ասեն. «Զի մանուկ ծնաւ մեզ, որդի տուաւ մեզ, որոյ իշխանութիւնն է 'ի վերայ ուսոց իւրոց. և կոչի անուն նորա մեծաց խորհրդոց հրեշտակ. ածից զխաղաղութիւն 'ի վերայ իշխանաց նորա, և առողջութիւն նմա. մեծ է իշխանութիւն նորա և խաղաղութեան նորա չիք սահման»։ Իսկ Ակիղաս ասէ. Զի մանուկ ծնաւ մեզ, որդի տուաւ մեզ, և եղև չափ 'ի վերայ թիկանց նորա, և կոչեաց զանուն նորա սքանչելի, խորհրդակից, հզօր, զօրաւոր, հայր և իշխան եւս նոցա, բազում անչափ, և խաղաղութեան չիք եւս կատարած։ Իսկ Սիմաքոս. Պատանի ծնաւ մեզ, և եղիցի խաղաղութիւն 'ի վերայ ուսոց նորա, և կոչեսցի անուն նորա սքանչելագործութիւն, խորհրդական, ուժգին, զօրաւոր, հայր յաւիտենից, իշխան խաղաղութեան նոցա. բազմացաւխրատն, և խաղաղութեանն քում չիք վախճան։ Սոյնպէս և Թէոդիտոն, փոխանակ ասելոյ՝ թէ կոչի, Կոչեաց, ասէ. սքանչելաբար խորհի, ուժգին, զօրաւոր, հայր, իշխան՝ խաղաղութեան, բազմացուցանել զխրատ, և խաղաղութեանն չիք վախճան։ Սոյնպէս և Եբրայեցին. Ուրէ[1],

1 Յօրինակին այսպէս չփոթ եղեալ կայր, զվանկս բառիցն ընդ միմեանս խառնակելով. այլ ըստ ուղիղ ընթերցման եբրայական

կրասեմ, բովթ, փեղէ, իովէս, եղգիբ, բովրաբիադ, սար, սաղովմ, ամարբէ, ամմէսրա, ուա, շաղամէնկէ։ Եւ յայտ է՝ թէ ոչ յաւել ինչ և ոչ հատ՝ սուրբ Մարտիւրոսն, այլ և յեբրայեցւոյն և յայլոց թարգմանացն ժողովեաց և միաշար արար և զամենայն յայտ յանդիմանն եցոյց. և արդ չէ խոտան Ուղկիանն[1], այլ և կարեւոր և քան զՊաղեստինացւոց գրեանն ևս ուղղագոյն։ Այլ անդրէն 'ի կարգն երթիցուք։

« Ցաթոռն Դաւթի և յարքայութիւնն, և ուղղեսցէ զնա և պաշտպանեսցէ արդարութեամբ և իրաւամբք, յայսմհետէ և յաւիտեանս ժամանակաց. Նախանձ Տեառն զօրութեանց արասցէ զայս ամենայն »։ Եւ քանզի միշտ կործանէր և ոչ վասն այլ իրիք, այլ վասն մեղաց, յիրաւի եկն կանգնել միւսանգամ ծննդեամբ աւազանին։ « Իրաւամբք և արդարութեամբ ». քանզի արդարութեամբ պաշտպանեաց նմա։ « Ցայսմհետէ մինչև յաւիտեան »։ Եւ զիա՞րդ հաստատեցաւ արդեւք թագաւորութիւնն Դաւթայ. այլ զի ընդ ամենայն տեղիս ամենայն տիեզերք՝ երկիր պագանեն այսմ՝ որ 'ի Դաւթայն ծնաւ. և կայ մնայ զաւակ նորա մինչև յաւիտեանս ժամանակաց։ « Նախանձ Տեառն զօրութեանց արասցէ ». զի և ոչ մարդկեղէն ինչ ուղղութեամբք, ասէ. և ոչ եթէ արժանի ինչ էին այսմ։ Եւ այսու ոչ եթէ նախատէ զմեզ, այլ զի զհաստատութիւն բարութեանցն յայտ առնիցէ։ Խաղաղութիւն և առողջութիւն՝ զոգւոյն ասէ և զմարմնոցն. զի և մարմնոց ցաւոցն՝ 'ի մեղաց եղև սկիզբն. որպէս ցանգամալոյծն ասէր, եթէ Ողջացար, մի ևս մեղանչիցես.

բնագրին պարտի լինել.

ויקרא שמו פלא יועץ אל גבור אבי־עד
שר־שלום: למרבה המשרה ולשלום אין־קץ..

որ է Ուիէկրա սեմոյ փելէ, իովէս, Էլ, գիբբովր, աբի–ադ, սար–սաղովմ։ Լէմարբէ ամմիսրա ուլէշալոմ էնկէց. Այսինքն է. Եւ կոչեսցի անուն նորա սքանչելի, խորհրդական, Աստուած, հզօր, հայր հանդերձելոյ աշխարհին, իշխան խաղաղութեան։ Բազմասցի իշխանութիւն նորա և խաղաղութեան նորա վախճան մի եղիցի։

1 Թուի լինել Ղուկեանն, այսինքն թարգմանութիւն Սրբոյ երիցուն Անտիոքացւոյ Լուկիանու մարտիրոսի, գրեալ յաւուրս Դիոկղետիանոսի, յամին իբր 300։

և այլուր՝ եթէ Ոչ եղիցի 'ի ձեզ հիւանդութիւն։ Զի ոչ եղեն բաւական առաջին պատիժքն, այլ պարտ էր յաւելուլ և այլ ևս պատիժս։ Որպիսի ինչ իցէ զոր ասեմս. եդ Աստուած սահման զպատիժս մահուն, եթէ իշխեսցէ ճաշակել մարդն 'ի պտղոյ ծառոյն, և այլ ինչ ոչ յաւել. և քանզի անց զհրամանաւն, ած անձամբ անձին զցաւոցն պատիժս. զի թէպէտ և մեռանելոց էր, սակայն 'ի կեանս առանց ցաւոց կեայր. և քանզի այն ևս 'ի ծուլութիւն էր անկանելոց, եդ 'ի վերայ և զցաւոցն պատիժս, զի գէթ այնու խրատիցի և ունիցի 'ի մտի զյիշատակ բարեացն։ Եւ այս Աստուծոյ տեսչութիւն է, զի սակաւ ցաւովքն՝ 'ի բազում տանջանացն ապրեսցի։ Սոյնպէս և Հրէից զբազում սպառնալիս սպառնայ, ցաւս, հիւանդութիւնս, տրտմութիւնս, և այլ ևս ինչ բազում վշտականս, զի ցուցցէ՝ եթէ պատճառք ամենայն բարեաց առաքինութիւն է. և այժմ զի դժնդակ վարս ցուցին, սպառնացաւ գեհենն 'ի պատիժս։

« Մահ առաքեաց Տէր 'ի վերայ Յակոբու, եկն եհաս 'ի վերայ Իսրայելի ». և առաքեաց և եկեսցէ. իսկ թարգմանքն՝ Բան, ասէ, առաքեաց. քանզի չէ ինչ այն՝ որ խափանել կարիցէ զայն ինչ՝ զոր Աստուած առաքիցէ։ Զի յիւրմն առաքէ, և աղերսանօք իմն առնէ զպատասխանին։ « Եւ ծանիցեն, ասէ, ամենայն ժողովուրդն եփրեմեան, և որ նստին 'ի Սամարիա, զի թշնամանօք և հպարտութեամբ սրտից խօսեցան »։ Տեսանես, զի ոչ այնպիսի ինչ զԱստուած բարկացուցանէ, որպէս և ամբարտաւանականն միտք և անհանդուրժական հպարտութիւնն և թշնամանիչ բանք, որք յանցաւորս՝ որպէս որ 'ի չանցաւորս յուսայցեն։

« Աղիւսք, ասէ, անկան, արդ եկայք վէմս տաշեսցուք »։ Հանապազ լսելով, մարդ, եթէ պատերազմունք գալոց են, մեծամեծ չարիք հասանելոց են քաղաքիդ, և տակաւին արհամարհես զբանդ և շինուածոց զգուշութեան հոգաս. ո՜վ անմտութեան, ո՜վ անհանճարութիւն, ո՜վ ամբարտաւանութիւն։ Աստուած սպառնայ և դու արհամարհե՞ս. զի թէպէտ և Աստուած չսպառնայր, սակայն իրքն պարտ էին հաւանեցուցանել զքեզ. զի թէպէտ և այլ ինչ ոչ՝ սակայն

վարքն իւրեանց՝ ոչ նուազագոյն քան զմարգարէսն՝ պարտ էին հաւանեցուցանել նոցա զգանիցն կանխասացութիւնս։ Միթէ լաւութիւնս ինչ գործէք և յայն սակս թերահաւատէք՝ թէ չգան պատիժք 'ի վերայ. յայժ ամհաւատից են բանք, արհամարհողաց՝ որ զԱստուած անարգեն։ Զի այնպէս հակառակէին չհաւատալ կանխասացին պատգամացն, զի և բազմաժամանակեայ ևս շինուածս խորհէին շինել։ Եւ արդ ո՞ւմ զբազմաժամանակեայ շինուածս շինես, ով մարդ. զի դու 'ի սակաւ ժամանակի ես վճարելոց յաշխարհէս. այսօր կամ վաղիւ մարմինդ լուծանիցի, և հաստատուն շինուածքն որ շինեցեր՝ ո՞ւմ լինիցի. ո՞րչափ ինչ իցէ այսպիսի անմտութիւն։ Այլ որդւոց և թոռանց, ասէ, արարս առնեմ։ Եւ զիա՞րդ ոչ լաւ քան զտունս և շինուածս էին այսպիսի օրէնք՝ զորս եդ Յովնադաբ որդի Ռեքաբայ՝ իւրոց որդւոցն, թէ Մի 'ի տունս բնակիցէք և մի այգիս տնկիցէք. Այլ քեզ թէ հնար ինչ էր՝ յայլ ևս չարիս մեծամեծս դրդէիր, յոր և դրդեսդ իսկ, և բևեռես զնոսա ընդ աշխարհս անցաւորս։

« Եւ շինեսցուք մեզ աշտարակս ». և ոչ ասեն որդւոյ կամ թոռանց, այլ մեզ. մարգարէդ, ասէ, առանցեալ է և ոչ գիտէ զինչ խօսի։ Եւ աշտարակս՝ ոչ 'ի բնակութիւն ինչ, այլ 'ի պարծանս և 'ի ցոյց նշանակի։ Տեսանե՞ս, ո՞րչափ թշնամանէին զԱստուած հպարտութեամբն, սակայն ոչ վասն այսորիկ միայն, ասէ, ածից պատիժս, այլ և վասն յուդայական ազգին։

« Եւ կործանեսցէ Տէր զբազում սատակութեամբ՝ զյարուցեալսն 'ի վերայ Սիոնի, և զթշնամիսն Յուդայ՝ խափանեսցէ, զԱսորիս՝ 'ի ծագացն արևելից և զՅոյնսն 'ի մտիցն արևու ». Ի բարերարութեանց պարտ է լինել պիտանիս. տե՛ս, ո՞րպէս Աստուած ահիւ պատժոցն խրատէ զմեզ. նախ վասն Բաբելացւոցն գուշակեաց, և ապա վասն Ասորւոցն և Յունացն արևմտեայց։ Ինձ այսպէս թուի, եթէ զօրավիգն օգնականութիւն ինչ նշանակիցէ, զի բնաւ ընդ ամենայն տիեզերս յայտնի լինիցին փառք նորա, և մանաւանդ առ Բաբելացիսն, որ յայնժամ նոքա ունէին զաշխարհս բազումս. զի մի անձանց ինչ համարիցին զյաղթութիւնն, այլ զի իմասցին՝ թէ Աստուած ետ

Հարկանել նոցա զազգս բազումս, և զՅոյնան 'ի մանկոյն արեաւ։ Եւ ընդէ՞ր. « Զի ուտէին զժողովուրդն իմ Իսրայէլ բերանակեր ամենայն բերանով ». տեսանե՞ս, զի և յետոյ 'ի նոցանէ խնդրէ վրէժս։

« Եւ 'ի վերայ այսր ամենայնի ոչ դարձաւ սրտմըտութիւնն, այլ եւս տակաւին բարձրացեալ է ձեռնն »։ Կամ զայն կամի ասել, եթէ այնչափ պատահալիս լուան և չեղեն ինչ պիտանիք, կամ զի ոչ մինչ ցայն վայր հատուցանէ զպատիժսն Աստուած, զոր և վասն ժողովրդեանն յաջորդաւն յայտ առնէ. « Ժողովուրդ իմ, ասէ, ոչ դարձաւ՝ մինչև վիրաւորեցաւ, և զՏէր ոչ խնդրեցին »։ Տեսանե՞ս, զի ամենայն վասն այնորիկ Ճաւէր զի մի վիրաւորեսցի, սակայն նա ոչ դարձաւ. այս ամենայն նշանակ իմն է, որպէս զի առիցէ ոք՝ թէ այս ամենայն եղև և ոչինչ եղեն պիտանիք մինչև վիրաւորեցան։

« Եւ ընջեաց Տէր յԻսրայէլէ զմեծն և զփոքրն, զգլուխն և զտուտն՝ յաւուր միում »։ Իսկ այլ թարգմանիչն փոխանակ այնր՝ թէ զմեծն և զփոքրն, եթէ Զայն՝ որ պատուականէրն և թիւրէր և խափանէր զփըրկութիւնն։ Եւ ոչ ասէ՝ թէ զգլուխն և զտուտ, այլ իբրև զանխօս գազանաց՝ զգլուխն և զտուտնն։ Զի իբրև օձից իմն նմանեցաւ ժողովուրդն, վասն այնորիկ զգլուխն ջաղջախեաց՝ զարմատ ամենայն չարեաց, և զտուտնն եհատ, զի և խլրտել մի կարիցէ։ « Ի միում աւուր »։ Ցիրաւի եցոյց՝ եթէ աստուածասաստ էին ցաւքն։

Եւ ապա յայնոսիկ՝ որ զձեռնադրութիւնն ունէին՝ ածէ զբանն. « Զերէցն և զակնառուն՝ այս առաջն է ». որք զիրաւունս թիւրէին՝ վասն զերեսս թիւրելոյ և ակնառութեանն։ « Եւ զմարգարէն՝ որ ուսուցանէ զանօրէնութիւն՝ այս տուտնն է »։ Եւ ընդէ՞ր զսուտ մարգարէն՝ տուտն կոչիցէ, որ գլուխն կարծէր նոցա. այլ նոքա էին՝ որ վնասս 'ի չարիսն դրդէին, և ոչ տային թոյլ գալ յուղղութիւն։ Եւ աստի ուսանիմք, եթէ ոչ ոյք գործեն զչարիսն, այլ որք դրդեն վնաս 'ի մէջ՝ նոքա մեծաց պատժոց արժանի են. զի աղքատն թերևս զաղքատութիւնն պատճառս առնիցէ, իսկ դու յո՞ փախչիցիս, որ կարող ես և տուանց կարօ-

տութեան։ Եւ ապա իրաւունս ցուցանելով տանէ զպատասխանին, եթէ ոչ պատժոց են իրքն, այլ բժշկութեան և ուղղութեան։

« Եւ եղիցին, ասէ, որ երանիցեննն ժողովրդեանս, որպէս զի մոլորիցին և մոլորեցուցանիցեն. զի կլանիցեն զնոսա, և ապա յայտնիցին »։ Քանզի յայն չէին ինչ յայտ և 'ի վախճանէն յանդիմանեցին։ Այժմ մոլորեցուցանիցեն, բայց այժմ ամենեքեան իսկ տեղեկանայցեն. վասն որոյ յաւել իսկ, եթէ մոլորեցուցանիցեն. զի թէպէտ և այժմ մոլորեցուցանիցեն, սակայն յախժամ յայտնի լինիցին։

« Վասն այնորիկ 'ի վերայ երիտասարդաց նոցա ոչ լը-լինիցի ուրախ Աստուած »։ Քանզի զինչ օգուտ իցէ 'ի տիոցն և 'ի զօրութենէ, յորժամ ոչ ըք յուղղութիւնս վարիցէ զհասակն և զզօրութիւնն։ Զոր օրինակ, եթէ ծառայք ուրուք իցեն մարմնեղէնք, անդամայաղթք, հարուստք, առողջք, և 'ի չարագործութիւնս հատանիցեն, յարբեցութիւնս և յորկորստութիւն, այսր անդր խուսափիցին, և ոչինչ ըք ուրախ լինիցի 'ի զօրութիւնն նոցա. զի թէպէտ և մարմնովն յաղթանդամք իցեն, և 'ի մտացն պակասեալք, ուստի ամենայն չարեացն պատճառք լինին։ Քանզի և ոչ բարին առանձինն՝ բարի իցէ, և ոչ չարն՝ չար, այլ ըստ մտացն՝ որ կամ թէ զայն յառաջ բերիցէ կամ թէ զայս. զի թէ 'ի բարի յօժարիցի իսկզբանէ, լինի երիվար մուղ և վարժ. եթէ յոռութիւնսն յոլովիցէ՝ անսանձութեամբն միտի 'ի չարիսն։

« Եւ որբոց նոցա և այրեաց մի ողորմեսցի ». զի ոյք ոչ 'ի վշտացն զգաստացեալք լինիցին պիտանիք[1]։ Մի ինչ պարսաւիցես զխակութիւնն և անմարդութեան ինչ զիրսն կարծիցես. այլ լուր զպատճառսն։ « Զի ամենեքեան, ասէ, անօրինեցան 'ի չարիս, և ամենայն բերան խօսեցաւ զանօրէնութիւն »։ Տեսանես, զի ողորմել՝ չողորմելն է. և զի ոչ այնպէս ինչ 'ի զգաստութեանն պիտանացու է՝ իբրև զաւերելն և զկքանելն և զթողուլն։ « Եւ 'ի վերայ այսր ամենայնի ոչ դարձաւ սրտմտութիւնն նորա, այլ եւս տակաւին բարձրացեալ

1 Այսպէս յօրինակին։

է ձեռնն », կամ իրօքն իսկ կամ սպառնալեօքն՝ որ [1] պատշաճ էր Աստուծոյ՝ պատուհասել. եթէ այնպէս ինչ արարի և այնչափ յառաջադոյն գուշակեցի, « Եւ ոչ դարձաւ ստամբութիւնն ». այսինքն՝ ոչ կարացին զբարկութիւն նոցա բանիւքն ասացեալք՝ դարձուցանել:

« Եւ վառեսցի իբրև զհուր անօրէնութիւնն [2], և իբրև զսէզ չորացեալ՝ հրով բորբոքեսցի »: Տեսանես, որպիսի ինչ կերպակուրս ետ հրոյ՝ Աստուծոյ բարկութիւնն. որպէս և կայծ մի ուրեք անկանիցի և բազում խոշոտ գտանիցէ՝ լինի հրդեհ անհնարին. ապա եթէ ոչ ինչ գտանիցէ որ զնա արծարծիցէ՝ շիջանի վաղվաղակի և անցանէ:

« Եւ բորբոքեսցի յանտառս մայրեաց և կերիցէ շուրջ զբլրովք նոցա զամենայն ինչ. վասն ստամբութեան բարկութեան Տեառն՝ հրձիգ լիցի երկիրն ամենայն »: Մի՛ վասն զի խոտոյ լուար վաղաշէջ՝ երագանցուկ համարիցիս, ասէ, զհրդեհն. զի վասն երագութեանն և սաստկութեանն այն նմանեցուցի: Ապա եթէ կամիցիս ուսանել զսաստկութիւնն՝ միտ դիր յաջորդացն: Եւ զհէնն իսկ, ասէ, կերիցէ հուրն. « Վասն ստամբութեան բարկութեան Տեառն հրձիգ լիցի երկիրն ամենայն. և եղիցի ժողովուրդն իբրև այրեցեալ հրով »: Զի հաւատարիմ առնիցէ զբանն, դնէ՝ եթէ Աստուծոյ բարկութիւն է. ոչ զերկիրն թողուցու և ոչ զայլ ինչ, ոչ զտնանկս և ոչ զմեծամեծս. զի մի կարծիցեն՝ եթէ մեղքն այնչափ կարող իցեն, և բարկութիւնն Աստուծոյ չիցէ կարող: « Եւ եղիցի ժողովուրդն իբրև այրեցեալ հրով ». անդ սով իմն ակնարկէ, զի և բնութեան օրէնքն, ասէ, խափանեսցին և ոչ ճանաչ չիցեն զմիմեանս:

« Այր եղբօր իւրում մի՛ ողորմեսցի »: Եւ քանզի զմիմեանս ոչ ծանեայք, այլազգ արարից կործանել զձեզ: « Այր եղբօր իւրում մի՛ ողորմեսցի ». ոչ այժմ զգօնն և հանդարտն՝ առ այլս 'ի վայրենութիւն գազանաց շրջիցի, այլ զի իւրում եղբօրն՝ ո՛ր քան զամենայն ոք ընտանի է՝ մի՛ ողորմեսցի. և վիշտքն առաջի կայցեն: « Այլ խոտորիցի յաջակողմն իւր՝ յորժամ

1 Յոր. Զոր:

2 Յոր. Զանօրէնութիւնն:

քաղցիցէ »: Այսինքն՝ հեռասցի, թողցէ զնա: « Եւ կերիցէ 'ի ձախակողմ կողմանէն »: Այսինքն՝ ճարակեսցի իբրեւ զհուր, որ ճարակի յաջմէ և յահեկէ:

« Եւ մի՛ յագեսցի մարդ ուտել զմարմինս բազկաց իւրոց ». իսկ Սիմաքոս ասէ. Զմարմինս ընկերի իւրոյ: Ո՛վ դառն սեղան՝ զի լեղեալ, ո՛վ կերակուր պատրաստեալ 'ի դիւաց, ո՛վ ճաշ անշայեկան. յիւրոց անդամոց պատրաստեալ սեղան դառնութեան, ինքն իւր լեալ կերակուր, և այնպիսի անոյշ կերակուր՝ զի և յագուրդ ևս չլինիցի: Դժնդակ և բռնամարտիկ դեւք 'ի քաղաքն ժողովեցան. քան զբազում մահս դառնագոյն էր այն. ո՛չ ապաքէն լաւ էր մեռանել 'ի սովոյ և ոչ այնպիսի մխիթարութիւն գտանել սովոյն. քան զցաւսն՝ դեղն և՛ս չար էր, քան զախտն՝ առողջութիւնն և՛ս դժնդակ. ինքն ընդ ինքեան մարտնչէր մարդն: Եւ արդ զիա՞րդ ոչ սոսկումն և արհաւիրք իցեն իրքն. տե՛ս, զինչպիսի կերակուր ուտէին. բերանն լի արեամբ և շաղաղով, և շրթունք հում մսով. ինքն՝ յինքենէ ծախէր, և ինքն՝ իւր շուն, և քան զամենայն գիշակեր՝ լեալ վայրենագոյն: Որպիսի եղեռն, որպիսի աղէտք: Գիտեմք զի բազումք 'ի բանիցս իսկ սոսկան, զարհուրին, տախեն, յարտասուս հարկանեն. իսկ եթէ ցուցից և զմեզ՝ զի և՛ս քան զայսպիսի չարիս գործիցեմք, ընդ այն ո՞չ սոսկայցէք. մի՛ մարմին է առհասարակ ամենայն եկեղեցիս, յորժամ զեղբարս մեր ուտիցեմք, և ըզմիմեանց ոսկերս քանցիցեմք. Եթէ զմիմեանս, ասէ, խածատիցէք և զմիմեանս ուտիցէք. յորժամ այսպիսի ինչ իրք 'ի մէջ մարդկան գործիցին՝ մոլեաց նմանեն, կատաղեաց, 'ի մռաց անկելոց:

« Կերիցէ Մանասէ զԵփրեմ, և Եփրեմ զՄանասէ ». սոքա եղբարք հարազատք: « Եւ 'ի միասին պաշարեսցեն զՅուդա »: Տեսանե՞ս զսրտմտութիւնն, հայի՞ս 'ի բարկութիւնն: « Եւ 'ի վերայ այսր ամենայնի՝ ոչ դարձաւ սրտմտութիւնն, այլ տակաւին բարձրացեալ է ձեռնն »: Զի՞ ծանիցեն եթէ որպիսի պատժոց արժանի իցեն, զի և այնչափ վրիժուք որ խնդրեցան 'ի նմանէ՝ ոչինչ զգաստացան, այլ անդէն 'ի նմին չարիս կործանեալ կային:

# ԳԼՈՒԽ Ժ

« Վայ ձեզ գրեն զչարիս , գրելով գրեն զչարիս » . Իսկ այլքն ասեն . Վայ ձեզ հաւատարեալ քննիցեն զհաւատո-տխսն : Եւ ընդէ՞ր երկրորդիցէ . այլ զի չարիքն նոցա բազումք և յաձախագոյնք էին , որ լինէին ցաւոցն պատ-ճառք . զի և գիրք՝ յամենայն վայրի զչարիս՝ ցաւս կո-չեն . Ի ներքոյ լեզուի նորա , ասէ , ցաւք և վաստակք : Եւ արդարև , ասեն , ցաւք են չարիք՝ որ պտուղ ևս ոչ բերեն , այլ մանաւանդ զի բերեն իսկ զստատակմանն պտուղ :

« Որք խոտորեն զիրաւունս աղքատաց և յափշտա-կեն զիրաւունս տնանկաց » : Տեսանե՞ս , զի ոչ զայնո-սիկ որ ըլկիցեն , այլ զայնոսիկ որ ըլկիցենն՝ համարի ողորմելիս . զի որչափ զաղքատս զրկեալս ցուցանիցէ , նոյնչափ զհարստացն զպատիժս աձեցուցանէ : Եւ զայս ամենեքեան բամբասեն 'ի բնէ , և սոյն միշտ լինի ա-մենեւին : Զհրէայս վասն այսպիսի իրաց չեն ինչ զար-մանք պատուհասել , քանզի ամենեւին յերկրաւորս բեւեռեալ են . այլ մեք՝ որ զգաստացաք և իմաստնա-ցաք , ոչ պարտիմք ընդ այնպիսի բամբասանօք գտա-նիլ :

« Վարել զայլսն 'ի գերութիւն և զորս յափշտա-կութիւն ժողովրդեան իմոյ » : Ահաւասիկ այլ ևս իմն մեծ ապաստանք , զորս ոչ որբութիւնք ըլկանաց և ոչ այրութիւն նեղեաց , և ոչ այլ ինչ այնպիսի չարչա-րանք : Նոցա չէր պարտ զայլս նեղել . յինէն , ասէ , պարտ է երկնչել , և իմով երկիւղիւն լինել հեզ և ըղ-դաստ : « Եւ արդ , զի՞նչ գործիցէք յաւուր այցելու-թեանն . զի նեղութիւն ձեր 'ի հեռաստանէ եկեսցէ » : Եւ ընդէ՞ր ասէ՝ եթէ 'ի հեռաստանէ . այլ զի նոքա յապաշխարութիւն դառնայցեն . զի յայտ արասցէ , թէ աստուածատաստ են տանջանքն , յերկնից է վը-ճիռն :

« Առ ո՞ փախստական անկանիցիք յօգնականու-

թիւն, և ո՞ւր թողուցուք զփառսն ձեր, զի ոչ յղարկեցիք ընդ գերութեանն». իսկ այլ թարգմանիչքն ասեն, եթէ Ոչ անկանիցիք ընդ կապանօք։ Եւ վասն զի առ ընտանիս գտայք անգութք և անագորոյնք, առաքեցից 'ի վերայ ձեր զօտարս, և ոչինչ գտանիցէք մխիթարութիւն և ոչ բժշկութիւն։ Եւ այս ոչ անիրաւութիւն ինչ է. զի դուք ոչ ողորմեցարուք որբոց, և ոչ այլ ոք ձեզ ողորմեսցի. ո՛վ ած զձեզ յայդպիսի թշուառութիւն։ «Ո՞ւր թողուցուք զփառս ձեր». ո՛վ կարիցէ պահել, ասէ, զփառսն ձեր ձեզ, եթէ ոչ վարիցիք 'ի գերութիւն։ Տեսանես, զի անձամբ յանձնէ կշտամբի չարութիւն. «Վայ, ասէ, որ գրեն զչարիս, գրելով գրեն զչարիս իւրեանց»։ Դու ցուցեր, ասէ, զանողորմ միտս, և ածից ցուցից, ասէ, զպատիժս և զհարուածս. և ոչ այնու եւեթ վճարիցի։ «Եւ 'ի վերայ այսր ամենայնի ոչ դարձաւ սրտմտութիւնն, այլ ևս տակաւին բարձրացեալ է ձեռնն»։

«Վայ Ասորեստանեայց. գաւազան բարկութեան սրտմտութեան իմոյ 'ի ձեռս նոցա»։ Փոխէ այսուհետև զբանսն առ պատերազմողսն, և յառաջագոյն գուշակէ զիրսն՝ որ առ Եզեկիայ արքայիւ լինելոց էին. քանզի հարիւր ութսուն և հինգ հազար անկան 'ի միում աւուր։ Եւ արդ խնդրիցես՝ եթէ վասն էր այսպիսի իրք գործեցան. այլ զի Աստուծոյ տեսչութիւնն որ 'ի վերայ ժողովրդեանն էր՝ ևս առաւել խրատ լինէր քան զմարգարէիցն յառաջ գուշակել. զի Հրէայքն մարգարէիւքն խրատէին և թշնամիքն՝ իրաւամբքն՝ որ ընդ նոսա անցանէին։ Տեսանես, զի նոքա ձգէին զպատճառս յանձինս։ Եւ պարտ է խնդրել, թէ գաւազան բարկութեան սրտմտութեան քո 'ի ձեռս նոցա լիցէ, իսկ զնոսա ընդէ՞ր հարկանիցես։ Եւ զի 'ի վերայ Ասորեստանեայց է մարգարէութիւնս այս, լո՛ւր, զինչ ասէ. Ո՞չ ապաքէն այն Աստուած լիցէ, որ եբարձ զբարձունսն և առաջի սեղանոյ իմոյ, ասէ, միայն երկիր պագանիջիք. և դարձեալ՝ եթէ Աստուած ասաց ցմեզ ելանել. և այսպէս 'ի վաղուց հետէ գիտէին զայս։ Այլ ասեն՝ եթէ Ռափսակ 'ի նոցանէ էր։ Տեսանես, վասն էր զայս գուշակէ յառաջագոյն. զի մի՛ քննիցեն յորժամ տեսանիցեն զբազում զօրսն պատել շուրջ զքաղաքաւն.

վասն այսորիկ ասիցէ վասն նոցա, զի յինէն առին զիշխանութիւնն, և զիս՝ որ ետու զիշխանութիւնն՝ չճանաչեն։ Զի այլոց ազգաց յաղթել, եթէ յԱստուծոյ իցէ տուեալ նոցա զյաղթութիւնն, այն ոչ կարի ինչ անգիտութիւն էր և ոչ այսպիսի ինչ. բայց Հրէից և Խորայէլացւոց յաղթել, զի իւրում զօրութեանն համարէր և ոչ Աստուծոյ՝ անհնարին անմտութեան էր։ Որպէս առ Մովսիսիւն, սոյնպէս և աստ. գաւազան բարկութեան ետու 'ի ձեռս քո, հարկանել զազգս օտարազգիս և ոչ զիմոդ։

Եւ քանզի անօրէն ազգ էր, «Եւ զբարկութիւն, ասէ, յազգ անօրէն առաքեցից, և իմում ժողովրդեանն՝ կարգեցից առնել զաւար և զյափշտակութիւն, կոխան առնել զքաղաքս և դնել զնոսա 'ի փոշի»։ Թէպէտ և այս իսկ բաւական էր ցուցանել, եթէ ազգ անօրէն են նոքա, ես հրամայեցի առնուլ նոցա զայնչափ գերութիւնս։ «Նա ոչ այսպէս ած զմտաւ, և ոչ այսպէս համարեցաւ յանձն իւր». այլ զիմարդ քան զամենայն տիեզերս կարծէր լինել զօրագոյն արդեամբք։ «Այլ դարձցին միտք նորա ապականել զազգս բազումս»։ Զի թէպէտ և զանձնէ ինչ կարծէր այնպիսի գործ գործել, սակայն 'ի մարդկեղէն փոփոխմանց պարտ էր նմա երկնչել։ Տեսանես, որչափ ինչ չարիք են չճանաչել զչափ մեծարանաց։

« Եւ եթէ ասիցես ցնա, թէ դու միայն իցես իշխան. ասիցէ. ո՞չ ապաքէն առի զերկիրն որ 'ի վերայ Բաբելացւոցն է, և զՔաղանէ՝ ուր աշտարակն շինեցաւ »։ Յիշեցոյց յԱստուծոյ կուփեալ զնա, զի որպէս անդ 'ի նմա ցուցցէ զբազում զօրութիւն. յանցելոցն՝ զհանդերձեալսն, կիւսսես[1]. ո՞չ ապաքէն յորժամ արդելուցուս յանդգնութենէդ՝ զչափ առցես Աստուծոյ զօրութեանն. վասն այնորիկ իսկ այնպէս խօսէր, զի զԱստուծոյ զզօրութիւնն ցուցանիցէ. զի զնա, որ 'ի բազում աշխարհս ասպատակէր և քակէր զազգս և կործանէր զերկիր, իբրև զանձրև ուժգին կամ զհեղեղատ սաստիկ, այնպէս խափանեսցէ 'ի փոքր և յարհամարհեալ քաղաքին, իբրև թէ չիցէ իսկ լեալ։

1 Այսպէս յօրինակին։

«Որպէս զի զկողմանսն Արաբացւոց առի, ասէ, զԴամասկոս և զՍամարիա. որպէս զայս առի, նոյնպէս զամենայն իշխանութիւնս ամբարշտաց»: Տեսանե՞ս, զի արտաքոյ քան զմարդկեղէն բնութեան են իրքդ. մինչ այր դու, ոչ ոք, ասես, արգելուլ կարաց զիս. որչափ խօսիս զմեծամեծսդ՝ նոյնչափ զԱստուծոյ զօրութիւնն յայտ առնես:

«Ողբացէք, գործեալք, որ յԵրուսաղէմ էք և 'ի Սամարիա. զի զոր օրինակ արարի ընդ Սամարիա և ընդ ձեռագործս նորա, նոյնպէս արարից ընդ Երուսաղէմ և ընդ կուռս նորա»: Տեսանե՞ս զկռոցն ակարութիւն. տեսանես, զի և ոչ մինչև ցմարդիկ միայն ձգէ զամբարտաւանութիւնն, այլ և զդիսն եւս նախատէ. զի ոչ բազմութիւն մարդկան, ասէ, և ոչ աստուածեղէն զօրութիւն կարաց արգելուլ զիս՝ յորմէ հետէ սկսայ. զի եթէ սկսար՝ յայտ է եթէ ակար ես. և յորժամ յայտնեցի ոք՝ որ զքեզ խափանեսցէ, և քան զդիսն և քան զամենայն մարդիկ՝ յայտ է եթէ զօրագոյն է:

«Եւ եղիցի յորժամ կատարեսցէ Տէր զամենայն 'ի 'ի լեառն Սիոնի և յԵրուսաղէմ, ածցէ 'ի վերայ մեծամիտ հպարտութեանն և 'ի վերայ իշխանին Ասորեստանեայց և 'ի վերայ բարձրութեան փառաց աչաց նորա»: Եւ զի՞նչ իցէ՝ թէ կատարեսցէ, զոր Ակիղաս ասէ՝ եթէ անդէն կորեսցէ. Սիմաքոս՝ եթէ զոր կրտրելոցն իցէ: Բազմաց թոյլ տայ երկնչել խուճապել. զի և այս անգ իմն լինի՝ առ իմանալ զքանչելեացն առաւելութիւն. զի յորժամ սատակացուցանիցէ զբռնաւորութիւնն և ինչ ոչ թողուցու՝ զոր ոչ խօսեցի, ապա խափանեսցէ զնա Աստուած. զի ոչ եթէ 'ի ցոյց ինչ առնէր՝ զոր ինչ առնէր Աստուած, այլ յօգուտ հրէից և բարբարոսաց. որպէս և Պաւղոս ասէ, եթէ Յորժամ կատարեսցի և ձեր հնազանդութիւնն:

«Քանզի և նա այսպէս ասաց, եթէ զօրութեամբ ձեռին իմոյ արարից և իմաստութեամբ խորհրդոց՝ բարցից զսահմանս ազգաց և զզօրութիւն նոցա աւարհարից, և շարժեցից զքաղաքս բնակեալս. հարից 'ի վերայ ամենայն տիեզերաց ձեռամբ իմով իբրև 'ի վերայ բունոյ, և բարձից իբրև զձուս մնացեալս. և ոչ

ոք լիցէ՝ որ ապրիցէ, և ոչ այն որ ընդդէմ դառնայցէ»։ Տեսանե՞ս, զի չհայելն իսկ նորա յԱստուծոյ բարձրութիւնն՝ մեծ ամբարտաւանութիւն էր, և բաւական՝ կարկել զնա և խրատել։ Ո՞վ ոք իցէ ինձ Աստուածդ. վասն այնորիկ և զհպարտացեալն և զզօրացեալն կործանէր ընկենոյր, զի բազում առաւելութեամբ ծանիցէ զԱստուծոյ զօրութիւնն։ Կարող էր հուր յերկնից տեղալ և այրել զզօրսն կամ գազանս արձակել, կամ այլովք պէսպէս հարուածովք հարկանել, բայց ոչ կամեցաւ. այլ թոյլ ետ նստել զքաղաքաւն, թոյլ ետ նմա զմեծամեծս խօսել, և Եզեկիայ արքայի զաղօթսն մատուցանել. և ապա ածէր զբարկութիւնն, և ոչ փոքր ինչ իրս կատարէր. և եթէ շնորհօքն Աստուծոյ 'ի տեղիս իսկ հասցուք [1], արասցուք յայտ՝ եթէ զինչ իցէ այն զոր ասէն, եթէ Կատարեացէ Տէր զամենայն ինչ առնել։

Զոր օրինակ ոք զարմանագործ արուեստական, ոչ վայրապար մտանիցէ 'ի հանդիսական հրապարակն, եթէ ոչ նախ տեսանիցէ մտեալ զամենեսին նստել յիւրաքանչիւր չափս և 'ի կարգս, և ապա մտանիցէ ցուցանել զհանդէս արուեստին, նոյնպէս և Աստուած 'ի լեառն Սիոնի և յԵրուսաղէմ, յորժամ կարգեալ նստիցին յիւրաքանչիւր չափս՝ իբրև յատենի. «Այցելութիւն արարից, ասէ, 'ի վերայ հպարտացեալ մտացն». Թէպէտ և չգոյին այլ միտք վատթարագոյնք քան զայն միտս։ Բարուոք իսկ եկն եւ բանս 'ի դէպ, թէ քան զամբարտաւանն՝ չիք այլ ոք թշուառական. զի որ ոչ կարիցէ զայն ինչ իմանալ՝ որ և մանկտւոյ յայտ է, զիա՞րդ իցէ նա մեծ։ Եւ ոչ ասաց, եթէ զմարդ ոք, այլ թէ զմիտսն հպարտացեալս։ Ոչ եթէ եբարձ զնա 'ի միջոյ, այլ թոյլ ետ խրատել յիւրաց ինչ՝ որ ընդ այլս անցանիցեն։ Եւ քանզի և ոչ այնպէս ինչ խրատեցաւ, այլ երթեալ երկիր պագանէր կռոցն, և զի յանբժշկական ցաւսն սկսաւ ջերանել, բառնայր զնա 'ի միջոյ, զի նորա պատժովքն՝ զայլս խրատիցէ. և ոչինչ յայտ առնէ զնորա կերպարանս, այլ զվախճանն միայն։ Դարձեալ և այլ ինն բանս իրաւացիս կամի ցուցանել մեզ, զի և

1 Յոր. Հարցում։

զապրելոցն փրկութիւն պատմիցէ և զամբարտաւանին կործանումն։

« Ես, ասէ, զօրութեամբ ձեռին իմոյ արարից, և իմաստութեամբ խորհրդոց իմոց բարձից զսահմանս». զի մի Թագաւորք ուրեք կացցեն և մի իշխանք գտանիցին։ « Եւ շարժեցից զքաղաքս բնակեալս. հասից 'ի վերայ ամենայն տիեզերաց և եդից զձեռն իմ իբրև 'ի վերայ բունոյ»։ Տեսանես, ուր վայրենի միտքն զայնպիսի հպարտութիւնն ցուցին. զիա՞րդ ցուցանէ սպառնալեօք զամբարտաւանութիւնն. տեսանես, որչափ չարիք 'ի հպարտութենէ են։ « Եւ ոչ ոք իցէ, ասէ, որ ապրիցէ յինէն, և ոչ ոք իցէ, ասէ, որ ինձ ընդդէմ դառնայցէ»։ Զամենայն զամբարտաւանութիւնն ցուցանէ. զի յայտ արարեալ թէ որպիսի՞ւմ ումեք յաղթեաց։ Նա և ոչ՝ որ զուղղութիւնս ինչ ոք գործիցեն, բարուք ինչ իցէ նոցա հպարտանալ և կամ մեծամեծս խօսել. քանզի զան հասանեն յԱստուծոյ պատիժք ամբարտաւանից, որպէս և Փարիսեցւոյն դիպեցաւ. և եթէ զնա՝ որ բարի գործով հակառակ էր կամաց սատանայի, մի բան և սակաւ ինչ յանցումն կարաց վրիպեցուցանել և խոտել, որչափ ևս առաւել զայլ մնապարծս. զի եթէ որոց[1] զուղղութիւնսն ինչ կատարեալ են՝ չվայելեն պարծանք, որչափ ևս առաւել այնոցիկ՝ որ հեռի իցեն յուղղութեանց։

« Մի եթէ վերանայցէ՞ փայտատ առանց փայտահարի, կամ ձգիցի՞ սղոց առանց ուրուք ձգելոյ»։ Տես, ում նմանեցուցանեն զՈրդի Աստուծոյ՝ հերետիկոսք. գործոյ՝ որում զԱսորեստանեայն նմանեցուցին գիրք։ Որպէս փայտատ զի ոչ անձամբ հատանէ, նոյնպէս և ոչ դու անձամբ ինչ գործիցես. և որպէս սղոց զի ոչ անձամբ ձգիցի, նոյնպէս և ոչ դու անձամբդ ինչ վճարիցես։ « Նա և ոչ այդպէս », այսինքն այսուհետև ոչ պիտոյ իցես ինձ։ « Կամ վերանայցէ՞ գաւազան առանց ուրուք վերացուցանելոյ ». զի ես էի՝ որ վերացուցանէի զքեզ, յայսմհետէ ոչ վերացուցից։

« Այլ առաքեսցէ Տէր զօրութեանց 'ի պատիւ անդր քո՝ անարգանս, և 'ի քո փառսն՝ հուր բորբո-

1 Յոր. Պակասէր որոց։

քեսցի»։ Զի և պարտութիւնն անարգութեամբ լինիցի. որչափ սպառնալիքն մեծամեծք էին, և բազումք Իսրայելացւոյն լինէին փառք, յորժամ հուր 'ի Թշնամիսն բորբոքեսցի։ «Եղիցի լոյս Իսրայելի 'ի հուր, և սրբեսցէ զնա 'ի բոց բորբոքեալ, և կերիցէ իբրև զխոտ զանտառս»։ Զկորուստ նոցա նշանակէ, զի իբրև զհուր՝ այնպէս ճարակէր բարկութիւնն զզօրս Թշնամեացն։

«Յաւուր յայնմիկ շիջցին լերինք և բլուրք և անտառք, և կերիցէ 'ի շնչոյ մինչև 'ի մարմին. և եղիցին որ ապրէն՝ իբրև ոք զի ապրիցէ 'ի բորբոքել բոցոյն. և որ մնացեալ են 'ի նոցանէ՝ Թուով լիցին, և մանուկ տղայ գրեսցէ[1] զնոսա»։ Փախիցեն իբրև 'ի հրոյ և լինիցին դիւրահամարք։ «Եւ ոչ ևս լինիցին ապաստան 'ի քեզ». և ոչ ևսն ասելով՝ յայտ առնէ, եթէ երբեմն ապաստան լինէին 'ի նա. քանզի զԻսրայելացիսն ավարեաց 'ի գերութիւն, և որ 'ի Սամարիա բնակեալն էին վասն Երուսաղէմացւոցն, զի 'ի պաշարելն զնոսա՝ չարիք պատահեցին նմա։

«Եւ եղիցի յաւուր յայնմիկ ոչ ևս յաւելուցուն մնացեալքն Իսրայելի և ապրեալքն Յակովբայ. ոչ ևս ապաստան լինիցին 'ի լկիչսն իւրեանց, այլ եղիցին ապաստան յԱստուած 'ի սուրբն Իսրայելի, ճշմարտութեամբ»։ Տեսանե՞ս, որպիսի՛ շահ 'ի կորստենէն եղև։ «Դարձցին մնացեալքն Յակովբայ՝ յԱստուած զօրացեալ»։ Եւ ընդէ՞ր նոքա միայն և ոչ ամենեքեան, զի և ամենեցուն իսկ պարտ էր դառնալ 'ի բարութիւնս։ Տեսանե՞ս, զի սքանչելիքն առ ամենեսեան եղեն, և զշահսն՝ նոքա եւեթ շահեցան։

«Եւ եթէ եղիցի ժողովուրդն Իսրայելի իբրև զաւազ առ ափն ծովու, չափ ինչ մնացորդք մնասցեն 'ի նոցանէ. զի բան մի հակիրճ և համառօտ յարդարութիւն արասցէ Աստուած ընդ ամենայն տիեզերս»։ Եւ ահաւասիկ 'ի մարգարէութիւն իմն հանէ զբանն. քանզի միշտ 'ի բազմութիւնն ապաստանէին՝ եթէ ոչ կորուսանէ Աստուած զայսչափ բազմութիւն, բառնայ 'ի միջոյ զկյոյսն. ոչինչ, ասէ, առից ակն բազմութեանն։

1 Յօր. Գէրէսցէ։

Եւ միւս ևս մարգարէ ասէ. Եւ էր թիւ որդւոցն Իսրայելի՝ իբրև զաւազ առ ափն ծովու։ Զինչ օգուտ գործէ բազմութիւնն, ուր գործք անպիտանք գործին. քանզի ոչ ամենեքին էին անհաւատք գտանելոց. սակաւք հաւատացին, վասն այնորիկ սակաւք ապրեցին։ «Բան հակիրճ և համառօտ յարդարութիւն». զի ոչ ևս երկայնմտութիւն և անսալ և թողութիւն լինիցի։ Այլ ինձ այսպէս թուի, եթէ զհանդերձեալ աշխարհին զդատաստանացն իսկ ակնարկիցէ ասելովն, եթէ «Բան մի հակիրճ և համառօտ արասցէ Տէր՝ ամենայն տիեզերաց»։ Եւ տես, զիարդ ընդ սքանչելիսն՝ խառն են և կանխասացիկքն, և իբրև թէ լեալք և կատարեալք իմն իցեն։ Եւ քանզի ասաց, եթէ մնացեալք սակաւք ապրիցին, մի ասեր, ասէ, եթէ զիարդ յայնչափ բազմութենէ՝ այնչափ սակաւք ապրեսցին։ Այժ, ասէ, ոչ ևս խնայեցից 'ի ձեզ, այլ զամենեսեան կորուսից, նաև զապրեալսն ևս ոչ թողից։

Տեսանես, թէ զիարդ ևս ստիպէ յԱստուած յուսալ և ոչ 'ի բազմութիւն ապաստան լինել։ Եւ քանզի այլուր ասէ, եթէ Ես ո՞չ խնայիցեմ 'ի քաղաքն յորում բնակեալ իցեն աւելի քան զերկոտասան բիւր. և զայս ասելով՝ զմարգարէն իմն մխիթարէր, այլ առանց այսր՝ վասն ազնիւ ապաշխարութեանն խնայեաց։ Զի թէ բազմութեան ինչ ակն առնոյր, ապա և յառաջ քան զապաշխարութիւնն պարտ էր աչառել. իսկ եթէ ոչ աչառեցաւ բազմութեանն՝ յառաջ քան զապաշխարութիւնն, յայտ է՝ եթէ[1] և ոչ յետ ապաշխարութեանն ոչ ինչ զբազմութեանն ակն առ. վասն որոյ և ասէ իսկ. Եւ ետես Աստուած, զի դարձան իւրաքանչիւր 'ի ճանապարհաց իւրեանց չարաց. և այլուր ասէ, եթէ Ըստ բազմութեանն իւրեանց՝ նոյնպէս և մեղան ինձ։ Տեսանես, զի ոչ ինչ հաճէ, այլ առաւել բարկացուցանէ բազմութիւնն. զի որչափ բազումք իցեն, նոյնպէս և չարիքն մեծամեծք. զի մի ոք չար՝ կարէ ապրել բազում անգամ, իսկ բազումք՝ և ոչ երբեք ուրեք, քանզի առհասարակ 'ի միում ախտին ջերանին։ Եւ այժմ 'ի մերում ժամա-

1 Յօր. Յայտ է և եթէ։

նակիս, ասեն, եթէ զայսչափ բազմութիւնս սատակեցէ՞ Աստուած։ Այժ, սատակիցէ, քանզի խօսէ ըզբազմութիւնն։ Ո՞չ տեսանես զՋրհեղեղին, մինն միայն՝ ընտանեօք ապրեցաւ, և 'ի կրակատեղաց բարկութեանն Սոդոմայեցւոցն՝ երեք միայն ապրեցան, և յանապատին՝ երկուս միայն։ Լաւ է, ասէ, մի՝ որ առնէ զկամս Տեառն, քան զբիւր անօրէնս. և յիրաւի իսկ։ Եւ դու զիա՞րդ կամիցիս, բիւր ընտանի փայտեայ կամ կապարեայ գտանել, եթէ մի մարգարիտ պատուական. և ոչ ասեմ՝ թէ մի է, այլ գիտեմ՝ եթէ քան զայն զամենայն՝ մինն պատուական է. զի ոչ եթէ 'ի բազմութեանն իցէ պատուականութիւնն, այլ 'ի պատուականին՝ բազմութիւնն. քանզի և ասէ իսկ զսակաւուց պիտանեաց. Զօրս և աշխարհ իսկ ոչ արժէ։

«Մի՛ երկնչիք, ասէ, ժողովուրդ իմ, որ բնակեալդ էք 'ի Սիովն՝ յԱսորեստանեայց. զի թէ հարկանէ ըզքեզ գաւազանաւն, ածից 'ի վերայ քո՝ ցուցանել զՃանապարհն Եգիպտացւոց»։ Այսինքն՝ զի մեղմով, մարդասիրութեամբ ածից զվիշտս և զնեղութիւնս տովցն։ Եւ այս իսկ ուղղութեան նշանակ է Աստուծոյ, յորժամ ուսանիցիս՝ եթէ ոչինչ եղեն քեզ օգուտ Եգիպտացիքն, առ որս միշտ ապաստան լինէիր։ «Զի փոքր միւս ևս դադարեսցէ բարկութիւնն իմ. այլ սրտմտութիւն իմ 'ի վերայ խորհրդոց նոցա, և հասուսցէ Տէր 'ի վերայ նոցա՝ ըստ հարուածոցն Մադիամու»։ Ակիղաս և այլքն յաւելլին, եթէ Տէր զօրութեանց. տանջանս՝ ըստ հարուածոցն Մադիամու, 'ի տեղի չարչարանաց, 'ի հաստատութեանն՝ որ եբաց. և այլք, թէ 'ի Սիովն՝ որ եբաց։ «Եւ սրտմտութիւն նորա Ճանապարհին՝ որ ընդ ծովակողմն է և ընդ Ճանապարհն Եգիպտացւոց»։ Ակիղաս ասէ, թէ Գաւազան նորա 'ի վերայ ծովու. Սիմաքոս՝ եթէ Ցուպ նորա՝ 'ի Ճանապարհն Եգիպտացւոց։ Հաւատարիմ լինի օրինակաւս՝ մարգարէութիւնս. քանզի և անդ երեք հարիւր արամբ կոտորեաց զամենեսեան և դք աշխատ ոչ եղև, և զինու ինչ պէտք ոչ եղեն, նոյնպէս և աստ։ «Եւ սրտմտութիւն նորա՝ ծովեզերեայ Ճանապարհին». այսինքն՝ զի առ ձեւք հարեանցին

անցանիցեն, և դիմեալ յԵգիպտոս երթայցեն. զի եթէ և տեսանիցես՝ մի՛ ինչ զարհուրիցիս։ «Չի բարձցի երկիւղ նորա 'ի քէն, և լուծ նորա 'ի պարանոցէ քումմէ». Ակիղաս և Սիմաքոս՝ բեռն նորա, ասեն։ Ոչ յայնպիսի ինչ 'ի պարտութիւն մատնիցին, եթէ դարձեալ զօրաժողով լինիցին գալ 'ի մարտ պատերազմի. այլ անհնարին հարուածովք հարկանիցին. քանզի և ասէ իսկ, եթէ «Բարձցի լուծ նորա 'ի պարանոցէ քումմէ»։

«Եկեսցէ հասցէ 'ի քաղաքն Անգէ». այլքն ասեն՝ եթէ յԱւաթ։ «Եւ անցցէ 'ի Մագեդով». իսկ Եօթանասունքն և այլքն՝ թէ 'ի Մագրոնն. և եբրայեցին՝ թէ 'ի Մագդոնն։ «Եւ 'ի Մաքմաս դիցէ զկարասի իւր. և անցցէ ընդ ձորն և հասցէ յԱնգէ. ահ առցէ զՌամա՝ զքաղաքն Սաւուղի, և փախիցէ դուստրն Գեղեղեմայ։ Լու լիցի յԻղաիշ, լու լիցի յԱնաթովթ. զարմասցի Մեդեբենա, և որ բնակեալն են 'ի Գեբէր»։ Տեսանես, զի և զօթևանսն՝ ուր ազանելոցն էր՝ կարգ ըստ կարգէ թուեն գիրք. զի թէպէտ և մօտ 'ի ձեզ գայցէ հասանիցէ, սակայն մի ինչ երկնչիջիք, զի ուր դէմ եդեալն է՝ երթայցէ. անտի առցէ՝ որչափ ինչ առնուցու, և դարձցի, և ձեզ ինչ ոչ վնասիցէ։

«Ահաւասիկ Տէր զօրութեանց խռովեցուցէ զփառաւորս զօրութեամբ իւրով և բարձրացեալքն՝ յամբարտաւանութեան իւրեանց կործանեսցին. և հպարտացեալքն խոնարհեսցին, և անկցին բազումք 'ի սուր, և Լիբանան ինքնին բարձամբք իւրովք կործանեսցի»։ Տեսանես, որչափ ինչ մխիթարութիւն և սփոփութիւն է՝ յորժամ Աստուած գործ կամ իրս ինչ վճարիցէ։

# ԳԼՈՒԽ ԺԱ

«Բղխեսցէ գաւազան յարմատոյն Յեսսեայ». այլ թարգմանիչքն՝ թէ ՚ի կոճեղէն, իսկ եբրայեցին՝ սեզ, ասէ: Տեսանե՞ս զարմանսն, տեսանե՞ս զմարգարէութիւնն: «Եւ բղխեսցէ, ասէ, յարմատեացն», զի յայտ արասցէ՝ եթէ առ յապա էր լինելոց: Ոմանք ասեն՝ եթէ զԵզեկիայ արքայէ ասէ, և Եզեկիա՝ յառաջ քան զայն ժամանակ՝ յորում բանս այս ասացաւ՝ էր թագաւոր, իսկ զսմանէ ասէ՝ թէ յարմատոց նախնեացն է: Բարուք ասէ՝ թէ յարմատոցն, որպէս թէ յԱբրահամէ և Եսս՚ի վեր. զի յայտ արասցէ՝ եթէ առանց ամուսնութեան եղև ծնունդն. որպէս և այլքն ասեն՝ եթէ ՚ի կոճեղէն: Ոչ ասէ սերմ կամ երկիր, այլ յարմատոցն բղխեսցէ գաւազան. ոչ զի ընդ արմատսն անցանիցէ, այլ զի անդստին յարմատոցն բըղխեսցէ. այսինքն՝ զի ոչ մարմին ինչ ընդ մարմին անց, այլ զի ՚ի բնութենէ կուսին առնուցու մարմին. ոչ յերկնից ինչ բերեալ մարմին և ոչ այլ ինչ ՚ի նոր արարածոց, և ոչ ինքն ՚ի մարմին շրջեալ, այլ մարմին ճշմարիտ առեալ ՚ի կուսէն, հանդերձ շնչով և մտօք. իւր մարմին՝ Բանին Աստուծոյ, և ոչ մարդոյ ուրուք մարմին՝ արտաքս քան զինքն. որպէս և Պաւղոս ասէ, թէ Եկն և եղև ՚ի կնոջէ. զի միանգամայն թէ և առանց ամուսնութեան է մարմինն՝ յայտ առնիցէ, և անդստին ՚ի նմին զանգուածոյ: Եւ գաւազան կոչելով՝ զթագաւորութիւնն յայտ առնէ. զի ամենայն ուրեք գիրք՝ զցեղսն և զթագաւորութեանն պատիւ՝ գաւազան կոչեն. քանզի և գաւազան իսկ ոսկի ՚ի ձեռին ունին թագաւորք, զի միանգամայն զթագաւորութիւնն և զահն և զսաստն՝ կոչիցէ գաւազան: Զոր վերագոյնն մանուկ կոչեաց և ՚ի կուսէ, ասէ, ծնանելոց է, տեսցուք աստ զինչ կոչիցէ զմարմնաւորական գալուստն:

«Եւ ելցէ ծաղիկ յարմատոյն». իսկ այլքն՝ թէ

արձակեսցի շառաւեղ։ Տեսանես, զի և զաճումն յայտ առնէ. զի ելցէն, վերասցի՝ զառ սակաւ սակաւ և ըստ օրինաց զաճումն յայտ առնէ. ոչ ասէ՝ թէ 'ի քէն, այլ թէ ինքն յինքենէ աճեսցէ գաւազանն, որպէս զի ոչ երբեք թարշամեսցի ծաղիկ գաւազանին։ Եւ զի մի գաւազան կարծիցես, բարւոք բերէ զՅեսսէ 'ի մէջ. նա և աւետարանիչքն այսպէս իմն առնեն, զի ցուցցեն թէ ոչ յումեքէ գարշեցաւ Տէրն հասարակաց։ .

« Եւ հանգիցէ 'ի վերայ նորա Հոգի Աստուծոյ. հոգի իմաստութեան և հանճարոյ »։ Ամաչեսցեն հերձուածողքն՝ որ հրէայերէն կամին մեկնել զգիրս։ « Հոգի, ասէ, խորհրդոյ և զօրութեան, հոգի գիտութեան և աստուածպաշտութեան ». և այլքն՝ երկիւղի ևս յաւելուն, եթէ Լցցէ զնա հոգի երկիւղի Աստուծոյ։ Ակիղաս՝ եթէ Հոտոտեսցի 'ի նա երկիւղիւն Տեառն. Սիմաքոս և Թէոդոտիոն՝ եթէ Հոտոտեսցի նա յերկիւղ Տեառն։ Եւ արդ ընդէ՞ր լնուցու Հոգւովն զԱստուածն։ Գրեսցուք՝ թէ 'ի հօրէ երկնչիցի՝ որպէս դուք հայհոյէք, Հոգւովն ևս զի՞նչ կարօտէր, զոր դուք իսկ ասէք՝ թէ փոքր է քան զնա. այլ վասն մեր յիւր շնչական և 'ի մարմնական մարմնին ընդունի զհոգին զիմաստութեան և զհանճարոյ և զգիտութեան և զաստուածպաշտութեան. զի մեզ ինքեամբ ցուցցէ օրինակ, եթէ մեք կարօտ եմք այնպիսի պարգևաց Հոգւոյն Աստուծոյ, և ոչ նա՝ որ Տէրն է՝ կարօտ ինչ է Հոգի ընդունելով, այլ 'ի նմա երևելով Հոգւոյն՝ մեզ լինիցին հաւատարիմ նորա երախտիքն. զի որպէս մարդն լինել՝ ոչ եթէ կարօտ ինչ էր և վասն այնորիկ եղև մարդ, այլ զի 'ի մարդն լինել՝ արասցէ զմարդիկ որդիս Աստուծոյ, նոյնպէս և ընդունել զՀոգին, ոչ եթէ իբրև զկարօտ ոք ընկալաւ, այլ զի կարօտելոց ինքեամբ բաշխեսցէ զՀոգին։ Զի թէ ամենայն ինչ Հօր՝ նորա է, որպէս ասէ յաւետարանի, թէ Ամենայն ինչ որ իմ է՝ քո է, և որ քո է՝ իմ է, յայտ է թէ և Հոգին Հօր՝ նորա բնակից է. և որպէս զանձն եդ 'ի վերայ խաշանց, նոյնպէս և զՀոգին՝ զիւր բնակից՝ ետ 'ի կենդանութիւն մեռելութեան աշխարհի, կամօք Հօր և նորին իսկ Հոգւոյն Սրբոյ։ Եւ ոչ ասէ եթէ մասամբ ինչ ընկալաւ զՀոգին, այլ ամենևին, ասէ, լցցէ

զնա Հոգին Աստուծոյ։ Զի որպէս չէ ոք բաւական Հօր՝ բայց միայն անձն Որդւոյ, և ոչ Որդւոյն՝ եթէ ոչ ծոցն Հօր, նոյնպէս և ոչ Հոգւոյն Սրբոյ՝ եթէ ոչ Որդի, որ նորին բնակից իսկ է։

«Հոգի, ասէ, իմաստութեան, հանճարոյ, հոգի խորհրդոյ և զօրութեան և գիտութեան և աստուածպաշտութեան և երկիւղի Տեառն». զի ուր երկիւղ Տեառն է՝ անդ ամենայն ինչ է. զի որ եցոյց զՀոգին յանձին, հանդերձ ամենայն պարգևօքն, յայն սակս եցոյց՝ զի յերկիւղն աստուածպաշտութեան մերձեցուսցէ զմեզ. զի զանձնէ ոչ երբեք ասաց՝ եթէ ես երկեայ 'ի քէն, այլ՝ թէ Ես սիրեցի զքեզ. քանզի Որդւոյ՝ սէր վայել է և ոչ երկիւղ։ Եւ եթէ 'ի մարդ ոք հանիցեն զայն, եթէ լցաւ Հոգւովն Սրբով, ցուցցեն՝ ո՛վ արդեւք ոք 'ի մարդկանէ բաւական եղև ամենևին զամենայն ընդունել զՀոգին։ Մի եթէ Եզեկիա, մի եթէ Զօրաբաբէլ. և մի՛ զբազումս ոք 'ի մէջ բերիցես, զի զայլոցն յիւրում տեղւոջն ցուցից. բայց առ այժմ՝ զերկուց ևեթ ճառեցից, զԵզեկիա և Զօրաբաբէլ։ Ո՞վ ոք 'ի նոցանէ բաւական եղև գոյիւ իւրով ընդունել զՀոգին. ապա եթէ յամառիցիս՝ թէ այո, բաւական եղեն ընդունել, զՔրիստոսէ ընդէ՞ր չառնուցուս յանձն՝ թէ ընկալաւ։ Եւ զի՞նչ ինչ իրս կարաց վճարել Եզեկիա. զի թէպէտ և ապրեցոյց զքաղաքն աղօթիւք, սակայն Աստուծոյ զօրութեամբն. իսկ եթէ զի՞նչ զօրութիւնս եցոյց Քրիստոս, լուր սմին մարգարէի՝ որ ասէ, եթէ Որոյ իշխանութիւնն 'ի վերայ ուսոց իւրոց է. և ոչ այսչափ միայն, այլ և յաջորդովքն ևս յանդիմանեսցուք զանամօթսն։

«Ոչ 'ի կարծս դատեսցէ» ասէ։ Տեսանես զաստուածութեանն նշանակ. Ակիւղաս՝ Ոչ ըստ տեսանելոյ աչաց դատիցի, և ոչ ըստ բանից յանդիմանեսցէ. իսկ այլքն՝ եթէ Ոչ ըստ լսելոյ ականջաց յանդիմանեսցէ։ Եւ այսպիսի իրք՝ ոչ ըստ մարդոյ են, այլ ըստ Աստուծոյ. ըստ այնմ, եթէ Ծածուկքն՝ Տեառն Աստուծոյ մերոյ են. և Մարդ ընդ երեսս և Աստուած ընդ սիրտն նայի։ Աստուծոյ միայն է ոչ ըստ կարծեաց դատել. իսկ մեք բազում անգամ այսր անդր վրիպիմք յիրաւանցն։ Տեսանես, զոր ինչ մարգարէքն յամենայն

տեղիս աստուածեղէն զօրութեանն տան, զնոյն մարգարէսն՝ սմա ածէ 'ի վկայութիւն. քանզի ոչ ասէ՝ եթէ երբեմն ըստ կարծեաց և երբեմն ոչ ըստ կարծեաց դատեսցի, այլ թէ և ոչ երբեք ըստ կարծեաց դատեսցի: Զի թէ մարգարէ ոք էր, վրիպէր արդեւք և սա, որպէս Սամուէլ և Եղիսեա, զի զբազում ինչ ոչ ճանաչէին յառաջագոյն, այլ յորժամ շնորհք Հոգւոյն կամէին՝ յայնժամ ճանաչէին: Նա և զի զանաչառ դատաստանն յայտ առնիցէ՝ ասէ. « Ոչ ըստ բանից յանդիմանեսցէ »: Տէս, որպիսի դատաւոր յայտ առնէ, որ ոչ ըստ բանից յանդիմանեսցէ, այլ և զծածուկս սրտի 'ի մէջ բերիցէ, և ըստ նմին տայցէ զվճիռ դատաստանին: Երկրաւոր դատաւորք՝ զյայտնիսն ևեթ դատին, և բազում անգամ առ 'ի չիմանալ՝ կորուսանեն զիրաւունս. իսկ Աստուած և զծածուկսն քննէ, և ամենայն ինչ մերկապարանոց կայ առաջի նորա. ըստ այնմ՝ եթէ Կենդանի է բանն Աստուծոյ և զօրաւոր և հատու [1] քան զամենայն սուր երկսայրի, և հատանէ և անցանէ մինչև 'ի բաժինս շնչոց և ոգւոց, և դատաւոր է մտաց և խորհրդոց. զի ոչ միայն զշունչն 'ի մարմնոյն մեկնէ, այլ և զոգին, այսինքն է զշնորհս հոգւոյն 'ի շնչոյն. զի ոչ բանիւք կարօտանայցէ և ոչ գրոյ ինչ պէտք լինիցի. Դիւրութիւնք բացան, ասէ, և ատեան ուղղեցաւ:

« Այլ արասցէ իրաւունս տնանկաց, և յանդիմանեսցէ զխոնարհս երկրի »: Անդ՝ զգիտութիւն յայտ առնէ, և աստ՝ զանաչառութիւնն, որպէս ընդ Ղազար և ընդ մեծատունն արար զդատաստանն. և այլուր՝ եթէ Ոչ իմ է տալ, այլ որոց պատրաստեալ իցէ. այսինքն՝ եթէ յինէն ինչ արգել չէ, բայց եթէ ինքեանք միայն առնիցեն զանձինս արժանի: Եւ բարւոք կոչեաց փառաւորս [2] երկրի, քանզի ոչ էին երկնից փառաւորք: Եւ տէս, զիարդ տայ իրաւունս մեծատանն՝ Աբրահամու, և ոչ ինչ յայն ապաստան լինի, զի զիշխանութիւնն ունի. քանզի արդար է աթոռ դատաստանացն նորա:

1 Յոր. Հաստատուն:
2 Այսպէս յօրինակին:

«Եւ եղիցի, ասէ, ածեալ զարդարութիւնս ընդ մէջ քուր. հարցէ զերկիր 'ի պատգամս բերանոյ իւրոյ». զոր Պաւղոս յայտնագոյն ասէ զնեռնէն, եթէ Խափանեսցէ զնա՝ յայտնութեամբ գալստեան իւրոյ և պատգամօք բերանոյ իւրոյ. ոչ ինչ կարօտանայցէ զինու և ոչ այլում ինչ լինիցելին մեքենայից. քանզի բաւական է միայն երևելն լուսոյ՝ հալածական առնել զխաւար: Կամիս տակաւ մի ուսանել՝ եթէ զիա՛րդ հարկանիցէ. իբրև ետես զունելիսն, Զո՞, ասէ, խնդրէք, և վաղվաղակի չոգան և զարկան զգետնի: «Հարցէ զերկիր 'ի պատգամս բերանոյ իւրոյ»: Որպէս զհօրէ ասացեալ է՝ եթէ Բանիւ Տեառն երկինք հաստատեցան, և յոգի բերանոյ նորա՝ ամենայն զօրութիւնք նոցա. որ սաստէ ծովու և ցամաքեցուցանէ, և զգետս ամենայն յանապատս դարձուցանէ, և որ ասէ արեգական չծագել և ոչ ծագէ. որպէս և մեք՝ որովք ձեռօք և շինեմք, նովին աւերել կարեմք, նոյնպէս և Աստուած. Բանիւ Տեառն, ասէ, հաստատեցան երկինք:

«Եւ եղիցի արդարութիւն ածեալ ընդ մէջ իւր, և ճշմարտութեամբ պատեալ զկողս իւր»: Սիմաքոս և Թէոդիտոն՝ եթէ Հաւատովք պատեալ կուշտք նորա. զի և մեք այնպիսի հանդերձ զգենուցումք: Եւ ո՞վ որ այսպիսի երևեցաւ մարդ, որ այսպիսի հանդերձ մըշտընջենաւոր ունիցի, որ Աստուծոյ միայն վայել է. զոր մէ 'ի կատարած մարգարէութեանս ասէ, եթէ Զգեցցի զզրահս արդարութեան. և հանդերձ, ասէ, զգենու Աստուծոյ: «Յայնմ ժամանակի, ասէ, գայլք և գառինք 'ի միասին ճարակեսցին[1]». և թէ ի պատգամս բերանոյ հարցէ զերկիր. և այլուր, եթէ Բարբառեցաւ և վիրաւորեցաւ երկիր. եթէ 'ի մարմին առնուցու՝ զորոյ զմեղսն եհար գաւազանովն, և եթէ յերկրի սատակումն, որ 'ի վախճանի լինելոց է՝ ոչինչ մեղանչես:

«Յայնմ ժամանակի գայլք և գառինք 'ի միասին ճարակեսցին»: Ակիղաս ասէ, թէ Նժդեհ լինի գայլ գա-

1 Այս բան մարգարէին, անմիջաբան ընդ առաջինան, Թուի վրիպակաւ մուծեալ աստանօր 'ի գաղափարողէն, զոր սուղ ինչ յետոյ առնու բացայայտել մատենագիրն:

ւրն. Սիմաքոս՝ եթէ ի միասին բնակեսցեն. Թէոդիտոն՝ թէ Պանդխտեսցին։ Զգազանամիտ բարս մարդկան կոչէ գայլս, և զգօնամիտս՝ կոչէ գառինս։ Այս եթէ հակառակիցէ ոք ցուցանել՝ թէ ոչ այդպէս, այլ զգազանաց իսկ ասացեալ է, ցուցցէ եթէ որպիսի՛ գաւազան բղխեալ է յարմատոյն Յեսսեայ։ Եւ այլազգ ևս. զի վասն վայրենամիտ մարդկան և զգօնաբարոյից ասէ, այլ թարգմանքն ևս յայտնագոյն ասեն. զի մին ասէ՝ եթէ նժդեհեսցի, և միւսն՝ թէ պանդխտեսցի. զոր չէ՞ հնար 'ի գազանս հանել, եթէ ոչ 'ի մարդիկ տեսանես զգալստեանն շահս։ Գայլք ընդ գառինս, և միմեանց ինչ ոչ մեղանչիցեն. զզօրականս իմա՛ց, զգազանամիտս, զվայրագս, զհարիւրապետս, զսպարապետս, ընդ խոնարհ և ընդ շինական մարդկան, վասն աստուածպաշտութեան և Քրիստոսի սիրոյն զգաստացեալք, և ոչ ինչ զայրանան միմեանց։

« Եւ ինձք՝ առ ուլս մակաղեսցին ». և զայն Աստուծոյ դիւրին է առնել. և զայս՝ թէ կամիմք՝ և մեք առնեմք։ « Որթք և առեւծք և ցուլք՝ 'ի միասին ճարակեսցին, և մանուկ տղայ ժողովեսցէ զնոսա։ Եզն և արջ 'ի միասին ճարակեսցին, և որդեակք նոցա խառն շրջեսցին. առեւծ իբրև զեզն՝ յարդ կերիցէ »։ Եւ ոչ վայրապար ասէ՝ եթէ 'ի միասին շրջեսցին, այլ 'ի ժամանակի կերակրոյն, յորժամ սեղանն կազմեսցի. ոչ զի զբնութիւնն փոխիցէ, այլ զի զբարսն շրջիցէ. քանզի ոչ ասաց, եթէ գայլն՝ գառն լինիցի, այլ թէպէտ և 'ի գազանութեանն իցէ՝ իշխել իշխեսցէ, այլ ոչ ինչ վնասիցէ շինականին. զի և այլուր զիշխանս խիստս՝ գայլս Արաբացւոց կոչէն գիրք։ « Եւ ինձք առ ուլս մակաղեսցին, և որթք և առեւծք և ցուլք 'ի միասին ճարակեսցին »։ Իւրաքանչիւր գազան՝ զիւր բարսն թողուցու. այն իսկ է՝ զոր վերագոյնն ասաց, եթէ Յանդիմանեսցէ զազգս բազումս։ Եւ ոչ ընդ այն է զարմանալ, եթէ ինքն առնիցէ իրաւունս և յանդիմանեսցէ զփառաւորս երկրի. այլ զի և 'ի մարդիկ տնկիցէ այնպիսի առաքինութիւնս, և զի զերկրաւորս՝ երկնաւորաց նմանեցուսցէ, և զմեծամեծս և զփոքունս՝ ընդ միով օրինօք հաւանեցուսցէ. զի մի՛ ոք հարստութեամբ զրկեսցէ զանաւագն. և այս՝ Աստու-

ծոյ արարչութեանն գործ է ։ « Եւ մանուկ մատաղ ժողովեսցէ զնոսա » ։ Այնպէս յօժարք և հաւանք լինիցին, զի մի իշխանաց ինչ կարօտանայցեն և մի օրինաց և մի այլ իմիք ինչ այսպիսեաց, այլ իւրաքանչիւր զանձինս յարդարիցէ. որպէս և ասէ իսկ, եթէ Ի վերայ արդարոց՝ օրէնք ինչ ոչ կան ։ Զի յորժամ ոք ՚ի քաղաքաքրիստոնէից հաւանիցէ, ուր ստոյգ քրիստոնեայք ոք իցեն, թէպէտ և կարի ոք անմիտ իցէ և ընաւ մատաղ մանուկ և զկարգս ինչ քրիստոնէութեան խոստանայցէ ցուցանել, դիւրաւ վաղվաղակի ժողովէ զամենեսեան, և ոչ ինչ աշխատ առնիցեն զայն՝ որ վերակացուն ոք լինելոց իցէ նոցա ։

« Եւ եզն և արջ ՚ի միասին ճարակեսցին, և որդեակք նոցա՝ խառն շրջեսցին » ։ Նոյն առաջին միտքն են, զի վայրենամիտք և զգօնամիտք՝ ՚ի միասին բնակեսցեն, և միմեանց ինչ ոչ վնասեսցեն վասն աստուածպաշտութեան ։ Տես, զիարդ մինչև ցմատաղ մանկտի խոնարհեցուցանէ զբանն, զոր և այժմ իսկ տեսանեմք և ՚ի տհաս հասակս մանկտւոյ զառաքինութիւն աստուածպաշտութեան ։ « Եւ առեւծ իբրև զեզն՝ յարդ կերիցէ » ։ Յորժամ տեսանիցես զայր մի զօրավար, որ ՚ի բազում յափշտակութեանց լի առնէր զսեղան իւր, և յարբեցութիւն և ՚ի շաղղակերութիւն հարեալ, հատանէր իբրև զառեւծ մի, և զայլոց զմարմինս քանցէր և զոսկերս խորտակէր և զիւր սեղանն լնոյր արեամբ և շաղղով, և յետոյ տեսանիցես զի վասն աստուածպաշտութեան՝ երբեմն պահիցէ և երբեմն զմիջին կերակուրսն ուտիցէ, յիշեսջիր զբանս մարգարէին՝ որ ասէ, թէ « Առեւծ իբրև զեզն՝ յարդ կերիցէ » . զի զվայրենութիւնն և զգազանութիւնն փոխեաց, ոչ ՚ի խառն ժողովելոյն միայն, այլ և յայսպիսի սեղանոյ. զի ոչ ինչ գազանական կամ դժգմնութիւն երևեսցի ՚ի սմա ։

« Եւ մանուկ տղայ ՚ի բոյն իժից և զկորեամբք իժից արկցէ զձեռն իւր, և նոքա մի վնասեսցեն նմա, և մի՛ կարասցեն հարկանել զոք ՚ի լերին սրբութեան իմոյ » ։ Սիմաքոս, Եւ խաղասցէ ստնդիաց ՚ի վերայ բունոյ իժից, և ՚ի տեսիլն քարբից՝ ստնահատոյցն զձեռն իւր հաստատիցէ, և ոչինչ մեղանչիցեն, և ոչինչ վնասիցեն յա-

ամենայն լերին սրբութեան իմոյ։ Այսինքն տկարք՝ թէպէտ և 'ի մէջ չարաց բնակեալ իցեն, սակայն մի՛ ինչ վնասեսցին 'ի չարութենէ նոցա. զի այնպիսի զօրութիւն ետ մեզ Աստուած՝ որում ոչ ինչ կարէ գամ գտանել չարութիւնն նոցա։ Զի եթէ շաղափքն սաքափաթմանց և թովչութիւնք ինչ ստաբանք յորժամ թողիցին՝ կարեն անապղդական առնել զմարմինս 'ի թունաց չար գազանաց, որչափ ևս առաւել օծութիւն Հոգւոյն և հոգևոր թովչութիւնն, որով թովեցան միտք մեր, կարիցէ առնել զմեզ անվնասականս՝ եթէ կամիցիմք. վասն որոյ ոչ միայն զմեր չարութիւնն 'ի մէնջ հանիցեմք, այլ այնպէս զօրագոյն լինիցիմք, զի և այլոց ևս չարութիւն՝ մեզ ինչ ոչ ազդիցէ։

Եւ ուստի՞ լինիցի այս. «Զի լցաւ երկիր ամենայն գիտութեամբ Տեառն, որպէս զջուրս բազումս՝ որ ծածկեն զծովս»։ Գիտութիւն Աստուծոյ առնէ զայս ամենայն՝ որով նորոգիմքն, որով յայլակերպան փոփոխիմք. ոչ մեք միայն, այլ ամենայն երկիր առհասարակ։ Եւ մի՛ ինչ զայն ասիցես՝ եթէ զՊաղեստինացւոց աշխարհէն ասիցէ՝ զամենայն երկիրն ըսլով գիտութեամբ, զի ոչ անսայ և ոչ առնու յանձն օրինակն՝ զաղքատութիւն բանին. «Որպէս զի ջուրք, ասէ, բազումք, զի ծածկեսցեն զծովս». և ոչ վայրապար զծով, այլ զծովս։

Եւ զի՞նչ, ասէ, գործ բարիք, կամ աստուածպաշտութիւն ինչ այնպիսի արդեւք գտանի առ քրիստոնեայս. ո՞չ կագք և կռիւք 'ի մէջ քրիստոնէից են, զի ընդ միմեանս նախանձին, զմիմեամբք կամին ելանել, փառասէրք, աշխարհասէր դատիւք և դատաստանօք լի են, և զծով և զցամաք 'ի շահ և 'ի վաճառ արկեալ. ո՞չ տեսանես, զի կենդանւոյն կլանեն զմարդիկ՝ իշխանք և զօրավարք քրիստոնէից. և արդ, ո՞ւր այսպիսի բանք կատարեցան առ քրիստոնեայս, կամ լցաւ ամենայն երկիր գիտութեամբ Տեառն. և ազգք ևս բազումք՝ որ լուան զքրիստոնէից կրօնս, և 'ի վայրենի մնաց ինչ ոչ շրջեցան. և արդ, ցոյց, ասեն, ո՞ւր առհասարակ օրէնք ինչ բարւոք կայցեն։ Կարծեմ թէ բազում ինչ բաջաղին և թարթափին մտօք, և խռովին և խռովեցուցանեն, և ջանան սուտ առնել զբանս և զմարգարէութիւնս.

և այնպէս համարին՝ թէ չկարիցեմք յայտ առնել. այլ մի՛ ինչ զանգիտէք, զի շնորհօքն Աստուծոյ՝ յորժամ՛ի ձեռս մտանիցեմք, որչափ ինչ պարգևեսցեն շնորհք սուրբ Հոգւոյն՝ տասցուք. զի վասն նորա իսկ փառացն ձգնիմք և վասն նորին պատերազմիմք: Ո՞րչափ պատերազմունս ցուցից քեզ՝ զի քակեցան. ոչ ինքնին իսկ բնութիւնն անձամբ անձին թշնամի էր, ոչ փայտից և քարանց երկիր պագանէին, և զզգալիս ամենայն՝ արեամբ ներկանէին. զի՞նչ ևս ընդհատ էին 'ի գայլոց. նա վատթարագոյն ևս էին քան զգայլս, և մանաւանդ ոչ միայն քան զգայլս վատթարագոյնք, զի նոքա 'ի կորիւնս իւրեանց գթան և խնայեն, և մարդիկ՝ առ բնութեանն գութ՝ անագորոյնք գտանէին. և զի՞ ջանայցեմք՝ զայս յարտաքնոցն յայտ առնել. այլ լուր իսկ մարգարէին՝ որ ասէ, թէ Զենուին զուստերս և զդստերս իւրեանց դիւաց. կամ որպէս 'ի Թագաւորութեանն գրեալ է, թէ Ամովնացւոց արքայն, յորժամ պատերազմ ստիպեաց, զորդի իւր եհան առաջի ամենեցուն խողխողեաց: Եւ արդ այս սակաւ ինչ գազանամտութեան նշանակ իցէ. ընդէ՞ր ոչ այժմ այնպիսի ոք գործ գործէ, և ոչ բուն հեթանոսն անգամ. այլ համարձակ որդիք ընդ հարս և ընդ մարս բնակեն, և գութ և խնամ ընդ ծնօղսն ունին. զի յայնժամ ոչ ինչ ընդհատ 'ի դահճաց էին հարքն՝ որդւոց, իսկ այժմ խնամ ունին սննդեան, հոգան 'ի կեանս և 'ի պատիւ հաստուցանել: Կամիցի՞ս և զայն ևս 'ի միտ առնուլ, թէ զիա՞րդ 'ի բոյն իժից մանուկ մատաղ արկանիցէ զձեռն և ոչ ինչ մեղանչիցեն. և այս ևս՝ առ քրիստոնեայս գտանի. զի 'ի մարտիրոսութեան, թէպէտ և զթոյնս գազանաց ունիցին, սակայն դաժանութիւն թիւնիցն՝ ոչ ինչ վնասիցէ նոցա. և բազում անգամ մանկտի ևս պսակեցան յայնպիսի պատերազմունս. և ոմանք զինչս վատնեն, և զիւրեանցն այլոց բաշխեն: Ո՞չ տեսանես, որչափ օրկանոցք ընդ ամենայն տեղիս շինեալ 'ի դարմանս հաշմից, որչափ վերակացութիւնք որբոց, տեսչութիւնք այրեաց. և զի՞ պիտոյ իցէ զայս արտաքուստ արտաքս թուել. մուտ յեկեղեցի և աչօք իսկ տեսանես զայսպիսի կարգս յօրինեալ. զի և որ զայս բանս ընդ մեր ընդդէմ գրեաց, ինքն

իսկ վկայէ՝ թէ աղքատք և մեծատունք, ազատք և ծառայք՝ զմի պատիւ ունին յեկեղեցւոջ։ Ո՞չ տեսանես, զի ամենեքեան առհասարակ 'ի միջէ սեղանոյ ելանեն [1]. բայց քեզ չէ օրէն իսկ տեսանել. կամ զխարդ ինձք առ. ուլս մանկաղին, պատերազմողն և գազանամիտ հզօրն՝ ընդ հեզոյն և ընդ խոնարհի։ Իսկ եթէ զամենայն ուղղութիւնսն միանգամայն չկարացին կատարել ամենեքեան, ընդ այն չեն ինչ զարմանք. այլ ընդ այն է սքանչանալ, զի ոմանք ամենայն վարուք կատարեալք, և ոմանք թէպէտ և ոչ ամենայն վարուք կատարեալ իցեն, սակայն 'ի գազանամիտ բարուցն ցածուցեալք են։ Իսկ երբ լցաւ ամենայն երկիր գիտութեամբ Տեառն. յորժամ ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա։

« Եւ եղիցի յաւուր յայնմիկ »։ Տեսանե՞ս, յորժամ այս ամենայն մերձ էր լինել, ապա ասէ. « Եղիցի արմատն Յեսսեայ, և որ կանգնելոց է՝ իշխան հեթանոսաց, 'ի նա հեթանոսք յուսասցին »։ Եւ արդ, ո՞ ոք յուսաց 'ի Զօրաբաբէլ կամ յԵզեկիա. և « Եւ եղիցի հանգիստ նորա 'ի պատիւ ». ո՞յր, որ և ոչ ճանաչին ումեք. իսկ 'ի Քրիստոս կատարեցաւ այս. « Հանգիստ նորա 'ի պատիւ », զերեզմանն՝ յորում թաղեցաւ. զի միշտ պատուի և փառաւորի։

« Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ յաւելցէ Տէր ցուցանել զձեռն իւր ». յայնմիկ՝ յորժամ այս ամենայն իրք կատարեցան, 'ի Քրիստոսի [2] գալստեանն. այլ յետ դարձին՝ « Ի նախանձու ժողովել զմնացորդս ժողովրդեան իւրոյ, և որ մնացեալ իցեն յԱսորեստանեայց անտի »։ Տեսանե՞ս, զի նախանձու Աստուծոյ իրքն գործէին։

« Եւ բարձրացուսցէ նշան 'ի վերայ հեթանոսաց. ժողովեսցէ զկորուսեալսն Իսրայէլի, և զցրուեալսն Յուդայ ժողովեսցէ 'ի չորից անկեանց երկրի. և բարձցի նախանձն Եփրեմի, և թշնամիքն Յուդայ սատակեսցին. Եփրեմ՝ այլ ոչ նախանձեսցի ընդ Յուդայ, և Յուդա՝ ոչ ևս նեղեսցէ զԵփրեմ »։ Զի թէպէտ և սակաւաւոր էր և զերկուս ազգսն միայն ունէր, այլ թա-

1 Յօր. Օտար գրչաւ՝ ելանէին։
2 Յօր. Ի Քրիստոս։

գաւորութիւնն անտի էր։ Եւ զԵգիպտացւոց հարուածս՝ որ յետ դարձին լինելոց էին՝ յիշեցուցանէ, զի զկէսն հարկանիցէ և զկէսն հնազանդեցուսցէ։ « Եւ եղիցի, ասէ, Ճանապարհ մնացելոյ ժողովրդեան իմոյ յերկիրն Եգիպտացւոց. որպէս յաւուրն՝ յորում ելին յերկրէն Եգիպտացւոց »։ Յիշեցուցանէ զառաջին անցսն՝ որ անցին ընդ Նաւսա։

## ԳԼՈՒԽ ԺԲ

« Եւ ասասցես, ասէ, յաւուր յայնմիկ. օրհնեցից զքեզ Տէր, զի բարկացար ինձ և ողորմեցար ինձ և դարձուցեր զբարկութիւն քո յինէն »։ Զի յԱստուծոյ՝ և 'ի բարկութեանն իսկ և 'ի հաշտութեանն՝ պարտ է գոհանալ. զի 'ի բարկութենէ անտի խոր հաշտութիւն ծնանի։ « Ահաւասիկ Աստուած իմ, փրկիչ իմ, Տէր իմ, և ես յուսացեալ եղէց 'ի նա և այլ ոչ եւս երկեայց »։ Աստի՝ իսկ պարտս իմն ցուցանէ, թէ զոր պարտէաքն՝ հատուցաք, և արդ ուրախ եմք։ « Եւ յուսացեալ եղէց 'ի նա ». քան զամենայն ինչ՝ զայս խնդրէ Աստուած։ Զինչ, ասէ, խնդրէ 'ի քէն Տէր Աստուած քո, այլ սիրել զնա և երկնչել 'ի նմանէ, և պահել զպատուիրանս նորա։ « Զի փառք իմ և օրհնութիւն իմ Տէր է, և եղև ինձ 'ի փրկութիւն »։ Ոչ միայն փրկէ, այլ և փառաւորս և լուսաւորս առնէ։ « Եւ առնուցուք ջուր ուրախութեամբ՝ յաղբերացն փրկութեան »։ Աստ՝ և ակնարկէ իմն. « Ցնծացէք և ուրախ լերուք, բնակիչք Սիոնի, զի բարձրացաւ սուրբն Իսրայելի 'ի մէջ նորա »։ Զամենեսեան, ասէ, կոչեցէք 'ի վկայութիւն, և ամենեցուն ցուցէք հանդէս. քանզի ոչ ինչ ամաչեմ, այլ կոչեմ համարձակ զամենեսեան։

# ԳԼՈՒԽ ԺԳ

« Տեսիլ Բաբելացւոցն »։ Ակիղաս ասէ. Կառք Բաբելացւոցն. Թէոդոտիոն և Սիմաքոս՝ Առած Բաբելացւոց։ « Զոր ետես Եսայի ». քանզի և այլ մարգարէքն տեսին։

« Ի վերայ լերին դաշտականի առէք նշան, բարձրացուցէք զբարբառ ձեր 'ի վերայ նոցա. մխիթարեցէք ձեռամբ, բացէք իշխանք, և ես կարգեցից և ես ածից զնոսա. սուրբք են՝ և ես ժողովեմ զնոսա »։ Ակիղաս, Ես ետու հրաման սրբելոցն իմոց, այսինքն՝ եթէ ես առաջնորդեցից զօրացն և զօրավարացն. և քանզի ինքն իմ յորդորեաց, զԿիւրոս Թագաւորէ ասէ, ես ածից զնոսա, երկնչիջիք 'ի Թագաւորէն։ « Դիմեալ գան սկայք կատարել զսրտմտութիւն իմ». իսկ այլ Թարգմանիչքն՝ զօրս ասեն փոխանակ սկայիցն։ « Խնդան՝ գան միանգամայն, և Թշնամանեն »։ Ակիւղաս՝ Ամբարհաւաճեալք ամբարտաւանութեամբ. Թէոդատիոն՝ Ուրախ են ընդ Թշնամանսն իմ։

« Ձայն ազգաց բազմաց 'ի վերայ լերանց՝ 'ի նմանութիւն ազգաց բազմաց. ձայն Թագաւորաց և ազգաց ժողովելոց »։ Ցայտ առնէ՝ եթէ բազում էին զօրքն, բազում և զօրավիգն օգնականութեան։ « Տէր զօրութեանց հրամայեաց զօրաց պատերազմողաց՝ գալ հասանել յերկրէ հեռաստանէ, 'ի ծագաց և 'ի հիմանց երկնից ». այսինքն 'ի Մարաց և 'ի Պարթևաց։ « Ահաւասիկ օր Տեառն անբժշկական »։ Բարւոք առնուն 'ի վերայ հանդերձելոցն. զի եթէ աստի յառաքինութիւնս ճգնիցիմք, գոն հնարք դեղոց բժշկութեան. ապա եթէ ոչ, յորժամ անդր երթայցեմք՝ այնուհետև տանջանացն բռնութիւն հասանիցէ 'ի վերայ, և ոչ երբեք տանջանացն լինիցի վախճան։ Վասն այնորիկ անբժշկական զօրն կոչէ, զի մի ոք աստի առանց բժշկութեան գտանիցի։ Նաև տեարք՝ յորժամ կամիցին զծառայս գան հարկանել, և 'ի մտի

այն կայցէ՝ զի Թողուցուն զմնաս յանցաւորացն, բազում անգամ երդնուն իսկ առաջի բարեկամաց, զի եԹէ ըմբռնեմ, ասէ, չտամ ապրել։ Եւ եԹէ կամիցիս ուսանել, եԹէ զիարդ իցէ օրն անբժշկական, մեկ երԹիցուք 'ի միասին առ մեծատունն՝ որ բազում սպասս, տաշտս, և սկտեղս ունէր ասատ, և անդ ինչ ոչ փչեաց[1] 'ի նմա, այլ այնչափ 'ի տագնապի էր, և զՂազար ես խնդրէր, զի երԹիցէ զովացուսցէ զծարաւեալ զայրեցեալ շրԹունսն։ Զիարդ ոչ ամաչիցես, զիարդ ոչ ակնածիցես՝ զնա խնդրել քեզ բժիշկ վիրացդ՝ յոր հաշիւդ, զոր հանապազ տեսանէիր և անողորմ զանց առնէիր, և ոչ երբեք խլրտէիր 'ի գուԹս, եԹէ դորին մարմնոյ սակի իցէ և նա. այլ վիշտք սաստիկք՝ զամօԹ մոռացուցանեն. և ո՞ ոք ոչ ողորմէր այնպիսի անհնարին ցաւոց, Թէպէտ և այն ոք իցէ, առ որ մեղանչականն գտեալ իցէ։ Եւ տես, զիարդ և ոչ մեծ ինչ իշխէր խնդրել. ոչ ապրել 'ի բորբոքեալ բոցոյն և ոչ ելանել 'ի գեհենէն, այլ սակաւ մասին մարմնոյն՝ սակաւ ինչ զովանալ. նա և ոչ զայն ոք տայր նմա. Վիհ մեծ է, ասէ, ընդ մեզ և ընդ ձեզ. զի մի կարծիցէ Թէ վասն զի առ Ղազարն անողորմ գտաւ՝ վասն այնորիկ արգելուցու զնա Աբրահամ երԹալ զովացուցանել զպասքեալ զտապացեալ շրԹունսն, և լինիցին իրքն՝ այլոց ծուլուԹեան պատճառք, և այնպէս համարիցին՝ եԹէ Ղազար յիրաւի ոչ հատոյց նմա բարի ինչ, զի չար գնաց ընդ նա 'ի կեանս իւրում։ Այլ իմ հայր կամ եղբայր կարեն բարեխօս լինել, քանզի ոչ կարէ հայր յայնպիսի տանջանս տեսանել և չողորմել, քանզի արդարև գԹայ և հանէ 'ի տանջանաց։ Վասն այսորիկ զի զայսպիսի զամենայն ցուրտ մխիԹարուԹիւնս բարձցէ Քրիստոս, և հաւանեցուսցէ յիւրոյ անձին յառաջինուԹիւնն յուսալ, և մի յայլոց ուրուք ապաստան լինել, ածէ զԱբրահամ 'ի մէջ և ասէ, եԹէ Վիհ մեծ է ընդ մեզ և ընդ ձեզ. զի եԹէ կամիցի ոք այտի այսր գալ՝ չէ հնար, և ոչ անտի ոք այդր. առաջնումն զարդար իրաւունսն եցոյց. Դու, ասէ, ընկալար զբարուԹիւնս և Ղազար զչարիս։ Այո՛, ասէ, և ես խոստո-

1 Այսպէս յօրինակին։

վանիմ և չկինիմ յուրաստ, զի ոչ այնչափ անամօթ ինչ իցեմ, թէ և ՚ի տանջանս ապիրատ դատանիցիմ, ոչ արդարութեան ինչ բանիւ կամիմ ապրել, այլ զի ողորմութիւն գտից։ Այլ վիհ մեծ է, ասէ, ընդ մեզ և ընդ ձեզ. զի առանց բժշկութեան է օրս, լի սրտմտութեամբ և բարկութեամբ։ Ցաւուք ասաց եթէ լի է. քանզի չիք տեղի ապաշխարութեան, այլ զամենայն՝ բարկութիւնն ունի. չիք տեղի ողորմութեան, և ոչ մարդասիրութեան. զի յայս ժամանակս պատրաստեաց Աստուած զդեղն ապաշխարութեան, և զայն օր առանց բժշկութեան արար։ Այլ թերևս ասիցեն, եթէ ո՞չ ապաքէն զմարդկեղէն բնութիւն խորտակէ, մի թէ չիցե՞մք ՚ի կաւոյ, մի թէ չիցե՞մք հող և մոխիր։ Ոչ է, ասէ, ժամանակս այնպիսի բանից, այլ յորժամ մեղանչէիքն, հպարտանայիք և ամբարտաւանէիք, փափկանայիք և արբեցութեամբ թմբրէիք՝ յայնժամ պարտ էր զայդպիսի բանս ճարտարս յիշել։ Խօսէր նահապետն Աբրահամ ՚ի ժամանակի ձգանցն, յորժամ աստուածասաստ բարկութիւնն եկեալ կայր ՚ի վերայ, մինչդեռ ատեանն էր և չև ևս էր վճիռ դատաստանին տուեալ, յառաջ քան զդահճացն մատնել. մի թէ կարիցե՞ն յետ վճռին տալոյ՝ այլազգ ինչ զօրէն դատաստանին շրջել. և ո՛չ լսիցես նմին իսկ Աբրահամու, զի մինչդեռ դատաւորն կայր և խօսէր՝ նա ժտէր և պաղատանս մատուցանէր, իսկ յետ իջուցանելոյ զթիւն արդարոցն մինչև ցտասն, Մի թէ կորուսանիցե՞ս, ասէ, զարդարն ընդ ամբարիշտն. զայն միայն ասաց և լռեաց. Նոյնպէս և անդ է ասել եթէ յետ վճռին տալոյ և գնալոյ՝ լռել պարտ է. զուր այնուհետև ջանայ որ. մինչ փութային էր՝ չփութայիր, և արդ զի՞նչ օգուտ է փութալդ. ինքնին Քրիստոս աղաչէ և չառնուս. և զի աղաչէ Քրիստոս, եկեսցէ Պաւղոս և ասասցէ, եթէ վասն Քրիստոսի բարեխօսեմք, իբրև թէ Աստուած իսկ աղաչիցէ մեւք. Աղաչեմք վասն Քրիստոսի, հաշտեցարուք ընդ Աստուծոյ. զՈրդին իմ, ասէ, հաշտեցի ընդ քեզ. որ ոչն ինչ մեղաւ ումեք, այլ և զմեղս եւս բազմաց ընդջեաց. եթէ զնա հաշտեցուցանես՝ և ես հաշտ եմ. եթէ նորա աղաչանացն ոչ լսես, զիս ՚ի զուր է ա-

ղաչելոյ։ Եւ թէպէտ և ոչ հաշտեցուցեր զփրկիչն և զազատիչն, սակայն կամ մեամ, տեսեմ և բաւեմ, և աղաչեմ և ոչ կամիմ դառնալ, և ոչ յանձին ունել զաղաչանսն. և արդ զիմ՞որդ կարիցես կարդալ առ իս, յորժամ պատժիցեմն և տանջիցեմն. քան այժմդ յաղերս անկեալ աղաչես, յայնժամ արժան էր քեզ՝ մինչ կոչէին՝ լսել և անսալ. և արդ 'ներէր քեզ և ողորմէր և հաշտէր և դառնայր առ քեզ. և անձամբ անձին աբարեր քեզ զհաշտութիւնն դատախազ։

« Ահա աւասիկ որ Տեառն գալոց է անբժշկական. լի բարկութեամբ, սրտմտութեամբ, առնել զտիեզերս յանապատ »։ Որ Տեառն կոչէ զօրն, զի ամենայն բերանք անամօթք կարկելոց են. յայնժամ իմանան ամենեքեան՝ որ այժմ ապստամբք են, եթէ ամենայն ինչ յԱստուծոյ է, յորժամ զպատիժս պահանջիցեն, յորժամ առաջին կացցեն և դողայցեն, յորժամ որ աստ արհամարհեալքն էին՝ քան զճառագայթս արեգականն ևս աւելի պայծառագոյն զգենուցուն զլուսաւորութիւնն, և ամբարտաւանք՝ որ աստ յայտնիք և երևելիք էին, գլխիվայր, գլխարկեալ տագնապեալ ձգիցին 'ի տանջանսն։ Որ Տեառն յայնժամ, յորժամ ամենեքեան՝ ըստ իւրաքանչիւր գործոցն ընդունիցին զհատուցումն։ Եւ զի ոչ միայն սրտմտութեան բարկութեան է, այլ և պարգևաց և պատուոց, ընդէ՞ր, ասեն, 'ի չար անուանէն կոչի և ոչ 'ի բարւոյ. վասն զի և վասն քոյոյ ծուլութեան, զի գոնեա այնպէս զարթուսցէ։ Եւ այլազգ ևս, զի թէ պարգևաց է՝ ամենեքին գիտեն, և թէ պատժոց ևս իցէ՝ այնմ չեն տեղեակ. և այնմ հաւատան և այսմ ոչ հաւատան։

« Դնել զտիեզերս ամենայն յանապատ »։ Եւ վասն է՞ր ասաց, եթէ զամենայն տիեզերս. լուր և զյաջորդմն. « Եւ զմեղաւորս կորուսանել 'ի նմանէ ». յորժամ զմեղաւորսն գեհեննն և զարդարսն արքայութիւնն ընդունիցի, բարւոք ասաց եթէ զտիեզերս՝ ուր մեղքն գործին. յայնժամ քաղաքք և տունք և ամենայն ինչ շփոթեալ եղծանիցին և կարգք աշխարհիս, և դարձեալ վերստին նորոգիցին. Թէպէտ և ոմանք չհաւատան։ Բարւոք ասաց, թէ կորուսանել 'ի նմանէ. քանզի ոչ եթէ կորստեամբ կորնչիցին, այլ 'ի հուր

մատնեալ՝ տայցեն զառկասիս ընդ իւրաքանչիւր գործոց:

« Զի ստուերք երկնից՝ Հայկեան համաստեղն և ամենայն զարդուն երկնից՝ լոյս մի տայցեն ». քանզի ո՞ւմ առնիցեն լոյս, յորժամ արեգակն արդարութեան յայտնիցի. զի որպէս յերևել արեգականս՝ ամենայն լուսաւորք 'ի խաւար դառնան, այնպէս և յերևել արեգականն արդարութեան, այլ ինչ այնուհետև լուսաւոր ոչ երևի: «Հրաման տաց ամենայն տիեզերաց 'ի չարիս»: Տես զվճիռն, որպիսի՛ չարիս ամենայն տիեզերաց բարբառի: « Եւ ամբարշտաց՝ զմեղս իւրեանց. կորուսից զթշնամանս անօրինաց, և զամբարտաւանութիւնս ամբարտաւանից խոնարհեցուցից »: Եւ վասն է՞ր արդեւք զամենայն կերպարանս չարեաց թողեալ, և զայս միայն 'ի ձեռն առեալ. զի զառաւելութիւնն ցուցցէ, զարմատ չարեաց, զաղբիւրն ամենայն յանցութեանց, որով սկիզբնն և կատարած կորստեանն աշխարհի եղև, որ և սկիզբն չարեաց, որ զդևն ընկէց 'ի վայր, և զայլս ընդ նմին պառակտեաց: Վասն այսորիկ և զայսպիսի անհնարին ցաւս բժշկեացէ Աստուած, ամենևիմբ զամենայն իւր խոնարհութեամբ մատակարարեաց, և զծնունդն և զչնորհսն, և զաշխարհի շրջելն և զկոչումն աշակերտացն և զկոյսն՝ յորմէ ծնաւ և զընկալուչն՝ որում զկոյսն էր խօսեալ, զի հիւսնական արուեստին էր արուեստագէտ, և տեղի ևս չունէին իջևանի, և այնպէս ևս չքաւորք՝ զի և յօրրոցս անգամ ոչ եդաւ, այլ իբրև զմի ոք յաղքատաց որդւոց՝ 'ի մսուրն, յանասնականն սեղան: Նա և յորժամ 'ի չափս հասակ եկեալ հասեալ էր ըստ մարմնաւորութեան, Ա՛յլ կանայք, ասէ, կերակրէին զնա յընչից իւրեանց. ինքն իսկ ասէր, եթէ Որդի մարդոյ ոչ ունի տեղի՝ ուր դիցէ զգլուխ իւր: Առաքեալս նոյնպիսիս կոչեաց, կրօնս խոնարհագոյնս եդ, յամենայն կողմանց ամրացուցանել զխոնարհութիւնն, և զամբարտաւանութիւնն իբրև զգազան մի չար՝ հալածէր. և այսպէս և 'ի սեղանոյն և 'ի մահճաց և 'ի գնացից և 'ի համանդերձից և 'ի խիստ տալոյ և 'ի խաչէն չարչարանաց և յայլ ևս բազում իրաց ոչ այլ ինչ ուսուցանէ մեզ Աստուծոյ տնտեսութիւնն, բայց միայն զխոնարհու-

թիւն։ Լուաց զոտս մատնչին, և այն իսկ քան զամենայն ինչ զարմանալի էր։ Տեսանե՞ս, որպիսի հեզութիւն եցոյց. առ ապտակ 'ի ծնօտ 'ի ստրկէն, և համբերէ առաքինութեամբ. անարգի, անգոսնի յամենեցունց 'ի բնէ մինչև ցայժմ, և զամենայն ինչ ասէր և արդեամբք կատարէր[1] 'ի փրկութիւն այնոցիկ՝ որ անգոսնեն և արհամարհեն։

«Եւ եղիցի որ մնացեալն իցեն՝ իբրև զայծեամն փախուցեալ, և իբրև զոչխար մոլորեալ, և ոչ ոք իցէ՝ որ ժողովիցէ, իբրև զմարդ մի 'ի ժողովուրդն իւր դառնալ, և յերկիրն՝ ուստի ելեալ իցէ՝ փախստեայ անկանել»։ Ոչ միայն զյոռութեանցն ևեթ բարբառի, այլ ցուցանէ՝ եթէ և առաքինութեանցն որչափ ինչ նահատակութիւնք են։ «Եւ եղիցին մնացեալքն պատուականք առաւել քան զոսկի անհուր, և մարդն առաւել պատուական եղիցի քան զականս պատուականս Սոփորեայ»։ Տեսանե՞ս զգեղ առաքինութեանցն, տեսանե՞ս զպայծառութիւնն։

«Զի երկինք շարժեսցին և երկիր սասանեսցի 'ի հիմանէ իւրմէ, վասն բարկութեան սրտմտութեան Տեառն»։ Դարձեալ 'ի տրտմականսն շրջէ զբանսն, և անդ իմն յաճախագոյնս յամէ. քանզի այն իմն աւելի զգաստացուցանէ և առնէ պիտանիս։ «Երկինք, ասէ, շարժեսցին». զի եթէ Զօրութիւնք երկնից շարժեսցին, որչափ ևս առաւել երկինք. զի և 'ի նմանէ՝ որ այնչափ ժամանակս դարմանեցան, լինիցին պատճառք յաւիտենից տանջանացն, առատութիւն բարութեանց երկնից, որ հանապազ կերակրէր զնոսա։ Մի այնպէս կարծիցես զգալուստն՝ որպէս զառաջինն, զի առանց տանաձայն իմն առնելոյ եկն. զի յայնժամ զմեղս եկն բառնալ, և այժմ զարդարութեան վրէժ խնդրել. յայնժամ 'ի բժշկաց կարգի, և այժմ 'ի դատաւորի կերպարանս. յայնժամ զորթն տնկեաց, և այժմ զպտուղն պահանջէ. վասն այնորիկ զամենայն զայս դղրդդել, զի ուսանիցիս զնորին առաւելութիւնն, և 'ի միտ առցես՝ թէ և յայնժամ այնպէս կարէր գալ. զի եթէ Ի ձեռն նորա են ամենայն ծագք երկրի, և հայի

1 Յօր. Ասէ և արդեամբք կատարէր։

յերկիր և տայ դողալ նմա, ընդ այն զի զարմանաս՝ եթէ 'ի գալստեան նորա դղրդէ զամենայն։

« Վասն սրտմտութեան բարկութեան Տեառն զօրութեանց ». քանզի և օդիքն զգայցեն բարկութեանն Տեառն։ « Եւ եղիցին որ մնացեալ իցեն՝ իբրև զայծեամն փախուցեալ ». ողք յարդարոցն քակիցին, ոչ ուրեք գտանիցեն պատսպարան ինչ և մխիթարութիւն։ « Եւ իբրև զոչխարս մոլորեալս ». յիրաւի իսկ, քանզի զՀովիւն [1] ոչ ծանեան։ « Եւ ոչ ոք իցէ՝ որ ժողովիցէ ». և զիա՞րդ ժողովիցեն, զի Աստուած է որ ցրուէն։ Եւ յայսմ վայրէ անդրէն 'ի տեղիսն շրջէ զբանն. « Ահաւասիկ, ասէ, ես յարուցանեմ 'ի վերայ ձեր զՄարս՝ որ ոչինչ համարիցին զարծաթ և զոսկի. զաղեղունս խորտակեսցեն զարանց երիտասարդաց »։ Միմաքոս ասէ. Աղեղամբք՝ զերիտասարդս խորտակեսցեն։ « Եւ մանկտւոյ ձերում մի՛ ողորմեսցին »։ Անհնարին չարիք են՝ յորժամ թողութեան բանք ինչ ոչ երևեսցին. և տե՛ս, տոցա որպիսի՛ ինչ բարութիւնք, և նոցա որպիսի՛ չարիք, և զփոփոխումն մեծասքանչ։

« Եւ եղիցի, ասէ, Բաբելոնն՝ որ փառաւորդ կոչեցեալ է 'ի թագաւորաց Քաղդէացւոց, զոր օրինակ կործանեաց Աստուած զերկիրն Սոդոմայեցւոց և Գոմորացւոց, և այլ ոչ ևս բնակեսցի մինչև յաւիտեանս ժամանակաց։ Եւ հանգիցեն անդ գազանք, և լցցին տունք նոցա վայիւ և աղաղակաւ. անդ հանգիցեն համբարուք և անդ դևք կաքաւեսցին, և անդ յուշկապարիկք բնակեսցեն, և ոզնիք ձագս հանցեն յապարանս նոցա »։ Համբարուք կամ յուշկապարիկք՝ ոչ եթէ անձն ինչ ունիցին և բնակեսցեն 'ի Բաբելոնի, այլ 'ի մարդկան սովորութենէ, որ ինչ 'ի միջի նոցա համբաւք պաշտիցին 'ի նշանակ աւերածոյ և թափուր լինելոյ քաղաքաց 'ի բնակչաց՝ առնուն գիրք և պատմեն զամենայն ինչ՝ որ նոցա ընտանի իցէ. ոչ 'ի հաստատութիւն թէ արդարև այն այնպէս ինչ է, այլ որում իմիք նոցա ընդել իցեն՝ առեալ զնորին երեսս, այնու խօսիցին ընդ նոսա գիրք։ Իսկ այլք՝ փոխանակ համբարուաց՝ Ջայլամունս ասեն։ Ակիղաս ասէ.

1 Յօր. Քան զհովիւն։

Դևք թաւք և հերաւորք. Սիմաքոս և Թէոդոտիոն, Դևք խոզանեալք և աշտանակամազք և յուշկապարիկք։ «Եւ միմեանց ձայն տայցեն յիղիմ[1]»։ Սիմաքոս ասէ. Քրարքուս. Թէոդոտիոն՝ Եւքարքաւկիիմ. Եբրայեցին՝ Իւանիիմ։

## ԳԼՈՒԽ ԺԴ

«Վաղվաղակի հասեալ և գայ, և աւուրք հատուցմանն նորա ոչ յերկարեսցին». զի առին զթագաւորութիւնն Բաբելացւոց՝ Մարք և Պարթևք։ «Եւ ողորմեսցի Տէր 'ի վերայ Յակովբայ, և ընտրեսցէ նա զԻսրայէլ». 'ի կատարել եօթանասուն ամին՝ որ յԱստուծոյ նշանակեալ էր գերութեան ժողովրդեանն, լինէր նոցա դարձ յերկրէն Բաբելացւոց։ «Եւ յաւելցի ընդոծինն, և բազմասցի տունն Յակոբայ, զի ոչ ոք իցէ՝ որ ըմկիցէ, և խախտիցէ զնոսա յերկրէն Տեառն։ Ընկալցին զնոսա հեթանոսք, և համբերձեսցեն ածցեն զնոսա 'ի տեղիս իւրեանց»։ Կիւրոս թագաւոր յորժամ ետ հրաման ազգաց և լեզուաց ժողովել և տանել զնոսա մեծարանօք յերկիրն Իսրայելացւոց, և բաժանեցին զնոսա որդիքն Իսրայելի 'ի վերայ երկրին Աստուծոյ 'ի ծառայս և յաղախնայս. զի ոչ միայն այնպիսի փոյթ արկ 'ի սիրտ թշնամեացն՝ զի ժողովեսցեն և ածցեն ևեթ զնոսա, այլ զի 'ի հաճբաւ աս-

1 Յօրինակին եդեալ կայր ստամնոր բնաբանս այս, ուստի նշանօք ինչ զանազանելոյ թէ որդեօք բանք Մարգարէին իցեն եթէ յաւելորդութիւն բանիցն Թէոդոտիոնի. մեք զառաջին կարծիսն ընտրելով եդաք զայն 'ի մէջ չակերտից ըստ օրինակի այլոց բանից Մարգարէին. քանզի թէպէտ և չիք 'ի թարգմանութեան Եօթանասնից, որով և 'ի թարգմանութեան հայկականին. սակայն գտանի յեբրայեցին և 'ի վուլկատայն Հերոնիմեայ. զի վերջինս ունի այսպէս. «Et respondebunt ibi ululæ», այսինքն «Եւ ձայն տայցեն անդ բուիճակք»։ Իսկ եբրայեցին գնէ. וענה איים Վէհանն իիմ. այսինքն «Կարգայցեն բուիճակք». Թերևս զերկասին բառքս 'ի միասին խառնելով եդեալ է ստամթերի եղանակաւ եբրայեցերէնն՝ Իւանիիմ։ Իսկ Իղիմ թուի լինել եբրայական բառն איים իիմ, որ է բուիճակ կամ կաչկամ։ Իսկ զնշանակութիւն Քրարքուս և Եւքարքաւկիիմ բառիցն չկարացաք ստուգաբանել, չունելով 'ի ձեռին զպատառիկս հատուածոց թարգմանութեանն Սիմաքոսի և Թէոդոտիոնի։

տուածպաշտութեան՝ բազումք յռամկացն և զանձինս ևս 'ի ծառայութիւն յօժարեցին գրել. որպէս և յեգիպտոսէ, զի եղանէին ընդ ժողովրդեանն Աստուծոյ բազում խառնիճաղանճ. և անդ կատարէր, եթէ Եղիցին գերեալքն՝ գերեվարք նոցա, և արկցեն 'ի ծառայութիւն զայնոսիկ՝ որ տիրեցին 'ի վերայ նոցա։

«Եւ եղիցի յաւուր յայնմիկ, յորում հանգուսցէ զքեզ Տէր 'ի ցաւոց, առնուցուս զողբս զայս 'ի վերայ Թագաւորին Բաբելացւոց. զիա՞րդ դադարեաց կայ պահանջողն»։ Եւ այն են զարմանք և սքանչելիք, զի զչարիսն՝ հանգիստ կոչէ. զոր Ակիւղաս լուսաւորագոյնս ցուցանէ, թէ զիարդ նուաղեցին դժոխք 'ի գործոց, տեսեալ զչարութիւնն նորա։ «Դառնացան 'ի պատահելն քեզ». այսինքն՝ բարկացան. զոր Ակիղասն ասէ, եթէ Ի ներքուստ մեղկացան. Սիմաքոս՝ թէ Շարժեցան. Թէոդոտիոն՝ թէ Բարկացան, և նորա թշնամին և մահու [1]։ «Խորտակեաց Տէր զլուծն մեղաւորաց և զլուծն իշխանաց. եհար զհեթանոսս անբժշկական սրտմտութեամբ. ամենեքեան պատասխանի տայցեն և ասասցեն. Եւ դու 'ի պարտութիւն մատնեցար իբրև զմեզ, և ընդ մեզ համարեցար»։ Տե՛ս, զի շարժէին և դղրդէին և խռովէին, և յայտ առնէին, թէ Աստուծոյ պատիժք են և Աստուծոյ գործ՝ որում ոչ ակն ունէին, և ոչ յոյս ինչ կայր այնպիսի իրաց. և յիրաւի ասացաւ, եթէ «Զիա՞րդ անկաւ յերկնից արուսեակն՝ որ ընդ առաւօտս ծագէր»։ Ակիւղաս ասէ. Զիա՞րդ անկար յերկնից ողբալով, որդիդ առաւօտու։ Եւ ոմանց այսպէս կարծի, եթէ վասն ընդդիմակաց զօրութեանցն ասացեալ իցէ բանս. քանզի և Քրիստոս իսկ ասէ, թէ Տեսանէի զսատանայ իբրև զփայլակն՝ զի անկանէր յերկնից։ Եւ մի ինչ զրպարտեսցուք զպատմութիւնս. զի թէպէտ և այլ ինչ միտս ունիցի բանս, սակայն և զայս ընկալցուք, զի և առ այժմ և այս պիտանացու է. և արդարև հիանալ եթէ զիա՞րդ անմարմնական զօրութիւնն է, և անկաւ յերկնից՝ որ ընդ առաւօտուն ծագէր, և առաքէր առ ամենայն հեթանոսս։ Տեսանե՞ս, մերթ յիշեցուցանէ նմա զամբարտա-

1 Այսպէս յօրինակին։

ւանութիւնն ։ Սերմն չար, զոր ի սկզբանէ սերմանեաց սատանայ, տես, զիա՛րդ բուսաւ և աճեաց. յորժամ կշռեցես ընդ կեանս երկրի՝ զչարիսն, ապա տայ քեզ իրաւունս Աստուած մարգարէիւն. զի եթէ ընդ այսչափ կարեաց կայ և ընդ պէսպէս փոփոխմամբք, և ոչ ինչ կարաց կարճել ՚ի յանդգնութենէ, զի մի ժառանգի ելանել ՚ի բարձրութիւն, քանզի ոչ ինչ սակաւ կարծեաց անմահութեան և հանդստեան հասանել Ադամ, այլ և զուգակամ Աստուծոյ կամեցաւ լինել. և արդ զիա՞րդ ոչ՝ որք պատժեցանն ՚ի սատանայէ՝ ուսուցին քեզ զմարդկեղէն բնութիւնդ։ Նաև վասն Ծուլացեաց թագաւորին ասէ, եթէ Դու ասէիր Աստուած եմ և ոչ եմ մարդ. և Աստեղատանեայցն ասէր, եթէ Ըմբռնեցից զտիեզերս՝ իբրև զբոյն մի, և իբրև զձուս մնացեալ՝ բարձից։ Այսպիսի զգուշութիւն էր, զի մի անցանիցես ըստ սահմանն՝ որ եդաւ քեզ, և անցանես. եթէ արձակ թողեալ էր զքեզ, զիա՞րդ ոչ եւս մեծամեծս քան զառաջինն գործս գործէիր։ Ոյք զաշտարակն շինէին՝ յայսպիսի ամբարտաւանութեան միտս էին, և ՚ի հեթանոսս այնս էր լեալ, և ամբարշտութեանն կերպարանք այսպիսի իրք երևէին. և Աստուած միշտ հնարի՝ զի զցանկութիւն ինչասիրութեանն բարձցէ, զի մի և ցանկանայցէ ոք և ըղձանայցէ աւելի ինչ քան զչափն։

« Այս այն այր է՝ որ զայրացուցանէր զերկիր ամենայն, և շարժէր զթագաւորս, որ առնէր զամենայն տիեզերս աւերակ »։ Զինչ խօսիս, ողբաս և ամբաստան լինիս. այսպիսի ինչ են ողբքս. ամբաստանութիւն չարեաց, իրաւունս ցուցանել Աստուծոյ վասն իւր՝ թէ յիրաւի ած ՚ի վերայ նորա պատիժս. զի նա՝ զորս ՚ի գերութեանն էին՝ ոչ արձակեաց։ Տեսանես, զի խրատութիւն նորա եղև Աստուծոյ զօրութեանն, որ ՚ի նա սատակեցաւ՝ պատճառք, մահն նորա չարաչար։ « Անդ դու անկցիս ՚ի վերայ լերանց իբրև զմեռեալ գարշելի »։ Տեսանե՞ս, զի և այս ոչ վայրապար ինչ եղև, այլ վասն իւրոց չարեացն. վասն այնորիկ յառաջագոյն ասէ, զի մի կարծիցես թէ ինքնեկ իցեն տանջանքն. ոչ ըղվախճան միայն ասէ, այլ զի և այլազգ իմն անհնարին մահու վախճանեսցի։ « Ամենայն թագաւորքն հե-

Թանտասաց նմանեցին պատուով, դու անկանիցիս 'ի վերայ լերանց երբեք զմեռեալ գարշելի ». զի այլքն պատուով նմանեցին, և դու 'ի պատիժս և 'ի տանջանս:

« Որպէս ձորձք ինչ արեամբ թաթաւեալ՝ որ ոչ իցեն սուրբ, նոյնպէս և դու ոչ սրբեսցիս, փոխանակ զի ապականեցեր զերկիր իմ, և զժողովուրդն իմ կոտորեցեր. մի՛ մնասցես յաւիտեանս ժամանակաց: Զոր օրինակ խօսեցայ՝ այնպէս լիցի, և որպէս խորհեալ եմ՝ այն կայցէ յաւիտեան. կորուսանել զԱսորեստանեայս յերկրին իմում և 'ի վերայ լերանց իմոց »: Տեսանե՞ս, ուստի են պատիժք նորա. նա աւանիկ դու իսկ հրամայեցեր, և 'ի վեր և 'ի խոնարհ զայդ ասես, եթէ Ածից զԹագաւորն Բաբելացւոց, և չիցէ ոք՝ որ հանդարտել կարիցէ նմա. և աստ ամենևին իմն հակառակ այնր՝ տաս զհրամանն: « Սերմն չար, պատրաստեա զորդիս քո 'ի սպանումն »: Եւ ընդէ՞ր արդեւք. ո՞չ ապաքէն դու ետուր նմա իշխանութիւն երկրի: Եւ դարձեալ. « Զի մի՛ յառնիցեն և ժառանգիցեն զերկիր և լնուցուն զերկիր պատերազմաւ ». և արդ վասն հանդերձելոց ինչ իրաց կրեն զպատիժս՝ զոր ոչ երբեք գործեցին: «Վասն մեղաց, ասէ, հօր քո »: Եւ այս զիա՞րդ 'ի դէպ ինչ իցէ. այլ քանզի և նոքա անողորմք հարանցն լինէին, յառաջագոյն բառնայ զնոսա, զի մի՛ այնպիսի ինչ գործ գործիցեն, զի պատերազմասէրք, հեռասէրք և կռուողք էին: Իսկ ո՞վ իցէ՝ զորմէ ասէն՝ թէ « Սերմն չար ». զի զՆաբուգոդոնոսորայ չէ ինչ մարթ ասել, քանզի որդի իւր ա՛ռ 'ի նմանէ զթագաւորութիւնն և բարւոք մահու վախճանեցաւ. իսկ զԲաղտասարայ արդեւք իսկ ակնարկիցէ, որ որդւովքն հանդերձ սպանաւ: Եւ ընդէ՞ր արդեւք ասէ, եթէ Զերկիրն իմ կորուսեր և զժողովուրդն իմ կոտորեցեր, և զայն Նաբուգոդոնոսորայ էր արարեալ և ոչ Բաղտասարայ. իսկ զԱսորեստանեայսն իսկ ասիցէ՝ որ ծանրատաղտուկ բեռն էին Հրէիցն. այլ զայս ասասցուք, թէ որ 'ի սուրբ սպասն ոչ խնայեաց, այլ անառակ արբեցութեամբքն պղծեաց, զիա՞րդ այլ ումեք խնայէր. վասն այսորիկ մատուցեալ յառաջագոյն ասէ, եթէ Ծանրացուցեր 'ի վերայ նոցա զլուծն, և փոխանակ զի ես մատնեցի զնոսա 'ի սակաւ ինչ, դու մատնեցեր զնոսա 'ի չար

խիստ, և ոչ արարեր 'ի վերայ նոցա ողորմութիւն և ոչ խիղճ։ Իսկ հայրն նոցա այսպիսի իրաց գործս ցուցանէր, զի Դանիէլի երկիր եպագ, և ետ հրաման՝ եթէ ոք բանս հայհոյութեան խօսեսցի զԱստուծոյ Սեդրաքայ, Միսաքայ և Աբեդնագովի, 'ի կորուստ մատնեսցի և տուն նորա աւար հարցի։

« Այսպէս ասէ Տէր զօրութեանց. Եւ եդից զԲաբելոն աւերակ, զի բնակեսցեն 'ի նմա իժք ». իսկ այլքն ասեն՝ եթէ ի ժառանգութիւն իժից. Եբրայեցին ասէ Իկիփոտի [1]։ « Եւ եղիցի իբրև զոչինչ, և արարից զնա խորխորատ տղմի 'ի կորուստ »։ Քան պատերազմողացն մատնել, զի բնակիչքն ոչ գտանիցին՝ այն է անհնարին չար, երկիր՝ որ ինքնին գործիցէ, և յայտ առնիցէ զայսպիսի չարիս՝ որ մեղան նմա։ « Այսպէս ասէ Տէր. զոր օրինակ խօսեցայ՝ այնպէս լիցի. որպէս խորհեալ եմ՝ այն կայ յաւիտեան. կորուսանել զԱսորեստանեայսն յերկրէն իմմէ և 'ի վերայ լերանց իմոց »։ Կամ զԲաբելացիսն ասէ, կամ ևս նմանագոյն. զի Բաբելոնի՝ ընդ Ասորեստանեօքն էր, բայց զԱսորեստանեայսն՝ Բաբելացիքն առին, և ոչ եթէ Մարք։ Իսկ աստ ասէ, եթէ Յարուցից 'ի վերայ ձեր զՄարս. կամ թերևս զԱսորեստանեայց թագաւորութիւնն Բաբելացիքն առին, ոչ պատերազմաւ, այլ տէրութեան օրինօք, և ապա կոտորեցին զտոսա Մարք. զի զայն՝ եթէ յարուցից, մի երբեք զԲաբելացւոցն կարծիցես, որպէս ոչ զԱսորեստանեայցն։

« Տեսիլ Փղշտացւոցն։ Յամին յորում մեռաւ Աքազ արքայ, եղև պատգամս այս 'ի վերայ Փղշտացւոց։ Մի խնդայք և մի ուրախ լինիք, ամենայն այլազգիք. զի խորտակեցաւ լուծն հարկանողաց ձերոց ». իսկ այլքն՝ բեկումն ասեն, քանզի բեկաւ իսկ. Ակիւղաս՝ Գաւազան իշխանութեան պահանջողաց. և Սիմաքոս և Թէոդոտիոն՝ Չվարոց տանջման, ասեն, փոխանակ ընդ լծոյ հարկանողացն ձերոց։ « Զի 'ի զաւակէ օձից՝ ելցեն քարբք, և 'ի նոցա ծննդոց՝ օձք թևաւորք ». իսկ այլքն՝ բասիլիսկոս ասեն, որ հայելովն միայն՝ սատակէ։ Աստի ուսանիմք փոփոխմունս իրաց, որ

1 Եբրայական բնագրին դնի קפד Կիփօդ, որ է իժ։

ոչ ըստ մարդկան, այլ ըստ Աստուծոյ կամացն. զի որ փոխէն զժամս և զժամանակս, նոյն է՝ որ կացուցանէն և փոփոխէ զթագաւորս։ Յորժամ տեսանիցես իշխան յանդուգն և անողորմ, մարդաչախոժ՝ թագաւորել, մի այնպէս աղօթս առնիցես, զի նա 'ի միջոյ բարձցի, այլ զԱստուած ընդ քեզ հաշտ առնիջիր, որ և զխստութիւնն նորա կարէ կակղացուցանել. և եթէ զԱստուած ընդ քեզ հաշտ ոչ առնիցես, կարող է և այլ խիստ իշխանս յարուցանել։ Եւ արդ մի 'ի մարդիկ ապաստան լինիցիմք, այլ 'ի վերին իշխանութիւնն, ուստի և իշխանացն իշխանութիւնք կարգին. իբրև զհոսանս ջրոց՝ այնպէս են սիրտք թագաւորաց 'ի ձեռս Տեառն, և յոր կողմն և կամի՝ դարձուցանէ զնոսա։ Եւ արդ մի 'ի սրտէն երկնչիցես, այլ 'ի ձեռանէն՝ որ զսիրտն ունի. զի ուր Աստուած հաշտ իցէ, և 'ի հրոյ մէջ ցօղ լինի. իսկ եթէ Աստուած կագիցէ, և 'ի փափկութիւնս՝ մարտ և պատերազմ։ Ո՞չ ապաքէն Բաբելացիքն արտաքոյ հնոցին էին, այլ այրեցան, կիզան, քանզի զԱստուած թշնամի ունէին. ո՞չ ապաքէն երեք մանկունքն 'ի մէջ հնոցին բորբոքելոյ ընկեցան, և ոչ ինչ վնասեցան. քանզի Աստուած հաշտ էր ընդ նոսա։ Որպէս զի թէ Աստուած դժկամակ ընդ ումեք իցէ, բարի ինչ երբեք նմա ոչ լինի. և յորժամ հաշտ իցէ, չար ինչ երբեք նմա ոչ պատահէ։ Եւ արդ զի՞ պատահիցիս զերկայն ճանապարհաւ, և առ իմ բիւր հնարս հնարիցիս, այսր անդր ընթանալ, զոս աղաչել, նմա կաշառս խոստանալ, զայլս բարեխօս առնել. ուր պարտ և պատշաճ է 'ի մի և 'ի կարճոյ ճանապարհն ելանել, զի զՏէր ընդ քեզ հաշտ առնիցես. իսկ եթէ նա չիցէ հաշտ, այլք ամենայն 'ի զուր վաստակք են. և եթէ նա ողորմութեան ակամբ նայիցի, և թշնամիքն՝ բարեկամք լինիցին. Եւ գազանք անապատի, ասէ, հաշտիցեն ընդ քեզ։ Սոյնպէս և զԴանիէլի զվնասն կարէր Աստուած խափանել. որ զանյագ բերանս առիւծուցն սանձեաց և զարիւնարբու զլեզուն կարճեաց, կարող էր խնուլ և զբերանս չարախօսացն, և դարձուցանել զչար միտսն 'ի բարի խորհուրդս, զի բնաւ և 'ի միտս մի անկանիցի նենգել նոցա զսուրբն. այլ ոչ նախանձեցաւ ընդ պսակս նորա. զի ոչ այնպէս

լինէր լուսաւոր և երևելի, և ոչ այնպէս նորա գութն՝ որ ունէր ընդ Աստուած՝ երևէր, և ոչ Աստուծոյ սէրն առ նա, եթէ չէր թոյլ տուեալ՝ի ձգունս և՝ի փորձանս մտանել։ Սիրէ Տէր զարդարս և կամի յայտ առնել զնոսա ամենեցուն. զի այնպիսի իսկ սովորութիւն է սիրելեաց առ սիրելիս՝ զի ոչ ունին ժոյժ թագուցանել զսէրն, այլ զի զբազումս առնիցեն վկայս սիրոյ և սերտ սիրոյն. որպէս և ոք զարդու իւիք՝ այնպէս Աստուած զարդարի, որ անկարօտականն է, սիրով սրբոցն. և զի սիրէ և զի սիրէ զնոսա, ամենեցուն յայտ կամի առնել։ Եւ լուր իսկ, զիարդ սիրէր զՅոբ, և ոչ ոք գիտէր. և արդ զինչ առնիցէ. յայտնէ սատանայի զսէրն, զի 'ի սիրոյ անտի՝ յայտնի լինիցի գովութիւն նորա։ Եւ տես, զիարդ ստէպ գովէ. Հայեցա՞ր, ասէ, մտօք քովք 'ի ծառայն իմ Յոբ, զի չիք նման նմին յերկրի։ Սիրոյ են բանք, այլ ոչ այնպիսի ինչ՝ որպէս մեր բանքն իցեն. զի մեք իբրև պաշտօն ինչ առնելով գովեմք, իսկ նա ոչ այսպէս։ Ոչ միայն ասէ Աստուած՝ թէ վասն զի սիրեմ զնա, կամիմ ցուցանել քեզ և յարգել, այլ ած կացոյց շուրջ 'ի հանդիսի զաշխարհս ամենայն, և արձակեաց զնահատակն, և ինքն եթող զնա 'ի կռուին և գնաց։ Եւ զի մի ոք ասիցէ եթէ նորա է յաղթութիւնն ամենայն, 'ի բացեայ կայր և ուշ ունէր մրցելոյն և գուպարելոյն։ Թէպէտ և մարզիչ՝ նահատակաց մօտ կացցէ 'ի կռուին, և ոչ ոք արգելուցու զնա, այլ զի և պայծառագոյն յաղթութիւնն երևեսցի, ոչ մօտ կայր և ոչ հրամայէր թէ այսպէս կամ այնպէս պարտ իցէ կռուել, այլ մերկ կողոպուտ արձակեաց զնա 'ի մարտն։ Դու, ասէ, տարապարտուց կարծեցեր կորուսանել զինչս նորա, այլ ես և զմարմինն ևս տաց 'ի ձեռս, և ոչ կարասցես զամագիտ լինել։ Կամի Աստուած ցուցանել ամենեցուն թէ որպէս սիրէր զնա. յայտնէ Աստուած զսէրն վասն մեր, զի ինքն հեռի է յամենայն պէտսակար կարեաց. քանզի մեք 'ի բազմաց խնդրեմք զփառս, վասն այնորիկ կամիմք զքաջութիւնս ինչ յայտ առնել, զի մեզ 'ի պարծանս լինիցին, իսկ նա և ոչ երբէք, այլ զի զմեզ հեզս և պիտանիս առնիցէ. որպէս և ոք զսիրելի կամի զսէր սիրելւոյ ցուցանել, զպատկեր մարմնոյ նկա-

րիցէ, զաչս և զունչս և զծնօտս, նոյնպէս և Աստուած կամի ցուցանել եթէ բարւոք սիրէ. և յիրաւի զպատկեր ոգւոցն վասն այնորիկ գրէ նկարէ ամենեւին զգեղեցիկն, և վկայէ եթէ չիք ոք նման նմա գեղեցիկ։ Եւ նախ այն իսկ, զի նա միայն վկայեցաւ 'ի ժամանակին հաճոյ Աստուծոյ. ապա և զառաքինութիւնսն համարի կարգ ըստ կարգէ. Այր մի արդար, ճշմարիտ, աստուածապաշտ, զատեալ և մեկնեալ յամենայն գործոց չարութենէ։ Եւ այդ ուստի՞ յայտ իցէ, ասիցէ թշնամին. բարւոք է, ես տաց առնուլ քեզ զփորձ և զհանդէս նորա. որպէս թէ ասիցէ ոք, թէ գեղեցիկ 'ի սպիտակէն և մնգուրոյն և 'ի ծարրէն երևի, թոյլ տուր, թող առից զպաճուճանսն 'ի բաց, և տեսանես՝ որչափ տգեղ են երեսքն՝ որոց ցանկանաս. և նա յուսացեալ՝ ասիցէ համարձակ, եթէ մատիր, որպէս կամիս, լուա 'ի բաց, և ես առաւել գեղեցիկ երևի. նոյնպէս և Աստուած ասէ. մատիր և արկ 'ի փորձութիւն, և տեսջիր՝ զի ես պայծառագոյն գտանի։ Խօսի աղերսիւ և ընդ սիրելոյն. Մի՛ կարծիցես, ասէ, եթէ թողի ինչ զքեզ 'ի ձեռաց. ոչ լուծի զսէրն, ոչ քակեցի զխնամսն, այլ առ սէր արարի զայդ, զի յայտ արարից եթէ յիրաւի սիրեմ։ Տե՛ս, և Յովբ զինչ ասէրն, եթէ Տէր ետ և Տէր առ, և եթէ զբարիսն ընկալաք 'ի ձեռանէ Տեառն, կարեացս ո՞չ ժուժայցեմք. քանզի ոչ կամէր եթէ բամբասիցի ինչ սիրելին իւր. որպէս թէ ասիցէ ոք, եթէ զայս ինչ և զայս ինչ անցս անցոյց ընդ քեզ, և նա առ սէրն՝ չառնուցու յանձն զբամբասանսն. Եղիցի, ասէ, անուն Տեառն օրհնեալ։ Սիրեմ, ասէ, և չկարեմ զնմանէ չար խօսել. Թէպէտ և ասէ ուրեք, եթէ Թշնամանք զսէր ջրեն. իսկ անդ ոչ այսպիսի ինչ իրք կարծեն ստանանել, զի ոչ միայն թշնամանք էին, այլ և տանջանք անհնարինք, և նմա գամագիտ ինչ ոչ լինէին. Թէպէտ և ծանրագոյնս ինչ խօսեցաւ, առ աղերս՝ և ոչ ինչ թշնամութեան, առ զայրացս սաստիկ հարուածոցն։ Եւ այս են ծանրագոյնք՝ զոր խօսեցաւ, եթէ Մի՛ ուսուցանէր զիս ամբարշտել. և Ընդէ՞ր եդիր զիս նպատակ քեզ. զի այս ինչ իրք կարէ տրտմեցուցանէին զնա, զի մօտակացքն կարծէին եթէ ոչ նա սիրէր զԱստուած, և ոչ Աս-

տուած զնա։ Ես, ասէ, գիտեմ և դու, Տէր, գիտես, այլ զսոսա ոչ հաւանեցուցէ. այնպէս կարծէին՝ եթէ յԱստուծոյ խնամոցն անկեալ մերժեալ ինչ իցէ։ Եւ առ Մովսէս դարձեալ այսպիսի բանս խօսէր. Թոյլ տուր, ասէ, վասն քո պատուեմ զնոսա. և ցքոյր նորա այսպէս ասէր, եթէ Ոչ ընդ ումեք խօսեցայ՝ որպէս ընդ Մովսիսի. և նա թողոյր, և Աստուած ոչ թողոյր. Վասն քո, ասէ, քաւեմ և ոչ վասն նոցա։ Տես և առ Աբրահամու. Ե՛լ, ասէ, յերկրէ քումմէ և յազգէ քումմէ. և Միթէ թաքուստ ինչ իցէ 'ի ծառայէ իմմէ յԱբրահամէ, զոր ինչ գործելոցն եմ։ Այլ դարձցուք անդրէն 'ի կարգն՝ որ առաջին կայ։

« Մի՛ խնդայք և մի՛ ուրախ լինիք, ամենայն այլազգիք, զի խորտակեցաւ լուծ հարկանողին ձերոյ. զի 'ի զաւակէ օձից՝ ելցեն ծնունդք իժից »։ Զի Եզեկիա, ասէ, դժնդակագոյն լինիցի ձեզ. և ընդէ՞ր արդեւք ոչ ասաց, եթէ Աստուած տանջելոց է զձեզ. այլ զի անուամբ իժիցն՝ առաւել իմն քաջնէին։ Եւ այս ոչ եթէ զչարութիւնն Եզեկիայի յայտ առնէ՝ իժն կոչելով, այլ զի նոցա ծանրաբեռն ծանրատաղտուկն լինելոց էր։ « Եւ բուծցին աղքատք 'ի ձեռանէ Տեառն, և տկար մարդիկ 'ի խաղաղութեան բնակեսցեն »։ Տեսանե՞ս, զի որում ոչն հաւատային եթէ 'ի ձեռանէ Տեառն լինիցի, նոյն առ 'ի Տեառնէ լինելոց էր։ Սոյնպիսի ինչ և 'ի Քրիստոսի գալստեանն եղև. զի նովաւ աղքատք բուծանէին, տնանկք կերակրին. իսկ մեծատունք՝ ոչ ինչ այնպէս, այլ յիւրեանց ագահութենէ. իսկ աղքատացն՝ Աստուած ինքնին հովուէ, որպէս և ասէ իսկ, եթէ Ես եմ հովիւ քաջ. ոչ եթէ տեղեակ այնպիսի ինչ սեղանոյ՝ հովիւն քաջ, այլ 'ի սուրբ և յիստակ աղբիւրն առաջնորդէ տանի զխաշինսն։ Ո՞չ տեսանես զոչխարս, զի ոչ ինչ ցանկան այսպէս խորտկաց, այլ զլոկն, զանհանդերձ ճարակն ճարակին. նոյնպէս և զքեզ կերակրէ Աստուած։ Միթէ ո՞չ երբեք կերակրեաց. այլ թէպէտ և կերակրեաց, այլ աշտուճ հացիւ և ձկամբք. նա և քաղաքին այն իսկ էր հանապազորդ սաճի. այլ կերակրեաց երբեմն և մսով, այլ 'ի չար և ոչ 'ի բարի ուտելեացն։

« Եւ տկար մարդիկ՝ 'ի խաղաղութեան բնակելոց են ». և զմահն զհանգստեան յայտ առնէ. քանզի այլ թարգմանիչքն ասեն, թէ Ի խաղաղութիւն բազմեսցին. զի ոչ ձայնք և ոչ ողբք և ոչ սուգք լինիցին 'ի նոսա, և մի այլ ինչ այնպիսի, այլ 'ի խաղաղութեան. զի ոչ խռովեսցին ինչ և ոչ մարտնչիցին, թէպէտ և սպառնանիցեն, թէպէտ և գլխատիցեն. զի 'ի խաղաղութեանն հանգչել այն է, յորժամ վասն Աստուծոյ ոք մեռանիցի, այլ պատուով ննջեսցէ 'ի հանգիստ։ Զի այսպիսի ինչ է արդարոց մահն պատուական. ոչ զի 'ի տան իւրում ոք մեռանիցի, և զի պատուական է այսպիսի մահ, կամ 'ի մահիճս, և ոչ՝ առ իւր ընտանիս, այլ յորժամ քաջութեամբ և առաքինութեամբ վասն ճշմարտութեանն մեռանիցի։ Եւ զի պատուական է այսպիսի մահ, ամենայն իսկ տիեզերք վկայեն. զի թէպէտ նշանաւորք ինչ իցեն մահք թագաւորաց և զօրագլխաց, և առ ժամանակ մի անդէն յիւրեանց ընտանեաց մեծարիցին, սակայն ոչ իբրև զձկնորսաց՝ որ ոչ ըստ բնութեան օրինացն կատարեցան, այլ մեծաւ առաքինութեամբ՝ զկատարեալ յաղթութիւնն, և պատուին յամենայն աշխարհ գերեզմանք նոցա. զի ոմն գլխատեցաւ և ոմն պատառ պատառ կոտորեցաւ, և ոմն քարկոծեցաւ. սակայն յայն սակս պատուին առաւել, զի այնպիսի մահուք կատարեցան, զի փոխանակ խաղաղութեան ամենայն աշխարհի մեռան։ Զոր օրինակ և զօրականք ոք առաքինիք և յետ մահուն պատուին՝ որք վասն իւրաց աշխարհի ճգնեցան և անկան 'ի պատերազմի, սոյնպէս և առաքեալքն վասն եկեղեցւոյ՝ իւրեանց աշխարհի՝ մեռան, և առնուն զպսակն, և յետ մահուն՝ ևս առաւել պատուին. զի թէ թագաւորն նոցա՝ մահուամբ յաղթեաց մահու, որչափ ևս առաւել զօրավարացն պարտ էր նմանել թագաւորին։ Եւ արդ, մի ինչ աշխարհեցուք զգլխատեալսն, և մի երանի ինչ տացուք այնպիսեացն՝ որ յիւրեանց տունս մեռանիցին, զի ոչ այն երանելի ինչ է, և ոչ այս եղկելի. այլ որք առաքինութեամբ վասն ճշմարտութեանն մեռանիցին, և պատանս 'ի զարդ զպատուոյ կարգս և վայրս ունիցին, որ քան զոսկեհուռ պատմուճանն ևս պատուական է։ Զի զայն՝

որ վասն ճշմարտութեանն մեռանիցին, եթէ բնաւ մերկ իսկ ոք ընկենուցու և թաղելոյ ևս չառնիցէ արժանի, այնու առաւել զարդարէ, զի զմեծամեծ կրտուտոն անցուցանէ վասն Ճգնանցն՝ զորս վասն ճշմարտութեան կրիցէ. և զայնպիսին ոչ եղկելի, այլ երանելի կատարէ. զի զայնպիսի հանդերձ ոչ ցեց ուտէ և ոչ որդն հարկանէ, և ոչ գերեզմանակրկիտք գողանան, և ոչ ժամանակք մաշեն և ոչ հող փտէ, այլ կայ մնայ միշտ անծախական. և այնպէս զարդարէ զզգեցօղն, որպէս և ոչ զերկինս՝ պսակն արեգական և ոչ պարանձև բանկք աստեղաց:

Արդ զայնպիսի մահ խնդրեսցուք, որ վասն հասարակաց ինչ օգտից է մեռանելն. արդ ընդէ՞ր ոչ վասն շահի և կամ օգտի: Զայս ասեմ՝ զի պատրաստագոյն գտանիցիմք առ Ճգունս՝ որ վասն աստուածպաշտութեան ինչ 'ի վերայ հասանիցեն: Եւ այժմ եթէ կամիմք, բազում մահս մեռանիմք. և զիա՞րդ մարթ[1] մահկանացու կարիցէ բազում մահս մեռանել. զի եթէ մահկանացու է՝ միանգամ է մեռանելոց, իսկ եթէ բազում անգամ մեռանի՝ յայտ է եթէ անմահական է. զի առաջին որ կենդանին իցէ՝ մեռանի, ոչ եթէ՝ որ մեռեալն իցէ՝ միւսանգամ մեռանիցի: Նոր ինչ է խնդիրս, զի և ոչ մահկանացու իսկ է. զի եթէ մահկանացու էր, զիա՞րդ յետ մեռանելոյն՝ դարձեալ մեռանէր. և ոչ անմահ, զի եթէ անմահ էր, զիա՞րդ ասէր Պաւղոս, եթէ Վասն քո մեռանիմք զօրհանապազ. և դարձեալ, թէ Ցո երդնում, 'ի պարծանս ձեր, զի հանապազ մեռանիմ. յոռութիւն և վատթարութիւն համարէր, և ոչ արութեան ինչ գործ, եթէ միայն որպէս բնութեամբ սահմանեալ իցէ մահ, այնպէս և եթ մեռանիցի. վասն այնորիկ ասէր՝ թէ հանապազ մեռանիմ: Որչափ ժամանակս ետ նմա կեալ Աստուած, նոյնչափ անդրէն ետ փոխարէն մահս մեռանել Պաւղոս. և ոչ ուրեք կամեցաւ պարտապան գտանել, մանաւանդ զի և զհանապազորդն իսկ մեռանել՝ պարտս համարէր:

Եւ արդ մեք զի՞նչ ինչ այնպիսի գործ ցուցանի-

1 Ցոր. Մահ:

ցեմք. այլ տես, ո՞յր ուրուք է այնպէս հանգչելն. աղքատաց, տկարաց, ոչ այնոցիկ՝ որ զմեծամեծս բարբառիցին։ Եւ յիրաւի հանգիստ՝ զայնպիսեաց մահուըն կոչէ. քանզի չիք ինչ հանգոյն այնմ հանգըստեան, յորժամ անխիղճ միտք ոք զայն զտարաշխարհական ճանապարհն երթայցէ։ Զի եթէ այր ոք՝ յորժամ մերձ 'ի մահ իցէ, և բարւոք պատուէրս և հրամանս՝ տան և կնոջ և որդւոց տայցէ, և որպէս կամիցի՝ այնպէս կարգիցէ, և զմահն այնուհետև մահ չհամարի, թէպէտ և նմա ինչ այն աննայն ոչ փչիցէ, ո՞րչափ ևս առաւել՝ որ այնպիսի ոք ինչ շահս գանձիցէ, որովք երթեալ աստի այնուհետև առաջի Աստուծոյ համարձակ կարիցէ մտանել։ Քանզի զի երևելոց է հոգին՝ Աստուծոյ, յորժամ բարւոք վախճանաւն՝ զծանրութիւն մեղացն ընկենուցու, և թեթևացեալ ընդ երկինս թռիցէ. յորժամ զչար խիղճ մտացն մերկանայցէ, և համարձակ առ Տէրն փութասցէ երթալ. յորժամ ոչ վասն պատժոց ինչ կասկածիցէ, և ոչ թէ դրունքն երկնից նմա փակելոց իցեն՝ երկնչիցի. զի ոչ ոգորիցի և ոչ ջանայցէ և ոչ մգլիցի, այլ դիւրաւ հեշտեաւ ինն զմարմինն թողուցու. զի ոչ բռնաբար ինչ ձգիցի 'ի վարչացն, և ոչ յանկարծակի յափշտակիցի, ոչ վասն մեղաց ինչ դանդաղիցի, և ոչ վասն չարեաց ինչ վհատիցի. այլ իբրև խնդացեալ փափագեալ՝ ինքնին զանձն հեղուցու 'ի վերայ, որպէս և մանուկ մի անձկացեալ առ իւր դայեակս, կամ առ հայր և մայր. քանզի գիտէ այնուհետև՝ թէ ոչ 'ի տանջանս եկեալ կոչեն, և ոչ 'ի մահն անմահական, այլ 'ի պատիւս արքայականս և 'ի սեղանն՝ լի ամենայն բարութեամբք, և իմանայ թէ զմարմինն՝ զոր առ ժամանակ մի թողու, դարձեալ միւսանգամ զգենլոց է մեծաւ փառօք և պատուով։

« Սատակեսցի սովով զաւակ քո, և զմնացուածս ժառանգութեան քո՝ 'ի հարուածս սատակեսցէ ». զի և արմատ ևս ոչ գտանիցի այնուհետև. մեծ բժշկութիւն է՝ որ սովովն լինիցի բարձիչ չարեացն։ « Ողբացէք, դրունք քաղաքաց. ձայնս արկցեն քաղաքք խռովեալք, այլազգիք ամենեքեան. զի ծուխ ել 'ի հիւսիսոյ և ոչ ևս ուրեք գտանիցի. զինչ տայցեն պատաս-

խանի Թագաւորք հեթանոսաց. զի Տէր ուղղեաց զհիմունս Սիովնի և նովաւ փրկեցին խոնարհք ժողովըրդեան»: Ահաւասիկ և այլազգեացն մարգարէանայ, և յիրաւի նախ զծուխն գուշակէ. զի զոր օրինակ ծուխ՝ հրեշտակ է հրոյ, նոյնպէս և գոյժ ինչ չար՝ հրեշտակ է բարկութեան: Եւ տես և աստ իսկ զԱստուծոյ մարդասիրութիւնն. զի ոչ վաղվաղակի զկրակն բորբոքէ, այլ նախ զծուխն, զի յորժամ նախ զծուխն տեսանիցեն՝ փախիցեն 'ի կրակէն: Եւ տես, զիարդ 'ի հեռաստանէ գայ ծուխ, և ոչ ոք զգուշանայ:

« Եւ զի՞նչ տայցեն պատասխանի Թագաւորք հեթանոսաց. զի Տէր ուղղեաց զհիմունս Սիովնի, և նովաւ փրկեցին խոնարհք ժողովրդեանն »: Զի՞նչ իցէ այս, թէ « Զի՞նչ պատասխանի տայցեն ». և ոչ ինչ կարիցեն խօսել և ոչ ձիկ հանել. զի բարձեալ լինիցին ամենևին պատճառք. զի ոչ ըստ բնութեան ինչ իւրքն գործիցեն, այլ ամենեքեան 'ի չարիս, ամենեքեան 'ի կարիս մաշեցին, բայց միայն Երուսաղէմացիքն զերծանիցին: Եւ դու զի՞նչ կարիցես տալ պատասխանի. զի նա ինքնին ուղղեաց զհիմունս Սիովնի. և նովաւ փրկեցին խոնարհք ժողովրդեանն, և ոչ իւրեանց ինչ քաջութեամբ: Եւ տես, զի՛ կոչէ խոնարհս. զտկարսն՝ որ յիւրեանց ընտանեաց մատնեալ էին, զի յայտ յանդիման լիցի Աստուծոյ զօրավիգն օգնականութիւնն:

## ԳԼՈՒԽ ԺԵ

« Տեսիլ եւթներորդ. պատգամ Մովաբացւոցն »: Արդ և զՄովաբացւոցն ձաւէ, զի մի՛ ինքնագործ ինչ յառաջասաց իւրքն կարծիցեն. և թուէ կարգաւ զպատճառս պատժոցն. նախ զի ամբարտաւանք և թշնամանողք էին, ապա զի վասն Երուսաղեմի էին պատժելոց [1]:

1 Զյետևեալ հատուած բանիս, որ թուի մասն լինել մեկնութեան ԺԶ գլխոյն Եսայեայ և յօրինակին զետեղեալ կայր 'ի կարգի

« Գիշերի սատակեսցին Մովաբացիք, գիշերի կործանեսցին պարիսպքն Մովաբացւոց »: Գիշեր՝ զմոլորութիւն ըղձիցն կոչէ, որով եղև սատակումն քաղաքին: « Սուգ առէք յանձինս ձեր, զի կորեաւ Դեգեբոմն՝ տեղի մեհենիցն ձերոց »: Տեղի էր մեհենաց՝ ուր բագինքն կանգնեալ էին: « Անդ ելանիցէք լալ 'ի Նաբաւ Մովաբացւոց »: Ի պաշարել հինին՝ փախստական լինիցիք 'ի քաղաքաց 'ի լերինս. 'ի Նաբաւ լեառըն, ուր Մովսէսն թաղեցաւ: « Ողբացէք, զի ամենայն գլուխ 'ի կնտութիւն և ամենայն բազուկք խորտակեալք եղիցին », 'ի սաղաւարտից և 'ի ծանրութենէ զինուց. սակայն և այնպէս ինչ ոչ վճարիցի: « Յամենայն հրապարակս քրձազգած կոծեսցին », ուր զմտաւոխն ողբէին: « Եւ 'ի վերայ տանեաց նորա, և 'ի փողոցս նորա ողբասցին լալով », ուր զօրութեանց երկնից պաշտօնն մատուցանէին:

« Զի աղաղակեաց Եսեբոնն, և գուժեաց Յասսա, մինչև լսելի եղև բարբառ նորա » յարտաքին քաղաքմն՝ որ շուրջ զՄովաբաւ նստէին: « Վասն այնորիկ մէջքն Մովաբացւոց գոչէ ». այսինքն՝ զի 'ի հրապարակացն Մովաբու ելանէր գոչումն և կառաչ: « Անձն իւր ծանիցէ », զի սիրտն գործի գործիցէ: « Սիրտն Մովաբացւոց՝ գոչէ յանձն իւր մինչև 'ի Սեգովր ». զի

տես մեկնութեան ծն գլխոյս, պատշաճ գտանեցաք կարգել առանօր 'ի սորև, իբրև միջանկեալ պատառիկ Մեկնութեան գրոցս:

« Մինթէ վէմ ապառաժ իցէ լեառն դստեր Սիոնի. և եղիցիս դու իբրև հաւու թռուցելոյ ձագ լքեալ, դուստր Մովաբու »: Եւ զի մի կարծիցի եթէ ինքնագէտ ինչ իցեն չարիքն, և զանեղծն ես և ըղժամանակն յառաջագոյն գուշակէ. և եթէ յոյր վերայ նախ գայցեն կամ երբ: « Իբրև զվարձս երեմոյ վարձկանի միոջ ». այսինքն՝ եթէ յետ երից ամաց: Եւ զի զբարեաց համբաւս յառաջագոյն ասէին իղձքն, « Ոչ այնպէս, ասէ, լինիցի ըղձութիւնն քո, և ոչ այնպէս՝ որպէս ողբանն 'ի Մովաբ. զի 'ի Մովաբ ողբասցին ամենեքին ». զի 'ի յափշտակութենէ և ոչ ըստ կամացն Աստուծոյ մեծացան: « Երինջ երեմեան, ասէ, դուստր Մովաբացւոց ». զօրաւոր, բարեւշէն, երջանիկ, երանիկ, պերճացեալ, փափկացեալ. այլ ոչ այնպէս ինչ անցանիցէ ընդ քեզ՝ որպէս իղձքդ ցուցանեն, այլ ապառաժուա կործչիցիս, 'ի հիմանց կործանիցիս, ոչ որպէս գոքայց մուղրեցուցանիցեն, թէ չիցեն ուրեք մնանելոյ 'ի թշուառութիւն: Ոչինչ օգնեսցեն քեզ կուռքդ՝ զոր ողբէս. գրօշեալքդ՝ որոց պաշտօնդ մատուցանես. իղձքդ սատարանք, որ զստութիւնդ իբրև զճշմարտութիւն պատմեն »:

տատանկացան հարուածք 'ի բուն քաղաքի Մովաբացւոց՝ մինչև 'ի քաղաքն Սեգովր, ուր Ղովտն ապրեցաւ: «Երինջ երեմեան է». այսինքն յաստիսս, յուժի զօրութեան, 'ի մեծութեան, 'ի փափկութեան: Եւ զի ասէ. «Ցելանելն առ քեզ՝ լալով ելանիցեն ընդ Ճանապարհն Արունիմ», զի Արունիմ'ի դաշտի կայ և նա 'ի բարձու, և փախստականն՝ 'ի դաշտէն 'ի լեռնակողմնն դիմէին. սակայն և անդ դուլ և դադար ոչ լինէր, այլ 'ի լերինս դիմէին, որպէս և վերագոյնն ասաց, եթէ Անդր ելանիցէք՝ լալ 'ի Նաբաւ Մովաբացւոց, 'ի լեառնն անապատական: Եւ զի ևս կսկծեցուցէ, «Գոչէ, ասէ, բեկումն և շարժումն. և Ջուրն Նեբերայ աւերեսցի»: Կամ զօրս քաղաքացն կոչէ Ջուրս, կամ 'ի բազմանալ հինին՝ և Ջուրքն ևս նուազին:

«Եւ ցամաքեսցի ամենայն խոտ, և դեղ դալար անդ մի գտցի»: Յայտ իսկ է, զի ուր բանակք բազմաժողովք բանակիցին, նուազութիւն խոտոյ և ամենայն դալար դեղոյ լինի: Զի թէպէտ և յայնմանէ ապրեսցին, «Ածից 'ի վերայ ձորոց զԱրաբացիս և առցեն զնա». զի թէպէտ և յօտար հինէն 'ի ձորս ուրեք և յամուրս մնայցեն, սակայն յԱրաբացւոցն՝ որ նոցին արուարձայինքն էին և տեղեակք ամրոցն, մի կարասցեն ապրել: «Զի կցեցան բողոք սահմանացն Մովաբացւոց ընդ բողոքս Գաղամացւոցն». 'ի գալ հասանել հինին 'ի վերայ Մովաբացւոցն, և զայլ ևս քաղաքսն՝ որ շուրջ զնոքօք էին[1]: «Մինչև 'ի Ջրհորն, ասէ, յԵղիմ. և Ջուրն Հռեմոնայ՝ լցցի արեամբ»: Թուի ինձ՝ եթէ կիրճք ինչ էին գետոց, ուր փախստականն դիմէր. և անդր հասեալ Արաբացիքն՝ տեղեակք վայրացն, կոտորէին զփախստականսն. վասն որոյ յարէ 'ի նոյն, թէ «Ածից 'ի վերայ Հեռոմոնայ զԱրաբացիս, և բարձից զաւակն Մովաբացւոց և զԱրիէլ, և զմնացորդս Ադամայ՝ առաքեսցից ընդ ամենայն երկիր 'ի մուրողութիւն և 'ի թափառականութիւն»:

1 Այսպէս յօրինակին:

# ԳԼՈՒԽ ԺԶ

« Մինչ վե՞մ ապառաժ իցէ՝ լեառն դստեր Սիոնի ». այսինքն՝ աւերակ յօգնականութենէ. այլ ոչ այդպէս. 'ի ժամանակի՝ յորժամ նա զօգնականութիւնն գտանիցէ, 'ի պաշարմանէ զօրացն այլազգեաց, « Դու լքեալ մնայցես՝ իբրև հաւու թռուցելոյ ձագ մի մնացեալ։ Բայց իսկ արդ դու Առնոն, աւելի ինչ խորհուրդ խորհեսջիր ». ոչ այլ ինչ աւելի, այլ զի « Առնիցես նոցա յարկս սգոյ. հանապազ 'ի միջօրեայ խաւարին փախչիցին ». զի լոյսն նոցա 'ի խաւար դառնայցէ առ վտանգին։ Վասն որոյ յարէ 'ի նոյն՝ թէ « Ցիմարեցան. մինչ որպէս իսկզբանէն գայցեն յենուցուն 'ի քեզ փախստականքն Մովաբացւոց, և լինիցին ձեր յարկք ապաւինի յերեսաց հալածչաց ». ոչ ևս զոք 'ի Մովաբացւոցն ապրեցուցէ Առնոն՝ քաղաքն ամրաշէն։ « Զի բարձաւ, ասէ, 'ի քէն ընկեր մարտին քո, և իշխանքն կորեան, որ կոխէին զերկիր ». քանզի քաղաքքն՝ հանդերձ իշխանօքն մատնեցան 'ի պարտութիւն։

« Եւ ուղղեսցի հանդերձ ողորմութեամբ աթոռ, և նստցի 'ի նմա ճշմարտութեամբ՝ յարկսն Դաւթի, դատել և խնդրել զիրաւունս, և փութալ առնել զարդարութիւն »։ Թուի ինձ թէ աստ զԵզեկիայէ ակնարկէ, զի նորա աղօթիւք եղև ողորմութիւն քաղաքիս։ « Լուաք զթշնամանսն Մովաբայ, զի թշնամանեցաւ յոյժ, և զհպարտութիւն նորա բարձի, ասէ Աստուած, և զթշնամանսն և զոխակալութիւն նորա ». զի միշտ ոխս ունէր ընդ Իսրայելացիս։ « Ոչ այնպէս՝ որպէս ըղձութիւնքն քո ». ոչ այնպէս ինչ պատահեաց քեզ, որպէս իղձքն խաբէին՝ թէ չգայցէ բարկութիւն։ « Ոչ այնպէս՝ որպէս ողբամնն 'ի Մովաբ ». զի ընդ ժամանակս ժամանակս սակաւ ինչ ողբք լինէին. այլ արդ « Ամենեքին իսկ Մովաբացիք ողբասցեն ողբալով, և որ բնակեալն իցեն 'ի Դեսեթ՝ զնոյն մըր-

մունջ մրմնջեսցեն, և ոչ ինչ ամաչեսցեն դաշտքն Եսեբոնայ ». զի առ անհնարին աղետին և զամօթ աւերածոյ դաշտացն՝ չհամարիցին ամօթ ։ « Սուգ առցեն այգիքն Սեբեմայ, զորս կլանիցեն ազգքն, և կոխիցեն զայգիս նորա ». զի 'ի բազմութենէ զօրացն՝ անդք և այգիք հարկանիցին ։ « Մինչև Յեզեր մի հասանիցէք », ուր փախստականն դիմեցէք, այլ « Յանապատին մոլորիջիք »։

« Առաքեալք նորա կքան, քանզի անցին ընդ անապատ ». այսինքն մոլորեցան յանապատին ։ « Վասն այսորիկ լացից իբրև զլալիւնն Յեզերայ՝ զայգիսն Սեբեմայ », որ էին մարմանդք նոցա ։ « Զի ծառատունկսն քո կոտորեցաւ, Եսեբոնէ, և գոյժ ես առ 'ի վերայ հնձոց կթոց քոց. կոխեցից և կործանեցից. և բարձցի ուրախութիւն և ցնծութիւն յայգեաց քոց, և յայգեստանի քում մի լինիցին ուրախ, և մի հարկանիցեն հնձան, քանզի դադարեաց »։ Զի 'ի նուաղել մարդկանն՝ և անդքն և այգիքն անպտուղ լինիցին ։

« Վասն այնորիկ որովայն իմ 'ի վերայ Մովաբու՝ իբրև զքնար հնչեսցէ, և փոր իմ իբրև զպարիսպ՝ զոր նոր նորոգեցեր ». որպէս և Երեմիա ասէ, եթէ Եղեն պատգամք Տեառն 'ի բերան իմ՝ իբրև զհուր, և բորբոքեցան յոսկերս իմ. և Միքէ՝ թէ Ես լցայ զօրութեամբ ոգւով Տեառն. զի զոր ինչ շնորհք Հոգւոյն ազդէին 'ի սիրտս մարգարէիցն, զնոյն փութային ազդ առնել յառաջագոյն ։ « Եւ եղիցի, ասէ, յամաչելն քեզ ». զի ամաչեաց 'ի դրօշելոցն՝ յորս յուսացեալ էր. զի և յարէ իսկ 'ի նոյն, եթէ « Աշխատեցաւ Մովաբ 'ի բագինսն, և մտցէ ուխտաւոր 'ի ձեռագործս և մի կարասցեն փրկել զնա ». զի ծանիցէ՝ թէ ոչ գոյ այլ օգնականութիւն, բայց յայնմանէ՝ որ զԵրուսաղէմն պահեաց և զնա կործանեաց ։

« Այս պատգամք են՝ զոր խօսեցաւ Տէր 'ի վերայ Մովաբու, զոր երբեմն խօսեցաւ, և արդ դարձեալ ասէ. Յերիս ամս ամաց վարձկանի միոջ անարգեսցի փառքն Մովաբու՝ ամենայն մեծութեամբն իւրով հանդերձ »։ Զի միանգամ զամենայն իսկ հարուածոցն ճառեայ, և ապա յետ այնր ժամանակի և զայս ևս յայտնեաց, եթէ յետ երից ամաց՝ անարգեսցին

փառք նորա. « Եւ մնասցէ սակաւաւոր և ոչ պատուական »:

## ԳԼՈՒԽ ԺԷ

« Տեսիլ եւթներորդ [1]. պատգամ 'ի վերայ Դամասկոսի: — Ահաւասիկ Դամասկոս բարձցի 'ի քաղաքաց քոց և եղիցի 'ի կործանումն լքեալ ». Նաև զպատճառն ևս ասէ: « Եւ ոչ ևս լիցի թիկունք և ամրութիւն ապաստանի ազգին Եփրեմայ, զի ոչ ինչ դու լաւ ես քան զորդիսն Իսրայելի ». և այսու յայտ է՝ եթէ ոչ իբրև զյանցաւոր պատժեաց զնա Աստուած, այլ խնամելով և դարմանելով: « Եւ մնացէ, ասէ, ուխտաւոր, և մի ինչ կարասցեն օգնել ». և ոչ ասէ՝ թէ մի կարասցեն. և զիա՞րդ իսկ, որք հակառակ մարգարէութեան խօսէին սնոտիս յառաջագոյն, զիա՞րդ կարէին օգնել ինչ, որք և ինքեանք հեռի էին յօգնականութենէ: Ապա ասէ թէ զինչ անցք անցանելոց էին ընդ Հրէայսն, զի ամենեքեան լքանիցեն զքաղաքս:

« Եղիցի, ասէ, պակասութիւն փառացն Յակովբայ, և յաճախութիւն փառաց նորա շարժեսցի ». զի կէսքն արտաքոյ կոտորեսցին, և կէսքն 'ի քաղաքսն պաշարեսցին, և ամենեքեան յանհնարին վիշտսն անկանիցին. զի ոչ քահանայ և ոչ մարգարէ, և ոչ այլ ոք կարիցէ ձեռնտու լինել. ապա յայտ է եթէ պակասեն փառքն Յակովբայ, և յաճախութիւն փառաց նորա շարժի. զի ոչ ինչ բազմութիւն և ոչ մարմնոյ զօրութիւն, և ոչ այլ ինչ այնպիսի կարիցէ նոցա պաշտպան լինել. զի այնպէս սակաւաւոր մնասցեն՝ իբրև զհասկս մնացեալս 'ի հնձոց: Զի վասն այնորիկ իսկ շարժէ Աստուած զպատերազմունս, և բազում անգամ սակաւուց տայ յաղթել բազմաց, զի յայտ արասցէ թէ ոչ բազմութեանն է յաղթութիւնն, այլ նորա զօրու-

1 Յոր. Եւթներորդ անուանի և տեսիլն՝ որ 'ի սկիզբն ժե գլխոյն:

թեանն. զի յորժամ կամի՝ բազմօք բազմաց յաղթէ, և յորժամ կամի՝ սակաւուք բազմաց։

« Եւ զոր օրինակ եթէ ժողովիցէ ոք հասկ 'ի ձորն հատանողութեան, և մնասցէ 'ի նոցանէ խաղող, կամ որ կթիցէ ձէթ և մնայցեն անդ պտուղք երկու կամ երեք՝ 'ի ծայրս բարձրութեան ձիթենոյն, կամ չորք կամ հինգ՝ յոստս նորա մնայցեն »։ Տե՛ս, զինչ ասէն. զի 'ի տեղեացն պանծային զքաղաքին փրկութիւն, և չառնէին ինչ 'ի ներքս այլ զգուշութիւն. այլ մեք ոչ պարտիմք 'ի տեղեաց ակն ունել փրկութեան, այլ յԱստուծոյ օգնականութենէ։ Զայս ասէ՝ զի արժանի հաւատալոյ արասցէ զմարգարէութիւնն, և զի մի ինչ զարհուրիցին. այլ տես զահն նոցա՝ մրջափ ինչ էր։ Զի ոչ միայն զի ուսանիցին զզօրութիւնն, վասն այնորիկ հարկանէր զայլազգիսն, այլ զի և նոքա զգաստանայցեն և լինիցին պիտանիք։

« Այսպէս ասէ Տէր Աստուած Իսրայէլի. յաւուր յայնմիկ յուսացեալ լինի մարդ յարարիչ իւր, և աչք նորա 'ի սուրբն Իսրայէլի նայեսցին, և ոչ ևս յուսացեալ լինիցին 'ի լկիչսն իւրեանց »։ Զինչ գործես, ով մարդ մնոտի, նա արար զքեզ և դու յայլ յուսաս. նա ստեղծ, և ոչ կարիցէ վերակացու լինել. որ 'ի չգոյէն 'ի գոյ եած, կարող է միւսանգամ անդրէն լուծանել։ « Եւ աչք նորա 'ի սուրբն Իսրայէլի ». զի մտացն աչք նայիցին 'ի սուրբն Իսրայէլի։ « Եւ մի ևս յուսացեալ լինիցին 'ի լկիչսն իւրեանց »։ Բազում պարսաւանք են՝ յորժամ զդիւրին ինչ իրս չկարեն իմանալ, թող թէ զդժուարինս. և զոր ինքն առնէ, այնմ երկիր զիա՞րդ պագանիցէ. և այս՝ ոչ այլ ուստեք է, եթէ ոչ յիւրեանց պղերգութենէ։

« Յաւուր յայնմիկ եղիցին քաղաքք լքեալք, որպէս լքան Ամուրհացիքն, զոր օրինակ լքան Ամովրացիք և Խեւացիք յերեսաց որդւոցն Իսրայէլի, և եղիցին աւերակ »։ Յիշեցուցանէ զառաջին երախտիսն, զի և ուսանիցին թէ և այժմ ոչ առ տկարութեանն ինչ տայ թոյլ, և ոչ նոքա իւրեանց զօրութեամբ ինչ աւարեցին. այլ սոքա վասն իւրեանց մեղաց՝ որպէս և նոքա յայնժամ 'ի կատարեալ մեղացն իւրեանց աւերեցան քաղաքք։ Տե՛ս զյաճախութիւն ամբաստանութեանն,

զի յորժամ և նոքա ընդ նախին մեղօք գտանիցին, որպէս և այլ հեթանոսքն, ո՞չ ապաքէն նոցին պատժոց իցեն արժանի։

« Վասն զի թողեր զԱստուած փրկիչ քո, և զՏէր Աստուած քո ոչ յիշեցեր »։ Եւ ո՞չ շատ էր արդեւք զԱստուածն ատել, այլ և զփրկիչն և զբժիշկն։ « ԶՏէր Աստուած քո ոչ յիշեցեր »։ Ոչ միայն չյիշեցեր, այլ և մոռացար իսկ. և եթէ զԱստուած մոռանայիր, զկերակրիչն՝ որ հանապազ կերակրէր զքեզ՝ զիա՞րդ ոչ յիշէիր, զի յորժամ պէտք կերակրոյն և բժշկութեան ձեռլիցեն, հարկ լինիցի քեզ յիշել։ « Վասն այսորիկ տնկեսցես տունկ անհաւատ »։ Ակիւղաս, Տունկ վայելչութեան. Սիմաքոս, Տունկս գեղեցիկս. Թէոդիտոն, Տունկս վայելուչս։ « Եւ սերմն անհաւատ ». Ակիւղաս ասէ. Եւ շառաւեղ օտարոտի. և այլքն նման նոցին. այսինքն՝ օտարացն պատերազմողացն՝ որ արտաքոյ բանակեալ նստիցին, տնկիցես։ « Զի յաւուր յորում տնկիցես՝ վրիպեսցիս 'ի նմանէ »։ Վասն փախստէիցն՝ որ զքաղաքսն լքանելոյն էին։ « Եւ եթէ ընդ առաւօտն սերմանեսցես՝ տնկեսցի յամառն »։ Այսինքն՝ եկեսցէ հասցէ 'ի չափ։ « Յորում աւուր ժառանգեսցես, և իբրև զհայր մարդոյ ուրուք՝ ժառանգեցուսցես » օտարացն՝ իբրև որդւոց քոց, և յուղարկեսցես։

« Վայ բազմութեան ազգաց բազմաց, իբրև զծով ալեօք կուտակեալ՝ այսպէս խռովեսջիք »։ Մի՛ ինչ, ասէ, երկեցուսցէ զքեզ բազմութիւնն. նոյն իսկ այն լինի պատճառք խռովութեան։ « Եւ թիկունք ազգաց բազմաց՝ իբրև զջուր հնչեսցեն, և իբրև զջուրս բազումս, և իբրև զձայն ջուրց բազմաց՝ բանութեան հօսանաց [1] անարգեսցէ զնոսա ». այլքն ասիցեն՝ թէ Փախիցէ, և 'ի բացուստ 'ի բաց հալածեսցէ։ « Իբրև զփոշի յարդի՝ հոսեալ ընդդէմ հողմոյ »։ Տե՛ս, որպէս վաղվաղակի դիւրաւ լինէր յաղթութիւնն։ « Ընդ երեկոյս եղիցի սուգ, և յառաջ քան զառաւօտն ոչ ևս լինիցի ». և զժամանակն ևս յաղթութեան յիշաւի ասաց, զի գիշերի վճարիցի գործն. և ընդէ՞ր ոչ'ի

1 Յօր. Հեթանոսաց. թուի լինել վրիպակ գաղափարողին։

տուէ. այլ զի մի և տեսանիցեն իսկ զվիշտսն, և խռո-վիցին բնակիչք քաղաքին։ « Այս բաժին է աւարառուացն քոց, և այս ժառանգութիւն՝ որ զձեզն վիճակեցին »։ Տեսանեմս, զիարդ յիշեցուցանէ նոցա, զի և ուսանիցին թէ և յայնժամ վասն նոցա կրեցին զպատիժսն։

## ԳԼՈՒԽ ԺԸ.

« Վայ թեւաց երկրին նաւաց՝ յայնկոյս գետոյն Եթեովպացւոց. որ առաքէր ընդ ծով պատանդս, և թուղթս գրեղէնս [1] 'ի վերայ ջուրց մկանաց, տանել առ ազգ մի անյոյս և կոխեալ ». և ոչ զօրավիգն օգնականութիւնն քո՝ վճարել ինչ կարիցէ. զի և նոցա իսկ վայելիցի՝ զի յանօգուտն ընթանայցեն։ « Ջհրեշտակս առաքեն և զթուղթս՝ 'ի վերայ ջուրց, երթալ 'ի հեռաւոր և 'ի տարաշխարհական ճանապարհն». զի մի և ժամանակն ինչ եղծանիցէ զթուղթսն, վասն այսորիկ 'ի գետոց կերպարանս յօրինեն։ « Վայ երկրի նաւաց »։ Ակիղաս ասէ. Վայ երկրի ստուերաց. Սիմաքոս, Վայ երկրին՝ որոյ հնչիւնն անյուսից և կոխելոց իցէ. կամ որ կարի ինչ տկարացեալ իցեն թեւք, կամ յայնկոյս գետոյ Եթեովպացւոց, կամ յայնկոյս հիւսիսային գետոյն, որպէս 'ի Հնդկաց իսկ աշխարհէն յղիցեն առնուցուն զզօրավիգն օգնականութիւնն։ « Որ առաքէր ընդ ծով պատանդս, և թուղթս գրեղէնս 'ի վերայ ջուրց, զի գնասցեն հրեշտակք երագունք՝ յազգ ամբարտաւան և 'ի ժողովուրդ օտար »։ Սիմաքոս, Որ առաքէր ընդ ծով առաքեալս, և յանօթս պրտուեայս՝ 'ի վերայ ջուրցն մկանացն գնալ. ով դք նորա յայնկոյս, ազգ անյոյս [2]։

« Եւ այժմ գետք երկրին՝ իբր զաշխարհ մի՝ որ

1 Յօր. Բառդ գրեղէն սեւագեղով եղծեալ և 'ի վերայ գրոյն գրոշմեալ տեսանի, որպէս թուի յօտար գրչէ։

2 Թուի լինել. Ով ով (ինչ) նորա յայնկոյս, ազգ անյոյս։

բնակեալ իցէ »․ և բնութեամբ իսկ տկարագոյն են, և յասպատակէ պատերազմողաց ևս տկարանայցեն ։ « Իբրև զաշխարհ մի բնակեալ »․ այսինքն՝ զի բարեշէն շինեսցի աշխարհ նոցա ։ « Իբրև նշան ՚ի Տեառնէ բարձցի, և իբրև զձայն փողոյ լսելի եղիցի »։ Իրքն որ ասացան և ապա կատարելոց էին, մի կարծիցէք, ասէ, եթէ յանդիմանիցեն ինչ բանքս․ ոչ կոչէր վկայս զամենեսին զձեզ, եթէ ոչ էր յուսացեալ՝ եթէ իրքն ՚ի գլուխ ելանիցեն ։ Այլ զարմանալի և սքանչելի այն է, զի ոչ յանկեան ուրեք և ոչ ՚ի խորշի միոջ տիեզերաց ծածուկ, այլ յայտ յանդիման լիցի վճիռ իրացն, ՚ի նմանութիւն փողոյ խուցու հնչելովն՝ զտիեզերս, զի մեծութիւն ուղղութեանցն հասցէ անցցէ ընդ ամենայն երկիր ։

« Զի այսպէս ասաց ինձ Տէր․ զգուշութիւն եղիցի յիմում քաղաքին, իբրև զլոյս տօթագին ՚ի միջօրէի »․ զի ոչ երկմտութեան ինչ իրքն իցեն․ զի որպէս յայնժամ լուսաւորագոյն է արեգակն՝ յորժամ օրն ՚ի հասարակ միջօրէին իցէ, նոյնպէս և այժմ։ և մի սակաւ ինչ զարհուրիջիր ։ « Եւ իբրև զամպ ցօղագին՝ յաւուրս ամարանոյ »․ որպէս և ամպ սիրելիք են տօթացելոց, զի հովանին լինելով ծածկէ զտապս արեգականն, և ոչ միայն հովանի լինի, այլ և զովացուցիչ, նոյնպէս և Աստուծոյ փրկութիւնն լինիցի նոցա մխիթարիչ ՚ի չարեացն եկելոց հասելոցն ՚ի վերայ ։

« Յառաջ քան զամառն յորժամ կատարեսցի ծաղիկն և բուղխն ծաղկիցէ, ծաղիկն աղխացեալ, և բառնայցէ զմանր ողկուզոյն մանգաղաւ, և զմանունս որթոյն հատանիցէ և կորիցէ, և թողուցու միանգամայն թռչնոց երկնից և գազանաց երկրի »․ զի բառնայցեն ՚ի միջոյ, և թաղելոյ արժան ևս ոչ լինիցին․ զի մեծ և փոքր՝ առհասարակ իբրև մանգաղաւ կոտորիցին, այնպէս՝ զի և ՚ի գերեզմանս և մտանել չլինիցին արժանի մարմինք անկելոցն․ զի առագին զպատիժն ցուցանիցէ, թէ այնպէս բազում տապաստ անկանիցին, որպէս յանապատին եղև, զի զթշնամին մեռեալս ընկեցեալս արտաքոյ ալեաց ծովուն տեսանէին․ զի յոլով երկնչէինն, յորոց սարսէինն՝ զնոսա թքեալ արտաքս ծովուն՝ մերկս, անզէնս, անթաղս

տեսանէին. այս յայնժամ կատարէր, և ելանէին ամենեքեան 'ի տեսիլ. ոչ վէրս և ոչ հարուածս ինչ տեսանէին, այլ մարմինս մեռեալս ընդ վայր ընկեցեալս:

« Յայնմ ժամանակի մատչիցին պատարագք Տեառն զօրութեանց 'ի նեղեալ և 'ի խոնարհ ժողովրդենէ, և 'ի մեծէ ժողովրդենէ՝ յայսմհետէ մինչև յաւիտեանս ժամանակաց »: Զյաղթութիւնս և զգոհութիւնսն, յորժամ կատարեսցին իրքն և կանգնեսցի նշան յաղթութեան, բերցեն մատուսցեն Աստուծոյ. զոր նոքա յանձանց և յիւրեանց քաջութենէ ոչ ունէին, զայն այնուհետև Աստուած՝ յիւրոց սքանչելեացն առնիցէ: « Ազգ անյոյս և կոխեալ, որ է 'ի կողմանս գետոյ աշխարհի նոցա »: Զսակաւաւորութիւն և զնուաղութիւնն նոցա յայտ առնէ, և զյաղթութեան մեծութիւն, զի մի անձանց ինչ զուզզութիւնսն համարիցին, այլ Աստուծոյ:

## ԳԼՈՒԽ ԺԹ

«Տեսիլ Եգիպտացւոցն: — Ահաւասիկ Տէր նստեալ 'ի վերայ թեթև ամպոյ՝ եկեսցէ յԵգիպտոս, և շարժեսցին ձեռագործք Եգիպտացւոցն »: Ակիւղաս ասէ. Ի վերայ թանձու փոքրոգւոյ: Զի՞նչ խօսիցիս՝ 'ի վերայ ամպոյ նստիցի. Թէպէտ և թանձրագոյն իցէ, գոյ 'ի նմա և մարմնական ինչ: Ոմանք զսուրբ Կոյսն ասեն զամպն, սակայն և առ լսելիս՝ և այս չէ ինչ փոքր, զի զանօսրութիւն և զթեթևութիւն և զերագութիւն էութեանն ցուցանէ: « Եւ շարժեսցին ձեռագործք Եգիպտացւոցն »: Սկիզբն յաղթութեան նախ 'ի դիւացն առնէ, զի մի և մի ինչ պատճառք պատժոյ մնայցեն 'ի միջի մարդկանն: Ի գալստեանն ոչինչ արդեամբք գործ ցուցանէր, այլ միայն երևէր, և շարժէին ամենայն տիեզերք. զի գալն միայն Քրիստոսի՝ այնպիսի գործ եցոյց. անդէն ընդ իջանելն յԵգիպտոս՝ քակեաց 'ի հիմանց զամենայն ամբարշտու-

թիւնս. ոչ ևս այսուհետև բռնաւորք և թագաւորք ընդ Աստուծոյ մարտնչին անդ, և կամ թէ բազում ամբարշտութեամբ հրաժարիցեն 'ի նորա տէրութենէն, այլ զանձինս ևս տան մահու չափ 'ի վերայ նորա դաւանութեանն. ոչ ևս ոք Փարաւոնն, որ յառաջ քան զնշանացն զզօրութիւնն յանդգնիցի, կամ յետ նշանացն, այլ և առանց նշանաց՝ ունիցին մարդիկ յանձն զՔրիստոսի թագաւորութիւնն. ոչ ևս այնուհետև դտանի անդ քաղաք պատուական քան զանապատն, այլ և անապատն ամենայն՝ յօրինեալ կարգեալ իւրովք քաղաքացեօքն՝ գլէ յաղթէ քաղաքացն. զի զմարմինս և զոգիս՝ Աստուած առնէ, և զանձնիշխանութիւն և զառաքինութիւն՝ մարդիկ նահատակեցուցանեն: Եւ արդ տե՛ս զնորասքանչ զարմանալիսն, զի ոչ ատեան ուրեք ուղղեալ, քանզի զի՞ արդեւք, կամ ո՞րպէս. ոչ խորհուրդ խորհրդականաց և ոչ ժողովք իւրաց ինչ հարցափորձութեան, ոչ օրէնք աշխարհականք և ոչ տէրութիւնք, ոչ վարիչք, ոչ անդրավարք 'ի սպաս և ոչ ջորիք 'ի կառս լծեալ, ոչ բարբառ քարոզաց, ոչ շահ 'ի սպասաւորաց. այլ այս ամենայն հալածեալ մերժեալ անտի. քանզի զի՞նչ իսկ պիտոյ իցեն ողջոցն՝ բժիշկ, որոց Քրիստոսի գալուստն՝ եղև կատարեալ առողջութիւն: Եւ բարւոք ասէ՝ թէ նստեալ. զի այսու՝ դատաւոր և վրէժխնդիր զնա ամենայն իրաց՝ որ անդ գործեցան՝ ցուցանիցէ:

« Եւ սիրտք նոցա պարտեցին յանձինս իւրեանց»: Զի՞նչ այնուհետև օգուտ իցէ մարմինն, յորժամ առաջնորդն նորա միտքն՝ 'ի պարտութիւն մատնիցին. զի պարտութիւն աստ՝ զայն որ առ 'ի պատերազմողացն լինելոց էր՝ ասէ. զի ոչ առ մարմնոցն տկարանալ մատնէին 'ի պարտութիւն, այլ առ 'ի խորհրդոցն պախելոյ. զի ինքեանք զանձինս տային 'ի պարտութիւն: « Եւ յարիցեն Եգիպտացիքն 'ի վերայ Եգիպտացւոց, և տայցեն պատերազմ այր ընդ եղբօր և այր ընդ ընկերի իւրում»: Եւ այս բարերարութեանց ինչ նշանակ իցէ. այո, և մեծաց բարերարութեանց, որպէս և ինքն իսկ Տէրն ասէր, եթէ Ոչ եկի արկանել խաղաղութիւն յերկիր, այլ սուր և հուր, և քակել զայր 'ի հօրէ և յընկերէ իւրմէ. զոր օրինակ յապա-

կանել ինչ մարմնոյ՝ զփուտն պարտ է հատանել ընկենուլ, նոյնպիսի ինչ և աստ պարտ և պատշաճ է առնել։

« Եւ հարցանիցեն զդիս իւրեանց և զպատկերս իւրեանց, զվհուկս իւրեանց և զգետնահարցս իւրեանց. և մատնեցից զերկիրն Եգիպտացւոց 'ի ձեռս արանց տերանց խստասրտաց, և մի՛ տայցեն նոցա վճիռ ինչ »։ Զի թէպէտ և ըղձից ինչ կերպարանք իցեն իրքս, սակայն ոչ ինչ գուշակեսցեն զլինելոցսն։ « Այսպէս ասէ Տէր զօրութեանց. արբցեն Եգիպտացիքն զջուրն ծովափնեայ, զի գետն նուազեսցէ և ցամաքեսցի »։ Եւ եթէ եղև այս. տեսանեմք զԱստուծոյ զօրութիւնն և զկարողութիւնն։ Եւ զառաջինն ընդէ՞ր ոչ եղև այսպիսի ինչ, ընդէ՞ր ոչ յայնժամ եբարձ զբնութիւն ջուրցն 'ի միջոյ, այլ զնոյնն՝ յայլ կերպարանս փոխեաց. առ կախարդօքն՝ 'ի տկար նշանացն կամեցաւ սկիզբն առնել, զի գրգռեսցէ ածցէ զնոսա 'ի մարտ պատերազմին։ Եւ աստ ծուր ցամաքեցաւ գետն, հարցանեն զմեզ, և ծով ոք գիտակ եղև, և զիա՞րդ մարթ էր լինել այսպիսի իրաց։ Որպիսի՞ ինչ իցէ, ասա ինձ, միթէ քան զտեղալ հրոյն և քան զառցւոյն ցօղ լինել՝ աւելի՞ ինչ զարմանալիք էին այս. սակայն և ոչ զայն գիտեն հեթանոսք Յունաց, զի խակք են և յիւրեանց ևեթ զառուսեալք, և զիւրեանցն ևեթ կամին մեծացուցանել. և յորժամ նոր ինչ լսիցեն՝ զարմանալեացն ծածկել ջանան։ Զի և առաջինք իսկ են այս և հին պատմութիւնք, որ յառաջ քան զժամանակս առ նոցա իսկ իմաստնօքն այսպիսի ինչ իրք պատահեցին։

« Եւ պակասեսցէ գետն և գուբն առ գետովն, և ցամաքեսցին ամենայն ժողովք ջուրցն, և ամենայն պրակս եղեգան և պրտւոյ, և ամենայն կանաչ՝ որ շուրջ զգետովն իցէ՝ ցամաքեսցի »։ Սիմաքոս ասէ. Աղքատասցի անվայելչութիւնն. Թէոդիտոն, Տկարասցի արօտքն. զի և 'ի հեբրայեցի՝ արօտն՝ անվայելչութիւն թարգմանի։ Տեսանեմս, զի ոչ մի տիւ ինչ[1] իբրև աւելի մասն ինչ զջրոյն պակասել կարծիցես։

1 Այսպէս յօրինակին։

« Նա յօգուտ հանիցեն, ասէ, կարթընկեցք գետոյն, և ուռկանաւորք, և սուգ առցեն ցանցորդք նոցա ». զի ոչ մինչև 'ի ծարաւն ևեթ իցեն չարիքն, այլ մինչև յարուեստագէտք հնարաւորս։

« Եւ յիմարեսցին իշխանք Տայանու՝ իմաստունք խորհրդականք թագաւորին, և խորհրդականք նոցա մորոսասցին »։ Զինչ իցէ մորոսանալ։ Զի ոչ ինչ գտանիցեն հնարս իրացն դիւրութեան. որպէս և այլուր ասէ, թէ Ամենայն իմաստութիւնն նոցա ընկլաւ։ Եւ այս իսկ Աստուծոյ զօրութիւնն է, այնպիսի չարիս ածել 'ի վերայ, զի մի իմաստունք և մի հզօրք և մի մեծատունք կարասցեն այնմ հնարս մխիթարութեան գտանել. զի յայտ լիցի՝ թէ աստուածապատիժք են ցաւքն։ « Զիա՞րդ ասիցէք դուք ցարքայն, թէ որդիք իմաստնոց եմք մեք. ո՞ւր են արդ իմաստունքն քո, պատմիցեն քեզ ». և ոչ ասէ՝ թէ լուծցեն զչարիսն, որ մեծազօր զօրութեամբն միայն է. այլ պատմեսցեն ասէ, զոր մանաւանդ ըղձութիւն հեթանոսացն խոստանայ։ « Եւ ասասցեն, եթէ զինչ խոստանայ Տէր զօրութեանց 'ի վերայ երկրին Եգիպտացւոց »։

« Պակասեսցին իշխանքն Տայանու, և հպարտացին իշխանքն Մեմփացւոց ». կամ զի զչարիսն ինչ յառաջագոյն խոստանային, կամ զի որ յառաջ քան զայս հպարտացեալն էին՝ չկարացին ինչ յայտնել։ « Եւ մոլորեցուսցեն զԵգիպտացիսն յազգս ազգս. զի Տէր խառնեաց նոցա ոգի մոլորութեան, և մոլորեցոյց զԵգիպտացիսն 'ի զօրն [1] նոցա »։ Բազում ցուցանի աստ Աստուծոյ զօրութիւնն, բազում յաճախութեամբ բառնայ ինքն զկյոլովութիւնն, զոր ըղձութիւնն կարծէր ունել յանձին. զի ոչ եթէ միայն ոչ ընդունիցին զմարգարէութիւնն, և դուշակեսցեն զիրսն՝ որ գալոց իցեն, այլ և յետ ուսանելոյն յինէն՝ չկարասցեն յայտ ցուցանել. զի այնպիսի է Աստուծոյ զօրութիւնն՝ զի և զյայտնի ինչ և զերևելի՝ կարէ ծածկել 'ի նոցանէ։ Ահաւասիկ, ասէ, ասացի. ահաւասիկ խորհեցայ, ահաւասիկ և արարի իսկ, սակայն և ոչ յետ այսորիկ

1 Այսպէս յօրինակին. այլ ստորին մասն գրին՝ անկիւնաձևն՝ օտար դրչի է։

կարիցեն ասել ինչ. խառնեաց նոցա ոգի մոլորութեան, զի յապուշ դարձան միտք նոցա. զայն ասէ՝ զի ոչ միայն բարեաց, այլ և կարեաց կամի Աստուած զինքն համարել պատճառս. զի Ես եմ Աստուած, ասէ, որ առնեմ զխաղաղութիւն և հաստատեմ զչար. և, Իցէ՞ն չարիք 'ի քաղաքի՝ զոր Տէառն չիցէ արարեալ. և զի ոչ նուազագոյն քան զճշմարտութիւնն՝ առնէ զնա յայտնի մոլորութիւնն, լուր Ասկաղոնացւոցն, որչափ խաբէութեամբն զարմանալին. Ո՞չ սա է, ասեն, աստուածն՝ որ խաղաց խաբեաց զԵգիպտացիսն. և մանաւանդ յայնպիսւոյն՝ որ յուղիղ ճանապարհէն վրիպեցուցանէ՝ պարտ է, ասեն, մեզ երկնչել, զի մի յորժամ տեսանիցեն եթէ նշանս ինչ առնէ, յայնժամ երկնչիցին, այլ յորժամ 'ի խաղաղութեան և 'ի շինութեան իցեն, մի ինչ յայն ապաստան լինել, զի գուցէ խաբէութիւն ինչ երբեք առնիցի նոցա. վասն այնորիկ զիւրմէ ասէ, եթէ մոլորեցուցանէ, քանզի սիրէ զազգս մարդկան, և ոչ կամի և ոչ մի ինչ իրաց՝ զդևս պատճառս համարել. որպէս և Յունաց իմաստունք՝ գրեցին փոխանակ իմն զօրութիւն, և զաստուածականն՝ յերկուս իմն մասունս բաժանեցին 'ի հակառակս միմեանց, որ նովին չափով զիւրաքանչիւր գործն առ միմեանս ցուցանիցեն, և զկէսն բարի դևս, և զկէսն չարս անուանեցին. այլ ոչ եթէ Աստուած այնպիսի ոք ինչ իցէ: Այլ ասեն, եթէ գոյ զօրութիւն անմարմին չար, բայց ոչ եթէ նմա ինչ հակառակ իցէ և ոչ զուգական նմին, այլ հնազանդ և ընդ նովաւ, որպէս մարդկան՝ զի մարթի և չարանալ և բարի լինել. և ցուցանէ եթէ ոչ յիւրմէ ինչ կարէ գործել զչարութիւնն. Մատնեցի, ասէ, զնա սատանայի. զի եթէ Պաւղոս ոչ մատնէր, ոչ իշխէր երբէք համարձակել սատանայ, որչափ ևս առաւել առանց Աստուծոյ համարձակեցուցանելոյ՝ ոչ իշխեսցէ ժտել ինչ սատանայ. զի եթէ 'ի ծառայից նորա այնպէս երկնչի, և կայ մնայ՝ մինչև զհրաման ինչ առնուցու, և զդահճի կարգ պահէ առ նոսա, որչափ ևս առաւել Աստուծոյ: Իսկ տես, զիարդ և առ Յոբ սակաւ սակաւ թոյլ տալով նմա Աստուծոյ՝ գայր հասանէր 'ի վերայ. տես և առ հիքին թշուառականին Յուդայի, զիարդ նախ ոչ իւրովի

իշխէր դիմել 'ի վերայ, մինչև առաքէ զիշխանութիւնն. զի յորժամ քակեցաւ յաստուածական գնդէն՝ ապա դիմեաց 'ի վերայ նորա սատանայ, զի թէպէտ և յառաջ քան զայն բազում տեղի պատրաստեաց զանձինն սատանայի, տաճարակապուտ, սեղանակապուտ գողութեամբն, զի այնպիսի բարեւք երկնէ այր զչարն, սակայն ոչինչ ունէր իշխանութիւն՝ մինչև մատնեաց զնա նմա Քրիստոս։ Աստի ուսանիմք եթէ որչափ ինչ անհնարին իրք են՝ յորժամ յաղօթից և յօրհնաց ոք մեկնիցի։

« Եւ մոլորեցեն զԵգիպտացիս յամենայն գործս իւրեանց, որպէս մոլորիցի արբեալ մի և փսխիցէ. և մի ևս լիցի Եգիպտացւոցն գործ՝ որ առնիցէ գլուխ կամ տուտն, սկիզբն կամ կատարած։ Յաւուր յայնմիկ եղիցին Եգիպտացիք իբրև զկանայս՝ դողացեալք և զարհուրեալք յերեսաց ձեռին Տեառն զօրութեանց՝ զոր ածցէ ինքն 'ի վերայ նոցա. և եղիցի երկիրն Հրէից խրտուիլ Եգիպտացւոցն »։ Վասն Հրէիցն, ասէ, կրիցեն զպատիժսն, զի նոքա լինէին սոցա պատճառս չարեաց։ Տեսանես, որչափ լաւութիւն լինէր Հրէից, յորժամ վասն նոցա՝ ամենայն տիեզերք խռովէին, քանզի ոչ միայն չմոլորեցուցանեն զնոսա, այլ և երկնչիցին 'ի նոցանէ։

« Յաւուր յայնմիկ եղիցին հինգ քաղաքք յերկրին Եգիպտացւոց, որ խօսիցին զՔանանացւոց լեզուն, և երդնուցուն յանուն Տեառն զօրութեանց. քաղաք Ասեդեկ կոչեսցի մի քաղաքն »։ Ակիւղաս, Քաղաք դարնանւոյ, Սիմաքոս՝ Արեգ քաղաք, Թէոդիոտն՝ Քաղաք արէն[1] անուանեսցի մին։ Եւ արդ բազում իմն ցուցանէ զդիւրութիւն իւրացն, քանզի և յԵգիպտոս չինեցաւ տաճար։ Զինչ իցէ Քանանացւոց լեզուն. այլ զի զհրէական լեզուն խօսեսցին։ Ապա ասէ և զանունն, եթէ «Քաղաք Ասեդեկ կոչեսցի մի քաղաքն». տեսանես զելս իրաց մարգարէութեանն, տեսանես զհաստատութիւնն. զի զժամանակն ասէ, և զտեղին և զթիւն և զյորջորջումն անուանն. զի ոչ եթէ զնոցայն զիտի-

1 Յօր. Ընդ մէջ ր և է տառիցն՝ դոյ տառ մի քերեալ անընթեռնլի, նոյնպէս և վերին մասն ե ին։

ցեն, այլ և զիւրեանցն ուսուցանիցեն. և քանզի ցըրուելոց էին ընդ ամենայն տիեզերս, յառաջագոյն կրթէր զնոսա, և լուծանէր զարհաւիրս օրինացն, և զհաստատութիւնն զայն 'ի միջոյ բառնայր։ Եւ այժմ, ասէն, այլազգ ուսուցանիցէ, և զիմրդ անսայցեմք. զի ըստ օրինացն՝ նզովք են այլ ուրեք շինել տաճար, և այդ՝ զօրինօք անցանել է։ Մի այսուհետև երկնչիցիս յօրինացն, այլ տես, յորժամ ինչ իցս եցոյց զանխտրութիւնն. ոչ յառաքինութիւնսն, այլ 'ի տեղւոջն ևեթ թողացոյց փոփոխել զկարգս։

«Եւ եղիցի յաւուրն յայնմիկ սեղանն Տեառն յերկրին Եգիպտացւոց». այս և զարդի իսկ ժամանակացս ասի։ «Եւ արձան կանգնեալ 'ի սահմանս նորա». զոր օրինակ արձանն կանգնեալ՝ կայ հաստատուն, և գրովն քարոզէ զհիմն ուղղութիւնսն, նոյնպէս և սեղանն. ոչ եթէ արձան ինչ իցէ պղնձի և ոչ յադամանդեայ վիմաց, այլ յայլ իմն յանձեռագործ նիւթոյ։ Եւ զինչ պատմիցէ գիր արձանիս այսորիկ. այլ զԱստուծոյ զօրութիւնն. զի սեղանս այս՝ որ կանգնեցաւ արտաքոյ, ոչ այլ ինչ, այլ զմահն Աստուծոյ պատմէ, եթէ Աստուծոյ է մահն. զի մահն Աստուծոյ մարմնովն՝ ոչ զայլ ինչ, այլ զԱստուծոյ մարդասիրութիւնն յայտ առնէ. մահն՝ յաւիտենական կենացն պատճառք։

Ապա յետ այսորիկ և զպատճառս իրացն ասէ. «Զի աղաղակեսցեն առ Տէր վասն նեղչացն իւրեանց». որպէս 'ի սկզբանէն աղաղակեցին, և առաքեաց նոցա զՄովսէս, նոյնպէս և այժմ. այլ տես, զի ամենայն ուրեք որոց խնդրեննն, որոց աղաղակենն, որոց հայցեննն՝ տայ զբարութիւնսն. ոչ վայրապար որոց և իցէ, այլ աղաղակեսցեն, ասէ, վասն նեղչացն իւրեանց։ Տեսանե՞ս, մրչափ նեղութիւնն ածէ զնոսա 'ի բարիս. աղաղակել յորդորէ, և աղաղակելն զնեղութիւնսն [1]։

«Եւ առաքեսցէ նոցա Տէր այր մի, որ փրկեսցէ զնոսա, և դատելովն փրկեսցէ զնոսա»։ Ոմանք զՈւնիայէ [2] ասեն, բայց ինձ թուի թէ զՔրիստոսէ իսկ

1 Յոր. Զյաղթութեանն։ Օտար գրչաւ 'ի վերայ եդեալ կայր զնեղութեանն, այլ պատշաճ թուի զգթութեանն։
2 Թուի լինել զՄնիայէ։

իցէ տեսացեալ. զի այլ թարգմանիչքն ասեն, թէ Առաքեսցէ նոցա փրկիչ: Չի բաղում ինչ 'ի մարգարէութեանց անտի՝ կրկին է. զի զոր օրինակ յորժամ ասիցէ, թէ Յեգիպտոսէ կոչեցից զորդի իմ. զի և այս փրկութիւն այնչափ առաւել է՝ որչափ ոգւոց և խորհրդոց և մտաց առաքինեաց է: «Դատելով փրկեսցէ զնոսա». զի՞նչ իցէ դատելովն. կամ զի զատտանայ իսկ դատապարտեաց, կամ զի ոչ վայրապար զամենեսեան: Մի՛ վասն զի շնորհաց է փրկութիւնն, անհանճարական ինչ համարիցիս. շնորհաց իսկ է, այլ զխառն շնորհաց. այլ զի ըստ արժանի շնորհացն ոք գտանիցի:

«Եւ ծանիցի Տէր Եգիպտացւոցն, և ծանիցեն Եգիպտացիքն զՏէր յաւուր յայնմիկ, և մատուսցեն պատարագս, և դիցեն ուխտս և կատարեսցեն Տեառն»: Տեսանե՞ս, զի նախ նա լինի ծանօթ, և ապա նոքա ճանաչեն: «Եւ հարցէ Տէր զԵգիպտացիս 'ի հարուածս մեծամեծս, և բժշկեսցէ զնոսա. և դարձցին առ Տէր, և լուիցէ նոցա Տէր և բժշկեսցէ զնոսա: Յաւուր յայնմիկ եղիցի ճանապարհք Եգիպտացւոյն առ Ասորեստանեայս, և մտցեն Ասորեստանեայքն յերկիրն Եգիպտացւոց. և օրհնեալ լիցի ժողովուրդ իմ՝ որ յերկրին Եգիպտացւոց է և յԱսորեստանի, և ժառանգութիւն իմ Իսրայէլ»: Մինչ յԵրուսաղէմ էին՝ 'ի չարիսն էին, և յորժամ յօտարազգեաց երկիրն չոգան՝ օրհնեալք եղեն: Տեսանե՞ս, զի ամենայն ուրեք զառաքինութիւն խնդրէ Աստուած, և ոչ զտեղիս. ո՞ ոք եղև սրբագոյն քան զազգս զայսոսիկ. եցոյց քեզ նախ եթէ և յօտար երկրի մարթ է հաճոյ լինել Աստուծոյ. յորժամ լսիցես 'ի Պաւղոսէ, եթէ Յամենայն տեղիս ամբառնալ զսուրբ ձեռս, մի՛ ինչ խռովիցիս և օտարոտի ինչ կամ արտաքոյ օրինաց համարիցիս զնա՝ որ զայսն ասաց. զի ամենայն ինչ հնոյն՝ յառաջագոյն խափանեցաւ. շաբաթք լուծան, թլփատութիւն բարձաւ, զոհք խոտեցան, տաճարն չօգնեաց ինչ, քաղաքն կործանեցաւ, տեղին կործանեցաւ: Եւ արդ այսուհետև երթեալ կքրեալ նստիցիս ընդ արուք հովանովք՝ որովք նախնիքն ինչ ոչ օգտեցան. և ամենայն հրէականքն բարձան, և գիտութիւնն միայն Աստուծոյ՝ առանց գործոց՝ ոչ ինչ և օգուտ նոցա: Տեսանե՞ս,

զի այն ամենայն ստուգեր և նշմարանք, և նոքօք այլ
իմն խնդրէր Աստուած։ Եւ մեք զայն ինչ արասցուք՝ որ
Աստուծոյ հաճոյ իցէ և կեցցուք, և առաւել ինչ մի
քննեսցուք, մի Հրէայք և մի քրիստոնեայք. զի չիք
ինչ այնպէս՝ իբրև զազնուական առաքինութիւն և
զկրօնս ուղիղս՝ զոր խնդրէ Աստուած։

## ԳԼՈՒԽ Ի

« Տասներորդ տեսիլ։ Ցամին յորում եմուտ Նա-
թան յԱզովտոս ». այլքն ասեն՝ Թարան։ « Յորժամ
առաքեցաւ յԱռանայ՝ արքայէն Ասորեստանեայց»։ Ա-
կիղաս և Սիմաքոս ասեն՝ ի Սարգունեայ։ « Հարկա-
նէր պատերազմաւ զքաղաքն Ազովտացւոց. յայնժամ
խօսեցաւ Տէր ընդ Եսայեայ՝ որդւոյ Ամովսայ և ասէ»։
Վասն է՞ր արդեւք և զժամանակն նշանակիցէ մարգա-
րէս, և զպաշարումն քաղաքին դնիցէ 'ի նշանակ. այլ
զի և զՀրէայս կրթիցէ և 'ի ժամանակէն և 'ի պաշար-
մանէ քաղաքին. քանզի բանից ևեթ ոչ հաւատային,
և մանաւանդ զԵգիպտացիսն՝ որ ոչինչ ունէին ժամա-
նակ, հանդերձ բանիւք՝ որով պարտ էր հաւանել.
քանզի սովորութիւն է անհաւատից՝ մնացելոց ինչ իրաց
չհաւատալ, զվտանգութիւն քաղաքին յաւելու առ 'ի
նշանակ՝ զի եթէ դա քեզ արհամարհեալ ինչ թուի-
ցի, ով Եգիպտացիդ և ընդվայրախօս, հաւատասջիր
յիրացդ հանդիսէ, և ընդունիջիր զարդեանցդ վար-
դապետութիւն։ Պարտ և պատշաճ էր դոյզն ինչ
հրամանի Աստուծոյ փաղփաղակի հաւատալ լուողացն,
թող թէ այժմ՝ զի արդիւնս ևս յաւելու՝ զմերկու-
թիւն մարգարէին. զի եթէ ոչ վախճան եկեալ հա-
սեալ էր բանիցն ասացելոց, ոչ 'ի զուր ինչ և վայ-
րապար արդեամբք խայտառակէր զիւր սիրելին։ Եւ
զի՞նչ զարմանք են, եթէ յորժամ ընդ անհաւատսն և
ընդ այլազգիսն խօսէր, այսպիսի գործ ցուցանիցէ,
ուր և ընդ իւր ընտանիսն այսպիսի իրօք հաստատէր
զիւրս ինչ. ոչ յորժամ առաքեցաւն, այլ յորժամ ետ պա-

տեւրազմն և յաղթեաց։ Տեսանես, որչափ ինչ շահք են 'ի ժամանակացն. մի հարևանցի վայրապար անցանիցեմք ընդ գիրս. ամենայն ուրեք՝ ոչ ինչ վայրապար ինչ յիշէ զժամանակս, այլ զի ինչ մի աւելի ուսուցանիցէ 'ի ժամանակացն։

« Երթ, ասէ, և 'ի բաց հան զքուրձդ՝ զոր զգածեալ ես՝ 'ի միջոյ քումմէ, և լոյծ զհողաթափս յոտից քոց »։ Որպիսի՜ հանդերձ, որպիսի՜ պատմուճան ունէր մարգարէս. և վասն է՞ր արդեւք այնպիսի հանդերձ, զոր վաղվաղակի ևս հրաման ընկենուլ 'ի բաց և գտանել մերկ. և զայն 'ի վերայ մերկատարր անդամոց ըզգածեալ՝ սգայր զչարիսն եկեալ հասեալ 'ի վերայ։ Ինձ այսպէս թուի, թէ որպէս Դանիէլն մոխիր տարածեաց իւր անկօղին, նոյնպէս և մարգարէս՝ իբրև ետես եթէ զանբժշկական ախտն Ջերանին, զգենոյր զայնպիսի անհնարին սուգն։ Ո՞չ տեսանիցես զկանայս, յորժամ տեսանիցեն զարս ամուսինս մերձ 'ի վախճանել՝ զխարդ սևազգած լինին, զգլուխ և զոտս 'ի թուխս համակեն, եթէ հնար ինչ էր՝ ամենևին զհանդերձսն 'ի թուխս դարձուցանէին. սոյնպէս մարգարէս, իբրև ետես եթէ ոչինչ շահ 'ի մարգարէութենէն էր լինելոց, լուաւ յոգւոցն բժշկէ՝ թէ քաղաքն յորհասական վախճան հասեալ է և չիք ինչ ուստեք նմա պատսպարան կամ օգնականութիւն. զոր օրինակ և ոչ զցաւոցն իսկ զգայցէ հիւանդն, նոյնպէս և զհրէայսն տեսանէր յանզգայս, 'ի սուգ մտանէր այնուհետև։ Այսպիսի ինչ սուգ և Երեմիա ցուցանէր. այլ տե'ս, թէպէտ և 'ի սուգ էր Եսայի, 'ի վեր ոչ հանէր, բայց յայնժամ՝ յորժամ հարկն դայր 'ի վերայ հասանէր. քանզի ոչ ինչ առնէին վասն սնապարծութեան, այլ միայն վասն բազմագութ խնամոցն. վասն այնորիկ ոչ վաղվաղակի ընդ վայրաք ածէին զիրսն՝ որ ընդ նոսա անցանելոց էին։ Եւ միտ դիր, որպիսի՜ հպատակութիւն ցուցանէ. այնպիսի անձն հաստատուն՝ յայնպիսի սուգ մտեալ, և զգոյն ևս և զտրտմութեան հանդերձ հրաման առնոյր 'ի բաց մերկանալ, և յանձին ունէր և ունկնդիր լինէր վաղվաղակի։ Վասն է՞ր և Յովհաննէս սոսկ ուղտոյ զգենոյր. ոչ զի զսուգն եկեալ ցուցանիցէ տիեզերաց, այլ զխիւրապա-

տիկ պարգևաց զպատճառս, զգալուստն՝ որ յետոյ էր աւետարանելոց. Թուի ինձ թէ և նա զքաղաքն Երուսաղէմ սգայր, զի ոչ էր ընդունելոց զՔրիստոս, զոր և ինքն իսկ Տէրն արտասուեաց։ Եւ այլազգ և՛ս. զի հաւատարիմ առնիցէ զբանսն կերպարանօքն։ Դիտէք իսկ եթէ բազում անգամ յորժամ ոչ զգայ հիւանդ ցաւոց, յայնցանէ՝ որ շուրջ զնովաւն կան՝ իմանայ զվախճանին չափս, վասն որոյ և բժիշկք պատուիրեն զի մի յաղթեալք 'ի գթոցն՝ լայցեն և ընկղմիցեն զմիտս հիւանդին, և առ տրտմութեանն՝ ևս 'ի կարիս մտանիցէ։ Զի՞նչ խօսիս, ասէ, ո՛վ մարդ, ես լալովս ինչ սպանանիցե՞մ. այո՛, ասէ, քո արտասուացդ պատճառք՝ հաւատարիմ առնեն նմա զօրհաս մահուն. այսպէս և մարգարէս ոչ միայն արտասուօք, այլ և կերպարանօք զհեռաւորս անգամ խրատէր։ Առնէր այսպիսի ինչ և Դաւիթ. այլ նա վասն իւրոյ մեղաց. առնեն զնոյն և այժմ այլք բազումք. ոչ զքաղաք՝ որ մերձ յառնուլ իցէ սգայցեն, որպէս և մարգարէս յայնժամ, և ոչ զգերութիւն ինչ յառաջագոյն իմացեալ, այլ վասն ժամանակացս չարեաց. զի ամենայն իսկ տիեզերք այժմ, որպէս և յայնժամ Երուսաղէմ, կամ 'ի տառանի, և զհասարակաց նաւակոծութիւնն տեսանեն միշտ, և սուգ առեալ աշխարհն զկորուսեալսն, զի և կորնչին և զկորուստն չիմանան թէ կորուստ իցէ. վասն այնորիկ և զքաղաքս իսկ թողեալ՝ և յանապատս դիմեցին. ոչ իբրև զՅովնան, այլ այլով իմն օրինակաւ։

« Եւ լոյծ զհողաթափս յոտից քոց. և արար այնպէս »։ Եւ այս մեծի հնազանդութեան նշանակ է. ոչ ասաց եթէ զի՞նչ խօսիդ, Տէր, ծանակ հրամայես լինել, առակ, խայտառակ լինել, ծաղր տեսողաց, ձաղ առնիցես ամենեցուն. ասիցեն՝ եթէ առանցեալ ինչ իցէ, չիցէ յիւր միտսն. յօրէնսն հրամայես՝ թէ և 'ի բաղանիս անգամ մի ինչ հարկ լինիցի մերկանալ հարց առաջի որդւոց, և մի որդւոց առաջի հարց, և ինձ՝ այդպէս հրամայես մերկ խայտառակ լինել. լիցիմք ծանականք առաջի կանանց, առականք առաջի մանկտւոյ։ Ոչ ինչ իշխեաց այսպիսի ասել, նաև ոչ բնաւ իսկ զմտաւ ածել. զի ծանականք

և ամօթ այն միայն է, զոր Աստուծոյ չիցէ հրամայեալ և առնիցէ ոք. այլ զոր ինչ Աստուած հրամայիցէ, այն չեն ինչ պատկառանք, մանաւանդ զի յուղղութիւնս ինչ լինելոց են մարդկան։ Զի՞նչ խօսիս, ով մարդ. զի Տէրն ինքնին ոչ հրաժարեաց զանարժան իւր կերպարանս զգենուլ, և բանս այնպիսի ունել յանձն՝ որ նմա ոչ վայելէին, զի զքեզ յամօթոյն զերծուսցէ. և դու հրաժարե՞ս և դանդաղե՞ս վասն քոյոյ ծառայակցաց. անճառականն և անհասականն և մտաց և սրտից և խորհրդոց, նստեալ 'ի վերայ ամպոյ երևի. և որ ևս տգեղագոյնն ինչ է՝ բարկանալն այնմ՝ յորում կարիք ինչ ցասման ոչ գտանին, և ունի յանձին զի բազում անգամ ասի, եթէ Բարկացաւ Տէր, և դու հրաժարիցե՞ս և դանդաղիցե՞ս վասն քո ծառայակցացն։ Եւ տե՛ս իսկ, ուստի՞ մերկութիւն ծանականացն եղև. 'ի մեղաց. զի ծանականք՝ մեղքն միայն են, և նա է պատճառք մերկութեանն, որ առնէ զամենեսին նշաւակ խայտառակ. իսկ յորժամ Աստուծոյ հրամանաւ ոք մերկանայցէ, այն չեն ծանականք։ Ո՞չ իցէ տեսեալ զնահատակական մարտիկսըն՝ մերկացեալս, պատրաստեալս. և աստ՝ ոչ այնպիսի ինչ վնաս տեսողաց, այլ օգուտ և շահ և մեծ զօրավիգն օգնականութեան։

« Եւ արար այնպէս. և երթայր մերկ և բոկ գնացեալ։ Եւ ասէ Տէր. Զոր օրինակ երթայ գնացեալ մերկ և բոկ՝ ծառայ իմ Եսայի, զերիս ամս եղիցին նշանք և արուեստ 'ի վերայ Եգիպտացւոցն և Եթէովպացւոցն, և 'ի միտ առցեն թէ այդպէս վարեսցէ զԵգիպտացիս և զԵթէովպացիս՝ արքայն Ասորեստանի 'ի գերութեան, զծերս և զերիտասարդս մերկս և բոկս »։ Եւ ընդէ՞ր, ասեն, այլովք ոչ հրամայեաց. ասեմք, եթէ ոչ լինէր իրքն այնպէս ահագին և ոչ այնպէս ընդհանուր սփռէր։ « Այնպէս եղիցի նշանք և արուեստք զերեամ»։ Տեսանե՞ս, որչափ ինչ վնաս լինի 'ի մերձաւորան ապաստան լինելոյ և ոչ յԱստուած. լուար զտկարութենէ դրացեացն, զի եկեալ հասեալ էր մօտ 'ի դուրս, և ոչինչ զգաստացար. լուար և զմերկութենէ մարգարէին, և ոչ ինչ զղջացար. զերեամ հրամայեաց սքանչելի և նորագործ ի-

րացն լինել, և ոչ ինչ օգտեցար, վասն այնորիկ երթայ-
ցես մերկ 'ի գերութեան, հանդերձ ամօթով, և պա-
տիժքն՝ հանդերձ տառապանօք և վնասօք: « Երիտա-
սարդք՝ ծերովք հանդերձ ». գառն տեսիլ տեսանել,
ողորմագին և եղկելի, ծերութիւն ալեօք հանդերձ 'ի
գերութիւն վարեալ: Եւ որպիսի՜ պատժոց չէին պար-
տական Հրէայք, զի զայսպիսի ինչ յառաջագոյն լուէին,
և զվճիռ իւրացն տեսանէին: Տե՛ս, զի և այժմ այսպիսի
ինչ լինի, և ոչ ես մարգարէ ոք առաքի, այլ ինքնին
Քրիստոս՝ յանձին եցոյց զամենայն բարիս և զկարիս.
յարութիւն, ասէ, լինելոց է. և նախ յիւրում մարմնին
եցոյց և զչարչարանսն. Պարտ է, ասէ, Որդւոյ մարդոյ
բազում չարչարանս կրել. Թուք յերեսս ընկալաւ, ապ-
տակեցաւ, պրկեցաւ, յետոյ և զչարչարանս մահու
յանձին կրեաց. մարգարէքն լալով ասէին եթէ այս-
պիսի ինչ լինելոց է, և նա կրեաց իսկ յանձին զչարչա-
րանսն, զի և զմեզ յօժարեցուսցէ 'ի չարչարանս. Նո-
ցայն՝ պատժոց էին չարչարանքն, մերս՝ ուղղութեան
և առաքինութիւն:

« Եւ ասասցեն բնակիչք կղզւոյդ այդորիկ յաւուր
յայնմիկ. ահաւասիկ մեք յուսացեալ էաք՝ ապաստան
փախստեան 'ի սոսա, արդ սոքա զանձինս իւրեանց ոչ
ապրեցուցին յարքայէն Ասորեստանի. զմեզ զիարդ
փրկիցեն սոքա »: Եւ զայս՝ վասն Հրէիցն, զի ուսանի-
ցին մի՛ ապաստան լինել 'ի մարդիկ օգնականութեան,
այլ յԱստուած:

# ԳԼՈՒԽ ԻԱ.

« Մետասաներորդ տեսիլ անապատի ծովուն։ — Իբրև մրրիկ ընդ անապատ անցցէ, եկեալ յանապատ երկրէ »։ Ակիւղաս ասէ. Կառք անապատի, Սիմաքոս և Թէոդոտիոնին՝ Առածած [1] ասեն։ Ակիւղաս ասէ. Իբրև փոթորիկք 'ի հարաւ. Սիմաքոս և Թէոդոտիոնին՝ Իբրև մրրիկք 'ի հարաւոյ։ Ակիւղաս ասէ. Երթալ և գալ յանապատն երկրէ ։ « Ահագին է տեսիլն և խիստ՝ որ պատմեցաւ ինձ, որ արհամարհելոց [2] . . . ։

1 Այսպէս յօրինակին։

2 Յօր. Քանի մի թերթք անկեալ են, որով պակասի յետ այսորիկ մինչև 'ի Գլ. Լ. համար 6. Տեսիլ չորքոտանեաց, որ սկսանի ուրոյն խորագրով։

## Երանելւոյն Տեառն Յովհաննու Ոսկեբերանի 'ի մարգարէն Եսայիաս մեկնութիւն ։

« Տեսիլ չորքոտանեաց յանապատի, 'ի նեղութեան և յանձկութեան » ։ Քանզի ամբարշտութիւնս ընկալան յանձին, վասն այնորիկ չորքոտանիս կոչէ զնոսա. զի թէպէտ անապատ և անջրդի ճանապարհք էին 'ի միջի, սակայն ոչ դանդաղէին առ անմտութեան՝ երթալ տանել զմեծութիւնս իւրեանց՝ առ ազգն Եգիպտացւոց, որ ոչ ինչ կարէր օգնել նոցա ։

« Առիւծ և կորիւն առիւծու, և անդստին և ձագք քարբից թռուցելոց, որ բարձեալ տանէին իշոց և ուղտուց զմեծութիւնս իւրեանց » ։ Առիւծ՝ զՅուդայի ազգն կոչէ, որ ոչ անձամբ ունէին զօրութիւն, այլ 'ի վերին օգնականութենէն. ըստ այնմ, եթէ Կորիւն առիւծու Յուդա. յիշեցուցանելով զնախնեացն առաքինութիւնս, հեգնէ զյետնոցն անմտութիւնս ։ « Եւ անդստին իժք և ձագք քարբից թռուցելոց ». զի անտի կսկծեցուցէ, թէ որպէս 'ի հարց առաքինեաց, որպիսի ժանտ որդիք եղեն ։ Դուք, ասէ, զիս յամօթ առնէք. զի ես ձեւք պարծիմ 'ի թշնամիսն. զի որ արդարն է՝ իբրև զառիւծ յանձնապաստան է. իսկ ամբարիշտն ամօթով է և չունի համարձակութիւն յերես ։

« Ե՛րթ, ասէ, պատմեաց, թէ 'ի զուր է այդ մխիթարու . . . յառաջագոյն չէր պատու . . . մ համանէին պատիժքն 'ի վերա . . .[1] յանկարծադէպ զիրսն կարծէին. նա ոչ միայն պատմել առնու հրամանն, այլ՝ եթէ « Նիստ և գրեա 'ի տախտակի և 'ի գիրս հաստատեա. զի եղիցի այս յաւուրս ժամանակաց՝ մինչև յաւիտեան. զի ժողովուրդ ապստամբ է և որ-

1 Յօր. Կտտորակ ինչ փոքրիկ պատառեալ գոլով 'ի թղթոյն՝ անընթեռնլի մնան բառքն ։

դիք սուտք, որ ոչ կամեցան լսել զօրէնս Աստուծոյ»։ Տեսանե՞ս, զիա՞րդ առնուին հրաման գրել յանդիմանութիւն և յամբաստանութիւն նոցա, որպէս և Մովսէս յորհնութիւնն։

Արդարև ժողովուրդ ապստամբք, եղծեալք զեղծեալք. «Ոյք ասէին ցմարգարէսն՝ մի պատմէք մեզ, և որ զտեսիլն տեսանէին՝ թէ մի խօսիք ընդ մեզ ուղիղ». որպէս ցաւածք՝ որ սոսկայցեն 'ի բժշկական ձեռաց։ «Այլ խօսեցարուք բանիւք լոկօք, պատմեցէք մեզ մոլարով զօտար, և մոլորեցուցէք զմեզ 'ի ճանապարհէս յայսմանէ»։ Իւ տեսանեմք՝ զի և տեսիլք յայտնիք և մարգարէութիւնք երևելի պատմէր վասն նոցա հաստատութեան, և նոքա ընդդէ՞ր դժկամակ լինէին ընդ բանս և մոլորել կամէին։

«Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր՝ սուրբն Իսրայելի. փոխանակ զի անարգեցէք դուք զբանս իմ, և յուսացարուք 'ի ստութիւն, և զի տրտմեցէք դուք՝ զի յուսացեալ եղերուք 'ի բանդ յայդ»։ Ո՞ր բան. զի ոչ յԱստուած յուսային, այլ 'ի պատերս Եգիպտացւոցն։ «Վասն այսորիկ եղիցին մեղքդ այդ ձեզ 'ի նզովս, իբրև զպարիսպ հզօր քաղաքի 'ի ժամանակս պաշարման վաղվաղակի կործանեալ»։ Ահաւասիկ մեծ մեղք են դժկամակ լինել ընդ բանս Աստուծոյ, և յայսմանէ իբրև զպարիսպ հզօր քաղաքի կործանի. իսկ հաստատունն և անշարժ այն է, որ ասէ՝ եթէ «Յորժամ դարձցիս հեծեծիցես, յայնժամ կեցցես և գիտասցես թէ ուր իցես. զի յուսացեալ էիր դու 'ի սնոտիսն, սնոտի եղև զօրութիւն ձեր, և ոչ կամեցարուք լսել»։ Յայնժամ մեծապէս իմն խրատիմք՝ յորժամ 'ի մեղացն իբրև 'ի մեղաց հեռանայցեմք. զի յորժամ մեղքն գործիցին՝ խաւար իմն մածեալ առնի առ աչօք, և ոչ ոք իմանայ զմեղսն՝ մեղս. իսկ յորժամ հեռանայցէ 'ի մեղացն, ապա զգայ զցաւս մեղացն։ Զոր օրինակ սառամանիք լուծանիցին, ապա յայտնին ուղխք սառամանեացն. որպէս մեծին Դաւթայ իսկ պատահեցաւ. և յորժամ դարահոս ոք 'ի խոր ուրեք ձորոց անկանիցի, յորժամ անդրէն ելանիցէ, ապա իմանայ զարհաւիրս արհականացն։ Զի՞նչ, ասէ, պտուղ ունէիք յայնժամ, վասն որոյ այժմ զամօթի հարկանիք. մի խնդրիցես զմեղսն

տեսանել՝ մինչդեռ 'ի մեղսն իցես, այլ յորժամ զերծանիցիս և 'ի բաց վազիցես, յայնժամ ուղիղ ընտրութեամբ տեսանիցես զմեղսն՝ մեղս. ապա ուրեմն հեծութեանց և յոգոց հանելոյ պէտք են վասն մեղաց. զի յոգոց հանել և հեծել՝ ստգտանք են մեղացն գործելոց. և յայտ է՝ եթէ դառնալ պարտ է և հեծել և յոգոց հանել. զի հեծութիւն՝ դարձին հաստատութիւն է և զգուշութիւն: Տէր զօրութիւն ձեր եղև, և ոչ կամեցայք դուք լսել նմա. և թէպէտ և զհանդէս իրացն տեսէք, սակայն և ոչ այն եղև ձեզ վարդապետ:

« Այլ ասացէք, եթէ յերիվարս մեր հեծցուք և փախիցուք. վասն այսորիկ՝ դուք իսկ ինքնին հալածականք լիջիք. և ասացէք՝ թէ թեւօք փախիցուք մեք. վասն այսորիկ թեթեւագոյնս ևս լինիցին՝ որ հալածիցեն զձեզ. զի 'ի ձայնէ միոյ՝ փախիցեն հազարք, և 'ի ձայնէ հնգից՝ փախիցեն բազումք »: Եւ աստ յայտ է, եթէ զԲաբելացւոցն նշանակէ. բազում ծանօթս տայ գիտութեան, առ 'ի ճանաչել եթէ 'ի վերուստ է օգնականութիւնն: « Մինչև մնասջիք իբրև զձող մի ցցեալ 'ի լերին, և կամ իբրև կոթող մի նշանակեալ 'ի վերայ բարձանց: Եւ դարձեալ կանխեսցէ Աստուած 'ի վերայ ձեր գթալ, և վասն այսորիկ բարձրասցի ողորմել ձեզ »: Այսինքն է՝ զմեծ և զանբաւ զօրութիւնն իւր ցուցանիցէ:

« Զի դատաւոր Տէր Աստուած մեր է. երանեալ է՝ ոյք համբերեն նմա, զի ժողովուրդ սուրբ 'ի Սիոն բնակիցէ »: Ոչ այսպէս այլ ինչ օգուտ է մեզ՝ իբրև զհամբերութիւն և զյոյս հաստատուն. զի Պաւղոս ասէ. Յոյս ոչ ամաչեցուցանէ. և դարձեալ, եթէ Համբերութեամբ բազմաւ. յաւետարանսն՝ եթէ Որ համբերիցէ իսպառ՝ նա կեցցէ. զի չիք ինչ այնպէս՝ որ առնիցէ փորձ զմարդն: « Եւ Երուսաղէմ լալով ելաց՝ թէ ողորմեաց ինձ ». և առ պատասխանի ... ուածոց քոց ողորմ. . . անեմք, զի աստ արտաս...[1] վճարեցին զամենայն. ոչ վարք պարկեշտականք, ոչ ուղղութեանց յաճախութիւնք, և ոչ առաքինութեանց հանդէս, այլ գոչումն

1 Յօր. Բառք ինչ եղծեալ են 'ի մաշմանէ թղթոյն:

և սրտատուք։ Որպէս և յերկրին Եգիպտացւոց, Տեսանելով, ասէ, տեսի զչարչարանս ժողովրդեան իմոյ՝ որ յԵգիպտոսն էր, և աղաղակի նոցա լուայ. ոչ եթէ յազնուութիւնս ինչ փոխեցան, այլ զայն բաւական համարեցաւ 'ի փրկութիւնն՝ զի բողոքեցին առ նա։ Եւ այդ միայն հաշտեցուցանէ. այո, ասէ, քանզի ողորմած է, և ողորմեցի քեզ։ «Զձայն աղաղակի քո իբրև ետես և լուաւ քեզ, և տացէ քեզ Տէր հաց նեղութեան և ջուր կարօտանաց». զի թէպէտ սակաւ ինչ նեղիցիք[1] այդրէն 'ի քաղաքիդ, այլ 'ի տարաշխարհական գերութենէ զերծեալ ապրեսջիք։

«Եւ այնուհետև ոչ ևս մերձեսցին 'ի քեզ, որ մոլորեցուցանէին զքեզ»։ Տեսե՞ր, որչափ շահք 'ի պատժոցն լինին, և որպիսի օգուտ յետ տանջանացն. ոչ ասէ եթէ ոչ ևս մոլորեցուցանիցեն զքեզ, այլ եթէ ոչ ևս մերձեսցին 'ի քեզ. զի անմատոյց և անըմբռնելի լինիցիս նոցա։ «Զի աչք քո տեսցեն 'ի մոլորեցուցիչս քո, և ականջք քո լուիցեն 'ի վերայ այնոցիկ՝ որ մոլորեցուցանէինն զքեզ, զի մոլորութեամբն որով զքեզ մոլորեցուցանէին՝ ինքեանք մոլորիցին». այսինքն արծաթապատ նանրովքն՝ որով զքեզ ստիպեցուցանէին յԱստուծոյ փրկութենէն՝ ինքեանք վրիպեցան, որպէս և յաջորդքն իսկ յայտ առնեն։

«Եթէ դարձեցուսցես դու զկուռսն՝ զոսկեպատս և զարծաթապատս, խորտակեսցես և հոսեսցես իբրև զջուր դաշտանաց, և իբրև զաղբ մերժիցես զնոսա. յայնմ ժամանակի եղիցի անձրև սերմանեաց երկրի քում, և հաց արմտեաց երկրի քո յագուրդ և 'ի պարար. յայնմ աւուր ճարակեսցին խաշինք երկրի քո 'ի տեղի պարարտութեան յանդորրու»։ Եւ մի խնդրեսցուք յայսմ վայրի զասացեալսն՝ եթէ եղև և եթէ ոչ, զի բազում ինչ վասն յորդորելոյ հանելոյ զնոսա 'ի գերութենէն իբրև առաւելութեամբ իմն ասացաւ, և բազում ինչ՝ վասն զի չեղեն արժանի՝ ոչ կատարեցաւ. և յայտ յաջորդօքն է։

«Եւ եղիցի, ասէ, 'ի վերայ ամենայն լերանց բարձանց և 'ի վերայ ամենայն գլխաւոր բլրոց՝ ջուր բղ-

1 Յոր. Զնեղիցիք։

խօսել»։ Եւ ոչ ուրեք տեսանեմք, եթէ այսպիսի ինչ յետ դարձին կատարեցաւ առ նոսա. վախճան, ասէ, խօսեցայց ածել 'ի վերայ ազգի և թագաւորութեան, և եթէ դառնայցեն՝ ոչ արարից։ Եւ այլազգ ևս. մի՞ լիցի ցուցանել եթէ յայնժամ ասացաւ և նոցա լիցի յայտ առնել եթէ կատարեցաւ։

« Եւ եղիցի, ասէ, լոյս լուսնի՝ իբրև զլոյս արեգական, և լոյս արեգական՝ եօթնպատիկ եղիցի յաւուր յայնմիկ, յորժամ բժշկեսցէ Տէր զբեկումն ժողովրդեան իւրոյ»։ Տեսցուք առ ում ոք կատարեցաւ մարգարէութիւնս այս. անգստին 'ի վերուստ քննեսցուք. զի Հրեայք ասեն, եթէ հանդերձեալ է լինել, և մեք ցուցանեմք, եթէ 'ի Հրէից ոք ոչ բժշկեցաւ. այլ մեք յանձինս ցուցանեմք, զի մեծ լոյս ծագեաց մեզ. ոչ միայն եօթնպատիկ քան զարեգակն, այլ բիւրապատիկ ևս անչափ առաւել, զի առհասարակ արտաքին և ներքին աչք լուսաւորեցան, և ջուր կենդանի յամենայն տեղիս բղխեաց, այսինքն՝ ուսումն վարդապետութեանն Քրիստոսի. և բժշկեցաւ բեկումն մեր և պատեցան վէրք։ Եւ արդ մի՞ 'ի ցուրտ և 'ի սնոտի յոյս յուսացեալ պատրիցին և անկանիցին 'ի ճշմարտութենէն։ Երուսաղէմ, ասէ, լալով ելաց, եթէ ողորմեսցի ինձ. և երբ եղև այս. 'ի գերութեանն, ասեն. իսկ այժմ ո՞չ երբէք զնոսա 'ի սուգ, բայց յայնժամ հանապազ յայնմ ծնկէին. Ի գետս Բաբելացւոց՝ անդ նստէաք և լայաք, ասէ։ Եւ զարշեցուցես զկուռսն. զո՞ր կուռս. և երբ սրբեցան նոքա յամբարշտութենէ. միթէ յԱստուծոյ ո՞չ ասացան նոցա մեծամեծքն լինել 'ի դարձին, կամ եթէ չէ՞ր կարող կատարել զոր խոստացաւն. այլ որպէս վերագոյնն ասացաք՝ նոքա զանձինս չարարին արժանի։

« Ահաւասիկ անուն Տեառն գայ յամայր ամս, յետ բազում ժամանակաց վառեալ սրտմտութիւնն հանդերձ փառօք. պատգամք շրթանց նորա լի բարկութեամբ, և բարկութիւն սրտմտութեան նորա իբրև զհուր կերիցէ, և հոգի նորա իբրև զջուր ձորալից պաշարանցաթաղ եկեսցէ»։ Ի՛ և այժմ սրտմտութիւն նորա, այլ ոչ հանդերձ փառօք. յայնժամ յայտնելոց են փառք նորա և առաւել լուսաւորութիւն։ «Եւ բար-

կութիւն սրտմտութեան նորա իբրև զհուր կերիցէ »․ որպէս վճիռ դատաւորաց ոչ այլ ինչ է, բայց եթէ մահ, նոյնպէս և Քրիստոսի վճիռն՝ հուր և տանջանք են․ ըստ այնմ՝ եթէ Երթայք յինէն, անիծեալք Հօր իմոյ, 'ի հուրն յաւիտենից, որպէս պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա։

« Եւ հալածեսցէ զնոսա 'ի մոլորութիւն, և հասցէ նոցա յանդիման նոցա պատիժքն․ մինչ հանապազ պարտիցէ ձեզ ուրախ լինել և մտանել 'ի սրբութիւնս իմ »։ Որք միշտ մեղանչիցեն՝ մինչ միշտ մատնեսցին 'ի տանջանս․ զի թէպէտ և այլ ինչ նշանակ տանջանաց չկայր 'ի միջի, սակայն 'ի մարդկան փոփոխմանցն պարտ էր խորշել և չհամարձակել 'ի չարիս։ Եւ թէպէտ մի իսկ բաւական համարեսցին զՀրէաստան միայն Աստուծոյ, այլ և զԱսորեստանեայսն կոչեսցեն յօգնականութիւն, և յորժամ յապահով լինիցին եթէ չիցէ ուստեք կասկած, յայնժամ բարեկամացն առաւել քան 'ի թշնամեաց լինիցի կասկած, որ բաւական լիցի մոլորեցուցանել և ցուցանել՝ եթէ աստուածատուր է բարկութիւնն․ զի ոչ հին ինչ թշնամութեանն մեղադիր լինիցին, և ոչ վաղվաղակի փոփոխմանն հաւատասցեն։

«Զի նոքա փողովք և թմբկօք տայցեն պատերազմ »․ և այն ինքն իւր լինիցի պատճառք, զի ինքն անձամբ անձին ած 'ի վերայ զչարիսն։ « Հուր կիզման և կարկուտ քարախառն » զսուր Բաբելացւոցն կոչէ․ զի մինչդեռ յապահով և յանկասկած էին, և բարեկամս և ոչ թշնամիս համարէին զնոսա, յանկարծակի իբրև հրդեհ բորբոքեցան և իբրև զկարկուտ արագահաս հասին․ որ յաւուրս Եզեկիայ՝ հրեշտակս հանդերձ պատարագօք առաքեցին առ նա։ Եւ յորժամ ճառէ զԲաբելացւոյն, և զԱսորեստանեայս անուանէ․ ընդ այն մի ինչ զարմանար, զի յորժամ Ասորեստանեայքն ունէին զԱսորեստան, և զԲաբելացիսն առհասարակ ունէին․ նոյնպէս և յորժամ Բաբելացիքն զԲաբելոն՝ և զԱսորեստանեայսն։

« Եւ եկեսցէ նմա շուրջ յօգնականաց իւրոց, յոր կողմ և յուսացեալ իցէ․ և նոքա փողովք և թմբկօք մարտիցեն ընդ նմա փոփոխ․ քանզի ոչ եթէ յառաջ

քան զաւուրս մոլորիցիս». այսինքն՝ ոչ յառաջ քան զժամանակն մատնիցիս 'ի պատիժս. և երկու ինչ աղէտք հասանելոց էին 'ի վերայ. մի՝ զի յանկարծ յանկասկած, և միւս ևս՝ զի 'ի բարեկամացն։

«Մինթէ և դու իցես պատրաստեալ թագաւորել 'ի վերայ ձորոյն խորոյ»։ Զթագաւորութիւնն Յուդայ 'ի ժամանակի գերութեանն պատուհասէ, եթէ չես թագաւորելոց. և յայտ յաջորդքն է։ «Իբրև զփայտ բորբոքեալ, ասէ, հրով բարկութիւնն Տեառն, և իբրև զձոր ինչ 'ի ծծմոյ բորբոքեալ». զի զանվրէպ պատիժսն յայտ առնիցէ։ Մարթի զայս իմանալ և վասն հանդերձեալ աշխարհին դատաստանի։

## ԳԼՈՒԽ ԼԱ.

«Վայ այնոցիկ ոյք իջանեն յԵգիպտոս վասն օգնականութեան, որք 'ի հեծեալս և 'ի կառս յուսացեալ իցեն»։ Զի՞նչ ինչ կայցէ քան զայն անմտութիւն, որք այնչափ 'ի նոցանէ չարչարանս կրեցին և յայնժամ և յետ այնորիկ՝ և 'ի նոցանէ ոչ թափէին, և ոչ ատէին զնոսա, այլ ևս ապաստան լինէին 'ի նոսա։ «Եւ 'ի բազմութիւն կառաց և երիվարաց. և ոչ էին յուսացեալ 'ի սուրբն Իսրայելի»։ Թէպէտ և առաջին պատմութիւնն ուսուցանէր նոցա զԱստուծոյ զօրութիւնն՝ եթէ չէր նոցա պարտ ապաստան լինել 'ի զօրս, սակայն ոչ այնմ ինչ մեղադիր լինի, այլ զի յԱստուած ոչ յուսացան՝ եթէ նա եհան զնոսա անտի։

«Եւ նա իմաստութեամբ ածէր 'ի վերայ նոցա զչարիս. և բան նորա ոչ անարգեսցի. և յարիցէ 'ի վերայ տանց անօրէն մարդկան, և վասն սնոտի յուսոյն 'ի յայր եգիպտացի և ոչ յԱստուած»։ Հասարակաց են պատիժքն և բազում ամբաստանութիւնն. քանզի բազումք և այժմ ապաստան լինին յԵգիպտացիսն. Թողեալ զերկնաւոր յոյսն՝ յանցաւոր օգնականութիւնսն ապաստան լինին, 'ի մեծութիւնս, 'ի հարստութիւնս։ «Եւ նա իմաստութեամբ ածէր 'ի վե-

րայ Նոցա չարիսն». իմաստութեամբ և ոչ ապիրատութեամբ. քանզի գործէ իմաստութեամբ, զի 'ի Նորա օգնականութենէն կարօտ գտանիցին. և ոչ միայն իմաստութեան գործ է, այլ և մարդասիրութեան: «Եւ բան Նորա ոչ անարգեսցի». զի 'ի Նա ապաստան լինիցին, և մի այլ ինչ վայրապար հնարս հնարիցեն: «Եւ վասն սնոտի յուսոյն 'ի յայր եգիպտացի և ոչ յԱստուած». զի յուսացեալ լինէին յերիվարսն Եգիպտացւոց, ուստի ոչ ինչ օգտութիւնս գտանէին. Երիվար, ասէ, պատրաստի 'ի պատերազմ, բայց 'ի Տեառնէ է օգնականութիւն: Կամէր զի և առանց այնպիսի ինչ իրաց յաղթէին, այլ զի մի հպարտանայցես, արար զքեզ կարօտ բազում ինչ իրաց:

«Այսպէս ասաց ցիս Տէր, եթէ զոր օրինակ գոչեսցէ առեւծ կամ կորիւն առեւծու յորս՝ յոր հասանիցէ, մռընչեսցէ 'ի վերայ մինչև լցցէ զլերինս բարբառով իւրով, և սարսիցեն ամենեքեան 'ի սրտմտութենէ բարկութեան Նորա, այնպէս իջցէ Տէր զօրութեանց զօրաժողով լինել 'ի վերայ լերինն Սիոնի»: Տեսանե՞ս, յորպիսի փոքր օրինակ խոնարհի, և զարհուրեցուցանէ. որպէս յՈվսէէ մարգարէ ասէ, թէ Պատահեցից Նոցա իբրև զարջ զայրացեալ: Եւ չև զահագին սաստն բարբառեալ՝ անդէն վաղվաղակի դառնայ յողոքս. «Դարձարուք, ասէ, որ խորհիք ըզխորհուրդս խորինս և զանօրէնս». քան զբարերարութիւն և զփրկութիւն՝ դառնալոյն օրինակ մեծ է:

«Բարձցեն, ասէ, զձեռագործս իւրեանց մարդիկ[1] զարծաթեղէնս և զոսկեղէնս». յորժամ պատժին՝ յայնժամ դառնան 'ի լաւութիւն, որպէս 'ի գեհեննին՝ այնպէս ինչ լինելոց է. քանզի և Մեծատունն յորժամ պատժեցաւ՝ յայնժամ դարձաւ 'ի լաւութիւն, ապիրատն և անագորոյնն՝ յանկարծակի շրջեցաւ և եղև մարդասէր. աղաչէր՝ զի առաքեսցէ զղզ քարոզել իւրոց եղբարցն, զի մի և Նոքա վճարեալ մեղօք 'ի Նոյն պատիժս գայցեն: Մինչև 'ի բարիսն էր և հանապազ տեսանէր զմերձաւոր Նեղեալն՝ ոչ ողորմէր, և յորժամ 'ի տանջանսն եմուտ, ապա և բացականացն ողորմէր և

1 Յոր. Բառգ. ձուրդին՝ օտար գրչի է:

մարդասէր լինէր. և այսպէս ամենայն ուրեք տեսանեմք զշահս՝ որ յետ պատժոցն լինին. քանզի և ոչ տանջէ զոք Աստուած զայրացեալ մտօք, որպէս մեք յորժամ խնամք բարկութեամբ՝ ընդ այլս հանեմք զցասումն. իսկ Աստուած ոչ այսպէս, այլ ածել յուղղութիւն զմեր կամակորութիւնս խրատէ։ Իսկ Փարաւոնի, ասեն, ընդէ՞ր ոչ ողորմեցաւ՝ յետ դառնալոյ 'ի լաւութիւնս. ասեմք, եթէ ո՞ւր է՝ զի եցոյց ինչ լաւութիւնս. ո՞չ յետ տասն հարուածոցն հետամուտ լեալ, կամէր 'ի բուռն արկանել զժողովուրդն. և յայտ է թէ ոչ Աստուած եղև պատճառք կորստեան նորա, այլ ինքն անձամբ անձին. քանզի որք զանբժշկական ախտն ախտանայցեն՝ զնոսա մատնէ 'ի մահ, որպէս և Ջրհեղեղակուրսն և զՍոդոմացիսն, որք ոչ կամեցան գալ 'ի բժշկութիւնս՝ սատակեցան։ Եւ այժմ ընդէ՞ր, ասեն, չառնէ այնպիսի ինչ, այլ ներէ մինչև ցծերութիւն, այնպիսի մարդկան՝ որ 'ի չարիս ծերանայցեն. ասեմք. յայնժամ յիրաւի լինէր, զի անդէն առժամայնն հանէր. և այժմ ներէ, զի յարութեանն յոյսն հաստատեսցի, զի մի՛ 'ի հարկէ զոք առնիցէ առաքինիս. յայնժամ զի ոչ ինչ երկիւղ գեհենին կայր 'ի վերայ, նմանագոյնն անդէն առ ետեղ ածէր զպատիժսն. իսկ այժմ զի հանդերձեալ աշխարհի երկիւղիւն զգաստանայցեն՝ ոչ ածէ զպատիժսն, բայց եթէ յանկարծ դուն ուրեք։

« Եւ անկցի նա 'ի սուր, ոչ 'ի սուր առն և ոչ 'ի սուր մարդոյ կերիցէ զնա. և 'ի փախուստ դարձցի յերեսաց սուսերի. և երիտասարդք նորա 'ի պարտութիւն մատնեսցին ». այն իսկ է, զի ոչ սրով կոտորեաց զբանակս Ասորեստանեայցն՝ հրեշտակն։ « Եւ եղիցին վէմք արգելեալք իբրև զորմարգելս. և 'ի պարտութիւն մատնեսցին. և որ փախստական ոք իցէ՝ ըմբռնեսցի ». զի յայտ արասցէ, եթէ ոչ են ապրելոց 'ի սաստկացեալ Աստուծոյ բարկութենէն։

« Այսպէս ասէ Տէր. Երանի այնոցիկ՝ որ լինիցին զաւակ 'ի Սիովն, և որդեակք իցեն նորա 'ի յԵրուսաղէմ»։ Ակիւղաս և Թէոդոտոն ասեն. Երանի՜ որոյ լոյս 'ի Սիովն իցէ. Սիմաքոս ասէ. Որ ունիցի զհուր 'ի Սիովն, և զհնոցն յԵրուսաղէմ. և հուր աստ՝ զպա-

տիժմն՝ որ 'ի ժամանակս Եզեկիայ 'ի վերայ Աստրէստանեայցն[1] եկին՝ կոչէ: Եւ զաւակ 'ի Սիոնի և ընտանիս յԵրուսաղէմ, զփրկութեան ժամանակն երանէ: Իսկ այլքն վասն վերին քաղաքին Երուսաղեմի ասացին. և յանձն առնում. քանզի է և է իսկ 'ի տանջանաց և խրատուց ազրիլ յայսմ աշխարհի, բայց զինչ համեմատ առ այն իցէ, յորժամ յայնմ տանջանաց ոք ազրեսցի. և թէպէտ և որդիք և ընտանիք ոք իցեն Աստուծոյ, սակայն պարտին և յիւրեանց անձանց առաքինութիւնս ցուցանել. զի թէպէտ և անուանեացին որդիք, և կարգս առաքինիս ոչ ցուցանեն, չէ այն նոցա յօգուտ՝ անուն որդւոց. որպէս և հարք՝ ոչ եթէ ծնանելովն միայն են հարք, այլ զի և կարգս ինչ ուղիղս ուսուցանիցեն որդւոց. քանզի և Պաւղոս՝ ոչ եթէ յորդեծնութենէն եւեթ հաշուի մեզ օգտել, այլ ասէ, եթէ կացցեն 'ի հաւատս, 'ի սէր և 'ի սրբութեան՝ հանդերձ պարկեշտութեամբ. զի եթէ տանջանս կրելոց իցեն, ապա ևս առաւել և պատիւս վայելիցեն:

## ԳԼՈՒԽ ԼԲ

« Զի ահաւասիկ թագաւոր արդար թագաւորեսցէ, և իշխանք իրաւամբք իշխեսցեն »: Քանզի ոչ սակաւ երախտիք են յԱստուծոյ, յորժամ արդար թագաւոր յարուցանիցէ թագաւորել, և իշխան իրաւանց՝ առ իշխել. և արդար՝ ոչ միայն զայն ասէ որ յընչից ազատ իցէ, այլ որ զիրմն ամենայն՝ արդարութեամբ վճարիցէ. և մանաւանդ թագաւորին և իշխանաց վայելէ արդարութիւն, որ կարող են և զօրէնս հաստատուն պահել և զկարգս խանգարել: Իսկ այլք 'ի Քրիստոս առին, թէ « Ահաւասիկ թագաւոր արդար թագաւորեսցէ », և իշխանս՝ զառաքեալս. ըստ այնմ՝ որ ասէր 'ի Սաղմոսին, եթէ Կացուսցես զնոսա իշխանս ընդ ամենայն երկիր:

1 Յոյն. Հրէաստանեայցն. ստար գրչաւ Աստրէաստանեայցն.

« Եւ եղիցի մարդն թաքուցանել զբանս իւր, և թա-
քիցէ որպէս 'ի ջուրց սաստկութենէ յահէ բազմու-
թեան զօրութեանցն. և երևեսցի 'ի Սիօնի իբրև ըղ-
գետ սաստիկ երևեալ փառաւոր՝ յերկիր ծարաւուտ »:
Զյաղթութիւնն՝ որ 'ի ժամանակին Եզեկիայի կատա-
րելոց էին՝ նշանակէ: Վասն այսորիկ թոյլ ետ Աստուած
բազմանալ երկիւղին, և բանիւք չափ միայն ճոխանալ
թշնամեացն, զի յորժամ իրքն 'ի գլուխ ելանիցեն՝ մի
մոռասցին զսքանչելիսն և մի սակաւ ինչ համարեսցին
զչարիսն: Զի յորժամ մօտ իցեն աղէտք՝ սովոր է եր-
կեցուցանել և ահագին և նոր իմն երևել. իսկ յոր-
ժամ անցանիցեն՝ արհամարհելիք իմն լինին, և բնաւ
ինչ և յիշատակ ինչ չերևի իրացն գործելոց: Տեսանե՞ս,
զի աստ յառաջագոյն ասէ զյաղթութիւնն զԵզեկիայ
արքայի, ոչ յորժամ ահն անցանիցէ, և սքանչելիքն
մոռացօնք լինին. արդ զի մի այսպէս ինչ լինիցի, յեր-
կարեաց Աստուած զահն և թոյլ ետ, զի երևեսցին
սքանչելիքն:

« Եւ եղիցի, ասէ, 'ի Սիօնի իբրև զգետ սաստիկ
փառաւոր՝ յերկիր ծարաւուտ »: Նախ եցոյց զնոսա կա-
րօտս երախտեացն, և ապա պարգևեաց զշահսն: « Եւ
ոչ ևս, ասէ, յուսացեալ լինիցին 'ի մարդիկ ». զի յետ
երախտեացն և ոգւոյն ևս շահ գործեցան [1]: « Տա-
ցեն, ասէ, զլսելիս իւրեանց 'ի լսել. և սիրտք տկարաց՝
հայեսցին լիմանալ »: Եւ յայտ է, եթէ ոչ լսելն միայն
ինչ պարտ է, այլ և 'ի միտ առնուլ. թէ զի՞նչ օգուտ [2]
իցէ լսելն, յորժամ միտքն ոչ իմանայցեն:

« Եւ մի ևս յօժարեսցուսցեն զյիմարն՝ իշխել իւ-
րեանց. և մի ևս ասասցեն պաշտօնեայք քո, եթէ
լուռ լեր. կատարել զանօրէնութիւնս, խօսել մոլո-
րութիւն զՏեառնէ. զի խորհուրդք չարաց զանօրէ-
նութիւնս խորհեսցին, ապականել զխոնարհս՝ բանիւք
անօրէնութեամբ, և ցրուել զբանս տնանկաց 'ի դա-
տաստանի. իսկ աստուածապաշտք՝ իմաստունս խոր-
հեցան, և խորհուրդս այս կայցեն և մնայցեն »: Որպէս և
չարեաց՝ այնպիսի խորհուրդն իւր, որք ապականեցին և

1 Յոր. Օտար գրչաւ 'ի վերայ եդեալ կայր փանջէտէն.
2 Յոր. Բառդ օգուտ օտար գրչի է:

զխոնարհս[1] բանիւք անօրէնութեամբ. որպէս զի չարեացն այնպիսի խորհուրդ է՝ որք այսր անդր հարկանիցեն զմիտսն, եղծանիցեն, զբանսն ստերիւրիցեն 'ի դատաստանի։ Արդարև յետին անօրէնութիւն է, փոխանակ ողորմելոյ և օգնական լինելոյ բանիւք 'ի դատաստանն՝ Թիւրեն և ստերիւրեն։ Իսկ խորհուրդք արդարոցն հաստատուն կայցեն. ոչինչ հատանէ և ոչ ընդ մէջ արկանի. որպէս և եդեն 'ի մտի երեք մանկունքն՝ չպագանել երկիր պատկերին, և ոչ ոք կարաց շրջել զմիտս նոցա. եդ 'ի մտի և Պաւղոս չմատնել զքարոզութիւնն, և ոչ ինչ կարաց շրջել զմիտս նորա. զի որպէս աստուծոյքն հաստատուն են, նոյնպէս և ծառայից նորա մնացականք. զի զոր ինչ խորհին՝ ոչ ոք կարէ զխորհուրդն զայն ցրուել, ոչ մահ և ոչ այլ ինչ. որպէս և Պաւղոսն ասէր, եթէ Ոչ մահ և ոչ կեանք, ոչ հրեշտակք և ոչ հրեշտակապետք, ոչ իշխանութիւնք և ոչ զօրութիւնք, ոչ որ կանս և ոչ որ հանդերձեալքն իցեն, ոչ բարձրութիւնք և ոչ խորութիւնք, և ոչ այլ ինչ արարածք՝ կարեն զմեզ 'ի սիրոյն Աստուծոյ մեկնել, որ 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր։ Քանզի այնպէս հաստատուն և մնացական է առաքինութիւնն, և չարիք՝ նմին հակառակ անկայական և անհաստատական։ Ո՞ ոք զօրաւոր եղև քան զՆաբուքոդոնոսոր, որ ամենայն աշխարհաց առհասարակ տիրէր, և ընդ միով լծով փակեալ ունէր ըզտիեզերս, որում ոչ ոք կարէր 'ի բանից և յիշխանաց ընդդէմ դառնալ, և դոյզն մատաղ մանկունքն՝ Աստուծոյ ահիւն շրջեցին զմիտս նորա։ Զի այսպիսի ինչ կամի վէմն և յորդորէ, եթէ Ամենայն՝ որ լսէ բանից իմոց, նման է առն իմաստնոյ՝ որ շինեաց զտուն իւր 'ի վերայ վիմի։

« Կանայք մեծատունք, արիք և լուարուք բարբառոյ իմոյ. և դստերք՝ յուսով լուարուք զբանս իմ»։ Բարւոք ասաց, եթէ արիք. քանզի յանհնարին կործանումն կործանէ մեծութիւն, վասն որոյ և ասէ, եթէ արիք կանգնեցարուք 'ի կործանմանէդ և լուարուք։ « Եւ դստերք՝ յուսով». այսինքն՝ համարձա-

1 Յոբ. Զխորհուրդս։

կեցարուք լսել. և զի՞նչ լսիցեն. «Աւեր լիցի, ասէ, ամենայն երկիր»։ Եւ ընդէ՞ր զմեծատուն կանայսն կոչիցէ, որպէս և այլ թարգմանիչքն զերջանիկսն ասեն. զսոյն և միւս ևս մարգարէն բամբասէ. Որ ասիցեն, ասէ, ցտեարս իւրեանց, թէ տուք մեզ՝ զի արբցուք. քանզի և նոքա բազում անգամ լինէին արանց կորուստեան պատճառք, կոչէ զնոսա 'ի պատուհաս։ Եւ կամ զքաղաքս կոչէ կանայս, որպէս և յաջորդք իսկ յայտ առնեն։

«Յուշ լիցին աւուրքն տարեկանին, ցաւօք և կասկածանօք հանդերձ»։ Զի յորժամ 'ի վիշտս մատնիցին, յայնժամ յիշեսցեն զուրախութիւն տօնիցն, և ցաւ և կասկած 'ի սիրտսն գործեսցէ. և ամենայն բանիցն, որ զսորին հետ են՝ մի միտք են։ «Մինչև եկեսցէ 'ի վերայ ձեր ոգի 'ի բարձանց», այսինքն այցելութիւն 'ի բարձանց։ «Եւ դարձցին[1] և համարիցեն յանապատի իրաւունք, և արդարութիւն 'ի Քերմեղ բնակեսցէ»։ Քերմեղ՝ լեառն է առընթերակաց երկրին Իսրայելացւոց. և յանուն լերինն՝ զփրկութիւն և զխաղաղութիւն երկրին առակէ. որպէս յորժամ յիշէ զԼիբանան և զմայրսն՝ զերկիրն և զժողովուրդն առակէ. և այս ամենայն յետ դարձին կատարէր 'ի նոսա. վասն որոյ և ասէ իսկ, եթէ «Յուսացեալք եղիցին 'ի նա՝ մինչև յաւիտեան և յաւիտեանս». աստ ոչ եթէ զկատարած աշխարհին նշանակէ, այլ զժամանակս փրկութեան։ «Այլ կարկուտն թէ արձակիցէ, ոչ եթէ 'ի ձեր վերայ եկեսցէ»։ Զի թէպէտ և յարեան զօրք բազումք 'ի բազում ազգաց՝ յաւուրս Զօրաբաբելի, ոչ ինչ կարացին ստնանել նոցա։

Դարձեալ և այլազգ ևս. «Եղիցի անապատն՝ իբրև զՔերմեղ, և Քերմեղն՝ իբրև զանտառ համարիցի». զի չեն ինչ ընդհատ քաղաքք յանապատից, ուր կոտորուածք գործիցին և հանապազորդ կռիւք լինիցին. բնաւ զի՞նչ խնդիր իցէ ատենից և դատաւորաց, ուր անօրէնութիւնք գործիցին. իսկ յորժամ անօրէնութիւնն 'ի միջոյ բառնայցէ, ապա վայելէ երկիր խաղաղութեամբ։

1 Յօր. Ն. 'ի դարձին։

« Եւ եղիցին, ասէ, գործք արդարութեան՝ 'ի խաղաղութեան ». և զիա՞րդ արդեւք ուր մարտն և կռիւ 'ի միջի կայցէ՝ անդ խաղաղութիւն իցէ. ըստ այնմ՝ եթէ Հոգւոյն հակառակ կայ[1] մարմնոյն։ Թէ կամիցիմք՝ բնակեմք արդարութեամբ 'ի խաղաղութեան քաղաքի, ուր բնաւ և պատճառք կռուոյ ուրեք ոչ երևին. զի որպէս մայր պատերազմաց՝ անիրաւութիւն է, նոյնպէս և մայր խաղաղութեան՝ արդարութիւնն է. և մի 'ի նեղութիւն մարմնոյ ինչ հայիցիս, այլ ընդ այն՝ եթէ զինչ շահ 'ի նեղութենէն լինիցի. զի բազում անգամ մարտ և կռիւ՝ պատճառք խաղաղութեան լինին. զոր օրինակ մինչդեռ զօրականք պատերազմ տայցեն, քաղաքք և ռամիկք 'ի խաղաղութեան բնակեալ են. և յորժամ դադարիցեն վատութեամբ և ոչ կռուիցին ընդ թշնամիս, յայնժամ բառնայ 'ի միջոյ խաղաղութիւն. նոյնպէս և աստ։

« Եւ հաստատիցի նոցա արդարութիւն 'ի հանգիստ, և յուսացեալք եղիցին մինչև յաւիտեանս. և բնակեսցէ ժողովուրդ իմ 'ի քաղաքս խաղաղութեան ». զի ոչ այնպէս այլ ինչ լինիցի հանգիստ ոգւոցն, և ոչ այնպէս ցածուցանիցէ զխիղճ մտացն, և ոչ այնպէս ինչ զուարճացուցանէ զմիտսն՝ իբրև զարդարութիւն, յորժամ չիցէ ինչ՝ որ ամբաստան լինիցի և լլկիցէ զխորհուրդսն։ « Եւ յուսացեալք եղիցին մինչև յաւիտեան ». քանզի արդարութիւն ոչ գիտէ զժամանակաց փոփոխումն, ոչ զմարդկեղէն իրաց զծանրութիւնս. ամենայն այսպիսի ինչ մերժեալ, ընկեցեալ և արհամարհեալ է յաչս նորա։

« Եւ եղիցին՝ որ բնակեալ իցեն յանտառս, յուսացեալք իբրև զդաշտականսն ». զի որ առաքինութեամբ ոք յանապատ տեղիսն կայցէ, քան 'ի քաղաք՝ ևս զգուշագոյն բնակեսցէ. իսկ որ 'ի չարիս թաթաւեալ իցէ, թէպէտ ընդ բիւրապատիկ պարսպովք բնակեսցէ, չէ ինչ ընդհատ քան զմերկս և զանզէնս. մեծամեծ բարիք են առաքինութիւն՝ առ 'ի զգուշութիւն, մեծամեծ չարիք են մեղք՝ առ 'ի մատնիչ լինելոյ յապակա-

1 Յօր. Օտար գրչաւ 'ի վերայ եդեալ էր. Հոգւոյն ցանկայ հակառակ մարմնոյն ։

նութիւն [1]։ Իմաստութիւն օգնեսցէ, ասէ, իմաստնոյն, քան զտասն իշխանս քաղաքաց. զէն հանճարոյ՝ շրթունք իմաստունք։ Այսպիսի կերպարանօք վառեսցուք զանձինս. քան զայս սպառազինութիւն՝ չիք ինչ զօրագոյն. և ոչ երբէք երևեցուցանէ զմեզ մերկս և անզէնս։ Զի՞նչ վնաս եղև Յոհաննու՝ յանապատական բնութենէն. որո՞ց վնասակարաց, կամ որպիսի՞ աւազակաց ետ երբեք 'ի ձեռս զվայրագն. կամ զի՞նչ վնաս եղև Կարմեղով լերանն՝ Եղիայի. ո՞չ ապաքէն պարըսպեալ քաղաքացն էր կասկած՝ քան զլերինն։ Զի՞ք ինչ զգուշագոյն քան զառաքինութիւնն, և ոչինչ տգեղագոյն՝ քան զչարութիւն։ Զհաստատեսցին, ասէ, ոտք նորա, և զեղխեալ են ճանապարհք նորա, և ոչ դիւրաւ ճանաչելիք. և զի՞նչ զարմանք իցեն, եթէ 'ի մարդկան նենգութեանց անըմբռնական եղև, ուր և 'ի վերուստ եկելոց հասելոց հարուածոցն՝ գտաւ ամրական։ Զսոյն ակնարկէ և Քրիստոս, ոչ զներքին ինչ փորձութիւն, այլ որ 'ի վերուստ գայցեն. Էջ, ասէ, անձրև. անձրևս աստ՝ զառ 'ի բարձանց եկեալ ինչ 'ի վերայ փորձութիւնս կոչէ. և յարեան գետք 'ի գետս. զառ 'ի ծառայակցաց ինչ նենգութիւնս. և շնչեցին հողմք և ոչ կործանեցաւ։ Կամի՞ս, ցուցից քեզ այսպիսի այր՝ որ 'ի վերուստ փորձեցաւ և 'ի ներքուստ նենգեցաւ, և ոչ ինչ վնասեցաւ, այլ և առ երկինս և առ երկիր՝ կաց մնաց հաստատուն. Տէր ետ, ասէ, և Տէր առ. որպէս և Տեառն կամք եղեն, նոյնպէս և կատարեցան. տեսե՞ր զանձրևն իջեալ 'ի վերուստ։ Ահաւասիկ տաց, ասէ, քեզ իշխանութիւն 'ի վերայ նորա. տես և զառ մարդկանէ նենգութիւնսն։ Ասա, ասէ, բան ինչ 'ի Տէրն քո, և վճարեաց. այլ ոչ ինչ ասաց այսպիսի։ Տեսե՞ր, ո՞րպէս բաղխեաց զշինուածն՝ գետն, և ոչ կործանեցաւ. քանզի հաստատեալ էին հիմունքն 'ի վերայ վիմին առ...ացեալ[2] Աստուծոյ երկիւղիւն։

« Երանի՛ որ սերմանիցեն ընդ ամենայն ջրով՝ ուր եզն և էշ կոխիցեն »։ Եւ զի՞նչ ինչ յայտ առնիցէ երանութիւնս. այս՝ ըստ այլոց պատմութեանն, ասեն,

1 Յոր. Առաքինութիւն։
2 Յոր. Ի մաշմանէ թղթոյն՝ անընթեռնլի. թուի արմատացեալ։

զդարձեալն նշանակեալ։ Ինձ այսպէս թուի, եթէ այլ ինչ ակնարկէ. որք զկորդացեալ ոգիսն կակղիցեն, և վաթ երկրաւոր սերմանն պատրաստիցեն։ Եւ ոչ ասաց, եթէ զամենայն երկիր, այլ՝ եթէ ընդ ամենայն ջրով զոր եզն և էշ կոխիցեն. զի ոչ միայն առ սերմանելն ևեթ փութայցեն, այլ զի և 'ի չափ հասուցեալ պատրաստիցեն զարմտիս յըշտեմարանս կենաց։

## ԳԼՈՒԽ ԼԳ

« Վա՜յ այնոցիկ որ թշուառեցուցանիցեն զձեզ, բայց զձեզ ոչ ոք առնէ թշուառականս »։ Զի՞նչ խօսիսդ. զի եթէ թշուառեցուցանիցեն, զիա՞րդ չառնիցեն թշուառականս. զի նմա այսպէս թուի, բայց իրքն այսպէս ոչ վճարին։ «Եւ որ անարգէն՝ ոչ զձեզ անարգէ, այլ զանձն » . քանզի չեն հաստատուն իրքն. և թէ անզգամ լինիցիս՝ միայն պեղեսցես. բայց սակայն տեսանեմք զբազումս, զի և այլոց լինին պատճառք. այլ ոչ ոք այլում լինի պատճառ, այլ իւրաքանչիւր անձանց պատճառք. զի չարն՝ իւր չար է. Սիրտ, ասէ, անզգամի՝ ցաւք են. մի՞թէ այլ ումեք. այլ ստացողին։ Բարկութիւն՝ կորուսանէ զիմաստունսն. այր ցասկոտ՝ տխեղծ է կերպարանօք. ոչ զնորա ինչ գոյն փոխէ՝ օրում ցասնուն, այլ զիւր. զի թէպէտ և նա թշնամանիցի, այլ որ ցասնուն՝ վէրս առնու 'ի սիրտն։ Եւ դարձեալ ասէ, եթէ Որպէս ազոխ ատամանց վնասէ և ծուխ աչաց, նոյնպէս և անօրէնութիւն այնոցիկ՝ որ կրիցեն զնա. զի 'ի կապանս անձին իւրոյ շաղի ամենայն ոք, և անօրէնութիւնք՝ զայր կորուսանեն։ « Եւ իբրև զցեց 'ի վերայ ձորձոց, այսպէս մատնեսցին »։

« Տէր, ողորմեաց մեզ, զի մեք 'ի քեզ յուսացեալ եմք »։ Տեսանե՞ս, զի ողորմականացն ոչ վայրապար պարտ էր ողորմել. չունի՞ս ինչ ուղղութիւնս, չկայցե՞ն ինչ վաստակք և ջգունք, գէթ հաւատովք միայն ժտեաց և առնուս։ Եւ ամենայն ուրեք տեսանեմք, զի որք ողորմութիւն գտին՝ այսպէս գտին։ Անկաւ առ

ոտմն, ասէ, և աղաչէր. եթէ երկայնամիտ լեր և հա֊
տուցից. և որ եկեալն թախանձէր զբարեկամն 'ի
գիշերի, թէպէտ և վասն բարեկամութեանն չառ֊
յանձն տալ, սակայն վասն ժտութեանն հաւանեցաւ.
և ոչխարն որ յիննսուն և յինն ոչխարացն էր կորուսեալ,
խնդրեցաւ և գտաւ, և եղև պատուական հովուին։ Եւ
պարտ է խնդրել. զի եթէ ողորմի Աստուած, ընդէ՞ր
ոչ ամենեցուն ողորմիցի. զի ուր ողորմութիւն է, անդ
պատուոյ ինչ խնդիր չիք, ոչ վարուց և ոչ ուղղու֊
թեանց ինչ պէտք. և եթէ այդպէս իցէ, ապա ամե֊
նեցուն պարտ էր ողորմել. զի եթէ ըստ Աստուծոյ
մարդասիրութեանն իցէ ամենայն ինչ՝ որ լինիցի, ապա
մի ասեր, եթէ այս անուն արժանի է, և այս անուն
չէ արժանի. իսկ յորժամ խնդրիցէ՝ չիք անդ ժամա֊
նակ այսպիսի բանից. իսկ յորժամ աստ մարդասիրու֊
թիւնն՝ լինիցի փրկութիւն, ելցէ 'ի բաց ճառ անար֊
ժանին և արժանաւորին։

Եւ արդ զիա՞րդ ասիցէ, թէ Ողորմեցայց՝ որում ո֊
ղորմեցայց, և գթացայց՝ յորս գթայցեմ. յայտ առնէ
թէ ոչ վայրապար ումեք ողորմի, այլ են արժանիք և
անարժանք։ Ամենեքեան իսկ արժանի են փրկութեան
թէ կամին, բայց ոչ ամենեքեան արժանի ողորմու֊
թեան, քանզի ոչ կամին. և անտի յայտ են արժանիքն
և անարժանքն։ Եւ զիա՞րդ իցէ, ասէ, այդ 'ի դէպ.
ես ասեմ 'ի գրոց և ոչ 'ի մտաց ինչ. պարտէր մին բիւր
տաղանդ, պարտէր և միւսն հարիւր դահեկան, և եր֊
կոքեանն ընդ պարտեօք էին. պա՞րտ էր փրկութիւն
գտանել եթէ ոչ. ասեմ եթէ պարտ էր, և կարի քաջ.
և անդ ոչ եթէ արժանաւորութիւն ուրուք խնդրէր,
քանզի երկոքեանն ընդ պարտեօք էին. և տեսանեմք
զմին, զի յետ թողութեանն՝ զրկեաց զանձն 'ի մար֊
դասիրութենէ անտի։ Եկն և Որդին Աստուծոյ, կիսոցն
թողոյր զմեղսն, և զկէսս կոչէր. ոմանք մերձեցան և
ոմանք ոչ մերձեցան. և յայտ է եթէ ողորմի, այլ ոչ
բռնութեամբ կամ 'ի հարկէ, կամ եթէ յորժամ ոչ
կամիցին՝ որ զողորմութիւնն խնդրիցեն. այլ զայն մի֊
այն պարտի ցուցանել, որ զողորմութիւնն հայցիցէ, զի
ցանկայցէ ողորմութեան և կամիցի, զի այնպէս և ի֊
մանալ մարթիցէ և զշնորհս ողորմութեանն. ապա

թէ այլազգ ինչ յուլանայցէ, զիա՛րդ իմանայցէ զՃըրոյն
փրկութիւն կամ զշնորհացն առատութիւն: Եւ ծոյլ
ոք, ասեն, այնչափ անմիտ իցէ կամ հեք և կամ թը-
շուառական, որ զբիւր չարիս գործեալ իցէ, և Աս-
տուծոյ մարդասիրութեան ոչ ցանկանայցէ և փրկել
ոչ կամիցին: Բազումք են և յոյժ անթիւ. զի յորժամ
եկն Քրիստոս պարգևել զմեղացն թողութիւն, ըն-
դէ՛ր ոչ կամեցան Հրեայք ապրել. որոց և ասէր իսկ,
եթէ Բազում անգամ կամեցայ ժողովել զմանկունս
քո, և ոչ կամեցարուք. տեսանե՞ս, զի և նոքա ոչ կամե-
ցան: Զի՞նչ դիւրագոյն կայցէ քան զաղօթս. և թէ
չկամիցիս կալ յաղօթս, և զիա՛րդ կամիցիս գտանել
ողորմութիւն, և արդ որ հայցել ոչ կամիցի զթողու-
թիւն, զիա՛րդ ցանկայցէ թողութեան. միթէ ուղ-
ղութի՞ւնք ինչ խնդրիցին և չկարիցեն բաւական լի-
նել, կամ քիրտն կամ վաստակ կամ ձգնութիւն.
Խնդրեա միայն, ասէ. և դու և զայդ ևս ոչ կամիս, այլ
զսիմոնական զմիտսն ունիս, որ ասէր. Աղաչեցէք զՏէր
վասն իմ. և զայն ոչ գիտես՝ զի որչափ իցէ ոք մեծ և
սքանչելի, այն որ վասն քոյն աղաչիցէ, ոչ այնպէս ա-
ղաչի նմա Աստուած, որպէս և քոյոյն աղօթիւքն. և
եթէ պիղծ իցես և անհամարձակ, այլ ցանկալի են
քո աղօթքն՝ Աստուծոյ, քան զօրբոյն և զհամարձա-
կին. քանզի ոչ եթէ պատուի ինչ ցանկայ Աստուած,
եթէ զքեզ մերժիցէ և զնա մեծարիցէ. մի միայն
խնդրէ Աստուած, զի ընտանութիւն կալցիս ընդ նմա:
Եւ արդ ընդէ՞ր արդեւք մերժէր զաղօթսն Երեմիա-
յի մարգարէին, որ բազում անգամ աղօթս մատու-
ցանէր վասն Հրէից. ո՞չ ապաքէն զի յորդորեսցէ զնո-
սա 'ի վերայ անձանց կարդալ առ Աստուած. Մի՛,
ասէ, կար յաղօթս վասն ժողովրդեանդ այդորիկ. և
յարէ անդրէն 'ի նոյն, եթէ Ո՞չ տեսանես զի՞նչ դո-
քայդ գործեն. դոցա, ասէ, չէ ինչ փոյթ, և դու
կամիս, կոծիս, ողբաս և գոչես: Բայց մեք աղաչես-
ցուք և սրբովք, այլ բազում յոյս 'ի մերոյն աղօթս ու-
նիցիմք. քանզի և մաքսաւորն ոչ աղաչեաց զվերակա-
ցուն իւր առ 'ի յԱստուծոյ, այլ ինքնին այնչափ կա-
րող եղև՝ որչափ ոչ լինին կարող բիւրք վերակացուք
արդարք, որք աղաչէին արդեւք վասն նորա զԱս-

տուած։ Մի՛ ասեր, եթէ չունիմ աղօթս, չեմ արժանի, չեմ համարձակ. կարեւոր իմն պատճառս զաղօթիցն ասեմ [1] ինձ, զորս անարժանութեան և լռութեան պատճառ կարծես։ Զիցե՞ս արժանի, չիցե՞ս համարձակ. թէ այդպէս իցէ դիր դեղ ցաւոցն զաղօթմն. լուր զի՞նչ ասէին երեք մանկունքն, թէ Ձիք մեզ բանալ զբերան, զի ամօթ և նախատինք եղեն ծառայից քոց և պաշտօնէից։ Եւ արդ, զի՞արդ չեղև արդեւք նոցա բանալ զբերանս. այլ բացին բերանք և աղաչեցին և առին՝ զոր ինչ խնդրեցինն. և մեք ընդ նմին բարբառոյ աղաչեսցուք։ Զոր ինձդ ասես եթէ չեմ արժանի, չեմ համարձակ, զդոյն՝ հասարակաց Տեառն ասա՛, և վաղվաղակի առնուս համարձակութիւն. ո՞չ տայցէ քեզ խիղճ մտացդ հայել 'ի վեր համարձակութեամբ. դոյն իսկ այդ՝ եղև շահ մաքսաւորին։ Զոր կարծեսդ՝ եթէ խափան իցէ աղօթիցդ, դա է՝ որ առնէ սուրբ զաղօթսդ։ Այսպիսի միտք և բանք ոչ միայն յանցաւորաց վայելեն, այլ և այնոցիկ՝ որ զուղղութիւնս ինչ կատարեցին. որպէս Աբրահամ յորժամ հայցել իմն կամէր յԱստուծոյ, ասէր. Բայց ես հող եմ և մոխիր. քանզի զմտաց ինչ խիղճ ոչ ունէր 'ի սրտի, վասն այնորիկ 'ի [2] բնութեանն նուազութիւն ընթացաւ, զի այնու զիջուցանիցէ զմտացն հպարտութիւն. և Դաւիթ ասէր, եթէ Ես որդն եմ և ոչ եմ մարդ։

Բազում անգամ դարձեալ ընդդէմ Տեառն. վասն այնորիկ կաս անդէն 'ի մեղս, զի և այլ ես մեղս 'ի վերայ մեղաց դիցես, յորժամ ոչ մերձենայցես և աղաչիցես. տես զմարգարէն, զի՞արդ 'ի վերայ բազմաց աղաչէր. «Տէր, ողորմեաց մեզ, ասէր, զի մեք 'ի քեզ յուսացեալ եմք»։ Զի՞նչ ինչ լաւ կայցէ քան զայսպիսի աղօթս. յորժամ ոչ վասն միոյ, այլ վասն ամենայն անդամոց եկեղեցւոյ առ հասարակ աղօթս մատուցանիցէ. զի այնպէս հաճ ունէր ընդ իւր զԱստուած, զի 'ի վերայ հասարակաց աղաչէր և վասն ամենեցուն հոգայր, և զպատճառս ես աղօթիցն ասէր. «Զի քեզ, ասէ, յուսացեալ եմք»։ Ասա՛ և դու այսպէս ինչ. մի-

1 Յոր. Աւէն։ 2 Յոր. Ձիք Դ։

թէ սակաւ ինչ իցէ Աստուծոյ մարդասիրութիւնն. միթէ քո չարիքն՝ չափոյ նորա բարերարութեանն յաղթե՞լ կարիցեն. զի որպէս կայծակն ինչ փոքր՝ 'ի համատարածն ծովու, նոյնչափ և ևս նուազագոյն մեղքն և չարիք մարդկան՝ առ Աստուծոյ մարդասիրութիւնն։ Կամիս ուսանել զնորա զօրութիւնն. կամօք միայն և՛ զանպատսպարանն և զդատապարտեալս և զթշնամիս և զօտարացեալս և զանյոյս և զանաստուածս յաշխարհիս՝ արար իւր որդիս և ժառանգակիցս իւրոյ Միածնին։ Կամիս ուսանել որչափ ինչ զօրութիւն ունի առ 'ի մեղացն սատակումն. Եթէ իցեն, ասէ, մեղքն ձեր իբրև զձանձախարիթ, իբրև զձիւն սպիտակ արարից. և այլուր զևս դիւրագոյն. Ցանեցես յիս զոպայիւ, և սուրբ եղէց. այսինքն՝ ծաղիկ ինչ է՝ զոր թանային յարեան, և սրսկէին զյանցաւորքն ժողովրդեանն. Լուասցես զիս, և քան զձիւն սպիտակ եղէց. զի եթէ լինէին իսկ ոգւոցն՝ առ 'ի նորա մարդասիրութենէն են, որչափ ևս առաւել սրբիլն և անաղտ լինել։ Մի՛ ոք վհատեսցի՝ անհնարին համարել զփոփոխումն, զի և այն ևս դիւրաւոր է մեղացն. քանզի և մեղքն այլ ինչ ոչ են, այլ զի յորժամ առանց Աստուծոյ կամացն՝ գործ ինչ գործիցի. և յապաշխարութիւն չդառնալ՝ արտաքոյ նորա կամացն է։ Ամենեցուն ինքն է տէր՝ և բնութեանց անձնիշխանութեանց. կամեցաւ՝ և հաստատեցան երկինք. եթէ կամի միայն, և անդէն լինիս դու սուրբ. Աստուած է, ասէ, որ արդարացուցանէ, և ո՞վ է որ դատապարտիցէ։ Մի՛ 'ի բազմութիւն քոց մեղացն հայիցիս, այլ յԱստուծոյ յանբաւ մարդասիրութիւնն. մեծամեծ իցեն ցաւքն, այլ առաւել մեծ է բժիշկն. ահագին է ձմեռն, այլ իմաստուն է նաւապետն. 'ի յուսահատութեան կործանեալ իցեն ոգիքն, այլ կազմ են դեղքն յետ յուսահատութեանն. և չիք ինչ՝ որ նմա յաղթել կարիցէ, կամ անցանել ըստ նորա ողորմութիւնն. ասէ. Այսօր եթէ ձայնի իմում լուիցէք։ Զի՞նչ չար կայցէ քան զաւազակ. և լոկ բանիւ 'ի միում վայրկենի յառաջ քան զգունդն սրբոց եմուտ 'ի դրախտն. զի 'ի մեղսն ևեթ հայել և խիթալ՝ այնր միայն է՝ որ յուսացեալ ապաստան իցէ յԱստուծոյ մարդասիրութիւնն. զի յորժամ բարեկամ զոք ունիցիմք,

թէպէտ և բիւր յանցանս յանցեալ իցէ, սակայն ոչ ինչ զանգիտեմք, յուսացեալ՚ի սէր բարերկամի. ապա թէ զանգիտիցեմք ինչ ապաստան լինել՚ի սէրն, մեք մեզէն կորուսանեմք զհամարձակութիւն։ Ո՞չ ապաքէն որդին օմառն վասն այնորիկ արժանի եղև փրկութեան, զի թէպէտ և այնչափ անկեալ էր չարեօքն զոր գործեաց, սակայն ժտեցաւ դիմել գալ առ հայրն. վասն է՞ր այնպէս լղջմիտ ընկալաւ զնա. զի՞նչ ինչ ուղղութիւնս եւես 'ի նմա. միթէ կամաւ ինչ և առ դիւրաւ՞ին եկն. ո՞չ առ սովոյ հարկի, և ո՞չ առ ձեպի աղքատութեանն և անարգանացն բռնի վարելոյ և ածելոյ. այլ հայրն զայնր ամենայնի հաւատոյն ոչ ինչ պահանջեաց, քանզի գիտէր ճարտար զամենայն. այլ եւես ծիւրեալ ծնկեալ, երիթացեալ, ծարաւեալ, և զայն իմն ցանկալի համարեցաւ. զի թէպէտ և առ վշտի դիմեաց գալ, ընկալաւ զորդին. զի յորժամ դառնայցեմք առ Աստուած՝ ընդունիցի զմեզ դրկատարած ձեռօք, թէպէտ և առ վշտի և կամ առ կարիս դիմիցեմք առ նա. զի յորժամ սիրիցէ ոք զոք, զամենայն վնաս թողեալ՝ զմի եւեթ խնդրէ, զերեաս սիրելեաց տեսանել. և շնորհս ևս ունի վշտացն՝ որ ստիպեցին զնա գնալ առ նա։ Քանզի և հրէից ոչ այլ ինչ արար աղաղակել առ Աստուած, այլ նեղութիւն և աղխասարկին չարչարանք. միթէ կամք, միթէ մտաց ինչ յօժարութիւն. ո՞չ ապաքէն յորժամ սպանանէր զնոսա՝ յայնժամ խնդրէին զնա. և արդ զի՞արդ, զի յայնժամ միայն խնդրէին զնա, միթէ մերժէ՞ր զնոսա յանձնէ. և ոչ երբեք. զի ցանկալի է Աստուծոյ, զի և յորժամ առ վշտի դիմիցեմք առ նա՝ ընդունել զմեզ. և այնպէս ցանկալի՝ զի և զվիշտսն ևս ինքն համարի ածել՚ի վերայ նորա. թէ ոչ, ընդէ՞ր իսկ սպառնայցէ զգեհեննն և հանապազօր երկեցուցանէր զմեզ. ո՞չ ապաքէն՝ զի առ ինքն դարձուցանիցէ. և ընդէ՞ր արար զմեզ բազում իրաց կարօտս. ո՞չ ապաքէն զի գոնեա վասն կարօտութեանն առ նա դիմեսցուք։ Դարձեալ այլ իմն պատճառք. տես, զի՞նչ ասէ. Խրատեսցէ զքեզ, ասէ, ապստամբութիւն քո, և չարիքն քո՝ յանդիմանեսցեն զքեզ, զի ծանիցես և գիտասցես՝ եթէ դառն է քեզ և չար՝ թողուլն զիս. ո՞չ կամիս բանիւք զգաստա-

տանել. Թոյլ տամ արդեամբք խրատել. ես ոչ ինչ կամէի զայդ, բայց որովհետեւ դու զայդ կամեցար, չեղէց դիմադարձ քոց կամացդ: Եւ տես զհայրն գթած, զի ոչ բանս ինչ ողոքս եւ ոչ բարբառս ինչ աղերսականս լուաւ, այլ միայն ետես եւ գիրկս տարածեաց: Զի՞նչ ինչ ուղղութիւնս տեսեր, զի այդպէս սիրով ընդառաջ ելեր. եւ ոչ այսչափ միայն, այլ քան զայն՝ որոյ զուղղութիւնս էր գործեալ՝ առաւելագոյն պատուեաց. եւ այն չէ՞ր արդեւք բաւական զոյգ այլոցն համարել, այլ առաւել եւս պատուոյ արժանի լինել: Եթէ այդպէս իցէ, քան զայն՝ որ ոչն մեղանչիցեն, մեղաւորքն լաւ են: Ոչ եթէ մեղաւորքն լաւ իցեն, այլ որք կարող իցեն յետ մեղացն դառնալ. եւ ասա՝ յայտ առնէ, թէ մարթի մեղաւորին եւ անկելոյն եւս՝ լաւ լինել քան զառաջինն:

« Եւ եղեւ զաւակն ապստամբողաց 'ի կորուստ, եւ ծնունդք նոցա ապականեցան »: Ոչ սատակէ Աստուած զամենայն չարս, եւ ոչ թողու. ոչ սատակէ՝ զի ընտիրքն երեւելիք լինիցին. բայց եւ ոչ թողու՝ զի զայլսն զգաստացուսցէ եւ զարթուսցէ: Զի թէ զամենեսեան սատակէր, ապա եւ զձգանցն իսկ բարուրս 'ի միջոյ բառնայր. եւ թէ թողոյր ամենեցուն, ծուլացուցանէր զամենայն կենդանիս, եւ դժուարակատար զառաքինութիւնսն գործէր, եւ չպատժելով զխստասկարսն՝ զառաքինեացն զվաստակսն խափանէր:

« Այլ մեր փրկութիւն 'ի քէն է եւ 'ի ժամանակս նեղութեան. վասն ձայնի սաստից քոց՝ յիմարեցան ժողովուրդք »: Իբր ոչ եթէ ձայն գուցէ Աստուծոյ, քաւ լիցի. զի այն՝ մարմնոյ է եւ մարմնոյ յօդականաց պէսպէս անդամօք. այլ զանջանս յաղթութեանն դիւրութիւն յայտ առնէ այսուիկ: « Բայց արդ ժողովէ զկապուտն ձեր՝ փոքրկանց մինչեւ 'ի մեծամեծս. զոր օրինակ ժողովեսցէ ոք զմարախ, այնպէս խաղայցեն ձեւք 'ի խորխորատիցն իւրեանց »: Բարիոք ասաց՝ խորխորատից, զի խորխորատ՝ զժողովուրդսն եւ զմթերս կոչէ:

« Սուրբ է Տէր Աստուած՝ որ բնակեալ է 'ի բարձունս »: Եւ զի՞ ասիցես՝ թէ 'ի բարձունս տեղիս. ոչ միայն անդ, այլ եւ 'ի յօդիս բարձրացեալս. եւ շրթունք

արդարոց ճանաչէն զպարձուճս, և որք երկիր պագանեն նմա՝ հոգւով ճշմարտութեամբ պարտ է երկիր պագանել նմա։ Բարձրեալ այն է՝ որ յերկրէ և յերկրաւորացս հեռի իցէ. քանզի ոչ եթէ վայրապար ինչ պարտ իցէ 'ի բաց կալ 'ի կենցաղականացս, այլ բազում անջրպետութեամբ, և այնչափ՝ որչափ մեռեալք 'ի կենդանեաց. զի թէպէտ և հեռանայցես և անդրէն մօտ կայցես, վաղվաղակի անկանիցիս 'ի բուռն. Հեռի արա, ասէ, 'ի նմանէ զճանապարհս քո։ Բազում անջրպետութիւն պարտ է առնել ընդ անպիտանութիւն և ընդ պիտանութիւն. զի թէպէտ և գլորիցիս՝ մի՛ վաղվաղակի 'ի խորխորատ անկանիցիս, այլ զի պատսպարել և յառնել կարիցես, զի հաստատեալ կայցես հանապազ զգուշութեամբ։

«Լցաւ Սիովն իրաւամբք և արդարութեամբ. օրինօք[1] մատնեսցին». զի ըստ արդար դատաստանին Աստուծոյ լինիցի վճիռն։ «Եւ 'ի գանձս է փրկութիւն մեր». այսինքն՝ 'ի զգուշութեան։ Մի՛ ոք վհատեսցէ, մի՛ ոք զանգիտիցէ, քան զամենայն ինչ՝ զայս պարտ է նախ խնդրել, որ է մայր ամենայն առաքինութեանց, զի յորժամ ոչ զրկիցէ զոք, և ոչ այլոց արարոց ցանկանայցէ՝ 'ի խաղաղութեան բնակեսցէ, ամենեցուն ցանկալի և սիրելի։ Եւ ոչ վայրապար ինչ արդարութիւն ասէ. այլ՝ թէ լցաւ իսկ արդարութեամբ։ Եւ այս իսկ է խնդիր, զի եթէ յընչից կողմանէ արդար իցես, և յայլ իրս չիցես արդար, կէս մնասի է արդարութիւնն. Նա և զմեծութիւնն, թէպէտ և ոչ տեսանիցես, բայց գիտիցես՝ թէ քեզ պահեալ կայցէ՝ վստահ լինիցիս. նոյնպէս և վասն մերոյ փրկութեան պատրաստեալ կայ քեզ մեծութիւն 'ի գանձս ծածկեալս. և այժմ ոչ երևի, զի մի՛ նենգիցի ինչ ուստեք. այլ մի՛ կարծիցես թէ աղքատ իցես, թէպէտև ոչինչ երևեսցի այժմ 'ի հրապարակս։ Եւ վասն է՞ր արդեւք այժմ ոչ երևեսցին փառքն. մանաւանդ զի և այժմ իսկ երևին. քանզի և ո՞վ ոք փառաւորի քան զառաքեալսն, կամ մեծարոյ և պատուական քան զմարգարէսն՝ որ զամենայն տիեզերս ընդհանուր կալան։ Եւ այլազգ ևս. ոչ կամի այժմ

1 Յոր. Արդարութեամբ օրինացն մատնեցին։

յայտնի առնել այնոցիկ՝ որ ճգնելն կամիցին, զի [1] տացէ ժամանակ. այլ, ասէն, և յօժարապաշտք լինէաք, եթէ զփառսն տեսանէաք. այլ և ես իմն լքանէաք, զի մեծամեծ իմն համարէաք զկարեացն ճգնութիւն։

« Նկն իմաստութիւն և հանճար »։ Ակիղաս և Սիմաքոս՝ փոխանակ հանճարոյ՝ գիտութիւն ասեն, և փոխանակ աստուածպաշտութեան՝ երկիւղ և աստուածպաշտութիւն՝ առ Տէր։ « Այս են գանձք արդարութեան ». զի գիրք՝ իմաստութիւն ամենայն ուրեք զերկիւղն սովոր են կոչել. և հանճար և աստուածպաշտութիւն հեռացեալ մերժեալ է. ո՞վ արդեւք ած մերձեցոյց զնա. պատիժքն. այս են գանձք արդարութեան, այսինքն՝ զի զգուշութեամբ հաստատեալ ունին զարդարութիւն. զի երկիւղ Աստուծոյ՝ զամենայն ինչ կարող է առնել յանձին։

« Ահա աւադիկ յահէ ձերմէ երկիցեն նոքա, յորոց դուք երկնչէիք. բողոք բարձցեն յերեսաց ձերոց ». զառաւելութիւնն Աստուծոյ՝ զզօրավիգն օգնականութեանն յայտ առնէ, յորժամ զծառայս 'ի վերոյ քան զտեարս առնիցէ. զի ծանիցեն՝ եթէ ոչ նոքա իւրեանց ինչ քաջութեամբն կալան, և ոչ սոքա վասն անձանց ինչ տկարութեան մատնեցան, այլ ամենայն ուրեք առաքինութիւն և ծուլութիւն են պատճառք, և յամենայն վայրի զօրութիւնն և արդարութիւնն Աստուծոյ երևի. զի ոչ յիւրսն խնայէ՝ յորժամ մեղանչիցեն, և ոչ յօտարացն 'ի պարտութիւն մատնի, յորժամ կայցեն մնայցեն անդէն 'ի նոյն չարիս։ Այսպէս յորժամ տեսանիցես 'ի տանջանս զբաբելացիսն՝ զարմացիր ընդ արդարութիւնն նորա, զի զիւրսն և զօտարոտիսն՝ միով կշռով դատաստանին դատեցաւ. զի առաքինութիւնն և ծուլութիւն միայն առնեն կամ արդարացեալս կամ պատժապարտս. զամենեսեան առհասարակ արար, զամենեսեան զոյգ սիրէ. դարձեալ առհասարակ իբրև գործք ձեռաց իւրոց՝ ամենեքեան կենդանացան. այլ 'ի պարգևս և 'ի պատիժս՝ ոչ ամենեքեան առհասարակ. զի չարք և բարիք ինքեանք եղեն կամօք. և վասն այնորիկ 'ի կէսս [2] դառնայ և կիսոցն երեսս դարձու-

1 Յօր. Ձեք դէ։

2 Յօր. Ձկէս, այլ օտար գրչաւ՝ 'ի կէս։

ցանէ, և զկէսս առեալ և մերժեալ, և զայլս մնացուցանէ և սիրէ։ Երկու ընտանութիւնք են ընդ Աստուծոյ. մի՝ ըստ արարչութեանն, և միւս ևս՝ ըստ առաքինութեանն։

« Հրեշտակք արձակեցին դառնապէս, բայց են 'ի խնդիր խաղաղութեան. զի հատցին ճանապարհք նոցա. դադարեաց ահն հեթանոսաց, և բարձաւ ուխտն 'ի միջոյ նոցա, և մի ինչ համարիցիք զնոսա 'ի մարդիկ ». այսպիսի ինչ գործ Աստուծոյ է։ « Սուգ առ երկիր, զամօթ զգեցաւ Լիբանան, մարգագետին համարեցաւ Սարոնն, յայտնի եղև Գալիլիա և Քերմեղ։ Արդ յարեայց, ասէ Տէր, արդ փառաւորեցայց, արդ բարձրացայց, արդ տեսջիք, արդ իմասջիք »։ Նա և յայնժամ իսկ յարեաւ, քանզի նա մատնեաց զնոսա, այլ ոչ այնպէս յայտ ինչ էին իրքն. ունել ունի զիւր փառաւորութիւն առ յիւրմէ բնութենէն. բայց ասէ զինքենէ և ըստ մարդկեղէն մտաց։ Եւ ոչ ասաց, թէ այժմ դիմեցից 'ի վերայ, այլ ասէ՝ յարեայց. զի բաւական է յառնելն միայն, և ամենեքին 'ի փախուստ դառնան։ Ասէ. Ցարիցէ Աստուած և ցրուեսցին թշնամիք նորա. թէպէտև այս ևս թանձրագոյն իցէ և անարժան աստուածեղէն բնութեան. զի մարմնոյ սեփական է յառնելն, որք յառաջ քան զյառնելն՝ նստիցին. այլ թէպէտ և թանձրագոյն իցէ, քան զայլսն նրբագոյն է։ Անուանէ իւր և փառս, զի յորժամ անհաւատ լինիցիս, եթէ զքեզ 'ի լուսաւորութիւն փոխելոց է, լինիցիս յայնմանէ հաւատալ։ Այսպիսի իմն ուսուցէրս հաւատարիմս տայր և Պաւղոս. Ի փրկութիւն, ասէ, փառաց նորա. ոչ ասեմ թէ վասն ձեր ինչ առնեմ, այլ վասն իմոց փառացն առնեմ զայս, զի հաւատայցէք։ «Արդ բարձրացայց», այսինքն յայտնի եղէց. քանզի թուէր խոնարհ՝ հանդերձ ժողովրդեամբն. և արդն ասելով՝ զմօտաւոր ժամանակն յայտ առնէ, և ոչ հեռաւոր ինչ զկանխաստաց. զի մի կարծիցէք եթէ յապաղիցեմ ինչ, ոչ ասեմ թէ լսիցէք, արդ զձեզ իսկ տեսողս արարից նորոց ուղղութեանցն. «Արդ 'ի միտ առջիք». պարտ էր 'ի վաղուց հետէ իմանալ։

« Սնոտի եղիցի զօրութիւն ոգւոց ձերոց, և զձեզ

հուր կերիցէ ։ Եւ եղիցին հեթանոսք իբրեւ զփուշ յագարակի այրեցեալք և ընկեցեալք » . և ոչ իբրեւ ըղփայտ ինչ, այլ իբրեւ զանպտուղ փուշ, 'ի միասին տարաժամ այնպէս այրեսցին վաղվաղակի . քանզի ոչ երբեք զպտղաբեր ինչ փայտ այրէ Աստուած, զի մի կարծիցես եթէ վասն հեթանոսաց ինչ լինիցի, ասէ . « Զի մնոտի ձերոց ոգւոցդ զօրութիւն . վասն այնորիկ այրեսջիք 'ի հուր իբրեւ զփուշ » . զի որպէս փուշն՝ հրոյն պիտանացուն է, նոյնպէս և նոքա բարկութեանն պատրաստականք ։

« Լուիցեն հեթանոսք՝ զոր արարի . ծանիցեն մերձաւորք զօրութիւնս իմ » ։ Սոքա ծանիցեն, բայց նոքա լուիցեն . որ մանաւանդ տրտմեցուցանէր զՀրեայսն ունել բազում վկայս իւրեանց աղետիցն . և ուղղութեանցն յայտնի լինիցին պատճառք ամենայնի, զի մի ծածկեալ լինիցին 'ի միում կողմանց տիեզերաց, ամենայն ուրեք հասանիցէ, և անցանիցէ ընդ ամենայն երկիր ։

« Մեկնեցան 'ի Սիովնէ անօրէնք . ահ կալցի զամբարիշտս » . զի յորժամ պատճառքն 'ի միջոյ բառնայցէ, որովք ոչ տացէ 'ի ձեռս կորնչել և վնասել 'ի թըշնամեաց, չիցէ ինչ այնուհետեւ որ արգելուցու ։

« Ո՞վ պատմեսցէ ձեզ եթէ հուր վառեալ է, կամ ո՞վ պատմեսցէ ձեզ զտեղւոյն յաւիտենից » ։ Վասն դառձին, ասեն, ասէ . բայց ինձ այսպէս թուի, թէ և զհանդերձելոցն ակնարկիցէ . ո՞վ պատմեսցէ ձեզ եթէ հուր վառեալ է զգեհեննին . հուր՝ զոր Քրիստոսն կոչէր տեղի յաւիտենից, քանզի ոչ գոյ նորա վախճան ։ « Որ գնայ արդարութեամբ » 'ի Քրիստոս, « Եւ խօսի զուղղորդս 'ի ճանապարհի » ։ Են բազումք՝ որ ըստ իրաւանցն գնան . ոչ զի սիրեցին զիրաւունս, այլ վասն Աստուծոյ երկիւղին . իսկ իրաւացին ոչ այսպէս, այլ « Ատեայ զանօրէնութիւն . զձեռս իւր թօթափէ 'ի կաշառաց, ծանրացուցանէ զլսելիս՝ զի մի լուիցեն զդատաստանս արեան » . կամ անիրաւութիւն զչարիսն կոչէ՝ զոր ոչ կամի բնաւ լսել . զի և այն իսկ առաքինութիւն է . Արդար, ասէ, ոչ հայի 'ի շրթունս սուտս . որպէս չէ պարտ տեսանել զչարիսն, նոյնպէս և ոչ լսել ։

«Սա, ասէ, բնակեսցէ 'ի բարձրացեալ այրին վիմին հզօրի»· այսինքն է՝ զզուշութեան, զի ոչ վաղվաղակի անկանիցի 'ի ձեռս չարեաց: «Խնու զաչս իւր՝ զի մի տեսցէ զանիրաւութիւն· հաց տացի նմա, և ջուր նորա հաւատարիմ», հաստատուն, սերտ· փափկութիւն նորա անըմբռնելի, անփոփոխական· և արդ ն՞մ իմիք արժանի իցէ սա:

«Զթագաւորն փառաց տեսջիք, և աչք ձեր տեսցեն զերկիրն հեռաւոր»· ոչ եթէ տեսլեամբ, այլ հաւատովք տեսանեմք: Եւ տես զյաջորդն՝ որ քան զամենայն ևս լաւագոյն է· «Եւ որդիք ձեր խորհեցան յերկիւղ Տեառն· ո՞ւր են դպիրքն· ո՞ւր են խորհրդակիցքն»· այս ամենայն բարիք եղեն, ասէ, առանց իմաստնոց հնարից և դրագիտաց: «Ո՞ւր իցէ՝ որ համարիցի զվարձս մեծ և փոքր ժողովրդեանն, ընդ որում ոչ ինչ խորհեցաւ· զի և գիտէր ինչ ոչ· ծանրաձայն ժողովուրդ յուսացեալ, և ոչ գոյ լսելեացն իմաստութիւն»· ոչ՝ վասն զի ոչ գոյին խորհրդականք, վասն այնորիկ այսպէս եղև, այլ զի ժողովուրդ էր, յորում ոչ գոյր իմաստութիւն· ամենայն չարեաց պատճառք՝ անմտութիւն է:

«Ահա աւասիկ Սիովն քաղաք փրկութեան մերոյ, աչք քո տեսցեն և զԵրուսաղէմ քաղաք մեծացեալ· խորանք քո ոչ տատանիցեն, և մի շարժեսցին ցիցք խորանի նորա յաւիտեանս ժամանակաց, և մի խզեսցին ապաւանդակք նորա»: Եւ արդ ո՞չ արդեւք տատանեցան, և ո՞չ շարժեցան· այո՛[1], այլ շարժեցան վասն ե՞ր· վասն իւրեանց մեղացն: «Զի անուն Տեառն մեծ է 'ի ձեզ»: Տե՛ս, զիա՛րդ ասէ զպատճառսն· ոչ բանակս զօրաց և ոչ ընչից յաճախութիւնք և ոչ պարսպաց ամրութիւնք, այլ անուն Տեառն: «Ձեզ լիցին տեղին՝ յորում գետքն և փոսքն լայնք և ընդարձակք»· զյաղթութիւնն յայտ առնէ և զհաստատութիւնն բարութեանցն: «Մի երթիցես զայդ ճանապարհ, և մի գնասցեն նաւք քո»· զոր եկիրդ, ասէ, 'ի Բաբելովնէ, այլ մի ևս գնասցես անդրէն ընդ նոյն ճանապարհս, և

1 Յօր.· Այս տետար գրչի է:

այլ՝ վասն Տեառն Աստուծոյ քո։ « Զի Տէր Աստուած իմ մեծ է, և ոչ արասցէ զանց զինև »։

« Տէր դատաւոր մեր, Տէր հայր մեր, Տէր իշխան մեր, Տէր թագաւոր մեր, Տէր ինքնին փրկեսցէ զմեզ». իշխանն մեր՝ ինքն պատժեսցէ զմեզ։ « Խզեցան պարանք քո՝ զի ոչ հանդարտեցին. կայմն խոնարհեցաւ՝ և ոչ իջուսցէ զմանր կայմին, և ոչ արձակեսցէ զնշանս մինչև մատնեսցի յաւար »։ Այսպէս իսկ է. սովոր է մարգարէութիւնն մերթ զգերութիւն նշանակել և մերթ առ նմին զդարձն. զի որպէս նաւին 'ի սաստիկ հողմոց քակտիցի հաստատութիւնն, նոյնպէս և նոցա. յանագորոյն թշնամեացն եղծանէին կարգք և օրէնք և հաստատութիւն շինուածոց, շահք ընչից։

« Այսուհետև բազում կաղք յաւար հեծցեն. և մի ասասցէ ժողովուրդն՝ որ բնակեալն իսկ է 'ի նմա, եթէ վաստակեցայ. զի թողան նոցա մեղքն »։ Որպէս և Երեմիա ասէ, թէ Որդիս ծնանիցին՝ կաղք. նոյնպէս և աստ, թէ « Կաղք աւար առնուցուն ». և Զաքարիա ասէ, եթէ Եղիցի Ցեբուսացին իբրև զհազարապետն։

## ԳԼՈՒԽ ԼԴ

« Մատերուք հեթանոսք, և լուարուք իշխանք, լուիցէ երկիր և որ 'ի նմա իցեն տիեզերք »։ Տեսցուք զինչ ասիցէ, վասն է՞ր զամենայն տիեզերս կոչեսցէ։ « Զի սրտմտութիւն Տեառն 'ի վերայ հեթանոսաց, և բարկութիւն նորա 'ի վերայ թուոց նոցա, կորուսանել զնոսա և մատնել զնոսա 'ի սպանումն. և վիրաւորք նոցա դի տապաստ անկցին. ելցէ հոտ նոցա և թացցին լերինք յարենէ նոցա »։ Ոմանք զայս վասն կատարածոյ Գոգայ և Մագոգայ առնուն, բայց ինձ թուի թէ և զկատարածէ աշխարհիս ակնարկիցէ, որպէս և յաջորդքն իսկ տան միտքս։

« Գալարեսցին, ասէ, երկինք իբրև զմագաղաթ, և ամենայն աստեղք թօթափեսցին իբրև զտերև յոր-

թոյ, և որպէս թօթափեսցի տերև 'ի թզենւոյ »։ Տես, զիմորդ և մարգարէս ասէ յառաջագոյն, որպէս և Քրիստոս զվաղվաղակի թօթափել աստեղացն գուշակէր։ Եւ զայն ինչ մի ածիցես զմտաւ խնդրել, եթէ զիմորդ հաստատեալքն և բևեռեալք յերկինս՝ իբրև զտերև յորթոյ թօթափեսցին. զի որպէս տերևն յիւրում ժամանակի թօթափի, նոյնպէս և նոքա յիւրեանց պատշաճ ժամանակին թօթափեսցին։ Դարձեալ և այլ իմն ակնարկէ, զի ևս յազնուութիւն իմն փոխելոց են. զի զոր օրինակ որթն մերկ մնացէ՝ յորժամ տերևն թափեսցի, և դարձեալ յորժամ միւսանգամ տերևաբուղխ ժամանակն գայցէ՝ զարդարի միւսանգամ տերևովն և մրգովն, նոյնպէս և երկինք յայլ իմն առաւել յազնուութիւն շրջեսցին։

« Արբեցաւ սուր իմ յերկինս. ահա աւասիկ 'ի վերայ Եդովմայեցւոցն իջցէ, և 'ի վերայ կորստեան ժողովրդեանն՝ դատաստանօք։ Սուր Տեառն լցաւ արեամբ, թանձրացաւ ճարպով յարենէ որոջացն և նոխազացն, և 'ի ճարպոյ ցլուցն և խոյոց »։ Զպատիժսրն՝ սրոյն անուամբ անուանէ, զի ծանօթական անուամբ՝ զանծանօթսն յայտ առնիցէ։ Եւ զի ասէ, եթէ յերկինս արբեցաւ սուր իմ, զի յայտ արասցէ՝ թէ յերկնից է պատիժսն. և զի ահագին ցուցցէ զպատիժսն՝ ասէ. « Ի վերայ կորստեան ժողովրդեանն՝ դատաստանօք ». զի ցուցցէ թէ ժողովուրդն՝ որ 'ի մեղս կորուսեալ էր, ոչ անիրաւութեամբ ինչ, այլ Աստուծոյ արդար դատաստանօքն ընդունի զպատուհասս. և յորժամ բարկութիւն ինչ ահագին սպառնայցէ, ոչ զի սաստկիցէ, այլ զի ածցէ ահիւն յուղղութիւնս։ Եւ բարիոք կոչէ կորստական ժողովուրդ զայնոսիկ՝ որ 'ի մեղսն էին. զի որպէս կորուսեալն՝ հեռացեալ յաչաց ստացողին իցէ, նոյնպէս և մեղաւորն 'ի դիպահւոյն՝ յԱստուծոյ 'ի սուրբն երեսաց. որպէս և Կայենն ասէր, եթէ Հանես զիս յերեսաց քոց, և եղիցի ամենայն որ գտանիցէ՝ սպանանիցէ զիս. և ըստ այնմ, եթէ Բարձցի ամբարիշտն՝ զի մի տեսցէ զփառսն Տեառն։

Եւ քանզի սրտմտութեան և բարկութեան բանք ճառեցան, մի կարծիցէք, ասէ, թէ ընդ կարեօք ինչ

իցէ Աստուած. զի մարդ նեղեալ 'ի կարեաց յանդգնի բարկութեամբ. և ոչ կարէ իմանալ զօրէն իրաւանցն, յորժամ միտքն 'ի ցասմանէն խախտիցին. իսկ Աստուած՝ ոչ այնպէս ինչ. իսկ որպէս. յորժամ բարկանայ՝ իրաւամբք առնէ զամենայն. զի մեր բարկութիւն մտացն՝ շրջականք են, իսկ Աստուծոյ պատիժք պատուհասիցն՝ որով այլոց հատուցանէ, ըստ արժանի իւրաքանչիւր գործոց. և ինքն ինչ ոչ նեղի 'ի ցասմանէ անտի. Թէպէտ և զմէնջ և զնմանէ նոյն բանք ասիցին, այլ ոչ զնոյն յայտ առնիցեն. զի նա առանց ցասման է բնութեամբ, և մեք միշտ զայրանամք ցասմամբ, որով նախ զմեզ նեղեմք, և ապա այլոց՝ եթէ առնիցեմք ինչ վնաս և եթէ չառնիցեմք։

« Սուր Տեառն լցաւ արեամբ, ուռուցաւ ճարպով յարենէ նոխազաց և որոջաց և ցլուց »։ Տե՛ս, զի յայտ յանդիման ածէ զիրսն, և նոխազօք և խոյովք յայտ առնէ՝ թէ իբրև զանխօսսն՝ այսպէս կոտորիցէ։ Որպէս և զնոցանէն չեն ինչ բանք՝ յորժամ կոտորեսցին, նոյնպէս և ոչ զմարդկանէ՝ յորժամ զբարսն անխօս անասնոց առնուցուն, և ևս չար քան զնոցանէ՝ զսոցանէ, զի նոքա բնութեամբ ունին զանխօսութիւն, և սոքա ինքեանք զանձինս արարին անասունս։

« Զի զենումն Տեառն 'ի Բոսորայ, և սպանդ մեծ յերկրին Եդովմայեցւոց »։ Վասն էր զենումն զիրսն կոչէ. զի եկեալ վճարեալ էր, և այլ ոչ ևս անցանելոց էր զնովաւ բարկութիւնն։ « Օր դատաստանի Տեառն և տարեկան հատուցման ». զի ոչ ինչ անիրաւութիւն էր, այլ արդար դատաստանք և հատուցումն ըստ գործոց։ « Եւ արբեսցի երկիր յարենէ, և լցցի 'ի ճարպոյ նոցա. զի օր դատաստանի Տեառն և տարեկան հատուցմանց դատաստանաց Սիովնի »։ Աստ յայտ է՝ եթէ վասն Սիովնի քաղաքին Աստուծոյ՝ եկն բարկութիւնն 'ի վերայ Եդովմացւոցն՝ մինչդեռ Սիովն էր. այսինքն՝ ծարաւեաց յԱստուծոյ փրկութեանցն, և ոչ գնացեալ զհետ օտարոտի կռոցն, յորոց ոչ ինչ օգտեցաւ։

« Եւ դարձցին ձորք նորա 'ի ձիւթ և երկիր նորա 'ի ծծումբ. և եղիցի երկիր նորա իբրև զձիւթ հրով բորբոքեալ 'ի տուէ և 'ի գիշերի »։ Թէպէտ և զանհնարին հարուածոցն Եդովմայեցւոց ասէ, բայց բա-

ցուլք և վասն հանդերձեալ դատաստանի աշխարհին կարծեցին. զի հուր է, ասեն, և ծծումբ և մշտընջենաւոր տանջանք. քանզի և յարէ իսկ 'ի նոյն, եթէ «Մի՛ շիջցի 'ի տուէ և 'ի գիշերի, և մի՛ շիջցի յաւիտեանս ժամանակաց»։

«Եւ ելցէ ծուխ նորա . . . . . . . . [1] ըեսցի, և բազում ժամանակս աւերեսցի, և բնակեսցեն 'ի նմա հաւք և ոզնիք և ցինք և ագռաւք. և անկցի 'ի նմա լարաբաժին աւերակի. և յուշկապարիկք բնակեսցեն 'ի նմա։ Եւ իշխանք նորա իբրև զչեղեալս եղիցին. և թագաւորք նորա և մեծամեծք՝ եղիցին 'ի կորուստ. և բուսցին 'ի քաղաքս նորա փայտ փշաբեր, և յամուրս նորա։ Եւ եղիցի հանգիստ համբարեաց և դադար ջայլամանց. և պատահեսցեն դևք յուշկապարկաց և տայցեն ձայն միմեանց։ Անդ հանգիցեն յուշկապարիկք, անդ եհան ձագս ողնի [2], և սնոյց երկիր զձագս նորա զգուշութեամբ. անդ եղջերուք միմեանց պատահեցին և տեսին զերեսս միմեանց. Թուով անցին և մի 'ի նոցանէ ոչ վրիպեցաւ. ընկեր զընկեր ոչ խնդրիցեն. զի Տէր պատուիրեաց նոցա, և հոգի նորա ժողովեաց զնոսա, և նա արկցէ նոցա վիճակս, և ձեռն նորա բաժանեսցէ նոցա ճարակս յաւիտեանս ժամանակաց. ժառանգեսցեն ազգաց յազգս, և հանգիցեն 'ի նմա»։ Մինչև ցիծս՝ զընաբարձ աւերակին նոցա յայտ առնէ, և յեղջերուացն և 'ի խոնարհ՝ մարթի ուսմնասիրաց և 'ի նոր ինչ առնուլ։

1 Յօր. Բառք ինչ ջնջագիր. Թուի լինել ըստ Ս. Գրոց բնագրին. Եւ ելջէ ծուխ նորա 'ի վեր, և աւերեսցի (յազգս ազգաց)։
2 Յօր. Ոզնի։

# ԳԼՈՒԽ ԼԵ

« Ուրախ լեր, անապատ ծարաւի, և ցնծասցէ անապատն, և ծաղկեսցէ իբրև զշուշան »: Երկրին ասէ զանապատն. կոչի անապատն անգործ ինչ երկիր, և կոչի դարձեալ անապատ և ծարաւուտ ինչ երկիր: « Ծաղկեսցէ և ցնծասցէ անապատն Յորդանանու, և փառքն Լիբանանու տայցին նմա և պատիւն Քերմեղեայ. և ժողովուրդ իմ տեսցէ զփառսն Տեառն և զբարձրութիւնն Աստուծոյ »: Այսու նշանակէ վասն 'ի . . . թիւնս ինչ փոփոխելոյ 'ի գալստեանն Քրիստոսի . . . ան...ա...ք [1] ծարաւիք, այսինքն հոգիք անգործք և ծարաւիք՝ արբին զկենդանի ջուր վարդապետութեանն Քրիստոսի, և տեսին զփառսն Տեառն. ըստ այնմ՝ զոր Յովհաննն ասէր, Թէ Տեսաք զփառս նորա, զփառս իբրև զմիածնի առ 'ի Հօրէ: «Եւ զբարձրութիւն Աստուծոյ ». այն իսկ է՝ զի վերացաւ բարձրացաւ 'ի խաչն՝ 'ի վերայ անուանեալ աստուածոց:

« Զօրացարուք ձեռք լքեալք և ծունկք դողդոջունք »: Զայս բանս Պաւղոս Հեբրայեցւոցն գրեաց. զի որոց կայցեն ընդ [2] բազում համարձակութեամբքն՝ լինիցի օգնական, և անկելոցն տայցէ ձեռն և յարուցանիցէ. իբրև մարտիկ ինչ և պատերազմող՝ արանց վհատելոց տայցէ խրախոյս: «Մխիթարեցարուք, կարճամիտք սրտիւք, զօրացարուք, մի երկնչիք»: Տեսանես, զի ոչ 'ի փորձութեանց, այլ 'ի կարճմտութենէ լինի լքումն:

« Ահա աւասիկ Աստուած մեր հատուցանէ զդա-

1 Յօր. Ի մաշմանէ թղթոյն եղծեալ էին բառքս. Թուի լինել. Վասն 'ի բարութիւնս ինչ փոփոխելոյ 'ի գալստեանն Քրիստոսի. զի և անապատք, և այլն:

2 Այսպէս յօրինակին. Թուի թէ պարտ իցէ ընթեռնուլ ընդ նեղութեամբք:

տաստանս և հատուսցէ. ինքնին եկեսցէ և փրկեսցէ զմեզ»։ Ինքնին եկեսցէ և ոչ այլ ոք. քանզի ոչ ոք էր լինել բաւական կատարեալ փրկութեանս։ «Եւ յառաջ քան զդատաստանն հատուցանէ»։ Եւ տես իսկ, զխորդ եղծան հրեականքն. քաղաքն աւերեցաւ, Յուդա խնդդեցաւ, Հերովդէս չարաչար մահու մեռաւ, և հայրն և որդին. դատաստանս հատուցանէ, որպէս Սափիրա՝ զի յանկարծամահ եղև, և Եղիմաս մոգ։ Մի եթէ չկարէ՞ր ամենեցուն աստ հատուցանել. այլ լուր զինչ ասեն, եթէ ոչ ածէ զբարկութիւն իւր համապազ. և թէ ըստ մեղացն անդէն վաղվաղակի հատուցանէր, 'ի վաղուց հետէ ջնջեալ լինէր ազգ մարդկութեան։ Այլ ոչ աստ եեթ, այլ և յապա ժամանակս հատուսցէ և Նոցա և այլոց. բայց սակաւ ինչ զոր առնէն՝ առհաւատչեայ է և՛ տանջանացն և հանդըրտեան։ Յորժամ տեսանիցես զդևս հալածականս և զցաւս փախստականս և զբնութիւն ամենայն եկեալ յուղղութիւնս, զգազանս հնդարտացեալս և զամենայն արարածս խորշեալս յառաքելոցն, համարեաց եթէ զհանդերձելոցն զօրութիւն տեսեր, զհոգւոցն առհաւատչեայ։ «Ինքնին եկեսցէ և փրկեսցէ զմեզ». ինքնին եկեսցէ և ոչ ծառայ ոք կամ հրեշտակ, այլ ինքնին. զոր և Պաւղոս վեր 'ի վայր յեղյեղէ, զի զբազում պատիւն յայտ առնիցէ, եթէ ինքն անձամբ եկն 'ի խօսել. Բազում մասամբք, ասէ, և բազում կերպարանօք վաղ իսկ խօսեցաւ Աստուած մարգարէիւքն ընդ հարսն մեր. իսկ 'ի վախճան աւուրցս այսոցիկ՝ խօսեցաւ ընդ մեզ Որդւովն. և զատ մեկնեաց այսուիկ զտէրն 'ի ծառայից։

«Յայնժամ ժամանակի աչք կուրաց բացցեն և ականջք խլից լուիցեն. յայնժամ ժամանակի կաղն վազեսցէ իբրև զեղջերու»։ Ոչ միայն զմարդկանէ ասացեալ, եթէ Դատաստանս հատուցանէ և հատուսցէ, այլ և վասն սատանայի. քանզի և նմա հատոյց կապելովն զնա առ այժմ։ Եւ արդ ուստի՞ յայտ իցէ. Ոչ ոք, ասէ, կարէ առնուլ զաւար հզօրի, եթէ ոչ նախ զնա կապեսցէ. և ինքեանք ասէին իսկ, թէ Թո՛ղ, զի՞ կայ մեր և քո, Յիսուս Նազովրեցի, եկիր այսր յառաջ քան զժամանակն տանջել զմեզ։ Եւ Տէրն ասէր. Ե՛րթ յետս սա-

տանայ, զի գրեալ է թէ Տեառն Աստուծոյ քում երկիր պագանիցես. և դարձեալ, եթէ Տեսի զսատանայ անկեալ իբրև զփայլակն յերկնից. և դարձեալ, թէ Կոխեցէք զօձս և զկարիճս և զամենայն զօրութիւն թշնամւոյն։

« Յայնժամ ժամանակի աչք կուրաց տեսցեն և ականջք խլից լուիցեն » ։ Յիրաւի կարևոր անդամք մարմնոյն բժշկէին առ պէտս աստուածգիտութեանն պատշաճից. զի բանաարկուն յառաջագոյն կուրացոյց զճանապարհս մեր և փակեաց զուղիս գիտութեանն՝ որ զմեզ առ Աստուած տանէին։ Եւ լուր զինչ ասէ Պաւղոս երանելի. Զի աներևոյթք նորա 'ի սկզբանէ աշխարհի՝ արարածովքս իմացեալ տեսանին։ Զի յորժամ աչք ոչ իցեն, զիա՞րդ ոք տեսանիցէ. քանզի և զլսելեաց ասէ, թէ Լուր 'ի պատգամաց Աստուծոյ. յորժամ լսելիքն չիցեն, զիա՞րդ ոք լսիցէ. վասն այնորիկ զի զորս թշնամին կուրացոյց, զնոյնս եկն Քրիստոս յարդարեաց, ոչ միայն զանդամս մարմնոյն, այլ և զբարս ոգւոյ։ Զի՞նչ օգուտ իցէ, եթէ արտաքին անդամքն լուսաւորեսցին և ներքին միտքն կուրացեալք. քանզի և բազում անգամ բացօք աչօք ոչ տեսանեն։ Եւ եթէ առ աչս այսպիսի ինչ, ո՜րչափ ևս առաւել առ ոգիս, յորժամ մոլորութիւնք ինչ 'ի միտսն մտանիցեն և կամ այլ ինչ կարիք, որ զայլ ինչ կարգս յօրինեալս խախտիցեն. որ և լինէր իսկ. և Քրիստոս զամենայն եբարձ զայնպիսի կարիս 'ի միջոյ։

« Յայնժամ ժամանակի կաղք վազեսցեն իբրև զեղջերուս » ։ Ոչ միայն զառողջութիւն տայր մարմնոյ, այլ որ գամ մի 'ի սուրբ 'ի ձեռանն մերձենային՝ զերծանէին և 'ի յոգւոցն կապանաց։ « Եւ պարզ լիցի լեզու թոթովոյ » ։ Զի տգէտք և տխմարք յաղթեցին ճարտարաց և փիլիսոփայից. բայց միայն 'ի հրէական ազգէն, զի յամառեալ կացին 'ի հեստութեան և ոչ լուան աստուածեղէն գրոց, և վրիպեցին յիւրեանց անձանց փրկութենէն։

« Զի ջուր բղխեաց յանապատ, և գետք յերկիր ծարաւուտ » ։ Միանգամայն զյանկարծաբուղխ բարերարութիւնն յայտ առնէ, և զովացութիւն ոգւոցն ծարաւելոց. զի չիք այլ անապատ դժնդակ, քան զո-

գիս անգործս, խոպանացեալս, լեալ բնակութիւն գազանաց. զոր օրինակ յանապատս է բնակութիւն գազանաց և հանգիստանալ փշոցն, նոյնպէս և 'ի մարդկան ոգիս: « Եւ եղիցի անձրեւն 'ի ջրամարդս, և երկիրն ծարաւուտ յաղբերականս »: Զսոյն և Քրիստոս ասէր. Եթէ ոք ծարաւի իցէ՝ եկեսցէ առ իս, և որ հաւատայ յիս, որպէս և ասէ գիրն, գետք յորովայնէ նորա բղխեսցեն ջրոյ կենդանութեան: Եւ վասն էր աղբիւր կոչիցէ զիրսն. այլ 'ի սրբութիւն պատշաճական է հաւատացելոցն, և ցանկութեան եռանդնացն շիջուցիչ:

« Անդ եղիցի ուրախութիւն հաւուց և կայանք խաշանց և մարգագետինք եղեգին. անդ ճանապարհ մաքրեալ և ճանապարհ սուրբ կոչեսցի »: Ե՞րբ. յետ մկրտութեանն, յետ զլոյսն զգենլոյ. քանզի ոչ եթէ յանձանց ինչ ունէաք, այլ յԱստուծոյ մարդասիրութենէն պարգևեցաւ: Ուր արքունական ոտքն շրջիցին, զիա՞րդ չլինիցի սրբեալ և մաքրեալ ճանապարհն. ուր այնպիսի աղբիւր բղխեսցի, զիա՞րդ ոչ վտակք ոգւոցն ոռոգանիցեն զանդամս ոգւոցն ծարաւելոց:

« Եւ մի անցցէ ընդ նա պիղծ ոք, և մի եղիցի անդ ճանապարհ պղծութեան »: Սրբեսցուք զանձինս՝ որ անկեալ եմք յուղի՝ գնալ ընդ այնպիսի ճանապարհ: « Իսկ որ ցրուեալքն իցեն՝ գնասցեն ընդ նա և մի մոլորիցին »: ... [1] Քանզի և չէ իսկ՝ որ ընդ այնպիսի լոյս գնասցէ, եթէ մոլորիցի երբեք: ... Նաց [2] չարաց անդ մի գտցի ». զի՞նչ առեւծն. որ կարծեցոյց զանձն առեւծացեալ, և պաշտօնեայք նորա չարագազանք, թէպէտ և ջանայցեն՝ չկարիցեն ինչ ստանանել ճշմարիտ հաւատացելոցն. այլ ընդ նա գնասցեն փրկեալք և ժողովեալք 'ի Տեառնէ՝ որ փրկեացն անարատ արեամբն, և ժողովեցան 'ի մեղացն թափառանաց՝ Տէրամբն: Եւ թէպէտ օրինակաւ դարձին երևեցաւ այսպիսի ինչ, այլ ճշմարտութեամբ 'ի գալստեանն Քրիստոսի կատարեցաւ:

1 Յոր. Բառ մի եղծեալ:

2 Յոր. Բառք ինչ ընջագիր, այն է սկիզբն բնաբանիս, զոր այսպէս ունի Աստուածաշունչն մեր. Մի՛ եղիցի անդ առիւծ, և մի 'ի գազանաց չարաց ընդ այն մի՛ անցանիցէ:

« Դարձցին և եկեսցեն 'ի Սիոն ուրախութեամբ, և ուրախութիւն յաւիտենից 'ի վերայ գլխոց նոցա. և օրհնութիւն և ուրախութիւն և ցնծութիւն հասցէ նոցա. մերժեցան ցաւք, տրտմութիւնք և հեծութիւնք »: Զի թէպէտ և այլքն կարծիցեն 'ի դարձին կատարել, սակայն մերժել ցաւոց և տրտմութեանց և հեծութեանց չէ մարթ՝ եթէ անդ կատարէր, այլ յայս վայր՝ որ մեզ աւանդեցաւ [1]: Վասն որոյ ասէ Առաքեալ. Ուրախ լերուք հանապազ, ուրախ լերուք, անդադար յաղօթս կացէք. զի ոչ ևս ցաւովք ծնանի եկեղեցի զմանկունս իւր, և ոչ բազմանալով բազմանան տրտմութիւնք և հեծեծութիւնք, այլ « Մերժեցան ցաւք և տրտմութիւնք և հեծեծութիւնք ». 'ի փախուստ դարձան, հետակորոյս եղեն:

## ԳԼՈՒԽ ԼԶ

« Եւ եղև 'ի չորեքտասաներորդ ամի թագաւորութեանն Եզեկիայ, ել Սենեքերիմ արքայ Ասորեստանեայց 'ի վերայ ամուր քաղաքացն Հրէաստանի, և առ զնոսա »: Աքանչելի էր այրս այս, աքանչելի և մեծ. և արդ միտ դիր. յորժամ հանդերձեալ լիցէ Աստուած զարմանալիս ինչ առնել, յառաջագոյն հնարի իրս ինչ. « Ել, ասէ, 'ի վերայ ամուր քաղաքացն Հրէաստանի, և առ զնոսա ». զի մի կարծիցես եթէ Երուսաղէմի-րովքն ամրութեամբ կարաց ապրել: Տես, որչափ ինչ արդարութիւն էր առն, զի վերակացու եղև քաղաքին, այնպէս՝ զի զայլսն առ և զնա ոչ կարաց առնուլ. և ոչ ժամանակս ինչ բազում ծախեաց, այլ որպէս ոք յորժամ վաղվաղակի ընդ ձորս ինչ անցանիցէ, այնպէս ասպատակի առ զքաղաքն ամենայն:

« Եւ առաքեաց արքայն Ասորեստանեայց զՌափսակ 'ի Ղաքիսայ յԵրուսաղէմ առ Եզեկիա արքայ՝ զօրօք բազմօք »: Վասնել զքաղաքս ամենայն կամէր, և զնա ևս

[1] Յօր. Աւանդէցան:

առնուլ։ Եւ ընդէ՞ր զօրգք բազմօք. այլ զի երևեսցի զօրութիւնն Աստուծոյ. զինա յանպատրաստից եկեալ հասեալ՚ի վերայ երկեցուցանէր բանիւք, և սրտապահ առնէր զբնակիչս քաղաքին՝ տեսլեամբ զօրացն բազմաց. և զայն ոչ գիտէր, եթէ ինքն սրտառուչ [1] սրտաբեկ դառնալոց է։

« Եւ եկին առ նա Եղիակիմ Քեղկեանց՝ հանդերձապետն, և Սոմնաս դպիր և Յովաք Ասափեանց՝ յիշատակաց դպիր »։ Եւ զիա՞րդ ոչ երկեան, զի ոչ իբրև զմարտիկ ոք, այլ իբրև զԹագաւոր ոք բռնաւոր, այնպէս եկեալ համարձակ՝ կամէր զամենայն կործանել։

« Եւ ասէ Ռափսակ. Ասացէք ցԵզեկիա. այսպէս ասէ արքայն մեծ ». և սարանայր՝ կոչել զԵզեկիա՝ արքայ։ « Յո՞ յուսացեալ ես. մի բանիւք կամ խորհրդովք շըրԹանց պատերա՞զմ վճարիցի »։ Բարիոք ասացեր, եթէ ոչ խորհրդովք կամ իմաստութեամբ վճարեսցի պատերազմ, այլ Աստուծոյ զօրութեամբ։ Եւ զի՞նչ իցէ խորհրդովքն կամ բանիւք. կամ Թէ բանս իսկ առաքեաց առ Եզեկիա, կամ Թէ բանիւք իսկ էին հրէականքն. այսինքն՝ հեգնելով՝ եթէ զմարգարէսդ ունիցիս քեզ խորհրդակիցս, ոչ ինչ է այդ պիտոյ. այլ զէն և կազմած և արս ընտիրս՝ ըստ բարբարիկ վայրենական մտաց։ Ո՛ անօգուտ, ով մեծաբան բարբառ, ով անհանճար միտք. քանզի խորհրդով իսկ և բանից շրԹանց վճարի՞ պատերազմ. զի եթէ իմաստութեամբ ոչ յարդարեսցէ զճակատն, այն աշխատութիւն ՚ի զուր և ընդ վայր լինի։

« Եւ արդ յո՞ յուսացեալ իցես, ասէ, զի ոչ հնազանդիս ինձ »։ Ո՞ ոք երբեք ետ քեզ խրախոյս. միԹէ Եգիպտացիքն. և ասէ զնոցա տկարութիւնն, եթէ ոչ միայն չօգնեն, այլ և վնասակար ես լինին. և զայս արդա՞ր ասէր, բայց զայլսն ես ոչ արդար։ « Ահա աւադիկ յուսացեալ իցես ՚ի ցուպ եղեգնեայ ջաղջախեալ». որպէս և Եզեկիէլ եղեգնեայ իմն անուանէ զԵգիպտացիսն. անզօր է, ասէ, նոցա օգնականութիւնն. ոչ միայն չօգնէ, այլ և վնասակար ես լինի։ « Յոր Թէ

[1] Յոր. Սրտարանչ։

յենուցու ոք՝ ինքն բեկանի, և ընդ նորա ձեռն ելանէ. այսպէս և Փարաւոն՝ արքայն Եգիպտացւոց, և ամենեքին որ յուսացեալ իցեն 'ի նա։ Ապա թէ ասիցէք, եթէ 'ի Տէր Աստուած մեր յուսացեալ եմք, ո՞չ այս այն Աստուած իցէ, որ քակիցէ զբարձունս և զսեղանս ». և արդ չէք ինչ օգտելոց յայդպիսի մոլորութենէ։ Եւ ապա զի՞նչ արար. հրամայեաց զօրացն պատել յառաջ, և ասէ. « Եկայք խառնեցարուք ընդ տեառն իմում թագաւորի, և տացեն ձեզ երկուս հազարս յերիվարաց, եթէ կարող իցէք տալ հեծեալս 'ի վերայ նոցա։ Եւ զիա՞րդ կարէք դուք 'ի դիմի հարկանել միոյ ուրուք յաշխարհակալաց, զի երկու հազարք զօրք ոչ գտանին 'ի ձեզ »։ Տես զվկայութիւն առ 'ի թշնամեացն։ « Ծառայք և որ յուսացեալ իցեն յԵգիպտացիսն »։ Զի՞նչ խօսիս, հէք թշուառական. եթէ ծառայք են՝ որ յուսացեալ էին, վասն այնորիկ յորս վստահն էին, այնուհետև զի՞ջուցանիցէ զհպարտացեալ միտս նոցա. իսկ Աստուծոյ յուսոյն՝ յօգուտ նախատէր զնոսա՝ որ 'ի վերուստ բազում անգամ առաքէր նոցա օգնականութիւն. և նա հմուտ էր մեծի զօրավիգն օգնականութեան. և տես, զիա՞րդ կործանէր զնոսա 'ի վհատութիւն։ « Եւ այժմ մեք, ասէ, միթէ առանց Տեառն ելանիցեմք յաշխարհս յայս՝ տալ պատերազմ ընդ նմա »։ Նա, ասէ, եհան զմեզ[1]. և դարձեալ, եթէ չէ կարող փրկել. « Մի՛, ասէ, խաբեսցէ զձեզ Եզեկիա, եթէ Աստուած փրկէ զմեզ ». և դարձեալ ասէս, թէ նա եհան զմեզ։

« Եւ ասեն Եղիակիմ և Սոմնաս և Յովաք. Խօսեաց ընդ ծառայս քո ասորերէն, քանզի և լսեմք իսկ, և մի՛ խօսիր հրէարէն յականջս մարդկանդ՝ որ անկեալ կան զպարսպօքդ »։ Տես, զիա՞րդ գրգռեցին զնա. պարտ էր յԱստուծոյ զօրութիւնս ապաստան լինել. մի՛, ասէ, զանգիտացուցաներ զմիտս զօրացդ. բազում անմտութեամբ լի են բանքն. և նա և՛ս հպարտացեալ մեղկէր զմիտս զօրացն, մերթ բարեացն խոստմամբք, և մերթ ահագին սպառնալեօք։ « Մի՛, ասէ, խաբե-

1 Յոր. Օտար գրչաւ. Այլ չմարթի յերկոսս խօսել զեղ. Թէ նա եհան զմեզ, և դարձեալ, և այլն։

ցէ զձեզ Եզեկիա, եթէ Աստուած փրկէ զմեզ. միթէ փրկեցի՞ն աստուածքն հեթանոսաց զաշխարհն իւրեանց »: Ապա ասէ զտկարութիւն այլոց աստուածոց, զՍամարիայ և զընկերացն: Եւ տես, զիարդ հնարէր լուսաւոր առնել զյաղթութիւնն. « Միթէ փրկեցի՞ն, ասէ, աստուածքն հեթանոսաց, Եմաթն և Արփաթն, և Սափարուեմ, և այլք սոյնպիսիք [1] »: Դու ասացեր եթէ ոչ փրկեցին, արդ եթէ փրկեսցէ Աստուած, ըստ քոյ մտացդ՝ ապա մեծ է Աստուած, և ոչ իբրև զայլս բազումս:

« Եւ կերիջիք զաղբս և արբջիք զմէզս »: Եւ տես, որպիսի՜ անհնարին պատիժս սպառնայ ամենայն մարդկան, մանաւանդ առաւել Հրէից: « Եւ ոչինչ ետուն պատասխանի ». և ընդէ՞ր արդեւք. « Զի այնպէս հրաման տուեալ էր թագաւորին »: Ո՛վ թշուառական, չէք ինչ հաւատար Աստուծոյ. մի՞ տկար ինչ համարեցիս զճշմարիտն զօրավիգն օգնականութիւնն: Զայս լուեալ՝ զհանդերձս պատառէին, և պատմէին Եզեկիայի զբանս. իսկ նորա ուսեալ՝ի Դաւթայ, եթէ Ես՝ի նեղել նոցա՝ քուրձ զգենուի, զնոյն օրինակ յանձին ունէր:

## ԳԼՈՒԽ ԼԷ

« Քուրձ զգեցաւ և եկ՝ի տաճարն Աստուծոյ »: Տե՛ս զպատերազմ, տե՛ս զմարտն և զկռիւ. ոչ զէն կազմէր, և ոչ մենքենայս յարդարէր. ոչ զպարսպօքն շուրջ գայր, և ոչ զամուրսն պնդէր, և ոչ առ ազգս ուրեք հրեշտակս արձակէր. այլ յերկինս արձակէր զաղօթսն հրեշտակս, այնպիսի կերպարանօք՝ որով զբարձանցն թագաւոր յուսայր հաշտեցուցանել. և պատարագս՝ զարտասուսն մատուցանէր, և զխորտն փղձկեալ, և սփածուածն խորգոյ այրն [2] թագաւոր: Նա և վայելէր իսկ նմա, որ քան զայլսն պատուական էր,

1 Յօր. Եւ այլք, և մի այնպիսիք:
2 Յօր. Այլ:

զի և հոգւոցն ամենեցուն լինիցի երաշխաւոր, և այնպէս 'ի կոր կործանեալ կայր յաղօթս և աղերսէր. ոչ պատուոյ ինչ փոյթ առնէր, և ոչ զթագաւորութիւնն ինչ ածէր զմտաւ. այլ զայն ևեթ 'ի մտի եդեալ, թէ քան 'ի զօրացն օգնականութենէ՝ 'ի նորա խորհուրդն առաւել կայ փրկութիւն. և այն իսկ է թագաւորի և իշխանի, ոչ միայն զի առաւել պատուիցի քան զայնոսիկ՝ որ ոչ իշխիցեն, այլ զի առաւել քան զնոսա ունիցի հոգ յանձին վասն նոցա։

« Եւ ասեն ցԵսայի մարգարէ. այսպէս ասէ Եզեկիա, եթէ օր նեղութեան և նախատանաց »։ Եւ ընդէ՞ր ոչ ինքնին չոգաւ առ մարգարէն. զի ևս լաւագոյն և մեծ արար, զի առ Աստուածն դիմեաց։ « Այսպէս ասէ Եզեկիա ». որպէս 'ի հիւանդութեանն ասէր, Յիշեա՛ որպէս գնացի առաջի քո ճշմարտութեամբ, ոչ նոյնպէս ինչ և աստ. ոչ զվարուց ինչ սրբութիւնն և ոչ զուղղութեանց ինչ յաճախութիւն առաջի դնէր, այլ զվշտացն ևեթ սաստկութիւն։ « Օր, ասէ, նեղութեան ». ոչ վասն քաղաքիս առնլոյ, ասէ, ցաւէ ինչ, այլ զի զհասարակացն Տէր՝ 'ի դիւաց նուաղութիւնն իջոյց բարբարոսն, և ոչ ինչ աւելի զօրաւոր համարեցաւ զնա։ « Օր յանդիմանութեան և բարկութեան օրս այսր աւուր, զի հասեալ է երկունք ծննդականի, և ոչ գոյ զօրութիւն առ 'ի ծնանել »։ Եւ երկու աղէտք են, յորժամ երկունք հասանիցեն և ծնանել ոչ կարիցեն. երկունք ստիպեցին և վճիռ ինչ ոչ եղև։ Տեսանե՞ս, որպէս պաղատի զաղէտսն. և սա որ այսպէս պաղատէր և խոնարհագոյնս խօսէր, յետոյ հպարտացեալ գտանէր. որպիսի՛ ինչ դժնդակ է հպարտութիւն. և թէպէտ բազում վկայս արս ընտիրս ունէր իւրոյ օգնականութեանն, սակայն յետոյ զայնպիսի բանս ինչ ոչ յիշեաց, ոչ զքուրձն զգենուլ, զի այնպէս իմն յափշտակեցաւ յախտէ ամբարտաւանութեանն։

« Թերևս լուիցէ Աստուած զբանս Ռափսակայ ». որպէս Նինուէացիքն ասէին. Թերևս զղջասցի Աստուած 'ի վերայ չարեացն՝ զոր խօսեցաւ։ Եւ զինչ ուսանիցիմք աստի. զի թէպէտ և ոչ իցեմք վստահ արդարութիւն գտանել, սակայն յաղօթիցն մի հեռասցուք. զի թե-

բեւմն ասել, թուի թէ երկբայական մնաց է. զոյն և Աստուած բարբառէր առ մարգարէսն. Թերևս լուիցէ, ասէ. և դարձեալ, թէ Ո՛ տացէ լինել այսպէս սրտի ժողովրդեանս այսորիկ. թէպէտ և ինքն ճարտար գիտէր թէ չեն ինչ լսելոց, սակայն ոչ հրաժարէր 'ի խրատելոյ. սովին օրինակաւ և մեք վարեսցուք։ « Թերևս լուիցէ Տէր Աստուած քո զբանս Ռափսակայ ». և ոչ իշխէ իւր Աստուած անուանել։ Զի՞նչ խօսիս դու. աղաչես զԱստուած, և ոչ 'ի քոց աղօթիցդ, այլ 'ի նախատանաց թշնամւոյն ունիս ակն՝ գտանել փրկութիւն։ Զսոյն և առակական բանն ասէ, զի Թէ անկանիցի թշնամի քո, մի՛ ուրախ լինիցիս 'ի վերայ գլորման նորա, զի մի՛ տեսանիցէ զայն Աստուած, և չլինիցի նմա հաճոյ, և դարձուցանիցէ զբարկութիւն իւր 'ի նմանէ։ Բազում անգամ ոչ արժանաւորութիւն փրկելոցն, այլ մնասակարացն չարութիւն զարթուցանէ զԱստուած յօգնականութիւն. սոյնպէս և սա այսպէս 'ի միտս վստահ լեալ, ցուցանէր բազում խոնարհութիւն։ Տեսանե՞ս, որչափ չար են նախատինք. և մի՛ կարծիցես թէ Ռափսակայ էին այնպիսի բանք, այլ արքային. քանզի և ասէր իսկ. « Զորս առաքեաց արքայն Ասորեստանեայց ». զի զնա եւս արձակեսցէ ընդ անպարտս խօսութեամբն, մեծամտութեամբն՝ նախատել զԱստուած կենդանի։ Ոչ քաղաքիս ինչ եղեն նախատինք և ոչ մեզ ինչ ամօթ, այլ մեծամեծ աղէտք մեզ այն են, զի զամենայն ինչ առ Աստուած իշխեաց ձգել, և նախատել բանիւք. և ոչ ասէ թէ բանիւ, այլ զի զբազում երկեղածութիւն ցուցանիցէ։

« Եւ աղաչեսցես զՏէր Աստուած քո վասն մնացելոցն այսոցիկ »։ Տե՛ս, զիարդ ընթանայցին ընդ բազմութեան վշտացն՝ աղօթքն Եզեկիայ, և ըստ անպարտս խօսութեան թշնամւոյն՝ համարձակութիւն մարգարէին, և ընդ նմին և նուազութիւն մնացելոցն։ Եւ մեք սոյնպէս առ այնոսիկ՝ որք ունիցին համարձակութիւն առ Աստուած՝ ապաւինեսցուք. զի ամուր աշտարակք են 'ի պահպանութիւն։ Բայց մի՛ միայն 'ի նոսա ապաստան լինել. քանզի և ոչ նա 'ի քուն էր և զմարգարէն զարթոյց, այլ յառաջ քան զնա և ընդ նմա՝ պատկառ կայր խնդրուածոցն. որպէս զի և ոչ

անփոյթ պարտ էր լինել յաղօթիցն, և ոչ 'ի նոսա միայն ապաստան լինել: Քրձազգեստ լինէր թագաւորն, որ յանժամ 'ի պատուի էր, վասն միայն խափանելոյ պատերազմին. իսկ դու, ռամիկդ, որ ոչ վարս ինչ պարկեշտականս ունիցիս, և ոչ վասն քո մատուցեալ աղաչիցես զԱստուած, այլ 'ի մեծամեծ պատմուճանս զարդարիս և իւղովք անուշիւք օծանիս, և հեղգաս հաշտեցուցանել ընդ քեզ զբարկացեալն: Ուր այդպէս ոք կարէր հաշտեցուցանել զարքայն արքայից, եթէ 'ի ծուլութեան ոք իցէ, և 'ի քաղցրութիւն ջանայցէ ածել զցասուցեալն: Համարեաց զմեծութիւն այնորիկ՝ զոր աղաչեմն, և զյաճախութիւն քոց մեղացդ և զնուաղութիւն քոյոյ բնութեանդ, և զիջիր փոքր մի, հաշուեաց զմիտսդ. զի թէպէտ քուրձ զգենուցուս, այլ ոչ ինչ արժանի գործ գործեցեր այնմ՝ զոր հաշտեցուցանելն կամիցիս: Ժամանակ արտասուաց և լալոյ է, և ոչ ծաղու և ուրախութեան. բազում ինչ վնասս առնեմք հանապազ և բարկացուցանեմք զԱստուած, և չիցէ՞ պարտ դէթ 'ի մի ժամու սուրբ լինել 'ի մեղաց:

« Եւ ասէ ցնոսա Եսայի. Այսպէս ասէ Տէր. մի երկընչիցիս 'ի բանիցն՝ զորս լուար, որովք նախատեցին զիս հրեշտակք Ասորեստանեայց[1] »: Տե՞ս, զիարդ զարթուցանէ զնա և քաջալերէ. զիս, ասէ, նախատեաց. ապա թէ այդ այդպէս իցէ, դու մի երկնչիցիս: Յորժամ Աստուած յիւր դէմս առնուցու զթշնամանս, վստահ լինիցիմք՝ եթէ լինելոց է հատուցումն: Ընդ իս գրգռիր, ասէ, և ընդ իս կռուիր. «Ահա աւադիկ ես արկանեմ 'ի նա հոգի ». այսինքն խռովութիւն: « Եւ լուիցէ գոյժ և դարձցի յաշխարհ իւր, և անկցի 'ի սուր յերկրի իւրում »: Զայս զկետինն ասէ, չև ևս այժմէն զամենայն հարուածսն յայտնէ: Եւ ինձ այսպէս թուի, թէ ոչ ածէր զհարուածսն[2] 'ի վերայ նորա, թէ չէր յամառեալ 'ի նմին չարութեան. զայս ասելով և սմա քաջալերութիւն տայր. զի թէ ասացեալ էր՝ թէ 'ի քում երկրին անկցի 'ի սուր, յիրաւի

1 Յօր. Օտար գրչաւ՝ որդւոյն Ասորեստանեայց:
2 Յօր. Եւ թէ... չհարուածոյն՝ յօտար գրչէ 'ի լուսանցսն էր եդեալ:

հասանէր նմա կասկածել. զի թէպէտ և անկանելոց էր, սակայն և նմա մնաս առնէր. իսկ յորժամ յիւրում երկրին անկցի 'ի սուր, սորա երկիրն 'ի զգուշութեան մնայ։ Դարձեալ զի զիջուցէ զհպարտացեալ միտսն, « Եւ առաքեաց, ասէ, հրեշտակս, զի առաջնորդ լինիցի նմա յուղղութիւնս. և ոչ ոք յաստուածոց կարաց ապրեցուցանել զիւրաքանչիւր ազգ ». զի և 'ի թշնամեացն վկայութիւն լինիցի Աստուծոյ անհամեմատական զօրութեանն։

« Զորս ևս Եզեկիա 'ի[1] հրեշտակացն, և ընթերցաւ. եմուտ 'ի տունն Աստուծոյ Եզեկիա, և աղաչէր զԱստուած »։ Մեծ իմն զէն ևս զհրովարտակսն, զի նոքօք հաւանեցուսցէ զԱստուած։ Տես զհայր նորա, որպէս անհաւատ էր, և որպէս սա հաւատացեալ. նա մարտնչէր ընդ թշնամւոյն, ուստի կազմէր զէն ընդդէմ պատերազմողացն. 'ի տանէն Աստուծոյ, աղօթիւք, խնդրուածովք. մեծ և կարևոր զէն է ամենայն ուրեք զԱստուած կոչել յօգնականութիւն։

« Տէր, ասէ, սաբաւովթ, Աստուած Իսրայելի »։ Վերին զօրութիւնք սաբաւովթ կոչին, հրեշտակք և հրեշտակապետք։ Ոչ ինչ խախտեցին զիս, ասէ, նախատինք թշնամւոյն, և ոչ 'ի նորա մոլորութենէն համարիմ անկարծ ինչ զքո զօրութիւն. թէպէտ և բիւր անգամ վտտիցէ զպատիւ քոյոյ մարդասիրութեանդ, ես ոչ միայն յերկրի, այլ և յերկինս խոստանամ զքո մեծազօր զօրութիւնդ։ Եւ արդ զիա՞րդ. եթէ Աստուած կարող է, և դուք չէք արժանի փրկութեան. վասն այնորիկ յարէ 'ի նոյն, եթէ « Աստուած Իսրայելի »։ Կարող եմ, քանզի Տէր եմ սաբաւովթ, այսինքն՝ զօրութեանց։ « Կամիս, և վայելէ իսկ քեզ, զի Աստուած ես Իսրայելի, որ նստիս 'ի քերոբէս, դու ես Աստուած միայն ամենայն թագաւորութեանց տիեզերաց »։ Քանզի խուժ դուժն փոքր ինչ մասն համարեցաւ նմա տիեզերաց զՀրէաստան, և իբրև ընդ զուգական ախոյանի ինչ դիւաց խօսէր, զի զայսպիսի կարծիս 'ի միջոյ բառնայցէ, ասէ. «Դու ես թագաւոր ամենայն տիեզերաց ». և ոչ վայրապար, եթէ

[1] Յօր. Պակասի 'ի։

դու ես թագաւոր, այլ թէ միայն դու ես անհամե-
մատական, որ ոչ զոք ունիս ընդ քեզ զօրող կամ ըն-
կերակից, որպէս Ասորին համարի։

« Դու արարեր զերկինս և զերկիր ». զի եթէ այս-
պիսիքն քոյոյ զօրութեանդ գործ են, ապաքէն ևս առա-
ւել բնակիչքն նոցուն։ « Զի արդարև աւերեցին զտիե-
զերս՝ թագաւորքն Ասորեստանեայց, և հրձիգ արա-
րին զկուռս նոցա »։ Եւ ընդէ՞ր. « Քանզի չէին իսկ աս-
տուածք, այլ ձեռագործք մարդկան »։ Եւ այսպէս
ամենայն ուստեք զօրութիւնն Աստուծոյ վկայի, ոչ
միայն յիւրոցն, այլ և յօտարացն։ « Զի նոքա դևք են,
ասէ, և ոչ աստուածք։ Բայց արդ դու, Տէր Աստուած
մեր, ապրեցո զմեզ ՚ի ձեռաց նորա, զի ծանիցեն ա-
մենայն թագաւորութիւնք երկրի, եթէ դու ես Աս-
տուած միայն »։ Ես և առանց զփորձ առնլոյ իսկ գի-
տեմ զքեզ, բայց զի և այլքն ևս ճանաչիցեն ՚ի վճա-
րելոյ իրացն, և եղիցի փրկութիւնս հասարակաց խը-
րատ, ամենեցուն կրօնք. ապրեսցի ՚ի վշտաց քաղաքս,
զի ապրեսցեն ՚ի մոլորութենէ տիեզերք. և յոյս[1] Ե-
րուսաղեմի խրատեսցէ զայնոսիկ՝ որք զխուժդուժն հա-
յակապ համարեսցին։ Տեսանե՞ս, զի ամենայն իրացն
վերակացու եղև. և յետ ՚ի գլուխ ելանելոյ իրացն՝
զմարգարէութեան զօրութիւն ունիցին։

« Եւ առաքեցաւ Եսայի, և ասէ ցնա. Լուայ ես
զաղօթս՝ զոր աղաչեցեր »։ Ոչ ասէ թէ վասն թա-
գաւորիդ լուայ, այլ վասն աղօթիցն՝ զոր աղաչեցեր։
Եւ ամենայն ուրեք տեսանեմք յետ աղօթից՝ պար-
գևս ընդ աղօթիցն։ Մինթէ չկարէ՞ր Աստուած և ա-
ռանց աղօթիցն առնել փրկութիւն. այլ ոչ այնպէս
պտղաբեր և հոգացող լինէր՝ որ փրկեցաւն։

« Այս բան է՝ զոր խօսեցաւ Տէր Աստուած վասն
նորա. Անգոսնեաց, արհամարհեաց զքեզ ». յառա-
ջագոյն ասել զկործանումն թշնամւոյն, զի հաճեսցէ
զԵզեկիա։ « Զո՞ նախատեցեր ». և ո՞չ[2] երևելիքս
հաւանեցուցանիցեն զքեզ։ « Ո՞ւմ ձգեցեր նետս, առ
ո՞ արձակեցեր[3] զլեզուդ։ Դու և զառաջինն առէիր,

1 Յօր. Հայս։
2 Յօր. Ե՞ւ ո՞չ։
3 Յօր. Յոմանս գրչէ՝ Եւ փէ՞ս, առ ո՞, և այլն։

զոր արդ ասես, եթէ հասից 'ի վերայ ամենայն տախձերաց, իբրև 'ի վերայ բունոյ հաւու, և իբրև ըզձուս մնացեալս բարձից զնոսա »։ և այժմ նախատես, և զիմ զօրութիւն՝ քեզ համարիս։

« Ո՞չ զայս իսկ լուար յառաջագոյն՝ զոր եսս արարի, յաւուրցն առաջնոց՝ զոր ես կարգեցի. բայց այժմ և յայտնեցի իսկ »։ Տեսանե՞ս, որչափ ինչ շահք են մարգարէիցն. և քանզի չհաւատաս՝ 'ի վախճանէս արարից զքեզ առաջնոցն հմուտ. կարգեցից ատեանս և նստուցից դատաւոր զտիեզերս ամենայն. զի նա ասէր՝ եթէ ես իմով զօրութեամբ և իմաստութեամբ առի զայս անուն և զայս անուն աշխարհ. և Աստուած ասէ, թէ ոչ քո ինչ զօրութեամբ և իմաստութեամբ, այլ իմով զօրութեամբ, քանզի յառաջագոյն իսկ ասացի՝ մինչչև լեալ էր։ Այլ չհաւատամ, ասէ, այդմ. եթէ չհաւատաս՝ խրատեսցէ զքեզ վախճանն. յորժամ զզօրաւոր և զառնաւոր յանկարծակի իջուցից 'ի թշուառութիւն, ո՞չ ապաքէն յայտ իցէ թէ և զառաջինն ես ետու թոյլ աւերել զաշխարհս։ Դարձեալ և այլազգ. 'ի փոքր ինչ յաղթութենէ պարտ է հաւատալ մեծաց իրաց. որպէս և Քրիստոս՝ զի ասաց վասն յարութեան, և չհաւատան կռապաշտք, ցուցցուք մեծ ինչ իրս քան զյարութիւնն լեալ, զի այնու 'ի փոքուէն մի երկմտիցեն. զի հաւանեցուցանել զամենայն աշխարհս մոլորեալս՝ առաւել մեծ է քան զյարութիւն. զի բնութիւն մարմնոյ՝ կամաց արարչին ոչ ընդդէմ դառնայ, և ոչ հակառակ կարէ կալ. իսկ անձնիշխանութիւնն բազում անգամ կամեցաւ զլինել մարմնոց, և եղեն. կամեցաւ զի լինիցին մարդիկ հաճոյք, և ոչ եղեն. զի յորժամ զդժուարագոյնն տեսանիցես լեալ, վասն դիւրագունին մի երկմտիցես, զի ամենայն ինչ ընդ զօրութեամբն Աստուծոյ կայ. և է ինչ՝ որ ոչ ընդ զօրութեամբն միայն Աստուծոյ, այլ և քո անձնիշխանութեամբդ. զի և կանխասացութիւնն յանժամ յայտնագոյն է, յորժամ ոչ միայն զոր ինչն առնելոց իցէ՝ յայտնիցէ, այլ զայն ինչ՝ զոր և դուն կամիցիս։ Նա տես, զի՞նչ ասէ և ասա. զի թէպէտ և զիւր զօրութիւնն ցուցանիցէ, սակայն զպատճառս 'ի նմանէ առ։

« Բայց արդ զկայանս քո և զել և զմուտ քո՝ ես

ինձէն գիտեմ. բայց զսրտմտութիւնդ՝ զոր ընդ իս սրտմտեցեր, և դառնութիւն քո՝ ել առ իս »: Եւ ոչ ասէ թէ սրտմտեցեր միայն, այլ եթէ ել առ իս. յայտ առնէ զերկայնմտութիւնն, որպէս և առ Սոդոմացիսն. ոչ անդէն 'ի դառնալն քում յարեայ, ասէ, 'ի վերայ քո, այլ կացի մնացի մինչև ելանիցէ առ իս:

« Բայց այս քեզ նշան լիցի »: Առ Եզեկիա շրջէ զբանն. « Կերիցես այս ամ զսերմանեալդ, և յամէ ևս կերիցես զմնացեալն ». այսինքն՝ զի մի երթայցէք գերի, այլ կերիջիք զոր ինչ սերմանիցէքդ. զայս ինչ յայտ առնէ, եթէ ոչ վտարիցեն նորա զձեզ: Եւ զի ասէ, « Յամին երկրորդի », զմնացեալն թուի ինձ եթէ հացամըլ իմն լինելոց էր. զի այնչափ բերիցէ երկիրն, զի և երկրորդական ևս բաւական լինիցի: « Յամին երկրորդի սերմանեսջիք[1] այգիս և կերիջիք զպտուղ նոցա. և եղիցին մնացեալքն Յուդայ՝ արձակել արմատս խոնարհ, և զպտուղն 'ի վեր ». զայս յառաջագոյն ասէ, զի վստահ լինիցին:

« Նախանձ Տեառն զօրութեանց արասցէ զայս ամենայն »: Տեսանե՛ս, զի ամենայն ուստեք զգուշացուցանէր զթագաւորն, զի մի յիւրոց ինչ ուղղութեանց համարեսցի զփրկութիւնն, այլ յԱստուծոյ մարդասիրութենէ անտի. բայց և այսպէս ևս սակայն՝ անկաւ յախտ հպարտութեան:

« Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր 'ի վերայ թագաւորին Ասորեստանեայց. և մի մտցէ նա 'ի քաղաքս յայս »: Տե՛ս զհպարտութիւն թշնամւոյն և զյաղթութիւն թագաւորին առանց արեան[2] հեղլոյ, ըստ այնմ՝ որպէս մարգարէն յառաջագոյն ասէր. Անկցին ընդ կողմանէ քումմէ հազարք. տեսող միայն լինիցիս, ասէ, հարուածոցն թշնամեացն: « Եւ վերակացու եղէց քաղաքիս այսորիկ, ապրեցուցանել զսա վասն իմ և վասն Դաւթի ծառայի իմոյ ». տե՛ս, զիարդ զիջուցանիցէ զմիտս թագաւորին, զի մի ախտանայցէ՛ ինչ. բայց սակայն ախտացաւ:

« Եւ ել հրեշտակ Տեառն և կոտորեաց 'ի բանակէն

1 Յոյն. Ի լուսանցսն յօտար գրչէ. Հնձեսջիք, տնկեսջիք:
2 Յոյն. Չիք արեան:

Ասորեստանեայց հարիւր և ութսուն և հինգ հազար։
Եւ յարեան տեսին ընդ առաւօտն զմարմինս մեռեալս»։
Վասն այնորիկ գիշերի եղև՝ զի մի ամբոխեսցին ինչ,
և մի իւրեանց ինչ համարեսցին զյաղթութիւնն.
զի թէ և անամօթեսցին ինչ, յանդիմանեսցէ զնոսա
ժամանակն, զի մինչ դեռ դուք 'ի քուն իսկ կայիք՝
վճարեցաւ գործն։

« Եւ դարձաւ և գնաց. և մինչդեռ երկիր պագանէր
կռոց իւրոց, հասին սպանին զնա որդիք իւր »։ Տես զան֊
հաւանութիւնն. զի յետ այնչափ զփորձ առնլոյ զԱս֊
տուծոյ զօրութեանն, երթեալ դիւի երկիր պագանէր,
իբրև անտի իմն համարէր զփրկութիւն. վասն այնո֊
րիկ անդէն առ ժամայն առնոյր զփորձ Աստուծոյ զօ֊
րութեանն։ « Եւ թագաւորէ Ասորդան որդի նորա
ընդ նորա »։ Յորժամ կարծեաց յիւր յերկիրն հասա֊
նել, յայնժամ չար ևս անցք քան զանցանելոցն 'ի հրեշ֊
տակէն՝ անցանէին ընդ նա. զի 'ի ձեռաց ծննդոց իւ֊
րոց անկեալ մեռանէր, և ոչ ինչ օգնեցին նմա կուռքն.
և յայտ է եթէ վասն տկարութեանն. և չիք աւել եթէ
վասն զի ոչ ողոքեաց զկուռսն. զի մինչդեռ երկիր պա֊
գանէր՝ անդէն առաջի կռոցն սպանաւ։ Եւ ընդէ՞ր ար֊
դեւք, ո մորոս դևդ, ոչ օգնեցեր նմա, զի յայնչափ
թշուառութիւն մատնեցաւ. զօրաժողով եղև 'ի վերայ
օտարոտի ազգաց, և նմա ինչ ոչ օգնեցեր ուրեք. այլ
թոյլ ետուր բազում զօրաց հարկանել մեռանել յօ֊
տար երկրի. և 'ի վերայ այնր ամենայնի ոչ ինչ տըր֊
տունջք եղև զքէն, և ոչ բողոք եբարձ և մեղադիր
ինչ եղև, այլ մտեալ երկիր պագանէր քեզ. ընդէ՞ր
ետուր թոյլ՝ քո առաջի հարկանել մեռանել. յայտ
է[1] զի ամենևին լի ես տկարութեամբ։

1 Յոր. Օտար գրչաւ՝ Ո՞չ յայտ է։

## ԳԼՈՒԽ ԼԸ.

«Եւ եղեւ, ասէ, 'ի ժամանակին յայնմիկ»: Եւ ոչ վայրապար յաւել մարգարէն եթէ 'ի ժամանակին յայնմիկ, այլ զի ուսուսցանիցէ մեզ զպատճառս ախտին. քանզի բազմաց բարիք ինչ՝ չարեաց պատճառք լինին. և զայս Մնացորդք յայտ առնեն, եթէ Զիջաւ Եզեկիա 'ի հպարտութենէ սրտի իւրոյ: Տես, ով մարդ, զի յիրաւի գան 'ի վերայ մեր նեղութիւնք. և արդ, զի՞նչ ինչ բաւական էր հպարտացուցանել զքեզ. միթէ դու քեզէ՞ն ինչ ուղղեցեր, և կամ անձամբ ինչ կատարեցեր զյաղթութիւն. միթէ դո՞ւ հալածեցեր զպատերազմողսն. ո՞չ մինչ 'ի քուն իսկ կայր քաղաքդ ամենայն՝ վճարեցան իրքն: Այլ այն իսկ եղեն նմա հպարտութեան պատճառք, զի Աստուածն վերակացու եղեւ քաղաքին. և զայն ո՞չ լուար արդեւք, եթէ Վասն իմ և վասն Դաւթի ծառայի:

«Եւ եկն առ նա Եսայի, և ասէ. Հրաման տուր վասն տան քո»: Եւ տես, երբ եկն առ նա. յորժամ յոգիմն ապաստան էր. զի և 'ի հիւանդութենէ անտի հաւաստացին իրքն: Եւ այլազգ ևս. պարտ էր հաւատալ նմա յիրաց անտի՝ որ վաղուց իսկ անցեալ էին ընդ նոսա և ընդ թշնամիսն: «Հրաման տուր վասն տան քո, քանզի մեռանելոց ես, և չես կենդանան»: Եւ ոչ վայրապար ասաց, թէ մեռանիս, այլ թէ գիր արա, հրաման տո՛ւր. զոր և այլ թարգմանքն ասեն թէ պատուիրեա, որ մանաւանդ ճշգրտէր զնա առ 'ի հաւատալ. զայս յայն սակս արար, զի այլն ևս ամենայն՝ որ յետոյ լինելոց էին նշանք՝ գործեսցին և հաստատեսցին:

«Եւ դարձոյց Եզեկիա զերեսս իւր յորմ անդր»: Ընդէ՞ր ոչ ասէ զպատճառս ախտին. զի մի արատեսցէ ինչ զարդարն: Եւ արդ միտ դիր, զի հիւանդութիւնն ոչ ետ թոյլ՝ երթալ 'ի տուն Աստուծոյ, և ոչ յոտս շըրջել, քանզի մերձ 'ի մահ խօթացաւ, բայց սակայն ոչ

ինչ հեղգացաւ. ուստի ուսանիցիմք իսկ, եթէ ամենայն ուրեք կամաց և անձնիշխանութեան և մտաց բարեաց պէտք են։ Եւ վասն է՞ր արդեւք դարձաւ յորմն. զի գաղտ և հանդարտ ընդ միտսն խօսիցի ընդ Աստուծոյ, ոչ ուրուք յորդորելով։

« Յիշեա, ասէ, Տէր, որպէս գնացի առաջի քո ճշմարտութեամբ, և կատարեալ սրտիւ զհաճոյս քո արարի առաջի։ Եւ լաց Եզեկիա զլալիւն մեծ »։ Եւ ընդէ՞ր արդեւք յիւր առաքինութիւնն ապաստան լինիցի. այլ քան զվիշտսն ետես ար...ս...յն [1]։ Առաջի քո, ասէ, և ոչ 'ի ցոյց մարդկան, և ոչ 'ի պարծանս ինչ. և կատարեալ սրտիւ։ Եւ յաւել և զարտասուսն, զի յայտ արասցէ թէ ոչ յառաքինութիւնսն միայն ապաստան իցէ, այլ և ողորմութեամբ կամի ապրել։ Տեսանե՞ս, զի ոչ երկայն ինչ բանս դնէ առաջի, այլ միայն գթով սրտիւն. և վճարեցաւ ամենայն։

« Եւ եղև բան Տեառն առ Եսայի. Ասա, ասէ, ցԵզեկիա. այսպէս ասէ Տէր Դաւթի հօր քո »։ Եւ ոչ ասաց եթէ քո. առ հայրենի առաքինութիւնս ձգէ զմիտս նորա, առ հեզութիւն և խոնարհութիւն Դաւթի։ « Լուայ, ասէ, ձայնի աղօթից քոց, և տեսի զարտասուս քո. ահա աւասիկ յաւելում 'ի ժամանակս քո ամս հնգետասան »։ Աստի մեծաց իմն կրօնից հանդամանս ուսանիմք. զի թէ յօրհասէ ևեթ 'ի բնութեան կարեաց վախճան լինիցի, կամ թէ 'ի ցաւոց ինչ բնաւորաց և եթէ յուրուք մեղանչականութենէ, պարտ է զայս ամենայն խնդրել։ Աւուրք կենաց մերոց ութանասուն ամ, և եթէ ևս զօրութեամբ՝ ութսուն ամ [2]. այս բնութեան սահման է, ասեն. զի այսչափ կարէ մարդկեղէն բնութիւն բաւական լինել։ Մի՞ 'ի դունիցն զհամաշխարհականն նկարիցեմք, զի ոչ ինչ է այն յայս յար. այլ իմն նկատեսցուք. լինի մահ վասն մեղաց. և յայն սակս ասէ գիր, եթէ Բազում ժամանակս կացցես, և յաւելցեն ամք կենաց քոց, զի երկայնակեաց լինիցիս 'ի վերայ երկրի. և այլուր, թէ Մի՛ լինիր խիստ, զի մի՛ տարաժամ մեռանիցիս. և

1 Յօր. Տառք ինչ Ջնջագիրք։
2 Այսպէս յօրինակին։

դարձեալ ասէ, Թէ Աւուրք ամաց նոցա լցցին. և հաստատեալ գիտեմք եԹէ յարդարուԹենէ և 'ի մեղաց՝ մահք 'ի ժամու և մահք տարաժամք լինին։ Իսկ արդ վասն առաքինուԹեանց տարաժամ մահք ոչ լինիցի. Յափշտակեցաւ, ասէ, յառաջ քան զչարիսն. և յայտ է եԹէ ըստ իմաստուԹեանն և ըստ մարդասիրուԹեանն Աստուծոյ՝ լինին մահք տարաժամք։ Ա՛ռ, ասէ, Աստուած զՅուսիա, զի մի տեսանիցէ զչարչարանսն՝ որ գալոց էին։ Տեսանես, զի և վասն չարեաց և վասն մարդասիրուԹեանն Աստուծոյ լինին մահք տարաժամք, և ծերուԹիւն. Եւ եղիցի, ասէ, երկայնակեաց 'ի վերայ երկրի. և միւս ևս ծերուԹիւն՝ վասն մեղաց, ըստ այնմ՝ որպէս վասն Կայենին ասացաւ. Ամենայն որ սպանանիցէ զԿայէն, ասէ, զեւԹն վրիժուց պահանջումն լուծցէ. որպէս ոմանք մեկնեցին, և այլք այլազգ. որպէս և մեք իսկ 'ի Զաքարիայ մեկնուԹեանն նշանակեցաք[1]։ Եւ Պաւղոս ասէ. Վասն այնորիկ են 'ի ձեզ բազում հիւանդք և ախտաժէտք և ննջեցեալք յոլովագոյնք։ Եւ յայտ է, եԹէ երկուս պատճառս գտաք տարաժամ և 'ի ժամու մահուց՝ հակառակ միմեանց, զարդարուԹիւն և զմեղս։ Տեսցուք Թէ և այլ ևս ինչ պատճառս գտանիցեմք. այլ[2] և գտանեմք իսկ. այլ ոչ որպէս դուն կարծես, եԹէ բռնադատել ինչ կարիցէ զԱստուած՝ կամ ցաւ ինչ կամ մարդկան մեղանչականուԹիւն. մեռանին և 'ի ցաւոց և 'ի մարդկան զրպարտուԹենէ, այլ Աստուծոյ Թոյլ տալով. այնպիսի ինչ, յորոց վերայ աշտարակն կործանեցաւ. զորոց և ասէրն իսկ Յիսուս. ՄիԹէ նոքա ևեԹ մեղաւորք էին քան զամենայն մեղաւորս։ Եւ միւս ևս պատճառք հասուն մահու, որպէս 'ի Պաւղոսն կատարեցաւ. և ոչ վայրապար ինչ և ոչ 'ի զուր. զի արդար էր՝ յայն սակս եկաց շատ. Եւ այլ վասն ձերոյ օգտի կացից և մնացից. ապա Թէ ոչ և նա ևս ընԹացեալ

1 Յայժ ցանկալի էր արդարև գիւտ այսպիսւոյ պատուական մարգարէի 'ի գանձատան մատենագրուԹեանց Սրբոյ Հայրապետիս, որոյ նշխարք և նշմարք անգամ չերևին և չյիշատակին, Թող Թէ բովանդակն, ցայսօր ժամանակի, ոչ առ ազգայինս և ոչ առ օտարազգիս։

2 Յօր. Յօտար գրչէ. Այ՛, այլ և գտանեմք իսկ։

ճեպէր առ Քրիստոս. այլ վասն քարոզութեանն կամէր յամել ՚ի մարմնի անդ։ Սոյնպէս և մարգարէքն վասն այսպիսի ինչ իրաց կէին ամս բազումս, զի շահ օգտի լինիցի բազմաց։ Ահաւասիկ երեք պատճառս ցուցաք տարաժամ մահու և ժամու մահուց. կամիցիս և չորրորդ ևս պատճառս ուսանել. որպէս զԱբրահամ ՚ի ծերութենէ ՚ի մանկութիւն նորոգեալ, վասն սերելոյ զաւակացն ՚ի նմանէ։ Կամիս և այլ հինգերորդ պատճառս ուսանել, որ անճառ և կարի զարմանալի է. մահ տղայոցն՝ որ ՚ի դառնաշունչ հրամանէ Հերովդեսի անօրինի կոտորեցին. զի նոքա ոչ վասն արդարութեան և ոչ վասն մեղաց կոտորեցան, և ոչ յափշտակեցան յառաջ քան զժամն ինչ, այլ յայլոյ դառնութենէ մտաց կոտորեցան. քանզի Հերովդէս առ իւրում չարութեանն կոտորեաց։ Իսկ ՚ի Ջրհեղեղն, ասէ, ընդէ՞ր. յԱստուծոյ հրամանէ, ասեմք, ջնջեցան՝ վասն մեղաց իւրեանց։ Եւ յԵգիպտոս մանկտին Իսրայէլացւոց, և անդրանիկքն Եգիպտացւոց. սակայն և նոքա վասն պատճառանաց ինչ. որպէս որք Ջրհեղեղաւն ջնջեցան՝ վասն այլ ինչ պատճառանաց, և ՚ի Հերովդեսէ՝ վասն այլոց պատճառանաց, և յԵգիպտոս՝ վասն այլոց. և թէպէտ և իւրաքանչիւր պատճառք իցեն, սակայն և զպատճառսն խնդրել պարտ է։ Առ Նոյիւ՝ զի մի՛ ամենեւին չարիքն տարածանիցին. իսկ առ Քրիստոսիւ՝ ոչ այսպիսի ինչ. Եգիպտացւոց՝ վասն հարցն մեղաց, իսկ Իսրայէլացւոցն՝ վասն Եգիպտացւոցն չարութեան։ Եւ եթէ ասիցես, եթէ ընդէ՞ր ոչ զամենայն մեղաւորս նոյնպէս սատակէ. ասեմ, թէ վասն զի դատաստան լինելոց է։ Իսկ զմանկտոյն՝ որ ՚ի Հերովդեսէն կոտորեցան, եթէ ասիցէ ոք եթէ ոչ այնպիսի ինչ պատճառօք կոտորեցան, զի եթէ մեղաւորք լինելոց էին՝ օգտեցան, և արդարք՝ վնասեցան. ասեմք, եթէ ոչ այդպէս. քանզի գիտէ Աստուած և այն ինչ ծնելոցն հատուցանել զհատուցումն, և մինչև ծնեալ էին, և մինչև մի ինչ բարի և կամ չար գործեալ, Երեցն, ասէ, կրսերոյն ծառայեսցէ. և դարձեալ, եթէ Զյակոբ սիրեցի և զԵսաւ ատեցի։ Եւ այս՝ ըստ հանդերձելոց իրաց ինչ. քանզի գիտէ Աստուած եթէ յոր չափ գալոց հասանելոց են. և յայտ է, զի եթէ

բարիք լինելոց իցեն՝ սիրելիք Աստուծոյ լինին, և եթէ չարք լինելոց իցեն՝ լաւ էր նոցա մեռանելն, զի մի չարք լինիցին։ Իսկ զայն, ասեն, զիա՞րդ իմանայցեմք. զի թէ աւաղակ ոք կամ չարագործ սպանանիցի, ա՞յնպէս արդեւք հրամանք էին նմա, զի չար մահու մեռանիցի։ Ոչ եթէ յԱստուծոյ ինչ այնպէս հրամանք էին նմա, այլ յիւրոց չարեաց. եւ յիւրմէ անձնիշխանութենէ. ինքն իւր եղև արարիչ մահու. ինքն զանձն արկ ընդ բռնութեամբ մահուն. որպէս և Իմաստունն ասէ, թէ Իւրօք իսկ ձեռօք կոչեաց զնա։ Եւ թէ գլորիցէ ոք և մեռանիցի, Աստուա՞ծ առնիցէ զայնպիսի մահն։ Իցէ արդեւք զի ինքն յիւրմէ ծուլութենէ իցէ. զի յորժամ Աստուած թոյլ տացէ այնպէս մեռանել, վասն որոյ պատճառանաց՝ ինքն իսկ ճարտար գիտէ. և եթէ խեղդիցէ ոք և մեռանիցի, ոչ եթէ Աստուած ընդ այն կամիցի, այլ թոյլ տայ ըստ կամաց յանդգնելոցն։ Սոյնպէս և յորոց վերայ աւազակք անկանիցին, է ուրեք զի հանէ զայլ ընդառաջ և ապրեցուցանէ, և է ուրուք զի թոյլ տայ, զի մի զանձնիշխանութիւնն կարծիցէ [1]։ Եւ այսպէս իմանամք եթէ է մահ որ յԱստուծոյ հրամանաց և 'ի կամաց լինի, և է՝ զի թէպէտ և ինքն ոչ կամի, բայց թոյլ տայ, զի անձամբ զանձն դատապարտեսցէ սպանողն։ Ոչ ամենայն ուրեք օգնէ Աստուած, քանզի այնպէս կամի՝ զի մեք ապաստան լինիցիմք 'ի նա. և ոչ ամենայն ուրեք ընդ վայր հարկանէ, զի մի առանց առաջնորդութեան և դարմանոյ համարեալ լինիցին արարածք իւր։ Եւ յայտ է, եթէ ոչ օրհաս ինչ անվրիպական մահ սահմանեալ կայ 'ի վերայ մարդկան յԱստուծոյ, այլ մարթ է ապաշխարութեամբ և զելեալ վճիռ մահուն դարձուցանել, և փախստեայ ապաստան լինել արդարոյն և մեղաւորի առ Աստուած. որպէս և եղ իսկ վճիռ 'ի վերայ արդարոյն Եզեկիայ, և նա դարձոյց անդրէն զհրամանն՝ արտասուօք։ Այնպէս իսկ կամի Աստուած, զի ոչ միայն ըստ բնութեան, այլ ըստ արդարութեանն և ըստ մեղաց լինիցի մահ, զի կարիցեմք արդարութեամբն անցուցանել զտա-

1 Այսպէս յօրինակին. Թերևս կործիցէ։

րաժամ մահ։ Եւ արդ զինչ օգուտ է, ասէ, յորժամ լռիցեմ, թէ առաջին մարդն վասն մեղաց մեռաւ. և ես թէպէտ և արդարութիւնս ինչ գործիցեմ, ընդ նորին պատժօք այրեցեալ մեռանիմ։ Այլ թէ արդար իցես՝ անցուցանես զմահն տարաժամ. և եթէ մեղաւոր լինիցիս՝ չկարես անցուցանել, և այս յայնժամ իսկ պիտոյ էր, այլ այժմ և զմահն իսկ հրամայեաց առ ոչինչ համարել։

« Ահա աւասիկ յաւելուլ 'ի ժամանակս քո ամս հնգետասան »։ Եւ մի ևս ասիցեն թէ այսպիսի իսկ հրամանք էին. և զայս ոչ իմանան, եթէ եւ հրաման և տուաւ վճիռ, և նա դարձոյց անդրէն՝ արտասուօք։ Եւ այս Աստուծոյ մարդասիրութեանն նշանակ է. զի 'ի մարդկանէ՝ որ զվճիռ մահու առնուցու՝ չկարէ ապրել, բայց թէ իցէ ոք՝ որ համարձակութիւն ունիցի առ դատաւորն, և կարիցէ ապրեցուցանել 'ի մահուանէն զմահապարտն. իսկ առ Աստուած ոչ այնպէս, այլ ինքնին՝ որոյ զվճիռ առեալ էր, աղաչեաց միայն և արտասուեաց, և դարձոյց զպատիժս մահուն։

« Եւ 'ի ձեռաց արքային Ասորեստանեայց փրկեցից զքեզ »։ Տես, զիարդ զխնդութիւն զլիջուցանէ զհպարտութիւն նորա. ես, ասէ, փրկեցից զքեզ, և ոչ դու անձամբ։ «Եւ այս ինչ նշան լիցի քեզ 'ի Տեառնէ »։ Ի պատերազմին տայ նշան զյաղթութեանն պայման. « Այս, ասէ, նշան լիցի քեզ. կերիցես այս ամ զսերմանեալդ ». զայնպիսի ինչ նշան՝ որ յիշեցուցանէ զանցեալ ինչ իրս. զի ոչ միայն յորժամ զհանդերձեալսն ինչ իրս կամիցի հաւատալի առնել Աստուած՝ տայ նշան, այլ զի և զանցեալսն մոռանայցեն. որպէս և օձիւն պղնձեաւ, զի այն յիշեցուցիչ իմն էր ձեռանն տարածելոց[1]. Գրեա զայդ, ասէ, առ յիշատակ, զի յայտնի լինիցիք այլոց ազգացն և որ գալոցն է առ յապա։ Զի յորժամ մօտ ինչ իցեն իրքն, չեն ինչ պէտք նշանաց, այլ յորժամ հեռի իցեն՝ յայնժամ պիտոյ են։ Եւ արդ, տես զզարմանալիսն և զկանխասացութիւնն. զարմանալիք էին վճարել պատերազմին, զի յերևելոյ միոյ հրեշտակին սատակեցան զօրք Ասորեստանեայց. և ևս զարմանալի

1 Այսպէս յօրինակին։

կանխատեսութիւնն. և եթէ սերմանեսջիք և հնձեսջիք, որպէս և 'ի խաղաղ ժամանակս, և ոչ որպէս թշնամիսն տեղատարափ լինի սպառնալեօք: Յաւելոյր նշան 'ի նշանս. ոչ վասն արդարոյն, զի նա և առանց նշանաց իսկ հաւատայր, այլ վասն այլոցն ամենեցունց, զի յայտնի զիրսն առնիցէ. զի 'ի կոտորածոյ զօրացն բազմաց՝ ծանիցեն եթէ նա է տէր մահու. և յաւելլոյ կենաց 'ի ժամանակս Եզեկիայ՝ եթէ նա է իշխան և տուիչ կենաց:

« Ահա աւադիկ ես դարձուցանեմ զստուերդ՝ որ իջեալ է 'ի շողդ, 'ի տասն աստիճան[1] աքազեան ապարանից հօր քո: Եւ դարձաւ շողն անդրէն »: Սիմաքոս յայտնագոյնս ասէ. Ահա աւադիկ, ասէ, ես դարձեալ ընթացուցից զստուերդ զաստիճանացդ, ընդ որս իջեալ է 'ի ժամացուցիդ Աքազու, և զշողդ անդրէն յետս զտասն աստիճանօք: Եւ դարձաւ շողն զտասն ժամն մեղմով իջանելով զաստիճանօք: — Մեծ իմն զարմանալի են իրք. զի եթէ վաղվաղակի տուեալ էր նմա անդրէն յետս ընթանալ, ոչ այնպիսի զարմանալի էին իրքն, այլ թերևս 'ի նմին իսկ արեգական համարէին զընթացսն, և ոչ ինչ յայտնի լինէր. իսկ յորժամ անդրէն մեղմով դառնայր յետս, յայտ է՝ եթէ կառավարի ուրուք՝ որոյ բազում իշխանութիւնն իցէ՝ էր գործն: Եւ տես, զի ոչ 'ի հարթ ինչ վայրի իրքն գործէին, այլ յաստիճանս, ուր յայտնի երևէր զօրութիւն զարմանագործին. և այս ընդ ամենայն տիեզերս առհասարակ լինէր. ոչ ոք երբէք ետես և ոչ լուաւ այսպիսի նշանս արարեալ: Ասէ Յեսու՝ որդի Նաւեայ. Կացցէ արեգակնդ և լուսինն. և զտեղի առին. թէպէտ և մեծ նշան էր, այլ ոչ այնպէս յայտնի ցուցանէր, եթէ ոչ ինքնակացք ինչ իցեն, այլ է ոմն որ ունի և վարէ զամենայն: Զի մի 'ի յօրինեալ ընթացիցն ինքնակաց ինչ կարծիցեն զարարածս, և կամ թէ արեգական ինչ իմանայցես զիւր գնացսն, վասն այնորիկ մեղմով շարժէ, և յորժամ կամի՝ և այլակերպէ. ոչ զի վնաս ինչ կամիցի առնել տիեզերաց, այլ զի զարմացուսցէ և ածցէ 'ի հաւատս: Կացոյց զնա Յե-

1 Յոր. Օտար գրչաւ՝ աստիճանաց:

սու որդի Նաւեայ, դարձոյց անդրէն յետս Աստուած. արգել զճանապարհ նորա Քրիստոս, զի յորժամ տեսանիցես զնա նուաղեալ՝ ուսանիցիս եթէ ոչ նորա բնութեանն գործ ինչ է, այլ արարչին։

« Աղօթք Եզեկիայ արքայի Հրէաստանի, յորժամ հիւանդացաւն ». իսկ այլքն ասեն. Յորժամ խօթացաւն և յարեաւ յախտէն իւրմէ։ Տեսանես, որպէս բարերար և շնորհակալ եղև յախտին, և յիշէր զերախտիսն։ « Ես, ասէ, ասացի 'ի բարձրութեան աւուրց իմոց »։ Զբարձրութեան աւուրցն՝ զմանկութեան աւուրսն կոչէ. կամ որպէս այլքն ասեն, եթէ Ի հանդարտեալ աւուրց իմոց. այսինքն՝ 'ի դադարելն, 'ի հանգչելն։ « Գնացից[1] 'ի դրունս դժոխոց. թողից զայլ ևս ամսն ». այսինքն ընդ տարաժամ մահն, տրտմութեան չափ ամք են, և մեզ հասանէ կեալ։

« Ասացի թէ ոչ ևս տեսից զփրկութիւն Աստուծոյ 'ի վերայ երկրի. և ոչ ևս տեսից զմարդ բնակչօք իւրովք ». Եւ այս ևս տրտմագոյն է. զի և զմեռանելն ևս տրտմեցուցանէ։ « Պակասեցայ յազգատոհմէ իմմէ. թողի զմնացորդս կենաց իմոց, ել և գնաց յինէն իբրև զայն՝ որ քակէ զտաղաւար ինչ հարեալ. հոգի իմ եղև առ 'ի յինէն իբրև զոստայն սատարաց՝ մերձեալ 'ի հատանել »։ Յայնմանէ յայտ է՝ եթէ 'ի վախճան հասեալ էին կեանք նորա, և յոգնիս ապաստան մերձ էր 'ի մեռանել. և զի Աստուծոյ փրկութեանն է ամենայն ինչ։ Եւ արդ նոր իմն յարութեան գործ էր. զի թէպէտ և 'ի վախճան չեկն ինչ վճիռն, սակայն կեանքն իբրև վախճան իմն առին. զմեռանելն յարոյց՝ որ ապրեցուցանէ 'ի մահուանէ։

« Յաւուր յայնմիկ մատնեցայ ես մինչև յառաւօտ՝ իբրև առեւծու »։ Զսաստիկ ցաւն կոչէ առեւծ։ « Այնպէս մանրեաց զամենայն զոսկերս իմ. 'ի տուընջենէ մինչև 'ի գիշեր մատնեցայ »։ Այսու զվախճանն յայտ առնէ, որ եկն եհաս 'ի վերայ, և զԱստուծոյ յանկարծահաս փրկութիւնն. զի յոյս հատութիւնն[2] յոյս եղև նմա։

« Իբրև զծիծեռն՝ այնպէս ճչեցի[3], և իբրև զաղաւ֊

1 Յոր. Գնամ։ 2 Յոր. Հապաւեցեանն։ 3 Յոր. Ճուչէ։

նի՝ այնպէս մնչեցի»։ Այսինքն գոչէի, պաղատէի առ զայրուցս ցաւոցն սաստկութեան։ «Զի նուաղեցին աչք իմ ՚ի հայելոյ ՚ի բարձրութիւն երկնից առ Տէր, որ փրկեացն զիս, և փարատեցոյց զցաւս անձին իմոյ»։

«Տէր, վասն այսորիկ պատմեցաւ քեզ». այսինքն վասն անձինս իմոյ։ «Զարթուցեր զշունչ իմ, և մխիթարեալ կեցի։ Ահաւասիկ ՚ի խաղաղութիւն դարձաւ դառնութիւն իմ. զի փրկեցեր զանձն իմ՝ զի մի կորեայց, և ընկեցեր յետս զամենայն մեղս իմ»։ Տեսանե՞ս, զիարդ ցուցանէ եթէ մեղք՝ մահու պատճառք են. որպէս և սա ինքն իսկ խոստովան լինի. «Զի ոչ եթէ որ ՚ի դժոխս իցեն՝ փառաւոր առնիցեն զքեզ, և ոչ մեռեալք օրհնեսցեն զքեզ»։ Ապա ոչ ուրեմն ընդհատ ՚ի մեռելոց են, որք ոչ օրհնիցեն զԱստուած, այլ ևս վատթարագոյնք քան զմեռեալս. զի որ զԱստուածն ոչ փառաւորեն, այնպէս համարեն, եթէ մեռեալ և ՚ի գերեզմանի իսկ կայցեն։ Եւ յիրաւի ասէ, եթէ «Որ կենդանիքն իցեն օրհնեսցեն զքեզ, զոր օրինակ և ես»։ Եւ կենդանիս աստ՝ զայնոսիկ կոչէ, որ յաստուածպաշտութեանն կենդանի իցեն. և յայտ այնու է որ ասէն, եթէ «Զոր օրինակ և ես»։ Զի ոչ եթէ նա միայն կենդանի էր ՚ի ժամանակին, այլ աշխարհք ամենայն, և աստուածպաշտութեամբն՝ նա միայն կենդանի էր. զի ոչ եթէ թերահաւատութիւն ինչ ՚ի յարութեանն ասէր արդարն, եթէ «Ոչ որ ՚ի դժոխս իցեն՝ փառաւոր առնիցեն զքեզ, և ոչ մեռեալք օրհնեսցեն զքեզ». այլ թէ որ ՚ի մեղսն մեռեալ իցեն՝ իբրև զայնոսիկ՝ որ ՚ի հողն կայցեն փրտեալ՝ անպտուղ են յօրհնութենէ։

«Ոչ դադարեցից օրհնել զքեզ սաղմոսարանաւ զամենայն աւուրս կենաց իմոց՝ յանդիման տաճարին Աստուծոյ»։ Տեսանե՞ս, որչափ խոստանայ ամբաստան լինել զմեղաց. զի որչափ յամենայն ժամ ոչ դադարեսցէ յանդիման տանն Տեառն օրհնել զԱստուած, ոչ ինչ այնուհետև կարեն ունկնդիր լինել ՚ի նմա մեղք։

«Եւ ասէ Եսայի ցԵզեկիա. Ա՛ռ դու պաղատիտս ՚ի թզոյ, և դի՛ր ՚ի վերայ վիրիդ և ողջասցիս։ Եւ ասէ Եզեկիա. Այս ինչ նշան լիցի՝ զի ելից ՚ի տունն Աստուծոյ»։ Եւ ընդ է՞ր պաղատիտս ՚ի թզոյ հրամայէր դնել

'ի վերայ վիրին. այլ ըստ այնմ օրինակի, որպէս և Նեեմանն կամեցաւ, երևելի ինչ և մարմնաւոր նշանակ իւրոյ բժշկութեան առնուլ զհողն, նոյնպէս և սա։

Եւ զիմ՛րդ ասիցէ, եթէ Այս են աղօթք Եզեկիայ՝ յորժամ յարեաւ 'ի հիւանդութենէ, և այժմ ասէ, եթէ «Դիր սպեղանիս 'ի վերայ վիրիդ, և ողջասջիր»։ Սովորութիւն իսկ է մարգարէիցն՝ յետ ճառելոյ զի-րաց ինչ՝ վերստին կրկնակի պատմել. զի ոչ եթէ բժշկաց ինչ ճարտարութեամբ ցաւք փարատէին, այլ յԱստուծոյ օգնականութենէն. զի ոչ հնարիւք ինչ դեղոց, այլ և առանց դեղոյն կարող է բժշկել. և ոչ պատարագս խնդրելով. և եթէ խնդրիցէ ես պատա-րագս՝ զհաւատոյն միայն բժշկելոցն։ Վասն այնորիկ իսկ 'ի հարիւրապետին տունն ոչ չոգաւ Քրիստոս, քան-զի մեծ էին հաւատք նորա. իսկ 'ի ժողովրդապետին տունն չոգաւ՝ վասն չափոյն նուազ հաւատոյն։ Դար-ձեալ 'ի միւսումն ասէ. Կամիմ, բժշկեաց. և առ միւսն ձեռն ձգեաց, և զմիւսոյն ևս զաչսն զննէր. ընդէ՞ր ար-դեւք. այլ զի ըստ ամենեցունց զիջանիցէ։ Զնեեմա-նայ բորոտէ ասէ. Երթայցէ լուայցէ. և զկուրին՝ ինքնին ծեփեաց զաչս կաւով. և կաւ բժշկութիւն ինչ ոչ գործէ, այլ և զաչս իսկ կուրացուցանէ։ Եւ վասն Ղազարու ասէ. Առէք զվէմդ 'ի բաց. և Արի՛, եկ ար-տաքս։ Միթէ մինչ կափարիչն 'ի վերայ կայր՝ չկարէ՞ր զմեռեալն յարուցանել. այլ զի և որ զվէմն վերացու-ցանիցեն՝ լինիցին վկայք յարութեանն. զի եթէ ըզ-դրունս մահու եբաց, և զարգելականսն՝ որ ընդ նորա աղխիւք պաշարեալ կային՝ եհան, ո՞րչափ ևս առաւել կարող էր զվէմն կափարիչ՝ բանիւ 'ի բաց տապալել. այլ զի մի՛ 'ի թերահաւատութիւն դառնայցեն մարդիկ, որոց առաջի յարուցանէր զմեռեալսն։ Սոյնպէս և աստ, հրամայեաց առնել սպեղանի 'ի թզոյ. այլ զի հասեալ կայր 'ի վերայ օրհաս, ինքնին իսկ վկայ եղև. ասէ. Ոգի իմ առ յինէն իբրև ոստայն սատարաց՝ մերձ 'ի հատանել։ Եւ յայտ է, եթէ ոչ 'ի սպեղանւոյ թզոյն, այլ 'ի հրամանէն Աստուծոյ եղև բժշկութիւն. զի 'ի բժշկացն օգնութիւնք՝ 'ի դեղոյն բնութենէ են, և ոչ եթէ 'ի նոցա ինչ զօրութենէ. իսկ Քրիստոսին ոչ այս-պիսի ինչ է. քանզի ոչ եթէ 'ի դեղս ինչ մատուցա-

նէր սպեղանին, այլ 'ի նշանակ իմն. զի դեղ՝ բան նորա է, յորժամ հրամայէ՝ և ամենայն ինչ դիւրաւ լինի։

« Այս ինչ իցէ, ասէ, նշանակ, զի ելից 'ի տաճարն Աստուծոյ »։ Իսկ այլքն ասեն, եթէ Զի՞նչ նշանակ իցէ, զի ելանիցեմ 'ի տաճարն Աստուծոյ։ Մի՛, ասէ, զաղօթից ինչ կամ զառողջութեան կամ զայլ իրիք տացես նշան, այլ յորժամ ցուցանիցես՝ եթէ 'ի տաճարն Աստուծոյ իցես, այն լիցի նշան։

## ԳԼՈՒԽ ԼԹ

« Ի ժամանակին յայնմիկ առաքեաց Մարոդաք Բաղդան, որդի Բաղադայ »։ Եւ զի՞նչ առաքեաց արդեւք. « Թուղթս ողջունականս և հրեշտակս պատարագօք »։ Տեսանե՞ս, որպիսի՛ ինչ ուղղութիւնք գործեցան 'ի հիւանդութենէ Եզեկիայ. տեսանե՞ս զպտուղ յաղթութեանն։ Որք միշտ ընդ կրուկն հարկանէին զօրօք զՀրեայս, և բնաւ առ մարդս իսկ ոչ ունէին զնոսա, և անօրէն իմն համարէին զազգ նոցա, նոքա հրեշտակս արձակէին, 'ի խաղաղութիւն խօսէին և զկրօնիցն իմն փոյթ առնէին, և յանձին ունել ախորժէին զՀրէական օրէնսն. զի յետ առողջութեանն առաքել՝ այն իսկ էր միաբանութեան նշանակ. ոչ միայն պատարագօք 'ի հաշտութիւն խօսել, այլ և բարեկամութիւն ևս կամօք յանձին ունել։ Իսկ Եզեկիա զբարեկամացն իմն հանդոյն և հաստատուն սէր ցուցանէր առ նոսա։

Իսկ մարգարէն ցԵզեկիա. « Զի՞նչ, ասէ, ասեն արքդ այդոքիկ, և կամ ուստի՞ եկին առ քեզ »։ Եթէ զի՞նչ ասիցեն՝ զայն ինչ չյայտնեաց [1] Եզեկիա, բայց եթէ ուստի՛ իցեն եկեալ՝ ասաց։ Միթէ առ չգիտե՞լ ինչ հարցանիցէ մարգարէն. և զի ոչ առ չգիտել հարցանէ, յետոյ յայտ առնէ. այնու՝ զգերութեանն գալ գուշակեաց նմա։ Եւ պարտ էր խնդրել՝ թէ զի՞նչ

1 Օր. Յայտնեաց։

պատճառք իցեն ցասմանն գերութեանն. թէպէտ և չէ յայտնի, այլ զ...աւլ առաւտ [1] զուարթութիւնն Եզեկիայ պարտ էր կարծել. զի որպէս հիւանդութեանն պատճառք յայտնի չէ [2] և զհպարտութիւնն իմանամք, նոյնպէս և աստ, թէպէտ և չէ ինչ յայտ, սակայն զի 'ի մարդիկ յոյս արար և ոչ զԱստուած՝ իմանամք. զի չէր պարտ նմա 'ի նոսա յուսալ, և ոչ բարեկամութիւնս ինչ առնել ընդ նոսա [3]. այլ իբրև պարտեալ 'ի պատարագացն՝ ոչ եցոյց նոցա զինչ պարտ էր ցուցանել, այլ փոխանակ այնր՝ եցոյց նոցա զտունն Նեքովթայ։. Ակիղաս փոխանակ Նեքովթային՝ զխնկոց տունն, ասէ. Սիմաքոս, զզինուցն պատերազմողաց, և զոսկոյ և զարծաթոյ և զստատկէից՝ որ է ստաշխն, և զիւղոց և զխնկոց, և զամենայն ինչ՝ որ էր 'ի գանձս իւր։ Ընդէ՞ր առնէիր զնոսա բարեկամս և ոչ զԱստուած, որով ամենայն ինչ քեզ զգուշալի է։ Իսկ ոմանք ասեն, երկեցուցանել կամեցաւ զնոսա գանձուցն ցուցանելով, որում պարտ էր այլով իւիք երկեցուցանել։ Իսկ այլք ասեն, եթէ զնշանին՝ որ եղև, զպատճառս եկին ուսանել. զի օրն այն մեծ և երկայնաձիգ եղև քան զամենայն աւուրս. զի տասն ժամ էր, և դարձաւ անդրէն այլ ևս տասն ժամս արեգակնն, զի ընդ գալն և ընդ անդրէն դառնալն՝ լինիցին այսքան ժամ. և դարձեալ ըստ իւրոց գնացից, այլ ևս երկոտասան ժամ գնաց արեգակն։ Իսկ Բաբելացիքն դժնդակք առ այսպիսի իրս, եկին հարցանել վասն նշանին՝ որ եղև. քանզի չէր ըստ սովորութեանն ընթացից արեգական երեսուն և երկու ժամք լինել 'ի միում աւուր։ Վասն որոյ և մարգարէն ասէ, եթէ « Զինչ ասեն արքդ այդոքիկ »։ Եւ նորա թողեալ 'ի զարմանալեացն ցուցանել մեծ զԱստուած, 'ի մարդկականացն առնէր զանձն ահագին. և զայն ոչ ածէր

1 Յօր. Տառ մի եղծեալ. Թերևս պարտ իցէ ընթեռնուլ զխօստոփ, իբր ըստ չափ, չափաւորէն, որպէս գտանի և յայլ թարգմանութիւնս Ոսկեբերանի 'ի նախնեաց խօլ ստոպութիւն՝ չափաւորութեան իմաստիւք։

2 Յօր. Յայտ ինչ է. այլ օտար գրչաւ՝ յայտ չէ։

3 Յօր. Առ նոսա. յօտար գրչէ՝ առնել ընդ նոսա։

զմտաւ, եթէ գրեալ է, թէ Անիծեալ լիցի մարդն՝ որ առնիցէ զյոյս իւր 'ի մարդ մահկանացու։

« Եւ ասէր Եսայի. Ահա աւասիկ աւուրք եկեսցեն, և առնուցուն զամենայն՝ որ ինչ 'ի տան քում է. և յորդւոց քոց՝ զոր ծնանիցիս՝ առնուցուն և առնիցեն կուրտս ». իսկ այլքն՝ ներքինիք, ասեն։ Բարիոք ասեն ոմանք վասն Դանիելի, եթէ 'ի զաւակէ թագաւորութեանն էր, և արարին զնա ներքինի, և զերից մանկանցն։

« Եւ ասէ Եզեկիա. Բարի է բանդ. յաւուրս իմ խաղաղութիւն եղիցի »։ Այլ ոչ այսպիսի ինչ սքանչելի և մեծամեծ օրեարն. զիմ՞րդ արդեւք. Ինձ քաւ լիցի, ասէ, դադարելն յաղօթս առնլոյ վասն ձեր. և միւսն, թէ Ես հովիւս մեղայ և ես չարչարեցի, դոքա խաշնդ զի՞ արարին. և միւսն. Թէ Թողուս զդոցա զմեղս՝ թող, ապա թէ ոչ՝ և զիս ջնջեա 'ի դպրութենէդ՝ յորմէ գրեցեր։ Նոքա ոչ ինչ զգային իւրեանց անձանց բարկութեանց, յորժամ զայնասիկ՝ ընդ որս էին՝ 'ի վիշտս տեսանէին. և սա ոչ ինչ իմանայր զայլոցն վիշտս՝ մինչև ինքն 'ի բարիսն էր. սորայս մարդկեղէն իմն էր, և նոցայն հրեշտակական. սա առ իւր որդիս և թոռունս անգութ և անագորոյն, և նոքա առ օտարս գթածք և խնամակալք։ Զայս ասեմք՝ զի մի զսոյն առնիցեմք. զի եթէ մեծատունն՝ որ անագորոյնն գտաւ առ Ղազար, այնպէս գթածագոյն էր 'ի տանջանսն, ո՞րչափ ևս առաւել մեզ պարտ իցէ լինել գթածագոյն։ Տե՛ս, ո՞րչափ ինչ օրինակ առաքինութեան առ յանձն 'ի տանջանացն. զի արդարն Եզեկիա և ոչ վասն որդւոց իւրոց ինչ հոգացաւ, իսկ անգութն և անագորոյն՝ և ոչ զազգականաց ինչ անփոյթ արար. զի թէպէտ և այնչափ տանջանք զանձամբ պատեալ էին [1], սակայն յաղերսոյն և յողորմանացն չդադարէր. թէպէտ և ոչ ինչ կարէր նոցա մխիթարութիւն գտանել, այլ յաղաչելոյ և 'ի մաղթելոյ ոչ դադարէր։ Եւ արդ ո՞ւր իցեն՝ որ ասիցեն, եթէ տանջանաւորացն այն իմն մխիթարութիւն է, եթէ ամենեքեան 'ի տանջանսն գտանիցին. զի ահա աւանիկ նա ոչ այնպէս աղաչէր, զի

1 Յօր. Էին՝ յօտար գրչէ։

տանջանք 'ի տանջանս տանջանաւորացն յաւելուցուն, այլ այնպէս պաղատէր՝ զի մի՛ յանցանիցեն, և 'ի նոյն տանջանսն՝ որ չէինն ենկեալ՝ գայցեն։ Եւ մանաւանդ յիրաւի իսկ. քանզի զի՞նչ օգուտ իցէ քեզ, ո՛վ մարդ, զայլս 'ի տանջանս ըղձանալ. միթէ քեզ այն դիւրութի՞ւն 'ի ցաւոց անտի լինիցի. միթէ քան զչափն թեթևագոյն ինչ լինիցին տանջանքն. այո, ասէ, յաստի իրաց [1]. աստի գործես, քանզի չես ինչ տեղեակ այնպիսի մեծամեծ պատժոց։ Եւ զմեծատունն արդեւք միայն ինչ իմանայցես 'ի տանջանս, և ո՞չ ընդ բիւրուց բիւրս պատժաւորս. և զի ոչ միայն էր, այլ ընդ բազումս, լո՛ւր Աբրահամու՝ որ ասէն, եթէ Վիհ մեծ է ընդ մեզ և ընդ ձեզ։ Միթէ բազմութիւնն զտուսպ բոցոյն համդարտագոյն ինչ արար. և ոչ ուրեք։ Կամ Հրեայքն յորժամ գերի վարեցան, միթէ զի ընդ բազումսն էին՝ մխիթարութի՞ւն ինչ էր այն նոցա։ Զի թէ միտս ունիցիս, ո՛վ մարդ, զի յորժամ դու միայն իցես 'ի պատիժս, մարթ է այլոց աղաչանօք փրկութեան հասանել. իսկ եթէ ամենեքեան յանցաւորք գտանիցիմք առ Տէրն, ո՛վ իցէ՝ որ զցասումն նորա ցածուցանիցէ։ Եւ քանզի Եզեկիա այնպէս անազորոյն գտաւ առ իւր ծննունդսն, տես զմարդասէրն, զիա՛րդ տայր խրախոյս։

## ԳԼՈՒԽ Ժ

« Մխիթարեցէք, մխիթարեցէք զժողովուրդս իմ, ասէ Աստուած. քահանայքդ, խօսեցարուք 'ի սիրտն Երուսաղեմի »։ Եւ ոչ վայրապար ինչ կրկնէ. այլ քանզի առ այնպիսիսն է պատգամն՝ որք 'ի յուսահատութիւնն կործանեալ էին. որպէս և ցԱբրահամն ասէր, թէ Աբրահամ, Աբրահամ, նոյնպէս և աստ, թէ « Մխիթարեցէք, մխիթարեցէք »։ Քանզի բազում և երկայնամիտ բանս ամբաստանութեան յաճախեաց

1 Այսպէս յօրինակին։

առ Հրեայսն, և բիւրապատիկ չարիս՝ որ լինելոց էին նոցա՝ յառաջագոյն գուշակեաց, և կսկծեցոյց ահագին բանիւք զմիտս նոցա, յանկարծակի իմն դարձեալ անկեալ յաղերս, ասէ. « Ժողովուրդ իմ ». զոր այլուր այլազգ իմն ասէր, թէ Ե՛րթ, էջ աստի վաղվաղակի, զի անիրաւեցաւ ժողովուրդն քո. զի Մովսէսի արժան էին կոչել ժողովուրդ, և ոչ Աստուծոյ։ Իսկ արդարն և տիրասէր ծառայն յանձին կալաւ արդեւք ունել զնոսա առ ժողովուրդս. և ոչ ուրեք։ Եւ ընդէ՞ր արդեւք ասաց, եթէ Ժողովուրդ քո. այլ զի զնա 'ի խնդրուածս գրգռեսցէ. քանզի ասելովն՝ եթէ Թող տուր ինձ, նշանակէր եթէ զնա յորդորէր 'ի պաղատանս։

« Յահանայք, խօսեցարուք 'ի սիրտ Երուսաղեմի »։ Քանզի քահանայից գո . . . ձինն [1] են այնպիսի իրք, միջնորդ լինել, յուղղութիւնս ածել. զի նաւահանգիստ են ժողովրդոցն և բարեխօսք առ Աստուած 'ի հաշտեցուցանել, միջնորդք Աստուծոյ և մարդկան։ « Մխիթարեցէք զդա, զի լցան տառապանք դորա. Թողեալ լիցին դմա մեղք իւր, զի ընկալաւ 'ի ձեռանէ Տեառն կրկին ըստ մեղաց իւրոց »։ Այլ մեք ասեմք եթէ ոչ ըստ պարտեացն հատուցանէ Աստուած, ըստ այնմ. Զի եթէ զանօրէնութիւնս պահեսցես, ով կարիցէ կալ առաջի քո ամենայն կենդանի. իսկ դու ահաւադիկ ասես, թէ « Ընկալաւ 'ի ձեռանէ Տեառն կրկին ըստ մեղաց իւրոց »։ Եւ այս խնամածի և յաճախագութ հօր է, սակաւ ինչ տանջել, և մեծ համարել զգանն. քանզի ոչ իսկ ժուժայ սէր զբազում տանջանս պատժաւորացն տեսանել։ Եւ այլազգ ևս. զի և առ 'ի հաւատալ կամի ածել զնոսա՝ բարութեանցն միւսանգամ նորոգութեանց։ « Թողեալ լիցին դմա մեղք իւր »։ Փայփայանք են առ այնոսիկ՝ որ 'ի պատիժսն էին. զի այսպէս իմն պատիժք սովոր են լինել լուծիչք մեղաց [2]։

«Ձայն բարբառոյ յանապատի. Թողեալ լիցին նմա մեղք իւր »։ Ասաց նախ զգերութիւնն, գուշակեաց

1 Յօր. Բառ մի եղծեալ. Թուի լինել գործ առաջինն։
2 Յօր. Քաղաքաց. օտար գրչաւ՝ Մեղաց։

ապա և զմխիթարութիւնն [1] և զազատութիւն 'ի գերութենէն. միթէ միշտ որչափ մեղանչիցեմք՝ տանջելո՞ց իցեմք, և ոչ անձնիցէ լուծումն մեղացն. այժմ, ասէ, լինի լուծումն մեղաց [2]։

« Զայն բարբառոյ յանապատի »։ Այսինքն աւետիք՝ յաւերակ երկիր Հրէաստանի, յետ դարձին։ Այլ է և այլազգ ևս իմանալ. « Զայն բարբառոյ յանապատի ». ոչ միայն յաւերակ տեղիսն, այլ յոգիս աւերակս և յանապատացեալ։ Եւ վասն է՞ր աղաղակիցէ առ անզգայսն. այլ զհամարձակութիւն քարոզին ցուցանէ մեզ. եկեալ բերէր ամբաստանութիւնս Հրէիցն, և ոչ ինչ զանգիտէր. արդ և լսէր [3] 'ի նախնեացն իւրոց, թէ արեամբ մարգարէիցն լի են ձեռք նոցա, նոքին ոչ ինչ խորշէր. այլ համարձակեալ ևս ասէր, եթէ Ծնունդք իժից, ո ցոյց ձեզ փախչել 'ի բարկութենէն՝ որ գալոցն է։ Եւ արդ զոր օրինակ սա՝ որ կոչեցաւ բարբառ, է ոչ միայն բարբառ [4], այլ և մարդ և մարգարէ, սոյնպէս և Բանն Աստուած՝ ոչ միայն բան ինչ անանձն, այլ և բան անձնական և մարդ կատարեալ։ Եւ բարւոք ասաց, եթէ յանապատի. քանզի քաղաքք լի էին չարեօք. ուր չարիքն չէին և սուրբ 'ի մեղաց էին տեղիքն՝ անդր խոյս ետ գնաց. անապատ էր երկիրն [5] 'ի ստորոց պատշաճի։

Լուր զգաստութեան և հեզութեան. զի ոչ էին անդ պատերազմունք և ոչ սպանութիւնք, և ոչ յափշտակութիւնք և ոչ ագահութիւնք, և ոչ այլ ինչ չարիք. վասն որոյ ասէ մարգարէն, եթէ Տեսի զանօրէնութիւն 'ի քաղաքի. և Անօրէնութիւն և վաստակք են 'ի մէջ նոցա. և այլուր, եթէ Ընդէ՞ր ցուցեր ինձ զվաստակս և զցաւս միանգամայն։ Եւ վարդապետութիւն իմն վաղվաղակի 'ի սկզբանցն ընծայեցուցանէ, արհամարհել զամենայն ինչ զաստի կենացս. զի զանապատ իւր բնակութիւն առնիցէ, զքաղաքս և որ

1 Յօր. Գուղաջէտոյ ապա և զմխիթարութիւնն, օտար գրչի է։
2 Յօր. Այժ, ասէ, լինի լուծումն մեղաց, յօտար գրչէ։
3 Յօր. Օտար գրչաւ՝ լուեալ էր։
4 Յօր. Ոչ միայն բարբառ՝ օտար գրչի է։
5 Յօր. Երկիրն։

ինչ 'ի քաղաքս իցէ, անդ նկարէ զամենայն։ Այսպիսի իմն էր և Ադամ զառաջինն. ոչ տան ինչ կարօտանայր և ոչ հանդերձից և ագանելեաց, և ոչ իմիք այսպիսեաց՝ առ 'ի նշանակ հանդերձեալ զգաստութեանն։ Ոչ այնչափ քաղաք ամբոխեալ պատշաճէ 'ի բնակութիւն, որպէս զանապատ ինչ խաղաղացեալ յամբոխից։

Եւ արդ տեսցուք զինչ ասիցէ. «Պատրաստ արարէք զճանապարհս Տեառն, և ուղիղ արարէք զշաւիղս նորա». քանզի անկոխ և անարահետ էին շաւիղքն։ Զոր օրինակ այր մի թագաւոր 'ի քաղաք ուրեք դիմիցէ, զճանապարհն՝ որ զբազում ժամանակս կուրացեալ իցէ, և անհետ և աներևոյթ լեալ, փշալից, տատասկաբեր, պարտուպատշաճ է մաքրել և յատակել և պատրաստագոյն յօրինել, նոյնպէս և յայնմ ժամանակի ելանէին իրքն 'ի դէպ. եկն յառաջագոյն հորդել ճանապարհ Քրիստոսի։

«Ուղիղ արարէք զշաւիղս նորա»։ Այսինքն ընդ անկոխն ընդ անգնաց՝ հորդեցէք նմա ճանապարհ։ Եւ այն իսկ են զարմանալիք, զի ընդ անապատն կամի գնալ, ուր ոչ և արահետ ինչ երբէք առաքինութեանց երևեցաւ, և ոչ մի ինչ զգաստութեան. զի մոգուք և պոռնիկօք և մաքսաւորօք և աւազակօք նախ քարոզեցաւ. քանզի նոցա ոգիք անկոխ, անհետ [1] էին յառաքինութեանց. ոչ երբէք յօժարեալք 'ի զգաստութիւնս, և ոչ ցանկացեալք քաջութեանց, այլ միշտ ներկեալք 'ի չարութիւնս։ Մեծ է թագաւորին զօրութիւն, որ ղանանց և զանկոխ անապատ՝ հորդեաց արար արքունի պողոտայ։

«Ամենայն ձորք լցցին, և ամենայն լերինք և բլուրք խոնարհեսցին»։ Եւ տեսանեմք ըստ նկարագրին և ըստ նորոց կտակարանացս կատարեցաւ այս. նախ 'ի դարձին, զի առանց դժուարութեան և առանց խափանելոյ եկն [2] ժողովուրդն 'ի Բաբելոնէ. ապա և այլազգ ևս. զի ձորոցն լնուլ, և լերանցն և բլրոց խոնարհել, և դժուարաց 'ի դիւրինս դառնալ,

1 Յօր. Անհե՛տ՝ յօտար գրչէ։
2 Յօր. Եւ։

ոչ այլ ինչ նշանակ է, այլ թէ դիւրին իմն և հեշտական իցէ ճանապարհն՝ որ տանիցի յառաքինութիւնս. զի ոչ խորաձորք ինչ պատահիցեն, և ոչ լերինք դժուարինք 'ի դիմի հարկանիցեն, և ոչ այլ ինչ արգել լինիցի այնոցիկ՝ որք կամիցին։ Եւ լուր, զիարդ զդիւրութիւն ինքնին Տէրն ընծայեցուցանէ[1]. Լուծ իմ քաղցր է և բեռն իմ փոքրոգի։ Եւ Պաւղոս. Զի որ առժամայն, ասէ, թեթևութիւնս է նեղութեանց, ըստ առաւելութեան՝ զյաւիտենից փառացն ծանրութիւն գործէ մեզ. և Մերկացեալք, ասէ, զհին մարդն. զի որպէս մերկանալն դիւրաւ է, նոյնպէս և զչարիսն 'ի բաց ընկենուլ դիւրագոյն է։ Եւ յայտ է, եթէ ոչ բնութեամբ ինչ էր այնպէս դիւրին առաքինութիւնն, այլ Քրիստոս յիւրում գալստեանն արար զնա դիւրագոյն. որպէս և Պաւղոս իսկ ասէ, եթէ Այր մի տառապեալ եմ ես, ո՞ ապրեցուսցէ զիս 'ի մարմնոյ աստի մահու. և դարձեալ, եթէ Ոչ դատապարտութիւն ինչ է այժմ այնոցիկ՝ որ 'ի Քրիստոս ըստ մարմնոյ ոչ շրջիցին. յառաջ քան զՔրիստոսի գալուստն՝ իբրև մայրիք իմն թանձրախիտք, և ափափայք անանցք և անհնարինք և անհետք. իբրև ողջօք և արտասուօք իմն աշխարհէին մարգարէքն և արդարքն զայնոսիկ՝ որ յայնպիսի առապարս բնակեալ էին. և յետ այնորիկ ոչ ևս այնպիսի ինչ։

Եւ վասն է՞ր ասէ, « Ամենայն ձորք լցցին, և ամենայն լերինք և բլուրք խոնարհեսցին »։ Հարցցուք ցՀրեայսն՝ թէ ո՞ւր եղև այս, ո՞ր լեառն խոնարհեցաւ, կամ ո՞ր ձոր լցաւ. զի ոչ ինչ այսպիսի նշանակէ Եզրա, որ վասն դարձին գրեաց։ Այլ ես ցուցանեմ, եթէ վասն առաքինութեանց ասացեալ է. որպիսի ինչ, զի երբեմն և ոչ անուն կուսութեան էր ուրեք, զի այնպէս դժուարինք և քարուտ և խորաձոր իմն է ճանապարհն կուսութեան և առաքինութեանց. և այնպէս դիւրեցաւ և հարթեցաւ, զի և կանանց ևս անգամ դիւրին է գնալ ընդ այնպիսի արքունական և անկասկած ճանապարհ. զի բազումք անխէթ և աներկիւղ գնան ընդ այնպիսի ճանապարհ. քանզի զոր ինքն

1 Յոր. Մատայեցուցանէ. օտար գրչաւ՝ ընծայեցուցանէ։

արար՝ 'ի նոյն և զմեզ յորդորէ. « Պատրաստ արարէք զճանապարհս Տեառն ». ընդ որս նախ ինքն գնաց, և զմեզ 'ի նոյն առաջնորդէ, զի և մեք կամիցիմք, ըղձանայցեմք և ցանկանայցեմք: « Ամենայն ձորք լցցին »: Զի չէ ինչ յառաքինութեանց՝ որ դժուարին իցէ, և ոչ այն՝ որ դիւրին քան զմիւսն. այլ զամենայն ամենեւին, ասէ, դիւրաւ առնիցէք և կատարիցէք՝ եթէ կամիցիք:

« Եւ եղիցին ամենայն դժուարինք 'ի դիւրինս, և առապարք 'ի դաշտս »: Եւ զինչ իցէ՝ դժուարինք 'ի դիւրինս. զի ոչ միայն 'ի բռնաւոր ձեռաց զերծանիցիմք, այլ զի 'ի մոլորութենէ, և յայնցանէ՝ որք զուղղութիւնն մեր 'ի կամակորութիւն[1] դարձուցանիցեն. զոր և Ակիղաս յայտնագոյն իսկ ասէ, եթէ Զկամակորն յուղղութիւն. զոր և Եբրայեցին՝ Ակովքաւ[2] կոչէ, այսինքն՝ կամակոր. ըստ այնմ՝ եթէ Եղիցին ամենեքեան ուսեալք յԱստուծոյ: Եւ ոչ ասաց, եթէ բարձցին դժուարինք, այլ եթէ ինքեանք 'ի դիւրինս դարձցին. և այս իսկ է մեծի զօրութեանն նշանակ, զի ոչ զբնութիւնն փոխէ, այլ զբարսն և զկամս դարձուցանէ. զի թէպէտ և յաղքատութեան ոք իցէ, զաղքատութիւն ոչ դժուարին ինչ, այլ ցանկալի թուեցուցանէ՝ վասն աստուածպաշտութեանն:

« Եւ եղիցին ամենայն[3] դժուարինք 'ի դիւրինս, և առապարք 'ի դաշտս »: Զինչ դժուարագոյն իցէ քան զընչից չքաւորութիւն. սակայն և զայն ուրախութեամբ տանէին և բազում ախորժական դիւրութեամբ. և էր ուրախութիւն ամենեցուն նոցա, զի Մի անձն և մի սիրտ էր ամենեցուն, և ոչ ոք ասէր զընչից՝ եթէ իւր առանձինն ինչ իցէ, այլ էր նոցա ամենայն ինչ հասարակաց: Նա և Առաքեալ ասէ, թէ Յիշեցէք զաւուրսն զառաջինս՝ յորս լուսաւորեցայք և բազում ճգնութեան համբերեցիք. մերթ նախատանաց և նեղութեան, և զյափշտակութիւն ընչից ձերոց խնդութեամբ ընկալարուք: Զինչ խօսիդ, ով Պաւղոս.

1 Յօր. Մեր 'ի խոնարհութիւն, յօտար գրչէ:
2 Եբրայեցի բառն է העקב, որ է Եկովքաւ: .
3 Յօր. Ամենայն՝ յօտար գրչէ:

զյափշտակութիւն ընչից իւրոց խնդութեամբ ընդունիցի. այս, ասէ. քանզի գրեալ է, եթէ « Եղիցին դըժուարինք 'ի դիւրինս »: Եւ Ղուկաս 'ի Գործս առաքելոց, եթէ Եղին ուրախութեամբ յերեսաց ատենին, զի արժանի եղեն վասն անուանն կրել թշնամանս:

« Եւ եղիցին դժուարինք 'ի դիւրինս »: Զի՞նչ դըժուարագոյն իցէ քան զսպառնալիս, և զի՞նչ վշտագոյն քան զպատիժսն սպառնալեաց. սակայն և այն դիւրին եղև. ոչ վասն զի բնութիւն ինչ փոխեցաւ, այլ զի իրք իրաց եղև պատճառք: Քանզի այսպիսի է զօրութիւնն Աստուծոյ. զի ոչ եթէ զայլ ինչ իրս հանիցէ և զայլս 'ի ներքս արկանիցէ, այլ զնոյնս՝ որ կան յանուղղայս՝ յուղղութիւնս դարձուցանէ. զի ուսանիցիս եթէ ոչ միայն առ 'ի բնութենէն, այլ և յանձնիշխանութենէն՝ որ ոչ յուղղութիւնս մտաբերիցէ, ծնանին չարիք: Սոյնպէս և զմարմինս՝ ոչ թէ այլս ընդ այլոց յարուցանիցէ, այլ զնոյն զմեռեալսն և զեղծեալս և զհողացեալս նորոգէ:

« Եւ երևեցին փառքն Տեառն. և տեսցէ ամենայն մարմին զփրկութիւն Աստուծոյ. զի Տէր խօսեցաւ »: Փառքն Տեառն միշտ հանապազ երևին. բայց առաւել յայնժամ երևեցան մեծ փառքն Աստուծոյ, յորժամ Աստուած ընդ մարդիկ խառնեցաւ, և զհրեշտակաց վարս յերկրի հաստատեաց. յորժամ այնչափ չարչարանս Աստուած իւրով մարմնով կրեաց: « Եւ տեսցէ ամենայն մարմին զփրկութիւն Աստուծոյ »: Զփրկութիւն Աստուծոյ, և ոչ զմարդոյ ուրուք. զի ամենեքին որ ընդ նա հայեցան [1], տեսին զփրկութիւն նորա. զի թէպէտ և ոչ ամենեքին հաւատացին, սակայն ամենեքին տեսին, ոմանք հաւատովք, ոմանք 'ի լսելոյ. բայց տեսցեն ամենեքեան և առ յապա ժամանակս:

Եւ քանզի մեծամեծս ճառեաց, յարէ 'ի նոյն զարժանաւորն առ 'ի հաւատացուցանել զճառեալսն, ասէ. « Զի Տէր խօսեցաւ »: Յորժամ ինքն Տէրն տայցէ վճիռ, մի՛ ոք թերահաւատ լինիցի. զի բան նորա՝ արարիչ է բնութեանց և ճարտարապետ իրաց նորա-

1 Յոր. Հայեցին:

կերտաց. և արդ մի պատահանջէր իբաւունս առ 'ի նմանէ: Ասացի իսկ եթէ ոմանց յարտաքին փիլիսոփայից ասացեալ է այսպիսի ինչ. առ այն և ես այժմ ասացից. զի յորժամ Աստուած խօսի, դու աւելի ինչ քան զայն մի խնդրիցես. ծառայք յորժամ 'ի տերանց լուիցեն ինչ, ոչ ինչ աւելի քան զոր ինչ լուանն՝ խնդրեն, և ոչ 'ի հարց և 'ի փորձ իշխեն հարկանել, այլ փութան արդեամբք կատարել զհրամանն. նոյնպէս և դու յորժամ լսես, եթէ Տէր խօսեցաւ, մի ինչ աւելի քան զայն քննիցես:

« Բարբառ ասողին, թէ գոչեա: Եւ ասեմ. Զի՞նչ գոչեցից. և ասէ. Ամենայն մարմին խոտ է, և ամենայն փառք մարդոյ՝ իբրև զծաղիկ խոտոյ»: Իսկ այլքն ասեն, թէ Ամենայն ողորմութիւն նորա. և Եբրայեցին՝ Ուքուղիգդով [1] ասէ, որ թարգմանի ողորմութիւն: Եւ արդ տես, զիա՞րդ յորդորէ զմեզ ցանկանալ յարութեան. զի զմնտաւորսն խոտէ և յայլ ինն ցանկութիւն մեծամեծ իրաց յօժարեցուցանէ: Եւ բարւոք ասաց, թէ Գոչեա. քանզի մնիւ իրս հակառակ ըստ իւրաքանչիւր կարծեաց 'ի մէջ բերելոց էր, և բանս իմաստունս խօսէր, զոր ոչ դիւրաւ վաղվաղակի ընդունէին բազումք. զի ըստ իւրեանց նուաղութեան քնութեան կարծէին զիրսն. վասն այնորիկ ասէ. Գոչեա. մի ինչ զանգիտիցես բարբառել զհրամանդ. քանզի և զծովականս Ջրոցն Ճանապարհորդս՝ խիզախեցուցանեն

1 Այսպէս ունի եբրայական բնագիրն.

קול אמר קרא ואמר מה אקרא כל־הבשר חציר
וכל־חסדו כציץ השדה׃

որ է. Քօլ օմէր քրա վէամար մա էքրա քօլ ապասար հացիր վէքօլ հասդօ քեցից ասադէ: Այսինքն է. Լսեմ զձայն ուրուք՝ որ ասէ. Գոչեա: Եւ նա ասէ. Զի՞նչ գոչեցից. — Ամենայն մահկանացու խոտ է, և ամենայն հովանաւորութիւն նորա՝ իբրև զծաղիկ դաշտի: — Բառդ ուգուղիգդով կամ ուքասիգդով թերևս ծեքեալ հնչումն իցէ կրկին բառիցն վէքօլ հասդօ, որ է ամենայն հովանաւորութիւն նորա: Արդարև եբրայեցի բառն חסדו հասդօ, յորժամ զԱստուծոյ ասի՝ յանձնէ ողորմութիւն կամ գթութիւն թարգմանի, այլ աստանօր խօսելով զմարդոյ մահկանացուէ՝ առաւել 'ի դէպ գայ հովանաւորութիւն կամ պաշտպանութիւն, իբրև նոյնանիշ ընդ Patrocinium հռովմէական բառի, որ լաւ ևս յայտ առնէ զիմաստ հասդօ եբրայական բառին:

համարձակ տալ զանձինս 'ի միջոց ծովուն։ Մի՛ ինչ երկնչիցիս, ասէ, զի թէպէտ և ընդդէմ բանիցն՝ զոր լսիցեն՝ հակառակ կայցեն, սակայն դու մի՛ ինչ կասիցիս 'ի համարձակութենէդ. գոչեա, գուժեա, քանզի գոյ զօրութիւն 'ի բանսդ՝ զոր խօսիս։ Զի եթէ [1] ոչ ոք կամիցի ընդունել, սակայն դու վստահ լինիջիր 'ի զօրութիւն հրամանիդ. զի չիք ինչ որ կարիցէ եղծանել զվճիռդ. քանզի այսպէս են Աստուծոյ հրամանքն։ Եւ զայդ մի՛ ինչ ասիցես, եթէ ամենեքին ընդդէմ դառնան, ամենեքին հակառակ կան. հաստատեալ կան 'ի ճշմարտութեան բանքդ, վասն այնորիկ իսկ համարձակ գոչեա, եթէ «Ամենայն մարմին խոտ է»։

Իսկ արդ զիա՞րդ. միթէ Արարչին վնաս իցէ. քաւ լիցի. ոչ եթէ նա յայնպիսի ինչ արար զնա. այլ կամեցաւ վաղվաղակի անմահ կազմել զնա. իսկ դու՝ որ զմեղդ մուծեր՝ յանարգութիւն կազմեցեր զնա [2]։ Զի մի՛ կարծիցես եթէ նորա ձեռինն է գործ՝ լինել խոտեղէն մարմնոյդ, վասն այնորիկ յառաջագոյն ասէ, եթէ Յորում աւուր ուտիցես՝ մահու մեռանիցիս։ Եւ արդ զի՞ ճառիցես զխոտոյ. միթէ և թագաւորաց մարմինք խոտ իցեն, կամ կանանց գեղեցկաց, կամ սկայիցն անուանեաց։ Այո՛, ասէ. իսկ եթէ չհաւատայցես, հայեաց 'ի վախճանն հասարակաց ամենեցուն։ Տեսանե՞ս զգերեզմանս. միթէ ռամիկն նուազագո՞յն ինչ իցէ, և մեծամեծացն առաւե՞լ լաւագոյն. այլ ամենայն առհասարակ մոխիր է, ամենայն առհասարակ հող. զի յերր և 'ի փոշի դարձեալ են ամենեքին։ Եւ աստ ոչ վայրապար ասէ թէ Մարմին, այլ եթէ Ամենայն մարմին։ Զնոյն և միւս մարգարէն ասէ, եթէ Ամենայն մարդ սնոտի է։ Այլ տե՛ս, զիա՛րդ ոչ ասաց եթէ Ամենայն մարդ, այլ եթէ Ամենայն մարմին, այսինքն՝ մարմնեղէնք, որ ըստ մարմնոյ գնայցեն։ Վասն այնորիկ 'ի վատթարէն անուանեաց, քանզի վատթարութեան գործս գործեցին. զոր օրինակ և Աստուած

1 Յօր. Յօտար գրչէ Բեղեփ Ն։

2 Յօր. Իսկ դու՝ որ զմեղդ մուծեր՝ յանարգութիւն կազմեցեր զնա, օտար գրչի է։

իսկ ասէ, եթէ Մի՛ մնասցէ ոգի 'ի մարդկանդ յայդմիկ, վասն լինելոյ դոցա մարմին: Այլ մեք չեմք խոտ. Դուք, ասէ, չէք 'ի մարմնի: Եւ արդ տես, ասէ, զԱստուծոյ մարդասիրութիւնն. զի յորժամ դատապարտեացն ըզքեզ և 'ի վատթարութիւն իջոյց, յայնժամ ետ քեզ միասնգամ իշխանութիւն՝ ազատանալ 'ի դատապարտութենէն: Եղեր խոտ. այլ թէ կամիս՝ ոչ ես խոտ: Եթէ ոք, ասէ, շինէ 'ի վերայ հիմանս այսորիկ ոսկի, արծաթ, ականս պատուականս, փայտ, խոտ, եղէգն. տեսանես, զի շինուածն առնէ զամենայն ինչ: Զի եթէ զբնութիւն [1] մարմնոյ քննեսցես, չէ ինչ լաւագոյն քան զբանջար, զի այնպէս թառամի և թօթափի, և 'ի ժամանակս ծերութեան՝ ոչ ինչ գտանի 'ի նմա 'ի տիոց երիտասարդութենէն. իսկ եթէ յաղնուականութիւն ոգւոյն հայեսցիս, ոչ ինչ ընդհատ 'ի հրեշտակաց գտանես զմարդ. Խոնարհ արարեր զնա, ասէ, փոքր մի քան զհրեշտակս. փառօք և պատուով պսակեցեր զնա:

« Եւ ամենայն փառք մարդոյ՝ իբրև զծաղիկ խոտոյ »: Զի մարմին քան զմարմին ոչ ինչ առաւել ունի, բայց զառաւելութիւն փառացն առնու, և այնու առաւելագոյն քան զընկերն գտանի. վասն այսորիկ որ զառաւելութիւն գործէ, և զայն պայծառագոյն երևեցուցանէ, և զմիւսն ևս նուաղագոյն: Զայն իմն խօսէ, եթէ ոչ միայն խոտն անկանի, այլ և ծաղիկն թառշամի, այսինքն փառք փառաւորացն: Ո՞չ տեսանես զայնոսիկ որ 'ի թագաւորութեանն իցեն, յորպիսի՛ տապաս են. միթէ այլ ինչ կարիցես ասել. այլ թէ համակ յոսկի և 'ի մարգարիտ են, և 'ի կառս սպիտակս երիվարաց լծեալ, յերիվարս գեղեցիկս, յանդրուվարս ազնիւս, շուրջ սպասաւորք, զօրք առաջի, զօրավարք վերջապահք. անդ երկիւղք, անդ ահ միայն եթէ երևեսցի, ահ և դողումն ունի զբազումս. և բազում անգամ չև յերեկն հասեալ իցէ՝ և վախճան 'ի վերայ գայցէ, և ոչ ինչ պատուականագոյն քան զաղքատն և զմերկն գտանի: Վասն այնորիկ ասէ, եթէ « Ամենայն փառք մարդոյ՝ իբրև զծաղիկ

1 Յոբ. Բնութիւն:

խոտոյ »: Թէպէտ և զընչից ասիցեն, կամ զպատուոյ, կամ զգեղոյ, 'ի նոյն 'ի մի թշուառութիւն հասանելոց են ամենեքեան. և եթէ մարմին այսպէս լինելոց է, որչափ ես առաւել՝ որ ինչ առ յապայն նմա պատահելոց իցէ՝ ես վատթարագոյն: Զի՞նչ խօսիդ. ահա ցամաքեցաւ արդեւք խոտն, և թօթափեցաւ ծաղիկն: Նա աւանիկ և Դաւիթ ասէ, եթէ Մի երկընչիր՝ յորժամ մեծանայ մարդ, և յորժամ բազմանայցեն փառք նորա. քանզի ոչ եթէ 'ի մեռանելն իւրում առնուցու ընդ իւր զամենայն, և ոչ իջցեն փառք նորա ընդ նմա: Եւ ընդէ՞ր ոչ ասացեր, եթէ կենդանւոյն իսկ եթող. այլ զայս՝ որ մեծ իմն թուի անհաւատից, երկրանախանձ ոգւոց՝ եթող 'ի բաց. քանզի անհաւատ իմն թուի նոցա, եթէ աստ թողուցուն և անդ բազմապատիկ առնուցուն. այլ յանշուշտն ընթացեալ հասանէ, եթէ յորժամ վախճանեսցին՝ ոչ երթայ ընդ նոսա մեծութիւն իւրեանց:

Եւ վասն է՞ր արդեւք այնչափ յաճախագոյն կամեցար զայնոցիկ՝ որ զաշխարհական ինչ իրս յարգեն՝ կարկել[1] զբերանս. զի մի՛ ոք ասասցէ եթէ բազմաց մինչև ցմահ կացին մնացին փառք, և յանդիմանեալ վարժիցէ այսու զբանս մարգարէիս. առ այն դնէ զայս, եթէ 'ի վախճանին կորնչելոց են փառք. « Ցամաքեցաւ, ասէ, խոտն ». այսինքն մեռաւ: Այսպիսի ինչ լինի և մեր մահ, իբրև զբանջարոյն թառամել, և զծաղկացն թօթափել: Զի՞նչ պիտոյ, ասէ, կրկին մահ. մեռաւ մարդն, և մեռաւ ընդ նմա ծաղիկն նորա[2], այսինքն՝ մեծութիւնք, փառք, խորհուրդք. Ցայնմ աւուր, ասէ, կորիցեն ամենայն խորհուրդք նոցա: Դու այսօր ջանաս այլոց մնաս առնել, և վաղիւ դու իսկ ինքնին չես գտանելոց: Որ ինչ իրք ընդ բնաւ տիեզերս աղաղակեն, ոչ կամին զայն ուսանել բնաւ ծոյլք. վասն այնորիկ ասէ, եթէ Գոչեա: Ակիղաս ասէ. Գոչեա. Եբրայեցին՝ Կրիայ[3] ասէ, այսինքն կարդա: Իբրև առ անզգայս իմն տայ աղաղակել. զի և դու

1 Յոր. Կարկեն:
2 Յոր. Նորա՝ յօտար գրչէ:
3 Եբրայեցի բառն է קרא, որ է Քրա:

յորժամ տեսանիցես զոք հարստահարեալ 'ի բռնաւորաց, զգոյն բարբառ աղաղակիցես առ նա, եթէ «Ամենայն մարմին խոտ է»: Մի ընդ մարմնաւոր փառս ինչ զարմանայցես, այլ զառ յապա թշուառութիւն նոցա 'ի միտ առնուցուս. զի որչափ պայծառագոյն երևեսցի, աւելի քան զնոյն ողորմելի լինելոց է, յորժամ մեծութիւնն 'ի միում վայրկենի թօթափեսցի 'ի նմանէ: Եւ ահա, ասեն, խոտեցեր զամենայն ինչս աշխարհիս: Ոչ այնպէս ինչ խոտեցի՝ եթէ չար իցեն բնութեամբ, այլ թէպէտ և բարի իցեն այնոցիկ՝ որ 'ի բարի պէտս ինչ վարիցեն, սակայն անցանելոց են, և ոչ կալոց մնալոց:

Եւ զի՞նչ իցէ որ կայցէ մնայցէ. «Բանն Տեառն», որ կայ մնայ յաւիտեան հաստատուն, անշարժ. այսինքն օրէնքն նորա և պատուիրանք, զոր ոչ ժամանակք և ոչ մահ և ոչ հիւանդութիւն և ոչ ծերութիւն և ոչ նախանձ և հեռ և այլ ինչ այսպիսի՝ կարէ եղծանել: Ապա թէ ոք բիծ ինչ գնիցէ ասացելոցս, 'ի մէջ մատիցէ, յանդիման արասցէ, եթէ չիցեն 'ի դէպ բանքս՝ զոր ասացաքս. եթէ է ինչ՝ որ հաստատուն է և կայ մնայ յաւիտեան, և է ինչ՝ որ յողդողդ և անցանելոց է վաղվաղակի: Եւ ոչ ասաց եթէ գործք Տեառն կան մնան, այլ եթէ բանն Տեառն կայ մնայ. զի եթէ բանն կայցէ մնայցէ, որչափ ևս առաւել գործքն. զի եթէ բանն յաւիտենից մնայցէ, ապա վասն յարութեան չէ պարտ թերահաւատ լինել:

Իսկ յայլոց յօրինակս և այսպէս գտաք գրեալ 'ի պատուի[1]. յետ ասելոյ՝ թէ «Ցամաքեցաւ խոտն և թօ-

1 Տե՛ս, զի զոր ասէ Սուրբն Յոհան, թէ «Ոգի Տեառն շնչեացն» ոչ կայ 'ի կէս օրինակս՝ արդարացուցանէ Պետրոս 'ի Կաթողիկէն. զի և անդ ոչ կայ «Ոգի Տեառն շնչեացն», թէպէտ և յԵսայի 'ի մեր օրինակս կայ Ոգի Տեառնն: Այլ զի ասէ, թէ գտաք 'ի պատուի գրեալ, ինձ թուի, զՀոգին, ասէ, պատուով գրեալ. որպէս զԱստուածն և զՏէրն և զՏեառնն պատուով գրեմք. զի պատիւն, որ է քաշն՝ որ 'ի վերայ երկու գրոյն դնեմք, որոշէ զանունն Աստուածոյ 'ի պիտակ անուանց աստուածոցն: Սովոր են Յոյնք և զՀոգին Սուրբ պատուով գրել, զի պատիւն զատուցէ զանուն Սուրբ Հոգւոյն՝ 'ի համանուն հոգւոց. ասէ՝ ոչ միայն զՏեառնն, այլ և ըզՀոգին պատուով գրեալ: — Գէորգ Վարդապետ (Սկեւռացի?) — Մեկնութիւն Եսայեայ:

թափեցաւ ծաղիկն », ասէ. « Ոգի Տեառն շնչեաց 'ի նա. արդարև խոտ է աշխարհս ». որպէս Դաւիթ ասէ, եթէ Հանես զոգիս 'ի նոցանէ, պակասեսցեն և 'ի հող իւրեանց դարձցին։

« Ի վերայ լերինն բարձու ել, աւետարանիչդ Սիոնի. բարձրացո զբարբառ քո զօրութեամբ, աւետարանիչդ Երուսաղեմի. բարձրացուցէք, մի երկնչիք »։ Եւ ընդէ՞ր ասիցէ, եթէ մի երկնչիք. և իցէ՞ ոք՝ որ աւետիս տայցէ և կասկածիցէ. և մանաւանդ յորժամ աւետարանիչքն 'ի բարիոք վարս և 'ի կարգն իցեն. և արդ զի՞նչ իցէ. զի մի անհաւատ ինչ ամենեցուն կարծիցեն ճառեալքն. մի երկնչիցիք՝ եթէ ոչ իցեն 'ի գլուխ ելանելոց. զի զոր ինչ ասեմն՝ ածից և կատարեցից։ Թէպէտ և մեծութիւն ասացելոցն զբազումս թերահաւատս առնէր, թէ ոչ իցեն վճարելոց, որպիսի անցք ընդ Յովնանն իսկ անցին, մի երկնչիր, ասէ. զի թէպէտ և մեծ իցեն բանքդ, այլ 'ի միտ առ զասացողն՝ որ բաւական է առնել զվճիռ ամենայնի. վասն այնորիկ ասէ. « Ե՛լ 'ի վերայ լերինն բարձու, և բարձրացո յուժոյ զբարբառ քո, աւետարանիչդ Երուսաղեմի ». զի և զբազումս ես վկայս առնիցէ կանխասացիկ բանիցն՝ որ 'ի վաղուց հետէ յառաջ քան զբազում ժամանակ ճառեցան։

« Ասա ցքաղաքսդ Հրէաստանի. Ահա աւասիկ Աստուած մեր, ահա աւասիկ Տէր գայ զօրութեամբ, և բազուկն տէրութեամբ հանդերձ »։ Եւ զի՞նչ իցէ զօրութեամբն և տէրութեամբն հանդերձ. զի զառաջինն ոչ զօրութեամբ ինչ և փառօք երևեցաւ, այլ հեզութեամբ և խոնարհութեամբ. և խաչեցաւ ևս ըստ մարմնաւորութեանն, և մեռաւ՝ կենդանին և կենդանարար ըստ աստուածութեանն. իսկ յերկրորդ գալստեանն՝ ոչ այսպիսի.... ցանիցէ [1]. ըստ այնմ, Զի թէպէտ և գիտէաք զՔրիստոս մարմնով, այլ այսուհետև ոչ ևս նոյնպէս գիտեմք. զի ուսանիցիս թէ և առաջին անարգանքն՝ վասն զիջանելոյ ըստ մերում տկարութեանս եղեն նմա՝ առ մեր փրկութիւն։

« Ահա աւասիկ վարձ նորա ընդ նմա »։ Բարիոք

1 Յոր. Նշծեալ. Թուի լինել. Ու այսպիսի ինչ ցուցանիցէ։

ասաց եթէ բանիւք լինելոց են վարձք. քանզի բանիւ միայն հրամանն տայ և կարգէ զամենայն: «Իւ գործք իւրաքանչիւր առաջի նորա». և այն իսկ է Աստուծոյ, զի ոչ է կարօտ եթէ ոք ամբաստան լինիցի, և սոսա հաստատեսցէ յորդորմանցն մերոյ: «Իբրև հովիւ՝ որ հովուեսցէ զխաշինս իւր, և 'ի բազուկս իւր ժողովեսցէ զգառինսն»: Զդիւրութիւն իրացն, որ յայնմ ժամանակի գործելոց իցեն՝ յայտ առնէ. քանզի և ինքն իսկ յԱւետարանի այսպիսի իմն առակս առնէ. Իբրև զհովիւ մի որոշեսցէ զոգիս յայծեաց: Քանզի ես զչար 'ի բարւոյ չկարեմ մեկնել դիւրաւ, նա և ոչ դժուարաւ իսկ. բայց այնմ, եթէ Ոչ ոք գիտէ զմարդոյն, եթէ ոչ հոգին՝ որ 'ի նմա է. մանաւանդ քան և զհոգին իսկ զմարդոյն՝ Ճարտարապետն եւս գիտիցէ որոշադէտն՝ զինչ 'ի մարդն կրիցէ. Նոյնպէս և ոչ զԱստուծոյ ոք գիտէ, եթէ ոչ Հոգին Աստուծոյ՝ որ ընդ նմա է. քանզի և Պաւղոս ոչ ինչ գիտէր զանձնէ, այլ ոչ եթէ այնու ինչ արդարացաւ. իսկ Քրիստոս յընթերցման ասէր, եթէ Մի ոմն 'ի ձէնջ մատնելոց է զիս. որ յառաջ քան զլինել Ճարտար գիտէ զամենայն ինչ, այնպէս՝ որպէս յետ կատարելոցն ամենայնի: Իւ արդ զինչ իցէ, զի և յառաջ քան զգործել զչարի ինչ և կամ զչար, զմինն սիրեաց և զմիւսն ատեաց. և զայս ոչ վայրապար ինչ ասացի, այլ այնմ յանկ անկանէ, եթէ «Բազկաւ իւրով ժողովեսցէ զգառինս իւր». զի ոչ ինչ կարօտանայցէ [1], ոչ ցպոյ և ոչ այլ իմիք գործոյ:

«Իւ 'ի ծոց իւր կրեսցէ, և զյղիսն մխիթարեսցէ»: Տեսանես, զի յայտնապէս ցուցանէ զխնամ դարմանոյն. և թէպէտ և 'ի դատաստանին և 'ի պարգևան կատարի ճշմարտութեանն՝ ընթերցուածս, այլ թուի ինձ թէ և 'ի դարձին Բաբելոնի կատարեցաւ օրինակաւ. զի քան ամենայն մարդկան՝ յղեաց պիտոյ է դարման, և կամ ծնելոց՝ որ զմատաղ մանկունս 'ի գիրկս ունիցին. Նոցա, ասէ, աւելադոյն խնամ առնիցէք ճանապարհացն:

Իւ զի մեծամեծ իրս ճառեաց, որ դժուարին թը-

1 Յօր. Զի ոչ ինչ կարօտանայցէ, օտար գրչի է:

ւէր բազմաց, այլովք ևս մեծամեծօք կամի հաստատել զայն, քանզի և յայտ է իսկ 'ի նոյն, եթէ «Ո՞ չափեաց ձեռամբ իւրով զջուրս». զոր այլ թարգմանիչքն որոթով ասեն. «Եւ զերկինս թզաւ, և զերկիր քլաւ. ո՞ կշռեաց զլերինս 'ի կշիռս, և զբարձունս կշռորդօք»: Ընդէ՞ր ոչ զհրեշտակաց ինչ ճառեաց, եթէ ո՞ զհրեշտակս արար, կամ ո՞ զհրեշտակապետս հաստատեաց, այլ զյայտնեաց և զերևելեացս ճառէ. զի նոքա թէ մեծամեծք են պատուով, ոչ յայն ինչ ձգտեցուցանէ ըզմիտս ունկնդրաց՝ որ ինչ աներևոյթն 'ի նոցանէն իցէ, այլ յայտնեաքն կամի հաւանեցուցանել: Եւ ոչ ասէ եթէ ո՞ արար կամ ո՞ հաստատեա...է[1], ո՞ գիտաց. զի թէ գիտելն գործ է, և այն գործ Աստուծոյ, որչափ ևս առաւել 'ի չգոյէ 'ի գոյ ածել: Քանզի և այլուր ասէ, թէ Ո՞ր թուէ զբազմութիւն աստեղաց, և ամենեցուն անուանս կոչէ: Զի իւրաքանչիւր ոք 'ի նոցանէն բաւական են ցուցանել զգործ Աստուծոյ. 'ի չգոյէն 'ի գոյ ածել, զածեալն հաստատուն ունել, և զանուանսն գիտել. զայն իսկ և Յոբ ասէր: Իսկ ճարտարապետաց ոչ այսպիսի ինչ արուեստ. առնեն և նոքա անօթս ինչ, այլ ոչ եթէ յոչընչէ. և զոր առնենն՝ ոչ եթէ զնոյն ցբուն պարհել կարիցեն, և ոչ սակաւ ինչ. իսկ Աստուծոյ այն զարմանալի է, զի զոր ինչ արարն՝ մինչև յաւիտեան հաստատուն պահել կարէ. և որք պահէինն, ոչ եթէ անձամբ ինչ զօրութեամբ, այլ ըստ այնմ՝ եթէ ի ձեռին նորա են ամենայն ծագք երկրի:

Եւ արդ, մի կարծիցես եթէ նախ չափեաց և ապա եղև տեղեակ առնելոյ, զի ոչ երկինք թզաւ չափեցան և ոչ երկիր քլաւ. զի չիք չափ ինչ հանգոյն անբովանդակական ձեռին: Այլ զոր օրինակ յորժամ ասիցէ, թէ Ո՞ր քննէ զմիրտս, ոչ այլ ինչ ասէ եթէ ոչ՝ զի գիտէ իսկ. քանզի գիտելն 'ի քննելոյն լինի. և Ո՞ր թուէ զբազմութիւն աստեղաց, ոչ այլ ինչ յայտ առնէ, եթէ ոչ՝ զի գիտէ իսկ. քանզի գիտելն 'ի թուելոյ անտի լինի. սոյնպէս և յորժամ ասէ, թէ «Ո չափեաց զջուրս». ոչ այլ ինչ կամի ասել, թէ ոչ՝ զի գիտէ իսկ որչափ ինչ ջուրն իցէ: Եւ տես, զիարդ ոչ կարօտեցաւ

1 Յոր. Եզծեալ. Թուղ., Ո՞ հաստատեաց, այլ Բէ ո՞ գիտաց:

այլոց անօթոց ինչ որդւոց[1]. այլ 'ի զօրութիւն ձեռինն
ընթացաւ, թէ որ աբարն՝ նոյն գիտէ զչափն։ « Զա-
փեաց, ասէ, զերկինս թզաւ ». զի ցուցցէ եթէ կա-
տարեալ զօրութեանն է գործ։ « Եւ զերկիր քլաւ »։
Եւ արդ, մեծ իցեն երկինք քան զերկիր՝ ամենայն ու-
րեք յայտնի է. քանզի իբրև վերարկու են երկինք՝
երկրիս։ Տեսանես, զի չեն արժանի այսպիսի բանք
Աստուծոյ, որ զամենայն յոչընչէ արար։

« Ո՞ կշռեաց զլերինս 'ի կշիռս, և զբարձունս կըշ-
ռորդօք »։ Իսկ այլքն փոխանակ բարձանց՝ բլուրս ա-
սեն։ Եւ որպիսի՞ կշիռք կարասցեն կշռել զլերինս՝ զան-
չափ թանձրութիւն մարմնոյն. զի թէպէտ և լուար
կշիռս, մի կշեռս կարծիցես, այլ թէ այնպէս ճարտար
գիտէ, որպէս թէ կշռով կշռեալ իցէ։ Նա և յարտա-
քնոցն ոմն 'ի դիւաց ասէր, եթէ գիտեմ զթիւ աւազոյ
և զչափ ծովու. այլ նա առ 'ի վրիպեցուցանել ստաբա-
նութեամբ պարծէր, իսկ աստ ճշմարտութեամբ ըզ-
մասն ինչ Աստուծոյ զօրութեան պատմէ մեզ մարգա-
րէս. զի աստ ոչ պարծանք ինչ ստաբանութեան են,
այլ հաստատութիւն ճշմարտութեան։

Նա և այլուստ ևս ցուցանէ զԱստուծոյ զմեծու-
թիւնն, եթէ յանձնէ ունի զգիտութիւն, և անհա-
սական՝ իմաստութիւն նորա։ Մի ինչ զարմանայցես,
ասէ, եթէ գիտէ զամենայն, քանզի իմաստուն է. և
այնպիսի իմաստուն, որում չէ ոք հասու իմաստու-
թեանն. վասն որոյ յարէ իսկ 'ի նոյն, թէ « Ո՞վ գիտաց
զմիտս Տեառն »։ Եւ ոչն ասելով զամենայն ոք ընդ-
անգիտութեամբ փակէ։ Ոչ որպէս հերձուածողքն՝ և
զՈրդին և Սուրբ Հոգին. զի վասն Որդւոյն 'ի Տեառնէն
իսկ ուսանիմք, եթէ Ոչ ոք գիտէ զՀայր՝ եթէ ոչ Որ-
դի, և ոչ զՈրդի՝ եթէ ոչ Հայր։ Եւ վասն Հոգւոյն՝ Առա-
քեալ ասէ, եթէ ԶԱստուծոյ ոչ ոք գիտէ, եթէ ոչ Հո-
գին Աստուծոյ. և դարձեալ, թէ Հոգին զամենայն ինչ
քննէ և զխորս Աստուծոյ։ Այսինքն՝ գիտէ զխորս Աս-
տուծոյ և ոչ եթէ անգիտութեամբ քննէ. զոր օրինակ
և ոչ Հայր անգիտութեամբ քննէ զսիրտս մարդկան.
ուր և ցուցաք իսկ վերագոյն, եթէ գիտելն 'ի քննելոյ

1 Այսինքն՝ որոթաց։

է, և ոչ եթէ քննելն 'ի գիտելոյն: «Ո՞վ գիտաց, ասէ, զմիտս Տեառն»: Եւ Առաքեալ ասէ, եթէ Մեք զմիտս Քրիստոսի ունիմք: Եւ եթէ ոչ ոք գիտիցէ զմիտս Տեառն, զիա՞րդ ասիցես, Առաքեալդ, եթէ Մեք զմիտս Քրիստոսի ունիմք: Այլ մեզ, ասէ, յայտնեաց Աստուած Հոգւովն. այնչափ ինչ՝ որով մեք կարիցեմք բաւական լինել, և ոչ այնչափ ինչ՝ որչափ ինչ միտքն Տեառն:

Եւ զի [1] զատցէ յամենայն արարածոց, եթէ ոչ ումեք կարօտացաւ, և ոչ յումեքէ ուսաւ, և ոչ ինչ յումեքէ առ՝ յարէ 'ի նոյն, եթէ «Ո՞վ եղև նմա խորհրդակից, եթէ խելամուտ արարեալ զնա. կամ ընդ ո՞ւմ խորհեցաւ խորհուրդ, և արար զնա տեղեակ. ո՞վ ուսոյց նմա դատաստան, կամ ո՞վ ցոյց նմա զճանապարհս իմաստութեան, կամ ո՞վ ետ նմա փոխ, և առնուցու 'ի նմանէ զփոխարէնն»: Չհնարս իսկ իրացն լինելոց՝ նա եգիտ յառաջագոյն. իսկ արդ մեք և զփոքրն ինչ զգիտելն չհամարիցիմք նմա [2]. զի և գիտել զարժանն՝ մեք 'ի նմանէ ուսաք. և սակայն և այնու վատթարագոյն եմք, և հակառակ իմն քննել զնա, որ և զգիտութիւնն իսկ ամէն իրաց ինքնէ գիտէ:

«Թէ ամենայն հեթանոսք իբրև զկաթիլ մի 'ի դուլէ իցեն, իբրև զմէտ մի 'ի կշռոց համարեցան»: Եւ արդ մի ինչ 'ի բազմութենէն նայիցիս, այլ 'ի միտ առնուցուս զԱստուծոյ մեծութիւնն, եթէ զիա՞րդ դիւրին է 'ի նմա կորուստ նոցա: «Եւ իբրև զկաթ մի 'ի դուլէ՝ որ 'ի ներքոյ կաթիցէ, և իբրև զմէտ մի 'ի կշռոց համարեցան, և իբրև շիթք մի 'ի բերանոյ համարեսցին»: Ակիղաս ասէ. Ահաւասիկ կղզիք իբրև զմանր ցող [3] իջեալ. և Սիմաքոս և Թէոդիտոն նոյնպիսի իմն. Եբրայեցին. Էն իմ քաղակի յետող [4]:

1 Յոր. Զիք ղէ:
2 Յոր. Զհամարի սնա. այլ յօտար գրչէ, չհամարեցին նմա:
3 Յոր. Յօտար գրչէ՝ ծանրացող:
4 Այսպէս ունի եբրայական բնագիրն.

חן איים כרדק יטול :

որ է. Ես չեմ փողով ելող. այսինքն. Ամբարձցէ նա զկղզիս իբրև զփոշի մանր:

« Եւ Լիբանան չէ բաւական յայրումն »։ Դարձեալ նուաղականօքն արար նուաղագոյն զնուաղականացն խնամոտ. զի եթէ ողջակիզօք ինչ կարօտէր, ասէ, եթէ զամենայն զանտառս Լիբանանու կատարէիր, չէր ինչ բաւական յայրումն ողջակիզաց. եթէ զամենայն չորքոտանիս մատուցանէիր, սակայն և այնպէս ոչ լինէր ինչ բաւական։ Քանզի ամենայն բնութիւնք չեն ինչ բաւական ըստ արժանի պատուել զԱստուած։ Այլ տես զԱստուծոյ մարդասիրութիւն. զի թէպէտ և չիցէ ինչ բաւական ըստ նորա պատուոյն, սակայն յարգէ զանարգն և պիտանացու առնէ։

« Ամենայն հեթանոսք ոչինչ են, և յոչինչ համարեցան նմա »։ Զի եթէ պատուելոյ ինչ արժանի նմա ոչ գտանի, նոյնպէս և ոչ իմաստութեան նորա հասու, ոչ խորհրդակից և ոչ խրատտու։ Եւ եթէ գիտութեան նորա ոչ ոք է հասու, ո՞րչափ ևս էութեան նորա. և եթէ երկինք մասն ինչ են չափոյ ձեռացն նորա, որ քան զերկինս 'ի խոնարհ իցեն, զիա՞րդ կարասցեն քննել զիմաստութիւն նորա։

« Արդ ո՞ւմ նմանեցուցէք զՏէր. միթէ պատկե՞ր կոփեաց զնա հիւսն, կամ ձուլեաց զնա ոսկերիչ 'ի բովս՝ զոսկի »։ Ոչ, ասէ, այդպիսի ինչ հրաման ետ Աստուած, եթէ պատկեր ինչ կանգնիցէք նմա, և կամ ոսկով շուրջ օծանիցէք. զոր 'ի վեր և 'ի խոնարհ տայ խրատ Մովսէս, եթէ մի՛ առնիցէք ձեզ ինչ նմանութիւն պատկերաց, մի՛ յերկինս 'ի վեր, և մի՛ յերկիր 'ի խոնարհ։ Քանզի ոչ 'ի սկզբանէ ոք արար պատկեր Աստուծոյ, և ոչ գիտութեան նորա ոք գիտաց հաւատեաւ հասու լինել. զի որ ինչ եղծանի և ապականի՝ այնմ առնեն պատկեր. զի յորժամ չիցէ 'ի միջի, գոնէ պատկերաւ ունիցին զյիշատակս 'ի միտս. իսկ անեղծ և անարատ Աստուծոյ որպիսի՞ ոք ինչ առնիցէ պատկեր. ո՞ւմ իմիք նմանիցէ, զի կարիցէ ոք նմա և պատկեր նկարել, որ իւրն միայն նմանէ և ոչ այլ իմիք։ Եւ արդ մատուցեալ մարգարէին պատուհասէ զկուռսն՝ 'ի հարց և 'ի փորձ արկեալ իմաստութեամբն՝ ընդ կռոցն տկարութիւն և զԱստուծոյ զօրութիւն։ Նախ ցուցանէ եթէ անրաւ և անհասական է Աստուծոյ գիտութիւնն, և ապա զգործուած կռոցն յանդի-

մանել, եթէ 'ի փայտից և 'ի քարանց ոսկեպատք և արծաթապատք կանգնեալ կան անմռունչք: Եւ ընդէ՞ր, ասեն, որպէս զկռոցն բնութիւն ասաց, ոչ նոյնպէս և զԱստուծոյ. քանզի զԱստուծոյ բնութիւնն ոչ ինչ կարէ ընծայեցուցանել. վասն այնորիկ եթող զէութիւնն, և յայտնեաց զգիտութիւնն [1]: Իսկ կուռքն քանզի 'ի քարայական և փայտեղէն նիւթոց են, վասն այնորիկ զպայման և զարար բնութեան նոցա պատմէ: « Որձո՜ւլ, ասէ, նմանութեան նմանեցուցէք զնա ». զի չիք ինչ նման նմա, և ոչ պատկեր կերպարանաց յարարածոց. բայց մի միայն է նորա պատկեր կերպարանաց, անձեռագործ Որդին իւր:

« Զի զփայտ անփուտ ընտրեաց հիւսն »: Եւ քանզի բազումք յայլազգի պատկերաց 'ի բազում ժամանակս տեւեցին, վասն այնորիկ զպատճառն ասէ, եթէ ոչ յանձանց ինչ, այլ յանփուտ փայտէն տևեն [2], և յիմաստութենէ ճարտարութենէ ճարտարին է գործն տևական, և հնարս խնդրէ՝ զի մի շարժեսցի պատկերն: Եւ մի ինչ 'ի գեղ պատկերին հայեսջիս, և մի 'ի հաստատութիւն և յանշարժութիւն. զի այն մարդկան ճարտարութեան արուեստ է: Այլ թէ գործ ինչ մնարիցեն, զայն 'ի մէջ բերիցեն, ըստ այնմ՝ զոր 'ի նոյն յարէ, եթէ « Ո՞չ լուէք և ո՞չ իմանայք, և ո՞չ պատմեցաւ ձեզ 'ի սկզբանէ, ո՞չ գիտէք զհիմունս երկրի »: Զի արդեամբք իսկ պարտ էր ուսանել ձեզ զայս [3], և ոչ բանից ձեռաւ և ապա հաւանել. այլ [4] 'ի սկզբանէ զայդ ուսանէիք. զի և առանց բանից իսկ իւրքն բնութիւն իրացն կարէ ուսուցանել. և թէ և դուք ոչ իմանայք, սակայն յայլոց պատմեցաւ ձեզ, և ոչ այժմ ինչ, այլ 'ի սկզբանէ. այսու ամենայնիւ հաստատէ եթէ առանց ներելոյ թողութեան է անբարշտութիւն նոցա: Եւ քանզի վասն դարձին խօսէր, այնուհետև քանզի ոչ վասն հանդստեան առ 'ի

1 Յօր. Եւ յայտնեաց զգիտութիւնն, յօտար գրչէ:
2 Յօր. Երևելի. օտար գրչաւ փոխելի:
3 Յօր. Զայս յօտար գրչէ:
4 Յօր. Այլ յօտար գրչէ:

վշտացն զերծանելոյ՝ յառաջին չարիսն ընթանալ միւս-
անգամ պարտ իցէ, իբրեւ զմոյթս ինչ հաստատուն
տայ զպատուիրանսն, որ ոչ տայցէ նոցա թոյլ միւսան-
գամ կործանել յառաջին ամբարշտութիւնն:

« Որ ունի, ասէ, զշրջանակ երկրի ». իսկ այլքն
ասեն, թէ Որ նստի 'ի վերայ շրջանակին: « Եւ բնա-
կիչք նորա իբրեւ զմարախ »: Տեսանե՞ս, զի բոլորակ
իմն է երկիր, զի շրջանակն զբոլորաձեւ կերպարանսն
երկրի յայտ առնէ, եւ չէ ինչ անօգուտ գիտել զայս.
զի մի ըստ արտաքնոց փիլիսոփայից առասպելացն պատ-
րիցիմք[1], որք գառագղի եւ կարկնի եւ սկտեղ եւ լկան, եւ
այլ ինչ այսպիսեաց սովոր են[2] նմանեցուցանել զեր-
կիր. լուեալ 'ի մարգարէէս եթէ շրջանակի իմն է, մի
այլ ինչ ուրեք ցնորիցիս: Նա բարւոք ասաց, թէ ունի.
քանզի 'ի ձեռին նորա են ծագք երկրի. զի նովաւ
հաստատեցաւ եկաց ամենայն ինչ: Վերագոյն վասն
գիտութեանն ասաց, եթէ Ո՞ չափեաց զերկինս
թզաւ, եւ զերկիր քլաւ. եւ աստ վասն տեսչութեանն
ասէ, եւ ոչ եւս վասն արարչութեանն: Նա արդ մի ինչ
խնդրիցես եթէ յե՞ր վերայ կայցէ երկիրս եւ կամ յե՞ր
վերայ հաստատեալ իցէ. յորժամ Աստուած իւրով ձե-
ռամբ ունիցի, այլ ինչ հիմն քան զայն մի խնդրեր, եւ
մի միտս ինչ հաւանեցուցիչս: « Եւ բնակիչք նորա ի-
բրեւ զմարախ »: Այնպէս տկարագոյն է մարդ առաջի
Աստուծոյ, եւ այսպէս վաղվաղակի յոր կողմն եւ կամի՝
դարձուցանէ: Եւ արդ մի ինչ 'ի թանձրութիւն մար-
մնոյ երկրի նայիցիս, այլ զմեծայաղթ զօրութիւնն՝ որ
զնայն ունիցի՝ 'ի միտ առնուցուս. եւ ոչ ինչ այնուհետեւ
խռովիցիս, եւ ոչ ցնորեալ այսր անդր աստանդիցես:
Եւ յորժամ 'ի միտ անկանիցի, թէ զիարդ կայցէ ան-
շարժ շրջանակն երկրի, զանհնարին, զանպարտա-
կանն, զանվաստակ ձեռինն 'ի միտ առնուցուս զզօրու-
թիւնն, եւ այնպէս կարիցես ընդունել հաւատովք.
քանզի եւ մեք յօրինակ տկարութեան սովոր եմք բա-
զում անգամ առնուլ զմարախ:

« Ո հաստատեաց զերկինս իբրեւ զկամար »: Ակի-

1 Յոր. Պարփեցեմ:
2 Յոր. Այնեւայ տողէն:

ղաս ասէ. Ո ձգեաց իբրև զանօսր ինչ զերկինս. Սիմաքոս. Ո ձգեաց իբրև գերան զերկինս։ Դարձեալ աստ զարարչութենէն ինչ ասէ և ոչ զնիւթոյն յառաջ բերելոյ, և ոչ զնորին իսկ մարմնոյն երկնից զարարածոց. այլ զյօրինուածն՝ յորում և մարդիկ կարեն հաղորդ լինել Աստուծոյ։ Ոչ ասաց եթէ զկա՛րդ 'ի չգոյէ զգոյսն ած 'ի մէջ, այլ թէ որպէս զորս ածն՝ զկէսն ամբողջ պահէ, և զկէսսն յօրինեալս յարդարէ։ Եւ այս իսկ ոչ սակաւ արուեստի ճարտարութիւն է՝ հաստատել զլեալսն և յօրինել և պարհել անարատ՝ զհաստատեալսն. քանզի և ընդ ճարտարապետս՝ ոչ միայն յորժամ բազում սիւնս ճախարակիցեն, այլ յորժամ կանգնել և հաստատել կարիցեն, յայնժամ զարմանամք. Նոյնպէս և Աստուծոյ, մի միայն ընդ այն զարմանայցես՝ զի զայնչափ մեծութիւն մարմնոց երկնից 'ի չգոյէ 'ի գոյ ած և եցոյց, այլ զի յետ երևեցուցանելոյն՝ հաստատուն և անարատ պահէ։ Դիցուք երևեցուցանել զմարմինն երկնից և զգմբէթն՝ և այնպէս ընդ վայր ընկեցեալ 'ի վերայ երկրի, որպիսի՞ ինչ զօրութիւն կարէ ուղղել և հաստատել զնա, եթէ ոչ այն՝ որ 'ի սկզբանէն 'ի չգոյէ 'ի գոյ ած զնա։ Զի մի յորժամ լսիցես, եթէ « Ձգեաց զերկինս իբրև զխորան », երկնչիցիս բնակել յերկրի, եթէ գուցէ անկանիցի 'ի վերայ, Նախ ասէ, եթէ « Հաստատեաց զերկինս իբրև զկամար ». զի առաջին օրինակաւն՝ ազատեսցէ զքեզ յերկեղէ. զի թէպէտ և կասկածիցես՝ եթէ իբրև զխորան է, գուցէ անկանիցի, քաջալերեսցիս այնու, թէ իբրև զկամար հաստատուն է։ Եւ ընդէ՞ր զերկոսին օրինակսն 'ի մէջ բերիցէ. այլ զի անուամբ կամարին՝ զհաստատութիւնն ցուցանիցէ, և անուամբ խորանին՝ զդիւրութիւն արարչին, եթէ այնպէս դիւրաւ կանգնեաց իբրև զխորան մի. և ոչ իբրև զխորան ինչ անօգուտ, այլ իբրև զկամար հաստատուն. զի մի դիւրաւ առնել արարչին՝ կասկած ինչ 'ի միտս արկանիցէ արարածոցն, յառաջագոյն ուղղեաց զայն՝ կամարն կոչելով. ապա և զպէտս պատշաճիցն. և յայտ առնէ եթէ ոչ վայրապար և ոչ 'ի զուր և ոչ 'ի ցոյց ինչ կամ 'ի պարծանս, այլ զի բնակիցեն 'ի նմա մարդիկ։ Իսկ երկինք իբրև զձեղուն ինչ գոդեալ

գմբեթաձև 'ի վերուստ ձգեցան։ Այսպէս եթէ առնուցէ ոք, եթէ ընդէ՞ր այնպէս գոգեալ գմբեթաձև են երկինք, և ոչ երբէք զհարթ ինչ ձեղուն. զայս եւեթ պատասխանի տամ, եթէ այնպիսի ինչ իրաց չկարեմ խորամուտ լինել. զի այնպիսի կերպարանք են երկնից՝ զայն ուսայ, իսկ եթէ ընդէ՞ր այնպիսի իցեն՝ զայս ոչ ես։ Եւ ձգեցին զայն ինչ յայս առնէ, եթէ որպէս վաղվաղակի առանց դժուարութեան հանդերձ ոք տարածանիցէ, այնպէս և ս բիւրապատիկ դիւրաւ այն ձգեաց յանկարծակի զերկինս. և այս են զարմանք զի զանչափ և զայսչափ ժամանակս ոչ խորշ ուրեք և ոչ գոգ ինչ գործեցաւ յերկինս։ Որպիսի՞ ապաւանդակք կարիցեն պարզ ունել, կամ որպիսի՞ սիւնակք, կամ որպիսի՞ ապարուակք խառնեալ ընդ երկինս՝ ունիցի զնա ձիգ և պարզ. այլ գիտեմ թէ չկարես ինչ ցուցանել. բայց թէ ընթացեալ յԱստուծոյ զօրութիւնս լինիցիս ապաստան. ըստ այնմ, եթէ ի ձեռին նորա են ամենայն ծագք երկրի։ Եւ բարւոք ևս զայն, թէ Ձգեաց. 'ի միւսում վայրի ասէ. Գալարեսցին երկինք իբրև զմագաղաթ. և այլուր, եթէ Իբրև զվերարկու կրկնեսցես զնոսա, և փոխեսցին։ Իբրև զկտաւ ինչ բարակ, այնպէս ձգեաց Աստուած զերկինս 'ի վերայ գլխոյ մերոյ. և մեծութեամբն և գեղեցկութեամբ և ազգի ազգի զարդուցն պաճուճանօք պարարէ զաչս մեր և զուարթացուցանէ. և ոչ միայն կարևոր պիտոյիւքն՝ որ 'ի նմանէ իցեն, այլ և առաւելութեամբ գեղեցկութեան վայելչացուցանէ և ուրախ առնէ. քանզի մեծատունք 'ի մեծապարգևէ [1], ոչ եթէ միայն զի զպէտս եւեթ մեր վճարիցէ, այլ զի հանդիսա և յուրախութիւն իցէ մեզ ամենայն. ապա թէ ոչ, վասն է՞ր իսկ զայսչափ լայնութիւն երկրի տարածէր մեզ, և զընդարձակութիւն ծովու, և այսչափ յօդս և այսչափ ջուրս. ո՞չ ապաքէն բազմութիւն արարածոցն անցանէ ըստ պատշաճի մերոյ պիտոյից. և զայն 'ի զբօսանս և 'ի մխիթարութիւն արար մերոյ կարօտութեան։

« Որ տայ իշխանութիւն յոչինչ իշխել, և զերկինս յոչինչ արար »։ Եւ զի՞նչ իցէ, եթէ « Որ տայ զիշ-

1 Այսպէս յօրինակին. Թուի, քանզի մեծապարգև է՝ մեծս պարգևէ։

խանս յոչինչ իշխել»։ Քանզի փոփոխումն Թագաւորի ուրուք՝ իրք դժուարինք են, այլ սակայն Աստուծոյ և ոչ այն ինչ դժուարին է։ Եւ սակայն ինչ թուիցի քեզ այնպիսի ոք՝ որ զաշխարհս [1] ամենայն ունիցի, և յամենեցունց մեծարեալ պատուիցի, և հրամանաւ միայն՝ զամենայն շարժիցէ, և յոր կողմ ախտս դարձուցանիցէ, ընկենուլ զայնպիսին յաթոռոյ թագաւորութեան [2]. այլ Աստուծոյ և այն ոչ ինչ է։ Եւ եթէ զռամիկ ոք, որ և զբանս անգամ չշարժիցէ, հանից յայնպիսի պատիւ, սակայն և այն չէ ինչ դժուարաւ. և ոչ ասաց թէ դիւրին է, այլ յայտնագոյն ևս քան զդիւրինն, թէ «Որ տայ զիշխանս յոչինչ իշխել»։ Տեառնեա՛ս, զորպիսի իրս՝ որ ամենեցուն ծանօթ են՝ ածէ յօրինակ. քանզի յարարածին երկնից չէաք մօտ, և ոչ մինչ ձգէրն զնա՝ խելամուտ ինչ էաք։ Զի մեծամեծս ինչ, թէպէտ և կարի մեծամեծք իցեն, և յականջալուրս լինիցին, ոչ այնպէս ինչ յայտնագոյն լինի լսողացն, շինէ զբանն յայն ինչ՝ որ ծանօթ ամենեցուն է և հանապազօր 'ի մէջ ամենեցուն երևի. որպէս և միւս մարգարէն ասէր, թէ Որ փոփոխէն ժամս և ժամանակս, և որ ցուցանէ զթագաւորս և փոխէ. և դարձեալ, թէ Բռնաւորք նստան 'ի գետնի, և որում ոչ ակն կայր՝ զգեցաւ զպսակ. և դարձեալ, թէ Տեսի զծառայս 'ի ձիս, զիշխանս 'ի ծառայութիւն վարեալս. և դարձեալ, թէ Յառաւօտէ մինչև յերեկոյ փոփոխմունք բազումք. և դարձեալ, թէ Ամենայն ինչ երագագոյն է առաջի Նորա։ Տեառնեա՛ս, որչափ ամենայն ուրեք ընդ տիեզերս սերմանեաց Աստուած գիտութեանն պատճառս առ իւրոյ արարչութեանն հաւատս. կամիս լսել բարբառ՝ որ անդուստ 'ի վերուստ եկեալ ուսուցանիցէ քեզ Տէրն, այլ ոչ կամիս ուսանել. զիրս աշխարհիս կշռեա, բնութեանցդ՝ որ հանապազօրդ ընթանան՝ միտ դիր, և անտի առնուս 'ի միտ զՏէրն և զԱրարիչ։

« Զերկիրս, ասէ, յոչընչէ արար »։ Մեծ իմն թուի քեզ՝ զի ունէին զնա հաստատուն, եթէ ունիցիս՝ զի չէր իսկ և արար. և այնպէս վաղվաղակի՝ իբրև ոչինչ

1 Յոր. Յայնպիսիս ոք զաշխարհս։
2 Այլպէս յօրինակին։

ինչ։ Եւ ո՞ւր իցեն՝ որ ասիցեն, եթէ երկիր էր իսկ աներեւոյթ և անպատրաստ. զի ահա աւասիկ ասէ, եթէ արար զնա. զի եթէ արար, զիա՞րդ իցէ՝ զի անարար իցէ. և արար դիւրաւ, վաղվաղակի։ Եւ միւս եւս մարգարէն, եթէ Տեսից յերկինս զգործս մատանց քոց. և դարձեալ նոյն, եթէ Զամենայն ինչ զոր կամեցաւ՝ և արար. և համգոյն այնմ, եթէ «Արար զնա իբրև զոչինչ», այն է՝ եթէ Արարեր զամենայն ինչ բանիւ քով։

Եւ բարուոք ասէ. «Կոչեաց զնոսա, և ասեն. Ահա աւասիկ եմք»։ Եւ այսու ամենայնիւ դիւրութիւն արարչութեանն ընծայեցուցեալ երեւի։ Եւ ոմն այր իմաստուն ասէ, եթէ յարարածոց աստի՝ իւրաքանչիւր ազգագործ երեւի. իսկ սա ոչ միայն յարարածոց, և այլ իմն հանգամանս տայ որ խելամուտ առնիցէ զմեզ մեծութեան արարչին, այսինքն զկերպարանս արարչութեանն։ Տեսանե՞ս զմեծութիւն այնպիսի և զգեղեցկութիւն արարածոց. մի՛ յայնս եւեթ հաստատեցիս կայցես, այլ միտ դիր և ուսիր՝ զիարդ այս ամենայն մեծամեծք՝ եղեն իբրև զոչինչ, հրամանաւ և բանիւ և մատամբք և կոչմամբ. Միայն՝ որ կոչէ, ասէ, զգոյս՚ի չգոյից անտի։ Զի և սա զերագութիւն և զդիւրութիւն արարչութեանն հաստատէ. զի որպէս մեք կոչեմք զայնպիսի՝ որ վաղվաղակի լսիցեն մեզ, նոյնպէս և նա զչգոյսն իբրև զգոյս։ Եւ զիա՞րդ, ասէ, մարթիցի այդմ լինել. այն իսկ են զարմանք, զի այնպիսի Տէր ունիմք, որոյ գործն ոչ բանիւք և ոչ մտօք, և ոչ այլ իւիք կերպարանօք կարեմք հասու լինել։

Ո՛րչափ ինչ յառաջագոյն ասաց զարարչութենէն թէ դիւրաւ արար զերկինս և զերկիր. «Արար, ասէ, զերկիր յոչինչ», և անդէն յարէ ՚ի նոյն, եթէ «Մի՛ սերմանեսցեն և մի՛ տնկեսցեն և մի՛ արմատասցի յերկիր արմատ նոցա»։ Եւ արդ վասն կռոցն արդեւք ասիցէ, եթէ վասն Բաբելացւոց. յերկոսեան կողմանս կրթիցուք զբանս. զի այնպէս կարիցեմք ուսանել զհաւաստիսն. և թերեւս վասն Բաբելացւոցն իսկ ասիցէ, եթէ գերի երթիցեն, և իբրև ՚ի հողմոյ՝ այնպէս բառնայցեն։ Եւ եթէ զկռոց եւս ասիցէ, վասն զի անզգայք և անշունչք են, և ոչ մի ինչ զօրութիւն կա-

րեն ցուցանել. զի ոչ միայն բարութիւնս ինչ յանձանց չկարեն տալ մարդկան, այլ և ոչ ըստ այնմ օրինակի՝ որպէս և մարդիկ առնիցեն մարդկան. թէպէտ և ոչ այնր ինչ է՝ որ սերմանիցեն, և ոչ այնր՝ որ տնկիցեն, այլ Աստուծոյ՝ որ աճեցուցանէն. իսկ նոքա և ոչ զպտուղն ինչ իւր կարեն վճարել: Եւ զի՞նչ զարմանք իցեն, ուր և առ իւրեանց անձանց փրկութիւն չլինին բաւական, այլ որպէս և 'ի հողմոյն բնաբարձ լինին: Տեսեր զԱստուծոյ զօրութիւնն, տես և զկռոցն տկարութիւնն: Եւ ընդէ՞ր արդեւք զայս եդ, և ոչ զընդդէմն, եթէ ոչ արարին նոքա զերկիր. քանզի ասելոցն՝ թէ արարեր զերկիր, եցոյց թէ և զտունկսն նա արար. զի որ զմայրն տնկոցն ած 'ի մէջ, յայտ է թէ և զտունկսն նոյն արար. իսկ նոքա ոչ միայն զտունկսն ոչ շնորհեցին, այլ և ոչ սպասաւոր լինել իբրև զմարդիկ բաւական ինչ են: «Ցամաքեցան». զի այն իսկ սովորութիւն է փայտից. զի որպէս 'ի փայտս գօսացեալ անպտղութիւն է, նոյնպէս և նոքա առանց զօրութեան: «Հողմք առցեն»: Հողմք ասէ զպատիժսն՝ որ առ յիւրմէ են՝ կոչէ, և զպատերազմաց հասանել 'ի վերայ, եթէ ամենևին ինչ ոչ կարիցեն օգնական լինել կուռքն:

«Եւ արդ ո՞ւմ, ասէ, նմանեցուցէք զիս»: Բարւոք ասաց, ո՞ւմ նմանեցուցէք զիս. բարւոք ասաց՝ թէ արդ. թէ յետ[1] այնչափ զփորձ առնլոյ զերախտեացն, ոչ իմացարուք զիս: «Եւ բարձրացայց, ասէ Սուրբն»: Այսինքն զի՞նչ ինչ այնպիսի իցէ՝ որ կարիցէ զիս բարձրացուցանել. և այսու յայտ է եթէ կռոցն փառքն 'ի մարդկանէ են, և 'ի նոցունց պաճուճանաց՝ բարձրութիւն նոցա. զի յորժամ բարւոք յօրինիցեն զխեցեղէնն, և արքունական իմն կերպարանս պաճուճեն, և ահագին իմն նշանակս բարկութեան 'ի ձեռին իմն դնեն՝ կամ թէ հուր կարիցէ իջուցանել կամ կարկուտ ածել, ո՞չ ապաքէն նոքա բարձրացուցանեն զնա: Իսկ ինձ, ասէ, զի՞նչ ինչ հնարս ինչ իմանայցէք, զի բարձրացայց. չիք ինչ և չէ հնար և ոչ լիցի. և յայտ է

1 Յոր. Զիք ձփ:

թէ անկարօտական է Աստուած, և ոչ 'ի մարդկանէ բարձրանայ, այլ ինքն զնոսա բարձրացուցանէ։

Իբրև եցոյց զանկարօտութիւնն, եթէ ոչ ինչ գոյ՝ որ զնա բարձրացուցանիցէ, յարէ 'ի նոյն, եթէ « Ամբարձէք 'ի բարձունս զաչս ձեր, և տեսէք՝ ո՛ ցոյց զայս ամենայն »։ Ո՞չ ապաքէն 'ի չգոյէ 'ի գոյ ածի. յայտ արար այսու՝ ո՛վ ցոյցն զայս ամենայն։ Եւ մեք նովին բանիւս վարեսցուք, եթէ զչգոյսն ած 'ի գոյ և եցոյց. որպէս յորժամ զմարդկանէ ասիցեմք, եթէ ոչ ոք երբէք այնպիսի իրս կամ անօթ ինչ կամ հանդերձ ինչ, յայտ առնեմք՝ եթէ այնպիսի ոք ինչ յառաջ քան զայն ոչ գործեաց։ Զեմ ինչ, ասէ, կարօտ ձերոյ բարձրացուցանելոյդ. այլ դուք հայեցարուք 'ի բարձունս։ Բարիոք առ մարդիկ՝ որ միշտ ևեթ 'ի վայր հային, և ոչ կարեն ամբառնալ 'ի բարձունս. Թէպէտ և կերպարանք իսկ այսպիսիք տուան մարդոյ, զի կանգուն և ակամայ մի մոռանայցէ զիւրոյ բնութեան ազնուականութիւն. կանգուն արար զնա և բարձրաւանդակս մարմնոյ հաստատեաց զաչսն. և ինքն իսկ արարն ոչ խրատիցէ զքեզ, եթէ ոչ վասն այլ իրիք անդ հաստատեաց զաչսն, այլ զի 'ի վեր ևեթ հայիցես՝ իբրև զիշխանն մի և զդաստաւոր. որ ոչ 'ի վայր ևեթ հայիցես, այլ միշտ 'ի վեր համբարձեալ ապաստանս 'ի թևս աչացն թռուցիչս. այլ ետ քեզ և այլ ևս թևս թեթևագոյնս քան զայդ, որ ոչ յօդս ևեթ և յեթերն թռուցանիցեն, այսինքն զոր խաղաղականսն ասեն, որ քան զշաժամանակս 'ի վերայ [1] են ընդ օդս և ընդ երկինս 'ի միջի, այլ և 'ի վերոյ ևս քան զերկինս։ Եւ յինչ իցեն այսպիսի թևք. այլ Ճշմարիտ հաւատոցն թռիչք. զի հաւատոցն թևօք կարես ելանել 'ի վեր քան զերկինս, և գտանել զամենայն ինչ՝ որ անդ իցէ։

« Եւ տեսէք, ասէ, ո՛վ եցոյց զայս ամենայն »։ Եւ թերևս ասիցէ ոք, եթէ տեսանեմ զամենայն, և զգեղեցկութիւն նոցա և զմեծութիւն, բայց թէ ո՛վ եցոյց զայս ամենայն՝ զնա ոչ կարեմ Ճանաչել։ Տեսանեմ զարեգակնն, տեսանեմ զլուսինն, տեսանեմ զերկինս, տեսանեմ զաստեղս և զայլսն ևս ամենայն. և ուստի՞

1 Օր. Օտար գրչաւ՝ 'ի վերոյ էն։

կարիցեմ ճանաչել զարարիչն։ Եւ մանաւանդ. քան այլոց ամենեցունց՝ Հրէից չէր պարտ զայս ասել, որոց յամենայն ազգս եւս զիւրոյ արարչութեանն ծանօթս։ Քանզի և իմքն աներևոյթ է, և մինչ ասէր զերկինս՝ չէր ոք մօտ, և մանաւանդ մարդ, զի իմանայցէ եթէ նորա իցեն արարածք. արար զերկինս, և Ադամ չէր ուրեք մօտ. հաստատեաց զերկիր, և նա ոչ ևս ետես. կոչեաց զծովս, և նա չէր ուրեք մերձ՝ թէ խելամուտ լինիցի. զի յետ ամենեցուն զամենայն, ապա արարաւ մարդն. և արդ ուստի՞ կարիցեմք, ասեն, իմանալ եթէ յԱստուծոյ իցեն արարածք։ Այլ 'ի բնէն և 'ի կարեւորէ. զի արար առաջի նորա 'ի նմանէ՝ մարդ, զկնոջէն ասեմ. զի որ զմարդ կարիցէ առնել, ո՞րչափ ևս զայլն ամենայն՝ որ վասն մարդոյն եղև. յայժ առաւել դիւրագոյն էր զերկինս առնել և զայլսն ևս ամենայն արարածս, քան զմարդ. ոչ միայն վասն շնչոյն, այլ և վասն մարմնոյն, եթէ որպիսի զօրութիւն յիւրաքանչիւր անդամսն եդ։ Եւ ոչ, ասեն, ետես զնա՝ մինչ ստեղծանէրն, այլ յորժամ ստեղծաւն։ Ասեմք. ակայն գիտաց թէ նա արար, զի 'ի նմանէ էր. Այս[1] այժմ, ասէ, ոսկր յոսկերաց և մարմին 'ի մարմնոյ իմոյ։ Եւ զի զանասունսն նոյն արար, յայնմանէ ուսանէր, զի առ նա ածէր և տայր անուանս դնել. իսկ եթէ յերկրէ իցեն նա և անասունքն՝ զայն յետոյ ուսանէր յայնմանէ, եթէ հող էիր, և 'ի հող դարձջիր։ Այո՛, ասեն, զի յերկրէ արար զնա՝ յայտ է եթէ յայնմանէ ուսանէր. իսկ եթէ զերկիր 'ի չգոյէ ած 'ի գոյ՝ զայն ուստի՞ կարէր գիտել։ Ասեմք. վասն զի եդ 'ի նմա իմաստութիւն ծանուցիչ ամենայնի. զի որ մարգարէացաւն և զծածուկ լեալսն Աստուծոյ կարաց իմանալ, զիա՞րդ զայլսն ոչ կարէր իմանալ. զի եթէ դաղարումն ինչ անկաւ 'ի վերայ նորա, զիա՞րդ կարէր իմանալ զկողին որոշումն. զի յորժամ դաղարեալ ոք իցէ, և առնուցու ինչ ոք 'ի նմանէ, թէպէտ և 'ի նմանէ իցէ, սակայն ոչ զգայ։ Տեսանե՞ս, զի այլովք աչօք տեսանէր. և ոչ միայն զմօտաւոր, այլ և զհանդերձեալսն։ Եւ զի անասունքն ոչ 'ի նմանէ էին, այնու յայտ է, եթէ

1 Օր. Այս յատար գրչէ։

Այս այժմ ոսկր յոսկերաց իմոց, և մարմին 'ի մարմնոյ իմմէ։ Եւ անտի զինչ իմանայցեմք, եթէ Այս այժմուս. նախ քան զայն՝ զի անասունքն 'ի նմանէ ոչ էին. և միւս ևս, եթէ որպէս այժմ եղև, ոչ ոք երբեք սոյն լինիցի։ Տեսանես, զի առ յապա ևս ժամանակս մարգարէանայ։ Նաև Մովսէս ոչ եթէ մտաւկաց ինչ էր Աստուծոյ՝ յորժամ զարարածս առնէր և իմացաւ, այլ յետ բազում ազգաց, յայտնութեամբ Հոգւոյն, իբրև զմանուկ առեալ ուսանէր 'ի հօրէ։ Եւ այլուր, եթէ Ծանօթքն Աստուծոյ՝ յայտնի է 'ի նոսա. այսինքն կարէին ճանաչել զԱստուած. Զի աներևոյթք նորա 'ի սկզբանէ աշխարհի արարածովքս իմացեալ տեսանի։ Եւ այլազգ ևս. զամենայն ազգս վարդապետութեանն իմն նշանակ արար. 'ի ջրհեղեղին զամենայն աշխարհ վերստին իմն նորոգեաց. առ աշտարակաւ՝ այլ իմն նորանշանք. առ Սոդովմացովքն այսպիսիք. առ Աբրահամու ոչ նոյնպիսիք ինչ. 'ի գալստեանն՝ և՛ս զարմանալիք։ Ուստի և Կային 'ի հօրէն, այլ արհամարհեաց, քանզի ամբարիշտ էր. զի նա ոչ միայն արարիչ իմացաւ զԱստուած, թէ կամեցեալ էր, այլ և դատաւոր և վրէժխնդիր. իսկ հայրն իմացաւ եթէ արարիչ է Աստուած, և ամենայն ուրեք մօտ է, և դարմանիչ է մարդկան, և եթէ ոչ վայրապար ինչ լինի, այլ ամենայն ինչ յօրինուածով. և եթէ բառնայ ոք զթշնամի 'ի միջոյ, նոյնպէս վրէժս հատուցանելոց է։ Տե՛ս և զյարութեանն իսկ զծանօթս. զի արիւն վախճանելոյն՝ առաւել զօրագոյն է քան զկեանս կենդանւոյն։ Դնէր 'ի վերայ նորա պատիժս, զի մի ոք ասիցէ՝ թէ սպանի զթշնամին, անհոգ եմ յերկեղէ. ցուցանէ թէ յայնժամ առաւել եմք ընդ երկեղիւ՝ յորժամ 'ի թշնամեաց անհոգ լինիցիմք. զի այլ թըշնամի ստանամք անձանց՝ զԱստուած։ Եւ ամենևին ոչ եթող Աստուած առանց վկայութեան զաշխարհս։ Դարձեալ և Պետրոս ասէ, եթէ ճշմարտութեամբ 'ի վերայ հասեալ եմ, զի ոչ է ակնառու Աստուած, այլ յամենայն ազգս՝ որ երկնչի 'ի նմանէ և գործէ զարդարութիւն՝ ընդունելի է նմա. և դարձեալ, եթէ Յորժամ հեթանոսք՝ որ զօրէնս ոչ ունիցին, բնութեամբ զօրինացն գործ գործիցեն, նոքա որ զօրէնս

ոչ ունին, անձանց իւրեանց իսկ են օրէնքն։ Ետ օրէնս, եթող դարձեալ առանց օրինաց, զի մի՛ ասիցես եթէ կարի ծանրացուցանէ ինձ։ Ահա աւասիկ, ասէ, չլինիմ ինչ քեզ վերակացու. տես, իցէ՞ թէ կարիցես անձամբ առնել ինչ առաքինութիւնս. այլ ոչ ինչ կարիցեն անձամբ վճարել. դարձեալ լինիմ վերակացու և կեցուցանեմ շնորհօք։

« Ամբարձէք 'ի բարձունս զաչս ձեր »։ Քանզի որ ինչ յերկրի էր՝ չեղև բաւական ցուցանել քեզ զարարիչն, որպէս կարծեցեր. քանզի ոչ առեր 'ի միտ զայն, եթէ Լցաւ երկիր փառօք նորա. և Ողորմութեամբ Տեառն լի է երկիր։ Եւ եթէ փառօք և ողորմութեամբ լի իցէ երկիր, ընդէ՞ր կոչիցէ զնոսա 'ի բարձունս հայել։ Այլ երկինք, ասեն, լաւագոյն են քան զերկիր։ Քանզի յերկրէ ինչ ոչ ուսարուք, գէթ յերկինս հայեցարուք։ Գեղեցիկ են երկինք, այլ կարևոր է և երկիր. որպէս մարմին մի 'ի բազում անդամոց յօդեալ, նոյնպէս արար Աստուած զաշխարհս. և զոր Պաւղոս զմիաբանութենէ անդամոցն ասէ, զնոյն և զբնաւ աշխարհէս պարտ է[1] իմանալ, եթէ անարգ անդամոյն աւելի պատիւ ետ, զի մի՛ ինչ հերձուածք լինիցին 'ի մարմնին։ Գրեսջիր եթէ յոռի ինչ և վատթարագոյն իցէ երկիրս քան զերկինս. այլ ունի ինչ և յոլովագոյն քան զնա. քանզի կերակրէ զամենեսին որ 'ի վերայ նորա շրջիցին, և զի 'ի սմանէ են մարմինք ամենայն. բայց ունին ինչ յոլովագոյն երկինք, զի և անտի ոչ սակաւ խնամք դարմանոց են յարեգականէ և 'ի լուսնէ և յաստեղաց։ Եւ այլազգ ևս. զի սա արհամարհանաց է, քանզի հանապազ կոխի. եթէ անդր յերկինս հայիցիք, ասէ, և զայդ ամենայն՝ որ յերկրիդ է՝ առնուցուք 'ի միտ։ Ոչ զոր օրինակ հեթանոսք, որ 'ի բիւրուց 'ի բիւրս աստուածս բաժանեն զտեսչութիւն աշխարհիս, և զայն ոչ կատարեալ ինչ, այլ անկատար և կռուական. և այնպէս իմն համբաւեն, եթէ Դեմետեր՝ երկրի 'ի թիկունս իցէ. և Պոսիդոնի՝ ծովուն, և Այրերա՝ օդոց. և ոչ այսչափ միայն, եթէ Դեմետեր թիկունք երկրի, այլ և զայլ ոմն յօդեցին

1 Յոր. Պափձ։

ընդ նմա աստուած. զԴիոնիսիոս, ասեն, թէ այգեաց շահապետ է, և զԱթենան՝ թէ ձիթենեաց, և զՄայ-րեկնասն՝ ամենայն ծառոց շահապետս կոչեն։

Իսկ աստ ոչ այսպիսի ինչ. այլ « Տեսէք, մի՛ եղոյց զամենայն զայս ». և յարէ 'ի նոյն, թէ « Որ հանէ [1] ընդ թիւ զաշխարհ իւր, և զամենեսեան յանուանէ կոչեսցէ »։ Ակիւղաս ասէ, թէ Որ հանէ համարաւ զօրս նոցա. Սիմաքոս՝ թուով ասէ. Թէոդիտոնն [2], Որ հանելոցն է ըստ թուոյ զօրութեան նոցա. որպէս և Դաւիթ ասէ, թէ Որ թուէ զբազմութիւն աստե-ղաց, և ամենեցուն նոցա անուանս կոչէ։ Զի յայտ առնիցէ այնու, զի ոչ միայն արար, այլ և հաստատուն պահէ զամենեսեան. այս իսկ է, եթէ « Որ հանէ ընդ թիւ զաշխարհ իւր »։ Եւ ոչ ասաց, եթէ հանելոց է, այլ եթէ հանէ, զի յայտ արասցէ եթէ հանապազ հանէ [3]. և յաւելու եւս՝ որ զարմանագործ ոք և աքանչելագործ, զի հանապազ տեսանելով՝ [4] հանապազ զարմանայցես ընդ նա. զի այլ ինն ցերեկ ցուցանէ, և այլ ինն ցայգ։ Այլ զնոյն ցուցանէ, ասեն, և ոչ այլ ինչ նոր և չքնաղ։ Եւ այն իսկ չիցեն զարմանք, զի նա-քինմքս միշտ ցուցանէ բազում յօրինուածութիւն. եթէ խառն 'ի խուռն ինչ էր, հանապազ ձմեռն և միշտ ա-մառն, ո՞չ ապաքէն ինքնակացս կարծէիր զամենայն։ Զի եթէ յօրինուածն ոչ հաւանեցուցանէ զքեզ՝ զՏէրն ճանաչել, ո՞րչափ եւս առաւել անստատութիւն. որպէս զի որք վաճառ ինչ առնիցեն, զառագինն 'ի միջի դնեն, նոյնպէս և Աստուած՝ եդ առաջի քո զաշխարհս, զի յերևելեացս աստի գնեսցես զհաւատսն 'ի նա։

« Զամենեսեան, ասէ, յանուանէ կոչեսցէ »։ Այս-ինքն ամենայն ինչ անսայ բանին նորա։ « Ի բա-զում փառաց քոց »։ Եւ ոչ ասաց եթէ 'ի բազում գիտութենէ քո, կամ յիմաստութենէ, այլ ընդ փառսն զարմացաւ. քանզի 'ի վեր են փառք քան զի-մաստութիւն։ « Ի բազում փառաց քոց », ասէ. զի և

1 Յօր. Հանէին։
2 Յօր. Թէոդոտէ։
3 Յօր. Զի յայտ արասցէ եթէ հանապազ հանէ, օտար գրչի է։
4 Յօր. Հանապազ տեսանելով, յօտար գրչէ։

մեք զանուանս զայս ազգական դիտեմք՝ ընդ որ ինչ կամիցիմք զարմանալ. զի յորժամ զառնէ թագաւորէ ճառիցես, մեծ փառս ունի, ասես. յորժամ զմեծութիւն ոչ կարիցեմք համարել՝ և ոչ զգեղեցկութիւնն, զի 'ի գեղեցկութիւն՝ և մեծութիւն, և որ այլ ինչ այսպիսիք իցեն՝ սեպհականք են. իսկ փառացն անունն՝ ազգական է առաւելութեան[1] քան զայնոցիկ՝ որ ընդ նովաւն իցեն, որ զբազում ինչ միանգամայն ընդ իւրև կարէ ամփոփել. մեծ փառք են, ասեմք, 'ի վերայ իրաց ինչ զարմանալեաց, բազում՝ որչափ ինչ ոչ գիտեմք։

Ասէ. « Եւ 'ի սաստիկ ուժոյ և 'ի զօրութենէ քումմէ »։ Ոչ վայրապար ինչ 'ի զօրութենէ, այլ թէ 'ի սաստիկ զօրութենէ։ «Եւ ոչ ինչ ծածկեցաւ 'ի քէն». մանաւանդ նախ 'ի բնութենէն մտաց, և ապա յիշատակացն՝ որ հանապազորդ լինին, այսինքն դարմանականն, և որ ինչ Աստուծոյ իմաստութիւնն է։ Մի զայս ինչ ասիցես՝ որ այժմս ասեմ. մի եթէ 'ի քո հայհոյութեանցն իրքն քննիցին. այլ զի ամենայնի անդուստ 'ի վերուստ եղև խնամուտ, զի արարիչ է և սրտագէտ և դարմանիչ ամենայնի՝ որ են։ Զի եթէ արարածոց, ասէ[2], այնպէս ունի խնամ, զոր վասն քո իսկ ած 'ի մէջ, ըստ այնմ, եթէ Արար զերկինս 'ի բնակութիւն. և եթէ զերկինս 'ի բնակութիւն արար՝ ո՜րչափ ևս առաւել զերկիր. և եթէ երկնից և երկրի դարման տանիցիմ, ո՜րչափ ևս առաւել քեզ՝ վասն որոյ նոքայն եղեն։

« Միթէ ասասցես ինչ Յակովբ, կամ զինչ խօսեցար Իսրայէլ, եթէ ծածկեցան ճանապարհք իմ 'ի Տեառնէ, և Աստուած իմ բարձ զիրաւունս »։ Ասա ինձ այս այսպէս թուի, եթէ և մխիթարեսցէ ևս զանմխիթարսն և զկործանեալս՝ որ ընդ երկար ժամանակս 'ի գերութեան էին, եթէ չեմ 'ի բացէ, ոչ ճանապարհք քո ծածկեցան յինէն, և ոչ զիրաւունս քո անցուցի առ քև. առմերձ եմ յօգնականութիւն, և եկեալ հասեալ

1 Յոբ. Առաւելութիւն։
2 Յոբ. Ասէ՝ յօտար դրչէ։

փրկութիւն. ոչ եթէ յինէն ինչ ծածուկ էին ճանա֊
պարհք քո, այլ մեղքն քո առնէին զքեզ անծանօթ
յինէն, և անօրէնութիւնք քո անցուցանէին զիրա֊
ւունս։ Որպէս յորժամ ասիցէ, եթէ Պահեցաք մեք
և դու ոչ տեսեր, և խոնարհեցուցաք զանձինս մեր և
դու ոչ գիտացեր, ոչ եթէ ոչ գիտէր, այլ առաւել
գիտէր, և վասն բազում անօրէնութեանցն անփոյթ
առնէր. յայն սակս վասն գիտութեան ևեթ շարժէ
զբանն, եթէ զամենայն ինչ անվրէպ գիտէ և չափէ,
ասէ, և թուէ, և ամենեցուն անուանս կոչէ։ Միթէ
ո՞չ գիտիցեմ, ասէ, և չկարիցե՞մ փրկել. այլ և գիտեմ
և դարմանեմ զամենայն։ Զի ես ձեռամբ իմով չափեցի
զերկինս, և զձեզ ո՞չ դարմանիցեմ. վասն ձեր ածրարի
զերկիր իբրև զոչինչ մի, և ձեզ չիցե՞մ բաւական օգնել.
և զբնակիչս նորա իբրև զմարախ արարի, զիշխանս՝
յոչինչ իշխել. և ես ի՞ւ իմիք կարօտանայցեմ։ Արդ
ո՞ւմ նմանեցուցէք զիս. նա և ոչ վասն ողջակիզաց ինչ
մեղադիր լինիմ ձեզ. զի ոչ Լիբանան յայրումն բաւա֊
կան է, և ոչ չորքոտանիք յողջակէզս. նա և ոչ ծած֊
կեցի ինչ, զի 'ի սկզբանէ ուսար զամենայն։

« Եւ այժմ ո՞չ ծանեար, եթէ չէ՞ր լուեալ, եթէ Աս֊
տուած յաւիտենական է, Աստուած՝ որ հաստատեաց
զծագս երկրի »։ Ակիղաս ասէ. Հաստատէ զծագս եր֊
կրի. Սիմաքոս ասէ. Հաստատեաց։ Եթէ յայն սակս
ասիցէ, եթէ « Ո՞չ ծանեար », զի պարտ էր 'ի կարգէ
իրացն ուսանել, կամ թէ ես իսկ քեզ զամենայն յա֊
ռաջագոյն պատմեցի։ Մի՛ ասիցես եթէ 'ի դիւացն
ուսայ։ « Աստուած յաւիտենական ». այն իսկ է սե֊
փական Աստուծոյ՝ զի յաւիտենականն է. այն իսկ է
սեպհականն Աստուծոյ՝ հաստատել զծագս երկրի. և
ա՛յլ ևս յաջորդքն, եթէ « Ոչ քաղցիցէ, և ոչ վաստա֊
կիցի »։ Ակիղաս ասէ. Լքցի. Սիմաքոս ասէ. Ոչ լքաւ
և ոչ վաստակեաց. ընդ դանդաչութեան նոցա իմն ա֊
սացեալ՝ այլոց թարգմանացդ. այլ այն և հրեշտակաց
է չքաղցնուլն և չվաստակել։ Իսկ արդ դու՝ նախ զա֊
րարչական նորա ուսար, զի 'ի չգոյէ 'ի գոյ ած զամե֊
նայն, և զիմաստնականն և զանբովանդականն։ « Եւ
չիք գիւտք հանճարոյ նորա »։ Ակիղաս ասէ. Չիք քնին.
Սիմաքոս, թէ Չիք չափ հանճարոյ նորա. Թէոդի֊

տոճին [1], Եւ չիք իսկ եզր հանճարոյ նորա։ Ցուցակագրոյն իմն ասէ. « Տայ զօրութիւն քաղցելոյ ». իսկ այլքն, եթէ Տայ զօրութիւն լքելոյ։ Ոչ այն միայն է Աստուծոյ, զի ինքն անկարօտական է, այլ զի և այլոց պարգեւեսցէ զայն ինչ՝ որում ինքն ոչ իցէ կարօտ։ « Եւ տրտմութիւն անցաւականաց »։ Դարձեալ հակառակ իմն ուղղութեանց իբրև չարութիւն ինչ համարին Աստուծոյ բնութեանն՝ յորում ոչն գոյ չարութիւն, այլ ըստ իւրաքանչիւր արժանեացն հատուցանէ արդար դատաստանաւ։ Ի չարչարելն՝ ոչ ինքն ինչ զայրանայ, և ՚ի տանջելն՝ ոչ ինքն ինչ ազդի, որպէս մեք յորժամ տանջիցեմք զոք, նախ մեք իսկ տանջիմք ՚ի ցասմանն զայրմանէ։

« Քաղցիցեն մատաղք [2] և վաստակեսցին երիտասարդք, և ընտիրքն անզօրք լինիցին »։ Տեսանես զԱստուած, զայնպիսիսն տանջէ։ « Իսկ որ համբերեն Տեառն, նորոգեսցին զօրութեամբ, նորափետուրք զարդարեսցին իբրև զարծուիս »։ Այս և ՚ի մկրտութեանն կատարի. զի մատաղանան, նորոգին վերստին՝ որ սուրբ խորհրդոյն արժանի լինիցին։ « Որք համբերիցեն », ասէ. տեսանես, որպիսի ինչ լաւութիւն է համբերութիւն։ Մի՛ ինչ վհատել, և մի՛ ինչ զանգիտել և անյոյս լինել, և մի՛ խռովել ինչ ընդ իրս՝ որ ՚ի վերայ հասանիցեն, այլ կալ հաստատուն, և տանել ամենայնի առաքինութեամբ։ Նա և օրինակ իմն տայ զհաւատոցն. զի եթէ արծուեաց այնպիսի ինչ նորոգութիւն լինիցի, որչափ ևս առաւել մարդկան՝ յորժամ լուսաւորեալ մկրտութեամբ նորոգեսցին։ « Որք ընթասցին և ոչ վաստակեսցին, գնասցեն և մի՛ քաղցիցեն »։ Տեսանես, զիարդ յերկոսին կողմանս առաքինանայ Աստուծոյ զօրութիւնն, և ՚ի չարչարելն և ՚ի կեցուցանել։

1 Յոր. Թէսաղոն։

2 Յոր. Զառաջինն համառօտ գրեալ, և ապա ՚ի ն քերեալ է։

# ԳԼՈՒԽ ԽԱ

«Նորոգեսցարուք առ իս, կղզիք»։ Ակիւղաս ասէ. Պապանձեսցարուք. Սիմաքոս, Թէ Լռեցէք։ «Զի իշխանք նորոգիցեն զօրութեամբ»։ Բարիոք ասաց, եթէ «Նորոգեսցարուք առ իս». քանզի չիք այլ ուստեք նորոգել, եթէ ոչ յԱստուծոյ. ըստ այնմ, եթէ Մատիք առ նա, և առէք զլոյս։ Զոր օրինակ յարեգական ոք [1] հայիցի՝ լուսաւորի, նոյնպէս և որ առ Աստուածն մերձենայ՝ բիւրապատիկ լուսաւորի։ Տես զկերպարանս նորոգութեանն, տես զմկրտութեանն արծարծութիւն. յառաջագոյն դրոշմեալ է յիրացն փոփոխմանց. կամ որպէս այլքն ասեն, եթէ Լռեցէք կղզիքդ. որ է նշանակ 'ի վարդապետութիւն կոչելոյ։

«Մերձեցին, խօսեցին միանգամայն, յայնժամ զիրաւունս պատմեսցեն»։ Զի՞նչ իցէ զիրաւունս պատմել. 'ի դատ կամիմ մտանել, իրաւունս տալ զասացելոցն։ Զհանդերձեալսն յառաջագոյն ասէ. զի թէ զոր ասացին և ոչ կարացից կատարել, ապա տկար եմ իբրև զկուռսն. բարիոք ասաց, եթէ «Յայնժամ պատմեսցեն». յորժամ վճար արարից իրացն վճարելոց։

«Ո՞ զարթոյց յարևելից զարդարութիւն»։ Ոմանք զԿիւրոսէ ասեն, և ոմանք զԶօրաբաբելէ. քանզի այլ թարգմանքն ասեն, եթէ Ո՞ յարոյց յարևելից զարդարն. կամ վրէժխնդրութիւն է՝ որ զարթեաւ յարևելից։ Միթէ, ասէ, յիմմէ՞ քաղաքէն. այլ յօտար աշխարհէ և 'ի խուժադուժ երկրէ. ուստի ոչ միայն ոք 'ի բնակչաց, այլ և ոչ յիմոցն ոք զիս ողղքէ։ Աստի ոչ միայն մարդասիրութիւնն Աստուծոյ, այլ և զօրութիւնն երևի։ Նա բարիոք ասաց՝ զարթո՞յց, և ոչ եթէ արար. զի որ յետոյն կարէր զամենայն, և յառաջագոյն կարող էր, այլ յապաղեաց վասն նոցա անօրէնութեան։

1 Յոր. Արեգակն կա։

Արդ և զերագութիւնն ես յայտ առնէ. ասէ. «Եւ կոչեաց զնա զկնի իւր, և երթիցէ»: Այսինքն զի ոչ լինիցի նմա արգել և ոչ խափան: «Տացէ առաջի հեթանոսաց, և զթագաւորս զարմացուսցէ»: Ոչ ինչ հրաժարեմ, ասէ, զթշնամիսն՝ զվկայս իւրացն գործելոց կոչել, զի լիցի և կատարեսցի. մինչ զի և թշնամիքն զարմանայցեն:

«Եւ տացէ յերկիր զսուրս նոցա, և իբրև զխուիւ ցրուեալ զաղեղունս նոցա. և հալածեսցէ զնոսա, և անցցէ 'ի խաղաղութիւն՝ ճանապարհ ոտից նորա»: Տեսանե՞ս, զի վասն յարևելից զարթուցելոյ արդարոյն ասէ իսկ. իսկ ըստ Եւթանասնիցն՝ վասն ժողովրդեանն ասէ, եթէ ոչ ոք արգելուցու, կամ խափանեսցէ զնոսա:

«Ո՞վ ազդեաց և արար զայս ամենայն, և կոչեաց զնա՝ որ կոչեացն յազգացն իսկզբանէ 'ի վաղուց հետէ»: Այսպիսի իմն սովորութիւն է Աստուծոյ, զի յորժամ անիրաւութիւն ինչ գործիցի, զանդատին զառաջինն յիշեցուցանէ: Եւ արդ զո՞ր ասիցես. զԵգիպտացւոցն, զԱբրահամուն, զՍոդոմայեցւոցն, ըզջրհեղեղին: Տեսանե՞ս, զի յիւրոց և յօտարաց հասարակ խնդրէ զվրէժ. զի զիրաւունս ողջ պահիցէ, և զարժանն չկորուսանիցէ, և զիւրս և զչիւրս՝ 'ի մեղաց և յարդարութենէ ընտրէ Աստուած: Եւ եթէ զնախնեաց ինչ յիշիցէ և ասիցէ, եթէ վասն Աբրահամու ընտրեցի զձեզ, ոչ այլ ինչ յայտ առնէ, այլ զի մի հպարտանայցեն, և անձանց ինչ քաջութեան համարիցին զուղղութիւնն:

«Ես եմ Աստուած առաջին, և ես եմ առ յապա»: Եւ յայտ է՝ եթէ ոչ յառաջ ոք քան զնա, և ոչ զկնի նորա. զի այն իմն առաւել սեպհական է Աստուծոյ, յորժամ ոչ նախ քան զնա ոք իցէ, և ոչ առ յապա վախճան կայցէ, այլ զի անսկիզբն իցէ և մշտնջենաւոր. այս սեպհական է անմահ կենդանութեանն:

«Տեսին հեթանոսք և երկեան, սարսեցին ծագք երկրի. մերձեցան և եկին միանգամայն. եդին 'ի մտի՝ այր ընկերի, այր եղբօր իւրում օգնական լինել»: Վերնովքն զդարձէն նշանակէ, և ապա մատչի հեգնել զկուռսն, թէպէտ և ժողովիցեն օգնականութիւն ինչ

՚ի մարտ պատերազմի, ընդունայն լիցի յոյս նոցա. քանզի ՚ի նիւթոյ փայտից են կուռքն. չեն ինչ անտի օգնականութիւն գտանելոց։

« Բայց դու, Իսրայէլ, ծառայ իմ, Յակոբ՝ զոր ընտրեցիդ »։ Այլ քաջալերս իմն տայ նոցա, եթէ ոչ իբրև զայնոսիկ իցեն՝ որ ՚ի կուռսն յուսացեալ էին. զի նոցա Աստուած է յոյս, և ոչ կուռքն. և ՚ի նախնիսն խիզախեցուցանէ անուամբն Իսրայելի և Յակոբայ։ Տե՛ս զհաստատութիւնս օգնականութեանցն. « Ծառայ իմ, ասէ, զոր ընտրեցի, զաւակն աբրահամեան՝ զոր սիրեցին ». զի մի հպարտացուցանիցէ զնոսա։ Եւ նա ասէ սիրեցի զԱբրահամ. և դոցա զինչ օգուտ իցէ. զի զնոյն նախանձ յանձին ունիցին։ Եւ նշանակ սիրոյն այն է, « Որում օգնական եղէ, ասէ, ՚ի ծագաց երկրէ և դիտաց նորա կոչեցի զքեզ »։ Այսինքն ՚ի միջոյ իշխանաց նորա։ Եւ զի մի ասիցեն, եթէ մինչ ՚ի մերում աշխարհին էաք, և տաճարն կանգուն կայր, յորում նմա պաշտօնն մատուցանէր, յայնժամ ՚ի ձեռս ետ, և արդ յօտար երկրէ կոչիցէ. և ասէ գիտիցեմք զայդ[1]. այժմ, ասէ, լինելոց է. քանզի և առ նախնեաւն ձերով եղև այդպիսի ինչ. զի ՚ի Պարսկաց երկրիդ օգնեցի նմա, զի և նա անդր էր. զի թէպէտ ոչ ՚ի գերիս, սակայն ՚ի վիշտս. և տեսի զհանդերձեալն՝ իբրև զլեալ ինչ, ասէ. և ասացի, ասէ, թէ ծառայ իմ ես դու։ Զիք ինչ այսպիսի ազնուականութեան համեմատ. « Ծառայ իմ ես, ասէ, դու՝ զոր ընտրեցիդ »։ Ոչ եթէ որպէս մեր ոք՝ արծաթագին ընտրեցի զքեզ, ասէ. զի որ ընտրանաւն ինչ ոք իցէ, աւելի իմն պատուական է, և աւելի գութ կայ ընդ նմա այնր՝ որ ընտրիցէն. զայլ ազգս, ասէ, խոտեցի, և զքեզ միայն ընտրեցի։

« Մի, ասէ, երկնչիր, զի ընդ քեզ եմ ». մեծ մխիթարութիւն։ « Մի խաբիր, զի ես եմ Տէր Աստուած քո, որ զօրացուցի զքեզ և օգնեցի, և զգուշացայ քեզ »։ Զառաջին երախտիսն յիշեցուցանէ. միթէ չունիցիս օրինակ առաջին սիրոյն. նա և Դաւիթ ասէ.

1 Այսպէս յօրինակին։

Միթէ յաւիտեանս մերժեսցէ Տէր, և ոչ ևս յաւելու-
ցու 'ի գթալ։

« Եւ զգուշացայ քեզ աջով իմով արդարով »։ Մի-
թէ զի իմ իցես՝ վայրապա՞ր ինչ օգնիցեմ քեզ. այլ
արդարութեամբ. զի և այս իսկ հաւատարիմ գործ է
ձեռին իմոյ, չհարկանել ընդվայր զայնոսիկ՝ որ 'ի
ըկանս ինչ կայցեն. որպէս զի թէ արդար իցէ աջս իմ,
ապա և դուք պարտիք վայելել առ յիմմէ օգնականու-
թենէն։

« Ահաւասիկ ամաչիցեն և պատկառիցեն ամենայն
հակառակորդք քո, զի եղիցին իբրև զչեղեալս. կորի-
ցեն ամենայն դատախազք քո. զի ես եմ Աստուած,
որ ունիմ զաջոյդ քումմէ »։ Զի թէպէտ սակաւաւոր
և որդն իցես, սակայն 'ի մօտ առ զմեծ զօրավիգն օգ-
նականութեան. մի 'ի մօտաւոր վիշտսդ հայիցիս, այլ
զի զմեծազօր զօրութիւնն 'ի միտ ունիցիս։

« Ահա աւասիկ արարի զքեզ իբրև զանիւս նորս
սղոցաձև կամնասայլից »։ Իսկ այլքն՝ սրաբերանս
ասեն։ « Կասեսցես զլերինս և մանրեսցես զբլուրս »։
Եւ արդ, լերինք և բարձունք կասուցմն. այլ բազ-
մութիւնք զօրաց։ « Բայց դու ուրախ լինիցիս 'ի Տէր».
իսկ այլքն՝ Ցնծասցես, ասեն, 'ի Տէր։ Եւ զինչ իցէ 'ի
Տէրն ուրախ լինել. զի ոչ ընդ ինչսն, և ոչ ընդ յաղ-
թութիւնս, այլ ընդ գութն Աստուծոյ ուրախ լինի-
ցիս. զի նա ինքնին եղև քեզ օգնական։

« Ցնծասցեն տնանկք և կարօտեալք. խնդրիցեն
ջուր և ոչ իցէ »։ Փոխանակ ասելոյ, եթէ «խնդրիցեն
ջուր և ոչ լիցէ », մարթի իմանալ եթէ կարօտեալքն՝
որ խնդրէին ջուր, և ոչ էր։ « Եւ լեզուք նոցա 'ի
ծարաւոյ ցամաքեսցին։ Եւ ոչ թողից զնոսա, այլ բա-
ցից 'ի վերայ լերանց գետս, և 'ի մէջ դաշտաց աղ-
բերս. և արարից զանապատն 'ի ճախիճս, և զերկիրն
ծարաւուտ 'ի վտակս։ Եւ բղխեցուցից 'ի պասուք եր-
կրի անդ՝ զմայրն և զնոճն, զմուրտն, զսարդն և զսա-
րոյն. զի տեսցեն և գիտասցեն, եթէ ձեռն Տեառն
արար զայս ամենայն »։ Տեսանե՞ս, որպիսի՜ ինչ փոյթ
է Աստուծոյ, ոչ միայն զբարիսն պարգևել, այլ և յայտ
առնել եթէ ինքն է՝ որ պարգևէն. զի մի ինքնադէպ
ինչ կամ մարդկեղէն յաջողութեանցն իրքն կարծի-

ցին. այլ ճանաչել եթէ ըստ աստուածեղէն տեսչու-
թեանն և խնամոյն լինի այսպիսի բարութիւնք։ Քան-
զի մարդկեղէն իմն է վշտանալն և դարձեալ 'ի բարիս
հասանել, զերկոցունց կողմանց փութացուցանել
զպատճառս՝ թէ 'ի վերուստ են։

« Մերձեալ են դատաստանք ձեր, ասէ Տէր Աս-
տուած, մերձեցան խորհուրդք ձեր, — այսինքն կռոցն
յանդիմանութիւնք, — ասէ թագաւորն Յակոբայ. արդ
մերձեցին պատմեսցեն ձեզ՝ որ ինչ անցք անցանելոց
են ընդ ձեզ. կամ առաջինն զինչ իցէ, աղէ՛ ասացէ՛ք,
և դիցուք 'ի մտի և ծանիցուք, եթէ զինչ առաջին,
զինչ միջին, զինչ այն՝ որ լինելոց է առ յապա »։ Քանզի
'ի ժամանակի գերութեան Հրէից գոգցես կռոցն
իմն յաղթութիւն համարէին, արդ, ասէ, դատ դնեմ
ընդ ձեզ. վախճան է իրացն՝ որ ելին 'ի գլուխ. զի ես
թէպէտ և ածի զպատիժսն, սակայն յառաջագոյն 'ի
սկզբանէ պատմեցի. իսկ նոքա և ոչ հուպ լինել իշ-
խեն. և զիա՞րդ. քանզի անշարժք են։ Թող թէ ասել
յառաջագոյն զհանդերձեալս ինչ, և շարժել իսկ չը-
կարեն. իսկ ես ոչ միայն յառաջագոյն ասացի, այլ և
զճանապարհն ես ցուցի՝ ընդ որ փախստեայ գնայցեն։
Եւ արդ, ասիցեն զառաջինն. եթէ զառաջինն չասի-
ցէք, ապա վասն հանդերձելոցն չէ ապաստան ումեք
'ի ձեզ լինել. և չէ իսկ կռոց զհանդերձեալս պատմել,
նա և ոչ դիւաց իսկ, յորոց անուն կուռքն կանգնեցին.
բայց Աստուծոյ, որ ասէ յառաջագոյն, և զնոյն կա-
րող է 'ի գլուխ հանել։ Եւ արդ, առ յամօթ պաշտօ-
նէիցն ստիպէ պատուհաս առ կուռսն և առ դևս։

« Պատմեցէք զառաջինսն, գուշակեցէք զհանդեր-
ձելոցն՝ զի գիտասցուք. եթէ աստուածք իցէք, բարի
արարէք, չար արարէք. և զարմասցուք և տեսցուք՝
եթէ ուստի՞ իցէք դուք, և ուստի՞ իցէ գործուածն
ձեր. զի յերկրէ պիղծս ժողովեցին զձեզ »։ Յերկուս
դէմս եդ զբանն, վասն նախագիտութեան և վասն ե-
րախտեացն և պատժոց, որ Աստուծոյ միայն գործ է
և ոչ դիւաց։ Եւ դևք, ասեն, չառնիցեն ինչ այսպիսի.
և ոչ ուրեք, բայց եթէ Աստուած թոյլ տայցէ. իսկ
եթէ Աստուած թոյլ տայցէ, և ես կարեմ գործ ինչ
գործել։ Եւ ընդ այս զի՞ զարմանայցես, եթէ մարդկան

չկարիցեն մեղանչել առանց Աստուծոյ հրամանին, ուր և խոզից և շանց չկարացին վնաս առնել. որպէս յԱւետարանէ իսկ և 'ի Յոբայ ուսանիմք։

« Եթէ ուստի՞ իցէք դուք, կամ ուստի՞ գործուածն ձեր. յերկրէ պիղծս ժողովեցին զձեզ »։ Եւ արդ զի՞ պիտիցի ասել զայս, զի այն իսկ շատ է՝ գիտելն եթէ ուստի՞ իցէք. չեն ինչ պէտք ատենի և ընտրութեան. յերկրէ էիք, այլ ոչ եթէ յերկրէ պիղծք էիք, այլ եղերուք պիղծք. զի ուստի բնութիւնն ձեր էր՝ չէր պիղծ բնութեամբ։ Եւ յետ խայտառակելոյ զնոցա տկարութիւնն, ապա յայտ առնէ զիւր զօրութիւնն. « Ես, ասէ, զարթուցի 'ի հիւսիսոյ զԱստրեստանեայն, և յարևելից զԲաբելացին. կոչեսցին յանուն իմ, եկեսցեն իշխանք, և իբրև զկաւ բրուտի՝ այնպէս կոխեսցին »։ Այսինքն 'ի դարձին որք ոչ կամիցին զելանելն նոցա 'ի Բաբելոնէ։ « Ո՞վ է այն՝ որ պատմեսցէ ձեզ զառաջինն, զի գիտասցուք. և զյետինսն, և ասասցուք եթէ արդար է »։ Եւ զի՞ պիտոյ իցէ ասել, եթէ յառաջագոյն չասէք. զի և զայլոցն ևս ասացեալս ոչ լսէք։ Եւ թերևս ասիցէ ոք, եթէ ընդէ՞ր զայդ ամենայն առ պատկերսն ճարտարաբանես, ով մարգարէդ, և զօրութիւնս՝ որ բնակեալ են 'ի նոսա՝ չառնուս 'ի միտ, որք յառաջագոյն ասեն, և չառնեն և բարի[1]. և խեցեղէնք և փայտեղէնքն՝ իբրև առաջնորդք իմն են մարդկան առ նոսա, և մարգարէդ ընդ անմռունչսն ևեթ վիճի, 'ի նմանութիւն մանկտոյ՝ որ խուճապեալ խուսափիցեն։ Եւ արդ, զի՞նչ իցէ ասել առ այս. զի նախ՝ զգիտութիւնն իսկ անմարմնաւորացն յետոյ հայթայթեցէք իմանալ. և առաջինքն ամենեքեան զպատկերս ևեթ պաշտէին. և մինչև յանդիմանեալ էին անմռունչքն, չէր ումեք փոյթ զծածուկ ինչ զօրութեանց. և վասն այնորիկ մարգարէն ընդ նոսա վիճի, զի զնոսա առ աստուածս ունէին, և ստէպ յանդիմանէ, եթէ մերձեսցին, պատմեսցեն։ Իսկ եթէ առ դևս ինչ պիտոյ իցէ ասել, սակայն և յայնմանէ ոչ ինչ զանգիտասցուք յիրացն իսկ գործելոց փորձոյ։ Պաշտէին հրեայք զդևս, և այնպիսի ինչ պաշտօն, զի զուստերս

1 Այսպէս յօրինակին։

զենուլին և զդստերս զոհս մատուցանէին. և 'այնպէս դիւացեալք՝ զի յաղխմն և 'ի ծնունդս ոչ խնայէին. և զՀայրենի Աստուածն Թողուին՝ զբարերարն և զերախտաւորն, որ ազգի ազգի խնամս դարմանոց նոցա մատուցանէր. և զդևսն վնասակարս մեծարէին և ոչ զպարգևատուն Աստուած: Եւ արդ տեսցուք, եթէ օգնեցի՞ն ինչ նոցա դևքն, զորս մեծամեծարս պատուէին քան զԱստուած. և ոչ ուրեք. այլ 'ի ձեռս ետուն, և 'ի տանջանացն 'ի պատժոց չկարացին ապրեցուցանել: Եւ ոչ միայն յօտար երկրի ինչ չօգնեցին [1], այլ և ոչ անդէն յաշխարհին. և ոչ յառաջագոյն ինչ գուշակեցին. և զոր մարգարէքն գուշակեցին՝ զայն [2] եւ սուտ կամէին առնել:

Նա Թէ կամիս՝ և զՀեթանոսաց ինչ պատմութիւնս պատմեցից: Եկն եհաս երբեմն պատերազմ 'ի վերայ Եղլադացւոց աշխարհին, և արշաւեաց առ զբազում քաղաքս Պարսիկն. այլ Թերևս ասիցես, եթէ և յայնժամ ապրեցուցին 'ի Թշնամեացն. առասպելս պատմես և շատխօսութիւնս մարդկան. զի ոչ եթէ յայտնութիւն ինչ երևեցաւ և ապրեցան, այլ իմաստութիւնն առն Թեմիստոկղեայ, զի զնաւամարտիկ հնարս հնարեցաւ. սակայն այնչափ ջանալով Թէպէտ և զմարդիկն ապրեցոյց, սակայն զքաղաքն հրձիգ արարին. այլ ոչ որպէս մեր Աստուածն, որ հարիւր և ութսուն հազար արս՝ արկ տապաստ 'ի միում վայրկենի: Նա և ոչ բամբասէին ինչ զնոսա քուրմքն, եթէ ծոյլ ինչ իցեն առ մեհեանսն պատկերացն. և ամենեքեան ամենեցուն Թշնամիք էին. զմիմեանս հարկանէին և 'ի միմեանց կոտորէին առ ագահութիւն, և ոչ առ ծուլութեան ինչ՝ զոր առ կուռսն ցուցանէին: Ընդէ՞ր ոչ յառաջագոյն գուշակեցին զգալուստն Քրիստոսի. ընդէ՞ր և այժմ ոչ վաղագոյն ինչ ազդեն, այլ կարկեալ պաշարեալ են ամենայն ըղձականն դիւթութիւնք. միթէ չիցե՞ն քուրմք և մոլիք, միթէ չիցե՞ն իղձք և դիւթք. այլ և կարի շատ: Ո՞չ վասն այսորիկ յամենայնի ապրեցաք 'ի բազում չարեաց, և բազում

1 Յոր. Օգնեցին:
2 Յոր. Եւ զոր մարգարէքն գուշակէին, յօտար գրէ:

կեանք հեշտականք շնորհեցան մեզ. ոչ մարտք, ոչ պատերազմունք, և ոչ այլ ինչ նոյնպիսիք առ մեզ. և կանխասացութիւնք ինչ չեն պիտոյ. զի և այնպիսի վարս ինչ շնորհեաց մեզ, որք և առանց կանխասացութեանն կարող են 'ի զգուշութեան պահել. և յայտ է եթէ կանխասացութիւնքն վասն զիջանելոյ ևեթ էին Աստուծոյ ըստ մարդկան: Եւ արդ զի՞նչ ինչ պէտք կանխասացութեանցն իցեն, յորժամ մեք գուշացեալ զգուշութեամբ կեցցեմք. իսկ արդ ձեզ ոչ ինչ այսպիսի:

« Սկիզբն տաց [1] Սիոնի »: Այսինքն որպէս 'ի սկզբանէն էին, նոյնպէս արարից և 'ի դարձին: « Եւ զԵրուսաղէմ մխիթարեցից 'ի ճանապարհին. զի 'ի հեթանոսաց ահա աւասիկ և ոք ոչ »: Զի ոչ երբէք 'ի նոցանէ մխիթարեաց զնա. նա և վասն այնորիկ թոյլ ետու երթալ նմա անդր, զի ուսանիցի զտկարութիւն կռոց նոցա: Զի՞ ողոքես աստ առ իս զկուռսդ. երթ անդէն ողոքեսջիր, և ապա գիտասջիր, եթէ կարօղ ինչ իցեն, և եթէ ոչ. երթ, ողոքեա ըստ նոցա կրօնիցն, և ապա առնուցուս 'ի միտ զտկարութիւնն նոցա:

## ԳԼՈՒԽ ԽԲ

« Յակոբ ծառայ իմ, օգնական եղէց նմա. Իսրայէլ ընտրեալ իմ, զոր ընկալաւ անձն իմ »: Որպէս և Դաւիթ ուրեք ուրեք Քրիստոսի և Սողոմոնի դէմս դնէ, թէպէտ և 'ի Սողոմոն կարծեցուցանիցէ ճառել, այլ 'ի Քրիստոս հանէ զմարգարէութիւնն. սոյնպէս և աստ 'ի դէմս Յակոբայ և Իսրայելի՝ զՈրդւոյ ճառս 'ի մէջ բերէ: Եւ չեն ինչ զարմանք, զի եթէ որդիք Աստուծոյ և աստուած կոչին մարդիկ, որպէս և Աստուածն և Որդի Աստուծոյ՝ կոչի մարդ և Որդի մարդոյ: Եւ եթէ ընդ այսպիսի անուամբք ծածկեալ է մարգարէութիւնս՝ իբրև զմարգարէութիւն, սակայն 'ի

1 Յոբ. Տա: Ի բնագրի Ս. Գրոց դնի. Սկիզբն արարծոց Տեառն:

միտ պարտիմք առնուլ զճշմարտութիւնն. մանաւանդ զի յազգէ իսկ նոցա ծագելոց էր Քրիստոս. վասն այնորիկ ընդ անուամբքն նոցին մերթ թագնու, մերթ յայտնի: Եւ զօգնականն լինել՝ ըստ տնտեսութեանն իմանամք, և ոչ ըստ աստուածութեանն, զի անկարօտական է աստուածութիւնն: Եւ զհրեշտակին զօրացուցանել տեսլին օրինակաւն ըստ մարմնաւորութեանն իմանամք, և ոչ ըստ աստուածութեանն. զի որ զամենայն ունի, զիա՞րդ էր՝ զի ծառային օգնականութեանց կարօտանայր. ըստ այնմ, եթէ Ամենայն ինչ նովաւ հաստատեցաւ եկաց. և եթէ ամենայն ինչ նովաւ հաստատեալ եկաց, զիա՞րդ էր՝ զի 'ի հրեշտակէն զօրանայր:

« Եդու, ասէ, զոգի իմ 'ի վերայ նորա »: Այս առաւել սիրոյն Աստուծոյ նշանակ է, որ նովաւ 'ի մեզ սփռեցաւ. ըստ այնմ որ Առաքեալն ասէ, եթէ Սէրն Աստուծոյ հեղեալ է 'ի սիրտս մեր: Եւ չէ ինչ մարթ զայնպիսի պարգևս ընդունել, եթէ ոչ նախ սրբեսցին ոգիքն. զի որպէս ինքն՝ որ ընկալաւ զՀոգին յօրինակ միայն, և ոչ զի կարօտութիւն 'ի յիւր մարմնաւորութիւնն, նոյնպէս կամի զամենեսեան լինել սուրբս, զի արժանի լինիցին լինել տաճար և բնակութիւն Հոգւոյն:

« Դատաստան հեթանոսաց հանցէ »: Եւ արդ, մեկնութիւն ինչ խնդրիցէ բանս. քանզի անխտիր կեանք էին առաջնոցն, որդիք ընդ մարս խառնակէին, և դստերք ընդ հարս պղծէին, զմիմեանս կոտորէին, միմեամբք մեռանէին, զգազանաց զբարս յանձին ցուցանէին, նա և դժնդակագոյն քան զգազանացն. այլ այժմ ոչ այսպիսի ինչ. այլ գայլք և գառինք 'ի միասին հանգչին, և ինձք՝ առ ուլս մակաղին, ըստ այնմ, եթէ Ի Սիովնէ ելցեն օրէնք, և բան Տեառն յԵրուսաղէմ:

« Եւ դատեսցի 'ի մէջ ազգաց »: Այսինքն ընտրութիւն արասցէ 'ի մէջ կրօնիցն նոցա: Եւ արդ երկու ինչ սքանչելիք եղեն, զի զչարիսն յետս ընկեցին, և զգաստութիւն յանձին կալան: Եւ Հրեայքն՝ որ միշտ զօրինացն խօկային և 'ի մարգարէսն թևակոխէին, վրիպեալք գտան 'ի ճշմարտութենէն՝ իւրեանց հեա-

տութեամբն, և հեթանոսք՝ որ քան զանասուն ես անխօսագոյնք էին, 'ի գլխաւոր առաքինութիւնսն հասին։ Եւ բարիոք ասաց, եթէ հանցէ, և ոչ ասաց, եթէ արացէ. զի որ էր դատաստանն և ծածկեալ էր, զայն եկն յայտնեաց. ըստ այնմ. Ահա աւասիկ ել որ սերմանէր սերմանիս։ Իբրև զբարի ինչ պարգևսն՝ 'ի հայրենի գանձուցն հան բաշխեաց զկրօնս աստուածածանօթս, որ քան զամենայն ոսկի և զականս պատուականս և քան զթագ և զծիրանիս թագաւորութեան պատուականագոյն. և զպսակն արքայութեան խոստացաւ, և վասն հանդերձեալ դատաստանացն յիշեցոյց, և սանձս եդ յերախս հոգւոց մերոց՝ զերկիւղ դատաստանաց. պէսպէս առաքինութեամբ զարդարեաց զմիտս մեր, զանօրէնութիւնս կարեացն, որ զմեզ յուզլիւքն ցանկութեան լլկութեան լլկէին՝ շիջոյց։ Եւ զի՞նչ ինչ բարութիւնս ոչ կատարեաց. ոչ միայն զդատաստանացն ճառեաց, զի այն հանդերձելոց ժամանակացն էր, այլ և զաստիս ևս յայտնեաց, յորժամ վասն աշտարակին՝ որ անկաւ և կալաւ զբազումս՝ ճառիցէ. և վասն որոց և Պիղատոս խառնեաց զարիւն ընդ ողջակէզս։ Զի ոչ 'ի հնումն զհանդերձելոցն լռեաց, և ոչ 'ի նորումն զմօտաւորս թաքոյց, այլ եցոյց եթէ յիւրաքանչիւր յօրէնսդրութեան՝ զիւրաքանչիւր զօրութիւն ունին։

« Ոչ աղաղակեսցէ և ոչ անսաստեսցէ »։ Եւ այնու զհեզութիւնն յայտ առնէ, եթէ ոչ բռնութեամբ ինչ կամ ճոխութեամբ, այլ հեզութեամբ և հանդարտութեամբ արասցէ զամենայն ուղղութիւնս։ Զի՞նչ պէտք էին աղաղակելոյ նմա, որ զայնպիսի զգաստութիւնս ուսոյց. զի՞նչ ինչ խռովութիւն ոչ եղև նորընծայ ուրուք 'ի սնապարծ կրօնից. այլ ոչ եթէ նորայն այնպիսիք ինչ իցեն, այլ մեղմով իմն, անոտնաձայն առնելով։

« Զեղէգն ջախջախեալ մի՛ փշրեսցէ »։ Եւ այն իսկ են զարմանք, որ զայնչափ ուղղութիւնս՝ այնչափ հանդարտութեամբ կատարեաց, և ոչ ումեք եղև տաղտկալի՝ որ այնչափ ծանրագոյնս և խիստ կրօնս քարոզեաց, և ոչ տաղտկացաւ և ոչ զերեսս դարձոյց։ Տե՛ս, որպիսի՛ ինչ է զօրութիւնն հեզութեան։ Եւ ո՞ւր կա-

տարեցաւ այս. առ Հրեայս. զի Նոքա իսկ էին եղեգն ջաղջախեալ. որչափ ինչ պատերազմունք և կռուածք յետ դարձին գործեցան, մինչև ձորք անգամ արեամբ լնուլին, և մարմինք անկելոց զլերինս ծածկէին։ Այլ հաստատութիւն և անշարժութիւն կրօնից յայնժամ լինի, յորժամ ոչ բռնութեամբ և ոչ սաստիւ և ոչ ծանրատաղտուկ 'ի մարդկան վարս մտանիցէ ինչ հրաման. յայնժամ յարդարին կարգք, յորժամ ոչ հակառակութեամբ ինչ լինիցի։

« Եւ զպատրոյկն ծխեալ մի՛ շիջուսցէ »։ Իսկ այլ թարգմանքն ասեն. Զպատրոյկն առկայծեալ մի՛ շիջուսցէ. զոր ոմանք յօրէնս առակեցին, և զեղէգն 'ի ժողովուրդն։ «Այլ հանցէ 'ի ճշմարտութիւն »։ Զի՞նչ իցէ ճշմարտութիւն [1]. զի յայտնեսցէ զմարդկան ստութիւն, եթէ ոչ ինչ ունի ճշմարտութիւն, այլ թէ ամենայն կարեօք և ընդունայնութեամբ լի է. զի յառաջ քան զայն ժամանակ ոչ ինչ ոք 'ի ճշմարտութիւն փութայր, այլ ամենեքեան հարեալ հատեալ էին 'ի ստուերական և յերազական իրս։ Այլ մարթի իմանալ և զայլ իմն դատաստանացն և զվրիժուց. ըստ այնմ, եթէ Այժմ դատաստան է աշխարհիս, այժմ իշխան աշխարհիս [2] այսորիկ ընկեսցի արտաքս. և ես բարձրացայց։ Ասեան մեծ ժողովլ, քանզի ինքն կամեցաւ Աստուածն. զի եթէ իւր չէր կամեցեալ, ոչ ոք լինէր նմա տուող. որպէս ոմն ասէ զբանն իմաստուն, եթէ Ո՞վ ասիցէ ցնա, եթէ զի՞նչ գործեցեր։ Բայց սակայն թէպէտ և այնպէս 'ի վեր էր քան զամենայն, հեզութեամբ տայր պատասխանի, և իրաւունս՝ ոչ մեզ միայն, այլ դիւին իսկ չարի, զի մի՛ ոք ասիցէ եթէ անիրաւ ինչ դատապարտեցաւ. քանզի իրաւամբք առնէր ընդ իւրև մահ զմարդիկ, զի մեղանչէին, և իբրև զպատժապարտս բռնադատեալ կորզէր զնոսա յինքն։ Իսկ Քրիստոս ինքն իսկ. Այժմ դատաստան է աշխարհիս. այսինքն՝ վրէժխնդրութիւն մարդկեղէն բնութեանս։ Գրեսջիր թէ զայլսն ամենեսեան ունէիր իբրև զպատժապարտս մեղաց, յԱստուծոյ յՈրդին

1 Յօր. Զի՞նչ իցէ ճշմարտութիւն, յօտար գրչէ։
2 Յօր. Այժմ իշխան աշխարհիս. յօտար գրչէ։

զիա՞րդ իշխեցեր ժտել. Որ զմեղս ոչ արար, և ոչ գտաւ նենգութիւն 'ի բերան նորա. զիա՞րդ գրգռեցեր արկանել զնա ընդ պատժովք, ով բանսարկու։ Եւ զի նա գրգռեաց, լո՛ւր այնմ՝ որ ասէր, եթէ Սատանայի իսկ արկեալ էր 'ի սիրտն Յուդայի։ Նա կազմեաց զմեքենայս, նոյն գործեաց զոճիրսն՝ զի սպանանել մատաբերիցեն զօծեալն Աստուած։ Զի եթէ բանս պահանջիցիս և հարցանիցես, ով բանսարկու, եթէ ընդէ՞ր սպաներ, զի՞նչ ինչ յանցանս գտեր 'ի նմա, դատապարտելոց ես և վրէժս պահանջելոց, և զայլոյն ես ամենեւին 'ի դուրս տայցես։ Արդ վրէժխնդրութիւն եղև աշխարհի, քանզի անպարտն իբրև զպատժապարտ մեռաւ, զի զայլս՝ որ ըստ պատժոցն մեռեալ իցեն՝ կենդանացուսցէ։

« Այլ հանգէ 'ի ճշմարտութիւն զդատաստան »։ Ոչ վայրապար և ոչ դոյզն ինչ իրաց վասն՝ եբեր 'ի մէջ զճառ դատաստանին, այլ բարւոք ասաց եթէ 'ի ճշմարտութիւն հանգէ. քանզի մարդկան դատաստան ոչ երբեք ճշմարտութեամբ վճարի, ոչ միայն առ 'ի զիրաւունս կորուսանելոյ, այլ թէպէտ և ազատ 'ի կաշառոց և 'ի պատարագաց իցէ և 'ի ցասմանէ և 'ի թշնամութենէ, բազում անգամ ինքն իսկ բնութիւնն տկարանայ արդ՝ զարժան իրացն գտանել, կամ թէ 'ի վերայ իրաց ինչ չհասանիցէ, կամ թէ վկայք արդարք 'ի միջի չգտանիցին. այլ այն միայն դատաստան ճշմարիտ է՝ յորում և զծածուկս մտաց մերոց գիտէ Աստուած, որ զամենայն արդարութեամբ քննէ. յորժամ զամենայն ճշմարտութեամբ գիտիցէ, և ոչ ըստ կարեաց ինչ, կամ առ թշնամութեան, կամ առ 'ի շնորհել ինչ ումեք զվճիռն տայցէ. այլ այնպիսի ինչ ճշմարտութիւն է 'ի դատաստանին, զի ինքեանք իսկ փաստակարքն և պատժապարտք անձամբ անձանցն տայցեն զվճիռն։ Զի՞նչ ինչ ճշմարտագոյն կայցէ քան զայնպիսի ատեան. և դուք ձեզէն իսկ գիտէք ամենեքին՝ զի ոչ ոք 'ի փաստակարաց անձամբ յօժարէ խոստովանել զփաս, այլ ջանայ ծածկել զյանցանս. իսկ յայնմ դատաստանի ոչ այնպիսի ինչ, այլ ինքեանք անձամբ անձանց տան զվճիռն։ Նա և աստէն իսկ գործեցան երբեմն այսպիսի իրք առ Դաւթաւ. Ես, ասէ, հովիւս մեղայ,

և ես չարչարեցի. դոքա խաշինդ զի՞ արարին: Եւ զի մի՞ առիցես եթէ 'ի պատժոցն բռնադատեցաւ այսպիսի բանս խօսել, որպէս որք տանջիցին, և զանձանց ինչ վնաս ոչ գիտացին, այլ զանձին գատոյս¹ բերել, առնիցեն զանձինս վնասակարս: Ոչ այսպիսի ինչ և արդարն, այլ մինչ այլք 'ի պատիժս էին, և նա արտաքոյ տանջանացն՝ յանձն ձգէր զպատուհասն՝ ասելովն, եթէ Ես հովիւս մեղայ: Եւ Կային ասէր, եթէ Մեծ է վնաս իմ՝ քան զթողութիւն. և զայն մինչև ընդ պատժովք մտեալ էր: Եւ Ադամ Թաքեաւ, զի Թաքչելովն յայտ առնիցէ զյանցանսն: Կամքս և 'ի գեհենի այսպիսի ինչ տեսանել. յորժամ լուաւ մեծատունն, եթէ Դու ընկալար զբարութիւնս, ոչ դիմադարձեաց, և ոչ իրաւունս ինչ կամեցաւ ցուցանել: Եւ մի ոք ասիցէ, եթէ զայն՝ ահ դատաւորին առնէր, զի տեսանեմք զայլս՝ որ ընդդէմ դարձան և ըմբերանեցան: Ո՞չ ինքն իսկ դատաւորն անդ մօտ էր. զի յորժամ վասն միոյ տաղանդի պատուհասէր, տեսցուք, զինչ տացէ պատասխանի. Գիտէի, ասէ, եթէ այր մի խիստ ես: Ո՞վ հեզութիւն և հանդարտութիւն դատաւորին, որպիսի՞ բանից տանէր. Գիտէի, ասէ, եթէ այր մի խիստ ես: Զորպիսի՞ ոք դատաւոր զայրացուցանիցեն այսպիսի բանք. այլ զնա միայն: Եւ այլուր իբրև իրաւունս տալով, թէ ժողովուրդ իմ, զի՞ արարի քեզ, կամ զի՞ տրտմեցուցի զքեզ, տուր ինձ պատասխանի. և այլուր ոչ զմօտաւոր ինչ իրաց, այլ զանցելոց տայ զիրաւունս. Զի՞նչ գտին, ասէ, յիս յանցանք հարքն ձեր: Եւ Յովնանայ 'ի մեղադիր լինել յիրաւի, եթէ Դու խնայեցեր 'ի դդմենիդ, յոր ոչ վաստակեցեր, և ես ո՞չ խնայիցեմ 'ի Նինուէ քաղաք մեծ, յորում բնակեալ են աւելի քան զերկոտասան բիւր: Տեսանե՞ս, զի ամենայն ուրեք իրաւունս տայ մեզ. նա և սատանայի ևս արժանի առնէ իրաւունս տալ. Հայեցա՞ր, ասէ, 'ի ծառայ իմ Յոբ. զի ոչ գոյ ըստ նմա մարդ արդար, ճշմարիտ, աստուածապաշտ: Այլ տեսցուք և առ այնս՝ զոր 'ի գեհեննն հրամայէ. և անդ յառաջ իրաւունս տայ, և ապա 'ի տանջանսն հրամայէ. զի յորժամ չունիցին ինչ տալ պա-

¹ Այսպէս յօրինակին. յստակ դրչէն 'ի վերոյ եգեալ գոգոյս:

տասխանի, ապա առաքիցէ 'ի տանջանս. որպէս որ զհանդերձս աղտեղիս ունէր, և որք ոչն կերակրեցին զնա, և որ այլ ևս այնպիսիք ոք գտանիցին։ Եւ ոչ վայ-րապար, այլ յորժամ ամենայն աշխարհք 'ի մի վայր ժողովեալ իցեն, յայնմ ժամանակի ատեան առնէ, և մեծաւ հեզութեամբ տայ իրաւունս տանջանաւո-րացն, եթէ յիրաւի ըստ իւրաքանչիւր յանցանաց տանջելոց են։

« Ծագեսցէ և մի՛ շիջցի »։ Զի խաչն այսպէս իմն կարծէր եթէ խափանիչ լինելոց իցէ քարոզութեանն. բարիոք ասաց եթէ ծագեսցէ, որ առ ժամանակ մի կարծեցաւ եթէ շիջանելոց իցէ, և նոյն մեծապայծառ ծագեաց։

« Մինչև դիցէ յերկրի զդատաստանն. և յանուն նորա հեթանոսք յուսասցին »։ Տեսանե՞ս զհանդեր-ձեալ դատաստանին շահ. զի յորժամ ճառք հանդեր-ձեալ դատաստանին յերկիր ճառեցան, ոչ օրէնք թա-գաւորաց կարացին յաղթել, և ոչ սպառնալիք դա-տաւորաց. ոչ քերանք և ոչ տանջանք, ոչ մահ, ոչ այլ ինչ խորամանկութիւնք, այլ խրատ միայն և յօ-ժարութիւն կարգեցին ընդ ամենայն աշխարհ ուղիղ օրէնս։ Զի թէպէտ և կռապաշտք իցեն և վայելիցեն այսպիսի օրինօք, քրիստոնէից ունիցին շնորհ, եթէ ոչ վասն կրօնից՝ որ զԱստուած ծանուցանիցեն, սակայն վասն բարիոքն օրինաց. զի զչար վարս նոցա 'ի լաւու-թիւն դարձուցին, և սրբեցին զերկիր յայնպիսի չա-րեաց. և թէպէտ 'ի բաց առ զքրիստոնէութիւն, և անդէն եղծանես զօրինեալ խաղաղութիւնն։ Ո՞րչափ ինչ յոռութիւնք խափանեցան. և զայն մի՛ ասեր, եթէ ընդէ՞ր իսկ ոչ բնաբարձ եղեն չարիքն. այլ յայն հա-յեաց, եթէ ո՞չ սաստկութիւն, և ո՞չ բռնութիւն զի-ջաւ. ո՛րչափ շնութիւնք անհնարինք արգելան. յորպի-սի՛ անմարդութեան էին յառաջ քան զայն ժամանակ, յորպիսի՛ աղէտս. և զայն ոչ ասեմ, եթէ 'ի գրոց ինչ ուսանիցիս, այլ անդստին 'ի վիպասանացն՝ որ զառա-պելսն գրէին. ո՛րչափ սուգք և սուրք և սասանութիւնք. և զգողութիւնս պարծանս համարէին. և այն ևեթ խնդրէր՝ եթէ միայն գող ոք իցէ, և ոչ ինչ էին նա-խատինք. յորժամ և զհերմեսեայ ևս զանուանուոյն 'ի

դիտ լուիցես՝ եթէ գող էր, և Աստղիկ պոռնիկ. և այսմ և տօնքն ևս վկայեն՝ որ կատարին վասն նոցա, յորոց անուն յայսօր ժամանակի երգեցիկքն Ջնարաւորք պատրաստին: Իսկ առ մեզ ոչ այսպիսի ինչ. այլ նմին հակառակ՝ ոչ միայն զԱստուծոյ, փարգաստք, այլ և ոչ սիրելեաց Աստուծոյ այսպիսի ինչ համբաւք համբաւեին: Ապա եթէ կամիցիս ուսանել, թէ որպիսի ինչ արամուր աղտեղութեանց յառաջնովք կայր, ըղկռապաշտս հարց, և 'ի նոցանէն տեղեկանաս: Եւ այժմ իսկ մոգք, դեւք և մոլիք համարձակեալք 'ի մէջ կռապաշտից, 'ի Տաճիկս և 'ի Պարսս. վասն այնորիկ եթող սակաւ մնացորդս հեթանոսութեան խմորոյն, զի յամօթ պաշտօնէիցն միայն լինիցի: Եւ այժմէն իսկ 'ի տօնսն կապերտակս իմն զերեսօքն պատեն, և փադանս 'ի բերան՝ առ մոլութեանն. և զշան անգամ միս անխտիր ուտեն. և յորժամ հասանէ դևն 'ի մոլին, զգետնի զարկուցանէ, հերարձակ առնէ. զչլուրս և զչլեալս տայ խօսել: Այլ առ մեզ ոչ այսպիսի ինչ, քաւ լիցի. քանզի հեթանոսաց են լկտութիւնք. և զի՞ ևս զայս ասիցեմ, ուր և զարս 'ի կանանց կերպարանս նմանեցուցեալ՝ ածեն շուրջ խայտառակեալ ընդ քաղաքն ամենայն. զինչ ինչ այլ կայցէ քան զայն ծանականս ծանականագոյն: Տես զչար դևն. թէպէտ և 'ի բնէն անկաւ, սակայն զնշմարանս չարեացն ջանաց պահել մինչև ցայսօր ժամանակի. զի այնչափ սաստկացեալ էր յառաջին ժամանակսն մոլորութիւնն, զի և զմարդիկ 'ի կերպարանս շանց կարծեցուցանէին դարձուցանել, և զբանն և զբարբառ շրջէին. և եթէ չհաւատայցես, ասէին, թէ չիցէ շուն 'ի ձայնէդ, հաւատա և կերակրոյն զոր ուտէ. զձայն շան թերևս ջանայցէ ոք ածել, այլ զնոյն կերակուր զիա՞րդ ոք ախորժիցէ: Եւ մոլորելոցն այնպէս թուէր, եթէ զբնութիւնն իսկ դարձուցանիցեն կախարդքն. և զայն ոչ առնուին 'ի միտ, եթէ դև իմն այնպիսի նստեալ 'ի վերայ մարդոյն՝ որ զկերպարանս շան ցուցանէր և զնոյն բարբառ ածէր, և զնոյն կերակուրս ծախէր կերպարանօք: Եւ զայն ամենայն համարձակութիւն խափանեաց Աստուածն մեր. և յայնժամ կատարեցաւ, եթէ « Ցանուն նորա հեթանոսք յուսասցեն », այսինքն 'ի

Քրիստոսի։ Տեսանե՞ս, որպէս և առ կատարածն նմանագոյն ելին իրքն. զի այնմ՝ որ այնպիսի վարս շնորհեաց մեզ, զիա՞րդ ոչ հաւատայցեմք։

Զի՞նչ իցէ, եթէ «Ցանուն նորա յուսասցին»։ Յայնժամ անուն նորա այնպիսի ինչ առնիցէ՝ որպէս ինքն իսկ արար. յորժամ կոչիցես զՔրիստոս, և դևք հալածական լինիցին, զիա՞րդ ոչ հաւատայցես յանուն նորա. և ոչ զի արդ միայն ցուցանէ զզօրութիւնս՝ պարտ իցէ հաւատալ, այլ զի այլոց անմահական կենաց ետ առհաւատչեայ՝ որովք աստն եցոյց ինչ՚ի մեզ զօրութիւնս։

«Այսպէս ասէ Տէր Աստուած, որ արար զերկինս և մածոյց զնա»։ Իսկ այլքն ասեն, թէ Որ հաստատէ կամարս. Սիմաքոս ասէ, եթէ Որ հաստատեացն։ Եւ զի՞նչ իցէ՝ որ մածոյցն. լո՞յծ ինչ բնութիւնս ինչ արդեւք պնդեաց. այլ այնպէս իմն թուի նմանագոյն. զի գոգեացն 'ի վերուստ վասն լոյծ ջուրցն, զի մի՛ 'ի խոնարհ սահիցեն. քանզի յոյժ անօսր իմն և բարակ են իբրև զծուխ, և թանձրացոյց արար սերտ։ Եւ դարձեալ մածոյցն՝ այդպէս իմն թուի թէ ընդ երկիրս կցեաց, զի մի՛ շրջիցի և անկանիցի. և որ ինչ պնդի՝ ընդ իմիք պնդի. և յայտ յասացելոց անտի է. և այսու ոչ եթէ զբոլորակութիւն ինչ յայտ առնէ, և ոչ զգնդաձև ինչ կերպարանս։

«Որ հաստատեաց զերկիր և զամենայն ինչ որ 'ի նմա իցէ»։ Եւ զիա՞րդ անօսր ինչ բնութիւն կարիցէ հանդարտել այսպիսի ծանրութեան լերանց մեծամեծաց և բարձանց. զիա՞րդ ոչ լուծանիցէ, զի յամենայն ժամ ընդ ջուրք կոծի. կամ զիա՞րդ ոչ այրիցի, զի միշտ 'ի բոցոյ բորբոքի. այլ իբրև զվէմ մի հաստատուն եդև նա, և աւելի ևս քան զվէմ ինչ. այն իսկ է, թէ «Որ հաստատեաց զնա և զամենայն ինչ՝ որ 'ի նմա է»։ Նախ զմարդիկ իսկ, զի գիտասցես եթէ յԱստուծոյ ունին զօրութիւն. զի եթէ ոչ վերին տեսչութիւնն ունէր, 'ի վաղուց իսկ հեռէ եղծեալ էին ազգք մարդկան։ Ո՛րչափ վիշտք, ո՛րչափ տառապանք. վասն այնորիկ իսկ ասէ մարգարէն, եթէ Օգնութիւն ինձ 'ի Տեառնէ. ո՛րչափ հոգք, ո՛րչափ տատամնութիւնք, ո՛րչափ տրտմութիւնք, ո՛րչափ նաւաբեկութիւնք. զի եթէ և

մարմինն չեղծանէր, սակայն շունչն թռչէր գնայր՝ առ չժուժալ ծանրութեան հողոյ և տրտմութեան. որչափ տրտմութիւնք և աղէտք, և ոչ թողու և գնայ։ Եւ բազում անգամ թողու և գնայ, զի գիտասցես՝ եթէ յորժամն ոչն թողու և գնայ՝ Աստուծոյ զօրութեանն է գործ։ Երթիցուք և առ անասունս. որչափ վիշտք, որչափ ցաւք և [1] վաստակք, և ոչ լուծանին. վասն որոյ և Պաւղոս ասէ, եթէ Առ այս ծով իցէ բաւական. և դարձեալ, եթէ Որ մխիթարէն զմեզ յամենայն նեղութիւնս։ Զի թէ ոչ՝ի վերին օգնականութեննէն վայելէաք, չէր ինչ բաւական ամենայն իսկ տևելն և բաւել։

« Տայ շունչ ժողովրդեանն, և ոգի՝ որոց կոխիցեն զնա »։ Ահա և այլ իմն. դարմանիչ է ոգւոցն. այսինքն Աստուծոյ տեսչութիւնքն՝ որ ունին պինդ և պահեն։ Զի և մարմինք շնչաւորք են, և են որ անշունչք. յորժամ տեսանիցես գեղեցիկ և տեսական զմարմինն երկնից, մի շնչական կարծիցես, որպէս Յունաց առասպելքն դանդաչեն, եթէ որ ինչ է և կայ և տևէ, առանց շնչոյ չէ. նոյնպէս յորժամ զերկիր տեսանիցես, մի ինչ շնչաւոր համարիցիս վասն կալոյն և տևականութեան. նոյնպէս և զջուրս։ Ահա աւասիկ երկին և երկիր, մին կոխէ և միւսն կոխի, մին շնչաւոր և միւսն անշունչ. զի ոգի՝ մարդկան ետ, և ոչ երկնի և երկրի և ջրոց. և անասնոց՝ շունչք և զգայականք, և ոչ իմաստնականք. և յայտ է, եթէ շնչոցն իմաստնոց և զգայականաց նա է արարիչ։ Եւ մարդկան ոչ եթէ այլ ինչ շունչն իցէ և այլ ինչ հոգին. թէպէտ և երկու անուանք ասին, այլ մի ինչ իրս ընծայեցուցանեն, որպէս մարմին և միս՝ զի նոյն են, կամ մարդ և իմաստնաւոր։

« Ես Տէր Աստուած »։ Տեսանե՞ս, զի ոչ ինչ պարկեշտագոյն և ճշմարտագոյն է Աստուծոյ քան զՏէրն անունն։ « Կոչեցի զքեզ յարդարութիւն »։ Այսինքն զՈրդի. քանզի ոչ այլ ոք կոչեցաւ յարդարութիւն լինել ազգիս մարդկան։ « Կալայց զձեռանէ քումմէ և զօրացուցից զքեզ »։ Դարձեալ և աստի՝ի մարմնաւո-

1 Յոր. Յաւ. Ն՝ յօտար գրչէ։

քութիւնն Որդւոյ շրջէ զբանս. և ոչ ինչ հրաժարեմ ասել զայս։

« Նստու քեզ, ասէ, յուխտ ազգաց և 'ի լոյս հեթանոսաց »։ Իսկ այլքն ասեն, թէ ի դաշն։ Եւ զի՞նչ իցէ դաշն, և կամ ո՞ւ իւիք. այլ զի զօրէնսն ճնուցու։ « Եւ 'ի լոյս հեթանոսաց »։ Տեսանե՞ս, զի և հեթանոսք մարգարէիւքն կոչեցան։ « Բանալ զաչս կուրաց »։ Եւ աստ երկու պէտք են, և լուսոյ և աչաց ողջութեան. և զերկոսին ինքն կատարէ. որպէս կուրին՝ զի զինքն եցոյց, և զաչս եբաց. և ասէ. Դու հաւատա՞ս յՈրդի Աստուծոյ։ Ո՞վ իցէ, ասէ, զի հաւատացից 'ի նա. և յայտնեաց և ոչ թաքոյց, եթէ Ես եմ։ Եւ ցանդամալոյծն, թէ Ահաւասիկ ողջացար, այլ մի ևս մեղանչիցես, զի մի չար ևս ինչ լինիցի քեզ։

« Հանել զկապեալս 'ի բանդէ »։ Եւ այն դատաւորի էր՝ որ զայնչափ ժամանակս կապեալ էին։ « Արձակել 'ի բանդէ՝ որք նստէին 'ի խաւարի »։ Դարձեալ զկռոցն մոլորութիւն յանդիմանէ. զի այնպիսի կապանօք կապեաց սատանայ զբնութիւն մարդկան. տարածեաց զամբն խաբէութեան զերեսօք, մթացոյց միգովքն ապշութեան. ըստ այնմ, եթէ Ունայնացան 'ի խորհուրդս իւրեանց, և խաւարեցան անմտութեամբ սիրտք նոցա։ Տեսե՞ր զպատճառս խաւարին. հրաժարեա 'ի նմանելոյ խաւարելոցն, զի 'ի մտաց, ասէ, ծնանի այնպիսի խաւար։ Եւ գրեսջիր, եթէ նոցա մտաց. իսկ Հրէից ուստի՞ արդեւք. յայնմանէ՝ զի Զիւրեանց արդարութիւնն խնդրեն կացուցանել. քանզի Աստուծոյ արդարութեան ոչ հնազանդեցան։ Իւրաքանչիւր ոք յընկերէ չկամի ուսանել, այլ ինքն լինել վարդապետ. ամաչէ յընկերէն ինչ առնուլ, վասն այնորիկ և ունի ինչ ոչ։ Զայնպիսի ախտ և Հրեայք և հեթանոսք ախտացան. իւրաքանչիւր ոք գտակ կրօնից կամեցան լինել. և այնպէս կամեցան, և զի ոչ կանգուն անգամ կարէին կալ, այլ կծկեալ կաշկանդեալք նստէին յերկրի, իբրև յանհնարին բանդի ուրեք։

« Ես եմ Տէր Աստուած. այս է անուն իմ »։ Իսկ և Որդւոյն յորժամ նոյն անուն կոչիցի, ո՞չ ապաքէն ճշմարտութեամբ Տէր իցէ. Մի է, ասէ, Տէր Յիսուս Քրիստոս։ Եւ տես, զիարդ նախ զՏէրն անուն դնէ.

իսկ 'ի մերում միջի թէպէտ և կոչեսցին տեարք, պիտականութեամբ կոչին. իսկ Աստուծոյ բնութեամբ է Տէրն անուն, քանզի և է իսկ Տէր: «Զփառս իմ, ասէ, այլում ոչ տաց»: Այսինքն՝ համից 'ի կռոցն զիմ անունս: Եւ այս ճշմարտութեամբ 'ի Քրիստոսի գալստեանն կատարեցաւ. զի ոչ ևս ոք անուանէ զանուն կռոց, այլ զանուն Տեառն Յիսուսի Քրիստոսի: Դարձեալ այլազգ ևս, թէ զմարդկանէ ասիցէ. զի փառք Աստուծոյ՝ մարդիկ են. ըստ այնմ որ Առաքեալն ասիցէ, եթէ Այր ոչ պիտի ծածկել զգլուխ իւր, զի պատկեր և փառք Աստուծոյ է. որպէս ստեղծ՝ զի արուք պատկերն իցէ, նոյնպէս և Աստուծոյ՝ մարդ: Զանդրիդ, ասէ, զամենազարդ, զամենակազմ, զպատշաճական, զգեղեցկայօդ զգործս ձեռաց իմոց՝ ոչ տաց դիւաց: Տեսանե՞ս, որչափ ինչ կարևոր էր գալուստն Քրիստոսի:

«Զի որ ինչ 'ի սկզբանէն էին, ահա աւասիկ եկին հասին. և զնորս պատմեցից. և մինչչև պատմեալ էր՝ գուշակեցաւ ձեզ»: Զհնոցն ասէ եթէ 'ի գլուխ ելին օրէնքն. ապա ուրեմն ժամանակ էր նորոյս կտակարանաց, որք պատմիցեն և հաւատարիմ առնիցեն զհանդերձեալսն. որպէս առաջինն կատարեցաւ, նոյնպէս և երկրորդիս պարտ էր կատարել: Զի և երկրորդին ևս մուտ լինիցի՝ բազում ինչ ասացաւ 'ի հնումն և վճարեցաւ, զպատերազմաց, զուղղութեանց, և այլ ինչ ըստ մարգարէութեանց: Զլինիցի, ասէ, անձրև. և ոչ եղև: Զզաւակ քո, ասէ, ընտրեցից, և կալցի զերկիրդ. և եղև. և դարձեալ, եթէ Ահաւասիկ ծառայեցուսցեն և չարչարեսցեն զնոսա ամս չորեքհարիւր. և եղև. և դարձեալ, թէ Եղիցի իմն ժողովուրդ սեպհական 'ի թագաւորութիւն, 'ի քահանայութիւն: Եւ բազում ինչ է՝ զոր ասացաք և զոր ասասցուք. որովք[1] յայտնի լիցին թէ անդստին 'ի բնէ ունէր սկիզբն նորա:

«Օրհնեցէք զԱստուած յօրհնութիւն նոր»: Այլքն ասեն. Երգեցէք: «Զի իշխանութիւն նորա 'ի բար-

1 Յօր. Որոնք՝ յոտար գրչէ:

ձունս փառաւորի, անուն նորա 'ի ծագաց երկրէ »: Եւ զի՞նչ իցէ՞ն նոր օրհնութիւն. ոչ ըստ բնութեանց ինչ հնոցն, և ոչ ըստ օրինականացն, այլ և Հոգւոյն սրբով: Քանզի շնորհականքն ամենայն նորք են, և առաքինութիւն նոր, նոյնպէս և օրհնութեանն պարտ էր նոր լինել. զի ոչ եթէ Աստուած այնու առաւել պատուիցի, քանզի անկարօտ իսկ է Աստուածականն. այլ զի պատուիչքն՝ այնու իմն յոլովագոյն[1] կարիցեն մերձենալ առ Աստուած, ըստ առաքինութեանն վարուց. վասն որոյ և ասէ իսկ, եթէ Եւ Հայր զայնպիսի երկրպագուս խնդրէ, որք Հոգւոյն և ճշմարտութեամբ երկիր պագանիցեն նմա:

« Իշխանութիւն նորա 'ի բարձունս »: Զի մի՛ կարծիցէ ոք եթէ կարօտական ոք իցէ, ասէ. « Արքայութիւն նորա 'ի բարձունս փառաւորի »: Զէր ինչ կարօտ ձերովքդ, նա և ոչ հրեշտակացն զօրութեանց փառաւորութեամբք. զի և յառաջ քան զլինել նոցա՝ չէր ուիք կարօտ. քանզի և նոքա աղաղակէին. Սուրբ, սուրբ, սուրբ. այլքն, թէ Փառք 'ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն. և քրոբէքն մեծաձայն բարբառովք, եթէ Օրհնեալ են փառքն Տեառն 'ի տեղւոջէ իւրմէ: Եւ բազում և այլ ինչ լսեմք բարբառս փառաւորութեանց, եթէ Օրհնեցէք զնա հրեշտակք և հրեշտակապետք. այլ ոչ եթէ այնու ինչ կարօտ իցէ: Եւ բարիոք ասաց, եթէ « Իշխանութիւն նորա 'ի բարձունս »: Եւ բնաւ թէ կամիցիս իսկ զԱստուծոյ թագաւորութիւնն տեսանել. բայց մտօքդ զերկինս, և անդ հայեցեալ տեսանիցես բիւրս բիւրս հրեշտակաց, հազարս հազարաց հրեշտակապետաց, զսրովբէս մօտակացս, զքրովբէս նովաւ, զաթոռն հրեղէն, զամենեսին սարսեալս և զարհուրեալս: Իսկ այսր ոչ միայն վասն նուազութեան բնութեանս չերևի իշխանութիւն նորա, և ոչ վասն զի բազում վայրք 'ի միջի իցեն ընդ հրեշտակս և ընդ մարդիկ, այլ սոքա զի ոչ են բաւական կալ 'ի պաշտաման իբրև զայն զարմանալի բնութիւնս: Զոր օրինակ յորժամ այր թագաւոր երևիցի, զամենայն ռամիկն ահ և դողումն

1 Յօր. Այն որ իմ՛ յոլովագոյ:

ունի, որչափ ևս առաւել առ վերին մեծութեանն. զի յորժամ յարքունական ապարանից ոք 'ի դուրս մերձենայցէ, անդ մահ և սաստ տեսանիցէ, և զամենեսեան 'ի սպասս արքունականս. նոյնպէս և որ անդ զօրքն իցեն. զի որ յերկիրս են, բազում ինչ խափանէ զնոսա յայնպիսի սպասաւորութենէ [1]. իսկ երկնաւորացն ոչ այլ ինչ գործ է, բայց միայն հանապազ փառաւորել զԱստուած, և 'ի նա ակն հայել. ըստ այնմ, եթէ Մի՛ արհամարհիցէք զմի 'ի փոքրկանց, զի և հրեշտակք նոցա հանապազ տեսանեն զերեսս Հօր իմոյ՝ որ յերկինս է։ Որպէս և Քրիստոսի իսկ՝ հրեշտակքն կային 'ի սպասու. Եկին, ասէ, հրեշտակքն և պաշտէին զնա։ Մի՛ ընդ այն ակն հայիցես, զի ապտակեցաւ և տանջեցաւ, այլ և զայն ևս 'ի մտի ունիցիս՝ զոր ասէրն, եթէ Թագաւորութիւն ոչ է յայսմ աշխարհէ։ Տես, զիա՞րդ միաբան է բարբառս ընդ մարգարէին՝ որ ասէր, եթէ « Իշխանութիւն նորա 'ի բարձունս »։ Զսոյն ասէր և Նաբուգոդոնոսոր, եթէ Արքայութիւն նորա՝ արքայութիւն յաւիտենից, և իշխանութիւն նորա յերկինս, և զոր ինչ կամի՝ առնէ յերկինս և յերկրի։ Եւ յԱւետարանի, եթէ Հայր մեր, որ յերկինսդ ես, փառաւորեսցի անուն քո. եկեսցէ արքայութիւն քո, եղիցին կամք քո՝ որպէս յերկինս՝ և յերկրի։

« Իշխանութիւն նորա 'ի բարձունս փառաւորի. անուն նորա 'ի ծագաց երկրէ »։ Նոքա առաւել դողան և երկնչին յԱստուծոյ քան զմարդիկ. որպէս և աւելագոյնն գիտեն, նոյնպէս աւելագոյնն երկնչին. չիք անսաստութիւն և ոչ անհնազանդութիւն կամ ծուլութիւն. քանզի Հզօրք են զօրութեամբ և առնեն զբան նորա։ Տեսանե՞ս զի նոքա առաւել երկընչին. և նոքա՝ որ ընդ պատժօք ինչ ոչ են՝ այնչափ երկընչին, և սրոբէքն և հայել անգամ ոչ իշխեն, մեք զիա՞րդ իցէ զի քննիցեմք. զոր օրինակ սաստ որչափ ոք զմեզ մօտ ունիցի 'ի ճառագայթս արեգական, նոյնչափ կամիմք 'ի բաց փախչել, նոյնպէս որչափ մօտ տեսանիցեմք զՔրիստոս՝ և քաջ պարտիմք երկնչել։ Տե-

1 Յոր. Սղատաբենէ։

սանեմս, զի՞արդ փառաւորեցաւ 'ի լերին անդ, և Թալացան անկան աշակերտքն յահէն։ Եւ մարգարէքն բազում անգամ ստուգանէին, իսկ հրեշտակք և ոչ երբեք. և ուստի՞ արդեւք. 'ի բազում ահէ՝ որ անկանի զնոքօք։ « Փառաւորի անուն նորա 'ի ծագաց երկրէ. այսու և մարգարէանայ իսկ՝ որ ինչ լինելոց է ընդ ամենայն երկիր. ըստ այնմ, եթէ Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա։

« Որ իջան 'ի ծով նաւօք, կղզիք և բնակիչք նոցա»։ Տեսանեմս, զի ընդ ամենայն տեղիս սփռեցաւ քարոզութիւնն։ Այլ թերևս ասիցէ ոք, թէ որ 'ի ցամաքին են, նոքա զրկեա՞լ ինչ իցեն. քանզի և Դաւիթ իսկ ասէ, եթէ Նոքա տեսին զգործս Տեառն և զսքանչելիս նորա 'ի խորս։ Չիք ինչ ասել և ոչ պատճառս դնել. քանզի և նոցա բազում յորդորութիւնք են աստուածգիտութեան. բայց արդարև նոցա աւելի իմն պարտ է խրատել. քանզի ծովն ահագին աւելի իմն պարտի յորդորել զմիտս, զի հանապազ տեսանեն զալիս մըրմռեալս և սպառնացեալս, և միշտ զմահս և զստուերս նկատեն։

« Ուրախ լիցի անապատն և աւանք իւր, հանգրուանք և բնակիչքն Կեդարու»։ Ոչ եթէ անապատքն և աւանք ինչ ուրախ լինիցին, այլ սովորութիւն է գրոց և անշնչականացն տալ աւետիս ուրախութեան, յորժամ բարութիւնս ինչ առնելոց իցէ Աստուած։ «Տէր Աստուած զօրութեանց ելցէ և խորտակեսցէ զպատերազմն, զարթուսցէ զնախանձ իւր, գոչեսցէ 'ի վերայ թշնամեաց իւրոց իսպառ»։ Այսինքն վասն իւրոյ սիրոյ ել յայց և արար դարձ ժողովրդեանն, և ոչ վասն փրկելոցն ինչ արժանաւորութեան։

« Լուռ եղայ յաւիտենից. միթէ միշտ լռեցեմ և անսայցեմ. Թէպէտ և համբերէի իբրև զծննդականն, յայտնեցից, զարմացուցից և ցամաքեցուցից միանգամայն. եդից զգետս 'ի կղզիս, և զխաղս ցամաքեցուցից»։ Ակիւղաս և Սիմաքոս ասեն. Զնաւահանգիստն ցամաքեցուցից։ Տեսանեմս, զի՞արդ յայտ առնէ եթէ ոչ այն կամք են, զի տանջիցէ զանցաւորս. այնպիսի վիշտս վշտանամ, ասէ, որպէս որք ծնանիցինն՝ վշտանայցեն. իբր ոչ եթէ Աստուծոյ վշտանալ մարթ ինչ իցէ. ծն

անդր, քաւ լիցի. այլ զայն կամի ցուցանել եթէ ոչ կամի պատժել և ընդ վայր հարկանել զմարդիկ։

« Եդիր զգետս յանապատս, և զխաղս ցամաքեցուցից »։ Այսինքն զբարութիւնս 'ի միջոյ բարձից, կամ զթշնամեացն զառնութիւնս։ Եւ եթէ զնոսա վատթարեցից, և զձեզ հանից տանել յերկիրն ձեր։ « Եւ ածից զկոյրսն ընդ ճանապարհ զոր ոչ գիտիցեն »։ Տեսանե՞ս զմեծագոյն զօրութիւնն. զի զնեղիչսն հարկանէ և զնոսա հանէ 'ի դիւրութիւն. որպէս եղև իսկ 'ի դարձին։ Այլ ևս նմանագոյն առ հեթանոսս կատարի. « Ածից զկոյրսն 'ի ճանապարհ զոր ոչ գիտիցեն ». և արդար իսկ ոչ գիտէին զճանապարհն. քանզի կուրացեալք էին։ « Այլ արարից, ասէ, զնոցա խաւարն' 'ի լոյս, և զկամակորն յուղիղս »։ Դարձեալ այլ ինչ զարմանալիք, զի խաւարն լոյս լինի, և տրտմութիւնքն հեշտականք։ « Զայս պատգամս արարից նոցա, և ոչ թողից, և ոչ ընդ վայր հարից զնոսա, այլ և պարգևեցից և մերձակացու եղէց և ապրեցուցից »։ Այլ յետ առնլոյ զայսպիսի պարգևս յԱստուծոյ, դարձեալ ապաստան 'ի նոյն ձեռն լինիցիմք, զի մի՛ անդրէն յառաջին չարիսն կործանիցիմք։ « Եւ նոքա, ասէ, դարձան յետս »։ Եւ ընդէ՞ր 'ի սկզբանէ իսկ ոչ. զի այլոց մատն լինէր։

« Ամաչեսցին ամաչելով որ յուսացեալ իցեն 'ի կուռս »։ Հանապազ իսկ, բայց առաւել յետ Քրիստոսի գալստեանն, որ յայտնեաց նոցա զյանդգնութիւնն։ « Խուլք' լուարուք, և կոյրք' տեսէք »։ Արդարև խլութիւն և կուրութիւն ոչ մարմնոյ, այլ ոգւոց. զի մարմնոյ խլութիւն ոչ ինչ կարէ վնաս առնել մեզ, այլ կ' ուրեք զի և զգաստութեան իսկ պատճառք լինի. ըստ այնմ, եթէ Եղէ ես իբրև զմարդ' որ ոչ լսէ, և իբրև զհամր' որ ոչ բանայ զբերան իւր. իսկ ոգւոց խլութիւնն' հանապազ զրկէ 'ի բարեաց։

« Եւ ո՞վ իցէ խուլն' եթէ ոչ ծառայքն իմ, և կամ կոյրքն' եթէ ոչ որ տիրեն նոցա »։ Եւ արդարև խուլք և կոյրք Հրեայք. Որ ունի, ասէ, ականջս' լսելով լուիցէ. և դարձեալ, եթէ Զերոց երանի է աչացդ' որ տեսանեն, և ականջացդ' զի լսեն։ Եւ յայտ է եթէ նոքա խլացան և ոչ լուան, կուրացան և ոչ տեսին. քանզի յարէ

իսկ 'ի նոյն, եթէ «Կուրացան ծառայքն Աստուծոյ»։ Զի ոչ եթէ յայնմ ժամանակի միայն կուրացան, այլ անդուստ 'ի նմին կուրացեալք էին. քանզի և ասէ իսկ, եթէ «Տեսէք բազում անգամ, և ոչ զգուշացարուք»։ Մի եթէ միանգամայն կամ երկիցս. բազում անգամ տեսէք[1], և ոչ զգուշացարուք։

«Տէր Աստուած խորհեցաւ՝ զի մեծացուցանիցէք զօրհնութիւնն, և արդարանայցէք»։ Զայն իսկ միշտ կամի Աստուած, այլ դուք ոչ կամեցարուք, այլ հակառակ նմին՝ յափշտակութիւնս և յագահութիւնս հայէիք։ «Եւ եղև բանն յափշտակեալ և յաւար մատնեալ». իսկ այլքն զժողովուրդն ասեն՝ փոխանակ բանին[2]։ «Յամենայն շտեմարանս որոգայթս կազմեալ»։ Եւ քանզի ինքեանք 'ի յափշտակութիւն մտաբերէին, վասն այնորիկ և նոքա եղեն 'ի յափշտակութիւն[3]։

«Ո՞վ է 'ի ձէնջ՝ որ ունկնդիր լինիցի այսմ ամենայնի, կամ լուիցէ զառ յապայսն։ Ո՞վ ետ յափշտակութիւն զՅակոբ, կամ զԻսրայէլ աւարառուաց. ո՞չ Աստուած ինքնին՝ որում մեղանն իսկ, և ոչ կամեցան գնալ զճանապարհս նորա, և ոչ լսել օրինաց նորա»։ Տեսանե՞ս, զիա՞րդ փութայ յայտ առնել՝ եթէ ինքն է որ ածէ զպատիժսն, և ոչ յայլ ումեքէ տանջի։

1 Յօր. Բազում անգամ կայր խոլ էին. այլ օտար գրչաւ եղծեալ և վերայ եգեալ էր պէսէ։
2 Յօր. Բանին՝ յօտար գրչէ։
3 Յօր. Յափշտակութեան։

# ԳԼՈՒԽ ԽԳ

«Եւ արդ այսպէս ասէ Տէր՝ որ արարն զքեզ, Յակոբ, և ստեղծն զքեզ, Իսրայէլ։ Մի երկնչիր զի փըրկեցի զքեզ, և եդի քեզ անուն՝ եթէ իմ ես դու։ Եթէ անցանիցես դու ընդ ջուրս՝ ընդ քեզ եմ, և գետք զքեզ ոչ ողողեսցեն. և եթէ անցցես ընդ հուր՝ ոչ այրեսցիս, և բոց զքեզ մի կերիցէ. զի ես եմ Տէր Աստուած քո՝ Սուրբն Իսրայէլի, որ փրկեմն զքեզ»։ Եւ արդ, մի միայն 'ի չարեաց ինչ կամիցիմք զերծանել, այլ զի զԱստուած միշտ առ մեզ մօտ ունիցիմք. և յորժամ չիցէ ոք 'ի վիշտս, և յԱստուծոյ օգնականութենէն հեռի իցէ, և այն ևս չար է քան զվիշտս։ Ունիմք և օրինակս ինչ յաստուածեղէն գրոց. մանկունք՝ որ 'ի հնոցին էին, քան զայնոսիկ՝ որ արտաքոյ հնոցին էին՝ ևս 'ի դիւրութեան էին. քանզի և թագաւորն ևս հանդերձ զօրօքն 'ի տագնապի էր։ Դարձեալ Հրեայք յորժամ արկին զառաքեալսն 'ի բանտն, ինքեանք չար խռովէին քան զնոսա։ Այնպիսի իսկ է առաքինութիւնն, զի և 'ի վիշտս առանց խռովութեան պահէ զառաքինիս. և այնպիսի իմն են չարիքն, զի և 'ի խոր խաղաղութեան՝ խռովեն զչարագործսն. զոր օրինակ չէն ինչ օգուտ հեշտականն[1] քաղցրախառն օդք գարնանոյ՝ մարմնոյ՝ որ 'ի տապոյ ջերման գօլանայցէ, նոյնպէս և ոչ յորժամ արտաքոյ վշտաց ինչ իցեմք, և ոգիքն ծանրութեամբ մեղացն 'ի ներքս տաղտկանայցեն։ «Ես եմ Տէր Աստուած՝ Սուրբն Իսրայէլի»։ Տես, զիարդ զզօրութիւնն և զկամսն ցուցանէ. զինչ յայտ առնիցէ ասել. «Ես եմ Սուրբն Իսրայէլի». այլ զպարծանսն, եթէ նորա ընտրեալ և նորին 'ի ժողովուրդս սեպհական։

«Արարի, ասէ, փոխանակ քո զերկիրն Եգիպտա-

1 Յօր. Հեշտականն։

ցուոց»․ իսկ այլքն՝ փրկանս ընդ քո, ասէն[1]։ «Եւ զեր-
կիրն զՍուհէն քեզ փոխանակեցից»։ Այսինքն զնո-
սա հարից ընդ քո փոխանակ չարչարանաց՝ զոր չարչա-
րեցար 'ի նոցանէն։ «Մի երկնչիր, զի ընդ քեզ[2] եմ»։
Զիք ինչ հանգոյն այնմ մխիթարութեան․ զսոյն և ա-
շակերտացն խոստացաւ․ Ընդ ձեզ եմ, ասէ, զամե-
նայն աւուրս՝ մինչ 'ի կատարած աշխարհիս։

«Յարևելից ածից զզաւակ քո, և յարևմտից ժողո-
վեցից զքեզ․ ասացից հիւսիսոյ՝ թէ ած, և հարաւոյ՝
թէ մի արգելուր։ Ածէք զորդիս իմ 'ի հեռաստանէ,
և զդստերս իմ 'ի ծագաց երկրէ․ զի փառօք իմովք
պատրաստեցի զնա և ստեղծի զնա, և արարի զնա»։
Այսինքն յիմ փառս լինիցի ժողովն նոցա․ ես, ասէ,
փառաւորիմ․ որպէս և Առաքեալ ասէ, եթէ Յառա-
ւելութիւն փառաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի․
զի եթէ ոչ վասն այլ իրիք, սակայն վասն իմոց փա-
ռացն ոչ թողից զձեզ յօտար երկրի։ «Եւ հանից
զժողովուրդն կոյր․ և տակաւին աչք նոցա կուրացեալ
կան, և ականջք իւրեանց չլսեն»․ զիշխանացն ասէ
կուրայան։

«Ամենայն հեթանոսք ժողովեցան 'ի միասին, և ժո-
ղովեցան իշխանքն 'ի նոցանէ․ ո՞վ պատմեսցէ զայս,
կամ որ 'ի սկզբանէն ինչ էր՝ զայն ո՞ պատմեսցէ ձեզ»։
Եւ ոչ ոք ուրեք․ այսինքն, և որ ինչ անցք անցանելոց
իցեն ընդ նոսա, որպէս և ընդ ձեզ։ Այլ ձեզ և զձերդ
ասեմ և ցայլոցն իսկ․ նոցա՝ և ոչ զիւրեանցն․ և արդ
ո՞վ իցէ՝ որ պատմել կարիցէ։ «Ածցեն զվկայս իւ-
րեանց», իբրև յատեան․ «Եւ արդարասցին»։ Եւ եթէ
կարիցեն իրաւունս ցուցանել, և զարդար ինչ խօսել՝
ես ոչինչ զանգիտեմ և փախչիմ 'ի քննութենէ․ նոքա
թէ ունիցին ինչ վկայս՝ յառաջ մատուսցեն, կամ
մարդիկ՝ որպէս զմարգարէսն և զձեզ՝ որ զպատիժս
կրիցէք, կամ գիրս ինչ՝ որպէս ես ասացի յառաջա-
գոյն և կատարեցի։ Տե՛ս, զի մարդ ոչ բռնութեամբ,
այլ մեղմով տայ զիրաւունս․ և արդ յետ յանդիմա-
նելոյ զթշնամիսն, շրջէ զբանսն առ Իսրայելացիսն։

1 Յօր․ Իսկ այլքն փրկանս ընդ քո, ասէն, յօտար գրչէ։
2 Յօր․ Պակասի քեզ։

«Այժմ, ասէ, լերուք դուք ինձ վկայք, և ես ձեզ, ասէ Տէր»։ Եթէ ո՞չ զոր յառաջագոյնն ասացի՝ և կատարեցի։ Թէպէտ և ես իսկ արժանաւոր և հաւատարիմ վկայ էի, բայց սակայն և դուք լերուք ինձ վկայք։ Տե՛ս, որչափ ինչ յաճախագոյն տայ զխրատունս, որչափ յԱւետարանի ասէ, եթէ Ես եմ որ վկայեմ վասն իմ, և վկայութիւնն իմ ճշմարիտ. և Հայր իմ վկայէ վասն իմ և Յովհաննէս. որպէս և աստ ասէ. «Ծառայ իմ՝ զոր և ընտրեցի». զի և զմարգարէն կոչէ 'ի վկայութիւն. և զայս, ասէ, վասն ձերոյ փրկութեան առնեմ. «Զի գիտասջիք, հաւատասջիք և 'ի միտ առջիք»։ Տե՛ս, զի ամենայն ուրեք քան զիմաստութիւն՝ զհաւատս մեծարոյ ցուցանէ։

«Եւ 'ի միտ առջիք, եթէ ես եմ. զի յառաջ քան զիս ոչ եղև Աստուած, և յետ իմ ոչ ևս լիցի»։ Իսկ արդ զՈրդւոյն զինչ ասիցեմք. ոչ եթէ ծնեալ ոք չիցէ Աստուած, այլ արարած ոք[1] այլ Աստուած չիք։ Տեսանե՞ս, զի ամենայն ուրեք զանսկզբնականն, զանվախճանականն, զարարչականն դնէ. զոր օրինակ զանսկզբնականն՝ աստուածութեանն օրինակ եդ, նոյնպէս և ընդ արարչականին՝ և զնախագիտականն յայտ արար. և այսպէս օրինակօք եցոյց մեզ զԱստուած։

«Ես եմ Տէր, և չիք այլ ոք բայց յինէն՝ որ փրկէ»։ Ո՛չ, ասէ, դուք աղաչեցէք և ածէք զիս 'ի հաւան փրկել, այլ ես կամեցայ փրկել[2]. և զի մի ինքնադէպ ինչ զիրսդ կարծիցես, ես իսկ, ասէ, յառաջագոյն գուշակեցի, և ապա ածի հասուցի. քանզի «Պատմեցի և կեցուցի. նախատեցի, և ոչ գոյ ձեզ Աստուած օտար»։ Այսինքն յայտնախատ արարի, եթէ ո՞ւր իցեն աստուածքն՝ որոց նուէրս նուիրէիք և զոհս մատուցանէիք. զի մի ասիցեն, եթէ կամաւ իսկ չհանին ինչ 'ի վեր, նախատեցի, ասէ, և ոչ այնպէս ինչ կարացին յայտ առնել։ Եւ զիս յորժամ նախատեաց Ասորեստանեայն, անդէն վաղվաղակի ցուցի զզօրութիւն իմ։

«Դուք ինձ վկայք, և ես Տէր Աստուած, զի 'ի սկզբանէ ես եմ, և ոչ ոք իցէ՝ որ 'ի ձեռաց իմոց հանիցէ.

1 Յօր. Ոք՝ յօտար գրչէ։
2 Յօր. Այլ ես կամեցայ փրկել. յօտար գրչէ։

արարից ես, և ոչ ոք իցէ՝ որ դարձուցանիցէ զայն»։ Տեսանես զօրութիւն 'ի վեր քան զամենայն զօրութիւն. տեսանես զիշխանութիւն՝ իշխան ամենայն իշխանութեանց։ «Վասն ձեր առաքեցից 'ի Բաբելոն»։ Այսինքն վասն ձեր զնոսա տանջեցից։ «Ես Տէր սուրբն ձեր, որ յայտ արարի ձեզ զթագաւորն Իսրայելի»։ Օրինակաւ՝ զՁօրաբաբէլ նշանակէ, և ճշմարտութեամբ զՔրիստոս։

«Այսպէս ասէ Տէր Աստուած, որ տայ ճանապարհորդել ընդ ծով»։ Զառաջին աքանչելիսն յիշեցուցանէ նոցա, զի այնու զվերջինն առնիցէ հաւատալի։ «Եւ 'ի ջուրս սաստիկս զշաւիղս»։ Այսինքն յահագին ծովու, որ հանապազ ալեօքն կուտակի։ Կրկին իսկ են աքանչելիքն. նախ զի 'ի ջուրսն իսկ ճանապարհ արար, և ապա յայնպիսի ծովու՝ որ միշտ ալեօքն մրմռեալ սպառնայ։ «Այլ ննջեցին, և այլ ոչ յարիցեն»։ Թէպէտ և այսչափ օրինակք առաջի կային, Եգիպտացւոցն և ծովուն, սակայն թերահաւատ լինէին 'ի վարձէն։

«Մի յիշէք զառաջինսն. զի ահաւասիկ ես առնեմ նոր. արարից զճանապարհն ընդ անապատ, և յանջուր՝ գետս»։ Զի յայնժամ զծովն պատառեցի, և իբրև զպարիսպ կացուցի զջուրսն. և արդ յանջուր՝ գետս բղխեցուցից։ Այլ ճանապարհ յանապատն, և զգետս յանջրդիս, նախ օրինակաւ զփրկութիւն ժողովըրդեանն Բաբելոնի է իմանալ, ապա ճշմարտութեամբ և զՔրիստոսի վարդապետութիւնն [1]. ըստ այնմ, եթէ Գետք յորովայնէ նորա խաղայցեն ջրոյն կենդանութեան։ Տեսանես՝ յերկոսին կողմանս, մանաւանդ յերեսին իսկ առաքինացեալ՝ զԱստուծոյ զօրութիւնն։

«Ոչ եթէ այժմ ինչ կոչեցի զքեզ, Յակոբ, և ոչ աշխատ ինչ արարի զքեզ, Իսրայէլ»։ Այսինքն 'ի բնէ և 'ի վաղուց հետէ, մինչև [2] պատարագքն իսկ ուրեք էին։ Զի մի միւսանգամ յորժամ 'ի գերութենէն դառնայցեն՝ յայլոցն առաքինութեանց ան-

1 Յօր. Աստուածութեան. այլ յօտար գրչէ վարդապետութեան։
2 Յօր. Մինչ։

փոյթ առնիցեն, և միայն 'ի զոհից անտի համարի-ցին զփրկութիւնն. տես, զկարգ ցածուցանէ զնոսա յայնմանէ. ոչ միայն յորժամ մեղադիր ինչ լինիցին, այլ և յորժամ փրկել կամիցի, զի մի զնոյն ախտ ախ-տանայցեն. Լիբանան, ասէ, չէ բաւական ինձ յայ-րումն. և դարձեալ. Միթէ ուտիցե՞մ զմիս ցլուց, կամ զարիւն նոխազաց ըմպիցե՞մ։ Տեսանե՞ս, զկարգ և աստ զի յառաջին իրայն իսկ հաւանեցուցանէ զնոսա. ո՞չ անգոսնին իսկ 'ի բնէ սիրեցի զքեզ, մինչև զոհքն իսկ ուրեք չէին։

« Եւ ոչ աշխատ ինչ արարի զքեզ Իսրայել. ոչ ինչ էին խաշինք ողջակիզաց քոց, և ոչ զոհիւք քովք փա-ռաւոր արարեր զիս. և ոչ ծառայեցեր ինձ պատարա-գօք քոյովք»։ Քանզի փառսն իմն համարէին զիրսն, յառաջնոյն ուսիր, ասէ, զի առանց զոհից իսկ կոչեցի զքեզ. և 'ի վերջնոցդ 'ի միտ առ, զի առանց զոհից փրկեցի զքեզ։ « Ոչ ինչ երբեք աշխատ արարի զքեզ կնդրկաւ», եթէ 'ի հեռաստանէ երթեալ բերիցեն ինձ խունկս։ « Ոչ գնեցեր ինձ խունկս արծաթոյ ». իսկ այլք խունկեղէգն ասեն։ « Եւ ոչ ցանկացայ ճար-պոյ զոհից քոց. այլ 'ի մեղս քո և յանօրէնութիւն քո վերակացու եղէց քեզ»։ Այսինքն թէպէտ 'ի մեղս և յանօրէնութիւնս ծախէիր զաւուրս քո, սակայն զվերակացութիւնսն իմ ոչ առնէի բացեայ 'ի քէն։ Եւ ինձ թուի թէ զայնմ ժամանակէ մինչև յԵգիպտոսին էին՝ ասիցէ։

« Ես եմ ինքն՝ որ ջնջեմ զանօրէնութիւնս քո, և զանիրաւութիւնս քո վասն իմ ա՛յլ ոչ յիշեցից»։ Ոչ ասաց եթէ պատժոց ևեթ դիւրութիւն առնեմ քեզ, այլ թէ՝ և զմեղսն ոչ յիշեցից։ Եւ դու յորժամ ոչ կամիցիս ոխս ունել՝ զդոյն աստաջիր. և մի բանիւք միայն ասասցես, այլ և արդեամբք մի՛ յիշեսցես զյան-ցանս ուրուք. զի ոչ միայն պիտոյ իցէ թողուլ զյան-ցանս յանցաւորացն, այլ զի և 'ի մտացդ հետակորոյս առնիցես զցասումն։

« Բայց դու յիշեա՛, և 'ի միասին դատեսցուք. ասա դու նախ զմեղս քո»։ Տեսանե՞ս, զկարգ ուղղէ ա-տեան, և ցուցեալ զյաղթութիւնն իրաւամբք. որպէս և զսկզբանն ասէ, եթէ զայս ինչ և զայս արարէք. Դատ

արարէք որթոյն, և տուք խրատուսս այլոյն, և եկայք յանդիման լիցուք. Նախ զայն ասէ որով յաղթելն կարէ, և ապա կոչէ յատեան. Նոյնպէս և աստ. «Բայց դու յիշեա՛, ասէ, և դատեսցուք ՚ի միասին»: Եւ ընդէ՞ր ասիցէ, եթէ «Բայց դու յիշեա՛». այլ զի ուսանիցի զերախտեացն մեծութիւն: Զի որ սիրիցէն՝ զայն ինչ կամի ցուցանել՝ եթէ յիշիցէ. զի եթէ յիշիցէ արդեւք սիրեցելոյն զերախտիսն, և եթէ ոչ յիշեսցէ, գոնէ իմանայցէ եթէ յորպիսի մեղաց փրկեաց: Մի՛ զայն ինչ, ասէ, զմտաւ ածիցես եթէ վասն այնորիկ մտանեմ ընդ քեզ ՚ի դատ՝ զի դատապարտեցից, այլ զի ցուցցէ եթէ որչափ սիրեմ զքեզ: Զասեմ ես զմեղսն քո, այլ դու քեզէն ասա, զի ծանիցես եթէ զորպիսի վէրս բժշկեցի. այլ վասն այնորիկ ասեմ յիշեա՝ զի արդարասցիս. և այն իսկ բաւական է քեզ առ արդարանալ, յորժամ ես ոչ ասիցեմ, և դու քեզէն խոստովան լինիցիս:

«Հարքն ձեր նախ մեղան, և իշխանքն ձեր անօրինեցան յիս»: Միթէ առ այժմ ինչ իցեն մեղք, միթէ այժմ ինչ ապստամբեցէք: «Եւ պղծեցին իշխանք զսրբութիւն իմ, և մատնեցի ՚ի կորուստ»: Իսկ այլքն ասեն ՚ի նզովս. և եբրայեցին. Ասերմն Յակովբ[1]. այսինքն՝ ՚ի նզովս Յակոբ, և Իսրայէլ ՚ի նախատինս. իսկ այլքն ՚ի հայհոյութիւն ասեն: Տեսանե՞ս, զի դուք էք բարուրք: Եւ զի՞նչ իցէ, եթէ «Հարքն ձեր նախ մեղան»: Ես լաւեալ կայի, և դուք նախ սկիզբն արարէք:

«Ասա դու նախ զմեղսն քո»: Մի՞ կար մնար ինձ ասելոյ. որպէս և միւսն ասէ, եթէ Արդարն յառաջին իսկ պատասխանոջն՝ ոսոխ լինի անձին իւրում: Տե՛ս, զի ամենայն ուրեք ինքն ՚ի հարկէ իմն կամի մեզ շահս շահել. զի և արդարոյն իմն և մեղաւորի այն պատշաճ է: Զի՞ թաքուցանես զմեղս քո. Երբ և է՝ յայտնելոց են, կամ աստ կամ անդ. ապա թէ այդպէս իցէ, աստ պարտ է յայտնել, զի և ընկենուլ ՚ի բաց կարիցես:

1 Եբրայական բնագիրն ունի

לחרם יעקב וישראל לגדופים׃

որ է. Լախէրէմ եաքօվ վէիսրայէլ լէկիտուֆիմ. այսինքն, ի նզովս Յակոբ և Իսրայէլ ՚ի նախատինս:

Զի՞ փախչիս 'ի մահուանէ՝ որ վասն Աստուծոյ իցէ. զի որժամ բանիւ և իցէ՝ հարկ է մեռանել. և եթէ այսպէս իցէ, այն լաւ է՝ զի վասն Աստուծոյ մեռանիցիս: Զի՞ խեղդեալ իցես յընչից վերայ. ապաքէն մեկնելոց իցեն և ակամայ. ապա եթէ այդպէս իցէ՝ լաւ իցէ եթէ կամաւ: Զի՞'ի փառս և յայլ բազում իրս հարեալ իցես. ոչ ապաքէն մեկնելոց իցեն 'ի քէն: Սակայն Աստուած ոչ զայնպիսի ինչ մանունս հաւաստեօք պահանջէ-ցէ: Ընդէ՞ր ոչ ձգնիցիս վասն աստուածպաշտու-թեան. զի որժամ բանիւ և է՝ հարկ է քեզ վասն չա-րեացն ձգնել: Եւ մեք ցմիմեանս ասեմք, եթէ զի՞նչ օգուտ իցէ, նա և ոչ ունիմ իսկ շնորհ, թէ վասն իմ ինչ գործեցեր, և զի՞նչ հարկ էր գործել. իսկ Աս-տուած ոչ այսպէս. զի եթէ բնութեամբ ինչ վիշտք գայցեն, և վասն նորա համբերիցես, սակայն և այնմ՝ շնորհ ունի:

## ԳԼՈՒԽ ԽԴ

« Բայց այժմ լո՛ւր Յակոբ ծառայ իմ, և Իսրայէլ՝ զոր ընտրեցի »: Զայս ասելով յայտ առնէ՝ եթէ վե-րակացու է նոցա, և 'ի նոցանէն են պատճառք և սկիզբն վշտացն իւրեանց: Քանզի ոչ եթէ զբարեկամն զխրեցեալն զընտրեալն՝ առանց յուղղութիւնս ածե-լոյ՝ վայրապար մատնէր արգելուք: « Այսպէս ասէ Տէր Աստուած քո, որ արարն զքեզ և ստեղծ յորովայնէ մօր քո »: Եւ աստ այլ իմն երախտիս յիշեցուցանէ. քանզի ոչ կամի եթէ բնութեանն ինչ գործ կարծիցի ծնանելն, այլ իւր. ըստ այնմ, եթէ Զգործս ձեռաց քոց մի՛ անտես առներ:

« Մի՛ երկնչիր, Յակոբ ծառայ իմ, և Իսրայէլ՝ զոր ընտրեցի. զի ես տաց քեզ ջուր 'ի ծարաւ՝ որ գնայ-ցէ քեզ յանջրդոջ »: Աղբիւրս բխեալ յանապա-տին յիշեցուցանէ, թէ որպէս անդ 'ի ծարաւն ձեզ վտակս բխեցուցի, և այժմ 'ի վշտաց ձեզ դիւրու-թիւնս արարից: « Եդից զոգի իմ 'ի վերայ զաւակի

քո »։ Այլքն ասեն, եթէ զեղից. այսինքն զկամսն իմ, զցանկութիւն իմ, զօրհնութիւնսն իմ 'ի վերայ զաւակի քո. զի 'ի թոռանց 'ի թոռունս անցանիցեն բարութիւնքն։

« Բղխեսցեն իբրև զխոտ 'ի Ջրարբոջ, և իբրև զուռի՝ որ առ Ջրով։ Մին ասասցէ Աստուծոյ եմ ես »։ Մեծ մասն է ումեք՝ ընտանի լինել Աստուծոյ, և 'ի նորա համարի գրիլ[1]։ « Եւ միւսն խրախուսեսցէ յանուն Յակովբայ »։ Սիմաքոս լուսաւորագոյնս ասէ. Եւ միւսն կոչեսցի անուամբն Յակոբայ։ « Եւ միւսն գիր հանցէ ձեռամբ իւրով՝ թէ Աստուծոյ եմ. և յանուն Իսրայելի խրախուսեսցէ »։ Իսկ Ակիղաս փոխանակ ընդ խրախուսելոյն՝ թէ Նմանեսցի. Սիմաքոս, թէ Պատրաստեսցի. Թէոդոտիոն, եթէ Կերպարանեսցի։ Զի որ ասիցէ՝ թէ Աստուծոյ եմ, կերպարանեսցի յանուն Յակովբայ, որ թարգմանի խաբող. զի և նա խաբելով խաբեսցէ զթշնամիս իւր։ Քանզի բազումք յազգացն իբրև տեսին զզօրութիւնն Աստուծոյ 'ի Պարսից աշխարհին՝ որ 'ի Հրեայսն կատարէին, յօժարէին և ինքեանք ընդ նոսա եղանել երթալ յերկիրն Իսրայելացւոց. զայն իմն առակէին թարգմանքն, թէ Նմանեսցեն և կերպարանեսցին յանուն Յակոբայ։

« Այսպէս ասէ Տէր Աստուած թագաւորն Իսրայելի, որ փրկեաց զնա՝ Աստուած սաբաովթ. Ես եմ առաջին, և ես եմ առ յապա. բայց յինէն՝ այլ ոչ գոյ Աստուած. ո՞վ իցէ իբրև զիս. և ոչ ոք ըստ իմ. յառաջ կացցէ, կոչեսցէ, պատրաստեսցէ, յայտնեսցէ, պատմեսցէ, յորմէ հետէ ես արարի զմարդն »։ Եւ արդ տե՛ս, ոչինչ մեծ խնդրեաց. այլ թէ յորմէ հետէ ըզմարդն արարի, զայն և եթ ասասցէ։ Չասեմ ինչ, ասէ, զառաջին ժամանակացն, և ոչ զվերին զօրութեանցն։

« Արդ դուք ձեզէն իսկ վկայէիք ինձ, եթէ իցէ՞ այլ Աստուած բաց յինէն։ Եւ յայնժամ իսկ ոչ լուան՝ որ ստեղծանէին զմնոտիս և դրոշմէին զանօգուտս, թէ ամենեքեան սոքա մնոտիք են՝ որք առնեն ըստ մտացն իւրեանց, որք ոչինչ օգնեսցեն նոցա »։ Տեսանե՞ս, զի 'ի մարդկանէ է սկիզբն նոցա։ « Եւ ամենե-

1 Յոր. Համարէ է գրել։

քեան ուստի եղեն՝ ցամաքեացն »։ Դարձեալ զյաճախութիւն անզգայութեան կուսցն յայտ առնէ. զբազում դրոշմեալսն արկեալ յերգ հեգնէ. և յաւէտ 'ի բանի անդ, եթէ զիարդ, որպէս դրօշեալքն եղեն¹։

« Չի այր հիւսն թեքեաց զգործի իւր. ուրագ արեաց, և կոփեաց նովաւ »։ Եւ զայլն եւս, որ զկնի ացին են՝ թուէ առ յամօթ գործելեացն։ « Եւ ոչ համարեցան 'ի սիրտս իւրեանց, և ոչ յիշեցին, եթէ զկէս փայտին այրեցին հրով, և 'ի նմանէ հաց տրարին, և 'ի վերայ կայծականց նորա միս խորովեցին, և զմնացեալն 'ի նմանէ արարին պատկեր »։ Եւ արդ մի ընդ պատկերն հայիր և ընդ գեղն, այլ զայն 'ի միտ առ, եթէ զմինչ եղև 'ի կիսոյն՝ զոր այրեցին, որ 'ի ջեռնուլ և 'ի պէտս տուեալ էր. զի այրեցաւ և եղև մոխիր։ Եւ զբանս եւս ջեռլեացն առէ հեգնելով, եթէ « Վա՜շ ինձ, զի ջեռայ և տեսի զգոլ »։

« Եւ զկէսն արար աստուած, դրօշեաց, և երկիր պագանէ և ասէ. Աստուած իմ ես դու։ Ոչ իմացան 'ի միտ առնուլ, քանզի շլացան առ 'ի տեսանել աչօք։ Գիտասջիք զի մոխիր է սիրտն նոցա. տեսէք և ոչ ասացէք, եթէ ստութիւն է 'ի ձեռին իմում »։ Ակիւղաս ասէ. Եւ ոչ ասիցէ, միթէ ստութիւն ինչ իցէ 'ի ձեռին իմում։ Տեսանե՞ս, որպիսի՛ ինչ միտք են ամբաստանութեանցն։

« Յուշ լիցի քեզ այս, Յակովբ և Իսրայէլ, զի ծառայ իմ ես դու. բայց դու մի՛ մոռանայցես զիս »։ Ոչ այլ ինչ ասէ առաւել, բայց զայս միայն՝ զոր ինչ մարդ խնդրէ։ « Ահաւադիկ ջնջեցի իբրև զամպ զանօրէնութիւնս քո, և իբրև զմէգ զմեղսն քո »։ Զդիւրութիւն յայտ առնէ։ « Անցուցի 'ի քէն, ասէ, զմեղսն քո. դարձ առ իս, և փրկեցից զքեզ »։ Տեսանե՞ս, զի ոչ միայն յերախտիսն Աստուծոյ պարտ է վստահ լինել, այլ դառնալ և ողոքել։ « Դարձ առ իս », ասէ. քանզի չեն պատճառք ասել եթէ չունիմ համարձակութիւն, զի ամօթալից եմ. « Ջնջեցի 'ի քէն զանօրէնութիւնսն »։ Պատճառանքն իսկ է ցանկ և պարիսպ և արգել և խափան և ամօթ։ « Գիտասջիր զի

1 Յոր. Եղէն յօտար գրչէ։

մոխիր է սիրտ նոցա », և երկրպագուացն և որոց եր-
կիրն պագանէին: « Եւ չիք ստութիւն 'ի ձեռին ի-
մում »: Այսինքն՝ զի յոյժ է զօրութիւնն և հանդէս
իւրացն՝ զոր 'ի գլուխ հանիցեն. զի օգնական և պաշտ-
պան և զօրութիւն լինիմ:

« Ուրախ լերուք երկինք, և ցնծասցէ երկիր. փող
հարէք հիմունք երկրի, գոչեցէք լերինք զուրախու-
թիւն, բլուրք և ամենայն անտառք. զի ողորմեցաւ
Աստուած Իսրայելի »: Զոր օրինակ յորժամ ասիցէ,
եթէ Ինքն արարածք՝ յուսով յայտնութեանց Որդւոյն
Աստուծոյ ակն ունին, կամ թէ Հեծեն և երկնեն,
նոյնպէս և աստ՝ առ 'ի նշանակ հաշտութեանն Աս-
տուծոյ ընդ նոսա՝ բազում հաղորդս կոչէ ուրախու-
թեանն:

« Ես եմ Տէր, որ կատարեմ զամենայն. ձգեցի զեր-
կինս միայն, և հաստատեցի զերկիր »: Ստիպեմն, ասէ,
զայս, զի զօրաւորսն յայտ առնիցէ: « Եւ արդ ո՞վ իցէ
որ խափանիցէ »: Ակիղաս ասէ. Ո՞վ ոք իցէ ընդ իս
որ խոտիցէ. և ոչ ասեմ, եթէ ո՞ պատժեսցէ, կամ ո՞
զօրավիգն կարիցէ լինել. Թէպէտ և այս դիւրագոյն
է, սակայն 'ի նմանէ ցուցանեմ զհանդէս զօրութեան
իմոյ:

« Այսպէս ասէ Տէր՝ որ փրկեացն զքեզ և ստեղծ
զքեզ յորովայնէ. ես եմ Տէր, որ կատարեմ զամենայն.
ձգեցի զերկինս միայն »: Ամենայն ուրեք նախ զարար-
չութիւնն դնէ. զի յայտ արասցէ զօրութիւն և զխ-
նամածութիւնն, և զի մանաւանդ ընդ նմա չէ օրէն
մարտնչել. քանզի ոչ առնէր՝ եթէ ոչ փրկել կարէր.
զի որ 'ի սկզբանէն առանց ուրուք ստիպելոյ, և ա-
ռանց երախտեաց ինչ արար, ո՞րչափ ևս յետ առնե-
լոյն կեցուցանիցէ: Քան զչառնելն՝ բնաւ չէր ինչ տըր-
տունջ. իսկ զարարեալս 'ի տանջանս մատնել՝ բազմաց
տգեղ թուի. վասն որոյ և ասէրն իսկ մեծն 'ի մար-
գարէս. Ասիցեն, գոգցեն, եթէ վասն այնորիկ հաներ
զնոսա յերկրէն Եգիպտացւոց, զի յանապատին կոտո-
րեսցես, և յերկրէ ջնջիցես:

« Ես եմ Տէր, որ կատարեմ զամենայն ». և զձեր և
զթշնամեացն: Մի՛ կարծիցէք եթէ այլ Աստուած գու-
ցէ. « Ձգեցի զերկինս միայն, և հաստատեցի զեր-

կիր » ։ Դարձեալ 'ի համաշխարհականաց բարբառն, 'ի բանն 'ի գլխաւոր առաքածոցն ։ Եւ միտ դիր, զիարդ յերևելեացն, և ոչ յաներևութիցն կամի հաւաստացուցանել ։ « Հաստատեցի, ասէ, զերկիր, և ոչ կարիցէ եղծանել » ։ Եւ այս մեծի զօրութեանն հանդէս է. զի այնպիսի ինչ կարէ առնել՝ որ ամենեցուն անհնարին է առ եղծանել. և ոչ միայն եղծանել, այլ և ոչ մտաբերել իսկ. զի ոչ միայն չկարիցէ ոք եղծանել, այլ զի և ոչ մտաբերել ինչ ձեռնհաս իցէ ։

« Ցրուեցից զնշանս վհկաց » ։ Սիմաքոս զստոցն ասէ ։ Եւ այն են զարմանք զի առնէ, և այնպիսի ինչ առնէ՝ զոր ոչ ոք եղծանել կարէ ։ Այլ գրեսջիր թէ ոչ զերկինս արարի, և ոչ զերկիր հաստատեցի, այլ որ ինչ մեծն թուէր նոցա՝ զայն ամենայն եղծի, և խափանեցի զօրութիւն բանաւորին. զի ոչ միայն զպատմեալս վհկացն ցրուեցի, այլ և 'ի սրտից անտի զըղձութիւնն ցրուեցի. այս է զօրութիւն մեծ և հարըստութիւն անմարտական ։

« Դարձուցից զիմաստունս յետս, և զխորհուրդս նոցա յիմարեցուցից » ։ Զի յայտ արասցէ, եթէ իմաստութեանն և խորհրդոցն նա է տէր ։ « Եւ հաստատեցի զպատգամս ծառայի իմոյ » ։ Այն իսկ է հարըստութեան նշանակ, զի զայլոցն եղծանէ, և զիւրոյ ծառային կատարէ ։ Զի եթէ եղծանէր միայն, ասէին արդեւք, եթէ զայն ևեթ կարէ առնել. իսկ եթէ զայլոցն եղծանէ, և զիւրոցն հաստատէ, յայտ է եթէ կատարեալ է զօրութիւնն և չէ ինչ կարօտական ։ « Եւ զխորհուրդս հրեշտակաց իւրոց արդարացուսցէ » ։ Անդ ըղձութիւնք, և այնպէս վաղ եղծանէ. և աստ ոչ միայն մարգարէութիւնքն, այլ և կատարումն կանխասացից ։ Թուի ինձ եթէ աստ հրեշտակ՝ զմարգարէ կոչիցէ ։

« Որ ասեմ ցԵրուսաղէմ[1] թէ շինեսջիր, և ցքաղաքսն[2] Հրէաստանի. որ ասեմ անդնդոց թէ աւերեսջիք » ։ Սիմաքոս ասէ, թէ Որ ասեմ երկրի թէ

1 Ցօր. Այլ և կափարանն... Որ ասեմ ցԵրուսաղէմ, 'ի լուսանցան յօտար գրչէ եդեալ ։
2 Ցօր. Ցաղաքսն ։

իբրև զանդունդամն աւերեսջիք, և զգետս նորա ցամաքեցուցից։ Զի եթէ զնոցանէն իսկ ասիցէ, և այնպէս կարող է Աստուծոյ զօրութիւնն. և եթէ զբազմութենէ պատերազմացն, սակայն և այն 'ի դէպ է։

« Որ ասեմ Կիւրոսի իմաստնանալ »։ Ակիղաս ասէ, եթէ Որ ասեմ Կիւրոսի՝ աւարառուդ իմ։ Սիմաքոս և Թէոդոտիոն, եթէ Հովիւդ իմ, ըստ իւրաքանչիւր[1] թարգմանութեան։ « Եւ զամենայն կամս իմ արասցէ »։ Եւ այս զմեծութիւն զօրութեանն Աստուծոյ յայտ առնէ. զի այլ ո՞ մտօք, որ 'ի նա երբեք ոչ էին յուսացեալ և ոչ երբեք ճանաչէին, զոր ինչ կամէր՝ կատարէր։ Քանզի Աստուած շարժէր զմիտս նորա, զի դարձ առնիցէ գերոյն՝ Աստուծոյ հրամանաւ. որպէս ամենայն մարգարէքն մարգարէանային, և զիջանել ժողովրդեանն և զելանել, և մեծաւ սքանչելեօք իւր գործք գործէին։ Զի արձակել զգերին՝ մարդասիրութեանն միայն նշանակ էր, իսկ Աստուած՝ զոր ոչ գիտէր՝ պատուել, և մեծամեծ պատարագօք մեծարել, այն ոչ ըստ մարդասիրութեան ինչ էր, այլ մեծազօր իւր զօրութեան, որ զնորա զմիտսն շարժէր։ Որպէս ած զԲաբելացիսն և ետ զնոսա 'ի ձեռս, նոյնպէս և զայն առնէր։ Մի եթէ զանձնիշխանութիւնն ինչ բարձ 'ի նմանէ, և շրջեաց ինչ զմիտս առն։ Ոչ եթէ զանձնիշխանութիւն եբարձ, այլ յայն յորդորեաց զանձնիշխանութիւն։ Է ուրեք՝ զի փութացուցանէ Աստուած զմարդիկ, այլ 'ի բարիս ինչ, և ոչ 'ի չարիս. և է ուրեք՝ զի նոցա չարութեամբն՝ բարի պէտս վճարի, և 'ի չարեացն՝ որ 'ի նոցանէն գործին՝ բարի ինչ կատարէ, որպէս Բաբելացւոցն և Յուդայիւք և այլովքն բազմօք։

1 Յօր. Ըստ խորանի, այլ եղծեալ և յօտար գրչէ 'ի վերայ եդեալ, ըստ խորաքանչիւր։

## ԳԼՈՒԽ ԽԵ

«Այսպէս ասէ Տէր Աստուած ցօծեալ իմ ցԿիւրոս, զորոյ կալայ զաջոյ ձեռանէ նորա»։ Յայտ է եթէ ինքն օծ զնա, վասն որոյ և օծեալ իսկ իւր կոչէ. և յօծութենէն զօծութիւնն յայտ առնիցէ։ Ակիւղաս ասէ. Զիւղեալն իւր. իսկ այլքն՝ Յօծեալ իւր ասեն։ Եւ զայլ թագաւորսն ոչ եթէ ինքն օծ. ոչ եթէ օրինեալ ինչ յայտ առնիցէ այժմ, այլ զի առ քաղաքին շինութիւն այնպէս կամեցաւ զիրսն վճարել. վասն այնորիկ օծեալ իւր կոչէ զնա։ Եւ այլազգ ևս. քանզի հեզագոյն քան զայլ թագաւորսն էր Կիւրոս։ Նա և զԲաբելացւոց թագաւորէն յայտ առնէ՝ եթէ նովաւ ունէր զիշխանութիւն, քանզի և զնա ծառայ իւր կոչէ. Ծառայ իմ, ասէ, Նաբուքոդոնոսոր։ Եւ վասն Ասորեստանեայցն՝ եթէ նա արար զնոսա այնպիսիս. Վայ, ասէ, Ասորեստանեայցն. գաւազան բարկութեան սրտմտութեան իմոյ 'ի ձեռին նոցա. և դարձեալ, եթէ Իմում ժողովրդեանն կարգեցից։ Տեսանես, զիարդ ընտանեցուցանէ զթագաւորս հեթանոսաց։ Եւ զԱնտիոքէ յայտ առնէ՝ եթէ Աստուած յարոյց. Յարուցից, ասէ, հովիւ ոգէտ, և գործի հովուութեան։ Եւ յայտ առնէ եթէ ամենայն ուստեք նորա հրաման է, թէպէտ և ամբարշտիցեն թագաւորք։ Եւ եթէ վասն էր զայս այսպէս առնիցէ, նմա միայն յայտ է, և 'ի մէնջ ծածուկ տեսչութիւն նորա։

«Հնազանդեսցին առաջի նորա հեթանոսք. բացից առաջի նորա դրունս, և քաղաքք մի ամրասցին. ըղդրունս պղնձիս խորտակեցից, և տաց քեզ զգանձս աներևոյթս. զի ծանիցես եթէ ես եմ Տէր Աստուած, որ կոչեմ զանուն քո, Աստուածն Իսրայելի, վասն Յակոբայ ծառայի իմոյ»։ Տեսանես, որչափ պարգևս պարգևէ ժողովրդեանն։ Յորժամ հայիցիս 'ի չար անցս որ ընդ Փարաւոն անցին, մի ապիրատութիւն ինչ կարծիցես առ 'ի յԱստուծոյ. զի անտի նոյնպէս դիւ-

րաւ կամի հանել, այլ ոչ կամեցաւ եգիպտացին։ Եւ զի ոչ կամէր հարկանել զնա՝ յառաջին իրացն յայտ է։ Առաքեաց առ արքայն Եգիպտացւոց, ասէ. Արձակեա զժողովուրդդ իմ, զի ինձ պաշտօն մատուսցեն յանապատին։ Թէպէտ և չէր ինչ ծանր հրամանն, ոչ ապաքէն սիրով արժան էր քեզ ելանել ընդ առաջ հրամանին։ Միթէ ասիցէ՞ թէ այդրէն 'ի քում աշխարհիդ առնիցեն ինձ պաշտօն, զի ասիցես՝ թէ չէր հնար, զի մեր՝ մերոյն իսկ քուրմք են, և չէ մարթ թէ օտարոտի ոք օրէնս յաշխարհ մուծանիցէ։ Միթէ անդէն 'ի սկզբանն ասիցէ՞, եթէ հեռի ուրեք 'ի բաց վայրս երթիցեն. ոչ զերիս միայն աւուրս խնդրեցի պարապորդս լինել. զի եթէ բնաւին իսկ արձակել խնդրէի, չէր ինչ զուր, որք այնչափ ժամանակս ծառայեցին քեզ ձրի. այլ ոչ այնպիսի. պահանջի զերիս աւուրս միայն, և ոչ առնոյր յանձն։ Ջե՞ր պարտ պատկառել քեզ 'ի զօրութենէ իմմէ, կամ ակնածել յերկայնմտութենէն։ Այլ ոչ այնպիսի ինչ յամառեաց պարսիկն. իբրև լուաւ՝ վաղվաղակի արձակեաց, արագ արագ առնէր դարձ գերոյն։ Եւ ուստի՞ արդեւք լուաւ, կամ ուստի՞ իմացաւ։ Թէպէտ և կային իսկ օրինակք զօրութեանն Աստուծոյ յերկիրն Պարսից, այլ ասեմ՝ թէ յԱստուծոյ յորդորելոյ։ Եւ ոչ եթէ Փարաւոնն ոչ յորդորեցաւ, այլ և լուաւ զպատգամսն Աստուծոյ, և խոստացաւ. ապա թէ ոչ, ընդէ՞ր առաքէր զՄովսէս յառաջագոյն. ոչ ապաքէն զի յօժարեցուսցէ արձակել զժողովուրդն. այլ ոչ կամեցաւ, որպէս պարսիկս՝ իբրև լուաւ՝ վաղվաղակի անսաց։

« Վասն Յակոբայ կոչեցի զքեզ յանուն իմ »։ Այսինքն յանուն Քրիստոսի իմոյ։ Դարձեալ խառն ընդ աւետիս՝ պատուհաս առ Իսրայելացիսն։ « Եւ դու, ասէ, զիս ոչ ծանեար, եթէ ես եմ Տէր Աստուած, և ոչ ոք գոյ բայց յինէն »։ Զի ես կատարեցի առ քեզ զայն, եթէ թշնամի եղեց թշնամեաց քոց, և բարեկամ բարեկամաց քոց [1]. զի որ ոչ կամէին զդարձն քո, առ նոսա՝ զթշնամեաց գործ ցուցի. և որ յօժարեացն և յորդորեցաւ Կիւրոս, առ նա՝ զբարեկամութեան։

1 Յօր. Եւ բարեկամ բարեկամաց քոց, յօտար գրչէ։

« Ես եմ Աստուած, և չիք այլ ոք բայց յինէն »։ Զի մի կարծիցեն հակառակորդքն, եթէ մի ոք'ի բազմաց իցէ, և ոչ միայն և ամենակալ։ Վասն այնորիկ յարէ'ի նոյն, եթէ « Ծանիցեն յարևելից և յարևմտից եթէ չիք ոք այլ՝ բայց յինէն »։ Տեսանե՞ս, զի և այլոցն ևս խնամածու լինի, և մեծամեծ երախտիս ցուցանէ'ի նոսա. զի թէ և նոքա յաշխարհն իւրեանց դառնայցեն, այլ և սոքա զերծանիցին'ի մոլորութենէն, առաջնորդեալք ճշմարտութեամբն՝ հասանիցեն'ի վերին աշխարհն։

« Ես միայն եմ Աստուած, և այլ ոք չիք՝ բայց յինէն »։ Գիտել գիտէին եթէ և նա Աստուած է, բայց թէ միայն Աստուած իցէ, այնմ ինչ չէին տեղեակ՝ զոր Հրեայքն ուսանէին, եթէ Տէր Աստուած քո՝ Տէր մի է, զնոյն ծանեան՝ եթէ ոչ միայն Հրէից մի է, այլ ամենայն աշխարհաց մի Աստուած. « Ես եմ տէր Աստուած, և չիք այլ ոք »։

« Ես եմ Տէր, որ հաստատեցի զլոյս և արարի զխաւար. որ առնեմ զխաղաղութիւն, և հաստատեմ զչար »։ Տեսանե՞ս, զի ոչ տայ մուտ այլում արարչի. այլ և որ չարն ինչ թուէին, և այնոց ինքն կամի համարել արարիչ։ որպէս և այլուր ասէ, թէ Ո՞վ արար զխուլն և զհամրն։ Այլ հաստատել զչար, զպատերազմացն ասէ, և ոչ եթէ բնութեամբ չար ինչ արար Աստուած, կամ առնիցէ. այլ զհատուցմունս ինչ և զվրէժս՝ չար կոչէ. և զի չիք չար բնութեամբ, յորժամ վիշտքն ինչ'ի դիւրութիւն դառնայցեն, այնու յայտ է։

« Ուրախ լիցին երկինք'ի վերուստ, և ամպք ցօղեսցեն զարդարութիւն »։ Դարձեալ աւետիք են'ի դարձին, իբրու թէ արարածք'ի նոցա բարիսն ուրախ լինիցին. զոր և'ի նորա վարդապետութիւն մարթի առնուլ՝ թէ կամիցի ոք։ Վա՛յ ոչ այն միայն որ ամբաստան լինի զարարչէն իւրմէ, այլ և որ պատասխանի տայցէ, որ իրաւունս իշխիցէ պահանջել զլինելոյ ինչ իրաց։ « Ես զքեզ ստեղծի », և դու յինէն օձա՞ն խնդրես. զի թէ չէր կամեցեալ, և ոչ լինէիր իսկ. և յայտ է եթէ այն են՝ Աստուծոյ բարերարութեանն է[1]։

1 Յոր. Ձիք է։

«Մինթէ ասիցէ՞ կաւն ցբրուտն. զի՞ կաս, զի՞ չգործես. և գործն՝ թէ չիք քո ձեռք»։ Զայս առ այնոսիկ ասէ՝ որք զերկայնմտութիւնն Աստուծոյ բամբասիցեն, եթէ այս ինչ պարտ էր Աստուծոյ, և այս ինչ չէր պարտ։ Զիք ինչ քան զայն բարբառ ամպարշտագոյն՝ օրէնս դնել դատաւորին, և զատենագործն բնութեանց՝ մարդկեղէն մտօք բամբասել։ Թէպէտ և չիցէ ինչ նման օրինակս. զի բրուտն ոչ եթէ նիւթոյ կաւոյն արարիչ իցէ, այլ միայն ստեղծուածոյ, և այնպէս՝ որչափ ձեռնհաս ինչ իցէ. իսկ Աստուած ոչ միայն պատկերիդ քոյոյ, այլ և նիւթոյն եւ՝ ուստի եղերն՝ արարիչ է։ Կաւն ոչ եթէ զլինելն, այլ զկերպարանս միայն առնու 'ի բրտէն. և ոչ հեռի ինչ, և ոչ ընդդէմ դառնայ. իսկ դու որ ամենևին իսկ Աստուծով եղեր, նստեալ համարս պահանջես 'ի նմանէ։ Կաւն չդառնայ ընդդէմ, քանզի ոչ բարբառ իսկ ունի 'ի բերան. իսկ դու յա՞յն սակս դիմադարձ լինիցիս, զի զբարբառդ առեր. պարգևաւդ՝ ընդ պարգևատուին կռուիս. ընդէ՞ր ոչ ասիցես զպատճառսն, վասն որոյ ոչ պարտիս ընդդէմ դառնալ։ Արար զքեզ խօսուն իմաստուն, ոչ զի առաւելութեամբն ընդդիմակաց Տեառն լինիցիս, այլ զի զնա փառաւորիցես, և զնոյն օրհնեսցես. ոչ զի քննիցես և 'ի հարց և 'ի փորձ արկանիցես։ Առեր լեզու 'ի փառաւորութիւն, առեր զմիտս 'ի գոհութիւնս, 'ի հաւատս. և Սիրաք ասէ. Ետու քեզ լեզու կամակար. և զպատճառսն ասէ. Զի օրհնեսցես զնա, և պատմեսցես զփառսն նորա։ Զունի բարբառ կաւն. զի եթէ ճանաչէիր զարարիչն, գիտէիր թերևս՝ քան զկաւն ևս անարգագոյն ես և անձայնական։

Քանզի մերձ էր 'ի փրկել զնոսա, և գիտէր եթէ բամբասելոց են զնա վասն անցելոց ինչ ժամանակացն՝ յորս զվիշտս կրեցին. ըստ այնմ, եթէ Սակաւիկ միւս ևս սասանեալ էին ոտք իմ. և դարձեալ. Ասացի եթէ զիա՞րդ ծանեաւ Աստուած, կամ իցէ՞ գիտութիւն առ 'ի Բարձրելոյ, զի ահա աւասիկ սոքա մեղաւորք են, և յաջողեալք են. և դարձեալ, եթէ Զիա՞րդ իցէ զի այս եւթանասուն ամ՝ զի անտես արարեր զմեզ. և բազումք այսպիսի ինչ բանիւք բամբասելոց էին, ըմ-

բերանն է զայնպիսին, և ասէ. « Մի եթէ ասիցէ՞ կաւն ցբրուտն »: Եւ տես, յորպիսի՛ դէպ ժամանակի. յորժամ արձակուրդն առնելոցն էր, զի մի՛ կարծիցէ եթէ չկարիցէ վճիռ իրացն առնել. և յայն սակս զայնպիսի բանս 'ի մէջ բերիցէ: Զի եթէ անդէն 'ի վիշտսն թողեալ էր, և այնպիսի բանս խօսէր, և այնպիսի ինչ կարծէր, եթէ վասն զի 'ի վշտացն չկարաց փրկել, այնպիսի բանիւք պատրէ. իսկ նա աւանիկ 'ի ժամանակի փրկութեան ըմբերանէ, զի ուսանիցին եթէ 'ի ձեռացն թողուլ, անքնին և անճառ իմաստութեանն գործ էր, և չէ պարտ բամբասել և մեղադիր լինել, և կամ 'ի խոյզ և 'ի քնին ինչ արկանել: Իսկ առ թշնամիսն զհերկն հարկանելով, ասելովն. Մի եթէ զօրն ամենայն վարիցէ՞ հերկահարն. իսկ առ նոսա՝ որք անյոյսն լեալ էին 'ի փրկութենէն, զկաւոյն և զբրտի: Ո՞չ գիտիցէք, ասէ, եթէ վասն խրատու և ուղղութեան արարի զայս ամենայն. ո՛չ յառաջագոյն իսկ գուշակէի, և չլսէիք. և եթէ չլուարուք, և անձամբ անձանց ածէք զպատիժս, անձանց լերուք մեղադիր, և մի՛ ինձ:

Եւ ոչ այնչափ միայն որոշումն իցէ ընդ քեզ և ընդ Աստուած, որպէս ընդ կաւն և ընդ բրուտն. զի բրուտն՝ կաւոյն չէ արարիչ, այլ միայն կերպարանաց. և նոքա կարի մօտ են առ միմեանս. զի կաւն արարած է և բրուտն. իսկ քո արարիչն անաբար է, և դու արարած: Եւ քանզի բազում ինչ որոշումն էր ընդ քեզ և ընդ Աստուած, վասն այնորիկ ասէ. « Միթէ ասիցէ՞ կաւն ցբրուտն, զի՞ կաս, զի՞ չգործես. և գործն՝ եթէ չիք քո ձեռք: Միթէ պատասխանի՞ տայցէ ստեղծուածն ստեղծչին իւրում ». ոչ մինչդեռ կաւն կայցէ, և ոչ յորժամ ստեղծանիցի, եթէ այն լաւ էր՝ մինչդեռ կաւն կայր, ընդէ՞ր ստեղծեր զիս. և կամ թէ ստեղծանել լաւ էր, ընդէ՞ր թողեր զիս կաւ: Զոր բազում աղաջուրք 'ի փիլիսոփայիցն ասեն, որ ծաղրն եղեն և ծանակ կան. որ զանչափ զԱստուծոյ իմաստութիւնն՝ կամին ընդ իւրեանց քննութեամբ արկանել. որ ուրալիքն[1] և ատելիքն լինին յիւրեանց շաղփաղփական

1 Այսպէս յօրինակին:

ցոփութեանցն, զոր միշտ վայրապար նորոգեն. զի թէ բարիոք ինչ էր, ասէն, հաստատել, ընդէ՞ր ոչ՚ի սկզբանէն. իսկ եթէ չէր բարիոք, ընդէ՞ր և յետ այնորիկ։ Եւ առ այն զի՞նչ ասիցեմք, եթէ ոչ զայն. « Միթէ ասիցէ՞ կաւն ցբրուտն, կամ ստեղծուածն ընդ ստեղծիչն [1] »։ Զքանն նա միայն գիտէ. և եթէ երբ պարտ իցէ առնել՝ ինքն ճարտար է։ Եւ եթէ բարիոք իցէ, ասեն, գործելն, ընդէ՞ր ոչ [2] միշտ գործիցէ։ Իսկ արդ դու Աստուծոյ օրէ՞նս ինչ դնիցես. ո՜վ հպարտութեան և թշուառութեան՝ որդան հողոյ և մոխրոյ, որ յայնպիսի բնութենէ՝ յանճառ և յանքննին, համարս պահանջիցէ, և ոչ ակն ածիցէ. և յայնմանէ ես զի իբրև զմանկտի ընդվայրասուն և շատխօսս՝ որ ոչ ունիցին զխրատ, զայր ոք իմաստուն աշխատ առնիցեն. և չէ ինչ մեծ որ ասացաւս. և մանաւանդ զի և ոչ սակաւ ինչ իսկ մարտ։

« Վա՜յ այնմիկ՝ որ ասիցէ ցհայր իւր եթէ ընդէ՞ր ծնար զիս, և կամ ցմայր իւր եթէ ընդէ՞ր երկնեցեր զիս »։ Եւ այս իբրև զառաջինն՝ օրինակ իմն է։ Միթէ ասիցէ՞ ոք ցհայր իւր եթէ ընդէ՞ր ծնար զիս, և կամ ցմայր իւր թէ ընդէ՞ր երկնիցես։ Եւ եթէ այն անմտութեան իցէ, ո՞րչափ ևս այն առաւել անհանճար մտաց։ Բնութեան չլինիս մեղադիր, և ինձ զի՞արդ իշխիցես՝ որ տէրն եմ բնութեան՝ մեղադիր լինել. ընդէ՞ր, ասես, արար Աստուած զմարդիկ։ Զի որ ըստ բնութեան ծնունդն է, անդ բազում վիշտք են և հօրն և մօրն, զայն ոչ ինչ քննես, և զիս՚ի խոյզ և՚ի քնին արկանես։ Եւ ընդէ՞ր արդեւք ճառեաց զերկանց և զծննդոց. այլ զի զերկոցունց կողմանց ծնողացն կարգ՝ յիւր անձն առնուցու. զի իբրև զպատճառս և իբրև զգթած ծանիցի։ Քանզի և այլուր իսկ ասէ, թէ Որպէս գթայ հայր յորդիս, գթայ Տէր յերկեղածս իւր. և դարձեալ, եթէ Ո՞վ իցէ՚ի ձէնջ՝ որոյ խնդրիցէ որդի իւր հաց, միթէ քա՞ր տայցէ նմա. և ևս յառաջ՚ի սոյն գիրս. Զի թէպէտ և մոռանայցէ կին՝ ողորմել ծննդոց իւրոց, սակայն ես ոչ մոռացայց

1 Յօր. Ստեղծիչն ցստեղծուածն. յօտար գրչէ ուղղեալ՝ ստեղծուածն ընդ ստեղծիչն։
2 Յօր. Չիք ոչ։

զքեզ։ Զի բարս ազգաց ունին ծնողք խնամածականս, որոց չիցէ ինչ համեմատ գտանել. սակայն և քան զայն 'ի վեր են Աստուծոյ խնամքն։ Զսոյն և աստ յայտ առնէ, թէ որպէս մայր՝ որ ծնանիցի, այնպէս պահէ զծնունդսն, և իբրև զհայր՝ խնամ տանի և դարմանէ, և ամենեցուն պատճառք ինքն է։

« Այսպէս ասէ Տէր Աստուած Իսրայելի, որ արար զառյապայսն »։ Ակիղաս ասէ. Որ եղծանեն զնա։ Սիմաքոս ասէ. Փրկիչն նորա։ « Հարցէք զիս վասն որդւոցն իմոց, և վասն դստերացն իմոց, և վասն գործոց ձեռացն իմոց պատուէր տուք ինձ »։ Այդ ինչ 'ի դէպ իցէ, ասէ, զի հայր վասն որդւոց պահանջիցի, կամ արարիչ վասն արարածոց։ Եւ ոչ ուրեք դուք ինչ քան զիս քաջ խնամ ածիցէք և հոգայցէք. և որ ինչ ըստ հարկի բնութեանն է՝ զայն չհարցանէք ինչ, և որ ըստ իմոց բարերարութեանց է՝ զայն 'ի հարց և 'ի փորձ արկանէք։ Եւ թէպէտ և ոչ ինչ կարի շնորհք հօրն իցեն 'ի ծնանելն, քանզի բնութեանն է գործն, այլ իմ է շնորհքն, քանզի յիմմէ բարերարութենէ աստի է ծնունդն։ Զի թէ հօրն ինչ շնորհ իցէ, որչափ ևս առաւել իմ. զի հարքն՝ սպասաւոր միայն եղեն, և ես պատճառք իսկ եմ ամենեցուն։

« Այսպէս ասէ Տէր՝ որ արար զառյապայսն »։ Բարւոք ասէ զառյապայսն, այսինքն զհանդերձեալսն։ Մի՛ եթէ յանցեալսն հայիցիք։ Այն իսկ էր շատ ըմբերանել զձեզ, զի 'ի չգոյէն 'ի գոյ եկիք. և իմաստութեամբ գոյացայք։ Միթէ չսիրիցեմ, ասէ. այլ չէ բաւական սիրելն միայն։ Միթէ չգիտիցեմ դարման տանել. վասն այնորիկ առ 'ի բարիոքն գիտելոյ զդարմանելն, զայն առնու յառակս. և առ սիրելն՝ զհայր և զմայրն։ Զիք ոք որ ասիցէ եթէ չկարիցեմ դարմանել, և ոչ այն որ ասիցէ, եթէ գիտել գիտիցեմ, բայց կամիցիմ ոչ՝ սիրել. այլ սիրեմ և խնամ տանիմ։ Եւ ինձ այսպէս թուի, եթէ զայս ինչ ասիցէ, թէ որպէս մանուկն ոչ ինչ կարիցէ ասել ցմայրն, թէպէտ և վշտօք գայցէ արտաքս յորովայնէ, այնպէս և ոչ դուք պարտիք ինչ ասել։

Ապա և զանցեալսն ևս համարի. « Ես իսկ արարի, ասէ, զերկիր և զմարդ 'ի վերայ նորա »։ Տե՛ս

զշարժմանսն և զնախ լինելն երկրի. զի երկիրն ասելով՝ զամենայն բարութիւնսն յայտ առնէ. զի նա է սերման ամենայնից և հանգերձ և կերակուր։ «Ես ձեռամբ իմով հաստատեցից զերկինս. ես պատուիրեցի աստեղաց»։ Ակիղաս և Սիմաքոս ասեն. Ես ամենայն զօրութեան նոցա պատուիրեցի. Թէոդոտիոն՝ Ես ամենայն զօրութեանց նորա ետու պատուէր։ Եւ այս՝ 'ի նշանակ դարձմանցն խնամոցն։ Գրեսջիր թէ զառնելն ոչ ինչ համարիցիք՝ եթէ խնամակալութեանն է, իսկ զայնչափ բարերարութիւնս պատրաստեալ՝ ո՞չ համարիցիք խնամակալութեան։ Եւ թէպէտ և հայր առանց խընամ և դարման [1] ինչ տանելով, ծնանելովն միայն երախտաւոր է, և ոչ որք բամբասէ զնա՝ յորժամ ծնանելն կամիցի [2]. այլ իշխանութիւն ունի, քանզի տէր իսկ առնէն զնա և արտաքնոցն օրէնք՝ աներկիւղ և անկասկած 'ի պատժոցն՝ առնել զինչ և կամիցի ըստ իշխանութեանց. քանզի ունին զբնաւական հաւատարիմ՝ զգութեան և զխնամոն բնականս. քանզի յայն իսկ ապաստան ետու ամենևին իշխանութիւն ծնողին. իսկ ես ոչ արարի միայն, այլ և զայս ես ամենայն յաւելի, զերկիր, զերկինս, զաստեղս։ Այլ նոքա թերևս համաշխարհականք իցեն. տեսցուք և զսեփականսն։ «Ես, ասէ, յարուցից զնա արդարութեամբ թագաւորել»։ Ինձ այսպէս թուի, եթէ ընդ արարած՝ զամենայն բնութիւնս համարիցի, իսկ 'ի խնամսն՝ յայնմ ժամանակի զյուդայական միայն ածէ ասէ։

«Զարթուցի արդարութեամբ զթագաւորն»։ Կամ զԶօրաբաբելէ ասէ, կամ զԿիւրոս թագաւորէ։ «Նա, ասէ, շինեսցէ զքաղաքն իմ, և զգերութիւն ժողովըրդեանն իմոյ դարձուսցէ, ոչ փրկանօք»։ Իսկ այլքն ասեն. Ոչ փոխանակօք և ոչ պատարագօք։ Զի ծանիցես եթէ 'ի վերուստ է հրամանն. «Զի Տէր, ասէ, այսպէս ասէ»։ Եւ ուր Տէր ասիցէ, պարտ է հաւատալ իբրև Տեառն։ Իսկ ոմանք ասեն, եթէ և զՔրիստոսէ ասէ. և չէ ինչ արգել և զայն ես ընդունել։ «Նա շինեսցէ զքա-

1 Յոր. Հայր ինչ խնամ տանից դարման... և սխրաւոր է։ Եւ Հայր ինչ՝ յօտար գրչէ եգեալ։
2 Յոր. Յորժամ կամիցի ինչ առնել. այլ յօտար գրչէ եղծեալ սեւագեղով և փոխանակ եգեալ՝ ծնանելն կամիցի։

զպաքն իմ », զեկեղեցի ։ Եւ « Արդարութեամբն զարթուցանել »։ Զի այնպիսի իսկ վարս կարգեաց յեկեղեցւոջ, զի ոչ բազմութեամբ ինչ սպասաւորաց և ոչ մրագիր օրինօք և ոչ այլ ինչ իւիք ըստ արտաքնոցն՝ եցոյց զօրութիւն ինչ զառաջինն։ Իսկ ի՞ւ իւիք. արդարութեամբ. քանզի չիք ինչ համգոյն արդարութեանն։ Վասն որոյ և ունի իսկ ոչ բռնութեամբ, այլ կամօք նոցին իսկ՝ որ ընդ[1] իշխանութեամբն իցեն. ոչ ուրեք մեղաւ, և ոչ զոք զրկեաց։ « Եւ ամենայն ճանապարհք նորա ուղիղ են »։ Զի ոչ ոք կարիցէ բիծ գտանել հրամանաց նորա։ « Եւ զգերութիւն ժողովրդեան իմոյ դարձուսցէ, ոչ փրկանօք և ոչ պատարագօք »։ Այն իսկ է, թէ Մի՛ ստանայք ձեզ ոսկի և արծաթ ։

« Վաստակ եղև Եգիպտոս »։ Իսկ այլքն ասեն. Գետոն Եգիպտացւոց և վաճառքն Եթէովպացւոց։ Բարիոք իսկ զիրս աշխարհիս և զհոգս՝ վաստակս կոչէ. որպէս միւս մարգարէն՝ խռովութիւն անուանէ. Զուր, ասէ, խռովի. գանձէ և ոչ գիտէ ում ժողովէ զայն։ Եւ վաճառքն իսկ՝ ցաւք, և վաստակքն աւելորդք են. ըստ այնմ, եթէ Ետ չար զբօսանք առ 'ի զբաղմունս և 'ի ժողովել. զի ամենայն ինչ ունայն է, և կամ մտաց զբօսանք[2]։

Ապա ասէ. « Եւ Սաբացիքն արք մեծամեծք առ քեզ անցցեն, և քեզ ծառայեսցեն, և զկնի քո շրջեսցին »։ Սաբացիք սահմանորդք են Եթէովպացւոց. զի նոքա իսկ ընկալան զնոր քարոզութիւնն՝ներքինեաւն։

« Կապեալք 'ի ձեռակապս եկեսցեն առ քեզ, և երկիր պագցեն քեզ, և 'ի քեզ ուխտադիր լիցին »։ Եւ արդարև կապեալ իսկ էին անհնարին մոլորութեամբ ամենեքեան, մանաւանդ Եգիպտացիքն և Եթէովպացիքն և նոցին սահմանորդք Սաբացիքն։ Ապա և ըղպատճառսն իսկ ասէ, վասն որոյ գայցեն, թէ « Զի և 'ի քեզ Աստուած գոյ »։ Ըստ այնմ, եթէ Ես 'ի Հայր, և Հայր յիս։ Իսկ ոմանք զայն, եթէ « Ի քեզ Աստուած գոյ », յԵրուսաղէմ տանեն. և եթէ այնպէս եւ

1 Յոր. Զեք ընդ։
2 Յոր. Զեք ղբօսանք։

իցէ, ոչ ինչ ապականէ զմիտսն. քանզի անտի իսկ ծագեաց Տէրն և Աստուած։ Իսկ այլ թարգմանքն չգնեն ինչ զպատճառսն, այլ ասեն. Բայց և 'ի քեզ Հզօրն։ Սիմաքոս միայն ասէ, եթէ Զի և 'ի քեզ Աստուած գոյ. և ոչ գոյ այլ Աստուած, բայց 'ի քէն, Աստուած յԱստուած։ Յայտ է եթէ Հայր յՈրդի. որպէս և ինքնին իսկ ասէ, եթէ Ես 'ի Հայր, և Հայր յիս։

Ապա և զկուրութիւնն իսկ Հրէիցն ակնարկէ, եթէ «Դու ես Աստուած, և մեք ոչ գիտէաք, Աստուած փրկիչ Իսրայէլի»։ Իսկ Ակիւղաս փոխանակ այնր, եթէ «Դու ես Աստուած, և մեք ոչ գիտէաք». Դու ես Աստուած, ասէ, աներևոյթ։ Սիմաքոս և Թէոդոտիոն՝ Ծածուկ, ասեն։ Եւ զիարդ իցէ ծածուկ. արարչութեամբն յայտնի է, խնամովքն արարածոց՝ զօրս ունի հաստատուն. վասն որոյ և յաջորդն իսկ յայտնագոյն ցուցանէ տեսչութեան նորա. «Աստուածդ Իսրայելի, ասէ, փրկիչ»։

«Ամաչեսցեն և պատկառեսցեն ամենայն հակառակորդք նորա, և գնասցեն ամօթով[1]։ Նորոգեցարուք առ իս, կղզիք»։ Ակիւղաս ասէ. Ամաչեսցեն, նա և պատկառեսցին իսկ ամենեքեան 'ի միասին. գնացին ամօթով հիւսուն արարելոցն։ Սիմաքոս ասէ. Յամօթ եղև։ Թէոդոտոն. Ամենեքին նոքա համօրէն։ Իսկ այլ թարգմանիչքն՝ առ կռոցն արարիչս յաճախեն ըզբամբասանսն. թերևս զեգիպտացւոցն իսկ ասիցեն, և զեթէովպացւոց վաճառացն։ Իսկ Եւթանասունքն նորոգութիւն իմն գուշակեն հեթանոսաց և ուրախակից լինել 'ի փրկութեան Իսրայելի։ Ապա և զծով իսկ և զցամաք կոչէ. զի ասելովն զկղզիս, զայն յայտ առնէ. «Նորոգեցարուք, ասէ, առ իս, կղզիք. զի փրկելոց է Իսրայել 'ի Տեառնէ՝ փրկութիւն յաւիտենից. մի ամաչեսցեն և մի յամօթ լիցին մինչև յաւիտեան»։ Զի անդէն իսկ 'ի մանկութենէ զընտիր ընտիր առաքինութեանցն յանձին ունիցին։

«Այսպէս ասէ Տէր, որ արար զերկինս. սա է Աստուած, որ եցոյց զերկիր և արար զնա»։ Եւ տես, յորժամ կամիցի ինչ մեծ ասել, ոչ միայն զանուն Տեառն

1 Յօր. Եւ գնասցեն ամօթով. յօտար գրչէ։

դնէ, թէպէտ և այն իսկ արժանի և հաւատարիմ էր․ զի թէ զամենայն ունի, և ամենեցուն տիրէ, ապա չիք ինչ յայտնցանէ՝ որ ընդ նովաւ իցեն, որ կարիցէ նմա կալ հակառակ․ բայց սակայն և զզօրութենէն ճառէ․ « Սա է Աստուած, որ եցոյց զերկիր »։ Տեսանե՞ս, զի չէր, և ած ՚ի գոյ․ քանզի զայն իսկ յայտ առնէ․ « Եցոյց զերկիր և արար զնա »։ Զի ոչ միայն, ասէ, զնիւթն ած ՚ի մէջ, այլ և զկերպարանսն, և զպատշաճութիւնն․ քանզի անկազմ և աներևոյթ էր, ջրովք տղմացեալ, սկացեալ, անկերպարան, անհեդեդ։

« Սա է Աստուած, որ եցոյց զերկիր »։ Միթէ բաժանիցէ՞, որպէս Յունաց ցոփքն՝ զկէսս աստուածս սանդարամետականաց անուանեն, և այլս՝ երկնաւորականացն։ Մի է, ասէ, Աստուած ամենայն աշխարհի․ և այսպէս զօրութիւն է նորա ՚ի վերայ երկրի, որպէս և ինքնին իսկ երևելիքն վկայեն նմա։ Եւ ոչ այնչափ, այլ այնպիսի ինչ, զի ոչ ասել և ոչ իմանալ ոք կարիցէ։ Իսկ Ակիւղաս և Թէոդոտոն ասեն․ Այսպէս ասէ Տէր, որ հաստատէ զերկիրս․ սա է Աստուած, որ ստեղծանէ զերկիր, և առնէ զնա։ Կարևոր է և սոցա թարգմանութիւնս, թէ զոր ածն ՚ի մէջ՝ չէ ՚ի նմանէ բացեալ, ունելովն և առաջնորդելովն, իբրու թէ հանապազօր հաստիցէ և ստեղծանիցէ։ Իսկ Եւթանասնիցն, եթէ կատարեալս և բովանդակս արար․ զոր արարն՝ ինքն որոշեաց զնա։ Իսկ այլքն ասեն․ Պատրաստեաց, հաստատեաց․ բայց ըստ Եւթանասնիցն, թէ Որոշեաց․ այսինքն՝ զծածկեալն ՚ի ջրոցն բազմութենէ յայտնեաց։ Զի զառաջինն ոչ այսպիսի ինչ որոշումն ունէր, այլ երկիր և ջուր մի էին․ զի և այն իսկ ոչ փոքր ինչ զօրութեան է, զբազմութիւնն ջրոյն ՚ի բաց փարատել, զերկիրս խաղաղել յայտնել։ Զոր և այժմ է տեսանել, յորժամ ծով մրմռեսցի, և արշաւանք ալեացն կուտակելոց՝ սպառնայցեն զամենայն ցամաք առհասարակ ծածկել․ և զսպառնալիսն միայն ցուցանիցէ, և արդիւնս ինչ ոչ գործիցէ․ ապա ՚ի միտ առնուցու զայն՝ որ ՚ի սկզբանէն այնպէս սահմանեաց զնա, և ոչ ՚ի զուր ինչ արար զնա, այլ ՚ի բնակութիւն ստեղծ զնա։ Տե՛ս, զիա՞րդ առնէ զնա արժանի հաւատալոյ զվկայութիւնն՝ առ ՚ի հանել զնոսա և ոչ կորուսանել։

« Միթէ ՚ի զո՞ւր ինչ եղև », ասէ. զոր և այլուր ասէ. Միթէ ՚ի զո՞ւր ինչ հաստատեցեր զամենայն որդիս մարդկան։ Վասն ձեր իսկ եղև երկիր, և վասն ձերոյ բնակութեան պատշաճեցաւ ՚ի կերակրել, ՚ի դարմանել։

« Ես եմ Տէր, և չիք ևս այլ ոք։ Ոչ ՚ի ծածուկ ինչ խօսեցայ, և ոչ ՚ի խաւարին ինչ տեղի երկրի »։ Զի որպէս յելանելն նոցա յԵգիպտոսէ, օրէնքն տուան մովսիսականք, նոյնպէս և աստ, զի ՚ի Պարսից չարեացն հեռանայցեն։

« Ոչ ՚ի ծածուկ ինչ խօսեցայ, և ոչ ՚ի խաւարին ինչ տեղւոջ երկրի ուրեք »։ Զկուռսն և զդիւթութիւնս անյայտս, և որք ՚ի խաւարին դանդաչիցեն՝ ակնարկէ, եթէ ոչ որպէս նոցայն խաւարինք լիցեն, նոյնպէս է և իմքս. այլ համարձակութեամբ խօսիմ, զոր ոչ ոք յանդիմանել կարիցէ. և անկասկած, զոր ոչ ոք աղարտել մարթիցէ։ Լուսոյ բանք են. ըստ այնմ, թէ Զոր ինչ ասեմ յունկանէ, քարոզեցէք զայն ՚ի վերայ տանեաց. այսինքն ՚ի լոյս, յայտ յանդիմանս. և դարձեալ, թէ Ամենայն որ զչարիս գործէ, ատեայ նա զլոյս. և դարձեալ, եթէ Ես լոյս եմ աշխարհի. և դարձեալ, եթէ Ես համարձակութեամբ խօսեցայ ՚ի տաճարին, ուր ամենայն Հրեայքն ժողովեալ։

« Չասացի երբեք ցզաւակն Յակոբայ, եթէ դուք սնոտիս խնդրեսջիք »։ Չետու ինչ այսպիսի հրաման, և ոչ պատուիրեցի, և ոչ ՚ի լերինն իսկ բարձու, ուր ամենեքին իսկ մօտ կային և լսէին։ Ո՞չ մինչ յերկնից իսկ գայր բարբառ և փողն հնչէր, եդի ընդ ձեզ վկայութիւն. չիք պատճառք ասել, եթէ ես ինչ հրամայեցի. և արդ այլ ևս ասեմ և յայն սակս, կամ զորս և յառաջագոյնն ասացի։

« Ես եմ, ես եմ Տէր, որ խօսիմ զարդարութիւն, և պատմեմ զճշմարտութիւն »։ Այսինքն պատմեմ յատենիւդ զճշմարտութիւն հանդերձելոցն։ Եւ այն իսկ մանաւանդ Աստուծոյ՝ զի զմտաւորսն արդարութեամբ վճարիցէ, և զհանդերձեալսն ճշմարտութեամբ յառաջագոյն ասիցէ. որոց չէին իսկ ձեռնհաս պատմել կուռքն։

« Ժողովեցարուք և եկայք խորհել ՚ի միասին՝ ա-

պրեալքդ»։ Որպէս տէր ոք խնամակալ, որ 'ի բանդէ զաղամամերս հանել կամիցի, տայ խրատ յառաջագոյն յիշեցուցանելով զառաջինսն, զի մի իբրև ելանիցէ ընդարձակ, այլոց ինչ չարեաց լինիցին նմա պատճառք դիւրութիւնն, և երկեյուցանիցէ և սաստ ցուցանիցէ. և ոչ զի տանջիցէ, այլ զի մի անդէն յառաջին բարսն շրջիցի. սոյնպէս և Աստուած յորժամ մերձն էր արձակել զնոսա 'ի գերութենէն, դատ դնէ, իրաւունս տայ. «Միթէ յօժարեցուցի՞ զձեզ, ասէ, երբեք երկիր պագանել կռոց. ժողովեցարուք և եկայք խորհել 'ի միասին՝ ապրեալքդ»։ Զամենեսեան 'ի միասին կոչեմ, թէ կարող ոք իցէ՝ յանդիմանեսցէ համարձակ. ամենեցուն առաջի ասեմ, զի լինիցիք միմեանց մխիթար 'ի ժողովելն 'ի միասին, և խորհել՝ ապրեալքդ 'ի հեթանոսաց։

«Զի՞նոքա ոչ ծանեան, որ բարձեալ տանէին ըզփայտն դրօշեալ իւրեանց. և յաղօթս կային առ աստուածս՝ որ ոչն ապրեցուցանէին զնոսա, կամ պատմէին ինչ»։ Ոչ ծանեան, քանզի դեռ ևս շլացեալք էին, և կուրացան յոյժ. և արդիւնքն իսկ բարքն որ բասրիցեն, եթէ զորս բարձեալս տանին՝ որ ոչ և զիւր իսկ անձն շարժել կարէ։ Ընդէ՞ր իցէ այս մահ, վասն է՞ր այսպիսի ծանրութիւն։ Եւ երկուս ինչս դնէ, թէ և նմանութիւն են, և մարդկան նմանութիւնք. իսկ ես և ոչ միում ումեք այսպիսեաց։ Եւ թէպէտ և փայտք իցեն, և նմանութիւնս ինչ մարդկան կերպս ունիցին, սակայն թէ կարիցեն ինչ օգնել՝ օգնեսցեն։ Վասն այնորիկ ասէ հեգնելով, թէ «Յաղօթս կայ առ աստուածս, որ ոչ ապրեցուցանիցեն, կամ պատմեն ինչ»։ Թէպէտ և փոքր ինչ իցէ յառաջագոյնն պատմել. զի Աստուծոյ ոչ միայն յառաջագոյնն պատմել է, այլ և զհնարս ցուցանել՝ որով փախչել կարիցեմք. և ես ոչ, ասէ, զայս ինչ պահանջեմ առ 'ի նոցանէն, այլ պատմել միայն։ Եթէ ստիցեմ, և եթէ ճշմարտութեամբ խօսիցիմ, «Երթեալ ուսարուք 'ի տեղիսն՝ ուր պատուիցինն, եթէ պատմեսցե՞ն ինչ. մերձեսցին զի ծանիցեն միանգամայն և հեթանոսք»։ Զի՞նչ իցէ միանգամայնն. այլ թէ ընդ ձեզ ելանիցեն 'ի հեթանոսաց, զի ծանիցեն զճշմարիտն Աստուած։

« Ո՞ լուեալ արար զայս ամենայն 'ի սկզբանէ »։ Տես զնախագիտութիւնն. ոչ միայն վայրապար ինչ ասացի, այլ և լուեալ իսկ ընդհանուր արարի. յայնմ հետէ իսկ պատմեցաւ ձեզ. և արդ թեպէտ և մոռանայցեն, այլ ընդ ձեզ լսիցեն։ « Եւ այժմ ես եմ Աստուած և չիք բայց յինէն »։ Արդարև փրկիչ չիք ոք արտաքս քան զիս. ոչ վայրապար ինչ պահանջեմ զթագաւորութիւնն, քանզի չիք ոք արդար բայց յինէն, և ոչ փրկիչ և Աստուած պարտի լինել արտաքս քան զիս՝ արդար առ լլկեալս, սքանչելի փրկիչ։ Եւ առ պատժապարտսն է մարթ լինել ումեք արդար, բայց ոչ եթէ և փրկիչ կարիցէ լինել. որպիսի ինչ՝ զի իշխան ոք կարէ դատաստան առնել արդար, սակայն փրկել չէ ձեռնհաս. զի այն իսկ տայ նմա կոտորել զբազումս, զի զարդար զդատաստանն դատիցի. իսկ առ իս ոչ այսպիսի ինչ. այլ միանգամայն արդար եմ և փրկիչ. քանզի և ոչ արդարն իսկ վճիռ՝ կարէ խափանել զիս 'ի փրկելոյ. զի ոչ ինչ կամելն ապրեցուցանել զպատժապարտս՝ եղծանիցէ զարդարն դատաստան, քանզի և արդարութեամբ պատժել՝ փրկութիւն մեծ է պատժապարտացն, որպէս 'ի մարմնի զվէր ինչ բժշկել՝ 'ի փրկութիւն է մարմնոյն։ Եւ զի այս այսպէս է, ես ցուցից քեզ. ադէ, ասա. յիրաւի՞ տանջեալն լաւ իցէ, եթէ յանիրաւին համապազ. այլ և ոչ զայս ասեմ ինչ, այլ զսորին հակառակն. զի որ զարդարն կեցուցանէ, ոչ եթէ զպատիժսն ինչ թողուցու, այլ մեղացն վախճան առնէ։ Ո՞չ ապաքէն հայհոյիչ էր Պաւղոս. քանզի և ինքն իսկ ասէր, եթէ Շնորհ ունիմ Քրիստոսի, որ զօրացոյց զիս. զի հաւատարիմ համարեցաւ. քանզի յառաջ հայհոյիչ էի, այլ գտի ողորմութիւն. զի յիս ցուցցէ Քրիստոս զամենայն երկայնմտութիւնն ։ Եւ արդ զի՞նչ. տեսանե՞ս զարդարն Աստուծոյ, որ զանձն յանդիմանէր. քանզի յանդիմանեաց զանձն, և մեծաառաւելութեամբ, զի մի դատաւորն յանդիմանիցէ այնու զնա. քանզի ոչ ուրեք երևի թէ այնպիսի ինչ երբեք ասաց և յանդիմանեաց. այլ կամի թէ ինքն պատժապարտն զանձն յանդիմանեսցէ. զի ոչ ոք խոստանայ զչարիս, եթէ ոչ նախ ըստգտանիցէ զանձին յոռութիւնն։ Եւ արդ, փրկեալց արդեւք զնա, թէ ոչ

փրկեաց. Ոչ, ասէ, եկի զի դատեցայց զաշխարհ, այլ զի փրկեցից զաշխարհ։ Իսկ աւազակն չէ՞ր արդեւք այսպիսի. այլ սակայն կեցոյց զնա արդարն և փրկիչ։ Իսկ զո՞ ոք չփրկեաց. զարդարսն ըստ օրինաց, որ ոչ կամեցան. քանզի և զարդարացն վճիռ ընդ մեղաւորսն բերէ, զի Ամենեքին, ասէ, մեղան և նուաղեալ են 'ի փառաց անտի Աստուծոյ. և յայտ առնէ, եթէ առ կշիռ Աստուծոյ արդարութեանն, և արդարքն ևս պատժապարտք են. և փրկելն ոչ յայսմ աշխարհի միայն է, այլ և յետ մահու, ուր կարի պէտք իցեն փըր-կութեանն։

« Դարձարուք առ իս, և ապրեսջիք՝ որ 'ի ծագաց երկրի »։ Մի՛ կարծիցէք եթէ յԵրուսաղէմ ևեթ ար-գելեալ կայցէ մարդասիրութիւն իմ։ Վասն այսորիկ զնոսա կոչեցի, զի զձեզ կոչեցից. զի ձեզ նոքօք արկից նախանձուկս. միայն կամիմ զի դառնայցէք, և 'ի ձէնջ նախ լինիցի սկիզբն. ոչ զի ես առնիցեմ սկիզբն, այլ զի ձերով դառնալովն եկից առէպ զկնի։ Ոչ ինչ աւե-լի խնդրեմ քան զապաշխարութիւն։

« Ես եմ Աստուած և չիք այլ ոք. յանձն իմ եր-դուայ, եթէ որ ինչ ելանէ 'ի բերանոյ իմմէ՝ արդա-րութիւն է »։ Զի՞ պիտոյ էր երդումն. այլ զի հաւա-տացուցանիցէ զբանս լսողացն։ Եւ զի այս այսպէս է, վկայեսցէ Պաւղոս. Զի ունիցին, ասէ, ուժգին մխի-թարութիւն, որ կոչեցեալքն իցեն 'ի կեանս յաւիտե-նից։ « Եւ բանք իմ ոչ դառնայցեն »։ Քանզի բա-զում անգամ ասաց, և ոչ արար վասն անարժանու-թեան պատժաւորաց, վասն այնորիկ աստ և զերդումն իսկ յառաջ բերէ։

« Զի ինձ կրկնեսցի ամենայն ծունր »։ Եւ արդարև արժան իսկ էր հաճել զանհաւատսն։ Զի՞նչ խօսիս, Տէր բարերար. Հրեայքդ զքեզ Թողլին, և զայլս կա-միս մտերիմս առնել։ Այն մեծ պարծանք են Հրէից, յորժամ Աստուածն նոցա զյաղթութիւնն ցուցանէր. և այն իսկ էր անհնարին վատթարութիւն Թշնա-մեացն, յորժամ ոչ միայն ծառայիցն չյաղթէին, այլ զի և զիւրեանց տեարսն ուրանային։

« Եւ երդնուցու ամենայն լեզու յԱստուածն ճշ-մարիտ »։ Զոր Պաւղոս վասն սանդարամետականաց

ասէ։ Եւ ո՞ւր կատարեցաւ այս, ձեզ Հրեայքդ. առ մեզ յայտ է զի կատարեցաւ։ Ո՞ւր ամենայն ծունր կրկնեցաւ երբեք Աստուծոյ. զի յետ դարձին և դուք դարձեալ անկուշեցէք։ Եւ ոչ ասէ եթէ կայցեն, այլ թէ կրկնեսցի ամենայն ծունր։ Նա և իրաւունս իսկ ետ վասն սորին բանի վերադրովն. զի եթէ զերկիրս ես արարի, յայտ է եթէ 'ի համաշխարհան Աստուած եմ։ « Եւ երդուիցի ամենայն լեզու »։ Որ և այս իսկ աստուածպաշտութեան նշանակ է։ « Եւ խօսեսցի զարդարութիւն և զփառս, և առ նա գայցէ »։

« Ամաչեցէք ամենեքեան, որ որոշէք զանձինս 'ի Տեառնէ »։ Եւ զիա՞րդ ամենայն ծունր կրկնեսցի, եթէ իցեն ոմանք որ որոշիցեն. 'ի նոցանէ իսկ բազումք ամաչեսցեն, որք որոշեցին զանձինս 'ի Տեառնէ, և Աստուծով փառաւորեսցին ամենեքին, և ոչ ոք այլ իւիք աշխարհական ինչ իրօք արդարասցին յԱստուած։ « Եւ փառաւորեսցին ամենայն զաւակ որդւոցն Իսրայելի »։ Եւ այն իսկ են փառք՝ որ յարդարութենէն իցէ, և ոչ յայլ ումեքէ։

## ԳԼՈՒԽ ԽԶ

« Անկաւ Բէլ, կործանեցաւ Դագոն, եղեն կուռք նոցա յանասունս և 'ի սողունս »։ Մանաւանդ զի և առանց այնր իսկ անկանէին, զի ոչ ինչ ունէին զօրութիւն, և ոչ ազդումն ինչ. եւ առաւել յայնմ ժամանակի՝ յորում ժողովուրդն փրկելոց էր, անկեալ կործանէին։ « Եղեն ամենայն կուռք նոցա յանասունս և 'ի սողունս »։ Կամ թէ զանասունս և զսողունս իսկ պաշտէին, կամ թէ յայն կերպարանս պատկերս ինչ առնէին։

« Իբրև բեռինք ինչ, ասէ, կապեալք և կաշկանդեալք »։ Հեգնէ զկուռսն. զի եթէ աստուածք իցեն, զիա՞րդ իբրև զբեռինս կապեալս վերամբարձ կրիցեն. քանզի ոչ եթէ աստուածեղէն զօրութիւնն վերամբարձ ումեք կրեցին։ « Իբրև զբեռն ինչ, ասէ, վաս-

տակելոցն, ծարաւոյն և քաղցելոյն, և լքելոյ, և ոչ զօրացելոյ»: Եւ արդ ած զմտաւ միանգամայն, եթէ զիա՞րդ կարիցեն ապրել՚ի պատերազմէ:

«Լուարուք ինձ, տունդ Յակոբայ, և ամենայն մնացեալք Իսրայելի»: Վասն զի բազումք էին եղծեալք և կորուսեալք, վասն այնորիկ ասէ, թէ «Որ ընտրեալք յորովայնէ և խրատեալքդ մինչև ցծերութիւն»: Զի մի ոք մեղադիր լինիցի մարգարէին, եթէ միշտ զնոյն խօսի հանապազ, զնոյն յեղյեղէ, վասն այնորիկ և զպատճառսն դնէ զլսողացն զանզգայութիւն. ամենայն տիք, ասէ, չեն ձեզ բաւական առ ուսանել: «Ես եմ, ասէ, և մինչև կարի ծերասջիք, տակայն ես եմ»: Եւ մինչև ցայնժամ արդեւք միայն. ոչ, այլ առայժմ ևեթ. զոր օրինակ յորժամ ասիցէ, եթէ Յառաջ քան զԱբրահամու լինելն եմ ես, ոչ եթէ ցայնժամ ևեթ էր:

«Ես անսամ ձեզ, ես արարի, և ես ներեցից. ես ընկալայց և կեցուցից զձեզ»: Ապա և զմարդասիրութեան նշանակ ցուցանէ, զոր մանաւանդ և խնդրէին իսկ: Իսկ արդ դու իցես, քանզի և ես իսկ. բայց զմեզ անողորմ տանջես: Թէպէտ և հակառակ նմին իցէ՝ զոր ասէ, եթէ «Ես անսամ ձեզ». ոչ եթէ դուք անսայցէք ինչ ինձ. զի որ եմն մշտնջենական, տեսանեմ զձեզ զի փոփոխէք աստուածս, և արդ զիա՞րդ իցէ զի չներիցեմ ձեզ. դուք էք ծանրատաղտուկն բեռինք, դուք էք թշնամանողք. զի եթէ ես ոչ տեսանէի, 'ի վաղուց հետէ իսկ սատակեալ էիք: «Ես արարի, և ես անսացից»: Այսինքն ոչ եթէ դուք արարէք զայս ամենայն, այլ ես. բայց այսուհետև և թողութիւն արարից և փրկեցից զձեզ: «Ես անսամ ձեզ»: կամ մեղադրութիւն, կամ աւետիք:

«Ո՞ւմ նմանեցուցէք զիս. մինթէ կռո՞ցն»: Դարձեալ յերգ արկեալ՝ հեգնէ զստեղծուածն և զդրօշած և զկերպարանս կռոցն: «Որ արկանեն 'ի մէջ ոսկի 'ի քսակէ, և զարծաթ կշռեն կշռօք, և 'ի վարձու ունին ոսկերիչս. առնեն ձեռագործս, և անկեալ երկիր պագանեն նմա. բարձեալ՚ի վերայ ուսոց և գնան: Եթէ դնիցեն 'ի գետնի՝ անկեալ դնի, և ոչ շարժեսցի. և եթէ ոք կարդայցէ առ նա՝ ոչ լուիցէ, և 'ի չա-

րեաց ու փրկեսցէ զնոսա։ Յի՛շեցէք զայս և յոգաց հա-
նէք. ապաշխարեցէք մոլորեալքդ. դարձարուք սրտիւք
և յիշեցէք զառաջինսն յաւիտենից»։ Զոր օրինակ
վէրք զերեսս քասքնեցուցանեն, նոյնպէս և մեղք զո-
գիս։ «Ապաշխարեցէք մոլորեալքդ»։ Եւ ո՞վ ոք մոլո-
րեալ չկամիցի գալ յուղիղ ճանապարհ. զի թէպէտ
և ես յորդորէի յայդ, չէ՞ր պարտ ձեզ և այլ ուստեք
խնդրել զուղիղ ճանապարհ։ «Դարձարուք սրտիւք»։
Տեսանե՞ս, զի զայսպիսի դարձ խնդրէ Աստուած։ «Յի-
շեցէք զառաջինսն յաւիտենից»։ Եւ այն իսկ են կեր-
պարանք ապաշխարութեան, զի զառաջինսն ոք ստէպ
զմտաւ ածիցէ և զղջանայցէն։ Վասն այնորիկ իսկ են
գիրք, վասն նորին և պատուիրանք։ Պատրաստ եմ
յամենայն ժամանակս պահանջել 'ի ձէնջ վրէժս. ոչ
եթէ յայսմ ժամանակի, ասէ, յայս, և 'ի միւսումն
ես ոչ, այլ յամենայն ժամանակս։ Ոչ միայն զբարե-
րարութիւնս ցուցանեմ, այլ և զպատիժս. ոչ միայն
զերկայնմտութիւնս, այլ և զառ 'ի ձեռացն թողուլ
բաւական է. վկայ լինել ինձ ամենայն առատու-
թեամբ, և ոչ նուազութեամբ, կամ բարերարու-
թեան անժամանակ, կամ պատժոցն։

« Եթէ ես եմ, ես միայն՝ որ պատմեմ յառաջագոյն
զվերջինս մինչչև լեալ իցէ, և միանգամայն կատարես-
ցին»։ Տեսանե՞ս, զիարդ ցուցանէ եթէ յառաջագոյն
ասել՝ մանաւանդ Աստուծոյ է, և ոչ այլ ուրուք»։
«Եւ ածել զհանդերձեալսն միանգամայն»։ Ո՞րք. ոչ
եթէ ըստ ժամանակաց ինչ կարգի, այլ միանգամայն,
յորժամ ինքն կամիցի, միանգամայն զամենայն։ Նախ
ասացն՝ որ առ յապա յետ բազում ժամանակաց լինե-
լոց իցեն, քանզի այն իսկ են վերջինք։

« Եւ ասացի, թէ ամենայն խորհուրդք իմ կացցեն,
և զամենայն ինչ զոր և կամիմ՝ արարից»։ Զի այն իսկ
Աստուծոյ միայն է՝ զամենայն ինչ զոր և ասիցէ՝ առ-
նել. զի և ոչ ինչ իցէ՝ որ արգելուցու, և ոչ այն ինչ՝
որ խափանել կարիցէ. իսկ մարդ և ասել չիշխէ, թող
թէ և առնել ինչ։

« Կոչեցից յարևելից թռչունս, և յերկրէ հեռաս-
տանէ վասն որոց խորհեցայ»։ Զիսրայելացիսն կոչէ
թռչունս՝ վասն երագութեան դարձին. զի իբրև զթռ-

չունս ինչ՝ այնպէս սլացեալ ելանիցեն ընդ ճանապարհն ընդ որ իջին։ « Ձայս խորհեցայ և զսոյն արարից. զի ես իսկ եմ արարիչ »։ Եւ դարձեալ զդիւրութիւնն ցուցանէ՝ վասն որոյ խորհեցաւն. « Խորհեցայ, հաստատեցի և արարի և ածի և յաջողեցի զճանապարհս նորա »։ Ձի յայտ լիցի եթէ 'ի չգոյէ. և ոչ եթէ իբրև զկարծիս ինչ իրս, այլ հաստատունս. այն իսկ է եթէ հաստատեցի և արարի զայն ինչ՝ որ չէր ուրեք։ Եթէ զդիւրութիւնն խնդրեսցես, իբրև զգոյս, ասէ, ինչ կոչեցի. և եթէ զզօրութիւնն՝ զչգոյսն արարի։

« Լուարուք ինձ, որոյ՛ կորուսեալդ իցէ զսիրտս »։ Ակիւղաս, Հզօրքդ սրտիւք. Սիմաքոս, Խստասիրտք, ասէ։ Ուստի և Ստեփաննոս իսկ, յորժամ հրապարակագոյժն բարբառէր՝ զսոյն բանս ասաց։ « Որ հեռացեալքդ էք յարդարութենէ »։ Տեսանես, որչափ ինչ կորուստ սրտի է, յորժամ զարդարութիւն ոք կորուսանիցէ։ Ձի սկիզբն ճանապարհի բարութեան՝ առնել զարդարութիւն է։ Եւ արդարև, չարիք՝ անմիտ և անհանճար առնեն զմարդիկ։ Ոչ վայրապար 'ի բաց կացէք, այլ հեռի իսկ եղերուք յարդարութենէն։

« Արդ ես մերձեցուցից զարդարութիւն իմ, և զփրկութիւն իմ ոչ յամեցուցից »։ Զմարդասիրութիւնն արդարութիւն կոչէ. քանզի կայ արդարութիւն 'ի մարդասիրութեան, և մարդասիրութիւն յարդարութեան. վասն որոյ և ասէ իսկ, թէ Ողորմութիւն և իրաւունս երգեցից քեզ, Տէր. և դարձեալ, եթէ Ողորմեցայց՝ որում ողորմելոցն իցեմ. և ոչ վայրապար ամենեցուն։ Տեսեր զարդարութիւն ընդ մարդասիրութեանն. տեսեր զմարդասիրութիւն ընդ արդարութեանն։ Տանջեաց երբեմն, այլ յետ որչափ ամաց։ Եթէ 'ի համառօտութիւնն նայիցես, և եթէ յերկայնմտութիւնն, սակայն 'ի միտ առ միշտ զմարդասիրութիւնն։ Պատժեաց զԿային, այլ ոչ ինչ քան զպատիժսն զայնս գոյր մարդասիրագոյն. զի յօժարեցուցանէր զնա մերկանալ 'ի չարեաց։ Թէպէտ և համառօտ սատակեաց զՋրհեղեղականսն, սակայն ոչ ինչ գոյր քան զայն մեղմագոյն. զի որպէս և որպիսի կերպարանօք կարճեաց զչարիսն։

« Մերձեցուցի զարդարութիւն իմ, և ոչ հեռացի. և զփրկութիւն ոչ յամեցուցից. Տաց ՚ի Սիոն փրկութիւն փառաւորութեան Իսրայելի » ։ Քանզի ապրեալքն իբրև զպատժապարտս և յօտար աշխարհէ եկեալք ՚ի գերութենէ, այնու իմն նախատէին եթէ նժդեհք էք և Թափառականք. ես, ասէ, զնորին հակառակն արարից. « Տաց ՚ի Սիովն փրկութիւն Իսրայելի ՚ի փառաւորութիւն »։ Այնպիսի իմն պատուական անէր զնոսա ՚ի դարձին, զի ոչ միայն չնախատիցին, այլ և փառաւորք ևս լինիցին։

## ԳԼՈՒԽ ԽԷ

« Էջ, նիստ ՚ի յերկիր — իսկ այլքն ՚ի գետնի ասեն — կոյս դուստր Բաբելոնի »։ Տես, զիարդ հրամանաւ տայ հրաման, զի մեզ ուսուսցէ մեծամեծս ինչ. և ոչ եթէ մարգարէութիւն ինչ, այլ հրաման Աստուծոյ. « Մուտ, նիստ ՚ի խաւար, դուստր Քաղդէացւոց. զի ոչ եթէ ևս յաւելուցուս կոչել զիրգ և փափուկ »։ Տես, զիարդ երջանիկ կանայքն ՚ի թշուառութիւն դառնային, ՚ի թագաւորութենէն յերկիր կործանէր։ « Առ երկան. աղա ալիւր »։ Ցարքայութենէ՝ յերկանս և ՚ի գերութիւն, և յայնպիսի դժնդակ գերութիւն, և վշտագին ծառայութիւն։

« Ընկեա զքօղ, բաց զալիս քո »։ Նա զծերութիւն ՚ի թշուառութիւն հասուցանես, և ոչ յալեացն ակնածիցես ինչ։ « Յայտնեսցի ամօթ քո, երևեսցին նախատինք քո. զի բարձից ՚ի քէն զիրաւունս »։ Իսկ այլքն՝ եթէ վրէժ խնդրեսցի. այսինքն՝ առից ՚ի քէն զվրէժս։

« Զի ես բարկացայ ժողովրդեան իմում, զի պղծեցին զժառանգութիւն իմ, և մատնեցի զնոսա ՚ի ձեռս քո, և դու ոչ արարեր նոցա ողորմութիւն և ոչ ուխք։ Ծերոց ծանրացուցեր զանուրս յոյժ, և ասացեր, բամ՝ մինչև յաւիտեան կացից իշխան »։ Տեսանեմս զպատ-

ճառս պատժոցն. միթէ անձամբ ինչ զօրութեամբ յաղթեցեր նոցա. ես մատնեցի զնոսա 'ի ձեռս քո, և դու ոչ խնայեցեր, և ոչ ողորմեցար ծերոց նոցա. և ասացեր եթէ մինչև յաւիտեան կացից իշխան: Տեսանե՞ս, զի և զօրս Աստուծոյ մատնեալ իցէ, պարտ է տանջել, այլ խնայելով:

« Եւ դու ոչ եդիր զայս 'ի միտ քում, և ոչ յիշեցեր զվախճան քո »: Զի՞ք ինչ քան զայս չար, յորժամ մարդ իցէ, և զիւր բնութիւնն մոռանայցէ: « Արդ լո՛ւր զայս, գիրգդ փափուկ, որ նստէիր յուսացեալ և ասէիր 'ի սրտի քում. ես եմ, և այլ ոք չիք բնաւ »: Զայս ասէ, զի ցուցցէ քեզ եթէ ոչ 'ի միոյ ինչ են փոփոխմունք մարդկեղէնք. զի ոչ յառաջ քան զաւուրսն ինչ վրիպեսցես, այլ յանկարծակի դառնայցեն մարտնչել ընդ քեզ՝ յորս յուսացեալն էիր: « Ոչ նստայց յայրութեան, և ոչ ծանեայց զորբութիւն: Եւ արդ հասցեն 'ի վերայ քո յանկարծակի 'ի մի օր միանգամայն երկոքեն սոքա »: Տե՛ս, զիա՛րդ յանկարծակի յայտ առնէ եթէ աստուածասաստ է բարկութիւնն, և 'ի յերկնից պատիժք:

« Եւ ա՛յժմ կա՛ց դու 'ի կախարդութեանդ քում, և 'ի զօրացեալ դիւթութիւնս քո »: Բա՛բէ. տե՛ս զմեծագօր զօրութիւնն. յորժամ յառաջագոյն գուշակել երևեսցի, և նոքա ոչ միայն [1] չգիտիցեն, այլ և առ այլոցն յառաջագոյն գուշակեալ՝ ոչ ինչ կարիցեն հնարս հնարել, և ոչ մեքենայս խառնել. զի կանխասացութեան [2] մարտնչել ոչ այլ ինչ է, այլ յոյժ վստահ լինել յիւր զօրութիւն, և խոտորել զպատերազմողացն տկարութիւն: Եւ ըստ մարդկայն ինչ միայն ասեմ. այլ թէպէտ դիւացն իսկ զօրութիւն շարժեսցի, սակայն ոչ ինչ կարասցէ գամագիտ լինել:

« Դու ասէիր, եթէ ես եմ, և չիք այլ ոք »: Տեսանե՞ս, զի որ ինչ մարդկական է՝ կիրթ իմն և պատրատական է: Եւ եթէ 'ի վերուստ աջողութիւնն չիցէ, սակայն 'ի զուր է կազմածն, և յամօթ ես և 'ի պար-

1 Յոր. Գուշակել երևեսցի, և նոքա ոչ միայն, յօտար գրչէ:
2 Յոր. Զկանխասացութեան. յօտար գրչէ ուղղեալ. ըն կանխատեսութեան:

տութիւն լինի պատրաստողացն ։ Եւ այն իսկ է պարտութեան նշանակ, յորժամ յոչինչան վստահ լինիցին, ոչ գտանիցեն ինչ 'ի նոցանէն օգնութիւն ։

Եւ մինչդեռ, ասէ, 'ի մեծացեալ միտս կայցես, « Հասցէ 'ի վերայ քո կորուստ, և ոչ ծանիցես. և խորխորատ, և անկանիցիս 'ի նոյն »։ Տեսանե՞ս, զի ամենայն ուրեք զանկարծահասն նշանակէ ։ Եւ այն իսկ են զարմանք, զի յառաջ քան զայնչափ ժամանակս ասէ, և ոչ ածէ 'ի գործ զարդիւնսն կանխասացութեանն. զի ըստ մարդկան միտս այնպէս իմն համարեալ լիցի, եթէ ոչ կարիցէ կատարել՝ զորս սպառնացաւն. և ապա յանկարծակի կատարէ զասացեալսն ։ Համապազ պարտ էր ակն ունել. այլ սակայն և ոչ այսպէս լինին պիտանացուք, եթէ և արգելուր իսկ զբարկութիւնն. զի ուր 'ի Նինուէացիսն արգել, և 'ի նոցանէն կարող էր արգելուլ ։

« Եւ արդ կաց դու 'ի դիւթութիւնս քո և 'ի բազում կախարդութիւնս քո [1], զոր ուսար 'ի մանկութենէ քումմէ, եթէ կարիցես ինչ օգտել »։ Նա և Ասորեստանեայն Նախատէր զՀրէայսն, թէ ո՞ւր է Աստուածն ձեր, եթէ կարիցէ ինչ օգնել. այլ նոքա զուր և վայրապար, իսկ Աստուած օգնեաց և վրէժխնդիր եղև ։

« Աշխատեցար 'ի խորհուրդս քո. յարիցեն և փըրկեսցեն զքեզ աստեղագէտք երկնից »։ Ակիւղաս ասէ. Լուսաւորիչքն երկնից. իսկ այլքն՝ Երկնագէտքն, ասեն, որք նշմարեն զաստեղս երկնից ։ Զի մի՛ ոք ասիցէ եթէ գոն աստեղագէտք, որ պատմել կարիցեն զհանդերձեալսն, վասն այսորիկ՝ ասէ, պատմեսցեն քեզ՝ յորժամ ջանայցեն նշմարել անդադար զաստեղս, և վճիռ ինչ ոչ առնուցուն, ոչ այլ ինչ, բայց զի զտրտմութիւնն ևեթ շահիցեն ։

« Ահաւասիկ ամենեքեան իբրև զխռիւ 'ի հուր այրեսցին, և մի՛ կարասցեն փրկել զանձինս 'ի բոցոյ անտի »։ Ոչ միայն քեզ չօգնեսցեն ինչ, այլ և ինքեանք ևս կորիցեն ։ « Աշխատեցար 'ի փոփոխելդ քում 'ի մանկութենէ քումմէ. այլ ըստ իւրաքանչիւր մոլորու-

[1] Յոր. Եւ 'ի բազում կախարդութիւնս քո, յօտար գրչէ ։

թեան, և քեզ ինչ ոչ եղև օգնականութիւն »: Իւրաքանչիւր, ասէ, ըստ մեղաց իւրեանց պատիժս կրիցեն, և դու ուստի՞ կարիցես ապրել:

## ԳԼՈՒԽ ԽԲ

« Լուարուք զայս, տունդ Յակոբայ, անուանեալք յանուն Իսրայելի, ելեալքդ 'ի զաւակէ Յուդայ »: Իսկ այլքն՝ Ի ջրոյն Յուդայ, ասեն: Տեառնեա՞ս, զիարդ ազատէ զազգականութիւն, եթէ չէ ինչ ընկեր առաքինութեանն, այլ վայրապար ընդ գետին թափառեալ, բանք աւելորդք պաճուճեալք: « Տուն Յակոբայ, անուանեալք յանուն Իսրայելի, ելեալքդ 'ի Յուդայէ, որ երդնուքդ յանուն Աստուծոյ Իսրայելի, և խրախուսէք յանուն քաղաքին սրբոյ »: Զառաջինսն ևս պատմեցէ. կամ որ ինչ յԵգիպտոսն, զի ասէ. Զարչարեսցեն զնոսա ամս չորեք հարիւր և երեսուն, կամ զԲաբելացւոցն՝ զի զեւթանասուն ամ լքեցին: « Եւ լսելի եղև յանկարծակի. արարի և եկն »: Կամ իբրև զչարագործաց վաղվաղակի եկն եհաս 'ի վերայ, կամ իբրև անկասկածից:

« Ես ինձէն գիտեմ, զի խիստ ես դու, և ջիլք երկաթիք պարանոց քո, և ճակատ քո պղնձի »: Զի մի՛ ոք ասասցէ, եթէ զինչ օգուտ եղև 'ի մարգարէութեանցն, որ հանապազ սպառնային զհանդերձեալսն. և նոքա ոչ ինչ օգտեցան սաստիւքն, և ոչ յուղղութիւնս ինչ եկին:

« Լուր պատմեցաւ քեզ, չև եղեալ էր, և լսելի եղև յանկարծակի զոր արարին. զի մի՛ ասիցես եթէ կուռքն ինչ արարին ինձ, և մի՛ ասիցես եթէ դրօշեալքն և ձոյլքն արարին ինձ »: Վասն այնորիկ և Ագաբոս մարգարէանայր, եթէ սով մեծ լինելոց է. քանզի այն ինչ նոր զերծեալ էին 'ի դիւաց, զի մի՛ կարծիցեն եթէ 'ի նոցանէ ինչ բարկութենէ լինիցի սովն, վասն այնորիկ իւրով մարգարէիւն յայտնեաց, և ոչ այլ իւիք.

տարրատեաւ։ Գիտեմ, ասէ, եթէ անհնազանդ ես, և չես ինչ օգտելոց 'ի կանխասացդ լինել պիտանացու, վասն այնորիկ յառաջագոյն ասացի։

« Լուարուք դուք զայս, և ոչ առէք 'ի միտ »։ Այսինքն՝ անփոյթ արարէք։ « Նա և զնորն իսկ լսելի արարի՝ որ յայսմ հետէ լինելոց իցէ »։ Այսինքն է որ ինչ 'ի դարձին լինելոց իցէ։ « Եւ ոչ ասացեր եթէ այժմ լինի և ոչ վաղ. և ոչ յառաջին աւուրսն իսկ լուար զայդ »։ Այսինքն՝ ոչ հաւատացեր և ոչ փոյթ ինչ արարեր։ « Մի՛ ասասցես եթէ այժ գիտեմ. ոչ ծանեար և ոչ գիտէիր, և ոչ իսկզբանէ բացի զականջս քո »։ Այսինքն ոչ ետու քեզ թոյլ իմանալ. զի ոչ յորժամ ասացի, անդէն զպատիժն ածի 'ի վերայ. ասել ասացի յառաջագոյն, այլ ոչ ինչ յայտ արարի արդեամբք. որպէս և Քրիստոս ասէր բազում ինչ, և լուծումն ինչ առակաց ոչ առնէր։

Ասէ և զպատճառս կորուսթեանն. « Զի գիտէի թէ արհամարհելով արհամարհեսցես, և անօրէն անդստին յորովայնէ կոչեսցիս։ Վասն անուան իմոյ ցուցից քեզ զբարկութիւն իմ, և զքանչելիս իմ ածից 'ի վերայ քո, զի մի՛ սատակեցից զքեզ »։ Վասն այնորիկ և ոչ զաւետեացն ինչ ճառեցի քեզ, այլ թոյլ ետու ընդվայր թափառել։ Եւ յորովայնէ ոք անօրէն զիա՞րդ լինիցի։ Զյանճախութիւն չարեացն նշանակէ այնու. քանզի չէ մարթ թէ անդստին յորովայնէ անօրէն լինիցի։ Թէպէտ և այլուր ասիցէ, թէ Օտար եղեն մեղաւորք 'ի մօրէ, խաբեցան յարգանդի, և խօսեցան սուտ։ Այսինքն՝ յառաջին տիոց յորժամ յարութիւն հասին՝ չարեացն ևեթ զհետ էին։ Իսկ այլքն ասեն. Զի յորովայնէ մօր անօրէն կոչեսջիր։ Ցայնմ իսկ ժամանակի՝ յորմէ հետէ ելին յերկրէն Եգիպտացւոց. զի 'ի չարչարանացն՝ իբրև յերկանց ծնան 'ի փրկութիւն 'ի ձեռն Մովսեսի։

« Վասն անուան իմոյ ցուցից քեզ զփրկութիւն իմ »։ Տե՛ս, զիա՞րդ զտանջանսն երախտիս համարի։ Եւ այնմ ես, ասէ, չէին արժանի, եթէ այնպէս կայք ինչ յուղղութիւնս. այլ վասն անուան իմոյ արարի զայն։ Զի զմեղմութիւն պատժոյն ցուցանիցէ, ոչ ասէ թէ կ[illegible]գեցից, այլ թէ ցուցից միայն։ Եւ աղէ ասա՛,

զի՞նչ շահ անտի ծնանիցի. « Զի մի, ասէ, սատակեցից զքեզ »։

« Եւ զսքանչելիս իմ ածից 'ի վերայ քո »։ Զի ոչ միայն պատժովքն զգաստանայցեն, այլ և սքանչելեօքն. զի ոչ պատիժս, և ոչ բարութիւնս ածեմ 'ի վերայ՝ առանց սքանչելեաց։ Եւ եթէ կամիս՝ վերստին իսկ պատմեցից քեզ՝ զկարգ յիւրաքանչիւր պատիժս և բարութիւնս՝ սքանչելիք կան, զի յերկոցունց կողմանց օրինակ լինիցին շնորհք։

« Ահա աւաղիկ վաճառեցի զքեզ ոչ վասն արծաթոյ, և փրկեցի զքեզ 'ի հնոցէ անտի աղքատութեան. վասն իմ անուան զայդ, զի մի անուանս հայհոյեսցի [1]. և զփառս իմ այլում ոչ տաց »։ Զժողովուրդն կոչէ աստ իւր փառս։ « Լսեր, Յակոբ, և Իսրայէլ՝ զոր ես կոչեմ. ես եմ առաջին և ես յաւիտեան »։ Եւ զի՞նչ նշանակիցէ այդ. « Ձեռն իմ, ասէ, արկ հիմն երկրի, և աջ իմ հաստատեաց զերկինս »։ Աստ ոչ եթէ զարարչութենէն ինչ ճառէ, այլ զյօրինուածոյն։

« Կոչեցից, ասէ, զանշունչս զանզգայս, և այնպէս լուիցեն, կայցեն 'ի միասին. և ժողովեսցին ամենեքեան, և լուիցեն թէ ով պատմեաց նոցա զայն։ Առ սէրն քո արար Տէրն զկամս իւր 'ի վերայ Բաբելացւոց »։ Այսինքն՝ վասն քո սիրոյ կատարեաց զկամս իւր 'ի նոսա. « Բառնալ զզաւակն Քաղդէացւոց »։ Զի՞նչ խօսիս. վասն նոցա սիրոյն՝ զնոսա տանջիցէ՞. և ոչ ուրեք. այլ զոր օրինակ եթէ սիրեսցէ ոք զոք, և երախտիս վարկանիցէ եթէ զայս ինչ և զայս վասն քո արարի, նոյնպէս և Աստուած առ սէր տանջեաց զնոսա, և առ սէր եհան 'ի գերեացն. այլ զի ոչ վասն նոցա տանջեաց զԲաբելացիսն, այնու յայտ է՝ եթէ արար զկամս իւր։

« Ես խօսեցայ, ես կոչեցի, ես ածի զնա, և յաջողեցի զճանապարհս նորա »։ Զկիւրոսէ ասէ՝ եթէ յառաջագոյն ասացի և հանի 'ի գլուխ զիրսն։ Եւ բազում իսկ անգամ ասացաք զպատճառսն, զոր և յԱւետարանին իսկ գտանեմք, եթէ Յորժամ լինիցի՝ հաւատասջիք եթէ ես եմ։

1 Յայտ. Զի իմ անուանս հայհոյի։

« Մատերուք առ իս, և լուարուք. ոչ 'ի սկզբանէ ծածուկ ինչ խօսեցայ, և ոչ 'ի խաւարին տեղւոջ երկրի »։ Եւ վասն է՞ր միշտ մօտ կոչիցէ. այլ զի զկարեւորաց և զմեծամեծաց ձայնիցէ, որոց պարտ իցէ հաւատալ։ « Ոչ 'ի սկզբանէ ծածուկ ինչ խօսեցայ »։ Ոչ այժմ ինչ համարձակս խօսիցիմ, և յայնժամ 'ի ծածուկ ինչ։ « Մինչդեռ լինէրն իսկ՝ անդ էի։ Եւ արդ Տէր առաքեաց զիս և ոգի Նորա »։ Տեսանես, զի և Հոգին՝ Աստուած է և առաքիչ։

« Այսպէս ասէ, Տէր Աստուած, որ փրկեացն զքեզ՝ սուրբն Իսրայելի. ես եմ Աստուած քո. ցուցի ես քեզ գտանել զճանապարհն յօգուտ »։ Իսկ այլքն փոխանակ ցուցանելոյն, եթէ Որ ուսուցանեմն։ Ստէպ ասէ՝ եթէ ես եմ Տէր Աստուած քո, զի ծանիցեն զբազում օգնականութիւնն։ Թագաւորք ոչ յառաքինութիւն ինչ յօգուտս փութան, այլ վասն իւրեանց օգտի ճեպին հանապազ. և թէ վասն առաքինութեանց ինչ խնդիր առնիցեն, սակայն և այն վասն իւրեանց օգտի է։ Իսկ Աստուած յորդորէ զի ծառայքն իւր օգտեսցեն, և գործք ձեռաց իւրոց կեցցեն առաքինութեամբ։

« Եւ թէ լուեալ էր, ասէ, քո պատուիրանաց իմոց »։ Եւ յայտ է եթէ զոր ինչ առնէ՝ 'ի մեր օգուտ առնէ։ « Լինէր քեզ իբրև զգետ խաղաղութիւն քո, և արդարութիւն քո իբրև զալիս ծովու՝ յորդ և առատ »։ Խաղաղութիւնք անպակաս անխափան. չիք ինչ շահաւոր իբրև զպատուիրանս Աստուծոյ; զի և կենաց իսկ և խաղաղութեան և ամենայն բարութեանց նա է աղբիւր։

« Եւ իբրև զաւազ ծովու զաւակ քո »։ Քանզի և այս 'ի բարութեան կարգի էր օրինաւորացն։ « Եւ ծնունդք որովայնի քո իբրև զհող երկրի »։ Իսկ այլքն ասեն. Իբրև զկորեակ երկրի։ « Սակայն և ոչ արդ ինչ սատակեսցիս, և ոչ կորիցէ անուն քո առաջի իմ »։ Այսինքն՝ եթէ և այժմ՝ յորժամ ոչդ լուար ինձ։ Ո՜վ մարդասիրութիւն. Թէպէտ և չլուար ինձ, ասէ, սակայն և այժմ մի ինչ կրեսցես պատիժս առաջի իմ. Թէպէտ և 'ի մարդկան մտաց կորեայք, սակայն ինձ կենդանի էք, և կարող էք միւսանգամ լսել պատուիրանացն։

« Ե՛լ 'ի Բաբելոնէ, փախիր 'ի Քաղդէացւոցն »։ Եւ ընդէ՞ր արդեւք փախչել հրամայիցէ. զյուլութիւնն նոցա այսու յայտ առնէ։ Քանզի ոմանց խնամ արկեալ էր ընդ երկիր Թշնամեացն, զի անդէն կամէին մնալ, մերժէ զնոսա յայնպիսի խլըլական, հեղգական մտաց. «Ե՛լ, ասէ, 'ի Բաբելոնէ, փախիր 'ի Քաղդէացւոցն», 'ի Թշնամեացդ երկրէ։ Զի այնպիսի ինչ չարիք հասանիցեն երկրիդ, զի միշտ 'ի փախուստ բերիցէք, որ ապրելդ կամիցիք։ Որպէս և անդ յԵգիպտոս եղև. զի որք արգելուինն և չտային ելանել Իսրայելացւոցն, նոքին ստիպէին և հանէին բռնի. նոյնպէս և այդր, ասէ, այնպիսի աղէտք 'ի վերայ հասանիցեն, և դոքա և դուք առհասարակ փախստական լինիցիք։

« Զայն ուրախութեան պատմեցէք, և լսելի լիցի, պատմեցէք մինչև 'ի ծագս երկրի »։ Այսինքն՝ հռչակ հարէք ընդ բնաւ՝ վասն իրացդ գործելոց։ Կամ զայն ինչ յայտ առնէ, զի սաստիկ համարձակութեամբ զերծուցանէ զնոսա 'ի գերչացն, կամ զի փրկէն զնոսա։ Քանզի և ասէ իսկ, եթէ « Ասացէք՝ զի փրկեաց Տէր զժողովուրդ իւր Յակովբ, և ոչ տայցէ նմա ծարաւել. և եթէ ծարաւեսցեն յանապատին, հանցէ նոցա ջուր և բխեսցէ 'ի վիմէն. պատառեսցէ վէմն, և բխեսցէ ջուր, և արբցէ ժողովուրդ իմ »։ Եւ այսու զդիւրութիւն դարձին նշանակէ. զի եթէ թերահաւատիցէ ոք, եթէ չիցեմ կարող հանել 'ի Բաբելոնէ, յայնցանէ որք յանապատին եղեն՝ հաւանեսցի։ Յոյժ առաւել քան զարարածոց բնութիւն՝ յամառ է մարդկան անձնիշխանութիւն. զի նոքա անշունչք և անզգայք են, և սոքա բանիւ պատուեալք, յորժամ կամին՝ լսեն, և յորժամ կամին՝ յամառին։

« Ոչ գոյ ամբարշտաց ուրախութիւն, ասէ Տէր »։ Եւ արդ զիա՞րդ չլինին ուրախ ամբարիշտք. իսկ նա աւանիկ և մարգարէքն ասեն իսկ, եթէ Ոչ գոյ հատատութիւն 'ի տանջանս նոցա, և 'ի վաստակս մարդկան չեն, և ընդ մարդկան ոչ տանջեսցին. և միւսն, եթէ Փողովք և Թմբկօք խաղայցեն առաջի նոցա մանկտի. որ մեծի և յոյժ իմն ուրախութեան նշանակ է. և դարձեալ, եթէ Ճանապարհ ամբարշտաց յաջո-

ղեալ է։ Իսկ սա զիա՞րդ ասիցէ, եթէ « Ոչ գոյ ուրախութիւն ամբարշտաց »։ Իսկ այլքն ասեն, եթէ Ոչ գոյ խաղաղութիւն. զի ուրախութիւն թերեւս լինիցի երբեք։ Եւ եբրայեցին Սաղմոս՝ ասէ [1]. Ամար Ադոնայի ղարսաիմ. այսինքն՝ Չիք խաղաղութիւն ամբարըշտաց [2]։ Եւ յայտ է՝ եթէ զճշմարիտ ուրախութիւնն, զանվախճանականն, զանթառամականն՝ ոչ ունիցին. զի որպէս Աստուած անվախճան է, նոյնպէս որ վասն նորա ուրախութիւնն է՝ անեղծ է, միշտ բխէ, միշտ ծաղկի, և ոչ փտի [3]. յայնպիսի ուրախութենէ անմասն են ամբարիշտք։

Եւ ոչ ասաց եթէ չառնին ուրախ, այլ եթէ ոչ գոյ իսկ ուրախութիւն. զոր օրինակ և յորժամ զաղքատաց ոք ասիցէ, եթէ ոչ է հնար նոցա մեծանալ, քանզի չէ ինչ մարթ։ Զի մարդիկ՝ որ հանապազ 'ի մեղս կայցեն և խղճիւ չարեացն միշտ յահ և յերկիւղ կայցեն, հանապազ մահուց մահս մեռանին. և մանաւանդ զի չէ պարտ իսկ զայն՝ մահ կոչել, այլ ևս դժնդակ քան զմահ։ Զի մահ՝ լուծումն է չարեացն որ զմեզ կապեալ ունիցին, և զոգիսն լուծանէ 'ի մարմնոյն շղթայից, զի յորժամ զնա արձակիցէ՝ և զհոգսն ընդնմին փարատէ. իսկ վարք անօրէնք՝ ևս իմն աղէտք գործեն, զի երկայնեն և ևս յաճախագոյն թորթոքեն զցաւն. 'ի կապանս անձին իւրոյ շաղին իւրաքանչիւր

1 Յոր. Զկնի սողմոս բառին տառ մի եղծեալ և 'ի վերայ եդեալ է, որպէս թուի՝ յօտար գրչէ, բառն ուէ։

2 Այս բան չերևի ուրեք 'ի Սաղմոսին. իսկ եբրայական բնագիր մարգարէութեանն Եսայեայ, ունի այսպէս.

אין שלום אמר יחוח לרשעים :

որ է Ին կամ Ո-ն շալոմ ամար Իոհուհ լըրշաիմ. այսինքն է. Չիք խաղաղութիւն, ասէ Եհովա, ամբարշտաց։ — Որպէս տեսանի՝ յօրինակի մերում պակասաւոր է եդեալն Ամար Ադոնայ լըրշաիմ, որ է. Ասէ Ադոնայի ամբարշտաց. եթէ հայ գաղափարողն օրինակիս, որպէս հաւանական թուի, չիցէ շփոթեալ զշալոմ ընդ սողմոս բառի, և եդեալ՝ Եբրայեցին սողմոս, փոխանակ՝ Եբրայեցին. Ին կամ Ո-ն շալոմ։ — Փոխանակ Իոհուհի եբրայական բնագրին, որ 'ի հատորսն Վալթոնի, օրինակս մեր դնէ Ադոնայ (եբրայականն אדני, ադոնայ), որ է՝ Աստուած-արարիչ, Աստուած-ամենակալ, իբրև հոմանիշ ընդ Իոհուհ բառի, որ նշանակէ յաւէտ՝ Աստուած-որ էն, Աստուած՝ էութիւն գերաքոյն։

3 Յոր. Փտէ։

դք, զի չաղելն 'ի չար գնացիցն լինի։ Նմ և այլ ինչ կեանք վշտագինք և առանց մեղաց իսկ. կերակրոցն հոգք, հիւանդութեանց տրտմութիւնք, վնասք, եպերանք, զրպարտութիւնք, նենգութիւնք, տխրութիւնք ժամու և տարաժամու, և որ այլ ևս այսպիսիք ինչ իցեն։ Իսկ յորժամ մեղքն ևս առընթեր կայցեն, դժնդակն և անհամբոյր գազանն, չիք ինչ այնուհետև մխիթարութիւն 'ի միջի։ Տէր, զիարդ շրջէր Կային տատանեալ և երերեալ։

Եւ արդ զանհանճարացն ճառե՞լ ինչ պարտ իցէ, զանյուսիցն որքան զքարինս, թէպէտ և մարդիկ իցեն, ևս անզգայագոյնք իցեն. որք զմիտսն ունիցին, և չըվայելիցեն 'ի միտս. քանզի 'ի խորխորատն չարեաց մղեն ընկենուն միշտ զանձինս, և համարին եթէ կանգուն կայցեն գլորեալքն, ընկեալ 'ի մոլորութիւնս։ Զայնպիսեացն ասէ. « Ոչ գոյ ուրախութիւն ամբարըշտաց »։ Եւ արդարև չիք իսկ, այլ ցաւովք և ցակամբք են կեանք նոցա, և եթէ առանձինն ուրեք իցեն, և եթէ զայլս 'ի պատիժս ինչ տեսանիցեն. այլոց պատժոյքն՝ զիւրեանց անձանց աղէտսն նկատեալ տեսանեն. զոր օրինակ որք զուղղութեանցն հետ իցեն, յորժամ լսիցեն զբարի ինչ՝ ուրախ լինին։ Իսկ նոքա զբոց ունկն չկարեն դնել, քանզի ոչ կամին լսել զիւրեանց պատուհասն. զի թէպէտ և յանդիմանն չտանջիցեն զչարս՝ գիրք, այլ յորժամ այլոց վնասակարաց սպառնան, նոքա իբրև լսիցեն՝ զմիտս և զմարմինս ուտեն։ Թէպէտ և ոչ յականէ զոք, սակայն հասարակաց սպառնալեօք կսկծեցուցանեն. որպէս և Պաւղոսն ասէր, եթէ Զխաղաղութեան զհետ երթայք և զսրբութեան, զի առանց այնր՝ ոչ ոք կարէ տեսանել զՏէր։ Իսկ վնասակարն յորժամ լսիցէ՝ առնու վէրս և գնայ. քանզի խոցի 'ի միտսն 'ի վճիռն առնլոյ. և այն՝ մինչև զդատաւորն տեսեալ, և մինչև ժամանակ ատենին իցէ, ոչ տանջանք 'ի միջի և ոչ պատիժք. և խեղճ մըտացն՝ զվնասն պահանջէ, յորժամ յարժանն հայեսցի։ Եւ դարձեալ միւս ևս ոք յորժամ լսիցէ, եթէ Մի խաբիք, ոչ պոռնիկք և ոչ շունք և ոչ իգացեալք և ոչ արուագէտք՝ զարքայութիւնն Աստուծոյ ժառանգել կարեն. և դարձեալ, եթէ Ահագին իմն է դատաս-

տանեացն ընդունելութիւն, և հրոյն նախանձ՝ որ ուտէ զհակառակորդս։ Զի յորժամ 'ի գրոց այսպիսի ինչ լսիցեն, ուստի՞ լինիցի նոցա մխիթարութեան և սփոփութեան հնարք. յորժամ ցաւոց և տրտմութեանց պատճառք անտի իցեն, իսկ այլ ուստի՞ իցէ ուրախ լինել. յո՞ փախիցէ, յո՞ ապաստան լինիցի, յորժամ անտի տրտմիցի և խոցեսցի. 'ի նաւահանգիստ ամենայն բարութեանցն մտեալ՝ ոչ միայն ուրախ չլինիցի, այլ ցաւս և վէրս ևս առնուցու։ Յորժամ գիրք ոչ մխիթարեսցեն զայնպիսին, զի՞նչ ինչ կայցէ՝ որ կարող իցէ նմա մխիթար լինել։

Կամիս զի և 'ի թատերցն ևս հրապարակատես տանիցիմք զայնպիսին, ուր ուրախութեան և ծաղու տեղի է. զի վասն այնր իսկ հնարս իմացեալ է զայն նախնեացն, և զայն ոչ 'ի բարի ինչ, այլ 'ի ծուլութիւն առաքինութեանց, և անկարգ վարուց 'ի պատճառս։ Այլ նոքա յամառին առել եթէ ոչ այդպէս, այլ յայն սակս, զի զհանապազորդ տրտմութիւնս՝ որ զմեր միտս հեղձուցանիցեն՝ այնու սփոփիցեմք։ Եւ գրեօջիր եթէ այնպիսի ինչ իցէ. և արդ երթեալ այնպիսին կամ երգչացն լսիցէ, կամ թէ որոց զկերպարանս կերպարանաց նմանեցուցանիցեն։ Յորժամ և անդ տեսանիցէ, եթէ որ յընկերին կին մտաբերեսցէ՝ գլխապարտ է, և անտի ևս վէրս առեալ երթիցէ 'ի տուն։ Զի թէպէտ և ոչ ոք 'ի նոցանէ՝ որք ընդ նմա տեսանիցեն զթատրն, իցէ ոք իրագէտ չարեաց ինչ՝ որ նորա իցէ գործեալ, սակայն իւր խիղճն հարկանէ զմիտսն, և յիշեցուցանէ եթէ ծաղրն՝ որ առնէին զայն՝ զոր 'ի վերայ ընկերին կնոջն կալան, ոչ 'ի նա ինչ մերձեցաւ՝ որ այնմ նմանեցաւ, այլ 'ի սա՝ որոյ զչարիսն գործեալ էր։

Իսկ կամիցիս՝ ուր ուրախութիւնքն ինչ իցեն կամ խաղ մարդկան, ուր հարսանիք և ուրախք կաքաւչացն կայցեն, անդր ձգեսցուք զայնպիսին։ Սակայն և անդ ևս չար զոփայցէ և աշխարհիցէ, եթէ յորպիսի իրս անօրինեցաւ. զի որ ամենեցուն իշխանութեամբն է և ուրախութեամբ, նա զայն անօրէնութեամբ գործեաց, և գտաւ պատժապարտ։ Զի յայլոց բարութիւնս՝ առաւել իմանամք զանձանց վրէպս. յորժամ 'ի միտ

առնուցու ոմն, եթէ որով իւիք իմքն ձախողեցաւ, մարթ էր և նմա նովին պատուով և մեծարանօք վայելել, և ո՛չ ապաքէն նա չար լայցէ և ապաշաւիցէ։ Իսկ այլ ո՞ւր կամիցիս տանել զշնացողն. 'ի դատաւորա՞ցն ատեանս, ուր բազումք այնպիսիք կառափին. և անդ՝ նա չար ոճիրս և աղէտս տեսանիցէ. զի յորժամ զայլ ոք ըմբռնեալ 'ի տանջանսն տեսանիցէ, և զիւր անձն 'ի նոյն չարիս յանդգնեալ և ոչ ըմբռնեալ, նա առաւել զայրանայցեն ցաւքն. զի մինն ընկեաց զհոգսն, քանզի եմուտ այնուհետև 'ի տանջանս, և միւսն յերկիւղէ և 'ի կասկածոյ նա առաւել ուտէ զմիտս։ Իսկ յորժամ յեկեղեցի և 'ի թատերս և 'ի հարսանիս և յուրախութիւն տանիցեմք զմեղաւորն, և մխիթարութիւն ինչ ոչ գտանիցէ, զի՞ գործիցեմք։ Զոր օրինակ զհիւանդ ոք չարախտս, տհաճս, յորժամ առ աղբիւր ջուրց տանիցիմք, կամ 'ի գետս կամ 'ի ճախիճս, յայնժամ նա աւելի այրեսցին 'ի փոր, զի ունին զախտն 'ի փորի. իսկ եթէ 'ի մահու ևս ասիցես՝ յորժամ մեռանիցեն, անդ նա աղէտք և անհնարին չարիք։ Յորժամ 'ի հարսանեացն արտաքս ելանիցեն, 'ի տանջանս մատնեսցին, 'ի պատիժս հրամայեսցին. իսկ արդ, անդ ո՞չ նա կարևոր ցաւք իցեն և անհնարին արհաւիրք և երկիւղք։

« Ոչ գոյ ուրախութիւն ամպարշտաց, ասէ Տէր »։ Յորժամ Աստուած ասիցէ, մի՛ ինչ այնուհետև թերահաւատ լինիցիս. ետ վճիռ եթէ ոչ գոյ ուրախութիւն, և մի՛ այլ ինչ աւելի ակն ունիցիս քան զայն։ Յորժամ տեսանիցես զայլ ոք 'ի տապ ջերման գոլացեալք, և կայցեն առաջի տաշտք և բաժակք պէսպէս ըմպելեաց, կամ ցուրտ ջրով լի, և սեղան ինչ ամենալից՝ յօրինեալ առաջի պէսպէս կերակրովք և համադամ խորտկօք, ընդ բարեկեցի՞կս ինչ համարեսցիս զախտացեալն. այլ ես ոչինչ համարիմ զծնկացեալն 'ի բարեացն, թէպէտ և ճաշակիցէ իսկ 'ի խորտկացն, յայնժամ աւելի տանջեսցին, զի տապոյ ջերմանն տայ զկերակուրն. Նոյնպէս և դու յորժամ տեսանիցես զմեղաւոր ոք երկապաշտիւք մեծարեալ, սպասաւորօք պատուեալ՝ որ աստի անտի անցանիցեն, և զողջոյն ևեթ խօսեսցին, 'ի սեղանս բազմախորտիկս վայելեալս, ազդի

ազգի իւղօք անուշացեալս, պէսպէս պաճուճանօք պաճուճեալս, մի՛ ինչ երանի տայցես, այլ սգասջիր, լացջիր և յոգւոց հանիցջիր. զի այն ոչ այլ ինչ է, այլ հրոյն որ 'ի մեղացն բորբոքեալ իցէ՝ կերակուրն. զի և՛ս քան զևս զցաւսն աճեցուցանէ, և ծանրութիւն և տաղտուկ որ ըստ օրէ ոգւոցն հասուցանէ, քանզի այն ևեթ պարարէ մեծութիւնն։ Եւ որպէս յաճախութիւն կերակրոցն ոչ միայն զհիւանդաց, այլ և զողջոց մարմինս ապականէ, նոյնպէս և 'ի բազում մեծութիւնն ոչ միայն ապականել ոգւոցն, այլ և այնոցիկ՝ որոց կարծիցեն եթէ առողջք իցեն՝ ցաւոց պատճառք է և յաւելուած հարուածոց։ Որպէս յայնժամ իմն աւելի չիք նոցա ուրախութիւն, յորժամ 'ի մեղսն ուրախ լինիցին. զի տրտմութիւն ինչ դեղ և սպեղանի է այնպիսի ցաւոց, և մանաւանդ յորժամ վասն Աստուծոյ իցէ տրտմութիւնն. իսկ ուրախութիւնն և խնդութիւնն՝ յաւելուած ցաւոցն։ Եւ մի՛ ինչ զայն ուրախութիւն համարեսցիս՝ որ արտասուացն պատճառք է, որք ըստ ցաւսն ուրախ լինիցին, և ըստ ողջութիւնն ոչ բերկրեսցին։ Եւ արդ տե՛ս, որչափ ինչ գանձիցեն անձանց զհուրն. որչափ ինչ՝ փոքր քան մարգարէութեանն՝ ունէր զօրութիւն բազում։ Եւ եթէ կամիս՝ մի՛ ինչ հարևանցի անցցուք. յորժամ տեսանիցես զգլխաւորս քաղաքաց մարմնագեղս, անդամայաղթս զուարճացեալ 'ի ծերութիւն պարարտութեան, յորդիս, 'ի թոռունս բերկրեալս, խրախճանս, ուրախալիցս, անհոգս, առանց տրտմութեան, երջանիկս, երանելիս յամենայնի, յայնժամ աւելի համարեսջիր զնոսա լալոյ և արտասուաց արժանի. զի զոգիսն 'ի ներքս՝ մեղաց հրոյն բորբոքեն։ Քանզի մեղքն՝ բարութեամբքն իմն սովոր են աճել և ցաւովք և վշտօք խափանել։ Իսկ յորժամ մեղաւոր ոք իցէ, և 'ի դիւրութեան և 'ի հեշտական կեանս՝ յաւելուած ևս ցաւոցն լինի դիւրութիւնն։ Եւ գիտեմք զբազումս՝ որ քան զանասունս կէս անխօսագոյնք իցեն, այսպիսի իմն կենաց ցանկան, եթէ կամէի զնոյն կեանս կեալ, և զնոյն ախտ ախտանալ. և այն և՛ս իմն աւելի դժնդակագոյն է, զի և զգան իսկ ոչ ցաւոցն։

## ԳԼՈՒԽ ԽԹ

« Լուարուք ինձ կղզիք, հայեցարուք հեթանոսք »: Ակիւղաս ասէ՝ Ազգք. Թէոդոտիոն՝ ժողովուրդք: « Բազում ժամանակաց յարիցէ, ասէ Տէր »: Ակիւղաս՝ Հեռաստանէ. Թէոդոտիոն՝ Ի բացուստ: Ի կղզեաց ինձ միշտ կոչէ. նա և զհեթանոսս իսկ հրաւիրէ իբրև նշան ինչ զանազգայականն՝ զգայնոյն. իբրու թէ նոքա խնանայցեն զիւրան գործեալս, և զմեծութիւնն Աստուծոյ: « Ի բազում ժամանակաց յարիցէ, ասէ Տէր »: Զծով և զցամաք կոչէ հանդերձեալսն իւրաց 'ի վկայութիւն, օրինակաւ՝ որ ինչ 'ի դարձին կատարէր, և ճշմարտութեամբ՝ որ ինչ 'ի նորումն:

« Յորովայնէ մօր իմոյ կոչեաց զանուն իմ »: Իսկ այլքն փոխանակ կոչելոյն՝ յիշեաց, ասեն. բայց ըստ Եւթանասնիցն՝ որք ասացին թէ Յորովայնէ մօր իմոյ կոչեաց զանուն իմ, յայն միտս պարտ է մեկնել, եթէ Հոգի Տեառն եկեսցէ 'ի վերայ քո, և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի 'ի վերայ քո. քանզի և որ ծնանելոցն իցէ՝ սուրբ կոչեսցի Որդին Աստուծոյ: Իբրև ոչ եթէ յայնմ հետէ սուրբ կոչեսցի, որ 'ի բնէ սուրբ և սրբիչ էր ամենայնի, այլ զի յայնմ հետէ յայտնեսցի սուրբն: Եւ դարձեալ, եթէ Ահաւասիկ կոյս յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Յիսուս, այսինքն՝ փրկիչ. զի որպէս փրկիչն 'ի սկզբանէ և յաւիտենից էր. և ասէ թէ կոչեսցի փրկիչ, զի յայտնեսցի որ փրկելոցն իցէ. որպէս և յառաջին ասէ, եթէ ոչ հրեշտակ ոք և ոչ հոգի, այլ ինքնին Տէրն էջ և փրկեաց զնոսա, ըստ նմին օրինակի իմանալի և զսուրբն անուն: Եւ բարւոք իսկ եդ զՅորովայնէն մօր իմոյ. զի յայնմ հետէ յայտնեցաւ հաւաստեաւ սուրբն և փրկիչն:

«Եդ զբերան իմ իբրև զսուսեր պողովատիկ»: Որով զամենայն իսկ զցաւս և զհիւանդութիւնս կտրէր,

որով զամենայն խափանիչսն պատառէր, որով դիւացն և այսոցն ահագինս բարբառէր։ « Եւ ընդ հովանեաւ ձեռին Թագոյց զիս »։ Զայս զԽորայեղէ պարտ է իմանալ. և չեն ինչ զարմանք. զի որպէս յանունն Յակոբայ և Իսրայելի՝ զՈրդւոյ ձայնէ, նոյնպէս և յորժամ վասն Որդւոյ ինչ ձայնիցէ, յարէ 'ի նոյն և վասն ժողովրդեանն փրկութեան։ Նա և յերկուս իսկ դէմս կայ մարգարէութիւնն, և՛ 'ի մարգարէն և 'ի ժողովուրդն. զի սուսեր պողովատիկ՝ կամ բերան մարգարէին է, կամ բերան ժողովրդեանն. զի այնպէս իբրև սուր սուսերաւ վճարէին աղօթիւք զամենայն ինչ։ Զի չիք ինչ զօրագոյն քան զբերան մարդոյ, զոր օրինակ. և ոչ տկարագոյն ինչ քան զնոյն բերան. զերկինս փակեաց, և սքանչելիս մեծամեծս կատարեաց և 'ի հնումն և 'ի նորումն. զի միայն բարբառէին մարգարէքն, և արարածք հնազանդէին. և միայն բարբառոմն առնէին զդեւս հալածականս՝ Առաքեալքն։ Բերան զմեղաւորս կեցոյց, և զարդարութիւն արդարոյն կատարեաց։

« Ընդ հովանեաւ ձեռին իւրոյ ծածկեաց զիս »։ Զգուշութիւնն ասէ։ « Եդ զիս իբրև զնետ մի ընտիր »։ Զամրութիւնն՝ որում ոչ ոք կարիցէ զամ ինչ գտանել։ « Եւ 'ի կապարճս իւր Թագոյց զիս »։ Նոյն միտք են։ « Եւ ասէ ցիս. ծառայ իմ ես Իսրայել, և 'ի քեզ փառաւորեցայց »։ Ոչ սակաւ ինչ պատիւ է, և ոչ փոքր ինչ մեծարանք՝ յորժամ Աստուած 'ի մարդ փառաւորեսցի։ « Եւ ասեմ. զուր ուրեմն տառապէի, ընդունայն վաստակէի, տարապարտուց ետու զզօրութիւն իմ »։ Փոխանակ ընդ տալոյն, այլքն՝ Կատարեսցի, ասեն, ծախեսցի, միանգամայն սպառեսցի։ Տեսանե՞ս, որպիսի՛ բանիւք մատուցանէ նուէրս Իսրայել Աստուծոյ. զի ոչ ինչ գոյր աւելի քան զայս. գիտէր եթէ այսպիսի բանիւք առաւել ուրախ առնէ Աստուած, վասն այսորիկ ասէ. « Իրաւունք իմ 'ի Տեառնէ են, և վաստակք իմ առաջի Աստուծոյ իմոյ »։ Իսկ այլքն՝ Իրաւունս և արդարութիւն, ասեն. այսինքն՝ Թէ վրէժխնդրութիւն իմ 'ի Տեառնէ եղև, և վաստակք իմ առաջի Աստուծոյ իմոյ. նմա, ասէ, գործեմ, նմա վաստակիմ։

« Եւ այսպէս ասէ Տէր, որ ստեղծն զքեզ յարգանդէ՝ ծառայ իմ »։ Որպէս ասիցէ ոք, եթէ նորա սեպհական եմ։ « Եւ ժողովել զՅակովբ առ ինքն »։ Սիմաքոս՝ Դարձուցանել, ասէ։ « Եւ Իսրայէլ առ նա ժողովեսցի. և փառաւորեցայց առաջի Տեառն »։ Ոչ 'ի տեղիս ինչ ուրեք, այլ վարուք և կարգօք պարտ իսկ է ժողովել առ Աստուած. և այլազգ ինչ չէ մարթ հասանել առ նա, եթէ ոչ ուղիղ ինչ կարգօք։ « Փառաւորեցայց առաջի Տեառն »։ Մեծ առաքինութիւն է՝ յորժամ առաջի Աստուծոյ ոք փառաւորեսցի. յորժամ առաջի Թագաւորի ուրուք՝ այր զինաւոր կազմ 'ի սպասու գտանիցի, առաքինի 'ի պատերազմունս, փառաւոր քան զքաջումս երևի. Նոյնպէս և Աստուծոյ առաջի՝ Աստուծոյ առաքինիքն։

« Եւ Աստուած իմ լինի ինձ զօրութիւն »։ Ակիւղաս՝ Հաստատութիւն, ասէ։ Զի մի ոք համարեսցի եթէ նորա ինչ են ուղղութիւնքն, ասէ՝ թէ Աստուած իմ եղև ինձ զօրութիւն։ « Եւ ասէ ցիս. մեծ է քեզ կոչելդ մանուկ իմ »։ Իսկ այլքն՝ Ծառայ իմ, ասեն։ Եւ ընդէ՞ր ասիցէ զայս. և ում չիցէ յայտ, եթէ չիք ինչ այսմ զուգական. Մովսէս, ասէ, ծառայ իմ վախճանեցաւ։ Եւ եթէ ծառայ կոչել մեծ իցէ, որպիսի՞ պատւոյ արժանի իցեմք. զի որդիք իսկ անուանեցաք, և ապախտաւորք գտանիմք. զի թէ հրեշտակապետ ոք կոչեսցի, մեծ քան զայն է անունս և աւելի պատիւ. զի ոչ կարեն բանք՝ բովանդակել զայնպիսի պատիւ, այլ որպէս Տէրն անճառ և անպատումն, նոյնպէս և ծառայութիւնն՝ որ նմա իցէ։

« Ահաւասիկ ետու զքեզ յուխտ ազգին և 'ի լոյս հեթանոսաց, լինել 'ի փրկութիւն մինչև 'ի ծագս երկրի »։ Զայս և 'ի Քրիստոս առին Առաքեալքն. քանզի ճշմարտութեամբ ոչ երբեք յԻսրայէլ կատարեցաւ, զի ոչ երբեք եղև փրկութիւն յԻսրայէլ՝ մինչ 'ի ծագս երկրի։ Զի թէպէտ և 'ի դէմս նոցա ասացաւ, այլ աստ ել 'ի գլուխ. զի Քրիստոս եղև յուխտ ազգաց մարդկան, և 'ի լոյս հեթանոսաց՝ որ 'ի խաւարին շրջէր։

« Այսպէս ասէ Տէր, որ փրկեացն զքեզ՝ Աստուած Իսրայէլի. սրբեցէք զայն՝ որ խոտէն զանձն իւր, որ անգոսնին 'ի հեթանոսաց 'ի ծառայիցն իշխանաց »։

Փոխանակ այնր՝ եթէ սրբեցէք, և 'ի նորին յաջորդաց, Ակիւղաս և այլքն՝ այլազգ տան զկարգն. ասեն. Այսպէս ասէ Տէր, մերձաւորն Իսրայէլի՝ սուրբն նորա, ցարհամարհեալն յանձնէ, ցխոտեալն ազգաց՝ ծառայն իշխանաց: Սիմաքոս ասէ. Այսպէս ասէ Տէր, որ փրկեացն զԻսրայէլ՝ սուրբն նորա, ցանգոսնեալն յանձնէ, ցազարտեալն յազգաց, ցծառայն իշխանաց: Թէոդիտոն նոյնպէս՝ որպէս Ակիւղասն ասէ. բայց զմինն ևեթ փոխեաց, թէ որ անգոսնեալն. քանզի նա ասէ. Ցխոտեալն՝ որ ազարտէն զինքն: Եւ արդ, միտ դիր փոփոխմանն. յիշեցուցանէ նոցա զառաջին խոնարհութիւնն և զնուաստութիւնն, զի մի յորժամ յԱստուծոյ երախտիսն վայելեսցեն՝ մոռացօնս առնիցեն. քանզի սովոր են պարգևք բարութեանց՝ ածել զմեզ 'ի մոռացօնս, զի մի յիշեսցեմք՝ թէ ով նեղեաց, կամ ով արար զդիւրութիւնն: Ընդ սմին և զզօրութիւնն Աստուծոյ յայտ առնէ, եթէ այնչափ յարգեաց, մեծացոյց զանգոսնեալն, զխոտեալն, զվատթարեալն, զի և «Թագաւորքն անգամ տեսանիցեն և յոտն կացցեն, իշխանքն երկիր պագանիցեն»: Տեսանե՞ս զառաջադոյն նկարեալ զսքանչելիս նորոյս. զի որպէս զնա հնազանդեալ ունէին ընդ իւրեամբք Բաբելացիքն, նոյնպէս և զամենայն բնութիւն մարդկան՝ դևք. զի 'ի մոլորութիւնս կործանեալ՝ տիրէին նոցա: Բայց տես, զիարդ երկիր պագանեն. «Վասն Տեառն», ասէ: Ակիւղաս և Սիմաքոս՝ Յաղագս Տեառն, ասեն: Զի մի անձին ինչ համարեսցիս զուղղութիւնսն, այլ Տեառն, որ հաւատարիմ և ճշմարիտ արար՝ զոր ինչ խոստացաւն. զի և ասէ իսկ, եթէ «Հաւատարիմ է սուրբն Իսրայէլի, և ընտրեաց զքեզ»:

«Այսպէս ասէ Տէր. 'ի ժամանակի ընդունելութեան լուայ քեզ»: Ակիւղաս և Սիմաքոս, Ի ժամանակի հաճութեան, ասեն. որպէս և Դաւիթն ասէ, եթէ Ժամանակ հաճութեան Աստուած է: «Եւ յաւուր փրկութեան օգնեցի քեզ»: Զի՞նչ խօսիսդ. զի թէ ժամանակ ինչ 'ի դէպ չիցէ, ո՞չ օգնիցէ. և ոչ ուրեք. այլ նախ վասն յապաղելոյն իրաւունս տայ թէ վասն էր երկք յամեաց: Զոր օրինակ բժիշկ մի, որ ցաւածի օգնել կամիցի, տեսէ բաւէ և ժամանակին մնայ. բժիշկն

կարօտ է ժամանակին, իսկ Աստուած ոչ եթէ ժամանակի ինչ կարօտ իցէ. զի զառաջինն ինքն մատակարարեաց, և շրջել զնոյն՝ ինքն կարող է. զի կրկին լիցի ուղղութիւն, զի օգնիցէ, և 'ի դէպ ժամու օգնիցէ։ Զի եթէ յառաջագոյն օգնեալ էր՝ ոչ ինչ աւելի օգուտ գործէր. այլ յորժամ 'ի դէպ էր օգնել, յայնժամ օգնեաց, զի յայտ լիցի եթէ և 'ի ձեռացն թողուլ՝ ըստ նորա տեսչութեանն եղև։ Եւ ընդէ՞ր այն ժամանակն ևեթ ընդունելի իցէ. այլ որպէս և Պաւղոսն ասէ, թէ Ահաւասիկ ժամանակ ընդունելի։ Քանզի է ժամանակ 'ի դէպ, և եթէ կորուսանիցեմք զդէպ ժամանակն, ոչ ևս այլ լինի մեզ 'ի դէպս առաքինութեան. որպիսի ինչ որպէս կուսանքն կորուսին զժամանակն, և մեծատունն՝ որ զՂազարն անտես առնէր, և յետոյ խնդրէին ժամանակ 'ի դէպ, և ոչ գտանէին։ Որպէս զի ժամանակ ընդունելութեան յայնժամ է՝ մինչ յաշխարհիս իցեմք, իսկ յորժամ ելանիցեմք աստի, ոչ ևս կարիցեմք յառաջնոյն ինչ ստանալ, և ոչ զպըտուղն ապաշխարութեան ժողովել։ Քանզի մարթիկ ոք թէ մինչդեռ տեսողքն նստիցին՝ 'ի պարտութիւն մատնիցի, յորժամ տեսողացն զբաւ լինիցի, ոչ ևս կարէ զպարտութիւնն 'ի յաղթութիւն ածել. զի մինչդեռ տեսողքն նստիցին, և յօրինիչ մարտին մօտ իցէ, ամենայն ինչ հնար է, և յաղթելոյ և պարտութեան։ Իսկ յորժամ նկատեալ ժամանակն 'ի գլուխ ելանիցեն, այնուհետև թէ և աշխատիցիս ևս, ընդ զուր և ընդ վայր են ձգունքն։

« Եւ ստեղծի զքեզ, ետու զքեզ յուխտ հեթանոսաց »։ Ակիւղաս և Սիմաքոս փոխանակ ստեղծանելոյն, Պահեցի զքեզ, ասեն։ « Հաստատել զերկիր և ժառանգել զժառանգութիւն անապատի »։ Ակիւղաս և Սիմաքոս, Տալ 'ի ժառանգութիւն զապականեալ ժառանգութիւնսն։ Զայս և 'ի Քրիստոսի վերայ մարթ է առնուլ ըստ մարմնաւորութեանն, որ ասէր 'ի դէմս մարդկան, թէ Աստուած, Աստուած իմ, ընդէ՞ր թողեր զիս։

« Ի ժամանակի ընդունելութեան լուայ քեզ. և յաւուր փրկութեան օգնեցի քեզ, և ետու զքեզ յուխտ հեթանոսաց »։ Տեսանես, զի 'ի հեթանոսս

միշտ կարապետքն մարգարէքն դառնալ ·Քրիստոսի հաստատել զերկիր։ Քանզի անհնարին շփոթութեամբ ամբոխեալ էր երկիր յառաջ քան զգալուստն. զի ոչ այնպէս տգեղ և անվայելուչ էր՝ մինչդեռ սիկն և կաւ և ջրոյն բազմութիւն ունէր զերեսն երկրի, որպէս մեղացն և անօրէնութեանցն խառնակութիւնք և ամբոխք՝ շփոթեցին եղծին զյօրինեալ կարգսն։ Քանզի միշտ մարտք, համապազ պատերազմունք, խռովութիւնք, արիւնք հարազատաց, գոյժ և աղաղակ, լալիւն, ողբումն և աշխարանք. չկայր 'ի հաստատութեան երկիր։ Այլ Աստուած՝ նոր եկն հաստատեաց զնա. իբրև զքաղաք մի խռովեալ և ամբոխեալ՝ ած 'ի խաղաղութիւն։ Եւ այն իսկ են զարմանք, զի ոչ զխռովիչսն եհան և զայլս բնակեցոյց, այլ զնոյսին դարձոյց յուղղութիւն։ Զի հազարապետք յորժամ տեսանիցեն զծառայս տերանց իւրեանց 'ի ստահակութեան, զնոսա հալածեն, և զայլ 'ի տեղի արկանեն. իսկ Աստուած կամեցաւ զիւր մարդասիրութիւնն ցուցանել. զնոյսին իսկ որ 'ի ծուլութիւնս էին՝ ած յառաքինութիւն. զի ոչ զպիտանի զոք, այլ զանյոյս՝ որոց ոչ ակն ինչ կայր՝ արար վարդապետս, որպէս զՊաւղոսն՝ որ հայհոյիչ էր և թշնամանիչ և հալածիչ. որ ասէր. Զի նախ յիս ցուցցէ զառաւելութիւն մեծութեան քաղցրութեան իւրոյ, յօրինակ այնոցիկ՝ որ հաւատալոցն իցեն 'ի նա 'ի կեանսն յաւիտենից. և զՄատթէոս զմաքսաւորն, զաւազակն՝ զկախարդն և զպիղծն, որ և 'ի խաչին՝ հնարս կարաց հնարել առ Քրիստոս, և ըզմոգսն։ Եւ քանզի նորա վարդապետութեանն ոչ ինչ կարաց օգնել, ոչ երկիւղ գեհենին, ոչ հրոյն սպառնալիք, ոչ տանջանացն հրաւէրք, վասն այնորիկ զայն եւեթ սոսկ ասէր, եթէ Ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն. և Ոչ եկի զի դատեցից զաշխարհ, այլ զի կեցուցից։ Վասն է՞ր փախչիք. ընդէ՞ր սրանայք. միթէ պատիժս եկի պահանջել, միթէ ծա՞նր ինչ իցէ քարոզութիւնդ, միթէ տաղտկալի՞ ինչ է գալուստս. ո՞վ ոք փախիցէ 'ի բժշկէ. միթէ դե՞ղքն ինչ դաժանք իցեն. ոչ ասացի, եթէ լացէք միայն, աշխարեցէք[1] և կոծեցարուք. եթէ միայն Ե-

1 Յօր. Լացէք և աշխարեցէք։

կայք առ իս, և գոչիք հանգիստ. և զի՞նչ դանդաղանք իցեն գալդ առ իս։ Իսկ իբրև ետես եթէ ոչ կամին գալ, շրջէր ընդ քաղաքս, ընդ գեւղս, քարոզէր և ասէր՝ ապաշխարեցէք. իսկ նոքա 'ի հեռ և նախանձ և 'ի չարագործութիւնս մտաբերէին։ Ո՞վ որք ընդ իւր բարիսն ինչ նախանձեացի։ Եւ արդ տեսցուք եթէ ո՞չ յոլովագոյն զարմանս այնպիսի ախտիցն կոտորեաց. միթէ չբժշկեացի՞ զբորոտն և առաքեաց առ քահանայն՝ առ քննիչ բժշկութեանն։ Ո՞չ ապաքէն ըստ օրինացն Մովսեսի ժողովել և ոչ ցրուել. միթէ ընդ մերձ քահանայութեանդ եկի, և կամ ձեռնու՞մ իշխանութեան ինչ ցանկացայ. միթէ չմատուցի՞ պատարագս ըստ օրինաց. միթէ չմտի՞ ընդ հնազանդութեամբ, որ տէրս և տուիչս էի օրինաց. Ի՞ւ իւիք ձաղ ինչ կամ ձու՞նիս աբարի զձեզ. միթէ փութացա՞յ երբեք արկանել զձեզ 'ի փառացն ձերոց, և ո՞չ առաւել հաստատել 'ի փառս. ո՞չ ապաքէն վերիպելոյն առ 'ի ձէնջ պատուիրեցի, թէ Զամենայն զոր ինչ ասիցեն ձեզ՝ արարէք, բայց ըստ գործոց նոցա մի՛ գործիցէք։ Զի թէ ըստ գործոց գործէին, ապա և լսէին իսկ ոչ բանիցն ձերոց. միթէ յԱստուծո՞յ ինչ վրիպեցուցի. ո՞չ զամենայն ինչ Աստուծոյ նուիրեցի. ո՞չ որումն բժշկեցաւն 'ի լրգեանէն, տասցի թէ Փառաւորէ՛ զԱստուած. և միւսումն, եթէ Ե՛րթ առ քահանայն, և մատո՛ պատարագս փոխանակ փրկութեանց։

«Եւ ժառանգեսցեն զժառանգութիւն անապականի»։ Եւ այս այնպիսեացն է, որ հաստատութեամբ ունիցին զժառանգութիւն և տիրեսցեն. ըստ այնմ, եթէ Տիրեցես 'ի մէջ թշնամեաց քոց։ Իսկ այլազգ ևս. անապատ զմարդկեղէն բնութիւնս կոչէ. քանզի արդարև անապատ էր՝ որ ոչ տայր պտուղ. ոչ եթէ յերկրի ինչ արմատեաց, այլ յօդւոց պտուղ. բայց եկն Տէրն, արար պտղաբերս։

« Հրաման տալ եղանել կապելոց, յայտնել այնոցիկ՝ որք նստէին 'ի խաւարի և 'ի ստուերս մահու»։ Տեսանե՞ս, զի և զկերպարանս հաստատութեանն ասէ, եթէ ոչ մարդկեղէն ինչ, այլ աստուածական և անմահական և եղանելի և օգնիչելի բնութեանն. որ ոչ վաստակօքն ինչ կամ աշխատութեամբ, այլ միայն հրա-

մանաւ բաւական եղև հանել զկապեալս 'ի կապանաց մեղաց, և յայտնել զայնոսիկ՝ որ 'ի խաւարի մոլորութեանն նստէին: Քանզի և ասէր իսկ. Քաջալերեա՛ց, որդեակ, թողեալ լիցին մեղք քո. և ցՂազար, թէ Արի, ե՛կ արտաքս. Թէպէտ և 'ի բանտի և 'ի խաւարի իցեն, որք 'ի մարդկան սաստից արգելեալ իցեն, այլ ոչ այնպիսի խաւար է և սաստիկ կապանք, որպէս որք 'ի մեղացն կապեալ իցեն. զի նոքա 'ի հարկէ կապեալ են, և սոքա 'ի կամաց. Նոցա մարթ է զի երբեք և լուծանիցին, իսկ մեղաւորացն չէ հնար թէ լուծանիցին, այլ զի նոյնպէս մատնեսցին 'ի հուր. զորս և գեհենին իսկ չկարիցէ լուծանել, եթէ աստի անդր կապեալք երթիցեն. զի եթէ լուծանելոց էին, ապա ոչ անմահ լինէին տանջանքն և ոչ անվախճան պատիժքն:

« Ցամենայն ճանապարհս արածեսցին, և ընդ ամենայն շաւիղս ճարակք նոցա »: Իսկ այլքն՝ Ի դաշտս, 'ի հարթս. այսինքն՝ եթէ ամենայն կեանք նոցա պատշաճականք լինիցին. ամենայն ուրեք գտանիցեն կերակուրս, զի զամենայն տիեզերս ընդարձակեցից նոցա, թէպէտ 'ի ծառայութիւն կամ յաղքատութիւն կամ 'ի ցաւս կամ 'ի յայլ ինչ ըկանս մատնիցին, սակայն ժուժկալք լինիցին: « Մի քաղցիցեն և մի ծարաւիցեն, և մի խորշակահար լինիցին »: Ակիւղաս ասէ. Մի հարցէ զնոսա խորշակ և մի արև: Ոմանք զայս զհանդերձելոցն ասեն. բայց ինձ թուի թէ զմօտաւորացս իսկ ասիցէ. զի թէ այլն ամենայն ինչ ոչ վնասիցէ, որչափ ևս առաւել և ոչ խորշակն: Զգեաց ամպ և այժմ Աստուած, մանաւանդ եթէ առաւել ևս քան զամպ, զի զմխիթարութիւն Հոգւոյն շնորհեաց մեզ և զամենայն պարգևս, զի մի ինչ պամագիտ լինիցի ցանկութիւնն այրելի իւրեանց խորշակին տապով:

« Այլ որ ողորմելոյն իցէ՝ մխիթարեսցէ զնոսա »: Ակիւղաս ասէ. Զի որ գթալոյն իցէ՝ ողորմեսցի նոցա: Սիմաքոս ասէ, թէ Առաջնորդեսցէ. Թէոդիտոն, եթէ Ածցէ զնոսա: Տեսանե՞ս, զի մարդասիրութեանն է մխիթարութիւնն: « Եւ ընդ աղբերականս առաջնորդեսցէ նոցա »: Ակիւղաս ասէ. Վարեսցէ. Սիմաքոս, թէ Առաջնորդեսցէ: « Եւ արարից զամենայն

լերինս 'ի Ճանապարհ, և ընդ ամենայն շաւիղս արօտք նոցա»։ Ակիւղաս և Թէոդիտոն ասեն. Եւ անխոչ լինիցին շաւիղք իմ։ Սիմաքոս. Եւ եղագք իմ բարձրասցին. այսինքն է՝ ամենայն կեանք նոցա։

« Եւ իբրև զՃանապարհ հարթեալ՝ դիւրեալ լինիցին։ Ահաւասիկ ոմանք եկեսցեն 'ի հեռաստանէ, ոմանք 'ի հիւսիսոյ և 'ի ծովէ, և ոմանք յերկրէն Պարսից »։ Իսկ այլքն և եբրայեցին՝ Սինիմ, ասեն [1]։ « Ուրախ լերուք երկինք »։ Ակիւղաս ասէ. Օրհնեցէք. այլքն ասեն, թէ Ցնծացէք. Թէոդիտոն և Սիմաքոս, թէ Ուրախ լեր։ « Եւ ցնծասցէ երկիր, զի ողորմեցաւ Աստուած ժողովրդեան իւրում»։ Ակիւղաս և Թէոդիտոն ասեն. Զի մխիթարեաց. Սիմաքոս ասէ. Զի սփոփեաց։ « Եւ զխոնարհս ժողովրդեան իւրոյ մխիթարեաց »։ Այլքն ասեն. Գթացաւ։ Տեսանես, որպիսեաց է մխիթարութիւնն. ոչ հպարտացելոց և ոչ ամպարհաւաճից, այլ խոնարհաց, զի նոքա իսկ ընդունին զբանն Աստուծոյ, և ոչ հպարտացեալքն։

« Բայց Սիոն ասաց. բա՛, թող զիս Տէր, և մոռացաւ զիս Աստուած։ Միթէ մոռասցի՞ կին զմանուկ իւր, և կամ ո՞չ գթասցի 'ի ծնունդ որովայնի իւրոյ. և եթէ մոռասցի զայս կին, սակայն ես ոչ մոռացայց զքեզ, ասէ Տէր »։ Տեսանե՞ս, զի ըստ բնութեան գութս և ըստ ծնողաց խնամս անցանէ Աստուծոյ մարդասիրութիւնն։

« Ահաւասիկ 'ի վերայ ձեռաց իմոց նկարեցից զպարիսպս քո »։ Ակիւղաս ասէ. Ահաւասիկ 'ի վերայ ափոց իմոց հաստատեցի զքեզ, և պարիսպք քո առաջի իմ են հանապազ։ Սիմաքոս, թէ Ի վերայ ձեռաց իմոց նըշ-

1 Եբրայեցին סינם ունին։ Բառս այս մի անգամ եւեթ հանդիպելով աստանօր 'ի Ս. Գիրս ընդ ארץ էրէց (որ է երկիր կամ գաւառ) բառի, նշանակէ սովորաբար աշխարհ ինն կարի բոցակայ. այլ թէ ո՞ր իցէ այս աշխարհ՝ գեռ ևս անծանօթ են մեկնիչք, ոմանց իմանալով զՊելուսիա և զԵգիպտոս, և այլոց զՊարսկաստան՝ ըստ թարգմանութեան Եօթանասնից, զոր Ս. Հերոնիմոս Էլէմ հարաւոյ թարգմանէ։ Այլ առ գիտունս ժամանակիս առաւել հաւանական թուին կարծիքն այն՝ զոր կալաւ նախ Արիաս Մոնտանոս, և զկնի նորա Յունիոս, Մէօլէր և Լանկլէ, ստուգաբանելով զՍինիմ՝ զաշխարհն Սինէացւոց լինել, զորմէ տես 'ի Լանկլէ. Հնախօսութիւնք [illegible]. Հատ. Բ. էջ 406 և որ զկնի. և 'ի Միներ. Բառգիրք Ս. Գրոց. Հատ. Գ. էջ 886 և 883։

մարեցի զքեզ, և պարիսպք քո միշտ յանդիման կան ինձ։ Թէոդիտոսն, թէ Ի վերայ ձեռաց իմոց նկարեցից զքեզ, և առաջի իմ ես դու հանապազ։ Զգուշութիւնն յայտ առնիցէ՝ եթէ անտի է, և չիք ոք որ կարիցէ գամագիտ լինել. ըստ այնմ, եթէ Ոչ ոք յափշտակեսցէ զնոսա 'ի ձեռաց Հօր իմոյ. և այլուր. Եթէ լինիցի Յոքոնիայ կնիք 'ի ձեռին իմում, սակայն անտի իջուցից և մատնեցից զնա։

« Եւ արդ չլինեսջիր դու 'ի ձեռաց այնոցիկ՝ որք քակեցին զքեզ »։ Ակիւղաս ասէ. Շինողքն քո յանցանէ լիցին՝ որ քակեցին զքեզ։ Թէոդիտոսն ասէ. Կանխեսցեն շինողքն՝ որ քակեցինն զքեզ։ Սիմաքոս ասէ. Կանխեսցեն որդիքն քո՝ որ քակեցինն զքեզ։ Եւ արդ կանխե՞լ ինչ է յետ այնչափ ժամանակաց. այո, ասէ, և յոյժ իսկ կանուխ է. զի առ մեղացն ընջել այն իմն պիտանացու է։ « Վաղվաղակի չլինեսջիր 'ի ձեռաց այնոցիկ՝ որ քակեցինն զքեզ »։ Եւ այն իսկ են զարմանք, զի այնպիսի փոփոխմունք լինէին. զի յորժամ տեսանիցես եթէ ձեռք թշնամեացն որ աւերեցին՝ նոյնք և շինեսցեն, 'ի միտ առնուցուս թէ և 'ի գերութիւնն Աստուած մատնեաց, և շինութիւն քաղաքին նոյն առնէ, և յոր կողմ կամի՝ դարձուցանէ զմիտս մարդկան։ Զի՞նչ ինչ մեծ կայցէ քան զայնպիսի իշխանութիւնն։ Ապա թէ ասիցէ ոք, եթէ իբրև զթշնամիս յարեան 'ի վերայ և առին, և ոչ Աստուծոյ ինչ հրամանաւ, ասեմք, իսկ զիա՞րդ իցէ՝ զի 'ի նոցանէ իսկ շինեցաւ, ծ յորդորեաց զնոսա յայն. զի մանաւանդ նոցա իսկ չէր պարտ կանգնել զքաղաքն, որ այնպէս կռուասէր և խազմարար էր 'ի մանկութենէ, զոր և ինքեանք իսկ այնպէս բամբասէին։ Ո՞վ ոք զիւր թշնամի անկեալ՝ կանգնել կամիցի, և անդրէն միւսանգամ իւր թշնամի և հակառակորդն առնիցէ։ Եւ արդ, որ ցածոյց զպատերազմն և կանգնեաց զքաղաքն՝ Կիւրոս էր, որ երբեմն զնոսա ընդ ստրուկս ունէր, և ապա իբրև զազատս մեծացոյց։ Այն իսկ չէ՞ր բաւական՝ զի թոյլ ետ ելանել գերւոյն, այլ և մեծարանօք ևս մեծարէր, զի այլոց ևս յայտնիք լինիցին։ « Եւ որք աւերեցինն զքեզ՝ 'ի քէն 'ի բաց մերժեսցին »։ Թշնամիքն, խուժադուժքն հեռանայցեն 'ի նմանէ։

« Համբարձ դու զաչս քո 'ի վեր, և տես զամենայն որդիս քո, զի աՀաւասիկ ժողովեցան և եկին առնեքեան »: Շուրջ զքև գումարեալք, միախուռն ժողովեալք. ոչ իբրև 'ի գերութենէ ցրեցան վայրավատինք, այլ յարդարեալք միաժողով և յօրինեալք՝ իբրև Աստուծոյ զօրավարութեամբ առաջնորդեալք: Եւ տես, զիարդ տեսչութեամբք և պէսպէս կերպարանօք, և յայլ և յայլ ժամանակս լինէր դարձն. զի կիսոցն ելանել և կիսոցն անդէն մնալ ոչ այլ ինչ էր, այլ Աստուծոյ զօրութեանն նշանակ: Արձակեցի զքեզ, ասէ, 'ի գերեացդ. չՀաւատացեր թէ ես արձակեցի. դարձեալ 'ի բաց առնեմ զօգնականութիւն իմ, զի անդրէն յառաջին պայմանն դառնայցես. դարձեալ կապեցից և այդրէն արգելուցուս, մինչև ծանիցես թէ զարձակուրդն ես արարի և զարգելուլն:

Եւ զի զամենեցուն զդարձն միանգամայն յայտ առնիցէ, Հաստատէ ևս երդմամբ, եթէ « Կենդանի եմ ես, ասէ Տէր, զի զամենեսին զնոսա զգեցջիր դու իբրև զպատմուճան մի, և զարդարեսջիր դու նոքօք, իբրև զՀարսն զարդու »: Եւ այսու ցուցանէ թէ յետ թշուառութենէ յորպիսի փառաւորութիւն եղև նոցա փոփոխումն. զի գերութեան դարձ եղև և քաղաքին շինութիւն և ամենայն կարգաց եղծելոց յօրինուածք: Եւ ոչ անդ միայն, այլ յորժամ յԵգիպտոսէ 'ի Հինգ դար՝ [1] վեցՀարիւր Հազարք զօրացն ելանէին: Եւ արդ զինչ ասիցեմք. միթէ վասն այնր ինչ առնիցէ Աստուած զմարդիկ, զի երկայնակեաց ժամանակօք սփռիցին լնուցուն զամենայն երկիր. ոչ եթէ այն ինչ իցեն պատճառք. զի և 'ի սակաւ վայր կարէ առնել Աստուած աճումն մարդկան, որ ստոյգ մարդիկ ոք իցեն: Որպէս յարէ իսկ 'ի նոյն. « Զի աւերակն և ապականեալ և կործանեալ գետինքն քո, անդ նեղեսջիր դու 'ի բնակութենէ նոցա, և Հեռասցին 'ի քէն՝ որք կլանէին զքեզ. քանզի ասիցեն յականջս քո որդիքն քո զորս կորուսեր. անձուկ է մեզ, ընդարձա-

1 Այն է 'ի կոչմանէն Աբրահամու մինչև ցելանելն Իսրայելի յԵգիպտոսէ. 1921-1491 Ն. Ք., և ըստ ամաց արարչութեան աշխարհի 3412-3842 ըստ Եօթանասնից, իսկ ըստ Վուլկատային 2083-2513:

կեամ տեղւոյ բնակութեան »։ Տե՛ս, որչափ բարութիւնք հասանելոց էին յետ դարձին, զի այնպէս լնուցուն, ասէ, աւերակ տեղիքն յորդւոց և 'ի ծննդոց, մինչև ասիցեն. « Անձուկ է մեզ, ընդարձակեամ տեղւոյ բնակութեան »։ Զի յաւերակ և յանմարդի տեղւոյն այնչափ քան զչափն յաւելուր բազմութիւն ծննդոց՝ մինչև նեղէին ևս 'ի բազմութենէն. զի կատարեսցի 'ի վերայ նոցա հին օրհնութիւնն, եթէ Ոչ լինիցի քեզ անսերմն այր, և կին ամուլ։ Եւ ուստի՞ լինէր այն. այլ յորժամ թշնամիքն վանէին, և նոքա ելանէին 'ի դիւրութիւն, յաճել և 'ի կեալ։

« Եւ ասիցես 'ի սրտի քում, եթէ զոսա ինձ ո՞ ծնաւ »։ Զարմացեալ իբրև երազ իմն համարէր, եթէ սոքա ուստի՞ ծնան ինձ։ « Զի ես անժառանգ էի »։ Իսկ այլքն՝ եթէ Ես սկնդուկ և այրի։ Սիմաքոս՝ Անծին, ասէ. Ակիւղաս՝ Ամուլ։ Տեսանե՞ս անյուսական ինչ իրաց զԱստուծոյ սքանչելիսն։ « Պանդուխտ և արգելական »։ Ակիւղաս՝ Նշդեհ և հեռացեալ. Սիմաքոս՝ Վարատական և գերի, ասէ։ Զի երկու իրք էին որ արգելուին. մի՝ զի ընդ այլոց ձեռամբ էր, և միւս ևս՝ զի ելեալ էր յանգոյ և անկեալ 'ի հաստատութենէ։ « Եւ զոսա ինձ ո՞վ սնոյց. զի ես լքեալ միայն էի, և սոքա ո՞ւր էին »։ Եւ երկրորդելն՝ անհնարին տարակուսանացն զարմանալոյ և չանարգական ուրախութեանց նշանակ։

« Այսպէս ասէ Տէր. ահաւասիկ ես համբառնամ զձեռն իմ 'ի վերայ հեթանոսաց, և 'ի կղզիս կանգնեցից զնշան իմ, և ածցեն զորդիս քո 'ի գոգս իւրեանց »։ Զի մի՛ յիւրեանց ինչ արդարութիւնն վստահ լինիցին՝ յիմմէ ակնարկելոյ, ասէ, իմով զօրութեամբ է դարձ լինելոց։ Եւ եթէ որպիսի՛ ինչ գգուանաց իցէ դարձն, մերթ ասէ՝ ելանիցեն. դարձեալ, եթէ « Ածիցեն զորդիս քո 'ի գոգս իւրեանց, և զդստերս քո 'ի վերայ ուսոց բարձեալ բերիցեն. և եղիցին թագաւորք դայեակք քո, և իշխանք նոցա մանկակալք քո »։ Եւ այս ամենայն առ Կիւրոս արքայիւ կատարեցաւ։ Նա երկիր ևս պագանէին նոցա իշխանք թագաւորին։ Եւ տես զպէսպէս զսքանչելիսս. զի ոչ միանգամայն ինչ խաբկանօք, որպէս յԵգիպտոսէն ելին՝ ելանէին, այլ պէսպէս պատուովք ընդ ժամանակս ժամանակս։

«Միթէ առնուցո՞ւ ոք աւար ՚ի հսկայէ»։ Քանզի անհաւատ իմն բանքն թուէին նոցա՝ ՚ի մտաց հաւանեցուցանել զնոսա։ Եւ արդ չհարի՞ն արդեւք աւար թշնամիքն. այո՛, առին, այլ չարով իւրեանց. զի թէպէտ և առին, ոչ ինչ իւրեանց զօրութեամբ, այլ ես ետու զնոսա ՚ի ձեռս։ Եւ զի՞նչ ասիցեմ ՚ի հսկայէ. զի եթէ յանիրաւի ոք վարեալ իցէ ՚ի գերութեան, միթէ չկարիցե՞մ ապրեցուցանել։ «Եթէ ոք վարեսցէ ըղհսկայ գերի, առցէ և զաւարն. բայց որ առնուցու ոք զհարստի, ոչ կարէ ապրել». քանզի կարող է հզօրն խնդրել զվրէժ անձին։ «Եւ կերիցեն կերիչքն զմարմինս իւրեանց, և արբցեն իբրև զգինի զարիւնն իւրեանց»։ Այնպէս ախորժելով իմն և յանկութեամբ։ Տեսանե՞ս, զի ՚ի զուր յարեան ՚ի վերայ, և ոչ եգև նոցա շայեկան՝ զոր ինչ առինն։ «Եւ ծանիցեն ամենեքեան, եթէ ես արարի և ոչ նոքա ինչ»։

## ԳԼՈՒԽ Ծ

«Այսպէս ասէ Տէր. ո՞ւր է թուղթն ապահարազանի՝ որով արձակեցի զմայրն ձեր յինէն. կամ ո՞ւր է գրաւականն՝ որով վաճառեցի զձեզ»։ Զհամարիմ միայն զբարեացն կանխասացութիւնս, այլ և զանցելոցն եւս տրտմութեանց տայ իրաւունս. զի ցուցցէ թէ և գերութեանն ինքեանք իսկ են պատճառք։ Ապա եթէ ոչ, բնաւ զի՞ անուանէր իսկ գիր ապահարզանի. զի սովորութիւն է կանանց արձակելոց՝ գիր ապահարզանի [1] առնուլ յիրաւի, որպէս և այժմ իսկ լինի։ Այլ ես ոչ ետու, ասէ, և ոչ կարէ մեղադիր լինել եթէ ես նախ ետու. այլ նախ ինքն կամեցաւ ելանել, և ապա ես թոյլ ետու։ Նա և ոչ զձեզ իսկ վաճառեցի. ապա թէ ոչ՝ ցուցէ՛ք զգրաւականն. մարդկեղէն իմն խելս խառնէ, զի ազատ արասցէ զանձն թէ ես չեմ պատճառք գերութեանն։ Եւ ո՞վ ոք իցէ. «Այլ ՚ի մեղս ձեր,

1 Յօր. Զի սովորութիւն.... ապահարզանի, յօտար գրչէ։

ասէ, վաճառեցարուք դուք. և վասն անօրէնութեան ձերոյ արձակեցի զմայրն ձեր յինէն։ Զի եկի՝ և ոչ գոյր մարդ, և խօսեցայ՝ և ոչ ոք էր որ լսէր »։ Սոյնպէս և առ Քրիստոսի հետեցին։ Զսոյն ասէր և Մովսէս, եթէ Հայհոյարուք, երկինք, և խօսեցայց. և սոյն մարգարէ 'ի սկզբանն, եթէ Լուր երկին, և ունկն դիր, երկիր։ Եւ զի՞նչ իցէ՝ թէ եկի. այլ թէ հանապազ մօտ եմ, հանապազ պաշտպան լինիմ. քանզի ոչ երբեք թողու 'ի ձեռաց՝ Աստուծոյ պաշտպանութիւնն։ Եկի, ասէ, խրատել, ուղղել, յերիւրել, և դուք ոչ լուարուք։ « Միթէ ո՞չ կարիցէ փրկել ձեռն իմ, կամ թէ ո՞չ զօրիցեմ ապրեցուցանել »։ Միթէ տկարութիւն ինչ իցէ յինէն։

« Ահաւասիկ յանդիմանութեամբ իմով 'ի սաստս իմ »։ Իսկ այլքն ասեն, թէ Աւերեցից զծով։ Ակիւղաս ասէ. Ցամաքեցուցի։ Եւ ուստի՞ յայտ իցէ. յայնցանէ՝ որք յառաջագոյն գործեցան յԵգիպտոսն։ « Եւ եդից զգետս յանապատ, և ցամաքեսցին ձկունք նոցա »։ Ակիւղաս ասէ. Նեխեսցին ձկունք նոցա. և Սիմաքոս ասէ. Տրորեսցին ձկունք նոցա. և զայսր նշանակ եցոյց Յորդանան գետ։

« Զգեցուցից զերկինս խաւարաւ, և իբրև զքուրձ արարից զհանդերձ նոցա »։ Եւ այս եղև յԵգիպտոս 'ի գիշերին. զի թէ և այլ ինչ ոչ, այս իսկ միայն չկարէ՞ր կորուսանել զամենեսեան։ Եւ զի ցուցցէ մարգարէս, եթէ ոչ մարդկօրէն ինչ մտաց են բանքս, և մի՛ ասիցէ ոք, թէ այս՛ գիտեմ եթէ Աստուած զամենայն ինչ կարէ առնել, բայց ուստի՞ յայտ իցէ եթէ դու անտի խօսիցիս, « Տէր, Տէր, ասէ, տայ ինձ լեզու խրատու, զի գիտացից խօսել 'ի ժամու զբանն. յաւել ինձ ունկն 'ի լսել. և խրատ Տեառն բանայ զականջս իմ »։ Որպէս միւս մարգարէն ասէ, եթէ Ես լցայ զօրութեամբ ոգւով Տեառն. եթէ Ես ոչ էի մարգարէ և ոչ որդի մարգարէի, հովիւ էի և թութ քաղէի. և դարձեալ, թէ Ընտրեաց զԴաւիթ ծառայ իւր, և առ զնա 'ի հօտէ խաշանց. Նոյնպէս և սա ասէ. « Տայ ինձ լեզու խրատու, զի գիտացից խօսել 'ի ժամու զբանն »։ Լեզու զպատգամմն կոչէ. և իրաւունս տայ ևս այնոցիկ՝ որ դժուարաւն լսէին։

Եթէ ոչ մարդկեղէն ինչ բանք պաճուճեալք են, այլ Աստուծոյ պատգամք, « Յաւել ինձ, ասէ, ընդառաւօտս ունկն 'ի լսել »։ Եւ զիւր ցանկութիւնն և զԱստուծոյ գունակ գունակ զպարգևսն նշանակէ։ « Եւ խրատ Տեառն, ասէ, բանայ զականջս իմ »։ Զի ցուցցէ թէ և խրատն 'ի նմանէ է և իմաստութիւնն։ Եւ բարւոք ասէ. « Յաւել ինձ ունկն 'ի լսել »։ Քանզի ոչ կարէ այնպիսի ականջօք լսել զայնպիսի բարբառս, եթէ ոչ ըստ բարբառոյն՝ և ականջքն նորոգեսցին։ Զի ոչ ուսմամբ ինչ է իմաստութիւնն երկնաւոր, այլ շնորհօք, ըստ չափոյ իւրաքանչիւր հաւատոց։

« Այլ ես ոչ խստանամ, և ոչ ընդդէմ դառնամ »։ Տեսանես, զազատութիւնն և զանձնիշխանութիւնն յայտ առնէ. ես ոչ, ասէ, յամառիմ, զի յայտ արասցէ եթէ մարթ էր նմա յամառել, որպէս Երեմիայն յամառեաց, և յետոյ ասէր, եթէ Եղև յոսկերս իմ իբրև զհուր վառեալ. զի ցուցցէ եթէ մարգարէութեանն են իրքն։

« Զթիկունս իմ ետու 'ի հարուածս »։ Ակիւղաս ասէ. Վիրաւորչաց [1]. այլքն՝ Գանահարաց, ասեն։ « Եւ զծնօտս իմ յապտակս »։ Այլքն՝ Կողոպտչաց։ Եւ տես, որպիսի՛ ինչ հնազանդութիւն ունէր յանձին. չդառնամ, ասէ, ընդդէմ. թէպէտ և ընդդէմ դառնալ 'ի դէպ իսկ էր, ասել թէ ծանր է բանդ, չհանդարտեմ բառնալ. զի թէ մին նախատանաց ոչ համբերէր, իսկ ես տանջանացդ զիա՞րդ կարիցեմ տանել։ Այլ այսու ամենայնիւ հնարի յայտ առնել, եթէ ոչ իւրով ինչ կամօք և ոչ մարդկան ինչ մտօք խօսիմ. քանզի և զիա՞րդ իսկ՝ ուր այնչափ տանջանք 'ի վերայ կային՝ յօժարէր յիւրոց մտաց խօսել ինչ։

« Եւ զերեսս իմ ոչ դարձուցից 'ի թքոց »։ Զի՞նչ խօսիսդ. այժ, ասէ, միշտ յայսպիսի աղէտս կամ, ոչ միանգամ կամ երկիցս կամ երիցս, այլ միշտ. զի զամենայն կերպարանս բարկութեան և սրտմտութեան շարժեցին 'ի վերայ իմ և կոտեցին, այլ ես ոչ ինչ ընդդէմ դարձայ։

1 Յոր. Վիրաւոր չարաց։

Եւ յայնչափ յանհնարին Թշնամանս և չարչարանս զինչ ասիցէ. « Եւ Տէր ինքնին, ասէ, եղև ինձ օգնական »: Ահաւասիկ և այլ ևս նշանակ, եթէ արդարև յԱստուծոյ են բանքն և 'ի վերուստ հրամանքն. զի յայնչափ մոլեացն 'ի վերայ յարուցելոցն, որ հանապազ ձեռակած Թուք 'ի գլուխ առնէին, վէրս 'ի վերայ վիրաց դնէին, և սպանանել վաղվաղակի ոչ կամէին՝ զի առաւել կտտեսցի, երկայնամիտ լինէր, և ուշաբերեալ ասէր, եթէ « Տէր ինքն եղև ինձ օգնական »: Որպէս և առ Առաքեալսն՝ ոչ այն միայն յայտ է զի յԱստուծոյ միայն մատնեցան 'ի չարչարանս, այլ զի և 'ի նմանէն ընդունէին զօգնականութիւնն, յորժամ ասիցէ՝ Նէ կենօք եթէ մահու. զի մահուն ասելով՝ զիւրեանց համբերութիւնն ցուցանիցեն, և կենօքն ասելով՝ զՔրիստոսի օգնականութիւնն. Բարձրասցի, ասէ, Աստուած 'ի մեզ: Եւ յերկրորդ Թղթին Կորնթացւոց գրէ, եթէ Մահ 'ի մեզ զօրանայ, և կեանք 'ի ձեզ. զի Թէպէտ և մեք, ասէ, չարչարիմք, սակայն ձեզ պարտ է օգնական լինել:

« Ոչ պատկառեցի, ասէ, և ոչ ամաչեցի. զի Աստուած է իմ օգնական »: Տե՛ս, զիարդ նման են բանքս առաքելական բանիցն. Յամենայնի, ասէ, նեղլիմք, այլ ոչ փղձկիմք, և Թէպէտ և հալածիմք, այլ ոչ լքանիմք. Թէպէտ և անկանիմք, այլ ոչ կորնչիմք: « Արարի զդէմս իմ իբրև զվէմ ապառաժ »: Եւ յայտ է եԹէ կամօք և ոչ բռնութեամբ: Տե՛ս, զիարդ ընդելուզանէ զբանն յԱստուծոյ օգնականութենէն և յիւրոց կամաց. « Եւ գիտացի, ասէ, զի մերձ է՝ որ արդարացուցանէն զիս »: Միանգամայն և զհանդերձելոց իրացն հաւատ տայր. զի Թէ ես՝ որ այսչափ 'ի չարչարանս կամ՝ ոչ ինչ լքանիմ, որչափ ևս առաւել դուք չպարտիք յուսահատ լինել՝ Թէ ոչ լինիցի դարձ գերութեանդ. զի Թէ ես՝ որ չեմ պատժապարտ՝ 'ի պատիժս եմ վասն ձեր, որչափ ևս առաւել և դուք պարտիցիք տանել վշտացդ:

« Եւ ոչ ամաչեցի »: Եւ վասն հանդերձելոց իրացն վստահ լինի. « Զի մերձ է՝ որ արդարացուցանէն զիս ». քանզի ընդ իս իսկ է: Դա աւադիկ չէ ինչ այդ նշանակ Թէ ընդ քեզ իցէ. այլ և է իսկ, ասէ, նշանակ

տոյն՝ եթէ ընդ իս իցէ. զի Թոյլն տալ այսպէս չարչարանս կրել և չամաչել, նշանակ է եթէ ընդ իս իցէ։ Սոյն և Առաքելովքն. զի թէ չհաւատայցէ ոք յարութեան, չարչարանօքն՝ զոր տեսանիցէ յԱռաքելոցն՝ հաւատասցէ թէ գոյ յարութիւն և մահու լուծումն. ոչ այնու միայն զի հանապազ փրկէր զնոսա 'ի վշտաց, այլ առաւել այնու՝ զի ոչ երբեք պտանէին վհատեալք։

« Ո՞վ իցէ՝ որ ոսոխն իցէ. եկեսցէ, կայցէ առաջի իմ միանգամայն. կամ ո՞վ իցէ որ դատեսցին, մերձեսցի առ իս »։ Ո՞վ ոք, ասէ, թերահաւատ լինիցի յասացելոցս, եկեսցէ, յայտնեսցի առ իս. կամ ո՞վ կամիցի զհանդէս առնուլ՝ յառաջ կացցէ, խօսեսցէ իբրև զսուտ ինչ՝ թէ կարասցէ. եթէ ոք կամեսցի յաղթական լինել, եկեսցէ առցէ զչափ զասացելոցս, զի ես պատրաստ եմ տալ վճիռ։

« Ահաւասիկ ամենեքեան դուք իբրև զձորձս մաշեսջիք, և իբրև զցեց կերիցէ զձեզ »։ Ակիւղաս՝ Ուտիճ, ասէ. Սիմաքոս՝ Եբր։ Կամ զԱստուծոյ բարկութիւնն, կամ զմարմնոյ սովորութիւն. զի Աստուած մշտնջենաւոր է. մի երկիցուք 'ի մարդկան ինչ չարչարանաց. որպէս զջուր հանապազ սահին անցանեն, և ոչ երբեք կան 'ի հաստատութեան. յայն սակս ասէ, թէ « Ո՞վ իցէ 'ի ձէնջ որ երկնչիցի 'ի Տեառնէ, լուիցէ ձայնի ծառայի նորա »։ Զի այն իսկ է երկիւղածաց Աստուծոյ՝ մարգարէիցն լսել. որպէս և Քրիստոս իսկ ասէր, եթէ Որ ձեզ լսէ՝ ինձ լսէ. այն իսկ է մեծ և զարմանալի գործ։

« Որ գնայիք ընդ խաւար. և ոչ գոյր 'ի ձեզ լոյս »։ Վասն անգիտութեան և չար գործոց ասէ. զոր Սողոմոն իսկ ասէր, եթէ Ճանապարհք ամպարշտաց խաւարինք են, և ոչ գիտեն որպէս գայթագղին. իսկ Ճանապարհք արդարոց իբրև զլոյս ծագեն։ Եւ ընդէր արդեւք յաւել, եթէ « Ոչ գոյ նոցա լոյս »։ Զի որք 'ի խաւարի գնայցեն՝ յայտ է եթէ ոչ են 'ի լոյս. բայց է երբեք ընդ խաւար գնալ, և զլոյս տեսանել, յորժամ ճրագ ոք լուցանիցէ կամ կանթեղս կամ ջահս. իսկ նոքա և՛ 'ի խաւարի գնան, և լոյս ինչ ոչ ունին ընդ իւրեանս՝ որ զխաւարն լուծանիցէ։ Եւ ոչ ասաց,

եթէ ոչ լուծանիցին, այլ թէ բնաւ իսկ ոչ լուծանիցին. քանզի բաւական է խիղճ մտացն զլոյս սրտին փախուցանել: «Ցուսացարուք յանուն Տեառն»: Սիմաքոս և Թէոդիտոնն՝ Ապաստան լերուք, ասեն: «Եւ զօրացարուք յԱստուածն ձեր»: Մեծ օգնականութիւն է՝ յորժամ 'ի Տէր ոք յուսասցի: Եւ արդ զիարդ մարթ իցէ վստահ լինել և յուսալ յանուն Տեառն, զի բազում իրք խափանիչք կան առաջի. այլ զի յամենայնի զխափանիչսն[1] 'ի բաց ընկենուցումք, և 'ի նա միայն ապաստան լինիցիմք:

«Ահաւադիկ դուք ամենեքեան իբրև հուր վառեալ»: Ակիւղաս ասէ. Վառէք հուր: «Հուր վառեալ և բոց բորբոքեալ. գնացէք հրոյ լուսով ձերով և 'ի բոց բորբոքեալ»: Քանզի որ մեղանչեն՝ հուր բորբոքեն, և հանապազօր ոչ ընդ լոյս, այլ ընդ խաւար գնան: Զի անլոյս է այնպիսի հուրն և այրիչ միայն և ուտիչ. զի այնպէս իմն է բնութիւն այնր հրոյ: Եթէ հուր ունիցիք՝ այնպիսի ինչ կալարուք՝ յորոյ և 'ի լոյսն գնայցէք, և մի զայրիչն և զանլոյս:

«Վասն իմ եղև ձեզ այդ ամենայն. 'ի տրտմութեան ննջեսջիք»: Ակիւղաս՝ Ի ցաւս[2], ասէ. Սիմաքոս՝ Ի ցաւս: Զի՞նչ խօսիդ. այժ, ասէ. քանզի և Երեմիա զդոյն ասէ, եթէ վասն իմ ապականելով ապականեցի զամենայն երկիր: Ո՛չ վասն զի վայրապար մարդկան ինչ վրէժք պահանջիցեն, այլ վասն իւրոց պատգամացն՝ յորժամ արհամարհիցին և կոխան լինիցին: «Ի տրտմութեան 'ննջեսջիք»: Այսինքն զի ոչ քուն անգամ քաղցրանայցէ ձեզ, որպէս վերագոյն, թէ Ի լոյս գնասջիք[3]: Զի ցուցցէ թէ ոչ գոյ լոյս 'ի գործս նոցա:

1 Յօր. Զխափիչսն:
2 Յօր. Ի ցաւսն:
3 Յօր. Այսինքն.... գնասջիք, յաւելուր գրչէ:

## ԳԼՈՒԽ ԾԱ

« Լուարուք ինձ, որ զհետ երթայք իրաւանց, և խնդրէք զՏէր »: Առ նոսա ասէ. Ո՞վ իցէ՝ որ ոսոխն իցէ ինձ, եկեսցէ յանդիման լեցի ինձ. իսկ առ սոսա, եթէ « Լուարուք ինձ, որ զհետ երթայք իրաւանց, և խնդրէք զՏէր »: Յնոսա ասէ. Դատ դիք, իրաւունս տուք. և զսոսա ուսուցանէ. մանաւանդ զայնպիսիսն պարտ է ուսուցանել՝ որ զՏէր խնդրիցեն և զիրաւանցն զհետ իցեն. իսկ նոցա թէպէտ և յունկանէ ոք աղաղակեսցէ, 'ի զուր և ընդ վայր է: Իսկ ո՞վ իցէ՝ որ զՏէրն խնդրիցէ. որ զիրաւանց զհետ իցէ, և զարդարն կշռիցէ. և արդարութիւն ոչ միայն առ ընչիցն չափահասելոյ, այլ և որ այլով ախտիւք չախտանայցէ: Եւ ոչ ասէ վայրապար՝ խնդրել զարժանն և զիրաւն. քանզի բազում անգամ սովոր է խօսել 'ի բազմաց՝ որք զագահութեանն զհետ իցեն, և 'ի ցանկութիւնս հարեալ իցեն: Արդ և մեզ պարտ է զհետ երթալ արդարութեան, և խնդրել զարժանն. զի այսպիսի կերպարանօք գտանէ ոք զԱստուած. զի որ 'ի խնդիր ոք ելանիցէ, պարտ է զի գտանիցէ ևս. և արդ եթէ կարի ուժգին և առաքինի իցէ լողն, սակայն իմաստութեան պէտք են նմա. զի ոչ այնպէս զօրութիւն և քաջութիւն առանձինն կարեն հաւանել զլողն, եթէ ոչ մատիցէ իմաստութիւնն. քանզի իմաստութիւն լող իմն՝ յարգեն գիրք. և այլուր, եթէ Եբաց Աստուած զսիրտն նորա անսալ բանիցն Պաւղոսի. և այլուր, եթէ Եղիցին ամենեքեան ուսեալք յԱստուծոյ: Եւ 'ի սմին մարգարէի վերագոյնն ասէ, եթէ Յաւել ինձ ունկն 'ի լսել. և Իմաստունն, եթէ Տէր տայ զիմաստութիւն, և յերեսաց նորա գիտութիւն և հանճար:

« Հայեցարո՛ւք 'ի վէմն հաստատուն յորմէ կոփեցարուք »: Եւ բարւոք ասաց հաստատուն. քանզի զընութեան անզաւակութիւնն վիմի կարծրութեան նմա֊

նեցոյց. քանզի անծին և անպտուղ է, որպէս և մէջն Սառայի։ Միանգամայն զի և ցուցանիցէ եթէ Աստուծոյ ձեռացն գործ են ծնունդք մեր. զի ոչ եթէ բնութիւնն ինչ ևեթ յիւրմէ նպաստ լինիցի, այլ Աստուած է որ ստեղծանէ և նկարէ. բայց ոչ իբրև զառաջին մարդն և ոչ յոյժ հեռի ինչ քան զնոյն. զի զոր օրինակ նա եղև ստեղծեալ, նոյնպէս և աստ, թէպէտ և յարգանդէն ինչ առնուցու, սակայն ինքն է որ ստեղծանէ։ Եւ բարուք իսկ ոչ միայն վէմ, այլ հաստատուն վէմ կոչեաց. զի ոչ միայն ամլութիւնն էր, այլ և պառաւութիւն։ Եւ յիրաւի խոր գբոյն նմանեցուցանէ. զոր Ակիւղաս՝ Հատոր գբոյ, անուանէ. Սիմաքոս՝ Փապ. Թէոդիտոն՝ Ծակ։ Քանզի և գուբն անծին է. ոչ իբրև զաղբեւր բխեալ արտաքս ինչ աճեցուցանէ, այլ որ ժողովիցեն ջուրն՝ պահիցէ, և ոչ յաւելորդ ինչ գործիցէ։ Իսկ այլքն ասեն, եթէ Արտաքս յորդեցարուք. իսկ Եւթանասնիցն՝ ոչ եթէ պեղեցայք, այլ Փորեցարուք, զի յայտ լիցի եթէ Աստուած էր որ գործէր զամենայն ինչ։

« Հայեցարուք յԱբրահամ հայրն ձեր, և 'ի Սառա՝ որ ծնաւն զձեզ »։ Զայս առ.օրինակ այնպիսեացն բերէ, թէ զի՞արդ մարթիցի այսպիսի դժուարին իրաց լինել, յանցելոց հաւանեցուցանէ. պարտ և պատշաճ է ձեզ իմոց իսկ բանից հաւատալ. և զի ոչ անսայք, յանցելոցն կամիմ հաւանեցուցանել։ Զոր օրինակ 'ի միոջէ արարի զայդչափ բազմութիւն, զի զամենեսին զձեզ նա ծնաւ, թէպէտ և զԻսահակ միայն ծնաւ՝ որ զբնութիւն սնոտուկ որովայնին եղծ. արդ որ զայն արարի, ձեզ դարձ 'ի գերութենէդ չկարիցե՞մ առնել. զի այնպէս դիւրին է ինձ զանհնարինս հնարաւորս առնել, բաւական իսկ էին նախնեացն աւետիք հաւանեցուցանել զձեզ ամենեսին։

« Զի մի էր, ասէ, և կոչեցի զնա »։ Նա աւանիկ երկու իսկ էին. իսկ այլքն լուսաւորագոյն ասեն, եթէ Մի կոչեցի զնա։ Բայց և մի իսկ էր 'ի ընէ. Արար, ասէ, Աստուած զմարդն, արու և էգ արար զնոսա. ապա ուրեմն արու և էգ է մարդն, և մինն գլուխ և միւսն մարմին։ Այլ ես ոչ բազմութեամբ ինչ գործ վճարեմ, և ոչ 'ի սակաւութեան ինչ վհատիմ, այլ

առաքինութիւնք ևեթ պիտոյ են ինձ ամենայն ուրեք։ «Զի մի էր, և կոչեցի զնա և բազմացուցի զնա»։ Եւ ոչ յիւրում երկրի ինչ, այլ յօտար յերկիր բազմացուցի զնա. զի յայտ լիցի եթէ ամենայն ինչ դիւրին է ինձ։ Եւ ընդէ՞ր զԱդամ ոչ յիշեաց, զի մանաւանդ նորա օրինակք կարող էին հաւանեցուցանել զնոսա. և նոքա իսկ ցանկ յԱբրահամ էին։ Եւ այլազգ ևս. զի այն ընտանեգոյն էր, և զի յառաքինութեանցն չէր անմասն Աբրահամ, և զի զմխիթարութիւնս ևս ունէր։

«Սիրեցի, ասէ, զնա և բազմացուցի զնա»։ Եւ ոչ ասէ թէ ընդէ՞ր, զի մի դարձեալ 'ի վհատութիւնս ինչ կործանեսցէ զնոսա, եթէ վասն առաքինութեանց կոչեցաւ նա և սիրեցաւ և բազմացաւ, և մեք զի չունիմք առաքինութիւնս, զիարդ ունիցիմք ակն փրկութեան։

Նմանագոյնս յարէ 'ի նոյն, եթէ «Եւ զքեզ այժմ մխիթարեցից, Սիովն, և մխիթարեցից զամենայն զաւերակսն քո»։ Սիմաքոս ասէ. Սփոփեցից։ Բայց և զԱբրահամ ոչ վասն առաջին կենացն ինչ առաքինութեանց կոչեաց Աստուած. թէպէտ և ճառեն գիրք զբարուոք ինչ կարգացն նորա, այլ որպէս յառաջագոյն գիտէին զհանդերձեալսն, նոյնպէս և ձեզ, ասէ, մեծամեծ օրինակք պիտոյ են, որովք կարիցէք հաւանել։ Քանզի անապատ էր և արգանդն Սառայի, իսկ աստ զերկրէ ասէ թէ անապատ էր. այլ չէր ինչ համեմատ զերկիր անպտուղ 'ի պտղաբերութիւն ածել, և զարգանդ անսերմն՝ 'ի ծնունդ. զերկիր՝ և մշակաց ձեռք կարող են արկանել 'ի գործ, իսկ զարգանդն՝ Աստուծոյ միայն զօրութիւնն։ Դարձեալ չէ ինչ համեմատ զմի ոք կոչել և բազմացուցանել, և զբազումս 'ի բազմութիւն աճեցուցանել։ Եւ դարձեալ չէ ինչ հանգոյն 'ի թշնամեացն ապրեցուցանել, և ակամայ յիւրեանց աշխարհն տանել. և յիւրեանց աշխարհէն՝ յօտար յաշխարհ վարել. զի սոքա արձակեալք վաղվաղակի դարձան. բայց անդ հաւանեցուցանել պիտոյ էր, զի եթէ մեծն եղև, ծրչափ ևս առաւել և փոքրն լինելոց էր։

«Եւ մխիթարեցից զաւերակս նորա, և արարից իբրև զդրախտ»։ Ակիւղաս և Սիմաքոս ասեն. Իբրև

զփափկութիւն. Թէոդիտոնն՝ Իբրև զպարտէզ: « Եւ զարեւմտեայ կողմանսն իբրև զդրախտն Տեառն » : Ակիւղաս ասէ. Զդաշտս նորա. Սիմաքոս, Զտերևս նորա. Թէոդիտոնն, Զարաբայինսն [1] նորա: « Ուրախութիւն և ցնծութիւն գտցեն 'ի նմա և գոհութիւն » : Ակիւղաս՝ Ձայն գոհութեան, ասէ. Սիմաքոս՝ Ձայն երգոց. Թէոդիտոնն՝ Ձայն սաղմոսից և ձայն օրհնութեան: Այնպիսի ինչ լինիցի՝ որպէս զի զԱստուած օրհնել գովել և փառաւորել մարթիցեն, և կամ զի 'ի վարսն իսկ բազում շահս շահիցին:

« Լուարուք ինձ, լուարուք ինձ, ժողովուրդ իմ, և թագաւորք առ իս ունկնդիր լերուք. զի օրէնք յինէն արձակին, և դատաստանք իմ 'ի լոյս հեթանոսաց » : Եւ վասն է՞ր արդեւք կրկնիցէ. այլ քանզի զմեծամեծ իրաց ձայնէ, որ հազիւ հազ ելանիցեն 'ի գլուխ: « Զի օրէնք յինէն արձակին » : Դարձեալ մեղմաւ իմն զհանդերձեալն ինչ ակնարկէ. քանզի առաջին և կարևոր այն իսկ է՝ զօրէնսն տալ, և այն իսկ որոշէ զմեզ յանասնոց: Զի՞նչ օգուտ իցէ թէ բանս և խօսս ունիցիմք, և յուղիղ մտաց վրիպեալ իցեմք: Զի կարիքն որովք ախտանեալք՝ զմիտսն անապատ առնեն. և այն յայնմանէ լինի, զի զխօսողութիւնն՝ որով պարտ էր աւելագոյն գտանել, յանխօսուն բարս անասնոց փոփոխեմք. զի առ նոսա վաղվաղակի շրջանի ցասումն, և 'ի մեզ ոխակալութիւն 'ի տև պահի. 'ի նոսա նախանձ ինչ չիք, և առ մեզ հանապազ բորբոքի: Եւ վասն այնորիկ առաջին և մեծ օգնականութիւն՝ օրէնսդրութիւնն է և օրէնսդիրն: Եւ վասն այնորիկ և արտաքինքն՝ որք զքաղաքս նուաճէին, զօրէնսդիրսն բարերարս համարէին, ևս աւելի և քան զծնողս իւրեանց. և յիրաւի իսկ, զի նոքա զկեալն, և սոքա զբարւոքն կեալ շնորհեն, որով զգուշութիւնն և ամրութիւն լինիցի: Քանզի ոչ եթէ պարիսպքն և բազմութիւնք զօրաց, այլ ուղիղ օրէնք պահեն զքաղաքս. որպէս զմարդ ոք՝ ոչ եթէ մարմնոյն զօրութիւն և առողջութիւն, այլ ոգւոցն առաքինութիւն և կարգացն ուղղութիւն ապրեցուցանեն 'ի մշտաց: Վասն որոյ և ասէ

1 Այսպէս յօրինակին:

տին իմաստուն, եթէ լաւ է իմաստուն քան զհզօրն, և այր հանճարեղ քան զմշակ առաքինի, և օգնականութիւնն որ 'ի նմանէն լինիցի՝ քան զտասն իշխանս քաղաքի. և դարձեալ. Զէն հանճարոյ են շրթունք իմաստունք։ Եւ ամենայն ուրեք տեսանեմք ոչ 'ի մարմնոյ զօրութենէ յաղթեալ հզօրս, այլ յոգւոյն առաքինութենէ. քանզի նաւ ոչ զի մեծ իցէ և ուժգին և պարիսպս անքակս ունիցին շուրջ զթումբսն՝ վասն այնորիկ հատանիցէ անցանիցէ ընդ ծովն, այլ առաջնորդութեամբ ուղղչին՝ ձեռ և ուղղիցէ։

« Եւ դատաստանք իմ 'ի լոյս հեթանոսաց »։ Այս իսկ լուսաւորեցոյց զնոսա, զդատաստանն գիտել և զիրաւունսն 'ի միտ առնուլ։ Տեսանե՞ս զշահս դատաստանին. զի խաւար փախեաւ, երկիւղն մերժեցաւ, ցանկութեանն կարիք փախստական եղեն։ Զոր օրինակ յորժամ այր դատաւոր երևեսցի, զգողս և զաւազակս և զգերեզմանակրկիտս և զամենայն ազգս չարագործաց առնէ հալածական, նոյնպէս և մտացն ընտրութիւն յորժամ միւսանգամ անդրէն զիւր զօրութիւնն առնուցու, և ելեալ նստիցի յաթոռն ատենի, զամենայն վնասակարսն հալածական առնէ, և զամենայն զօգտակարս՝ համբոյրս և ընտանիս։ Կամ թէ չիցէ՞ տեսեալ քաղաքս, յորժամ դատաւորն յատենի նստիցի, որչափ ինչ ահ 'ի քաղաքին լինիցի. ոչ միայն վնասակարացն, այլ և այնոցիկ՝ որոց չկայցէ ինչ խիղճ 'ի մտի. նոյնպէս և միտք յորժամ առողջ իցեն, և ելեալ իբրև զդատաւոր նստիցի յաթոռն ատենի, ապա այնուհետև ահ և երկիւղ շտապէ զգործն՝ որ յառաջագոյն ինչ ոչ 'ի դէպ գործեալ իցեն. և ոչ միայն չար խորհուրդքն յանդիմանիցին, այլ և այլ ևս բարք մտացն՝ որ չիցեն ինչ վնասակարք՝ դողան և սարսեն։ Զոր օրինակ յորժամ Աստուած դատիցէ՝ և ոչ աստեղք սուրբ գտանին առաջի նորա, և ոչ Պաւղոս արդարանայ. Ոչ ինչ գիտեմ, ասէ, զանձին, այլ ոչ եթէ այսու արդարանամ. նոյնպէս և միտքն յորժամ ինքեանք դատաւորք լինիցին, և զվնասն պահանջիցեն պատշաճական ամբաստանութեամբք, չիք ինչ որ կարիցէ զնա արդարացուցանել. ըստ այնմ, եթէ Ո՞վ պարծեսցի եթէ սուրբ իցէ սրտիւ, և կամ ո՞վ հա-

մարձակիցէ եթէ անարատ իցէ. և դարձեալ, եթէ Զի՞նչ ոք արդար՝ որ առնիցէ զբարիս յերկրի, և ոչ մեղանչիցէ. և դարձեալ, եթէ Զո՞ր ինչ ասիցէք 'ի սիրտս ձեր՝ յանկողինս ձեր զղջացարուք: Եւ Պաւղոս, թէ Փորձեսցէ իւրաքանչիւր ոք զանձն իւր. և դարձեալ, Եթէ զանձինս դատէաք՝ ապա ոչ դատապարտէաք: Եւ յիրաւի կամի այնպէս՝ զի զանձինս դատէաք. այլ չհամարձակիս և չյօժարես արկանել զխիղճ մտացն 'ի խուճապանս, և քննել զամենայն կեանս քո, զի գտանիցես մեղս բազումս, և հալածականս առնիցես: Եւ գիտեմք եթէ բազումք իսկ ախտանանս զայսպիսի ախտ, և ես իսկ ինձէն, և յիմմէն իմանամ և զայլոց. քանզի և ես իսկ բազում անգամ կամեցայ զմտաւ ածել զամենայն զկենաց իմոց զվարս, և քննել ճշգրտիւ. բայց ոչ իշխեցի համարձակել, զի մի 'ի բազում տրըտմութիւնս ընկղմեսցին միտքս: Զի թէ կարէաք 'ի հարց և 'ի փորձ արկանել զմեղսն, և բնաւին իսկ զյիշատակս մեղացն 'ի բաց ջնջէաք, և յիրաւի և նմանագոյնս ջանայաք յայն. իսկ եթէ մերթ խոշտանգեմք զմիտս և մերթ ծուլանամք, զի՞նչ ինչ 'ի գզքելոյն շահիցիմք: Եւ զի՞նչ օգուտ իցէ, ասեն, զմտաւ ածել, բայց զի աւելի ևս տրտմութիւն շահիցիմք. զի աստ զմիտս ուտիցեմք, և անդ զպատիժսն կրիցեմք: Այլ ես ասեմ թէ գոյ օգուտ և 'ի տրտմութենէն. զի եթէ զմտաւ ածել տատանիցիս, դանդաղագոյն լինիցիս միւսանգամ առ այնպիսիս մտաբերել. և ոչ այնչափ միայն, այլ և զԱստուած ևս աղաչիցես ածել 'ի հաւան. ըստ այնմ, եթէ Ասա դու նախ զանօրէնութիւնս քո՝ զի արդարասցիս: Զի թէ ասելն արդարացուցանէ, ո՞րչափ ևս առաւել տատանելն: Ոչ այնչափ ինչ օգնէ յանցաւորին, որչափ յորժամ հանապազ առաջի աչաց և 'ի միտս ունիցի զմեղսն, և ստէպ ստէպ զոփայցէ և զանձն խոշտանգիցէ: Ոչ ինչ այնչափ զԱստուած հաշտեցուցանէ վաղվաղակի, ոչ պահք և ոչ գետնատարած անկողինք և ոչ հսկումն և ոչ այլ ինչ այնպիսիք. և սմին հաւանութիւն 'ի գրոց կարգեցից ձեզ. Ասացի, ասէ, պատմեցից զմեղս իմ, և դու թողեր զամենայն ամպարշտութիւնս մեղաց իմոց: Ասացի, ասէ. տեսանե՞ս, զի՞նչ զօրութիւն է այնր, եթէ Ասա

դու նախ զանօրէնութիւնս քո՛ զի արդարասցիս։ Զանօրէնութիւնս իմ, ասէ, Տէր, ցուցից քեզ, և զմեղս իմ ոչ ծածկեցի։ Միթէ յորժամ դու քեզէն չկամիցիս յիշեցուցանել, Աստուած ո՞չ գիտիցէ. միթէ չունիցի՞ զամենագէտ գիտութիւնն, որով զամենայն գործս իբրև ՚ի գրի գրեալ ունի։ Այլ գէթ, ասեն, զաշխարհիս զթշնամանս չլսիցիմք, զի մի՛ ծանակ և առակ լինիցիմք։ Այլ այդպիսի մտօք ոչ զաստի զթըշնամանս անցուցանել կարես, և ոչ զանտի շահսն օգտել։ Եւ եթէ ասիցես, զինչ լինիցի այդ, ասեմ՝ եթէ նա՛ ՚ի մեծամեծ ՚ի մեղս անկանիմք այնպիսի մխիթարութեամբ, և անդ տանջելոց եմք։

« Արագ արագ մերձենայ արդարութիւն իմ, և ելցէ իբրև զլոյս փրկութիւն իմ »։ Արդարութիւն զիւր՝ որ ինչ աստ է և որ ինչ անդ իցէ՝ ասէ։ Եւ ոչ վայրապար ինչ ասէ՝ եթէ մերձեցի, այլ եթէ « Արագ արագ մերձեցի արդարութիւն իմ ». այսինքն դատաստան իմ, և ոչ ողորմութիւն։ « Եւ ելցէ իբրև զլոյս փրկութիւն իմ »։ Եւ զի՞նչ իցէ՝ իբրև զլոյսն. այսինքն՝ յայտնի, յանկարծակի։ « Ինձ կղզիք համբերեալ մնան, և ՚ի բազուկ իմ հեթանոսք յուսասցին »։ Սիմաքոս ասէ. Եւ բազուկք իմ զժողովուրդս դատեսցին. իսկ այլքն՝ զհեթանոսս՝ ժողովուրդս ասիցեն. այլ նոյն է յուսասցին, քննեսցեն երկեղիւ, զփրկութեան պտուղսն ժողովեսցեն. և կամ որպէս Եւթանասունքն ասիցեն, եթէ Ի բազուկ իմ յուսասցին. այսինքն՝ ՚ի զօրութիւն իմ։

« Համբարձէ՛ք յերկինս զաչս ձեր, և հայեցարո՛ւք յերկիր ՚ի խոնարհ. զի երկինք իբրև զծուխ հաստատեցան, և երկիր իբրև զձորձս մաշեսցին »։ Տե՛ս, որպիսի՜ օրինակս բերէ վասն դիւրութեան դարձին. որպէս անցքն ընդ Եգիպտացիսն անցին, և որպիսի ինչ իրք առ Աբրահամն եղեն։ Դարձեալ և յարարածս իսկ եկն, և զզօրութենէն Աստուծոյ ճառէ, եթէ « Երկինք իբրև զծուխ հաստատեցան »։ Ակիւղաս ասէ. Երկինք իբրև զծուխ պատեցան. Թէոդոտիոն ասէ. Իբրև զաղ մածցին։ Զվանագոյն ականագոյնն երկնից՝ աղուճակի նմանեցուցանէ կերպարանաց։ Իսկ եթէ՝ որպէս Եւթանասունքն ասեն,

եթէ Իբրեւ զծուխ. եւ ոչ ոք կարէ զծուխ հաստատել, բայց միայն ամենազօր զօրութիւնն։ «Եւ երկիր իբրեւ զձորձս մաշեսցի»։ Իբրեւ 'ի միմեանց իմն հակառակ զանաւագն հարուստ արար, զհարուստն անաւագ. զի ցուցցէ եթէ ամենայն ինչ դիւրին է նմա։

«Եւ բնակիչքն սորայ իբրեւ զնոյնս կորիցեն»։ Այսինքն՝ որ յերկրիս իցեն։ Եւ նմա այսպէս թուի, թէ յերկրինս եւս ձգիցէ զբանն. քանզի ոչ ասաց թէ իբրեւ զսա, այլ թէ «Իբրեւ զնոյնս կորիցեն»։ Թէ եւ զնա եւս կարող է լուծանել, քանզի ոչ այլ ինչ է, այլ ծուխ։ Եւ եթէ կամի՝ իբրեւ զծուխ՝ այնպէս անցուցանէ. քանզի ոչ եթէ բնութեամբ ինչ ունի զհաստատութիւնն, այլ կամօք արարչին։ Եւ քանզի ազնիւ եւ գեղեցիկ էր, վասն այնորիկ անաւագ արար զնա, զի իւրով զօրութեամբն զպուշացեալ պահիցէ։ Զի եթէ զերկինս, ասէ, կորուսանել կարող եմ՝ եթէ կամիմ, ո՞րչափ եւս առաւել զմարդիկ՝ զձեր թշնամիս։ Վասն որոյ եւ յարէ զբանն վասն նախատանաց մարդկան չարաց, եւ ասէ. «Լուարուք ինձ, որ գիտէք զդատաստան»։ Իսկ այլքն ասեն՝ Զարդարութիւն, այսինքն զիրաւունս։

«Ժողովուրդ իմ, օրէնք իմ 'ի սիրտս ձեր. մի երկընչիք 'ի նախատանաց մարդկան, եւ բամբասանք նոցա զձեզ մի պարտեսցեն»։ Իսկ այլքն ասեն, եթէ Ի հայհոյութեանց նոցա մի ինչ զարհուրեսջիք։ Որպէս եւ Քրիստոս իսկ ասէր, եթէ Երանի իցէ ձեզ՝ յորժամ նախատեսցեն զձեզ, եւ ասասցեն զձէնջ զամենայն բան սուտ. ուրախ լերուք եւ ցնծացէք։

«Զի իբրեւ զձորձս ինչ՝ որ ուտիցին 'ի բազում ժամանակաց»։ Ակիւղաս ասէ. Իբրեւ զձորձս ինչ՝ զոր ուտիցէ ուտիճ. Սիմաքոս՝ Մեց, ասէ. Թէոդիտոն՝ Ցեց։ «Եւ իբրեւ զասր ցեցակեր»։ Եւ արդ, ո՞չ զոք կսկծեցուցանեն նախատանք եւ բամբասանք. եւ զիա՞րդ ասէր Եզեկիա. Թերեւս լուիցէ Տէր զպատգամս Ռափսակայ՝ որով նախատեաց զԱստուած կենդանի. եւ Դաւիթ ասէր, եթէ Փրկեա զիս 'ի նախատչաց եւ 'ի չարախօսութենէ։ Այլ Աստուծոյ նախատանացն վաղվաղակի դարձան փոխարէնք, իսկ մարգարէս զմարդկան նախատանաց ասէ։ Նա եւ Սեմեայ խնդրեաց վրէժ թըշ-

նամեոյն՝ Դաւիթ, ոչ անձամբ, այլ որդւոյն պատուիրեաց, զի դիցէ սանձս 'ի վերայ այլոց՝ որ այնպիսիք ոք գտանիցին, և որդւոյն նորա վնաս ինչ ոչ արար։ Վասն այսորիկ և մարգարէս առ կատարեալս խօսի, թէ «Լուարուք ինձ, որ գիտէք զիրաւունս. ժողովուրդ իմ, օրէնք իմ 'ի սիրտս ձեր»։ Եւ դարձեալ, եթէ «Իբրև զասր ցեցակեր»։ Կամ զնախատանսն ասէ, կամ զնախատիչսն։

Վասն որոյ յարէ 'ի նոյն, եթէ «Արդարութիւն իմ յաւիտեան կացցէ, և փրկութիւն ազգաց մինչև յազգ»։ Զոր և Քրիստոս ասէր, եթէ Վասն իմ ուրախ լերուք և ցնծացէք, զի վարձք ձեր բազում են յերկինս։ Զի թէ երկինք անցանիցեն, այսինքն կերպարանք երկնից՝ որ այժմս պիտոյ են, և մարդկան բնութիւն նմին նման են, 'ի կերպարանաց 'ի կերպարանս փոխիցի, և զինչ ինչ հաստատուն կայցէ մնասցէ։ «Փրկութիւն իմ՝ ազգաց մինչև յազգս»։ Զինչ խօսիս. և յորժամ պատժիցես և սպանանիցես, և յայնժամ՝ փրկութիւն իցէ. զի թէպէտ և փրկութիւն չիցէ, սակայն առ կորուսելոյն արդարութիւն, և առ ապրելոյն փրկութիւն. քանզի չիք ժամանակ որ հատանել կարիցէ կամ խափանել զփրկութիւնն և զարդարութիւնն։ Որպէս չէն հնար՝ թէ չիցէ Աստուած, այլ զի միշտ իցէ և յաւէժ կենդանական, նոյնպէս փրկութիւնն և արդարութիւնն յամենայն ժամ և հանապազօր։ Եւ եթէ ասիցեն, եթէ զիա՞րդ չիցեն այնմ մարդիկ խելամուտ, կարդեսցուք ինչ և 'ի գրոց. Ողորմեաց ինձ, ասէ, Աստուած, ըստ մեծի ողորմութեան քում։ Մեծ ասաց զողորմութիւնն, բայց թէ որչափ ինչ իցէ՝ ոչ գիտէ։ Եւ ըստ բազում գթութեան քում։ Բազում գթութիւնս ասաց, բայց թէ որչափ ինչ իցեն գթութիւնքն՝ չէ խելամուտ։ Եւ Պաւղոս՝ Առաւելութիւն մեծութեան քաղցրութեան նորա, ասէ. բայց թէ որչափ ինչ իցէ՝ չէ հմուտ։ Եւ վասն այնորիկ իսկ մեծութիւն անուանէ, և մեծութիւն առաւել, զի դու մի՛ երբէք իշխեսցես հարցափորձ առնել։ Զի որչափ և քննիցես, անցանէ ըստ քեզ առաւելութեամբ, և եթէ 'ի քեզ ամփոփել կարիցես, ապա առաւելութիւնն չէ առաւելութիւն։ Եւ դարձեալ ա-

տէ, եթէ Շնորհքն Աստուծոյ 'ի վերայ անպատումն պարգեւացն. քանզի չկարէ ոք պատմել:

Այլ տեսցուք, միթէ պատմել չիցէ հնար, և իմանալ իցէ՞ ինչ հնար. քանզի և ոչ զամենայն ինչ զոր չկարիցեմք պատմել, զնոյն և իմանալ չկարիցեմք: Նա աւանիկ ըստ միտս, ասէ, անցանէ խաղաղութիւնն. Խաղաղութիւնն, ասէ, Աստուծոյ՝ որ 'ի վեր է քան զամենայն զմիտս: Այլ զխաղաղութենէ ասաց, ասեն. և մեք զմարդասիրութենէն և զմեծամեծ պարգեւացն հարցանեմք: Եւ զինչ մեծ 'ի մարդասիրութեանն քան զխաղաղութիւն կայցէ. զի մեծ և գլխաւոր 'ի մարդասիրութիւնն՝ խաղաղութիւնն է: Բայց սակայն և անուանցն ևս միտ դիցուք, թէ ծով մարդասիրութիւնն Աստուծոյ առաւելագոյն գտանիցի. Զոր ակն ոչ ետես, ասէ, և ունկն ոչ լուաւ, և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ՝ զայն պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց: Ապա եթէ չափ ինչ ուրեք եդեալ տեսանիցես, մի՛ ըստ այնու և եթ փակեալ համարիցիս զԱստուծոյ մարդասիրութիւնն: Այսպիսի ինչ է զոր ասեմ. Որպէս գթայ հայր, ասէ, յորդիս, այնպէս գթայ Տէր յերկիւղածս իւր. իսկ յԱւետարանին հակառակ իմն սմին ցուցանէ, եթէ Դուք, ասէ, չարք, գիտէք պարգեւս տալ որդւոց ձերոց. և աստ մարգարէս իսկ. Զի թէ մոռանայցէ, ասէ, կին զծնունդս իւր, սակայն ես զքեզ ոչ մոռացայց: Որպէս զի օրինակս ոչ յայն սակս եդեալ է՝ եթէ այնչափ միայն իցէ մարդասիրութիւնն, այլ զի մեք այլ ինչ չափ գթոյ 'ի վեր քան զայս ոչ գիտեմք, և 'ի մեր միտս վերջին սահմանն ասէ: Եւ զի այսպէս է, լո՛ւր իսկ որ ասէն. Զի եթէ և մոռասցի զայս կին, սակայն ես ոչ մոռացայց զքեզ, սա է Տէր: Սոյնպէս և յորժամ լսիցես, եթէ Որպէս 'ի բացէ են արեւելք յարեւմտից, այնպէս հեռի արար 'ի մէնջ զմեղս մեր. մի՛ այնչափ և եթ կարծիցես, այլ և՛ս առաւել յոյժ. զի քան զայն այլ ինչ չափ մեծ ոչ գիտես, վասն այնորիկ 'ի ծանօթոյն ած քեզ օրինակ: Այլ զի և աւելի հեռացոյց, յայտ է յասելոյն, եթէ Սպանի զմեղս և ջնջեցի. զի այս յոյժ աւելի է քան զհեռացուցանելն. քանզի և հեռացելոյն մարթ է և մօտել, իսկ ջնջեալն ոչ ևս այլ

գրի։ Եւ այլուր ասէ, եթէ Հայր գթութեանց և Աստուած ամենայն մխիթարութեանց. և աստի զի՞նչ կամի ցուցանել։ Ինձ այսպէս թուի, եթէ որպէս ինքն անհաս է, նոյնպէս և ողորմութիւնն նորա. զի որպէս զօրութիւնն անհասական է, նոյնպէս և ամենայն ինչ զօրութեանն. ըստ այնմ, եթէ Զամենայն ինչ զոր կամեցաւ՝ արար. և դարձեալ, եթէ Չիք բան ինչ անկար 'ի նմա. զի անչափ զօրութեանն՝ և իմաստութիւնն անբաւ է. զի թէ իմաստութեանն նորա չիք չափ, իսկ մարդասիրութիւնն նորա ընդ չափո՞վ անկանիցի. և ոչ ուրեք. որում փափագիցեմքն, որով ամենայն ինչ հաստատեցաւ եկաց։ Եւ վասն որոյն եւս ձայնէ, եթէ Այնպէս սիրեաց Աստուած զաշխարհ, մինչև զՈրդին իւր միածին ետ։ Եւ զդատաստանացն, եթէ Դատաստանք նորա իբրև զխորս բազում։ Եւ զողորմութենէն, եթէ Առնէ զողորմութիւն 'ի հազար դար։

Զայս ասելով ոչ եթէ 'ի ծուլութիւնս ինչ յօժարեցուցանեմք զձեզ, այլ զվհատեալսն զարթուցանիցեմք քաղցրական յուսովք և Աստուծոյ մարդասիրութեամբն։ Զի որպէս ողորմութիւնն նորա բազում է, նոյնպէս և յանդիմանութիւնն նորա։ Եւ դարձեալ ասէ. Ուրախութիւն յերկինս լիցի և յերկրի. թէպէտ և զի՞նչ իսկ իցէ մարդ. զի թէ Ամենայն հեթանոսք իբրև զկաթիլ մի 'ի դուլէ իցեն, և իբրև շիթ մի 'ի բերանոյ, և իբրև զմէտ մի 'ի կշռոց, և իբրև յոչինչ համարեցաւ. զի թէ ամենայն մարդիկ այնպէս իցեն, իսկ մի ոք ի՞մ իմիք արժանի իցէ առաջի նորա, մանաւանդ թէ և մեղաւոր իսկ իցէ. բայց սակայն այնչափ փոյթ յանձին ունի հնարել, զի զերկոսին զգլխաւոր արարածսն ածէ յուրախութիւն վասն միոյ մեղաւորի. զի՞նչ այլ ինչ զուգական կայցէ այնպիսի խնամոց։ Եւ ընդ այս մի ինչ հայեցիս, եթէ վասն փրկութեան աշխարհի առաքեաց Աստուած զՈրդին իւր. զի թէպէտ և մի ոք փրկելոց էր, սակայն և ոչ այնպէս Աստուած հրաժարէր առաքել զՈրդին իւր։ Եւ ուստի՞, ասեն, կարես ցուցանել զայդ. զի Պաւղոս ասէ. Վասն մեր ամենեցուն մատնեաց զնա։ Նա և այլ իմն նշանակ է արդարութեանն. ոչ եթէ վասն մեծաւորաց նմա-

նեաց ասէ, և վասն աղքատաց ոչ. և կամ վասն իմաստնոց, և վասն անմտաց ոչ. և կամ վասն աղքատաց, և վասն ծառայից ոչ. այլ վասն ամենեցուն, զի զամենեսեան առհասարակ պատուեսցէ։ Իսկ նա և այլազգ իմն ասէ, եթէ վասն իմ մատնեաց զանձն. Որ այժմն, ասէ, կեամ մարմնով՝ ոչ ինձ կեամ, այլ այնմ՝ որ սիրեացն զիս, և մատնեաց զանձն իւր վասն իմ։ Զի՞նչ խօսիս, Պաւղէ. արգելո՞ւլ կամիս զԱստուծոյ պարգևսն. ո՞չ դու յառաջ քան սակաւ մի ասէիր, թէ Վասն մեր ամենեցուն մատնեաց զնա. և այժմ ասես, եթէ վասն իմ միայն մատնեաց։ Այո՛, ասէ. զի յայտ արարից եթէ վասն միոյ ուրուք ինչ էր մատնելն, սակայն և այնպէս ոչ հրաժարէր։ Կամիս զի և յառակէն հաստատեցից զսոյն. ո՞չ մի միայն ոչխար էր կորուսեալն, և իննսուն և ինն ապրեալք. միթէ դանդաղեցաւ ինչ թողուլ զապրեալսն և ընթանալ՚ի լերինս և՚ի դաշտս և՚ի ծործորս. միթէ հեղգացաւ ինչ և եգիտ. ո՞չ կարացին մնացեալքն մխիթարել վասն միասու կորուսելոյն։ Եւ այսպիսի իրք անդ լինին, ուր կարի ջերմ սէր իցէ. քանզի և զոսկեսէրսն՝ որ բազում դահեկանս ունիցի, մի դահեկան կորնչիցի՝ կարէ տրտմեցուցանել, վասն առհասարակն զամենայն սիրելոյ։ Եւ յորժամ եգիտն, տես զսէրն, զիա՞րդ խնամով և գթով բարձեալ բերէ ՚ի վերայ ուսոց. զի ոչ գան եհար, և ոչ սաստ ինչ պահանջեաց։ Եւ այսպիսի գործ կարի իմն սիրելեաց և անձկալեաց է. թէպէտ և թողուցուն և հեռանայցեն և միասակարք ինչ գտանիցին, չցամնուլ ընդ միասն, այլ զդարձն նեթ խնդրել և զհաշտութիւնն։ Եւ զինչ ինչ միաս արարաք ոչ՝ առ Աստուած, կամ որո՞վ իւիք բարկացուցաք։ Եւ արդ, յետ այնր ամենայնի՝ վրէժս պահանջիցէ. այլ աղաղակէր ևս, եթէ Ոչ եկի զի դատեցայց զաշխարհ, այլ զի կեցուցից. զի՞ փախչիք, զի՞ խորշիք։ Եւ դարձեալ, եթէ Վասն Քրիստոսի պատգամաւորեալ աղաչեմք, մտէք հաշտեցարուք ընդ Աստուծոյ։ Յետ թըշնամանացն, յետ խայտառականացն. այժ, ասէ, հաշտի։ Եւ մեք փութասցուք զի և ընդ մեզ հաշտեսցի։

« Զարթիր, զարթիր Երուսաղէմ, և զգեցիր զզօրութիւն բազկի քո »։ Իւթանասունքն այնպէս յայտ

առնեն, եթէ առ քաղաքն ինչ հրաման լիցի։ Եւ յոր֊ժամ թագաւոր ոք հրաման տայցէ, հարկ է զի կա֊տարեսցի հրամանն, մինչափ եւ առաւել յորժամ Ա֊տուած հրաման ինչ ումեք տայցէ։ Իսկ այլ թարգ֊մանք և եբրայեցին այնպէս իմն յայտ առնեն՝ եթէ ընդ Աստուծոյ խօսի մարգարէն. քանզի եբրայեցին այսպէս ասէ. Ուրի ուրի, լափշիոզ զըրով [1]։ Եւ անդէն մօտ առընթերակաց զչորեքգրեանն դնէ, զոր յայ֊լում վայրի գտաք Ադոնայի իսկ գրեալ. զոր ոմանք

1 Եբրայական բնագիրն ունի այսպէս.

עורי עורי לבשי-עז זרוע יהוה׃

որ է. Ուրի, ուրի, լըպշի—օզ զըրօա Իէօվա. այսինքն է. Զարթիր, զար֊թիր, զգեցիր զօրութիւն բազուկ Եհովայ։ — Գէորգ Սկեւռացի 'ի մեկնութեան Եսայեայ՝ առեալ յՈսկեբերանէ՝ ասէ. «Իսկ այլ թարգմանքն և եբրայեցին յայտ առնեն թէ ընդ Աստուծոյ խօսի մարգարէն. զի մօտ առ պոլինըն եդեալ է Ադոնիա, որ ասի չորեք֊գրեան անուն Աստուծոյ»։ Արդարեւ Ադոնիա եւ չորեքգրեան ա֊նուն է Աստուծոյ (אדני), այլ յատկապէս չորեքգրեան անուանի անունն Եհովա (יהוה), որ է իսկական անուն Աստուծոյ, որպէս առ մեզ Որ-Էն՝ նշանակիչ էութեան։ — Իսկ զոր ասէ աստ, եթէ գտաք այլուր փոխանակ չորեքգրենին՝ Ադոնայի եդեալ՝ տես յէջ 341 'ի ծանօթութեան։ — Զոր ստորեւ Ահիահ գրէ՝ է նոյն ինքն անունն Եհովա. զհնչմանէ բազում կարի անմիաբանութիւն է առ գիտունս. զոր օրինակ Հիեւը, Հիեւա, Հիւէ, Հիաւէ, Հիաւոյ, Հիաւեը, Հիաաւ, Հիեւէ, Հիեհեւէ, Հիաւէ, Հիեհեւէ, Հիեաւ, Հիաօ, Ահիահ։ Ահա֊ւասիկ այսքան տարաձայն ընթերցուածս միոյ եւեթ բառիս, զորոյ և ինքեանք Եբրայեցիք անգիտանան զբուն ուղիղ հնչումն։ Հաւանա֊կան երեւի զի առ Մովսիսիւ և զկնի նորա հնչէր նուիրականս այս բառ յԵբրայեցւոց. այլ խորին յարգութիւնն, զոր Հրէայքն աւան֊դապահք հնոյ օրինաց տպաւորել 'ի սիրտ ժողովրդեանն առ այս անուն անձառելի, եւ առ սակաւ սակաւ իսպառ 'ի մոռացօնս ար֊կանել զհնչումն նորին՝ երկիւղիւ անսուրբ առնելոյ զնոյն։ Եւ յըն֊թերցուածս փոխանակ ընթեռնուլն զնոյնպէս չորեքգրեանն՝ אדני Ադոնայի։ Իսկ զԵհովայն Քահանայապետին եւեթ պարտ էր հնչել՝ մի անգամ 'ի տարւոջն, 'ի մտանել անդ իւրում յաւուր քաւու֊թեան 'ի Սուրբն Սրբոց, և յօրհնել զժողովուրդն 'ի ձայն հնչմանց և ծնծղայից։ Վասն որոյ և ինքնին հնչումն բառիս խորհուրդ իմն էր ծածկեալ առ նոսա, և սակաւուց եւեթ ծանօթ յընտանեաց քա֊հանայապետին. որով և զկնի աւերման երկրորդ տաճարին իսպառ խափանեցաւ։ Ընդ ձիգ ժամանակս 'ի մէջ եդեալ էր Հրէից եթէ ուղիղ հնչումն չորեքգրենին՝ որում գիտեցեն՝ ընծայելոց էր զօրու֊թիւն անսահման 'ի վերայ ամենայն հիւթեղինաց և հոգեղինաց, և ասէին գործել զսքանչելիս իւր Յիսուսի՝ 'ի ձեռն մոգական զօրու֊թեանն՝ զոր ունէր գողունի գիտութեամբ հնչման անձառելի բա֊ռիս 'ի Սրբութեան Սրբոց։ — Անուանս այս առ Եբրայեցիս երից եւ

Ահիահ տանն. զի չորեքգրեանն և Ադօնայի և Ահիահ՝ զԱստուծոյ անունն նշանակեն եբրայեցերէն։ Իսկ Ակիւղաս ասէ. Զարթիր զարթիր, և զգեցիր զզօրութիւն բազկաւդ. և աստ առընթեր կայ չորեքգրեանն, որ նշանակէ զՏէրն անուն. բայց Իւթանասունքն և յաջորդօքն եւս յայտ առնեն եթէ զԵրուսաղէմ է ասացեալ զզարթիր զարթիրն, յասելովն անտի՝ եթէ «Ո՞չ դու այն ես՝ որ աւերեցեր զծովն»։ Ակիւղաս ասէ. Միթէ դու ինքնին իցես՝ որ աւերեցեր զծովն։ Այլ և չէ ինչ անհնար՝ թէ և առ Երուսաղէմ ասացեալ իցէ. զի ամենայն նշանքն որ գործէին՝ վասն ժողովրդեանն գործէին, քանզի զնոյն իսկ կոչէ Երուսաղէմ. յԱստուծոյ, ասէ, գործէին, այլ վասն նորա գործէին. ապա թէ յԱստուած եւս հանիցէ ըզբանն, զի ցուցցէ եթէ 'ի նմանէ վասն ժողովրդեանն լինէին սքանչելիքն, այսինքն վասն Երուսաղեմի։ Եւ արդ թողցուք 'ի բաց զկարծեալ երկբայութիւնն՝ որ չէ իսկ երկբայութիւն, և ուշ առեալ կարգին՝ ըստ Իւթանասնիցն թարգմանութեանն մեկնեսցուք։

«Եւ զգեցջիր զզօրութիւն բազկի քո»։ Մեղաց իմն թօթափումն նշանակէ. զի զոր օրինակ 'ի փարատել ցաւոց՝ զօրութիւն առնու հիւանդն և կազդուրէ, նոյնպէս և յընկենուլ մեղացն՝ առողջանան հոգիքն. զի մեղացն ախտ լուծանէ զհոգւոյն զօրութիւն, բազում անգամ 'ի մարմինն իսկ տայ. և վկայեսցէ այսմ անդամալոյծն և կինն կարկամեալ, և որ 'ի Կորընթոս վասն մեղացն հիւանդացեալքն էին։ Եւ չիք ասել, եթէ վասն մեղաց կերպարանք, եթէ ոգւոցն ոչ մնասիցեն [1]. և զոր օրինակ 'ի մարմնոյ հիւանդութենէ նուաղէ ոգւոցն արթնութիւն, նոյնպէս և հոգւոցն հիւանդութեան լինի հաղորդակից մարմինն։ Եւ այս

ժամանակաց կրէ յինքեան զգաղափար, անցելոյն, ներկայի և ապառնւոյ։ Անցելոյն՝ վերջին վանկիւն ה. ներկայի՝ միջին ձայնաւոր տառիւն ו. ապառնւոյ՝ սկզբնագիր տառիւն י. որով գրոշմն է արդարև յաւիտենականութեան. քանզի նշանակէ՝ Որ էրն, որ էն, որ եղիցին։ Վասն որոյ և Առաքեալն Յովհաննէս թարգմանէ զայն 'ի Յայտնութեան իւրում. Որ էն, և որ է, և որ գալոցն է. (Յայտն. Ա. 8)։ Տես զայսմանէ և 'ի Մինէլ 'ի Բառագիրս Ս. Գրոց, 'ի բառսն Deus և Dominus.

1 Այսպէս յօրինակին։

Աստուծոյ մարդասիրութեանն գործ է. քանզի ոգին դժուարի առ ախտան՝ առ մեղացն հարուածս, այնպէս կարգեաց՝ զի և մարմինն զգայցէ. զի 'ի մարմնոյն ցաւոց զարթնուցուսցէ յուղղութիւն չարեացն՝ որ զմեղ կապեալ ունիցին: Եւ եթէ կամիս՝ քննեսցուք նախ վասն ցասմանն իսկ. ոչ տեսանես, զիարդ ապականէ ցասումն զմարմինս. վասն որոյ ասէ իսկ Իմաստունն, եթէ Այր ցասկոտ՝ տգեղ 'ի կերպարանս իւր: Եւ զի զօգիսն կորուսանէ, յայնմանէ յայտ է՝ զոր ասէն, թէ Բարկութիւն կորուսանէ և զիմաստունս: Եւ յայտ է եթէ յորժամ մարմինն ծանրանայ՝ իւրովք ախտիւքն յօգիսն աղդէ, նոյնպէս և յորժամ ոգիքն ծանրանայցեն՝ 'ի մարմինն տան զդոյժն. նա և առաքինութիւնն ոչ զօգիսն միայն, այլ զմարմինսն առողջացուցանէ, իբր 'ի դառնաշունչ ձմերայնւոյ զերծուցեալ պահէ 'ի խաղաղութեան:

« Զարթիր զարթիր, Երուսաղէմ »: Անհնարին կործանումն կործանեալ էր. ոչ զի յատակն միայն հասեալ էր, և ոչ զի շինուածքն միայն հիմն 'ի վեր էին, և 'ի հող և 'ի մոխիր շրջեալ նստէր, այլ զի յամենայն կողմանց հրդեհիւք մեղացն էր բորբոքեալ: Ողորմելի են բանքն, զի յանհնարին կար կործանեալ էր մեղօքն և անօրէնութեամբ. այլ գերութիւնն և օգուտ եւս եղև նմա: Եւ եթէ ուստի էին եղեալքն, և ուստի անկաւ 'ի չարչարանս, և զիարդ կարիցէ ապրել յանհնարին կապանացն, ուսուցանէ՝ թէ որպէս անկանելն 'ի նմանէ եղև, նոյնպէս և յառնելն 'ի նմանէ է, և հաստատել յառաջին զօրութիւնն. և ինքն յորդորէ ևեթ: Եւ զի 'ի նմանէ եղև անկանելն, և 'ի նորին ձեռս է և յառնելն՝ յայտնի յաջորդացն է:

« Զարթիր, ասէ, իբրև 'ի սկզբանէ աւուրցն, իբրև յազգացն յաւիտենից »: Հաւատացուցանել կամի նմա զփոփոխումն: « Ո՞չ դու այն ես՝ որ աւերեցեր զծովն և զբազմութիւն ջուրցն անդնդոց. արարեր զխորս ծովու ճանապարհ փրկելոցն և ապրելոց »: Զեգիպտացւոցն և զծովուն ճառս 'ի մէջ բերէ: Միթէ իւրով ինչ զօրութեամբ գործէր զայնպիսի գործ. ոչ եթէ նա յանձնէ ինչ կարէր առնել, այլ քո ձեռնդ առնէր և

կատարէր զամենայն ինչ։ Այլ զի ուսանիցիս եթէ վասն նորա էր ամենայն, զի մի կարծիցես եթէ վայրապար ինչ առնիցէն, եթէ ոչ նախ 'ի նոցանէ առնուցու պատճառս։ Եւ զի՞նչ, ասէ, մեծ ինչ ցուցանեմ կամ զարմանալի. գոչեաց, հեծեաց առ միշտսն. տեսանելով տեսի զնեղութիւնս ժողովրդեան իմոյ, և հեծութեանն նոցա լուայ։ Եւ զոր Մովսէսին արար՝ զնոյն 'ի ժողովուրդն հանէ։ Տեսանե՞ս, որչափ զօրաւոր է որ Աստուծոյ հնազանդի, և որչափ տկար որ Աստուծոյ անհնազանդի։ Ոչ 'ի քումմէ անձնէ եղև քեզ զօրութիւնն այն յայնժամ, և ոչ առ քո ինչ տկարութեան եղեն ինչ այժմ աղէտքդ քեզ. այլ այն վասն առաքինութեան և այդ վասն մեղացն։ Եւ տես, զի՞նչ ասէն, եթէ նոքա վասն հպարտութեան ընչեցանն, և յուսով ինչ՝ որ չէր նոցա օգուտ. զի թէ նոքա վասն հպարտութեան կորեան, և սոքա 'ի նմին յամբարտաւանութեան կացին, զիա՞րդ կարէին ապրել. քանզի ոչ եթէ վայրապար ինչ սպանն զնոսա Աստուած, այլ առակ և ծանակ արար։ Եւ քանզի տապաստ անկանել զտկարութիւն անկելոցն յայտ առնէ, որպէս նոքա զմանկտին 'ի ջուրսն հեղձուցանէին, նովին կերպարանօք և նոքին հեղձնուլին 'ի ջուրսն։

Յիշեա, ասէ, զառաջին ազնուականութիւնն. ուսի՛ր զի մեծ զօրութիւն ունիս՝ թէ կամիս։ « Ո՞չ դու այն ես՝ որ աւերեցեր զծովն »։ Մի՛ ասեր թէ քոց ինչ նմանակցաց ազգաց յաղթեցեր, այլ նոցին իսկ արարածոց յաղթեցեր. փոխելով զբնութիւնն՝ գրեթէ տիրեցեր իսկ արարածոց, մինչդեռ արարածոց Տէրն հաշտ էր ընդ քեզ. և ոչ ինչ նախանձեցաւ ընդ այն, այլ որպէս սերտ ոք բարեկամ հրամայէիր արարածոց բարեկամին։ « Արարեր ճանապարհ փրկելոց և ապրելոց »։ Թշնամեաց յաղթեցեր, և զնոր ճանապարհ գնացեր. վասն այնորիկ վարկանի նմա զքանչելեացն երախտիս, զի յիշատակօք հնոցն ուղղութեանց՝ զարթուցանիցէ ածել 'ի նախանձ՝ սիրել զԱստուած, զի 'ի Տէր դարձցին և այժմ, որպէս և յայնժամ։

« Զի նա է, ասէ, քո Աստուած. և եկեսցեն 'ի Սիովն ուրախութեամբ և ցնծութեամբ յաւիտենից. զի 'ի վերայ գլխոց նոցա օրհնութիւն և ցնծութիւն և

ուրախութիւն հասցէ նոցա. և մերկնեցան հողք և տրտմութիւնք և հեծութիւնք »: Իսկ և թագ ինչ կամ նշան յաղթութեան լինիցի ուրախութիւն 'ի վերայ գլխոց նոցա: « Հալածեցան ցաւք և տրտմութիւնք և հեծութիւնք »: Թէպէտ օրինակաւ փնոցանէն ասացաւ այս յայնժամ, այլ ճշմարտութեամբ 'ի հանդերձեալ աւուրն կատարեսցի: « Հալածեցան ցաւք և տրտմութիւնք և հեծութիւնք »: Եւ քանզի մեք մուծաք զցաւս և զտրտմութիւնս և զհեծութիւնս յանձախութեամբ մեղացն, յորժամ արմատն կորիցէ, ապա, յայնժամ և ծնունդքն շիջանիցին: Զի յորժամ վշտագին ինչ կեանք 'ի վերայ հասանիցեն, և սկսանիմք ցիս ասել, թէ ընդէ՞ր այսպէս դանդաղանաց կեանս եա մեզ Աստուած, յիշեսջիր զանեղծուածն՝ եթէ մեք մեզէն մերոց վշտացն եղեաք պատճառք. զի նա ոչ կամէր եթէ յայնպիսի թշուառութիւնս հասանիցէ բնութիւնս մեր. զի նա յորժամ արար՝ մեծամեծ բարութիւնս պատրաստեաց առաջի: Ապա եթէ չհաւատաս՝ լուր դրոյն որ ասէ. Աստուած զմարդն ուղիղ արար, և նոքա խնդրեցին խորհուրդս բազումս: Եւ լուր, որպիսի ոք ինչ էր Ադամ զառաջինն. ոչ 'ի տրտմութիւնս ինչ, ոչ 'ի հոգս. քանզի և չէին իսկ տրտմութիւնք մինչև ցայնժամ, այլ յետոյ 'ի պատժոց կարգի յաւելան. զի 'ի պատիժս որում ոչ ակն կայցէ, այնմ հասանէ համբերել. որպէս յորժամ ասիցէ, եթէ Ցաւովք և տրտմութեամբ կերիջիր զդա, յայտ է եթէ յառաջ քան զայն՝ յուրախութեան վայելէր: Եւ յորժամ ասիցէ՝ Ի քիրտն երեսաց քոց, յայտ է եթէ յառաջ քան զայն առանց քրտան և վաստակոց էր. և յորժամ ասիցէ, եթէ Ցորում աւուր ուտիցես՝ 'ի նմանէ մեռանիցես, յայտ է եթէ յառաջ քան զայն 'ի վերայ էր քան զմահ. վասն այնորիկ և Քրիստոս զի ցուցցէ եթէ յառաջին կարգսն հաստատէ զմեզ, յետ յարութեանն իբրև ետես զկանայսն՝ նախ զայն բարբառ արձակեաց, մանաւանդ առ նոսա՝ որ մարք իսկ էին տրտմութեանց, զհակառակսն տրտմութեանց, թէ Ուրախ լերուք. թէ 'ի սկզբանէ նախ 'ի ձէնջ իսկ եղև մուտ տրտմութեան, և այժմ ինև լինի ձեզ մուտ ուրախութեան: Զայն և Պաւղոս յանձախա-

գոյնս բարբառէր, եթէ Հանապազ ուրախ լերուք. լուծանն առաջինքն. զի թէ մահ չիցէ մահ, ապա և ոչ տրտմութիւնն տրտմութիւն. զի թէ մահուն խայթոցք փշրեցան, ապա բարձեալ են և մեղացն ծնունդք. զի 'ի մեղայն մտանելն, հարկ եղև և տրտմութեանցն մտանել, իսկ յայնժամ, ասէ, հալածեցին ցաւք և տրտմութիւնք և հեծութիւնք. զի հալածելն՝ զայժ հեռանալն յայտ առնէ։

«Ես եմ, ես եմ ինքնին որ մխիթարեմ զքեզ»։ Ես նոյն իսկ եմ. զի թէպէտ և իրացդ փոփոխումն եղև, այլ ոչ եթէ ես ինչ փոխեցայ. այլ նոյն որ էին՝ եմ։ Եւ բարիոք ասաց, եթէ «Ես եմ որ մխիթարեմ զքեզ»։ Զի չիք ինչ օգուտ 'ի բարութեանց՝ յորժամ նա չիցէ մօտ որ մխիթարիցէն։ Վասն այնորիկ և Պաւղոս ասէ, եթէ Որ մխիթարէն զմեզ յամենայն նեղութիւնս։ Ինքն է որ տայ զտրտմութիւնն, և կարճամտաց՝ զերկայնմտութիւն. զնա հանապազ աղաչեսցուք. մի խնդրեսցուք մեծանալ, այլ զի Աստուած հաշտեսցի ընդ մեզ. զի յորժամ նա հաշտ իցէ՝ և յաղթութեան մարթ է ուրախ լինել։ Զոր օրինակ յորժամ թշնամի իցէ, թէպէտ և մեծատունք և ընչաւէտք իցեմք, կարէ 'ի տրտմութեան մաշել. զի յորժամ տէրն թշնամի իցէ, թէպէտ և այլ ինչ շահ իցէ և բարեկամք մօտ, սակայն չէ ինչ օգուտ. որպէս և յորժամ հաշտ իցէ՝ չիք ինչ 'ի հակառակորդացն որ կարիցէ վնասակար լինել։

«Ծանիր դու՝ զինչ էիր, և կամ զիարդ երկեար դու 'ի մահկանացու մարդոյն կամ յորդոյ մարդոյ[1], որք իբրև զխոտ ցամաքեցան»։ Բարւոք յիշեցուցանէ նմա զիւր ազնուականութիւնն, որպէս դստեր միում թագաւորաց՝ որ յիւրոց գերդաստականացն երկնչիցի։ Զինչ էիրն՝ ասէ աստ։ Բազում ինչ միտս ցուցանէ զինչ էիրն. մի՞ այնու իսկ, զի քան զայլ մարդիկ աւելի ծանեար զԱստուած. միայն ապրեալ էիր 'ի մոլորութենէն, միայն զճշմարիտ զգաստութիւնն զգաստանայիր, միայն քեզ գաղտնիս և զաներևոյթս իմաստութեան իմոյ ցուցի. ըստ այնմ, եթէ Ոչ այսպէս արար

1 Յոր. Զկք որդոյ։

ամենայն ազգաց, և զդատաստան իւր ոչ յայտնեաց նոցա։ Զո՞ր ազգ այնպէս ընտրեաց Աստուած, կամ ո՞ ոք լուաւ զԱստուծոյ բարբառն՝ որպէս նոքա։ Զի՞նչ էիրն. զո՞ր կամիցիս ’ի միտ առնուլ. զմարմնակա՞ն զօրութիւնն, եթէ զոգւո՞յն իմաստութիւն, եթէ որ ’ի բացուստ երանութիւնքն էին, եթէ զառաքի՞ն վայելչութիւնն։ Զի՞նչ էիրն, կամ զիա՞րդ երկեար ’ի մահկանացու մարմնոյն. մինչ զանմարմնականացն զօրութեանց զկեանս ո՛չ ետու քեզ կեալ. թէպէտ և ընդ աղօտ և կերպարանօք, սակայն ետու կեալ զայնպիսի կեանս. զքառասուն ամ ոչ վարեցեր և ոչ հնձեցեր, և վայելէիր ’ի բարութիւնս. Զհաց, ասէ, երկնից ետու նոցա, և զհաց հրեշտակաց եկեր մարդ. Զի՛ք ինչ մարդկան առանց աշխատութեան։ Զի՞նչ էիրն, և երկեար. զի և քան զմահ ես ’ի վերոյ էիր. քանզի հանդերձեալքն յառաջագոյն նկարէին, և բազում անգամ զերծուցանէր զնոսա ’ի փշտաց. և այնու իսկ չէր մահկանացու, քանզի զԱստուած ունէր ընդ իւր զօրավար, և այնչափ կարող լինէր՝ որչափ ինքն կամէր.

« Որք, ասէ, իբրև զխոտ ցամաքեցան »։ Տեսե՞ր զանութեանն նուազութիւն. այլ եղև քեզ յարհաւիրս, ոչ իւրով ինչ զօրութեամբ, այլ վասն քո ծուլութեան։ Ո՞վ ոք ’ի խոտոյ երկնչիցի. որպէս զի և մեզ յիրաւի ոք ասիցէ, եթէ զի՞նչ եսդ, և զիա՞րդ երկընչիսդ ’ի սատանայէ. զօձն հրամայեաց քեզ կոխել, և դու ընդէ՞ր երկնչիցիս. ինքնին Քրիստոս ընդ քեզ է, և ’ի հակառակորդէն զանգիտե՞ս։

« Եւ մոռացար զԱստուած զարարիչն քո, որ արար զերկինս և հաստատեաց զերկիր »։ Զի մին արարչութեան և տեսչութեան է, և միւսն զօրութեան և իմամոյ. զի չէ ընդ մի համար զհայր մոռանալ և զԱստուած. զի նա առաջին պատճառք և ճշմարտութեան պատճառք։ Այլ ոչ տեսեր՝ որպէս արար զքեզ, և զերկինս ո՛չ տեսանիցես՝ որ հանապազ յիշեցուցանեն քեզ. զի յոր կողմ և երթիցես՝ իբրև զարձան մի հաստատուն կանգնեալ կայ. շուրջ զքև եկեալ հնչէ գոչէ զարարչէն. յո՛ր կողմն և հասանիցես՝ անդ գտանես զնա ’ի վարդապետութիւն։

« Եւ երկնչէիր զամենայն աւուրս՝ յերեսաց սրտմը-

տութեան նեղչի քո»։ Ակիւղաս՝ Լլկչի քո, ասէ։ «Զոր օրինակ խորհեցաւ եղծանել զքեզ»։ Իսկ այլքն՝ Ցորջորջել զքեզ, ասեն։ «Եւ արդ ո՛ւր իցէ սրտմտութիւն նեղչին քո, զի ՚ի փրկութեանն քում ոչ կայցէ և ոչ յերկարեսցի»։ Եւ արդ կամիցիս ուսանել՝ եթէ զինչ իցէ. «Ծանիջիր այժմ, զի ես եմ Տէր Աստուած քո՝ որ խռովեմ զծով, շարժեմ զալիս նորա. Տէր սաբաւովթ է անուն նմա»։ Ապա յայտ առնել ինն է քան զնոսա. «Եղից զբանս իմ ՚ի բերան քո»։ Քանզի համդերձ այլովք չարեօքն՝ և յայսմ ես մխիթարութենէ զրկեցան՝ պատմել ՚ի բերանս զպատգամսն Աստուծոյ. վասն այնորիկ ասէ. «Եղից զբանս իմ ՚ի բերան քո»։ Իսկ այլ ոմն ՚ի թարգմանացն ասէ, եթէ Արարից զքեզ միշտ խորհել յօրէնսն Աստուծոյ, զի այնպէս արկից ՚ի քեզ փոյթ և յօժարութիւն։

«Եւ ընդ հովանեաւ ձեռին իմոյ ծածկեցից զքեզ, որով կանգնեցի զերկինս և արկի հիմն երկրի»։ Սիմաքոս ասէ. Որով տնկեցի ընդ այնպիսի զօրութեամբք, պէսպէս զգուշութեամբ զգուշացայց քեզ։

«Զարթիր, զարթիր, Երուսաղէմ, որ արբեր ՚ի ձեռանէ Տեառն զբաժակ սրտմտութեան նորա, զբաժակն կործանման՝ զկարճն սրտմտութեան, զոր արբեր և թափեցեր»։ Քանզի վերագոյնն ասաց, եթէ Զինչ էիրն, և զիարդ երկեար ՚ի սրտմտութենէ թագաւորին, և թէ նա զքեզ չարչարեաց. զի մի՛ ՚ի մարդկանէ ինչ համարիցի զպատիժսն՝ ասէ. «Ի ձեռանէ Տեառն արբեր զբաժակն կարճ զսրտմտութեան»։ Միշտ զպատիժս ինչ՝ բաժակ սովոր են ասել գիրք. և կարճն ասելով, զի զվաղահաս պատիժսն Աստուծոյ յայտ առնիցէ. և զի ցուցցէ եթէ ՚ի սիրտն գործեցաւ, ասէ. «Զոր արբերն և թափեցեր»։ Եւ զարդար պատճառսն ասէ, և զի ցածնլոյ էր բարկութիւնն. լցեր, ասէ, զչափ պատժոցն, արբեր թափեցեր, ասէ, և ոչ ինչ կայ այլ ՚ի պատժոցն։

Եւ զի ցուցցէ եթէ ոչ ոք կարէ նմա զօրավիգն լինել, ասէ. «Եւ ոչ ոք էր՝ որ մխիթարէրն զքեզ յամենայն որդւոցն քոյ՝ զորս ծնար»։ Ցիշեցուցանէ զանչափ զպատիժսն, և ոչ միայն զի չարչարեցան, այլ զի այնչափ չարչարեցան, զի և մխիթարիչ ոչ զոք գտա-

նէր առ 'ի փչտացն։ Եւ ոչ եթէ զորդիսն ինչ բամբասիցէ առնելով եթէ չէր ոք որ մխիթարէր, այլ զայն կամի ցուցանել եթէ յերկնից էին հարուածքն. զի և ոչ որդիքն անգամ կամէին մխիթար լինել։ Զի՞ տապաւինիս յարտաքինսն, ուր և յընտանիսդ չիք յոյս. զի յորժամ Աստուած հարկանիցէ, ոչ'ի բազմութիւն զօրացն պարտ է յուսալ և ոչ յամրութիւն քաղաքաց։

« Երկու ինչ են որ հակառակ կան քեզ, և ոչ իցէ որ տրտմակից լինի քեզ. կործանումն և բեկումն, սով և սուր. և ծով իցէ որ մխիթարեսցէ զքեզ »։ Որդիքն քո, որ ինքեանք իսկ կարօտ են մխիթարութեան։ Եւ այլազգ ևս. զի սովոյ ծով իցէ որ ժուժկալ կարիցէ լինել. զի ուսանիցիս թէ և պատերազմն յերկնից է, վասն այնորիկ արձակեաց և զսովն։

« Որդիքն քո, որ վարանեալ նստէին 'ի գլուխ ամենայն ճանապարհաց, պատրաստք առ 'ի լինել փախըստականս. իբրև զճակնդեղ կիսեփեաց էին լի բարկութեամբ Տեառն »։ Այսինքն՝ զի կիսամեռք էին 'ի սաստիկ սովոյն։ Սիմաքոս՝ Իբրև զակն ուռկանի, ասէ. զի որպէս ակն ուռկանի զջուր ոչ արգելու, նոյնպէս և ոչ նոցա ինչ հայթայթանք՝ զԱստուծոյ բարկութիւնն։

Ասէ. « Լի էին բարկութեամբ Տեառն, լուծեալք 'ի ձեռանէ Տեառն Աստուծոյ։ Վասն այնորիկ լուր տառապեալ, որ արբեալդ ես, և ոչ 'ի գինւոյ. այսպէս ասէ Տէր Աստուած՝ որ դատի զժողովուրդ իւր. ահաւասիկ 'ի բաց արարի 'ի ձեռաց քոց զբաժակ կործանման՝ զկարճն բարկութեան իմոյ, և ոչ ևս յաւելցես ըմպել զնա. և տաց զնա 'ի ձեռս լլկչացն քոց, և որք տառապեցուցին զքեզ. որք ասէին ցանձն քո, խոնարհեաց, թող անցցուք. և եդիր հաւասար երկրի զմէջ քո »։ Ակիւղաս ասէ. Զթիկունս քո. Սիմաքոս՝ Զողն քո։ « Արտաքոյ անցաւորացն »։ Տես, յորժամ կամիցի զերծուցանել զնոսա 'ի չարեացն, զիա՞րդ և զմերձն յիշեցուցանէ և զպատժոցն սաստկութիւնն. և եթէ ոչ ոք կարաց փարատել զվիշտսն. զի մի՛ յետ երախտեաց մոռանայցեն զբարիսն և զմեղսն՝ վասն որոց լլկեցան. զի որպէս մեղացն յիշատակ, նոյնպէս և պատժոցն և երախտեացն՝ առնէ զմնորդիկ պխտանա-

ցուս։ Եւ բազում ինչ վասն այսպիսի իրաց հնարի Աստուած, զի խրատիցիմք լինել հեզք և պիտանիք. և զի ոչ միայն զերախտիսն, այլ և զպատիժսն յետ երախտեացն՝ առնէր նոցա յիշեցուցիչս, որ ինչ անցք ընդ Եգիպտոսն անցին և որ ինչ 'ի Ջրհեղեղին. զի զՋրհեղեղին նշանակ՝ աղեղամբն ցուցանէ, և զՍոդոմայեցւոցն՝ երկրովն այրեցելովն։ Այլ աղեղն ընդ ամենայն երկիրն երևի, և Սոդոմայեցւոցն ոչ ընդ ամենայն երկիր։ Եւ արդ տես, զի երկինք և երկիր իսկ ունին նշանակ զԱստուծոյ բարկութեանն. զի մին աչօք իսկ երևի, և միւսն յականջալուրս պատմի հեռաւորաց։ Իսկ պղնձի օձն՝ Հրէիցն էր նշանակ, և Թիթեղունքն՝ սեղանոյն. և բազում ինչ նշանակ ունիմք զգեհենին, զախտս, զցաւս, զպատիժս ինչ դժնդակս. զի յայսցանէ՝ և զհանդերձեալսն իմանայցեմք։ Ո՞ւր չիմացաւ զՍոդոմայեցւոցն զբարկութիւն. ո՞ր կողմն տիեզերաց՝ որոց չիցէ լուեալ։ Իսկ հրէականքն չիցե՞ն բաւական հաւանեցուցանել զհանդերձելոցն. քաղաքն կործանեալ, տաճարն աւերեալ, վիշտք, տրտմութիւնք, ցրումնք խաչահանուացն, զի անդեօղք և անքաղաք ընդ ամենայն աշխարհ շրջին. ընդ ամենայն տիեզերս դդուաղեալք Թափառականք։ Եւ ոչ 'ի մարդկան բռնութենէ վասնեցան՝ յայնմանէ յայտ է, զի երբեմն Մակեդոնացւոցն յաղթեցին, և Պարսից և Մարաց՝ Աստուծոյ օգնականութեամբ. այլ հիմն մեծազօր զօրութիւն խաչելոյն, որ այնպէս ցրուեաց արկ զնոսա վայրավատինս։ Յորժամ Փենեհէս սպան մի այր՝ այնչափ բարութիւնք պարգևեցան, և կամ յորժամ Մովսէս ինքնին իսկ՝ որչափ ևս աւելի երանութիւնքն. իսկ արդ՝ զի զհակառակն Աստուծոյ սպանին՝ ընդէ՞ր լքեցան, ընդէ՞ր ցիր և ցան ընդ ամենայն աշխարհս մաղեցան։ Ո՞ք թերահաւատ լինիցի 'ի գեհենին պատժոցն, 'ի հրէական չարչարանացն հաւանեսցի, և կամ յԱնանիայէ և 'ի Սափիրայ, որ իւրեանց ընչիցն զոր նախ Աստուծոյ նուիրեցին, և ապա իբրև զտաճարակապուտս գողութեամբն սատակեցան։

# ԳԼՈՒԽ ԺԲ

« Զարթիր զարթիր, Սիովն, և զգեցիր զզօրութիւն քո, և դու զգեցիր զփառս քո, Երուսաղէմ քաղաք սուրբ. զի ոչ ևս յաւելուցու անցանել ընդ քեզ անթլփատն և պիղծն։ Թօթափեա զփոշի քո, արի և նիստ, Երուսաղէմ, որպէս յայնժամ»։ Քանզի բազումք և յայնժամ ունէին ինչ այսպիսի աւետիս։ Եւ ընդէ՞ր ելեալք ընդ աշխարհն՝ անդէն 'ի թշնամեաց երկրին կամէին մնալ։ Վասն այնորիկ՝ զի մի՛ վհատեսցին ինչ, ասէ. « Թօթափեա զփոշիդ 'ի քէն, արի և նիստ, Երուսաղէմ»։ Արի՛ 'ի հողոցդ և 'ի տառապանաց, և նիստ յաթոռ փառաց։ « Լոյծ զկապդ 'ի պարանոցէդ քումմէ, գերիդ՝ դուստր Սիովնի »։ Իբրև զկին մի այրի՝ որ ընդ մոխիր թօթափեալ իցէ։

« Այսպէս ասէ Տէր. ձրի վաճառեցարուք, և ոչ արծաթով փրկեսջիք »։ Եւ զի՞նչ իցէ ձրին. զի ոչ 'ի զուր ինչ և ոչ վայրապար, այլ որպէս մերազգոյն ասացաք, թէ Ո՞ւր է գրաւական՝ որով վաճառեցի զձեզ. միթէ զի՞նչս ինչ առի և պարտապան եմ հատուցանել. զի մատնեցի առանց արծաթոյ, ո՛րչափ ևս այսրէն առնուցում զձեզ առանց արծաթոյ։

« Այսպէս ասէ Տէր. յԵգիպտոս էջ ժողովուրդն զառաջինն՝ լինել պանդուխտ 'ի նմա, և յԱսորեստանեայսն բռնութեամբ վարեցան. և արդ զի՞ էք աստ»։ Զառաջինսն յիշեցուցանէ նոցա, թէ ո՛րպէս ապրեցուցանէր զնոսա. և ստէպ երթալն 'ի գերութիւն՝ իբրև ամբաստանութիւն իմն 'ի մէջ բերէ զնոցանէն։ Եւ ընդէ՞ր արդեւք. զի ցուցցէ եթէ ինքեանք են պատճառք գերութեանն. զի ոչ առաջինն և ոչ երկրորդն կարաց զգաստացուցանել զնոսա. վասն այնորիկ ասէ, եթէ « Վարեցան ժողովուրդն ձրի. զարմացեալ էին և լային »։ Ոչ զի չէին կարող, այլ զի ձրին վաճառեցան. այսինքն զի այնպիսի Տէր անկարօտ ունէին, և 'ի

թամբասանս արկէին՝ եթէ չկարիցէ օգնական լինել. վասն որոյ յարէ իսկ 'ի նոյն, եթէ « Այսպէս ասէ Տէր. վասն ձեր անուն իմ հայհոյի յամենայն ժամանակի 'ի մէջ հեթանոսաց »: Զի և 'ի սպանդխտութեանն ինքեանք եղեն պատճառք՝ յեգիպտոս, և գերութեանն յԱսորեստան և 'ի Բաբելոնի, և վաղվաղակի առնուլ զնոսա թշնամեացն, և որ այնպէս իմն դիւրառուք եղեն: Զպատճառսն առ նոսա ձգէր. վասն ձեր, ասէ, հայհոյիմ՝ եթէ տկար և անզօրական ինչ իցէ, կամ անողորմ և անադորոյն: « Վասն ձեր անուն իմ հայհոյի 'ի մէջ հեթանոսաց »: Եւ յորժամ փրկեմ զձեզ, և յորժամ տանջիցեմ. և յորժամ փրկիցեմ՝ ասեն. Ո՞ր իցէ ժողովուրդս այս, վասն ո՞յր հանապազ մեռանիմք. և յորժամ տանջիցեմ զձեզ՝ ասեն. Զկարիցէ՞ արդեւք փրկել: « Վասն այնորիկ, յարէ 'ի նոյն, եթէ՝ ծանիցէ ժողովուրդ իմ զանուն իմ »: Վասն այնորիկ ասէ, թէ « Ես եմ ինքնին որ խօսէի, և արդ եկի հասի »: Վասն այնորիկ. վասն որո՞յ. « Զի անուն իմ հայհոյի 'ի մէջ հեթանոսաց ». զոր և Պաւղոս ասէ, յորժամ զհանապազորդ չարիսն նոցա յայտ առնել կամեցաւ, թէ և ոչ երբեք դադարեն:

« Ես եմ ինքն որ խօսէի. և արդ եկի հասի »: Քրիստոս որ խօսէր 'ի մարգարէսն [1], և ապա յայտնեցաւ իսկ մարմնով, և խօսեցաւ ընդ մեզ: Վասն որոյ և նմանագոյնս իսկ յարէ 'ի նոյն, թէ « Իբրև զի գեղեցիկ են ոտք՝ որ աւետարանեն զխաղաղութիւն, որ աւետարանեն զբարութիւնս »: Ակիւղաս ասէ. Զի՛ գեղեցկացան 'ի վերայ լերանց ոտք աւետարանչին՝ որ լսելին առնէ զխաղաղութիւն, և աւետարանէ զբարութիւնս: Սիմաքոս ասէ. Զի՛ վայելուչ են: Թէոդիտոնի. Ո՛րպէս զի վայելուչ: Եւ բարւոք իսկ զարմանայ ընդ ոտսն՝ որ կոխեցին զօձս և զկարիճս: գեղեցիկ են ոտքն՝ որ յաղթեցին գեղեցկութեամբ արեգական ճառագայթիցն, որ մեծամեծ բարութիւնս բերեն մեզ: Զի՞նչ զուգագոյն կայցէ խաղաղութեան, լինել մեզ ընդ Աստուծոյ, և իւրաքանչիւր՝ ընդ անձին և ընդ միմեանս: Տես, զխորդ երեքկին և բազմապա-

1 Օր. Ի մարգարէսն:

տիկ էր պատերազմն. ընդ Աստուծոյ կռուէաք և ընդ անձին և ընդ միմեանս. այլ քակեաց զայն Աստուածն՝ որ եկն 'ի բարձանց, և ասէր, եթէ խաղաղութիւն լիցի ձեզ։ Միթէ մեք ինչ խնդրեցաք զաւետիս խաղաղութեանն. այլ նա ինքն եկն և հաւանեցոյց զմեզ՝ հաշտել ընդ իւր, և բարութիւնս այնպիսի շնորհեաց՝ զոր ոչ ոք երբեք գիտէ կամ զմտաւ ածել կարէ։

« Զի լսելի արարի զփրկութիւն քո »։ Յայտնեցից, ասէ, առ ամենեցուն։ « Ասել ցՍիովն, եթէ թագաւորեսցէ 'ի քեզ Աստուած »։ Իսկ այլքն ասեն. Եթէ թագաւորեաց։ « Զի ձայն պահապանաց քոց բարձրացաւ »։ Իսկ այլքն՝ Դիտացն քոց, ասեն. այսինքն՝ փառաւորչացն Աստուծոյ։ « Եւ 'ի նոյն բարբառ առհասարակ ցնծասցեն. զի դէմ յանդիման տեսցեն՝ յորժամ ողորմեսցէ Տէր Սիովնի։ Գոչեսցեն զուրախութիւն աւերակքն Երուսաղեմի, զի ողորմեցաւ նմա Տէր և փրկեաց զԵրուսաղեմ։ Յայտնեսցէ Տէր զբազուկ իւր սուրբ առաջի ամենայն հեթանոսաց, և տեսցեն ամենայն ծագք երկրի զփրկութիւն Աստուծոյ մերոյ »։ Եւ այս ամենայն 'ի դարձին կատարեցաւ 'ի ժողովուրդն։

« Ի բաց կացէք, 'ի բաց կացէք, ելէք և մեկնեցարուք այտի, և 'ի պիղծս մի մերձենայք »։ Զոր և Պաւղոս առեալ իսկ աստի վկայութիւն՝ զմտաւորացս իմն ճառէ. զի զի՞նչ քան զԲաբելոն լաւագոյն էին կեանք մարդկան։ Եւ բարւոք իսկ խրատէ զնոսա. քանզի բազումք իսկ խլխլէին անդէն մնալ, սակայն և զպատճառսն նա դնէ, թէ « Ելէք, և մի մերձենայք 'ի պիղծսդ »։ Ակիւղաս և Սիմաքոս՝ Ի գարշելիսդ, ասեն։ Եւ տես զկամակորութիւնն, զի յորժամ յԵգիպտոսէն ելին՝ անդրէն դառնալ ցանկային, և յորժամ 'ի Բաբելոնէ կոչէին՝ դժկամակ լինէին և խլխլէին. և այնչափ դժկամակ լինէին, զի յետ այնչափ բարութեանց աւետեացն՝ ոչ կամէին ելանել։ Այլ իմն խելախառնէ. « Ելէք 'ի միջոյ նոցա, մեկնեցարուք՝ որ բարձեալ բերէք սպաս Տեառն »։ Զի թէ վասն այլ իրիք ոչ, գէթ զայդ ածջիք զմտաւ, թէ որ սուրբ սպասուդ եղեալք պաշտօնեայք, չէ օրէն ձեզ եթէ 'ի մէջ պղծոցդ բնակիցէք։

« Զի ոչ խռովութեամբ ելջիք, և ոչ փախստեամբ փախիջիք »։ Այն լիցի նշանակ՝ « Զի առաջի ձեր Տէր ինքնին գնասցէ, և որ ժողովէն զձեզ՝ Տէր Աստուած Իսրայելի »։ Զի մի՛ պատճառիցէք եթէ չարչարանս ինչ կրելոց իցէք, որպէս յորժամ յԵգիպտոսէն ելէք. ոչ այնպիսի ինչ, այլ բազում մեծարանօք, այլ մեղմով և հանդարտութեամբ. քանզի Տէր ինքնին է ընդ ձեզ։

« Ահաւադիկ 'ի միտ առցէ մանուկ իմ, և բարձրասցի և փառաւորեսցի յոյժ. զոր օրինակ զարմասցին բազումք 'ի վերայ քո, նոյնպէս անարգեսցի տեսիլ քո 'ի մարդկանէ »։ Սքանչելիս 'ի սքանչելիս յարէ, որպէս առ Աբրահամու։ Եւ մի՛ կարգ ինչ խնդրեսցուք. զի այնպէս իմն սովոր է մարգարէութիւնն, մինչդեռ զայլոց իրաց ճառէ, վաղվաղակի 'ի միւս ևս դէմս դառնալ. յետ ասելոյն զգերութենէ և զդարձէն, յայլ երեսս շրջեաց զբանն։

« Ահաւադիկ 'ի միտ առցէ մանուկ իմ »։ Զո՞ւմ կարծիցեն ասացեալ զայս Հրէայքն. զԶօրաբաբելն՞, թէ զԴանիէլ, եթէ զժողովրդեանէն. զի մեք զՔրիստոսէ միայն ասեմք ճառել։ Եւ մի՛ զկարգն ինչ 'ի մէջ բերիցեն. զի բազում տեղիս կարեմք ցուցանել հաստատոր զմարգարէիցն զկարգն, և այլս առընթեր այլոց մուծեալ ճառս։ Եւ արդ, ուշ ունիցիմք իւրաքանչիւր երեցունց երեսացն՝ զորոց նոքայն կարծեն, և զՔրիստոսի. և տեսցուք՝ առ ո՞վ պատշաճագոյնս կատարեսցին, և զայն ընդունիցիմք։ Եւ դատաւորք առ 'ի քննել՝ դուք ձեզէն լինիջիք իրացդ։ Զի՞նչ իցէ 'ի միտն առնուլ, այսինքն՝ ցանկանալն։ Եւ ինձ այսպէս թուի, եթէ զիմանալն զնա 'ի գրոց ակնարկէ. զոր և Ակիւղաս ասէ, թէ Ի միտ առցէ ծառայ իմ. զոր և եբրայեցին՝ Հէննէ եսքի աբդի [1], ասէ. նոյնպիսի ինչ՝ որպէս Ակիւղասն ասէ։ Բայց ես ասեմ, թէ իսկ և իսկ զխաչէն ճառէ, զի յայտ արասցէ եթէ ըստ ցանկութեան եղեն նմա իրքն. քանզի և ասէ իսկ, եթէ Ցանկանալով ցանկացայ ուտել զչարչարումնս զայս ընդ ձեզ։ Զի թէպէտ

1 Եբրայական բնագիրն գնէ חנח ישכיל עבדי որ է. Հէննէ եասքիլ աբդի. այսինքն՝ Ահաւասիկ 'ի միտ առցէ ծառայ իմ։

և ծանրագոյն էին լուծն, այլ սակայն նմա ցանկալի էին վասն ուղղութեանցն՝ զոր գործելոց էր։ Եւ զի յայտ արասցէ, եթէ ոչ ակամայ և ոչ 'ի հարկէ ինչ, այլ յօժ մտադիւրութեամբ և կամաւ եկն յայն, և ցանկութեան են նմա լուծն և յօժ ախորժականք, Մեծ, ասէ, քան զայս ոչ ոք կարէ առնել, զի զանձն իւր դիցէ 'ի վերայ բարեկամաց իւրոց։ Տեսանես, որչափ ինչ յայտ առնէ զցանկութիւնն՝ որով ցանկացեալն էր խաչին, զի և փառս ևս կոչէ զիրսն։

« Եւ բարձրասցի և փառաւորեսցի »։ Իսկ այլքն՝ Վերասցի, ասեն. զի ոչ ամենայն բարձրացելոց՝ փառաւորութիւն է, այսինքն խաչելոց, այլ հակառակ նորին՝ անարգութիւն է. և զիւրն այնու որոշէ յայլոցն, եթէ Յորժամ բարձրացուցանիցէք զՈրդի մարդոյ՝ յայնժամ ծանիջիք եթէ ես եմ. և դարձեալ, եթէ Յորժամ բարձրացայց՝ յայնժամ զամենեսեան առ իս ձգեցից. որոց այլոց պատճառք անիծիցն էր, նոյն զայլոց լուծանէր զանէծս։

« Եւ վերասցի յոյժ »։ Զմեծ բարձրութիւնն յայտ առնէ. քանզի և միւսն ասէ, թէ Փառաւորեսցի։ Եւ արդ՝ ո՞վ բարձրացաւ, ո՞վ փառաւորեցաւ՝ և յորժամ բարձրացաւ. յո՞յր վերայ ջանայցեն կատարել. 'ի Զօրաբաբելի՞, եթէ 'ի Դանիէլի, թէ 'ի ժողովրդեանն վերայ, թէ յԱստուծոյն՝ որ յամենայն տիեզերաց առնու զերկրպագութիւնն։

« Զոր օրինակ զարմասցին բազումք 'ի վերայ քո »։ Ակիւղաս՝ Հիացան, ասէ. Սիմաքոս՝ Աքանչացան։ « Նոյնպէս անարգեսցի տեսիլ քո 'ի մարդկանէ »։ Իսկ այլքն ասեն. Նոյնպէս եղծեալ է։ « Եւ փառք քո յորդւոց 'ի մարդկանէ »։ Զտեսիլն նորա Ակիւղաս՝ Կերպարանս, ասէ։ Ո՞վ ոք զարմացաւ 'ի վերայ ժողովրդեանն, կամ 'ի վերայ Զօրաբաբելի. իսկ 'ի Դանիէլի վերայ թէպէտ և բազումք զարմացան, այլ ոչ անարգեցաւ տեսիլ նորա, զոր մանաւանդ հանապազ իսկ առ լաւս ունէին. իսկ 'ի Քրիստոսի՝ երկոքին իսկ սքանչելիքն կատարեցան. զի և բազումք իսկ զարմացան, և բազումք արհամարհեցին։ Եւ բարւոք իսկ ասէ թէ տեսիլ քո. զի այնու իսկ քամահէին զնա, եթէ Ո՞չ սա է որդին հիւսան, և ո՞չ մայր դորա Մա-

րհամ կոչի։ Եւ զի սքանչացան սակայն՝ յայտ է յաւելոյն, եթէ Ո՞չ ոք երևեցաւ այսպիսի ոք յիսրայէլի. և զարմացեալ, թէ Արդարև Աստուծոյ որդի է։ Զի մի՛ զայս ամենայն յորժամ յետոյ մեք ասիցեմք՝ անհաւատ ինչ կարծիցին, յառաջագոյն մարգարէս ասաց զայն։ Անարգեսցի, ասէ. զի դիւահար և մոլի կոչէին, և եթէ Մոլորեցուցանէ զժողովուրդ. քանզի ոչ ահադին ինչ երբէք ցոյց։ Եւ բարւոք ասաց եթէ 'ի մարդկանէ անարգեսցի տեսիլ նորա. զի յԱստուծոյ ոչ եթէ անարգէր, այլ փառաւորէր. և վկայէ բարբառն, եթէ Դա է որդի իմ սիրելի, դմա լուիջիք։ Զի ոչ յԱստուծոյ որ զամենայն ճարտար գիտէ՝ անարգէր, և ոչ 'ի հոգեկիր մարդկանէ, այլ 'ի մարմնաւորացն՝ որ մարդ միայն էին և ոչ հոգևոր մարդ։ Այնպիսին՝ գայթակղէր յանշուք երեսացն. ըստ մարդկութեանն ասեմ, և ոչ ըստ աստուածութեանն. զի ոչ եթէ տգեղ քան զամենայն մարդկան էին կերպարանքն Քրիստոսի, այլ որչափ և գեղեցիկ էր կերպարանօք ըստ մարմնաւորութեանն, նոյնչափ չերևէր շուք ինչ ըստ աստուածութեանն։ Զի՞նչ աւելի անշքութիւն քան զայն կայցէ՝ յորժամ Աստուած մարդ երևեցի, և Տէրն 'ի ծառայի կերպարանս. և արդ երկոքեան այսպիսի իրք ոչ կատարեցան 'ի Դանիէլի, զի ամենեքեան զարմանային ընդ նա, և ոչ ամենեքեան արհամարհէին։ Եւ արդ, տե՛ս նախ զսքանչելիսն և ապա զանարգանսն։ Բարւոք ասէ՝ տեսիլ նորա, քանզի խաչին տեսիլ էր անարգ և անշուք. զի 'ի տեսանելն իսկ՝ յորժամ զլթուքն յերեսս առնոյր, և ապտակս և կապանս և զխաչն աննարգանաց և խայտառականաց, և տե՛ս և յայնժամ իսկ նախ զսքանչելիսն և ապա զանարգանսն. զի ինքեանք իսկ արարածք ծանեան զՏէրն խաչեալ՝ շարժեցան դղորդեցան։ Եւ արդ, միտ դիր զօրութեանն. զի թէ մինչ յանարգութեանն էր՝ այնպէս դղորդէ զարարածս, ո՞րչափ ևս առաւել 'ի փառաւորութեանն, յորժամ գայցէ փառօք Հօր և հրեշտակօք հանդերձ։

«Նոյնպէս զարմասցին ազգք բազումք 'ի վերայ նորա»։ Եւ թէպէտ և այլոցն զդոյն բան այլազգ ասացեալ են, այլ ըստ Իւթանասնիցն թարգմանութեան յաջորդքն յայտ առնեն, եթէ զարմասցին, և ոչ այլ

ինչ. քանզի յարէ իսկ 'ի նոյն, եթէ « կարկեսցեն թագաւորք զբերանս իւրեանց »։ Եւ ոչինչ երկմտութիւն կայ 'ի միջի. քանզի և Ակիւղաս թէպէտ և փոխեաց զկարկեսցեն, Ամփոփեսցեն, ասէ, թագաւորք զբերանս իւրեանց, այլ զնոյն միտս ասաց. և ոչ միայն յանարգութիւնն եկն և եկաց, այլ և յետ անարգութեանն ասէ. « Զարմասցին ընդ նա ազգք բազումք »։ Եւ արդ, մեկնութիւն ինչ պիտին այսմ։ « Եւ ժողովեսցեն, ասէ, թագաւորք զբերանս իւրեանց »։ Այսինքն՝ զարմասցին, սքանչասցին, հիասցին։ Եւ ո՞վ ոք յանհաւատից իցէ՝ որ ոչ զարմացի։ Եւ չէ ինչ խափան փառաւորութիւնն. վասն այնորիկ իսկ յետ չփառաւորութեանն և անարգութեանն են սքանչելիք, զի երևեսցի զօրութիւն խաչին։

« Որոց ոչ պատմեցաւ վասն նորա՝ տեսցեն, և որք ոչն լուան՝ 'ի միտ առցեն »։ Եւ արդ, ո՞ւր կատարեցաւ այս առ ժողովուրդն. իսկ 'ի Քրիստոս նմանագոյնս և յայնժամ և այժմ։ Ո՞ր մարգարէք պատմեցին այժմ վասն նորա. և ամենեքեան օր ըստ օրէ հաւատան։ Եւ զի ասէ. « Որոց ոչ պատմեցաւ վասն նորա՝ տեսցեն »։ Այսինքն է՝ զոր Պաւղոսն ասէ, եթէ Որոց գրեթէ առաջի աչաց գրեցաւ Յիսուս Քրիստոս 'ի խաչ ելեալ։ Բազում զօրութիւն է խաչելոյն, բազում անհաւատութիւն է Հրէիցն. զի թէ որոց բնաւ չիցէ լուեալ մարգարէից վասն Քրիստոսի՝ և 'ի միտ առնուցուն, իսկ նոքա զի՞նչ պատասխանի կարիցեն տալ, որոց առաջի այնչափ զօրութիւնք գործէին, որ և առանց մարգարէութեան իսկ կարէին յանկուցանել զտեսողսն. զի նոցա և 'ի մարգարէիցն էր լուեալ, և աչօք իսկ տեսին զնա և զնշանս, և ոչ հաւատային. և սոքա և ոչ նշանս ինչ տեսին, և ոչ 'ի մարգարէիցն բերանոց ինչ լուան, և հաւատացին։ Մեծ են զարմանք և սքանչելի գործ։ Եւ արդ, միթէ պատրանօք ինչ իցեն իրքն. նա՛, փորձ իրացն իսկ վկայէ, եթէ ոչ պատրանօք ինչ են իրքն՝ որ յառաջ քան զբազում ժամանակս ճառեալ էին։

« Եւ որք ոչ լուան, ասէ, 'ի միտ առցեն »։ Ի միտ առնուլ՝ հաւատալն է. և նոքա ընդէ՞ր չհաւատացին. քանզի 'ի հպարտութիւն կործանեցան. և ամենայն չարեաց իսկ պատճառք՝ հպարտութիւն է։

# ԳԼՈՒԽ ԾԳ

« Տէր, ո՞ հաւատաց 'ի լուր մեր, և բազուկ Տեառն ում յայտնեցաւ »։ Բազուկ Տեառն, այսինքն՝ նշան ինչ աստուածագործ զօրութեանն։ Ո՞վ ոք, ասէ, հաւատաց մեզ. և բարւոք իսկ ասէ. զի ոչ մարգարէիցն և ոչ աւետարանչացն հաւատացին Հրեայքն։ « Տէր, ո՞ հաւատաց 'ի լուր մեր »։ Զի ոչ զմեր ինչ 'ի մէնջ խօսեցաք, այլ զոր ինչ լուեցաք՝ պատմեցաք։ Եւ յիրաւի ասէ՝ թէ ո՞ հաւատաց. զի հաւատոց պիտոյ էին և ոչ քննութեանց։ Ո՞ ոք 'ի մէնջ համարս պահանջիցէ. չիք ինչ ասել, և ոչ պատմել մարթ է, զի սքանչելի են ճառեալքն և ըստ խորհուրդս անցանեն։ Եւ ոչ ասէ թէ հաւանեցաւ ոք, այլ եթէ ոչ հաւատաց։

« Եւ բազուկ Տեառն ում յայտնեցաւ »։ Մի կարծիցես եթէ լուր եւեթ են ճառեալքն, զի ստէպ զհետ գալոց է և արդեանցն վկայութիւն. սակայն և ոչ այնպէս տեսանէին և ոչ լսէին. և զի ոչ միայն նշանքն բաւական էին ածել 'ի հաւատս, վասն այնորիկ պիտոյ եղև անդ և յայտնութիւն. ապա եթէ ոչ՝ հասարակաց իսկ առաջի կայր եղելոյն հանդէս, և կէսքն տեսանէին և կէսքն ոչ տեսանէին։ Ձերոց, ասէ, երանի իցէ աչաց՝ զի տեսանեն. և դարձեալ ասէ, եթէ Ի դատաստան եկի յաշխարհս յայս, զի որք ոչն տեսանիցեն՝ տեսցեն, և որք տեսանենն՝ կուրասցին։ Եւ յայտ է եթէ ամենայն ուրեք մտաց պիտոյ են. ապա թէ ոչ, ոչ բանից ինչ զօրութիւն և ոչ իրաց հաստատուն վկայութիւն, և ոչ այլ ինչ իցէ՝ որ կարիցէ ածել զանհաւատն 'ի հաւատս։

Տես, որչափ յառաջագոյն ասէ զզարմանալն, որում ոչ եղեն հնազանդ Հրեայք. « Պատմեցաք առաջի նորա իբրև զմանուկ, իբրև զարմատ յերկիր ծարաւի »։ Ակիւղաս ասէ. Ելցէ իբրև ստն ընդ առաջ նորա. Սիմաքոս, Եւ ել իբրև զգեղեցկութիւն առաջի

նորա․ Թէոդիտոսի, Եւ ելցէ իբրև ստնդիաց առաջի նորա։ Հանէ զնոսա ամենևին 'ի պատասխանի ինչ տալոյ․ քանզի բաւական իսկ էին ասացեալքն առնել զնոսա առանց ներելոյ և թողութեան։ Բազուկ Տեառն․ զի իմանայցեն թէ ամենայն լեալքն՝ զօրաւոր բազկին են գործ․ և դարձեալ բազուկ, զի յայտ արասցէ եթէ 'ի միասին էական Հօր է, և զի ինքնագործ զօրութիւն է․ զի ոչ հրամանօք իբրև հնազանդ, այլ իշխանութեամբ Հօր հանգոյն՝ առնէ զինչ և կամի։

« Իբրև զմանուկ, իբրև զարմատ յերկիր ծարաւուտ »։ Ակիւղաս ասէ․ Իբրև զարմատ 'ի դերև երկրէ։ Մանուկ իսկ էր, այլ ոչ իբրև զայլ մանկտի․ և արմատ, այլ 'ի ծարաւուտ երկրի․ քանզի և երկիր ծարաւուտ զկոյսն կոչէ, որ անփորձ էր ամուսնութեանն խառնից, և երաշտ 'ի սերմանական ցօղոյն։ Եւ այս իսկ բաւական էր յանկուցանել զնոսա 'ի նա։ Միթէ մերկ աստուածեղէն բնութեամբն եկն, և կամ յանկարծակի իբրև զայր ոք կատարեալ երևեցաւ․ ո՞չ ընդ նոսին սնաւ, և ընդ նոսին աճեաց․ ո՞չ երեսնամեայ ժամանակ ընդ նոսին շրջեցաւ․ ո՞չ 'ի մարդկան հաղորդութենէ այլակերպեցաւ, զի մի խռովեցուցանիցէ ինչ, և ոչ յառաւելութենէ քան զայլսն նուազեաց, զի մի դոյզն ինչ ոք կարծիցէ և բազմաց հաւասար։ Զի իբրև զմանուկն էր՝ այնու զհասարակացն ունէր, և զի իբրև զարմատ 'ի ծարաւուտ երկրի՝ այնու զազնուագոյնն և զառաւելութիւնն։

« Ոչ գոյր նորա տեսիլ և ոչ փառք »։ Ակիւղաս ասէ․ Չիք երեսք և ոչ վայելչութիւն․ Սիմաքոս, Եւ ոչ պատուի ինչ արժանաւոր։ « Տեսաք մեք զնա, և ոչ գոյր տեսիլ և ոչ գեղեցկութիւն »։ Զի՞նչ խօսիս․ միթէ այնչափ տգեղ ոք էր արդեւք․ ոչ, ասէ, զայդ ինչ ասեմ․ և զի ոչ զայդ ասեմ, այդէն որ զդորին զհետ գայ՝ յայտ առնէ, եթէ « Ոչ փառք ինչ »․ զի անարգ տեսիլ՝ զփառաւորութիւնն կոչեցի, եթէ յանշուք կերպարանս երևեցաւ, և զի յաղքատ կուսէ ծնաւ, և զի յետ այնորիկ պէսպէս անարգանս կրեաց, զի դիւահար կոչէին և մոլորեցուցիչ, և ոչ ինչ խնդրէր զվրէժ անձին 'ի թշնամեացն․ և երբեմն խայս տայր և շրջէր ընդ

բազում տեղիս, և ընդ ճանապարհորդս ուղեկից լի-
նէր. զի ամենևին զնուազութիւն և զանպարծու-
թիւն ցուցանիցէ։ Զի ոչ միայն զփառաց զհետ չէ
պարտ երթալ, այլ և զանարգանս ևս յանձին ունել՝
ուստի փառքն բխելոց են։ Զի՞նչ վնասեցին նմա այն-
պիսի անարգանք, և կամ զի՞նչ ոչ առաւելութիւն ա-
րարին նմա խոնարհութիւնն։ Իսկ եթէ իբրև զԱստուած
կամիցիս տեսանել զնա, և զայս առաւելուլքն արկ՚ի
քնին, և անդ գտանես զուգական Հօր զզօրութիւնն։ Եւ
քանզի ասէր, եթէ «Ոչ գոյր նորա տեսիլ և ոչ փառք».
զի մի՛ ոք կարծիցէ եթէ բնաւ առանց փառաց էր,
յարէ ՚ի նոյն, եթէ «Տեսաք մեք զնա, և ոչ գոյր նորա
տեսիլ և ոչ գեղեցկութիւն»։ Զի ցուցցէ ըստ մերում
տեսութեանս եթէ ոչ գոյր նորա տեսիլ, զի ոչ կարէաք
տեսանել զնա որպէս օրէնն էր տեսանել։ Այլ զի
փառաւոր էր, ինքնին իսկ ասէր, եթէ Հայր, փառա-
ւոր արա զիս փառօքն՝ զոր ունէի առ քեզ, մինչչև լեալ
էր աշխարհ։ Եւ այլազգ ևս. զի զխաչին իւրս փառս
կոչէ՝ զանարգ զկերպարանս։

«Զի տեսիլ նորա նուաղ է քան զորդւոց մարդ-
կան»։ Տեսանե՞ս, որպիսի՜ անհնարին անարգութիւն
կալաւ յանձին։ «Քան զորդւոց մարդկան»։ Ոչ վասն
մարմնանալոյն, այլ վասն զանարգանաց և զանիծից
մահ յանձին կրելոյ. օրինացն պատժապարտ եղև, դա-
տապարտեցաւ իբրև զանօրէն. այնու իսկ է տեսիլն
նորա նուաղ քան զորդւոց մարդկան. զի ոչ միայն կեր-
պարանօք դատապարտութեանն նուաղ գտանէր, այլ
և ՚ի հասարակացն պատժոց։

«Զի ընդ անօրէնս համարեցաւ»։ Տեսանե՞ս, զի
յաճախ զայնպիսիս դնէ, ոչ զփառաւորս ինչ, այլ
զանարգանացն։ Եւ զի՞արդ ոչ դանդաղեսցի, այլ իբրև
փառօք իմն զարդարեալ՝ զանարգանացն ևեթ ճառէ,
Առաքելոցն նմանեալ. քանզի և նոքա ամենեքեան
զխաչէն ևեթ միաբան պատմեցին, և ոչ ինչ ոք նուա-
զեցոյց. այլ թէ և աւելի ինչ ասացին, յայն յաճախե-
ցին կամ զանարգանացն պատմել, կամ զկապանաց և
զհաղորդութենէ և զձաղանաց և զկատականաց և
զարհամարհանաց։ Զայսպիսի ինչ իբրս աւելի իմն հա-
ւաստեաւ պատմեցին. որպէս և Առաքեալքն այնպէս

վստահ էին 'ի խաչելոյն զօրութիւն՝ եթէ աստուածեղէն զօրութիւն է, զի և ոչ մի ինչ յանարգանացն թողլին՝ որ ոչ պատմեցին. քանզի ոչ այնչափ փառաւորք և պարկեշտականք կարէին ընդհանուր ուղղութիւնս ինչ կատարել. զի եթէ ոչ այնպէս լեալ էր՝ ոչ էր զարմանք փառաւորաց փառաւորս ինչ կատարել, այլ հակառակորդօքն զհակառակորդսն հնարէր. և այս իսկ են զարմանք, զի հակառակ ինչ իրք՝ իւրեանց հակառակորդաց եղծիչք են, իսկ արդ հակառակքն՝ հակառակացն յաւելուածք լինէին։

« Այր մի է 'ի չարչարանս, և գիտէ համբերել ցաւոց »։ Քանզի յաճախագոյնս ասաց, եթէ Ոչ գոյր նորա տեսիլ և ոչ գեղեցկութիւն, զի մի կարծիցի եթէ յանկերպարանութենէ այսպիսի իրք գործիցին՝ յարէ 'ի նոյն, եթէ « Այր մի է 'ի հարուածս, և գիտէ համբերել ցաւոց »։ Այսինքն՝ զհալածանս, զնեղութիւնս, զնենգութիւնս։ Եւ արդարև մեծ իմաստութիւն է համբերել ցաւոց, մեծ զօրութիւն։ Իսկ ցաւս աստ՝ զտկարութիւնս և զմեղս և զնենգութիւնս կոչէ։ « Գիտէ, ասէ, համբերել ցաւոց ». տկարութեան աշակերտացն և մեղաց. զի ոմն ասէր եթէ դիւահար է, և այլ ոմն եթէ մոլորեցուցիչ, և այլք եթէ հակառակ Աստուծոյ է. և նա տանէր այսպիսի տկարութեան մտաց։ Իսկ հարուածս՝ թուի ինձ՝ կամ զորբամութիւնսն կոչիցէ, կամ զցաւսն իսկ չարչարանացն. զի և ողջոյ ումեք այլոց տկարութեան համբերել՝ մեծ և կարի զարմանալի է, թող թէ յորժամ ինքն 'ի ցաւս իցէ, և կարիցէ այլոց ստահակութեանց տանել՝ յորժամ 'ի վերայ յարձակիցին և զայրացուցանիցեն։ Յովբ ոչ կարաց համբերել որտահանութեան բարեկամացն, իսկ զսմանէ ասէ, եթէ « Այր մի 'ի հարուածս է, և գիտէ համբերել ցաւոց »։ Հրեայք յորժամ 'ի վիշտս ինչ, և ոչ յիշել անգամ զԱստուած կամէին. իսկ սա երկուս առաքինութիւնս ցուցանէ, մի՝ զի ինքն իսկ 'ի խաչի և 'ի չարչարանս էր, և զայլոց ևս ցաւս բառնայր. թէպէտ և զայլոց ցաւս բառնայցէ, պարտ է նմա՝ զի ինքն անցաւ և առանց վշտաց իցէ. ոչ այդպէս, ասէ, այլ և ինքն 'ի վէրս է, և զայլոց տկարութիւնս բառնայ։ Ապտակէին, զայրացուցանէին, տանջէին, և նա բառ-

նայր զմեղս այլոց. մեռանէր, և զայլոց մահս լուծանէր։ Այլ չէ ինչ զարմանք եթէ Աստուած մերկ՝ առանց մարմնոյ՝ զայսպիսի սքանչելիս գործէր. վասն որոյ և ասէ իսկ, եթէ « Այր մի 'ի հարուածս, և գիտէ համբերել ցաւոց »։ Զի ոչ այր ոք լոկ է, և ոչ Աստուած մերկ. զի և այս այսպէս է՝ յայտ այնու է, զի ոչ ասաց եթէ համբերէ, այլ եթէ « Գիտէ համբերել »։ Նա և 'ի բնէ իսկ և 'ի սկզբանէ գիտէ զնոյն։

« Զի դարձեալ էին, ասէ, երեսք նորա. անարգեցաւ, ասէ, և ոչ ինչ համարեցաւ »։ Այլքն ասեն. Արհամարհեալ է, և ոչ ինչ համարեցաք զնա. այսինքն՝ յաչաց ել ամենեցուն, ատեցաւ, անարգեցաւ, և ոչ ինչ համարեցաւ։ Եւ զի ասէ, « Ի հարուածս է », զթշնամանացն ասէ, թէ զանարգանս՝ չհամարեցաւ անարգանս, և ոչ զթշնամանսն՝ թէ թշնամանք իցեն. կամ որպէս այլքն ասեն, եթէ Վասն անարգութեան չհամարեցաք ինչ զնա։

« Սա զմեղս մեր բառնայ, և վասն մեր պաղատի »։ Ազգի ազգի չարչարանս չարչարեցաւ, բայց զամենայն իսկ վասն մեր։ Տես, զիա՞րդ աշխարէ զԵրուսաղէմ, կամ զիա՞րդ զայրացեալ հոգւով կոչէր զՂազար 'ի գերեզմանէն արտաքս, կամ զիա՞րդ խռովէր վասն Յուդայի. Մի ոմն, ասէ, 'ի ձէնջ մատնելոց է զիս։ Խռովեցաւ 'ի հոգի իւր, ոչ վասն զի մատնելոց էր. ապա թէ ոչ՝ զիա՞րդ ասէր ցՀայր, եթէ Հասեալ է ժամ, փառաւորեա զորդի քո. զի զմատնիչն տեսանէր եթէ ելանելոց էր 'ի թուոյ երկոտասանիցն, և զՀրեայս՝ զի ցրուելոց էին 'ի քաղաքէն. ոչ վասն իւրոց ինչ չարչարանաց, այլ վասն նոցա գործոցն աշխարէր. և զմեզ ուսուցանէ՝ զի և մեք ընդ այլոց վիշտս տրտմիցիմք։ Եւ ոչ վասն այնր ինչ պաղատի՝ զի ինքն չարչարի, այլ զի ցուցցէ եթէ թերահաւատելոց են 'ի նմանէ՝ վասն որոյ չարչարին. և յայտ անուանէ. Երուսաղէմ, Երուսաղէմ, ասէ, բազում անգամ կամեցայ ժողովել զմանկունս քո, և ոչ կամեցարուք. ահաւասիկ թողեալ լիցի ձեզ տունդ ձեր աւերակ։

« Եւ մեք համարեցաք զնա 'ի ցաւս և 'ի վէրս և 'ի չարչարանս՝ իբրև յԱստուծոյ »։ Եւ բարւոք ասաց եթէ մեք համարեցաք զնա իբրև յԱստուծոյ. զի ոչ

եթէ բռնութեամբ ինչ կամ 'ի հարկէ ած զնա յայն Աստուած, այլ կամաւ մատնեաց ինքնին զանձն՝ փոխանակ մեղաց մերոց։ Եթէ որդի իցես, ասէին, Աստուծոյ, էջ 'ի խաչէդ. այլ վասն ձեր ասէ զայս ամենայն, զի կատարեսցի այն, եթէ Յոչինչ համարեցաք զնա։ Ոչ ինչ էին իւրն չարչարանաց և ցաւոց, այլ բժշկութեան և առողջութեան. քանզի և ասէ իսկ, եթէ «Նա վիրաւորեցաւ վասն մեղաց մերոց, չարչարեցաւ վասն անօրէնութեանց մերոց»։ Նա, ասէ, չարչարեցաւ. բարուռք իսկ և զվէրս ձեռացն և զայլոց մարմնոցն, և զպատճառս խաչին նշանակէ ամենայն ուրեք։ Եւ չէի՞ն արդեւք այն նմա վէրք և չարչարանք. ոչ, ասէ, քանզի կամով եկն յայն, և ցանկութեամբ ցանկացաւ նմին։

«Խրատ խաղաղութեան մերոյ 'ի նմա, և վիրօքն նորա ամենեքեան մեք բժշկեցաք»։ Այսինքն՝ զի խրատն և չարչարանքն նորա մեզ զխաղաղութիւն ծնան։ «Եւ բժշկեցաք վիրօքն նորա»։ Զո՞ր առողջութիւն ասիցես, զմարմնո՞յն ինչ արդեւք. ոչ, այլ զհոգւոցն։

«Ամենեքին իբրև զոչխարս մոլորեցաք»։ Զայնմ իսկ բժշկութենէ ասէ, զի 'ի մոլորութենէն դարձոյց. ոչ սա այժմ և նա ոչ, այլ ամենեքին իսկ մոլորեցաք։ Եթէ վասն Հրէից ինչ ասիցես. Ոչ, ասէ, ուրեք առաքեցայ, այլ առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայելի։ Տեսանե՞ս, զի նոցա և հեթանոսաց առհասարակ էր բժշկութիւն խաչին։ Զո՞ր բժշկութիւն ասիցէ. մի թէ զդարձն 'ի Բաբելոնէ. այլ զդարձ ոգւոցն 'ի մոլորութենէն 'ի ճշմարտութիւն։ «Այր 'ի ճանապարհի իւրում մոլորեցաւ»։ Եւ այն իսկ էր անհնարին մոլորութիւն, զի ոչ յայլոց, այլ իւրաքանչիւր յիւրում ճանապարհի էին մոլորեալք. և ոչ միայն յօտար աշխարհին մոլորեցան, այլ մինչդեռ յիւրեանց աշխարհին և յիւրեանց քաղաքին էին մոլորեցին 'ի ճշմարտութենէն։

«Եւ Տէր մատնեաց զնա առ մեղս մեր. և նա առ վշտին ոչ բանայ զբերան իւր»։ Զի մի կարծիցես եթէ վասն իւրոց ինչ մեղաց եղև նմա այն, վասն որոյ իսկ ասէ. «Տէր մատնեաց զնա առ մեղս մեր»։ Վասն մեր ասէ, և ոչ ասէ թէ վասն իւրոց ինչ մեղաց գտաւ պատժա-

պարտ։ «Այլ նա առ վշտին՝ ոչ բանայ զբերան իւր»։ Եւ ընդէ՞ր արդեւք լռեաց և ոչ ետ պատասխանի. զի եթէ իրացն վկայութիւն ոչ հաւանեցոյց զնոսա, ո՞րչափ ևս առաւել բանիցն. քանզի և ոչ դատաստանով անգամ հաւանէին, այլ ձօխութեամբ և արտաքոյ օրինաց կամէին սպանանել. և այնպէս դիւացեալ, զի թէպէտ և պատասխանի ինչ տուեալ էր, սակայն ոչ անսային. այլ և լռելն նորա կարող էր զնա ապրեցուցանել 'ի խաչէն. և յայն սակս լռեաց, զի նոքա և միոյ իմիք պատասխանոյ մի՛ լիցին արժանի. զի զնոսա ոչ երազն կնոջն Պիղատոսի, և ոչ մատնչին խեղդել, և ոչ սուտ վկայիցն ամաչել, և ոչ այլ ինչ կարաց ածել 'ի հաւանութիւն։ Գրեսջիր թէ զնա 'ի խաչ հանէք, 'ի կայսր զի՞ խրախուսէիք.

«Իբրև զոչխար եկն 'ի սպանումն»։ Զի զհեզութիւնն ցուցանիցէ, ոչ միայն այլովքն, այլ և մեռանելն։ Եւ ինձ այսպէս թուի եթէ ոչ միայն զլռութիւնն ասիցէ, այլ զի և պատարագն իսկ եղև. քանզի և Սիմաքոս ասէ, եթէ Եւ զենումն եկն 'ի պատարագել։ Եւ մերն չէ ինչ լռելն՝ յորժամ սպանանել տանիցին ըզմեզ, քանզի առ երկիւղի լռեմք. այլ նորայն մեծ է որ կարաց բարբառով միայն զունելիսն զարկուցանել զգետնի. Զո՞վ, ասէ, խնդրէք. և ամենեքեան յետս առածեալ՝ հարան զգետնի։ Քան զո՞ր պատասխանի չիցէ այն մեծ, քան զորպիսի՞ բանս առաւել չցուցանիցէ զզօրութիւնն։ Տեսեր զզօրութիւնն, տե՛ս և զհեզութիւնն՝ որչափ զօրաւոր, որչափ քաղցր. զի ոչ միայն 'ի զօրութենէն պարտ իցէ նկարել զաստուածականն, այլ և 'ի հեզութենէն։

«Իբրև զորոջ առաջի կտրչի՝ այնպէս կապեցաւ, ասէ, և այնպէս ոչ բանայ զբերան իւր»։ Բայց սակայն բաց զբերանն և խօսեցաւ ինչ. այլ զի զխոնարհութիւնն ցուցանիցէ, եթէ ոչ խիստ ինչ և ոչ գժիռ բանս խօսեցաւ. Այլ թէ չար խօսեցայ՝ վկայեա՛, ասէ, վասն չարին. և եթէ բարւոք՝ զի՞ հարկանես զիս։ Քան զլռութիւնն ևս հանդարտ պատասխանի էր։ Եւ մեք կամ բնաւ պատասխանի ինչ մի՛ տացուք, և կամ թէ տայցեմք՝ նոյնպէս հանդարտագոյնս։

«Առ խոնարհութեան նորա դատաստանն նորա

բարձաւ »: Զի այնչափ ես զանձն խոնարհութեան, զի և բանս անգամ չետուն խօսել, զի բնաւին իսկ զբրաւունս բարձցեն 'ի նմանէ: Եւ գիտէք՝ զի կարի անուագաց և անկելոց է՝ յորժամ և ոչ դատ ոք տայցէ դնել, և ոչ ըստ օրինաց բանս առ բանս խօսել, զի յօգնականութենէ իրաւանցն արկանիցեն. զի առ բազում խոնարհութեան՝ և ոչ բանս ինչ յատենի խօսեցաւ: Եւ տես, մարգարէն զիա՛րդ յարէ 'ի ձայն խաչին իբրև զհեշտական ինչ զրոյցս՝ պատմել և զարմանալիս և սքանչելիս. « Զազգն նորա, ասէ, ո՞վ պատմեսցէ, զի բարձեալ են յերկրէ կեանք նորա »: Զի՞նչ խօսիսդ. չիցե՞ն զմարդոյ ումեքէ բանքդ. զի եթէ մարդ լոկ իցէ, զիա՞րդ ոչ ոք կարիցէ պատմել ըզծնունդն նորա. չիք ինչ հնար, ասէ: Մի՛ զի բազում խոնարհագոյնք 'ի խաչին գործեցան՝ գայթակղեսցիս ինչ, տես, զիա՛րդ միւսանգամ հանէ զմեզ 'ի վեր, և ցուցանէ զզօրութիւնն նորա, եթէ որ զայնպիսի չարչարանս չարչարեցաւ, « Բարձեալ են յերկրէ կեանք նորա », և կենդանի Աստուծոյ է. ըստ այնմ, եթէ Կեանք մեր ծածկեալ են ընդ Քրիստոսի յԱստուած:

« Զի բարձեալ են յերկրէ կեանք նորա »: Եւ ո՞վ ոք եղև մարդ՝ որ ոչ համարեցաւ յազգս. ամաչեսցեն հերձուածողք՝ որ հակառակ մարգարէիս բարբառին զհայհոյութիւն: Եւ մի զվերին ծննդենէն ոք ասիցէ, զի այն անյայտ իսկ է. այլ ես զայսմ ծննդենէ՝ որ 'ի խոնարհս եղև՝ ասեմ, եթէ զիա՞րդ մարդ 'ի կուսէ ծնանիցի, զիա՞րդ առանց ամուսնութեան լինիցին երկունք, զիա՞րդ առանց առն՝ մանուկ, և առանց ամուսնութեան՝ ծնունդ. ո՞վ ասիցէ, ո՞վ պատմեսցէ: Գտաւ, ասէ, յղի. և եթէ որպէս ինչ է՝ ոչ ասաց: Այժմ, ասէ, ասաց, եթէ Հոգին սուրբ եկեսցէ, և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի 'ի վերայ քո. քանզի և որ ծնանելոցն է՝ սուրբ կոչեսցի, Որդի Աստուծոյ: Եւ չթուիցի՞ քեզ, ասեն, թէ յայտ իցէ, քանզի և գիտեմք իսկ: Իսկ արդ, որովհետև յայդ ապաստան եղև, զդոյն իսկ քննեսցուք. Հոգին Սուրբ եկեսցէ: Հոգին Սուրբ, ասեն, արար: Եւ արդ, ասէ ասա, զիա՞րդ արդեւք արար. որպէս զԱդամն՝ Աստուած. այլ չէ ինչ 'ի դէպ: Այլ 'ի մարդկեղէ՞ն ինչ սերմանէ. քաւ լիցի ասել

զայդ, քանզի մեծ ամպարշտութիւն է։ Իսկ որպէս
զՅուդայն 'ի կողքիցն. այլ և ոչ այնպէս ինչ է։ Մարմին
ինչ առ արդեւք յարգանդէն[1] և ստեղծ. սակայն և
զայն չառնուլ յանձն։ Իսկ առանց կուսին ինչ ուս-
տեքս. սակայն և այն չէ 'ի դէպ. զի ոչ այնուհետև լինի
առեալ 'ի նմանէ մարմին։ Իսկ որպէս ինչ արդեւք։
Նախ խոստովան լինիմ զտկարութիւն, և ասեմ՝ եթէ
ոչ գիտեմ, մի հարցաներ զանքննինս՝ որ ոչ յայտնի
ինչ գործեցան. և ապա ասեմ՝ զի 'ի կուսէն առ մար-
մին. և արդարև մարմին ճշմարիտ զայն խոստովանիմ,
բայց զիարդ 'ի նմանէ՝ այնմ չեմ բաւական գիտել.
չեմ ճարտար քան զմարգարէս, և ոչ խելամուտ քան
զՀոգին՝ որ 'ի բերան մարգարէին խօսէր։ Հոգին՝
որ այնպէս գիտէ զԱստուծոյ, որպէս և հոգին մար-
դոյ՝ որ 'ի մարդն կայցէ, ոչ ետ աւելի ինչ ճառել
քան զայն, եթէ «Զազգ նորա ո՞վ պատմեսցէ». եւ և
դու ո՞վ իցեմք՝ որ զանքննինս քննիցեմք, և զանճառն
խնդրիցեմք։ Եւ եթէ զմարմնաւոր ծնունդն ոչ ոք
կարէ պատմել՝ որ ժամանակաւոր եղև, որոց բիւրուց
բիւրք են վկայք՝ հրեշտակք և մարգարէք և արա-
րածք ամենայն, որ գրեթէ հանդիսապատիւ մեզ
եղև, քանզի ամենայն ուրեք մեզ նմանեցաւ ըստ մարդ-
կութեան, առանց մեղաց միայն, ո՞վ ոք այնչափ յան-
դուգն և մոլեկան կայցէ՝ որ զանմիջնորդականն և
զանճառականն և զանժամանակեանն՝ 'ի հարց և 'ի
խնդիր իշխեսցէ արկանել։

Զէ յայս կենաց. «Զի բարձեալ են յերկրէ կեանք
նորա»։ Եւ զիա՞րդ բարձեալ իցեն յերկրէ կեանք նորա։
Այո, ասէ. քանզի և ոչ մահն նորա ըստ մերում բնու-
թեանս էր. զի ոչ եթէ պատժապարտ ինչ էր մարմինն
այն մեղաց, զի դատապարտեալ 'ի մեղաց անտի՝ լինիցի
պարտական մահու, այլ փոխանակ այլոց չարչարեցաւ.
Վասն որոյ և Աստուած բարձրացոյց զնա։ Տեսանե՞ս,
որչափ ինչ լաւ է վասն այլոց չարչարել։ Եւ մեք զիա՞րդ,
ասեն, հաւանեսցուք. զի ազգ նորա ոչ պատմի, և յեր-
կրէ բարձեալ են կեանք նորա, զնա ոչ տեսանեմք, և
ազգատոհմի նորա չեմք ինչ խելամուտ։ Այլ զի ուսա-

1 Յօր. Յարգանդէն՝ յօտար գրչէ։

նիւթին թանձրասիրտքն և անհանճարքն, եթէ սա այն է՝ որ մեռաւն ըստ մարմնոյն և ոչ մեռաւ ըստ աստուածութեանն, և ոչ արգելաւ առ մեռեալս, այլ կենդանի է առ Աստուծոյ. ըստ այնմ, եթէ Ոչ թողաւ շունչ նորա ՚ի դժոխս, և ոչ մարմին նորա ետես զապականութիւն. զի յայտ լիցի թէ աստուածեղէն բնութեանն է։ Ոչ վասն իւրոյ մեղացն, այլ վասն այլոց մեղաց մեռանէր, մահկանացուաւն՝ և ոչ կենդանեաւն. «Յանօրէնութեանց ժողովրդեան իմոյ վարեցաւ ՚ի մահ»։ Սիմաքոս ասէ. Վասն անիրաւութեանց ժողովրդեան իմոյ։

«Եւ տաց զչարս փոխանակ գերեզմանի նորա, և զմեծամեծս փոխանակ մահու նորա»։ Զաւար քաղաքին ակնարկէ այսու, եթէ ոչ վայրապար աւերեցաւ և՚ի Յունաց, այլ Աստուած մատնեաց փոխանակ գերեզմանի նորա։ Փոխանակ որոյ գերեզմանի, ով Հրեայդ, փոխանակ որոյ մահու. Թաղեցաւ Զօրաբաբէլ և Եզր և Յեսու Յովսեդեկեանց, և այլք ևս այսպիսիք մեռան, և ոչ կարես ասել թէ վասն նոցա գերեզմանաց և մահու աւերեցաւ քաղաքն։ Եւ բարւոք ասաց, եթէ «Տաց զչարս»։ Զի չիք ինչ չար քան զՀրէիցն ազգ։ «Փոխանակ գերեզմանի նորա»։ Քանզի վասն գերեզմանին իսկ՝ արժանի չարաչար պատիժս կրել, ոչ զի թաղեցաւն, այլ զի արգելուին և ոչ տային թաղել. որպէս զի թէ ոչ այլ ուստեք, սակայն վասն գերեզմանին զրկեալ լինիցին ՚ի ներելոյ թողութեան։ Ոչ այնչափ խաչն դատապարտեաց զնոսա, որպէս գերեզմանն. մանաւանդ զի և խաչն իսկ բաւական էր դատապարտել։ Եւ եթէ այլ ինչ նշանք չէին գործեալ, աւազակին միայն դաւանութիւնն կարէր պարտաւորել զնոսա։ Այլ թերևս ասիցեն՝ թէ չլուաք զայն. իսկ և ո՞չ զվախճանին արդեւք նշանսն տեսին։ Իսկ յորժամ կամէրն վճարել, բարբառ մեծաձայն արձակեաց և եհան զոգին. թէպէտ և այլոց վախճանելոց այնպիսի կերպարանք ոչ լինիցին, այլ առ սակաւ սակաւ նուաղէ զօրութիւնն, և ապա ելանէն ոգիքն. և ոչ յառաջագոյն ինչ գիտեն զվախճանն՝ ոգիքն։ Այլ թերևս ասիցեն՝ եթէ ոչ զայն իմացաք ինչ. իսկ զվարագուրին հերձուլ և զվիմաց պատառել,

զերկիր շարժել և զարեգական Ճառագայթիցն մթանալ յծիլ տանիցին։ Այլ յայնժամ դեռ ևս ոգի կայր, ասեն։ Յորժամ տեսանիցես զմեռեալ՝ որ այնպիսի գործս գործիցէ, զիա՞րդ ոչ զարմանայցես, զիա՞րդ ոչ շտապիցիս. ո՞չ դու քեզէն իսկ խնդրեցեր 'ի դատաւորէն դաս մի զինուորաց՝ զի պահիցեն զգուշութեամբ. բարւոք քեզէն քոյին իսկ ձեռօք ետուր 'ի պահ զմեռեալն. և արդ՝ դու քեզէն տուր զիրաւն. զի ոչ աշակերտ ոք մօտ էր, և ոչ աւետարանիչ ոք հուպ. դու քոյին ձեռօք կնքեցեր զգերեզմանն, դու քեզէն կացուցեր պահապանս. և ոչ այնպիսի ինչ պահապանս՝ որ յանկէին 'ի նա, այլ հակառակորդս և օտարամիտս, որք ոչ նշանս ինչ տեսին, և ոչ մարգարէիցն ինչ ընդել էին։ Զի թէ զաւազակն հաւանեցոյց, որչափ ևս առաւել զձեզ պարտ էր հաւանեցուցանել՝ որք ընդ մարգարէութիւն էիք սնեալ. և եթէ զզինուորսն յանկոյց, որչափ ևս առաւել զձեզ՝ որք միշտ զմոլխոսականսն ևեթ լսէիք։ Ոչ ասեմ եթէ նշանս ինչ երբեք տեսէք կամ յառաջ կամ 'ի խաչին, այլ այն իսկ փո՞քր էր՝ զի աւազակն հաւատաց, զինուորքն ստրջացան, հարիւրապետն զարմացաւ. այլ և զայն ամենայն ևս ժխտէին։ «Տաց զչարս փոխանակ գերեզմանի նորա»։ Ոչ միայն զի սպանին, այլ զի և իմանալ կարէին զամենայն սքանչելիսն, և ոչ կամէին առնուլ 'ի միտ։

«Եւ զմեծամեծս փոխանակ մահու նորա[1]»։ Մեծատունս կոչէ զնոսա. զի առաւել քան զայլ մարդիկն՝ նոքա մեծատուն էին ընդ ժամանակսն՝ վասն առատութեան բերոյ երկրին։ Դարձեալ և հոգևորօքն՝ մինչև զչարիսն գործեալ էր՝ մեծատունք էին. քանզի Աստուծոյ խնամ 'ի նոցա վերայ առաւել կայր քան յայլոց։

«Զի զանօրէնութիւն ինչ ոչ գործեաց»։ Իսկ այս 'ի ժողովուրդն կատարեսցի՝ իբրև զայն, եթէ «Տաց զչարս փոխանակ գերեզմանի նորա՝» 'ի ժողովուրդն

1 Յօրինակին պակասի այս բնաբան մարգարէին, որպէս թուի՝ յանմտադրութենէ գաղափարողին 'ի բաց թողեալ։

առնուլն. ապա և զայս 'ի ժողովուրդն պարտին առնուլ. «Եւ ոչ նենգութիւն գտաւ 'ի բերանս նորա»: Իսկ նա աւանիկ ասէ, եթէ Զի՞նչ արդար՝ որ առնիցէ զբարի յերկրի, և ոչ մեղանչիցէ. և դարձեալ, եթէ Զի՞նչ ոք՝ որ ոչ գայթակղեցի լեզուաւ: Եւ զայս ևս զի՞ առնիցեմք, եթէ Ամենեքին իբրև ոչխարք մոլորեալք. այր 'ի ճանապարհի իւրում մոլորեցաւ: Եւ զի մի՛ կարծիցես զամենեսին ասելով զբազմաց ասիցէ և ոչ զամենեցունց, ասէ. Այր իւրաքանչիւր 'ի ճանապարհի իւրում մոլորեցաւ. և ամենեքին առհասարակ, և իւրաքանչիւր առանձինն. զի ծանիցեն եթէ վասն նորա եղև այն ամենայն: Նմին իսկ յառաջագոյն ասաց, եթէ վասն նորա լինելոց է. և եղև և կատարեցաւ: Եւ եթէ այս այսպէս ոչ իցէ, աղէ՛ ասա ինձ, ով Հրեայդ, զի այնպիսի ինչ նախանձ ցուցեր՝ զի զայր մի անօրէն սպաներ, և ընդէ՞ր կրեցեր զայդպիսի պատիժս: Որք առ Մովսեսիւ զկուռսն պաշտէին, և զպատժապարտսն վասն նախանձու Աստուծոյ սպանին՝ շինջուցին զբարկութիւնն Աստուծոյ. իսկ այժմ զի պատժապարտ իսկ չէիր, և ըստ օրինացն արդարութեան առաքինանայիր, և զայր մի զխոտիչ օրինացն և զհակառակ Աստուծոյ՝ սպաներ, ընդէ՞ր իցես 'ի պատիժս: Փենեհէս սպան՝ և արդարացաւ. և քեզ արդարանալ պարտ էր, քանզի և դու Աստուծոյ նախանձախնդիր էիր. չէ՞ր պարտ առնուլ փոխարէնս՝ փոխանակ բարւոք նախանձուն: Այլ այժմ, ասէ, վասն մեղաց եմք 'ի պատիժս: Վասն որո՞յ մեղաց. միթէ վասն որթոյն գլխոյ, կամ վասն երընջոցն ոսկեաց. միթէ վասն մանկտւոյն զորս կոտորէիր, կամ վասն դստերացն՝ զորս զոհէիր. ո՞չ ապաքէն զմոլորեցուցիչսն հալածէիք, և զվրիպեցուցիչսն՝ զՅուդա և զԹևդա. ընդէ՞ր ոչ դարձան ձեզ երախտիք իբրև նախանձաւորաց օրինաց: Եւ ոչ ոք կարէ ասել՝ եթէ 'ի նա միայն ցուցէք զնախանձն, այլ և յաշակերտսն՝ որք զնորա տեղին առին. զՍտեփաննոս քարկոծ արարէք, զՅակովբոս սպանէք, զՊաւղոս պէսպէս մահու չարչարեցէք. նովին նախանձու՝ ոչ ոք գտաւ 'ի ձէնջ կռապաշտ 'ի ժամանակին:

«Եւ Տէր կամի սրբել զնա 'ի վիրաց անտի»: Քանզի զմահուանէ լուար, և եթէ թաղեցաւ 'ի գերեզմա-

նի, զի մի՛ ևեթ անդ հաստատեալ կայցեն[1] միտքն, յարէ 'ի նոյն իբրև առակաւ զյարութեան Ճւռւս. զոր և վերագոյն իսկ ասաց ակնարկելով, եթէ Բարձեալ են յերկրէ կեանք նորա։ Այս է և աստ, թէ « Տէր կամի սրբել զնա 'ի վիրաց անտի ». զի ցուցցէ եթէ ազատ յապականութենէ է մարմինն. ըստ այնմ, եթէ Մարմինն նորա ոչ ետես զապականութիւն. քանզի և չէր իսկ պարտական։ Եւ եթէ զալխան յանձն առ, մի՛ ինչ վասն այնորիկ խոնարհագոյնս կարծիցես. զի վասն քո մտացդ հաստատութեան եղև այն. Զննեցէ՛ք, ասէ, և տեսէք, զի ոգւոյ՝ մարմին և ոսկերք չի՛ք, որպէս զիս տեսանէք՝ զի ունիմ մարմին և ոսկերս. և յայտ արար՝ եթէ առանց եղծանելոյ և ապականելոյ յարոյց զիւր մարմինն. զի բայց 'ի սպեացն՝ զոր 'ի հաստատութիւն յարութեանն աշակերտացն էր ցուցանելոց, այլ ինչ արատ 'ի սուրբ մարմինն ոչ գտանէր։

« Եթէ տայջիք դուք վասն մեղացն, անձինք ձեր տեսցեն զզաւակ երկայնակեաց »։ Քանզի ասաց եթէ վասն նոցա մեռաւ, և ոչ վասն իւրոց ինչ մեղաց, և եթէ վրէժս տալոց են, ասէ և զայն՝ եթէ մարթ էր նոցա վերստին կոչել անդրէն, և անցանելոց են պատիժք՝ եթէ կամիցին։ Եւ զի՞նչ իցէ տալ վասն մեղաց. ոչ ոսկի խնդրէ և ոչ արծաթ, այլ զոր ինչն խնդրէ, թէ Հաւատացէք միայն և ջնջեսցին մեղքն ձեր։

« Եւ կամի Տէր 'ի ձեռն նորա փոփոխել 'ի ցաւոց անձինն նորա, ցուցանել նմա լոյս, ստեղծուլ իմաստութեամբ, ծառայել բարւոք բազմաց »։ Այս ամենայն իմաստութեան և հանճարոյ է. իսկ զցաւսն փոփոխել՝ զյարութիւնն յայտ առնէ։ « Արդարացուցանել զարդարն, յայտնի առնել զարդարութիւն նորա »։ Քանզի ոչ ասաց եթէ արդարացուցանել զնա, այլ թէ զարդարն. և յայտ է եթէ զարդարն՝ որ ոչ Ճանաչէր ումեք՝ առնէր յայտնի բազմաց։ Ծառայելն բարւոք այն իսկ է՝ զի պաշտօնեայ եղև թլփատութեանն։ Նշանակիչ թլփատութեանն՝ զգործ ծառայից գործեաց Տէրն ամենայնի. լուաց զոտս աշակերտացն, և ջնջեաց ընթանոցաւն. զի որոց բարւոքն ծա-

1 Յոբ. Հաստատեցան ջոջին ։

ռայեաց, նոցին Տէր էր և արարիչ. Ոչ եկի՝ զի պաշտեցայց, ասէ, այլ զի պաշտեցից. և դարձեալ, Թէ Ո՞վ մեծ իցէ, որ բազմեալն իցէ, թէ որ յոտն կայցէ. և ես աւասիկ, ասէ, պաշտեցի զձեզ: Վասն այնորիկ իսկ առ զկերպարանս ծառայի, և այսպիսի կերպարանօք՝ ծառայեաց բարուք բազմաց: Եւ զի՞նչ իցէ՝ «Ի ձեռին նորա»: Ոմանք ասեն. Քանզի 'ի նորին Քրիստոսի ձեռինն է զօրութիւնն, զի մի՛ կարծիցի եթէ այլուստ զօրացեալ ունէր զամենայն, այլ ինքն իւրով զօրութեամբն առնէր զինչ և կամէր: «Փոփոխել 'ի ցաւոց անձինն իւրոյ»: Զի բազմացն հաւատք՝ փոփոխանք լինիցին ցաւոց նորա. զի թէպէտ և չարչարեցաւ ըստ մարմնաւորութեանն, սակայն զբազումս շահեցաւ:

«Եւ զանօրէնութիւնս նոցա նա վերացուսցէ»: Քանզի արդարն ոչ ինչ պատժի վասն մեղաց: «Եւ վասն այնորիկ իսկ ժառանգեսցէ զբազումս»: Զի թէ մինն, ասէ, փոխանակ ամենեցուն մեռաւ, ապա որ կենդանիքն են՝ ոչ են անձանց կենդանիք. և դարձեալ. Չէք անձանց կենդանիք. և դարձեալ. Չէք անձանց, գնոց գնեցայք. և դարձեալ. Եթէ կեամք և եթէ մեռանիմք՝ Տեառն եմք. և Որ կենդանիքն իցեն, ասէն, մի՛ անձանց իցեն կենդանիք, այլ այնմ՝ որ մեռաւն և յարեաւ վասն նոցա: Եւ զի մի՛ կարծիցես եթէ վասն անցելոց իրաց ինչ ասէ, և ոչ վասն հանդերձելոց, ասէ. «Եւ զմեղս նոցա վերացուսցէ»: Ակիւղաս ասէ. Բարձցէ. Սիմաքոս ասէ. Կրեսցէ:

«Վասն այնորիկ ժառանգեսցէ նա զբազումս, և զաւար հզօրաց բաշխեսցէ»: Զդիւացն աւար, քանզի յաղթեաց և առ զկազմած հզօրին: Եւ բարւոք ասէ, թէ բաժանեսցէ. զի Առաքելոց բաժանեաց ետ՝ ումեմն զհեթանոսս և ումեմն զթլփատութիւնն: «Փոխանակ զի մատնեցաւ 'ի մահ անձն նորա և ընդ անօրէնսն համարեցաւ»: Եւ ոմն 'ի թարգմանչացն ասէ, թէ ընդ մնասակարս թուեցաւ: Ոչ վայրապար 'ի մահ, այլ զի բարձրացուսցէ զնոսա: Տեսանե՞ս զմահուն շահ. տեսանե՞ս զխաչին պտուղս: Եւ չեն ինչ, ասեն, պատշաճ վասն այնորիկ. այլ և վասն նորին իսկ եղև պատ-

շաճ. քանզի մեռաւ, վասն այնորիկ և կենդանեաց իսկ տիրէ։ Եւ մահ նախատանաց. Լուայք, ասեն, զի ասէր մոլորեցուցիչն՝ եթէ յերիր աւուր յառնեմ. և բարուոք ասաց, թէ «Ընդ անօրէնս համարեցաւ». քանզի չէր իսկ անօրէն։

«Եւ նա զմեղս բազմաց վերացոյց»։ Իսկ այլքն ասեն, թէ Ա՛ռ։ «Եւ վասն մեղաց նոցա մատնեցաւ»։ Ակիւղաս ասէ. Եւ արհամարհողացն իւրոց պատահեսցէ. Սիմաքոս՝ Հակառակաց. Թէոդիտոնն՝ Եւ զամբարիշտս տանջիցէ։ Տե՛ս, զիարդ յաճախագոյնս զգուշանայ՝ զի մի երբեք գայթակղեսցիս։ Զիա՞րդ անօրէն ոք զայլոց մեղս բառնայցէ և ջնջիցէ. ո՛չ ապաքէն վասն նորին իսկ սպանաւ՝ որ այնպէս ատեաց զմեղս, զի յանձին եւս կալաւ մեռանել՝ զի ջնջեսցէ։ Եւ ընդէ՞ր ասաց՝ վերացոյց կամ վերացուսցէ. այլ զի զխաչն ակնարկիցէ, եթէ անդ եհան զնա և բեեռեաց զնա ընդ խաչին. զի խաչն՝ լուծումն եղև մեղաց։

## ԳԼՈՒԽ ԾԴ

«Ուրախ լեր ամուլ՝ որ ոչ ծնար»։ Ակիւղաս ասէ. Երգեա բարուոք զօրհնութիւնդ, խնճեա։ «Գոչեա, գուժեա՝ որ ոչդ երկնեցեր»։ Մի՛ ինչ ամաչիցես զի նախատեցարդ. «Զի բազում են որդիք այրոյդ՝ քան զարամբոյն։ Զի այսպէս ասէ Տէր. ընդարձակեա զտեղի խորանի քո և զսրահից քոց»։ Իսկ այլքն ասեն, եթէ Զփեղկս խորանից քոց։ «Հաստատեա, մի խնայեր»։ Ակիւղաս ասէ. Պարզեսցին և մի՛ քակեսցին։ «Երկայնեա զտոռունս քո»։ Ակիւղաս ասէ. Ցիւրեա զապաւանդակս քո։ «Հաստատեա զցիցս քո. յաջ և յահեակ թռուցիր. և զաւակն քո զհեթանոսս ժառանգեսցէ, և զքաղաքս աւերեալս շինեսցես»։ Ակնարկեաց այստ և վասն դարձին. բայց յեկեղեցի իսկ կատարեցաւ ճշմարտութեամբ, քանզի ամուլ էր յառաքինութեանց, և պտուղ ինչ երբեք ոչ տայր։ Տեսանես, զի ած շրջեաց զիրան, և այս ընդ այլոց արար։

«Մի՛ երկնչիր՝ զի ամաչեսցես, և մի՛ պատկառիցես՝ վասն զի նախատեցար»։ Զի ոչ եթէ անմահ իցէ բարկութիւն իմ. բաւական եմ զեղեալսն հանգոյն չեղելոց հաստատել. 'ի նախատանս էիր, այսուհետև ոչ ես ըմբռնիցիս յումեքէ, և ազատեսցիս յամօթոյդ, և արարից հանգոյն այնմ՝ որ ոչ երբէք ըլկեցաւ։

«Զամօթն յաւիտենից մոռասցիս դու, և նախատինք այրութեան այլ ոչ ևս լինիցին քեզ յուշ»։ Զի այնպիսի ինչ բարութիւնս պարգևէ Աստուած, որք ոչ միայն զվիշտս անցուցանիցեն, այլ և բնաւ զյիշատակս վշտացն մոռացուցանիցեն. քանզի այսպիսի իմն է առաւելութիւն պարգևացն Աստուծոյ։ «Զի Տէր է որ առնէ քեզ զայդ. Տէր սաբաւովթ անուն է նորա. նա ինքն Աստուած ամենայն երկրի կոչեսցի»։ Մեծ է խոստումնն, ազանչելի աւետիքն. այլ մի՛ ինչ զարմանայցես, զի Տէր է որ առնէ զայդ ամենայն. որում ամենայն ինչ դիւրին է, որ փրկելոցն է զքեզ՝ նա ինքն Տէր Աստուած ամենայն երկրի կոչեսցի։ Բայց յետոյ կոչեսցի՝ յորժամ իրքդ 'ի գլուխ ելանիցեն. ապա առեմն բարուոք ասաց՝ եթէ զեկեղեցւոյ ձառէ, որ և կատարեցաւ իսկ յեկեղեցի. քանզի երբ Աստուած ամենայն երկրի կոչեցաւ, եթէ ոչ 'ի գալստեանն, զի բարձաւ անուն հեթանոսութեանն և կոչեցան ամենեքեան յանուն Քրիստոսի։

«Ոչ եթէ իբրև զկին մի թողեալ, լքեալ, տարակուսեալ՝ կոչեաց զքեզ Տէր Աստուած»։ Սիմաքոս և Թէոդիտոնն ասեն. Վշտագնեալ։ Թէպէտ և այնպիսի իսկ էիր 'ի մանկութենէ՝ զի ատէիր զխաղաղութիւն. ոչ, ասէ, նոյնպէս լինիցի եթէ հանապազ ատիցեմ զքեզ. առ ժամանակ մի ատեցար։ Եւ առ այնպիսի ատեցեալ կանայս դժուարաւ իմն լինի սէր, որք յառաջնումն իսկ ատեցին. զի ամենայն կին զինչ և ոք իցէ, այնպէս իմն դէպ լիցէ զի 'ի մանկութեանն սիրիցի. իսկ աստ աւասիկ ասէ, թէ «Առ ժամանակ մի թողի զքեզ, և ողորմութեամբ մեծաւ ողորմեցայց քեզ»։ Ակիւղաս ասէ. Գումարեցից զքեզ. Թէոդիտոն, թէ Ժողովեցից զքեզ։ Զի այնպիսի ոք կին և 'ի մտէ իմն սովոր է ելանել, և ոչ եթէ սիրել միւսանգամ։ Բայց սակայն դու վայելեսցես 'ի բազում մար-

դատաւորութեան իմում. և թողուլն առ ժամանակ մի՝ և այն սիրոյ նշանակ է, և մեծի ողորմութեան լինելոյ պատճառք. քանզի բազում անգամ բարութիւնք յայնժամ լինելոց են, յորժամ ցամնուցու որք և ապա ցածուցանիցէ զցասումն։

«Առ սակաւ ինչ դարձուցի զերեսս իմ 'ի քէն»։ Սիմաքոս ասէ. Առ սակաւ ինչ է սրտմտութիւնդ։ «Եւ ողորմութեամբ յաւիտենից, ողորմեցայց քեզ, ասէ Տէր, որ փրկեացն զքեզ 'ի ջուրցն որ առ Նոյիւ»։ Իսկ այլքն ասեն. Որպէս աւուրքն Նոյի. զի զամենայն իսկ մարդկան բնութիւն ապրեցոյց 'ի բարկութենէն սակաւուքն՝ որ ապրեցան։ Եւ զսա զիա՞րդ արդեւք փրկեաց. զի ահաւանիկ զամենեսեան ընջեաց ջրհեղեղն. այլ զի որ ապրեցանն՝ սոցա նախնիք էին. յիշեցուցանէ թէ որպէս զնոսա 'ի սաստիկ ջրհեղեղէն փրկեցի, և զձեզ կարող եմ 'ի գերութենէդ զերծուցանել։ Միթէ չփոխեցի՞ զբարկութիւնն 'ի մարդասիրութիւն. զի որպէս անդն եղև, նոյնպէս առ ձեզ լինելոց է։

«Այս է ինձ, որպէս երդուայ Նմա 'ի ժամանակին յայնմիկ՝ երկրի այլ ոչ բարկանալ»։ Բայց սակայն ոչ երդուաւ, այլ զի զոցա միտս հաճիցէ՝ ասէ։ «Ոչ ապառնալեօք իմովք զլերինս փոփոխել, և ոչ բլուրք քո շարժեսցին»։ Ոչ եթէ զի լերինք իսկ փոփոխեցան, կամ թէ բլուրք 'ի հիմանէ խախտեցան, այլ զշփոթութիւնն և զխռովութիւնն ակնարկէ այսուիկ։ Երդուայ, ասէ, ոչ միայն ջրհեղեղ չածել, այլ և ոչ այլ ինչ խռովութիւն կամ շարժումն առհասարակ ընդ ամենայն երկիր, այլ թոյլ ետու միշտ կալ 'ի հաստատութեան։ Եւ այժմ երդնում քեզ վասն գերութեանդ, թէ ոչ ևս թողից զքեզ լքել 'ի թշնամեացդ. զի թէ այնչափ չարիք յառաջ քան զջրհեղեղն գործեցան, սակայն թողի զաւակ մարդկան իմով մարդասիրութեամբ, «Նոյնպէս և ոչ 'ի քէն պակասեսցէ ողորմութիւն իմ, և ոչ ուխտ խաղաղութեան իմոյ 'ի քէն այլ ոչ անցցէ»։ Ակիւղաս՝ Դաշն, ասէ։

«Զի Տէր այսպէս ասաց. Հաշտեալ եմ ընդ քեզ, տառապեալդ և աստանդեալդ, և չիցես մխիթարե-

լոց. ահաւասիկ պատրաստեմ ես կարկեհան զքարինս քո»: Ակիւղաս՝ Ընըստիմ, ասէ՝ փոխանակ կարկեհանին, այլ իմն օրինակ ականց[1]. Սիմաքոս՝ Ստիբիթէ ըստէմն. իսկ եբրայեցին՝ Բափփուխ[2]: «Եւ զհիմունս քո շափիղայ»: Եբրայեցին՝ Ուզամթի քողքող վամթովթա[3], ասէ: Ակիւղաս՝ Եւ արարից քողքող զմահարձանս քո: Թէոդիտոնն՝ Եւ արարից կարկեհանեայ զապարանս քո: «Եւ արկից զմահարձանս քո յասպիս. և զդրունս քո յականս վանակայս»: Ակիւղաս ասէ. Ցականս ծակոտկէնս. Սիմաքոս և Թէոդիտոնն՝ Ցականց քանդակելոց, ասեն:

«Ածից զքեզ պարիսպ ընտիր ընտիր յականց պատուականաց»: Տես, զի յորժամ ոչ մխիթարեցիմք, յայնժամ մեծամեծ բարութիւնք լինին մեզ 'ի մխիթարութիւն և մեծամեծ շահք: «Եւ զդրունս քո 'ի տախտակս վանակայս»: Զայս ըստ առաւելութեան իմն ասէ, զի յորդորեսցէ հանել զնոսա 'ի գերութենէն. զի յորժամ ասիցէ, եթէ Թեւք աղաւնւոյ արծաթապատ և Թիկնամէջք նորա 'ի գոյն ոսկւոյ, իբրև ոչ եթէ այնպիսի աղաւնի ոք երբեք ետես. զի այսպիսի բանիւք զբարութիւնսն որ լինելոց էին նոցա՝ ակնարկէ. որպէս վերագոյնն 'ի սմին մարգարէի իսկ ասէ,

1. Յոր. Ականց:

2 Ակիւղաս. Ἰδοὺ καταχλινῶ ἐν στίμμεῖ τοὺς λίθους σου. իսկ Սիմաքոս. Ἰδοὺ ἐγὼ συντίθυμι στίμμιας τοὺς λίθους σου. այսպէս և Թէոդիտոնն. Ἰδοὺ ἐγὼ ἐμβαλῶ ἐν στίμμι τοὺς λίθους σου. և եբրայեցի բառն בפוך (բափփուխ), որք չորեքեան ևս նշանակեն զծարուր կամ զծարրուկ:

3 Իմաստ եբրայեցերէն եգեալ ստորև՝ ոչ է թարգմանութիւն բանիցն՝ «Եւ զհիմունս քո շափիղայ», որպէս համարի մեկնիչն, այլ է եբրայեցերէնն յաջորդ իմաստիցն. «Եւ արկից զմահարձանս քո յասպիս»: Եբրայեցին այսպէս ունի զկարգ բանիցն.

אבניך ויסדתיך בספירים׃

որ է. Աբանայխ ուիսատթիխ պասափիրիմ. այսինքն է. «Արկից քեզ հիմունս շափիղայ»:

ושמתי כדכד שמשתיך׃

որ է. Ուէշամթի քատքօտ շիմշօթայիխ. այսինքն է. Եւ զպատնէշս պարըսպաց քոց (արարից) կարկեհանեայ: Ըստ բնագրի մեկնութեանս. «Եւ արկից զմահարձանս քո յասպիս»: Եւ ըստ բնագրի Աստուածաշունչ մատենին. «Եւ կանգնեցից զաշտարակս քո յասպիս»:

եթէ Եղիցի որ մնացեալ իցէ մարդն՝ իբրև զոսկին Ովփերայ, իբրև զոսկին ընդ Հուր անցեալ պատուական. զի որպէս անդ զչքնաղն ինչ առակէ ոսկւոյ, նոյնպէս և աստ զպատուական ինչ՝ ականց պատուականաց։ Զի՞նչ օգուտ էր այնպիսի ականք չլինել զքաղաքս. զի ոչ 'ի պարսպին շինած՝ այնպիսի ականք ինչ պիտոյ էին, և ոչ առ ընչիցն մեծութիւն այնչափ կարի յարգոյք. զի թէ վասն աշխարհիս կենաց, յորժամ նոքա 'ի հարուածս ինչ մատնէին և մխիթարութեան չլինէին ինչ արժանի, և զայն ամենայն այլք առնուին. ապա թէ 'ի յարութիւնն ինչ առնուցուն, և աղքատք վայելեսցեն այնպիսի բարութեամբք. սակայն և անդ ոչ եթէ այնպիսի մարմնաւոր իրաց պէտք են։ Եւ զի՞նչ օգուտ 'ի յարութենէ անտի իցէ, եթէ դարձեալ յայսպիսի կեանս յառնելոց իցեմք. զի անկելոյն պարտ է եթէ յայլ ինչ ազնուութիւնս կանգնեալ նորոգեսցին։

« Եւ զամենայն որդիս քո խրատեալս Աստուծոյ »։ Տեսանես, զի զառաքինութիւնս իմն յայտ առնէ։ « Եւ 'ի բազում խաղաղութեան մանկունք քո »։ Եւ զի՞նչ իցէ խրատեալքն Աստուծոյ, և 'ի բազում խաղաղութեան մանկունք քո. այսինքն՝ յարդարեալք լիցին կարգալիցք։ « Եւ արդարութեամբ շինեսջիր »։ Ակիւղաս ասէ. Հաստատեսջիր. Սիմաքոս և Թէոդիտոն, թէ Պատրաստեսջիր։

« Ի բաց լեր յանիրաւէ անտի, և մի երկիցես, և դողումն առ քեզ մի մերձեսցի »։ Եւ արդ, ազէ ասա. ընդէ՞ր իսկ երկնչիցիս. զի չիք ինչ այնպիսի վշտագին յորժամ 'ի չարիս ոք կեցցէ, ոչ զեղխ և ոչ տկարագոյն և ոչ դիւրածախ. զի այնպիսի կեանք իբրև ընդփոշի հողմոյ են և իբրև զխոտ և իբրև զեղէգն։ Եւ եթէ կամիս՝ քննեսցուք իսկ զիրսն. զի զչարէն թէպէտ և ամբաստան ոք չիցէ, հանապազ յահի և յերկիւղի և 'ի կասկածանս է. իսկ արդարոյն թէպէտ և բազում սուտ վկայք 'ի վերայ կուտիցին, աներկիւղ և անկասկած է, և ոչ ոք կարէ 'ի նմա ինչ դամագիտ լինել։ Եւ թէպէտ և զօր ինչ 'ի վերայ դայցէ, և ունիցին և տանջիցին, սակայն ոչ ինչ վնաս կարիցեն նմա առնել. և եթէ սպանանիցեն եւս, սակայն 'ի վախ-

Ճանինն իւրոյ ունի զվարս առաքինիս, յորժամ ոչ իւրև զմնասակար ոք մեռանիցի։ Այլ սակայն, ասեն, սպանանեն. և եթէ այդպէս չմեռանիցի, միթէ այլազգ ինչ չմեռանիցի. բայց ոչ իսկ մեռանի այնպիսին. կամ զի ոչ իսկ գիտիցես, զի բազում անգամ մահ՝ բազում լաւ է քան զկեանս, և բազմաց կեանք ողորմելիք՝ լաւ են քան զմահս այլոց։ Որպէս զի ամենայն ուրեք ոչ ինչ պարտ է խառնել զկեանն, և մի յամենայն վայրի փախչել՚ի վախճանէն, այլ՚ի չար վախճանէն. զի ոչ այս և ոչ միւսն առանձինն, ոչ յոռիս և ոչ յարութիւնս պիտանացու ինչ են, այլ՚ի կարգայն ընտրին՝ թէ որպիսի ինչ են։ Զինչ ինչ քան զմահն Յովհաննու կայր երանելի, և կամ զինչ թըշուառական քան զՀերովդին, զի վախճանեալն զկենդանին երկեցուցանէր. Լուաւ, ասէ, Հերովդէս զլուրն Յիսուսի. Յովհաննէս, ասէ, ուրեմն յարեաւ՚ի մեռելոց՝ զոր ես սպանի։ Եւ արդ, զայն քննեսցուք, կեանքն լաւ իցէ, եթէ բարուոքն կեալ. յայտ իսկ է թէ բարուոքն կեալ։ Դիտէր Յիսուս զայնասիկ՝ որք՚ի չարիսն կեցեն, և զչեղելոցն իբրև զեղելոց ձառէ. Լաւ էր, ասէ, նմա՝ եթէ բնաւ իսկ չէր ծնեալ մարդն այն. զի ցուցցէ եթէ չլինելն՝ քան զչարաչարն լինել լաւագոյն է. և այլուր, եթէ Երանի՛ իցէ մեռելոց՝ որ վաղուց իսկ իցեն մեռեալ քան զկենդանեացն. որպէս զի ոչ վայրապար ինչ կեալն լաւ իցէ, այլ բարուոքն կեալ. զի յորժամ այսպիսի ինչ չլինիցի՝ ոչ ապաքէն ամենայն մահ լաւ է քան զկեանս։ Եւ արդ, դուք իսկ ձերոց անձանցդ զո՞ր ըղձանայիք՚ի կեանս ձեր. թուի թէ զմահն Յովհաննու. զի մինն բիւրուց բիւր ամբաստանս ունէր, և յառաջ քան զայլն ամենայն՝ զիւրոց մտացն խիղճ, քանզի՚ի ցաւս հարեալ դողայր և սարսէր, և աստ՚ի հարուածս էր և անդ պատժոց և տանջանաց ակն ունէր. և միւսն հանգուցեալ դադարեալ՚ի հոգոց իբրև զմարտիկ մի նահատակ՝ որ պսակիցի յաղթութեամբ, և ամենայն ուրեք հնչեալ քարոզիցի առաքինութիւնն, եդեալ թագ՚ի գլուխ՝ կատարեաց զվաստակսն. զարմանալի եղև քաջութեամբքն, յարգեալ, գովեալ, ոչ միայն՚ի համակերպն ազգականաց, այլ՚ի վերինն զօրութեանցն՝ որք

լինէին տեսողք յաղթութեան նահատակին, 'ի հրեշտակայ՝ նոցին անուանակիցն, զի և նա հրեշտակ կոչէր, քանզի զհրեշտակաց համարձակութիւնն եցոյց յանձին։ Եւ արդ, ընդ ո՞ զարմանայցես, զո՞ գովեսցես. զՆերսէ՞ս եթէ զՊաւղոս. ո՞չ ապաքէն մինն յարքունական սպասս էր, և միւսն 'ի բանդի. և մինն սպանանէր, և միւսն մեռանէր։ Արդ իւրաքանչիւր 'ի ձէնջ իբրև զո՞ ըղձանայիք. իբրև զՆերսէ՞ս՝ որ սպան, եթէ իբրև զՊաւղոս՝ որ սպանաւն։ Եւ զի՞ պիտոյ իցէ զհին պատմութիւնս յիշել. իբրև զառնաւո՞րսն՝ որք կոտորէին՝ կամիք լինել, թէ իբրև զվկայսն՝ որք 'ի նոցանէն կոտորեցան։ Եւ արդ զի՞ պիտոյ իցէ հարցանել, որ արդիւնքն իսկ ընդ մեր տան պատասխանի. զի զնոսա բազում անգամ անիծանէք իսկ և եղկելիս համարիք, և սոցա ամ յամէ գայք խնդութեամբ առնել յիշատակս։ Եւ արդ, ոչ միայն զկենացն լինիցիմք կղկղաթ, այլ զբարիոքն կենաց, եթէ մեռանել հասանիցէ և եթէ կեալ։ Ոչ ասեմ, ասէ, եթէ վնասիցես ինչ, այլ զի և երկնչիցես իսկ ոչ. ըստ այնմ, եթէ Արդարն իբրև առեւծ յանձնապաստան է։ Ոչ այնպէս ինչ կարէ առանց նենգութեան առնել զոգիսն, որպէս յորժամ միտքն սուրբ իցեն 'ի խղճէ. և ոչ այնպէս ինչ նենգէ զոգիսն, որպէս մեղայն խորհուրդք և մտացն խիղճ։ Ո՞չ տեսանես, որպիսի՛ ոք մեծ և անուանի և հանճարեղ էր Դաւիթ, այլ յորժամ պատուհասեցաւն և յանդիմանեցաւ 'ի շինական և յաղքատ առնէն, որպիսի՛ խոնարհութիւն կալաւ յանձին. Մեղայ, ասէ, Տեառն. վասն այնորիկ իսկ և վաղվաղակի թողան նմա մեղքն։

«Զի ահաւադիկ եկք 'ի քեզ վասն իմ պանդխտեցին, և զքեզ ապաստան արասցեն»։ Զի տաց լինել քեզ նախանձելի վասն աստուածպաշտութեանն, զի բազումք ցանկանայցեն քեզ վասն բարւոք կարգացն։ Եւ ոչ այն սակաւ ինչ պարգևք իցեն, և յետ այնպիսի գերութեանն նախանձելի լինէր։ «Եւ զքեզ ապաստան արասցեն վասն իմ». զի ծանիցեն եթէ ոչ վասն իւրոյ ինչ արդարութեան, այլ վասն Աստուծոյ մարդասիրութեանն։ «Ահաւասիկ ես հաստատեմ զքեզ ոչ եթէ որպէս դարբին մի փքոմք զկայծակունս, և

յառաջ բերէ անօթ 'ի գործ »: Դարձեալ 'ի հաւա-
տարիմ իմն միտս ձգէ զնոսա. զի որպէս զարքինն զա-
պականեալ անօթն առնիցէ նոր՝ փքովքն և կայծա-
կամբք, նոյնպէս լինիցի, ասէ, քաղաքդ ձեր նորաշէն
նորակերտ. իբրև զանօթ ինչ նոր, որ այն ինչ ելեալ
իցէ 'ի բովյ և փայլիցէ, նոյնպէս և քաղաքն պայծա-
ռացեալ ծաղկիցէ 'ի դարձին:

« Այլ ես հաստատեցի զձեզ ոչ 'ի կորուստ. զա-
մենայն անօթ մերքենաւոր 'ի քեզ ոչ յաջողեցից »: Իսկ
այլքն ասեն, եթէ Ահաւասիկ ես հաստատեցից զքեզ
ոչ 'ի կորուստ, ապականել զամենայն անօթ հնարա-
կան: Վասն այնորիկ իսկ արարի զքեզ, ոչ զի կորու-
սից: Եւ ուստի՞ յայտ է. զի թէ 'ի կորուստ ինչ հաստա-
տեցի, բնաւ և առնէի ոչ զքեզ. և զի այս այսպէս է,
վկայեսցէ այն՝ զոր Ամենարուեստն ասէ, եթէ Ոչ
զուարճանայ Տէր ընդ կորուստ կենդանեաց. հաստա-
տեաց Աստուած 'ի լինել զամենայն, և 'ի փրկութիւն
են ծնունդք աշխարհի:

« Եւ ամենայն բարբառ որ յարիցէ 'ի վերայ քո՝ 'ի
դատաստանս պարտաստեսցես զնոսա. և պատժաւորքն
քո եղիցին 'ի նմա »: Բայց այլքն՝ Ամենաքեան կորի-
ցեն, ասեն: « Չի գոյ ժառանգութիւն պաշտօնէից
Տեառն. և դուք եղիջիք ինձ արդարք, ասէ Տէր »:
Այն իսկ է, Չի եթէ եւթն անգամ գլորիցի արդարն,
սակայն յարիցէ: « Եւ գոյ ժառանգութիւն պաշտօ-
նէից Տեառն »: Ցոյն բարի՝ որ լինելոց էր նոցա յետ
գերութեանն, և բարութիւնքն հաստատունք:

## ԳԼՈՒԽ ԾԵ

« Որ ծարաւիդ էք՝ երթայք 'ի ջուրս, և որք ոչդ
ունիք արծաթ՝ երթայք գնեցէք և արբջիք առանց
արծաթոյ »: Զլիութիւնն որ հանդերձեալն էր լինել՝
ակնարկէ: Գնեցէք, ասէ. և զիա՞րդ գնիցեն. արծա-
թոյ. այնպէս համարձակութեամբ առնուցուք ձրի,
որպէս որք արծաթոյն գնիցեն: Եւ իբրև զջուր դիւ-

րագլին՝ այնպէս լինիցին ձեզ ամենայն բարութիւնքն. զի յամենայն կողմանց բղխեսցէ ձեզ երկիրն զքաղցրութիւն։ Եւ զի՞նչ ևս զայլոց բարութեանցն ասիցեմ, ուր և գինի ևս և միս ոչ գնիցի արծաթով։ «Եւ վաստակքն ձեր չէին ցյագ»։ Զառաջին վաստակոցն ասէ թէ ջանայիք, տառապէիք, ժողովէիք, 'ի վերայ կցրէիք, և ևս չար նուազութիւնն լինէր. զի այնպէս իմն որ անօրէնութեամբ ինչ ժողովիցին ինչք, թէպէտ և շատ 'իցեն՝ սակաւք լինին. նոյնպէս և դուք զառաջինն տառապէիք և ոչ ինչ շահէիք, բայց այժմ մեծասջիք և առաւել վայելեսջիք։

«Լուարուք ինձ, և կերիջիք զբարութիւն, և վայելեսցեն 'ի բարութեան ոգիք ձեր»։ Տեսանե՞ս, զիարդ վարձուք պնդէ Աստուած զհնազանդութիւնն։ «Ունկըն դիք լսելեօք ձերովք, զհետ երթայք ճանապարհաց իմոց, լուարուք ինձ, և կեցցեն 'ի բարութեան ոգիք ձեր»։ Ոչ որպէս մեք ասեմք եթէ պարտիս հրապարակ լինել ինձ ամենայն բանի զոր ասիցեմ քեզ. այլ նա խոստանայ տալ փոխանակ հպատակութեանն. «Կեցցեն, ասէ, 'ի բարութեան ոգիք ձեր»։ Եւ եթէ զի՞նչ իցեն ոգւոցն կեանք, գիտէք իսկ ամենեքին. զի ոչ զմարմնոյն, այլ զհոգւոյն կենաց ասէ։ «Եւ եդից ընդ ձեզ ուխտ յաւիտենից զսրբութիւնսն Դաւթի հաւատարիմս»։ Զի որպէս նորա աւետիքն հաւատարիմ եղեն, նոյնպէս և ձերն հաստատուն լինիցի։ Եւ զի՞նչ իցեն սրբութիւնքն Դաւթի. ուղիղ կարգն, բարեկեցութիւնն, յաջողութիւնն. իսկ այլքն ասեն՝ զողորմութիւնսն. դարձեալ այն են սրբութիւնքն՝ զի իշխանութիւնն հաստատուն եկաց 'ի բուն։

«Ահաւասիկ 'ի վկայութիւն հեթանոսաց ետու զնա, իշխան և հեթանոսաց հրամանատար»։ Վկայութիւն Հրէից՝ 'ի հեթանոսս. ըստ այնմ, եթէ Յորժամ հեթանոսք՝ որ զօրէնս ինչ ոչ ունիցին, և բնութեամբ զօրինացն գործիցեն, նոքա որ զօրէնսն ոչ ունին՝ անձամբ անձանց իսկ օրէնք են։ «Հեթանոսք որք ոչ գիտէին՝ կարդասցեն առ քեզ. և ժողովուրդք որք ոչ ճանաչէին զքեզ՝ ապաստան արասցեն զքեզ»։ Բազում հեստութիւնն յանդիմանի Հրէից, յորժամ որք չգիտիցենն՝ պատուիցեն։ «Եւ զքեզ ապաստան արաս-

ցեն »: Տեսանե՞ս զԱստուծոյ բարերարութիւնն. զի թէպէտ և այնչափ ապախտաւորք էին, սակայն ևս յարգէր և գգուէր, եթէ զքեզ ապաստան արասցեն իբրև զփրկիչ և բարերար. ըստ այնմ, եթէ Աժիցեն՝ եկայք ելցուք 'ի լեառն Տեառն և 'ի տուն Աստուծոյ Յակովբայ: Եւ արդարև փրկիչ և բարերար եղև Աստուած ժողովրդեանն՝ ամենայն ազգաց. ոչ 'ի յայտնեաց և 'ի յերևելեաց պատերազմաց, այլ և յաներևութից, զի ետ ճանաչել նոքօք բազմաց զԱստուած: Եւ մի յանձանց ինչ քաջութիւնս ապաստան լինիցին, և իւրեանց համարեսցին զուղղութիւնն, ասէ. « Վասն Տեառն Աստուծոյ Իսրայելի, զի փառաւոր արար զքեզ »:

« Խնդրեցէ՛ք զՏէր, և յորժամ գտանիցէք՝ կարդաջիք առ նա »: Ոչ զի դոյզն ինչ կարդայցէք, այլ զի յամենայն մտաց և յամենայն սրտից խնդրիցէք զՏէր: Ո՞չ արդեւք ճանաչիցեմք զնա. այո, ասէ, ճանաչէք. այլ առաւել յայնժամ ճանաչէք յորժամ ուղիղ կարգս ինչ և զխաղաղութիւն ոգւոց ցուցանիցէք: « Եւ իբրև մերձեսցի առ ձեզ, թողցէ ամպարշտին զճանապարհ իւր »: Յորժամ զբարիսն պարգևեսցէ ձեզ, զոնեա յայնժամ դադարեցէք 'ի չարեաց. իսկ բազմաց չարեաց պատճառք՝ պարգևք Աստուծոյ լինին: « Եւ անօրէն զխորհուրդս իւր »: Ոչ միայն զգործս, այլ և զխորհուրդս՝ որ արմատ և աղբեւր են գործոցն: Զոգիսն, ասէ, սրբեցէ՛ք, և մի միայն զմարմինս. զպէտն և զիշխանականն. զի յորժամ իշխանն որ 'ի ձեզ իցէ՝ առողջ իցէ, ապա և որ ընդ իշխանաւն իցեն խորհուրդքն՝ 'ի վայելս աստուածպաշտութեան վայելեսցեն. ըստ այնմ, եթէ Ըստ իշխանի քաղաքին՝ և պաշտօնեայքն նորա. և այս ոչ եթէ առ քաղաքս միայն, այլ և առ մեր խորհուրդս:

« Եւ դարձցի առ Տէր, և գտցէ ողորմութիւն »: Եւ չէ մարթ այլազգ դառնալ, եթէ ոչ նախ 'ի չարեաց հրաժարիցէ. և ոչ ողորմութիւն գտանէ, եթէ ոչ զաղտն 'ի մտաց սրբիցէ: « Եւ բազմապատիկ թողցէ զմեղս ձեր »: Զի յորժամ դառնայցէք և սրբիցէք ըստ կամացն նորա[1]: « Զի ոչ են խորհուրդք իմ իբրև

1 Այսպէս յօրինակին:

զխորհուրդս ձեր, և ոչ ճանապարհք իմ իբրև զճանապարհս ձեր, ասէ Տէր»: Մինթէ իբրև զմարդիկ ոխակա՞լ իցեմ, և կամ իբրև զայր ոք աղքատ 'ի մարդասիրութենէ: «Այլ որպէս հեռի են երկինք յերկրէ»: Զի՞նչ խօսիս. ա՞յնչափ հեռի միայն իցեն. այլ քանզի դուք այնչափ միայն գիտէք զչափ, վասն այնորիկ այնմ ևեթ նմանեցուցանեմ զմարդասիրութիւնս իմ, որ առաւել բազմապատիկ անչափ է քան զայն. զի որչափ երկինք յերկրէ հեռի են, այնչափ և ևս բազմապատիկ առաւել՝ բարութիւնն Աստուծոյ 'ի մարդկան չարութենէ:

«Զի զոր օրինակ անձրև կամ ձիւն իջանէ յերկնից, և ոչ դառնայցէ, մինչև արբուցանիցէ զերկիր, ծնուցէ և բխեցուսցէ, և տացէ սերմն սերմանողի և հաց 'ի կերակուր, այնպէս եղիցի բանն՝ որ ելանէ 'ի բերանոյ իմմէ. մի՛ դարձցի, մինչև կատարեսցէ զամենայն զոր և կամիցիմ»: Զանզեղջ հրամանացն յայտ առնէ. զի որպէս անձրև կամ ձիւն ոչ դառնայցեն անդրէն յերկինս, այլ կատարեն զգործն յոր առաքեցան, նոյնպէս և հրամանքն իմ, ասէ, վճարեսցեն զամենայն ինչ զոր և կամիցիմ: Եւ զի մի՛ յառաջագոյն ասելոյ և վաղվաղակի չկատարելոյ՝ 'ի ծուլութիւնս ինչ անկանիցին, ասէ. Ոչ դարձցի: Եւ զի մի՛ սուտ ինչ համարիցիմք զսպառնալիսն կամ զաւետիսն, և փնասեսցիմք, ասէ. Ոչ են ճանապարհք իմ իբրև զճանապարհս ձեր:

«Եւ դիւրեցից զճանապարհս իմ և զհրամանս»: Իսկ այլքն ասեն, եթէ Զհրամանս իմ պահիջիք: «Զի ուրախութեամբ ելջիք, և ցնծութեամբ ուսանիջիք. զի լերինք և բարձունք խնդասցեն ընդունել զձեզ ուրախութեամբ, և ամենայն ծառք անտառի ծափս հարցեն յոստս իւրեանց, և փոխանակ դժնկին՝ նոճ ելցէ»: Սիմաքոս՝ փոխանակ դժնկին՝ Եղինճ, ասէ: Զառաւելութիւնսն յետ դարձին ակնարկէ այսու ամենայնիւ, և կամ զօրինացն խստութիւնս և չնորհաց զդիւրութիւնս: «Եւ եղիցի Տեառն յանուն և 'ի նշան յաւիտենից, և մի՛ պակասեսցէ»: Այսինքն, զոր խօստացայն՝ լիցի և կատարեսցի. և եթէ գտանի ինչ՝ որ ոչ եղև, վասն զի նոքա յետ դարձին չեղեն արժանի պարգևաց:

# ԳԼՈՒԽ ԾԶ

«Այսպէս ասէ Տէր. զգոյշ կացէք իրաւանց և գործեցէք զարդարութիւն, զի մերձ է փրկութիւն իմ, և ողորմութիւն իմ յայտնել»: Զոր օրինակ յորժամ կամիցի զնոսա ապրեցուցանել 'ի պատժոց, խրատէ զի բարւոք կենաց և ուղիղ կարգաց փոյթ յանձին ունիցին, որով կարիցեն մերժել զպատիժսն, նոյնպէս և յորժամ 'ի բարիս ինչ կամիցի ածել, խրատէ զի մի ծուլանայցեն և մերժեսցեն զբարիսն, և կամ թէ 'ի դիւրութեան զերախտիսն մոռանայցեն. ըստ այսմ, եթէ Գիրացաւ յուրացաւ ստուարացաւ: Պատրաստ է Աստուած, ասէ, առնել ձեզ բարի. մի ինչ անարժանս անձամբ առնիցէք զանձինս. Թէպէտ և 'ի մարդասիրութենէն և 'ի խնամոցն նորա լինի ամենայն ինչ, այլ ոչ կամի եթէ զմարդասիրութիւնն առնիցէք պատճառս ծուլութեանն: «Եւ ողորմութիւն իմ յայտնել»: Եւ ոչ ասաց եթէ լինել. զի ցուցցէ եթէ հանապազ է և պատրաստ կայ, և դուք էք որ ծածկէք յաճախութեամբ մեղաց ձերոց:

«Երանի՜ առն որ առնիցէ զայս, և մարդոյ որ պաշտպան լիցի սոցա, և պահիցէ զշաբաթս իմ և ոչ պղծիցէ, և պահիցէ զձեռս իւր 'ի գործելոյ զանիրաւութիւն»: Նախ վասն առաքինութեանն երանեալ է մարդն, զի ինքն իսկ առանձինն անձամբ տայ ըզվարձս՝ առաքինութիւնն. ապա և վասն նորին իսկ պահիցէ զշաբաթս չպղծել. զի սկիզբն և առաքինական ինչ կարգաց ըստ օրինացն՝ շաբաթուցն պահպանութիւնք էին: Իսկ եթէ կամիցիս քննել եթէ զինչ իցէ շաբաթ, զօրինացն իսկ պատուէրս՝ որ վասն աւուրն են՝ 'ի մէջ բերցուք. զի ոչ վայրապար ինչ այնպիսի պատուէրս ետ Աստուած վասն շաբաթու: Ոչ ինչ զբաղնուն երբեք մարմնաւոր իրօք 'ի շաբաթու, ոչ կերակուրս ինչ կազմեն, և ոչ այլ ինչ գործ գործեն 'ի շաբաթու, բայց որ կարի ինչ կարևորքն իցեն,

և չմարթիցի առանց այնր վճարել՝ այն միայն համարձակ է, այլ ամենայն ինչ փակեալ և արգելեալ է։ Զի թէ զամենայն աւուրս այնպէս խափանէին ՚ի չարեաց, և պարապորդ լինել հոգևոր իրաց, չէր ինչ ընդհատ ՚ի հրեշտակաց մարդկան բնութիւնս. զի չէր կալ ՚ի վաճառի, և ոչ զգինս ինչ տժգնել, ոչ ՚ի կապելանոցս և ոչ ՚ի հանութս. չէր գարման մարմնոյ. այլ այնպէս կայ Հրեայն ձեռակապ դեդերեալ տուայտեալ. ամենայն պէտք խափանեալ, ամենայն գործք դատարկացեալք, չարիք լռեալ, մեղք դադարեալ. ոչ վարէ ոք, ոչ հնձէ. բայց միայն զի թլփատեն, և եթէ անասուն ՚ի ջրհոր անկանիցի՝ հանեն։

«Եւ պահեսցէ զձեռս իւր՝ մի ինչ առնել անօրէնութիւն»։ Ցեւթն եւթն աւուր յիշատակք առաքինութեանց, լուր աստուածեղէն պատգամացն. փոյթ յանձին ունել կենացն յաւիտենից. Թէպէտ և ՚ի հարկէ ինչ իրքն լինիցին, սակայն կապեսցին զձեռս նոցա օրէնքն, զի մի կամով և մի ակամայ մեղանչիցեն. և եթէ հանապազ այնպէս դադարէին ՚ի չարեաց, հրեշտակաց վարս ցուցանէին յանձինս, և չէին գտեալ պարտապան արեան մարգարէից, արդարոցն կոտորուածոց, և ոչ անհնարին յանդգնութեանն՝ զի իշխեցին մտաբերել՝ արկանել ձեռս յօծեալն Աստուծոյ։ Տեսանե՞ս, որչափ ինչ լաւ ՚ի շաբաթուցն գործէին. քանզի գիտէր Աստուած եթէ չդադարեն երբէք ՚ի չարեաց, վասն այնորիկ պատուիրեաց պահել զշաբաթս, զի գոնեա ՚ի միում աւուր յեւթանցն՝ դադարեսցեն ՚ի չարեաց։

«Պահեսցէ զձեռս իւր առնել զանօրէնութիւն»։ Բարւոք ասէ՝ պահեսցէ. զի ոչ այնչափ փշոց և խոչից հարուածք կարիցեն զձեռս ապականել, որպէս մեղացն խայթոցք՝ որ հարկանիցեն և առնիցեն անզօր ՚ի զօրութենէ. քանզի մեծ իսկ է զօրութիւն ձեռաց յաղօթս մատուցանել և յողորմութիւնս առնել. նոքա իսկ են խոցոտիչք սատանայի, յորժամ սրբութեամբ առ Աստուած ամբառնայցեն։ Եւ եթէ կամիցիս ՚ի միտ առնուլ զզօրութիւն ձեռացն, տեսջի՛ր, զիա՛րդ արք և կանայք զձեռս քահանայից համբուրեն. ընդէ՞ր ոչ զգլուխ կամ զայլ ինչ յանդամոցն.

այլ զի նոցա հաւատացան մեծամեծք՝ լինել սպասաւորք անճառ խորհրդոցն, զի նոքօք ծնանի հոգևոր ծնունդն։ Տե՛ս զԱռաքեալսն, որպիսի՛ ինչ գործ ցուցանէին ձեռօքն անարատիւքն 'ի մեղաց. Յոր վերայ դնէին, ասէ, ձեռն, ընդունէին զՀոգին Սուրբ։ Նաև այժմ իսկ 'ի ձեռաց քահանայից սրբոց որչափ ինչ օգնութիւնք, որչափ ինչ բարիք պարգևին։

« Մի՛ ասիցէ օտարազգին՝ որ եկեալ յեցեալ իցէ 'ի Տէր, եթէ մերժէ զիս Տէր 'ի ժողովրդենէ իւրմէ »։ Տե՛ս, զիարդ նման են բանքս առաքելական բանից. Յորժամ հեթանոսք, ասէ, որ զօրէնս ոչ ունին, բնութեամբ զօրինացն գործիցեն, նոքա որ զօրէնսն ոչ ունին, անձամբ անձին իսկ օրէնք են. և դարձեալ, եթէ Թլփատութիւն օգնէ՝ եթէ զօրէնսն պահիցես. իսկ յորժամ անթլփատութիւնն զիրաւունս օրինացն պահիցէ, ո՞չ ապաքէն անթլփատութիւնն նորա 'ի թլփատութիւն համարեալ լիցի։ Չես ինչ ազգական Աբրահամու, այլ ըստ առաքինութեանցն ունիս ընդ նմա ազգականութիւն, ևս աւելի քան զբուն որդւոցն ազգականութեան։ Մի՛ կարծիցես եթէ նուազագոյն ինչ ճոխութիւնս ունիցիս քան զհեբրայեցւոցն՝ որ պարծէին 'ի նախնիսն՝ 'ի յԱբրահամ, 'ի Սահակ և 'ի Յակոբ։

« Մի՛ ասիցէ ներքինին եթէ ես եմ փայտ չոր »։ Քանզի բազումք յայլազգեացն յուժարէին ելանել ընդ հրեայս. զի մի՛ դանդաղեսցին ինչ 'ի խիստ կրօնից օրինացն, և կամ վասն որոշելոյ օտարութեանն՝ բառնայ զպատճառս 'ի միջոյ. զի ոգւոցն առաքինութեանց, ասէ, միայն պէտք են, և ոչ այլ ինչ ծանր օրինացն։

« Զի այսպէս ասէ Տէր ներքինիս՝ որք պահեն ըզպահպանութիւնս իմ և ընտրիցեն զոր ինչ կամիցիմ »։ Եւ բարիոք ասաց թէ ընտրիցեն զոր ինչ կամիցիմն. զի մի՛ զզոհսն և զթլփատութիւնս մարմնոյ միայն բաւական համարեսցին 'ի փրկութիւն, այլ զի յոգւոցն առաքինութիւնս փութասցեն, և մի՛ 'ի մարմնաւորական սրբութիւնս ապաստան լինիցին։ « Եւ վերակացու լինիցին ուխտին իմոյ »։ Եւ բարւոք ասաց եթէ վերակացու լինիցին. զի մեծաւ զգուշութեամբ պարտ

էր պատկառ կալ օրինացն՝ որ ըստ հոգւոցն էին, և մի այսր անդր հարկանել յաւելուածովքն։

« Եւ տաց, ասէ, նոցա 'ի տան իմում և 'ի պարսպին իմում տեղի անուանի առաւել քան ուստերաց և դստերաց իմոց, և անուն յաւիտենից տաց նոցա »։ Վասն այնորիկ իսկ ցանկալի են գործքն, զի զյիշատակն մեր անմահ պահեն, և ոչ տան ժամանակաց ածել 'ի մոռացօնս։ « Եւ անուն յաւիտենից առաւել քան ուստերաց և դստերաց »։ Յիրաւի իսկ. զի այն ըստ բնութեանն է, և այս ըստ կամաց. զի այս 'ի հարկէ, և այն ըստ առաքինութեանց։ Եւ լաւ իսկ է առաքինութեանն անունն՝ քան զուստերաց և զդստերաց. այլ զի մի յիշեցիմք եթէ, այլ զի 'ի բարիսն յիշեցիմք, զի մի 'ի սուտ կարծեացն պատիժս տանիցեմք. զի որ 'ի չարիս ինչ անուանիցի, յետ չարեացն կորստեան՝ և նա կորստական է։ Անուանի է Յուդաս ընդ ամենայն երկիր, այլ 'ի չար և 'ի սատակումն իւրոյ գլխոյն. անուանի էր Պաւղոս, այլ 'ի բարի և յօգուտ յիշելեացն։ Եւ զայս ոչ եթէ վայրապար ինչ ասացի, այլ քանզի տեսանեմ զբազումս՝ զի ապարանս գեղեցիկս շինեն, և գերեզմանս նկարեալ հաստատեն, ոչ վասն այլ իրիք, այլ յորժամ վախճանիցին՝ անուն և յիշատակ շինուածովքն թողուցուն յերկրի։ Ցուրտ և անօգուտ մխիթարութիւն շահին անձանց յայնպիսի հայթայթանաց։ Զինչ օգուտ իցէ մեռելոյ և անզգայի շինուածոցն պաճուճանք, յորժամ ասիցեն եթէ այսր անուան են ապարանքն, այսր անուան է շիրիմդ. և օգուտ ինչ չիք, բայց վնաս մեծ. զի իբրև կարճամըտի և անքատի և ագահի և յափշտակողի անուն բամբասիցի, եթէ զորբոյ յափշտակեաց և զայրիս մերկացոյց՝ զի գերեզմանս շինեսցէ և շիրիմս կանգնեսցէ. և այն կանգնեալ կայցէ իբրև զարձան մի անօգուտ, ամբաստան չարեացն նորա և յիշատակ ապիրատութեանցն. զի և որք ողորմել կամիցին՝ չողորմիցին, զի ոչ ինչ այլ աւելի գործիցեն, այլ զի անմահական ամբաստանութիւնս թողուցուն այնու կենդանեաց. քանզի անօգուտ շիրիմ իսկ կանգնեալ թողուցուս յանուն և 'ի պարծանս։ Հնարեաց թողուլ, ով մարդ, անուն և յիշատակ՝ մարդիկ խօսուն, որ կարիցեն

պատմել միշտ զքո ինչ առաքինութիւնս, եթէ նովաւ կեցաք, նովաւ փրկեցաք 'ի վշտաց, նովաւ մխիթարեցաք յաղքատութենէ, և ելաք 'ի կարօտոյ. այն են յիշատակ և անուն՝ յորժամ խօսունքն և իմաստունք վայելեսցեն, ոչ եթէ քարն և բուռն և հողն, այլ մարդիկն՝ որ գոհանայցեն զԱստուծոյ վասն քո։

«Եւ օտարազգիսն՝ ասէ Տէր, որ եկեալ յեցեալ իցեն 'ի Տէր. ծառայել նմա և սիրել զանուն Տեառն, լինել նմա 'ի ծառայս և յաղախնայս, և զամենեսին՝ ոյք պահիցեն զշաբաթս իմ չպղծել, և վերակացու լինիցին ուխտին իմոյ, տարայց զնոսա 'ի լեառնն սուրբ, և ուրախ արարից զնոսա 'ի տուն աղօթից իմոց. ողջակէզք նոցա և պատարագք ընդունելի լինիցին»։ Տեսանես զկարգ պատարագացն, ոչ եթէ զայլ ինչ վարս սրբեն, այլ յորժամ այլ վարքն նախամեծար լինիցին, ապա և նոքա սուրբք և ընդունելիք լինին։ «Զի տուն իմ տուն աղօթից կոչեսցի ամենայն հեթանոսաց»։ Տեսանես, զի 'ի վաղուց հետէ եղև գընաց հեթանոսաց մտանել 'ի տուն Աստուծոյ. անդըստին 'ի վաղուց իսկ բացեալ էր դուռնն։ Եւ արդ, զիա՞րդ մեղադիր լինիս Քրիստոսի, ով Հրեայդ, յորժամ յԵսայեայ լսիցես զդոյն բողոքեալ։ Տես և զօրէնսն իսկ՝ զի զնոյն փութային հնարել, բայց չէին կարող. զի զամենայն ինչ ընդ զոհիւք կամէին փակել։

«Տուն իմ տուն աղօթից կոչեսցի ամենայն հեթանոսաց, ասէ Տէր, որ ժողովէ զցրուեալսն Իսրայելի. ժողովեցից 'ի վերայ նոցա ժողովս. և ամենայն գազանք վայրենիք եկայք, կերայք. ամենայն գազանք անտառի եկայք, տեսէ՛ք»։ Զի մի՛ դժկամակ ինչ լինիցին Հրեայք ընդ հաղորդելն նոցա հեթանոսաց, զանձինս առ լլկա ունելով, յիշեցուցանէ նոցա զերախտիսն, թէ զձեզ ցրուեցի և ժողովեցից. ընաւ ասելն իսկ, եթէ ժողովեցից 'ի վերայ նորա միանգամայն զամենայն գազանս վայրենիս, եկայք, կերայք, ամենայն գազանք վայրենի, զայն իմն յայտ առնէ։

Քանզի ընդ օտարազգիսն խօսէր, ասէ ամենայն համարձակութեամբ զվարսն հրէականս. և եթէ վասն էր թոյլ ետ նոցա երթալ յերկիրն օտար, և եթէ նա

զնոստ ընկեց յերեսաց՝ ըստ առաքելական բարբառոյն, որ ասէ. Չի թէ 'ի բուն ոստն ոչ խնայեաց, մի՛ երբեք և 'ի քեզ ոչ խնայիցէ։ Ասացի, ասէ, թէ եկայք, կերայք, ամենայն գազանք անտառի։ Եւ յիրաւի իսկ գազանս կոչէ զհեթանոսս՝ վասն վայրենական բարուցն, զի այնու իսկ զատին 'ի միմեանց գազանք և մարդիկ. զի թէ վարուքն ոչ փոխիցէ զբարսն, չէ ինչ ընդհատ 'ի վայրի գազանաց՝ մարդն։ Որպէս և մեք իսկ բազում անգամ զչարս և զմարդատեացս՝ գազանս վայրենիս կոչեմք. և ոչ բաւական համարիմք լոկ գազանս կոչել, այլ զի ամենևին իսկ զբարկ միտսն յայտ առնիցեմք, վերադրաւն հանդերձ՝ գազանս վայրենիս կոչեմք. և դարձեալ յորժամ և զայն ևս չհամարիմք բաւական՝ և դևս ևս անուանեմք, և դևս չարս, դըժընդակս։ Ոչ զի մարմին ունի մարդ՝ այն ինչ բաւական իցէ զչափ և զպայման մարդկութեան յայտ առնել, այլ նախ պարտ է յոգւոցն կողմանէ մարդ երևել. քանզի և մարմինն յայն սակս իսկ կազմեալ է, զի սպասաւոր և պաշտօնեայ իցէ ոգւոյն. իսկ յորժամ միտքն 'ի վայրենեաց բարսն դառնայցեն, զինչ օգուտ իցէ 'ի քնարէն, յորժամ քնարահարն եղծանիցի։ Վայրենացաւ երբեմն Նաբուքոդոնոսոր. մարմինն մարդոյ կայր, բայց կերակուր և բնակութիւն և այլ ևս բարք՝ անասնականք եղեն։ Եւ ո՛րչափ իցէ և այժմ՝ որ նմանիցեն բարոյիւք. երանի թէ ընդ վայրագան եղանէին, և խոտ ճարակէին, և ոչ զմարմինս մարդկան քանդէին, և ոչ զարիւնս ըմպէին, և զսրարս և զվաստակս զայլոց յափշտակէին. թէպէտ և գազանացն չիցեն այնպիսի բարոյք՝ եթէ զմիմեանս ուտիցեն։

«Տեսէ՛ք, զի կուրացան ամենեքեան, և ոչ գիտացին զհանճար. ամենեքեան շունք են համրք»։ Իսկ այլքն ասեն. Չկարեն հաչել։ Եւ արդ, երկայնամտիմն արարեալ զբանն՝ յանձնէ բամբասել զչարութիւնն Հրէից. զպատիժսն ասէ և զպատճառս պատժոցն, և եթէ անհանճարք էին և կուրացան. և ոչ եթէ զմարմնոց ինչ կուրութիւն ասէ, այլ զմտացն։ Եւ ամենեքեան, ասէ. և այն իսկ աղէտք են, զի ամենեքեան շունք համրք եղեն՝ որք ոչ կարիցեն հաչել։

Չիք ինչ քան պշուծս բարեբարս 'ի գազանս. ընդ որ և իմաստութիւնք Յունաց զարմանային, և յօրինակ իմաստասիրութեան առնուին զբարս բարեբար անասնոյն, որ զընտանիսն անվրէպ ճանաչէ, և յօտարաց փախըստական լինի. զի թէ և 'ի սովս մեռանիցի, սակայն զիւր տէրն ոչ թողու. և աւելի այն լաւութիւն է, զի զընտանին և զօտարն որոշել գիտէ։ Իսկ նոքա զհակառակն նորին, զի ոչ հաչէին յօտարս. զբարերարութիւնն այնպիսի անասնոց՝ կորուսին յանձանց. քանզի ոչ կռուէին ընդ գէս վնասակարս, և ոչ փախչէին 'ի վնասակարացն, այլ իբրև 'ի քուն իմն 'ի խորարթուն՝ ետուն զանձինս յափշութիւնն. իբրև թմբիր ինչ առեալ կամ կոնիան, որ է խնդակոթ, այնպէս համարձակ իմն տային ամենեցուն մուտ, բերկրեալ 'ի չարիսն իւրեանց. և եթէ ոչ կարէին՝ չէր ինչ մեղ, այլ զի կարէին, և ոչ կամէին. և քանզի ոչ կամէին, այնու և զզօրութեանն կար բառնային յանձանց։ Ոչ կարէ, ասէ, աշխարհ զձեզ ատել. և ոչ թէ չկարէր ատել, այլ չկամէր. և յայտ է եթէ չկարելն ասա՝ չկամել է։ Որպէս և մեք բազում անգամ ասեմք, եթէ չկարէ այս անուն ծառայ լաւ լինել. և յայտ առնեմք եթէ չկամի լինել. զի թէ չկարէր, և ոչ մեղ ոք դնէր. այսպիսի ինչ, չկարեմ ընդ երկինս թռչել, զի թէպէտ և կամիցիմ՝ չեմ կարող։

«Յերազանսն յանկողինս, սիրեն զնիրհել»։ Ինձ այսպէս թուի թէ և զսուտ մարգարէիցն ասիցէ զայս, և զայնցանէ՝ որք 'ի ծանրարթուն քուն տացեն զանձինս։ Դարձեալ միւս ևս չարիք. «Զի իբրև պշուծս լիրբս են, և ոչ գիտեն զյագուրդ. և են չարք, և ոչ ճանաչեն զհանճար»։ Որկորեայք, անզօրք, բամբասողք. ուր զբարութիւնն և զքաջութիւնն պարտ էր ցուցանել՝ զվատութիւն և զծուլութիւն յառաջ բերին. ուր զհեզութիւնն և զհանդարտութիւնն՝ անդ զյանդգնութիւն և զլրբութիւն ցուցին։ Եւ տես, զի զառաքինութիւնն ունէին, և 'ի չարիս դարձուցին զնոյն, զի ոչ 'ի դէպ վարեցան նովաւ, և ոչ 'ի պատշաճ ժամանակի։ Եւ զոր ասեմս այսպիսի ինչ է. բարւոք է հեզութիւն, այլ 'ի պատշաճ ժամանակի. բարւոք է համարձակութիւն, այլ զի 'ի դիմացն չխոտորիցի. զի

չիք ինչ 'ի սոցանէ թէ առանձինն բարի իցէ և կամ թէ ոչ նոյնպիսի: Է, ասէ, ամօթ՝ որ ածէ զմեղս, և է ամօթ՝ որ ածէ զփառս և զշնորհս. և է յանդիմանութիւն՝ որ չէ բարւոք, և է լռութիւն՝ հաւասար իմաստութեան. է որ յաճախէ 'ի բանս, և այնպիսին ատելի լինի: Տեսանե՞ս, զի ամենայն ուրեք ըստ այնոցիկ է որ պատշաճն գնայցեն, կամ ոչ ինչ պատշաճագոյնս. զի եթէ բնութեամբ այնպիսիք էին, թերևս դանդաղէր ինչ 'ի նոցանէ բնութիւնն. իսկ նա աւանիկ ոչ բնութեամբ ինչ, այլ ըստ ծուլութեանն, և ոչ 'ի դէպն գնալոյ համրացեալք էին. ամենայն ուրեք իսկ պարտ էր նոցա այնպիսի լինել:

« Ջալք են՝ և ոչ ճանաչեն զհանճար »: Տեսանե՞ս, որպիսի՛ անմտութիւն գործէ չարութիւնն և անհնարին մոլորութիւն. ևս չար քան զայնոսիկ՝ որ 'ի ծնէ իսկ մորուքն փոքրագլուխ ծնանիցին. այսինքն զանոպայիցն ասեմ; որ քան զխայտառակսն ևս խայտառակք իցեն, թշուառականք, հէքք և եղկելիք և բազում արտասուաց և լալոյ արժանի. զի զնոսա բնութեանն նուազութիւն փոքր մի ապրեցուցանէ 'ի բամբասանաց, իսկ սոքա յո՞ փախչիցին, որք անձամբ զանձինս արարին մորոսս, և անոպայ են:

« Ամենեքեան ըստ ճանապարհաց իւրեանց գնային, իւրաքանչիւր 'ի միասին »: Այսինքն՝ ըստ անձին դիւրի, ըստ իւրաքանչիւր ցանկութեան: Եւ ուստի՞ իցեն չար ցանկութիւնքն. ոչ բնութեան ինչ, այլ 'ի կամաց. Ցանկութիւն, ասէ, արդարոյ՝ ամենայն բարութիւն է. և Ցանկութիւնք, ասէ, արդարոց՝ քաղցրացուցանեն զանձինս: Եւ յայտ է եթէ ոչ 'ի բնութենէն ինչ է ցանկալն չարեաց, այլ 'ի չար կամաց. զոր օրինակ, այլ ցանկութիւն առողջացն են, և այլ ցանկութիւն հիւանդացն. զի կիսոցն արմատքն յախտիցն են, և կիսոցն յառողջութենէն. նոյնպէս և աստ: Տեսցուք, զինչ ցանկանայցէ արդարն. Որպէս փափաքէ, ասէ, եղջերու յաղբերս ջուրց, այնպէս փափաքէ անձն իմ առ քեզ Աստուած. ծարաւի է անձն իմ առ քեզ, Աստուած կենդանի. և դարձեալ, եթէ Նուաղեաց սիրտ իմ և մարմին իմ յուսալ առ Աստուած. և դարձեալ, եթէ Ցանկայ և փափագէ անձն իմ 'ի գաւիթս

Տեառն։ Տեսցուք, որում ցանկանայցէ չարն. ամպա-
րըշտութեանն չարեաց՝ զամենայն օր. քանզի ծնկին
'ի նոյն ագիքն և միտքն. իսկ զարդարոյն առէ. Բազում
մարգարէք և արդարք ցանկացան տեսանել՝ զոր դուքն
տեսանէք, և ոչ տեսին։ Եւ զի ըստ բնութեանն է
բարեացն ցանկալն, և արտաքոյ բնութեանն՝ չարեացն
տենչանալ, լուր Պաւղոսի՝ որ ասէրն, եթէ Զինչ ըն-
տրեցից ոչ գիտեմ. նեղեալ եմ յերկոցունց. զի ցան-
կացեալ եմ վախճանել և ընդ Քրիստոսի լինել, և ևս
կարևոր համարիմ կալ մնալ 'ի մարմնիս վասն ձեր։
Եւ թեթև համարէր զառժամայն նեղութիւնսն. զի
թէ բնութեամբ ինչ ընդդէմ նոցին, ապա ոչ թեթև
կոչէր զնեղութիւնսն։ Եւ դու մի զհիւանդաց ինչ ճառս
ընդդէմ բերիցես, քանզի և 'ի քէն իսկ՝ քեզ ցուցա-
նելոց եմ օրինակ. ոչ թէ զՊաւղոսէ ինչ առիցեմ, այլ
զձէնջ՝ որ անասնոց բարուց ցանկացեալ էք. զբարե-
կեցութիւնն զի՞նչ համարիք. բնութեանն ինչ այն-
պիսի իցէ, եթէ արտաքոյ քան զբնութիւնն. այլ են
ոմանք իբրև բնակ իւր համարին զիրսն. և արդ յայն-
մանէ զբնութիւնն ինչ խոտիցեմք. քաւ լիցի։ Իսկ զա-
րուադիտութեան անօրէն խառնակութիւնսն՝ որք զօ-
րէնս բնութեանն թշնամանեն, ըստ բնութեանն հա-
մարիցիս, եթէ արտաքոյ քան զբնութիւնն. յայտ իսկ
է եթէ արտաքոյ քան զբնութիւնն է. քանզի և ան-
զաւակութիւն՝ անօրէն խառնակութեանն պուշակ է.
որոց և օրէնսդիրք և ամենեքին իսկ պատիժք մահու
'ի վերայ եդին։ Եւ արդ, զի բազմաց ըստ բնութեանն
իւր թուի, միթէ ըստ բնութեանն ինչ իցէ, և ո՞չ ա-
ռաւել քան զբնութիւնն. և 'ի կանանց ազգի՝ թշնա-
մանեցին զօրէնս՝ անօրէն արուադիտութեանն խառ-
նակութեամբ. զի զոտարոտին սիրեցին, և ոչ զըն-
տանին. ո՞չ ապաքէն յայտ է՝ զի արտաքոյ քան զբնու-
թիւնն է։ Եւ ընկերին կնոջն ցանկանալ 'ի շնութիւնս,
ո՞չ ապաքէն արտաքոյ քան զբնութիւնն իցէ. և զիւրն
ևեթ բաւական համարել՝ այն ըստ բնութեանն է։
Իսկ ընչից ցանկութիւն չիցէ՞ արտաքոյ քան զբնու-
թիւնն. և արդարև իսկ, թէպէտ և մեք չկամիցիմք
յանձն առնուլ, որպէս և նոցա չթուի արտաքոյ քան
զբնութիւն՝ անառակն խառնակութիւնն. և չթուիցի՞

քեզ՝ յորժամ 'ի ցանկութեանց հեռի իցես, մանա֊
ւանդ առողջագոյն իցես. նոյնպէս և ընչիցն ցանկու֊
թիւն չթուիցի՞ քեզ արտաքոյ քան զբնութիւնն, զի
ոչ պարապեն յախտէ ընչասէրք։ Իսկ յորժամ առ
այնոսիկ՝ որք կարի առողջքն իցեն՝ գայցես, ապա առ֊
նուս 'ի միտ՝ եթէ արտաքոյ քան զբնութիւնն է ընչից
ցանկանալ, և յագահութիւնս յոլովել. որպէս և ասէ
իսկ հնարագէտն Առաքեալ, եթէ Ճնշեմ զմարմինս
իմ և հնազանդեցուցանեմ, գուցէ որ այլոց քարոզե֊
ցի, և ես գլխովին անպիտան գտանիցիմ. և Տէրն ա֊
սէր յԱւետարանին, եթէ Քանի՛ նեղ և անձուկ է
ճանապարհն՝ որ տանի յարքայութիւնն։ Եւ յայտ է
եթէ որ ինչ ըստ բնութեանն է՝ չէ ինչ աշխատու֊
թեամբ, այլ որ ինչ արտաքոյ քան զբնութիւնն իցէ.
որպիսի ինչ, զի եթէ բռնադատիցէ ոք՝ 'ի ձեռսն միայն
գնալ՝ այն կարի անհնարին է. իսկ յոտսն գնալ՝ ա֊
ռանց աշխատութեան է, և 'ի գլուխն գնալ՝ կարի
անհնարին է. և այսպէս իմանամք՝ զի թէ բնու֊
թեամբ ինչ էր առաքինութիւնն, չէին ինչ պէտք ջա֊
նալոյ. եթէ բնութեամբ էր չառաքինանալն՝ չգոյր
ինչ 'ի միջի մեղադրութիւն։ Իսկ նա աւանիկ Քրիս֊
տոս վճիռ տայ, և Պաւղոս օրէնսդիր լինի. Ճնշեմ, ա֊
սէ, զմարմինս իմ և հնազանդեցուցանեմ. կամի այ֊
լուստ այլ ուրեմն շրջել. իսկ Քրիստոս ասէ. Նեղ և
անձուկ է ճանապարհն. իսկ որ ըստ բնութեանն իցէ,
յայնմ աշխատութիւն ինչ չիք. զի ինքնին իսկ բնու֊
թիւնն կարող է զիւրսն դարմանել։ Եւ վասն այնորիկ
ոչ արար Աստուած զամենայն ինչ վաստակովք, զի մի
'ի բազում աշխատութիւնս արկանիցէ զմեզ. զի է ինչ՝
որ ըստ կամաց լինի, և է ինչ՝ որ ըստ բնութեան. և
այնպէս դիւրաւ իմն լինի՝ որ ինչ ըստ բնութեանն է,
զի բնաւ և զգամք ոչ՝ եթէ զիարդ լինիցի. իսկ առ
դանդաղկոտսն և ախտացեալսն՝ ասէր Քրիստոս. Քա֊
նի՛ նեղ և անձուկ է ճանապարհն՝ որ տանի 'ի կեանսն։
Եւ է ժամ՝ զի առողջութիւնն հիւանդութիւն լինի,
յորժամ ցաւն բնակաւոր լինիցի. եթէ չիցէ՞ իսկ
լուեալ 'ի խառնաղանճ բազմութեանէն, եթէ երկրորդ
բնութիւն է սովորութիւն. քանզի միշտ 'ի չարիս
ևեթ տեսեալ էին բազումք, վասն այնորիկ ասէ, եթէ

Քանի՛ նեղ և անձուկ է ճանապարհն՝ որ տանի ՚ի կեանս։ Իսկ յորժամ առանձինն զառաքինութիւնս քարոզիցէ, տեսցուք զինչ ասիցէ. Լուծ իմ քաղցր է, և բեռն իմ փոքրոգի. և գտջիք հանգիստ անձանց ձերոց։ Եւ զիա՞րդ յանձուկ ճանապարհին հանգիստ ինչ գտանիցի. զիա՞րդ նեղ իցէ, կամ որպէս հանգուցիչ։ Այլ զոր ասացին նոյն են պատճառք. յորժամ առ ախտացեալսն ճառիցէ՝ նեղ և անձուկ կոչէ. և յորժամ առ առողջսն՝ քաղցր և թեթև։ Իսկ Պաւղոս յաղջոցն էք արդեւք թէ ՚ի հիւանդացն, որ ասէր՝ եթէ Երկնչիմ՝ գուցէ որ այլոց քարոզեցի՝ ես ինքն խոտան գտանիցիմ։ և դարձեալ, եթէ Որ կայն՝ զգոյշ լինիցի, զի մի գլորիցի. զի եթէ և դու ընդ նովին կարծեօք իցես, զիա՞րդ ասես, եթէ Որ առժամանակ մի թեթև նեղութիւնս է՝ զառաւելութիւն փառացն յաւիտենից գործէ ՚ի մեզ. քանզի ոչ դիտեմք զայսոսիկ՝ որ երևին, այլ զայն՝ որ ոչն երևին։ Զի եթէ արտաքին ցաւքն թեթև իցեն, որչափ ևս առաւել՝ որ արտաքոյ քան զբնութիւնն իցեն. զի ոչ այնչափ ինչ ոգւոցն ցանկութիւնք լլկեն զմիտս մեր, որպէս տանջանք և կապանք և հալածանք և եպերանք և սով։ Եւ զիա՞րդ իցէ՝ զի այնք թեթևք իցեն, և այս ծանունք. այլ զի զմեզ խրատիցէ՝ լինել ՚ի զգուշութեան, և մի յանձնապաստան։ Նա և ասելովն իսկ, թէ Երկնչիմ՝ գուցէ որ այլոց քարոզեցի, ես ինքն խոտան գտանիցիմ, զհամարձակութիւն ցուցանէ. զի եթէ երկնչէր, ոչ կարէր աստ կալ մնալ. այլ զի վստահ էր, վասն այնորիկ ասէր զայնպիսի բանս, զի մի ոք անփոյթ զանձնէ առնիցէ։ Եւ վասն զայլս դարձուցանելոյ՝ համարի փրկութեան հասանել. չէ ինչ, ասէ, օգուտ՝ այլոցն քարոզել, եթէ յանձնէ ծոյլ գտանիցիմք. զի եթէ յորժամ ասիցէ՝ Ըստ առաւելութեան յայտնութեանցն՝ զի մի հպարտացայց, ըստ խոնարհութեան ասէ, և ոչ ըստ պարծանաց. և այս իսկ առաւել տայր նմա հպարտանալ. այլ թողեալ զմեծամեծսն, որովք ՚ի դէպն էր պարծել՝ պարծէր. Տուաւ ինձ, ասէ, խայթ մարմնոյ հրեշտակ սատանա. այսինքն՝ խոտորեցուցիչ։ Եւ եթէ պարծել ինչ պարտ իցէ՝ տկարութեամբ պարծեցայց, այլ ոչ հպարտացայց։ Եւ զիա՞րդ

դք որովք պարծեսցին ոչ հպարտանայցէ. քանզի ընդ այնպիսի մարդս խօսէր, որք գործոց ինչ փոյթ յանձին չունէին, և 'ի հաւատս միայն ապաստանէին, վասն այնորիկ ասէր, եթէ Ես այժմ այնպէս ընթանամ, որպէս ոչ եթէ ընդ վայր ինչ. այնպէս ձկտիմ, որպէս ոչ թէ զհողմս ինչ կոծիցեմ. ոչ 'ի զուր ինչ, ասէ, և ոչ վայրապար: Եւ արդ, զիա՞րդ ըստ ոչ բնութեանն՝ քան զբնութիւնն յաճախագոյն լինիցի. այլ յորժամ ոչ զգուշանայցեմք. զոր օրինակ ասա՝ զի ըստ բնութեանն առողջութիւնն է, և եթէ ծուլանայցեմք՝ 'ի պէսպէս ախտս անկանիցիմք. սոյնպէս և բարւոյն ցանկութիւն թէպէտ և 'ի բնութեանն իսկ անկեալ իցէ, այլ այնպէս կամեցաւ Աստուած, զի և կամացն մերոց կարօտանայցէ. ըստ բնութեան ինչ առնել՝ զայն դիւրաւ է առնել, բայց չթողուլ կամացն՝ և այն անմասն իմն է. վասն այնորիկ ոչ տայ մեզ ընդ հարկաւ մտանել: Զի եթէ ըստ բնութեանն էր առաքինութիւնն, ապա ոչ ինչ յորդորէր զմեզ 'ի նա Աստուած. և քանզի ոչ միայն ըստ բնութեան է, այլ և կամօքն կատարի. վասն այնորիկ իսկ գայ բժիշկ, զի զմարմինն՝ որ ել արտաքոյ բնութեան՝ անդրէն 'ի բնութիւն ածցէ, և զոսկրն՝ որ խախտեցաւ յիւրմէ հաստատութենէ՝ անդրէն հաստատեսցէ. զի որ ինչ ըստ բնութեանն իցէ՝ գործով արուեստիւ փորձի. զի թէ չիցէ արուեստն ուրեք 'ի միջի, որ ըստ բնութեանն էր՝ արտաքոյ բնութեանն լինի. սոյնպէս և 'ի վարս յորժամ ոչ ըստ Աստուծոյ գնայցես, ելեր արտաքոյ քան զբնութիւնն: Եւ զի ըստ բնութեանն է առաքինութիւնն և կամօքն կատարի, ասէ իսկ, եթէ Զոր ինչ կամիջիք դուք թէ առնիցեն ձեզ մարդիկ՝ արարէ՛ք և դուք նոցա: Որ ինչ ըստ բնութեանն է՝ ինքնուսումն իմն է. և դարձեալ, եթէ Սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո: Եւ բազում ժամանակս առանց օրինաց իսկ եթող զմարդիկ: Եւ ուստի՞, ասեն, յայտ իցէ՝ որ ինչ ըստ բնութեանն իցէ. յայնմանէ՝ որ ինչ Քրիստոսն ասաց, և որ ինչ յառաջագոյն քան զնոյն էր ասացեալ. ապա և յայլոց իսկ 'ի բազում իրաց. զոր օրինակ, ըստ բնութեանն զկերակուրսն ասեմք՝ որ ունին զբնութիւնս մեր, և ըստ ոչ բնութեան՝ զապականիչսն. և դարձեալ, ըստ բնու֊

թեան՝ զզարդ աշխարհիս, որ ունիցի պինդ զհաստատութիւնն, և ըստ ոչ բնութեան՝ զապականիչսն. նոյնպէս և ըստ բնութեան զքաջութիւնսն ասեմք՝ որ ունի պինդ զկեանս մեր, և ըստ ոչ բնութեան՝ զչարիսն որ ապականիցեն։ Եւ եթէ կամիս, մեկ դիցուք 'ի մտի իբրև թէ տունս կամ քաղաք շինիցեմք. քանզի ոմանք ասեն թէ առ բարբարոսն այլազգ իմն թուի բարին, և առ Յոյնս այլազգ. զի մեք, ասէ, գիտեմք որ ինչ արժան է գործել, և զոր ինչ ոչ գործել. քանզի յօրինաց և յօրէնսդրաց և յատենից ուսանիմք. և նոքա ուստի՞ կարիցեն ուսանել. ասեմ, թէ զոր ինչ դու յօրինաց և յօրէնսդրաց ուսանիս, նա զնոյն 'ի բնական օրինացն գիտէ։ Եւ գրեսցիր եթէ շինեսցին իսկ քաղաքք, մին մեղօք և միւսն արդարութեամբ. տեսցուք՝ մի յամրի և բազմաժամանակեայ լինիցի. և անտի կարեմք գտանել զայն ինչ՝ որ ըստ բնութեանն իցէ, և զայն՝ որ արտաքոյ քան զբնութիւնն։ Թէ կամիս՝ և 'ի մարդիկ իսկ փորձեսցուք զդոյն։ Արբեալն ըստ բնութեանն իցէ, եթէ արտաքոյ քան զբնութիւնն. նա ուանիկ և ցաւքն իսկ՝ որ մտանեն յարբեցութենէն՝ յայտ առնեն եթէ ոչ ըստ բնութեանն է, այլ արտաքոյ քան զբնութիւնն։

« Իւրաքանչիւր, ասէ, ըստ ճանապարհաց իւրեանց գնասցեն »։ Եւ այս ևս մեծ աղէտք են, յորժամ հիւանդք ըստ կամաց գնայցեն, և ոչ զբժշկին պատուէրս պահիցեն։ Եւ տես զմտահաճութիւնն, զի մեծատունն ըստ հարստութեանն իմն գնայ, և զեխն 'ի պոռնկութիւն ևեթ ծախէ զժամանակս իւր։ Եւ առցուք նախ 'ի մէջ զամենայն չարեացն պատճառս՝ զարբեցութիւնն, որ թուի բազմաց եթէ դոյզն ինչ իրք իցեն. որ նախ զմիտսն իսկ եղծանէ, ապա և յագահութիւն տայ մտաբերել. յորժամ ոչ գտանիցին ծախքն, հարկ է եթէ յագահութիւն մտաբերիցէ. իսկ ագահութիւնն կապանք իմն են երկաթիք, զոր օրինակ շղթայիւք զմի անդամ և կապեսցես, ընդ նմին ձգի ամենայն մարմինն՝ յմի կողմ և ձգիցին շղթայքն։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և 'ի զօրութենէ ևս անկանի արբեցողն, և ագահէ և յափշտակէ, և ցանկոտ և նախանձոտ և բարկ և անմիտ լինի։

## ԳԼՈՒԽ ԾԷ

Եւ արդ, տե՛ս. «Կորեաւ, ասէ, արդարն»: Զի մի միայն ողջ ’ի մէջ քաղաքին հիւանդաց՝ վաղվաղակի կորնչի: Եւ այն իսկ է նշանակ հիւանդութեան, զի զկարողին՝ որ զկեանս նոցա և զվարս ուղղել կարիցէ՝ ’ի միջոյ բառնան: «Զի յերեսաց անիրաւութեանն բառնայ արդարն»: Զայն օգուտ արար նմա արդարութիւնն: «Եւ եղիցի ’ի խաղաղութեան գերեզմանն նորա. բարձաւ ’ի միջոյ»: Այսինքն ’ի չարութենէ չարեացն. և չէին սակաւ չարիք, այլ առաւել դժնդակ աղէտք, յորժամ զճրագն խափուցանիցեն, և զլոյսն ’ի միջոյ բառնայցեն: «Եւ ’ի խաղաղութեան գերեզմանն նորա»: Եւ զի՞նչ իցէ. այլ զի նոցա և կեանքն ’ի խռովութեան են, և սորա և մահն հեշտական է. զի յառաջ քան զչարիսն զերծոյց զնա ’ի չարեացն Աստուած. և որ թուէրն թէ հակառակ ինչ նմա իցէ, նոյն փոխանակ նորին եղև. զի ոչ եհաս տեսանել նմա ոչ զմարտ և ոչ զպատերազմ: Իսկ ոմանք զՅովսիայ արքայէ ասեն զայս, եթէ խնայեաց ’ի նա Աստուած, զի մի տեսցէ զգերութիւն ժողովրդեանն:

«Բայց դուք ժողովեցարո՛ւք այսր»: Ոչ ինչ օգուտ եղև ձեզ յամբաստանէն ’ի միջոյ բառնալոյ. քանզի ես իսկ ինձէն դատելոց եմ զձեզ: «Եկա՛յք այսր»: Եւ յիրաւի իսկ բարւոք կոչէ զապստամբս զփախստականսն՝ զաւակ չնութեան և պոռնկորդիք: Եւ սոցա զի՞նչ եպերանք իցեն՝ եթէ հարքն այնպիսիք ոք էին. զի և ոչ ’ի հարցն չարիս նայէին, և ոչ ’ի նահատակաց ծնողացն ինչ զանգիտէին. և զի՞արդ չիցէ այն պատշաճ. զի թէ ոք պոռնկորդին կոչելոյ օգտեսցի ինչ ըմբոստանալ, և անարգանս զգործն համարել, ոչ ինչ կարի վնասեն թշնամանքն, մանաւանդ զի չէ իսկ վնաս: Ապա թէ և զանձն ևս ’ի նոյն նախատինս ձգիցէ, զի՞նչ օգուտ իցէ նմա ըմբոստանալն. յորժամ պոռնկորդի կոչեսցիս՝ ըմբոստանաս. յորժամ դու իսկ պոռնկիցիս, զայն չհամարի՞ս չարիս:

« Ցօղը վերայ պերճացարուք, կամ յօղը վերայ բացէք զբերանս ձեր »։ Թուի ինձ եթէ աստ զհայհոյութիւնն նոցա բամբասէ, որով զԱստուած թշնամանէին։ « Եւ արձակեցէք զլեզուս ձեր »։ Թուի ինձ եթէ մեղադիր լինէին Աստուծոյ, եթէ ոչ էին ուղիղ ճանապարհք նորա։

« Ո՞չ դուք էք որդիք կորստեան, զաւակ անօրէն, որ անկեալ աղաչէիք զկուռս »։ Եւ զի ցուցցէ եթէ ուստի իցեն որդիք կորստեան. « Ի ներքոյ անտառախիտ ծառոց, ասէ, զոհէիք զորդիս ձեր, 'ի խորաձորս 'ի մէջ քարանձաւաց »։ Դարձեալ բամբասէ եթէ զանութիւնն իսկ չծանեարուք, և զայն ո՞չ գիտէիցէք, եթէ զորդիս զենուլ չիցէ արտաքոյ քան զանութիւնն։ « Եւ 'ի խորաձորս քարանձաւաց »։ Զի և գերեզմանաց անգամ, ասէ, արժանի չառնէիք. և այն չէր շատ զի առաջի կռոցն զոհէիք, այլ և 'ի հեռի տեղիս երթեալ ընդ անտառախիտ ծառովք զոհէիք։ Զի եթէ կռոցն պաշտօն առանց ներելոյ թողութեան իցէ, որչափ ևս առաւել ծառոց զոհս մատուցանել. զի կուռքն գէթ կերպարանս ինչ ունէին, և այնու պատրէին. իսկ ծառքն առանց կերպարանաց են, զիա՞րդ պատրէիք 'ի նոսա։

« Անդ էր բաժին քո, և անդ վիճակ քո. նոցա հեղեր դու զզոհս քո, և նոցա մատուցեր դու զողջակէզս քո. արդ յայսր ամենայնի վերայ ո՞չ բարկանայցեմ, ասէ Տէր »։ Զքեզ առնեմ դատաւոր՝ զյանցաւորդ. ընդ մոլորութիւն բնութեանդ և ընդ օրինացդ եղծանել ո՞չ բարկանայցեմ, ասէ Տէր։

« Ի լերինն բարձու և մեծի՝ անդ է հանգիստ քո. անդր հաներ զողջակէզս քո. 'ի թիկունս սեմոց դրանց քոց եդիր զյիշատակս քո »։ Ոչ միայն 'ի լերինս և յանապատս ամպարշտեցար, այլ և 'ի թիկունս դրանց քոց՝ նշանակս իմն անօրէնս նշանակէիր։ « Համարէիր եթէ յորժամ յինէն 'ի բաց կայցես, աւելի ինչ շահեսցիս »։ Այսինքն՝ զօրագոյնս ինչ լինիցիս. ապա ուրեմն յայտ է՝ եթէ կարևոր պէտք էին գերութեան. դու քեզէն եղեր պատճառք չարեացն։

« Լայնեցեր զանկողինս քո ». Զյաճախութիւն չարեացն ասէ։ « Սիրեցեր դու զհոմանիս քո »։ Եւս չար,

զի ոչ՚ի հարկէ էր պտղնկութիւն քո, այլ՚ի զեղխ և յաճախագոյն կամաց։ «Եւ բազմացուցեր զպտղնկութիւն քո առ նոսա. և յաճախեցեր դու առ հեծաւորս քո. առաքեցեր դու հրեշտակս արտաքոյ սահմանաց քոց»։ Եւ այսու ամենայնիւ զյաճախութիւն չար ցանկութեանցն բամբասէ։ Զայն և Եզեկիէլ մեղադիր լինի։

«Խոնարհեցար մինչև՚ի դժոխս, աշխատ եղեր՚ի բազում երթևեկս քո». զոր օրինակ կին մի պոռնիկ որ ընդ ամենայն աշխարհս սահեալ շրջեցի խնդրել զհոմանիս իւր. սակայն և այնպէս ոչ յագեցար։ «Եւ ոչ ասացեր եթէ հանգեայց»։ Զօրացեալ իմն զայս ամենայն գործէիր։ «Զի առ ուժի իմն գործէիր զչարիսն, վասն այնորիկ ոչ աղաչեցեր առ իս»։ Ակիւղաս ասէ. Ոչ խնդրեցեր. Սիմաքոս, Ոչ տատամսեցար։ Վասն այնորիկ, ասէ. տեսանե՞ս զի ամենայն ինչ վասն այնորիկ է՝ զի աղաչիցեմք զԱստուած։

Դարձեալ, զիարդ մերժէ՚ի ներքելոյ թողութեան։ «Ցումէ՞ զանգիտեցեր, յումէ՞ զարհուրեցար, զի ստութիւն արարեր ինձ, և ոչ յիշեցեր զիս»։ Զի և ոչ երկիւղ ուստեք կայր՚ի միջի. քանզի զիմոյ զօրութեան զչափ գիտէիր, և զնոցա տկարութեան. զի յայտ լինիցի եթէ՚ի թշնամանացն եղև քեզ այդ։ «Արդ ես տեսից զքեզ և անփոյթ արարից։ Եւ յինէն ինչ ոչ երկեար, և ես պատմեցից զարդարութիւն իմ»։ Եւ աստ զպատիժսն արդարութիւն կոչէ, զի արդար դատաստանաւ ած զպատիժսն՚ի վերայ նոցա։

«Եւ դրօշեալքն ոչ ինչ օգտեսցեն քեզ»։ Այսինքն՝ զի ոչ ինչ վերակացու լինիցին քեզ կուռքն՝ յոր յուսացարն։ «Զի զամենեսեան զնոսա հողմք առցեն, և մրրիկք բաժանեսցեն. իսկ որ յիմն յուսացեալ իցեն՝ ժառանգեսցեն զերկիր, և ստասցին զլեառն իմ սուրբ. և ասասցեն, սրբեցէք առաջի նորա զճանապարհըս, և՚ի բաց արարէք զխոչ՚ի ճանապարհէ ժողովըրդեան իմոյ»։ Ակիւղաս՝ Գայթակղութիւն, ասէ. Սիմաքոս՝ Սեթաքոյիմն [1], ասէ, ՚ի ճանապարհէ ժողովրդեան իմոյ։

1 Չկարացաք ստուգաբանել զնշանակութիւն բառիդ, ոչ գտանելով և՚ի պատառիկս թարգմանութեանն Սիմաքոսի՝ զայս բնաբան մարգարէութեան Եսայեայ։

Տեառն դարձեալ զզօրութիւնն. քանզի բազում ինչ մեղադիր եղև նոցա, և դարձեալ այլ իմն հակառակ նոցա մնացն ճառէ 'ի տեղեացն՝ ուր յայտնութիւնքն երևէին, և 'ի հաւատոյն կամի ձգել, եթէ «Այսպէս ասէ Տէր բարձրեալն՝ որ 'ի բարձունս բնակեալ է յաւիտեանս, սուրբն 'ի սուրբս»: Զզօրութիւնն յայտ արասցէ այսու, զմշտնջենաւորութիւնն. և թէպէտ և մեծ իմն թուէին բանքն, այլ ըստ զիջանելոյ ընդ մեզ խօսի. քանզի ոչ եթէ 'ի տեղիս ուրեք փակեալ է Աստուած: Եւ զի վերագոյնն զանտառաց ճառեաց, վասն այնորիկ ասէ, թէ «Բարձրեալն՝ որ 'ի բարձունս բնակեալ է»: Եւ զի 'ի տաճարին միայն կարծէին զԱստուած, ասէ. «Սուրբն 'ի սուրբս հանգուցեալ է»: Տեսանես, զիարդ յառաջագոյն նկարէր զնորա:

« Տայ երկայնամտութիւն տարակուսելոց, և կեանս այնոցիկ՝ ոյք մաշեալ են սրտիւք»: Զի թէ այսմ մարթ իցէ լինել, յայտ է եթէ միւսոյն ևս առաւելագոյն մարթ է: Զի թէ զբարս ոգւոցն շրջել կարիցէ, որչափ ևս առաւել զայլ ինչ իրս փոփոխել: «Եւ կեանս այնոցիկ՝ ոյք մաշեալն իցեն սրտիւք»: Զի որոց յոյսն հատեալ իցէ 'ի մտաց՝ եթէ չիցէ յոյս կենաց, ածէ վաղվաղակի 'ի կենդանութիւն:

« Եւ ոչ յաւիտենից վրէժս խնդրեցից 'ի ձէնջ»: Իսկ այլքն ասեն, եթէ Ոչ յաւիտեան դատեցայց զձեզ: Տեսանես, զի ոչ երբէք բարկանայ 'ի սպանանել՝ Աստուած: Եւ թերևս ոմանք մխիթարութիւն ինչ առնուցուն այսու վասն գեհենի պատժոցն. այլ ձեզ, ասէ. որ զոմանս նշանակիցէ. և ոչ ամենեցուն առհասարակ չբարկանայցեմ, ասէ, մինչև յաւիտեան: Ապա և զդէպ իսկ պատճառսն դնէ, եթէ «Հոգի յինէն արձակեցի, և զշունչ զամենայն ես արարի»: Մի թէ օտարոտիք ինչ ոք իցեն, ասէ, զորս տանջիցեմն. իմոյ ձեռինս են գործ:

« Վասն մեղաց առ սակաւ մի տրտմեցուցի զնա. հարի զնա, և դարձուցի զերեսս իմ 'ի նմանէ. խռովեցաւ և գնաց տրտմեալ 'ի ճանապարհս իւր. և զճանապարհս նորա տեսի, և բժշկեցի զնա, և մխիթարեցի զնա»: Տեսանես, զի մխիթարէ զտրտմեալն և

զոխորեալն։ Զորպիսի՞ մեղաց պահանջեաց զվրէժս։ Զի՞նչ խօսիս, թէ «Աւ սակաւ մի տրտմեցուցի զնա». զի ահա աւանիկ եւթանասնամեայ ժամանակ է զի պատիժս կրէ։ Մի՞ թէ ինչ համարիր եւթանասուն ամ, այլ զայն 'ի միտ առ, զի սկիզբն գերութեանն միայն էր դժնդակ, և յետոյ այնպէս 'ի դիւրոջ էին, զի յորժամ դարձն քարոզեցաւ՝ ոչ կամէին անդրէն յաշխարհն իւրեանց դառնալ. զի այնպէս 'ի բարիս և 'ի դիւրութեան էին. զոր և յԵզեկիելէ կարէ ոք ուսանել՝ եթէ որչափ 'ի դիւրութեան էին։ Եւ արդ, մի՞ զամենայն ժամանակ գերութեանն՝ ժամանակ պատժոց համարեսցիս. զի գիտէ Աստուած լռելեայն և 'ի վիշտս մխիթարել։ «Եւ ետու նմա, ասէ, մխիթարութիւն ճշմարիտ, և սգաւորաց նորա հաստատեցի պտուղ շրթանց»։ Այսինքն՝ մխիթարութիւն, ուրախութիւն և գոհութիւն։ «Խաղաղութիւն 'ի վերայ խաղաղութեան՝ հեռաւորաց և մերձաւորաց, ասէ Տէր. իսկ անօրէնք ծփեսցին և հանգչել մի՛ կարասցեն»։ Այսինքն՝ թէ անօրէնք իբրև զծով ալեօք ծփեսցին։

## ԳԼՈՒԽ ԾԸ.

«Գոչեա զօրութեամբ և մի՛ խնայեր. բարձրացո իբրև զփողոյ զբարբառ քո»։ Զի դժուարինք էին՝ զոր ինչ ասելոցն էր, թէ «Պատմեա ժողովրդեան իմոյ զմեղս նոցա». վասն այնորիկ խրախոյս տայր՝ թէ մի՛ ինչ զանգիտեր։ «Զիս օր ըստ օրէ խնդրեն, և ճանաչել զճանապարհս իմ ցանկանան, իբրև ժողովրդեան՝ որոյ զարդարութիւն գործեալ իցէ, և զիրաւունս Աստուծոյ չիցէ թողեալ»։ Մի առաջին մեղք այն իսկ էին, զի մինչ 'ի տէրունական դիպահուոյն էին՝ և յայնժամ ևս ընդդէմ դառնային, և իրաւունս ևս պահանջէին վասն իրացն՝ որ վասն նոցա լրբութեան և յանդգնութեան գործեցան։ Եւ այն իսկ էր նշանակ մեղաց, զի պղծեալ էին 'ի կարգս

և 'ի կրօնս, և զԱստուծոյ տեսչութիւնն բամբասէին, որոց պարտ էր 'ի Թշուառութենէն լռել։ Քանզի մինչ համարձակքն էին՝ չեղեն պիտանացուք. «Արդ ե-կեալ խնդրէին իրաւունս արդարութեան». այսինքն, գտա եդեալ ընդ իս՝ իրաւունս պահանջէին։

«Եւ մերձենալ առ Աստուած ցանկանան. զի՞ է, ասեն, զի պահեցաք մեք, և դու ոչ տեսեր. խոնար-հեցուցաք զանձինս մեր, և դու ոչ գիտացեր»։ Զոր ասէն՝ այսպիսի ինչ է. որոց բիւր չարիս գործեալ էր, պահովքն միայն կամէին ազատանալ 'ի պատժոցն. քանզի և ասէին իսկ ցԱստուած, եթէ ահաւասիկ պահեմք, ընդէ՞ր ոչ փրկիցիմք։ Եւ արդ, զի՞նչ իցէ. չհամարէր բնաւ արժանի և գիտել ինչ զպահս. այլ սակայն և այնպէս առանց իրաւունս տալոյ չառնէր։

«Յաւուրս պահոց ձերոց, ասէ, գտանին կամք ձեր, և կոծկցէք դուք զմնաւագն՝ որ ընդ ձեռամբ ձերով է. և արդ զի՞նչ պիտոյ է ինձ այդպիսի խոնարհու-թիւնդ ձեր»։ Զի թէ վասն այնորիկ պահիցէ ոք՝ զի 'ի պարտապանէն վրէժս պահանջիցէ, զի՞նչ օգուտ իցեն նմա պահքն. որպէս ոք զի կապեալ և 'ի բանդի կայցէ, և առեալ զշղթայսն՝ զայլ զիւր ընկերսն ըն-բանդականսն կոշկոծիցէ. նոյնպէս և պահքն՝ յորում անաւագ զրկիցեն, ամբաստանութիւն են պահո-ղացն։ Զի թէ 'ի պահսն այնպէս անողորմ գտանիցին, որչափ ևս առաւել առանց պահոցն։ «Եթէ դատաս-տանս և 'ի կռիւս պահէք, և կոփէք զմնաւագն»։ Սիմաքոս ասէ. Կոծկցէք։ Տես զազգ ազգ պատուի-րանս. զի ոչ ապաքէն պահք և ոչ կուսութիւն ինչ է, եթէ ոչ իցեն պտուղք ինչ՝ որ 'ի նոցանէն բխեսցեն։ Զի կէսք 'ի պատուիրանացն առանձինն են, և կէսքն այլովք իմն իրօք զարդանան. որպէս և յաշխարհական ինչ իրս, զի կէսքն ինքեանք լինին, և կէսքն այլովք իրօք. որպէս 'ի հողագործութեան՝ սերմն և արօրն և այլն ևս ամենայն. կամ որպէս 'ի մարտիկս կռիւն և ուժն և կրթութիւնն. նոյնպէս և աստ։ Վասն է՞ր իցեն պահքն. զի զկռիւսն մերժիցեն. և ընդէ՞ր առնիցեն կռիւ. այլ զի զմիտսն յանդգնութեան ետուն։

«Զի՞նչ պիտոյ իցեն ձեզ պահքդ այնպիսւոյ աւուր, դալ բողոքել ձեր առ իս, և ինձ լսել ձեզ. ոչ եթէ

զայս պահս ընտրեցի ես, և ոչ զայդպիսի օր, յորում կարկամիցէ մարդ զպարանոց իւր. այլ լո՛յծ զամենայն կնճիռս անիրաւութեան »: Եւ արդ, ո՞ր իցեն պահք. ոչ եթէ պահքն, այլ 'ի մեղացն հեռանալ: Եւ տես, զի ամենայն ուրեք Աստուած զառ 'ի գործոցն պահս ընդունելի համարի, որ ոչ գործելեացն միայն, այլ և ընկերացն առնիցեն շահս: Պահեաց Դանիէլ, և ընկալաւ Աստուած, քանզի վասն այլոց պահեաց. պահեաց և Մովսէս վասն այլոց: Եւ ցուցանէ ևս զօրինակ պահոցն. զի եթէ զայլ պատշաճս պահոցն ոք չառնիցէ, չէ ինչ օգուտ 'ի պահոց անտի. քանզի կուսութիւն խոստեցաւ՝ որ չունէր զողորմութիւն. Թէպէտ և ձգամբք իցէ կուսութիւն և ծանր պահք, այլ ոչ եթէ Աստուած զայնպիսի ծանրութիւն խնդրիցէ. բայց զի թէ և պտուղս ունիցի, յայնժամ հաճոյ է Աստուծոյ: Նա և ոմն ասէր, եթէ Պահեմ երկիցս 'ի շաբաթու. և ոչ ինչ օգտեցաւ: Նա և պահքն ոչ վասն այլ իրիք են կարգեալ, այլ զի 'ի մերոց փափկութեանցն ցածնուցումք, և պատրաստագոյն առ ողորմութիւնսն գտանիցիմք. յորժամ զայն ոք չառնիցէ՝ ընդ վայր են վաստակքն:

« Այլ լո՛յծ, ասէ, զամենայն կնճիռս անիրաւութեան »: Եւ յիրաւի կնճիռս կոչէ. քանզի արդարև կնճիռս իմն դժուարալոյծ է, զոր և Իմաստունն, Խաղս, կոչէ. Սիմաքոս և Թէոդոտիոն՝ Անօսր, ասեն: Եւ դու մի՛ զընչիցն միայն համարիցիս. քանզի կան 'ի մեզ և այլ անիրաւութիւնք, զոր բանիւք և արդեամբք կատարեմք: « Եւ քակեա դու զառնութիւն խարդախութեանց վաճառոց քոց, և զամենայն մուրհակս անիրաւութեանց 'ի բաց պատառեսջիր, արձակեսջիր դու զնեղեալս 'ի թողութիւն »: Եւ ոչ միայն 'ի չարեացն հրամայէ հեռանալ, այլ և 'ի բարիսն յորդորէ. « Արձակեսջիր, ասէ, զնեղեալս 'ի թողութիւն »: Մի՛ իրաւունս ինչ ցուցանիցես առ այնպիսիսն. այս մեծ իմն է քան զառաջինն. զի անդ զանիրաւութիւնն տայ լուծանել, և աստ 'ի վեր ևս քան զիրաւունս լինել: Զի իցէ՝ և յիրաւի իսկ պահանջիցի, բայց թէ չունիցի՝ ուստի հատուցանիցէ: « Եւ զամենայն մուրհակս անիրաւութեան պատառեսջիր »: Իսկ աստ ոչ միայն

հրամայեաց, այլ և պատուէր։ Զայս և Քրիստոս իսկ արար. զի թէպէտ և արդար էր մուրհակն որ ըստ մերոց մեղացն էր, սակայն պատառեաց զդատակնիքն, և բևեռեաց ընդ խաչին։ Իսկ այն ոչ՝ի նոցա ինչ միայն է, այլ քեզ. այլ զի թողուցուս զմուրհակսն, և ոչ պատառիցես, յորժամ երթիցես անդր՝ ըստ նմին պահանջիցեն։

« Բրդեա դու զհաց քո քաղցելոց »։ Եւ ոչ ասէ թէ տուր, այլ թէ բրդեա. զի խնամով հրամայէ տալ. որպէս Պաւղոս ասէր, եթէ Զամբիցեմ զինչս իմ աղքատաց։ Զքո հաց, ասէ, և ոչ զընկերին։ « Զաղքատս անյարկս տանիջիր 'ի տուն. եթէ տեսանիցես զմերկն՝ զգեցուսջիր դու զնա »։ Եւ առանց պատուիրանաց իսկ չիցէ՞ պարտ առնել։ « Զաղքատս անյարկս տանիջիր 'ի տուն քո. և յարենէ զաւակի քո զակն մի արկանիցես »։ Ըստ այնմ, Եթէ ոք տան իւրում և ընտանեաց խնամ ոչ տանիցի, ուրացեալ է, և չար ես է քան զանհաւատն։ Եւ այն իսկ են պահք առանց բռնութեան, առանց ծանրութեան. հացն և տուն և հանդերձն՝ մնակից առնեն զանտունսն. մխիթարել 'ի վշտաց զնեղեալս. քանզի որ հակառակ սմին է՝ կարի դժնդակ է, անագորոյն և անողորմ լինել՝ ամենեցունց յայտ է։ Իսկ Աստուած իմաստութեամբ կարգեաց վշտակից լինել միմեանց, ըստ այնմ, եթէ Ամենայն անասուն՝ զիւր նմանին սիրէ, և մարդ՝ զընկեր իւր։ Դու 'ի պէսպէս սեղանոց խորտկօք վայելես, և միւսն 'ի սովոյ մեռանիցի. դու կերպաս պատմուճան զգենուս, և նա մերկ ծանակ շրջիցի։ Ընդէ՞ր չհրամայիցէ ակն առնուլ յարենէ. քանզի բազում իրաւունս ունին նոքա բարիս գտանել 'ի կարողն ազգականէ։ Այլ բազումք յանմտաց հաշին մաշին՝ եթէ ընդէ՞ր այս անուն մեծ է, և մեք աղքատք. նա 'ի դիւրոյ, և մեք 'ի վիշտս. ընդէ՞ր որպէս զարև ամենեցուն առհասարակ ետ, զի ոչ աղքատն սակաւ վայելէ և մեծատունն շատ, նոյնպէս և զինչսն ոչ արար հասարակաց՝ Աստուած։ Այլ և զինչսն հասարակաց արար Աստուած. քանզի և պատուիրէ իսկ գոյաւորին՝ տալ չքաւորին. զի թէ չէր հասարակաց արարեալ, և ոչ պատուէր ինչ այնպիսի տայր. զի որ ինչ

կարի պիտոյ էր կենաց մերոց՝ և հաստատակաց զայն չէր արարեալ, ապականէր և եղծանէր ազգ մարդկան։ Եւ եթէ զինչսն նոյնպէս հաստատակաց էր արարեալ, ապա և զհնարս իսկ լաւութեանն 'ի միջոյ բառնայր. այլ վասն այնորիկ ոչ ետ հաստատակաց զինչսն, զի մի՛ և մեղքն՝ որ յընչասիրութենէն լինիցի՝ յամենսեան տարածանիցի և ապականիցէ. զի թէ և զարև չէր հաստատակաց արարեալ, այլ իբրև զինչսն ումեք ումեք, բազումք 'ի խաւարի շրջեալ նստէին. վասն այնորիկ ետ մեծութիւն մեծատանց, զի զաղքատութեան զցաւսն մխիթարեսցեն։

« Յայնժամ ծաւալեսցի իբրև զառաւօտ լոյս քո »։ Այսինքն, օգնականութիւնն վաղվաղակի հասանիցէ։ Եւ զի՞նչ յայտ առնէ ծաւալելն. զյորդութիւնն և զառաւելութիւնն յայտ առնէ։ Տեսանե՞ս զի՞նչ տաս և զի՞նչ առնուս։ « Եւ բժշկութիւն քո վաղվաղակի ծագեսցէ »։ Ապա ուրեմն 'ի մեր ձեռս է վաղվաղակի կամ անագան ծագեցուցանել զփրկութիւնն։ Եւ զի՞նչ իցէ բժշկութիւնն. քանզի բազում վէրս ունէաք, վասն այնորիկ ասէ, թէ « Վաղվաղակի ծագեսցէ բժշկութիւն քո ». առ եղծանել և անցուցանել ըզմեղսն։ « Եւ գնասցէ առաջի քո արդարութիւն քո »։ Որպէս առաջի իշխանաց յորժամ սպասաւորն երթայցէ, կարապետք և նուիրակք, և քարոզք մեծաձայն առաջի կարդայցեն. զորս վասն այնորիկ իսկ բազում անգամ երանելիս համարիմք։ Եւ տե՛ս, փոխանակ սպասաւորաց որպիսի առաջապահք երթան առաջի. « Արդարութիւն քո սաստիկ ». սպասաւոր՝ յորմէ ամենեքեան խորշեսցին. և ոչ ոք կարիցէ և ոչ ընդդէմ հայել։ Եւ արդ, զհանդերձն ևս տեսցուք՝ որպիսի ինչ իցեն. մի եթէ կամա՞ր կամ սամո՞յրք. և ոչ ուրեք. այլ « Փառքն Աստուծոյ զքեւ փակեսցին »։ Ո՞ր թագ, կամ ո՞ր պատմուճան իցէ համգոյն այնպիսի զարդու. զի որպէս Աստուածն ողորմած է և գթած և բարերար և կենարար, նոյնպէս և զծառայսն իւր կամի առնել. ըստ այնմ՝ զոր ամենանահատակն Յովբ ասէր, եթէ Ոտք եղէ կաղաց և աչք կուրաց։

« Զարդարեսցեն զքեզ, ասէ, փառքն Աստուծոյ.

յայնժամ կարդասցես, և Աստուած լուիցէ քեզ. և մինչչև խօսեցեալ իցէ քո, ասասցէ թէ ահաւասիկ կամ»։ Զի՞նչ քան զայս մեծ կայցէ, յորժամ բնաւ և մնայցէ իսկ ոչ խնդրելոյ, և ոչ զաղօթսն կատարելոյ. յառաջ քան զխնդրուածն՝ տայ զխնդրելիսն. ո՞ր հայր գթած կամ բարեկամ սերտ, որ այնպէս վաղվաղակի 'ի ձայնն ելանիցէ։ Տեսանես, զի սակաւ մի հացի և պատառոյ մի կապերտի զինչ գնեցեր. զաս 'ի մարդկանէ փառաւորութիւն, և զառ 'ի յԱստուածոյ սէրն. զի ամենայն ինչ քեզ դիւրաւ լինիցի։ Այլ արարեք զայս միանգամ և երկիցս, և բազում անգամ պարտիս առնել. ըստ այնմ, եթէ Ողորմութիւն և հաւատք 'ի քէն մի պակասիցեն. և դարձեալ, եթէ Մի՛ դանդաղիցես առնել բարի՝ յորժամ հասանիցէ ձեռն քո. և բրդելն զհաց՝ մշտնջենաւոր ժամանակի պատուիրէ։

« Ապա եթէ մերժեսցես 'ի քէն զկնճիռն և զձեռնաձգութիւն »։ Ակիւղաս ասէ, եթէ մերժիցես 'ի միջոյ քումմէ ձգել առ 'ի վնաս զմատն քո. Սիմաքոս, թէ Ի բաց առնիջիր զանուրն և զմատնն. Թէոդիտոն նոյնպէս ասէ և զայլսն։ Կնճիռն՝ մեղքն են, որ բազում կրկնուածս ունին, որ ոչ ուղղութիւն ինչ իցէ և ոչ դիւրութիւն. և ձեռնաձգութիւն՝ զյափշտակութիւնսն ասէ, և կամ թէ զանխտիր իսկ ձեռնադրութիւնս և զբանս տրտնջման. ըստ այնմ, եթէ Զամենայն ինչ արարէք առանց տրտնջելոյ. զի այն իսկ նշանակ իմն է ծոյլ և անյօժար մտաց։ Զի ոչ յայն ինչ փութացուցանէ մարդարէն՝ զի առնիցեմք ինչ, այլ որպէս բազում յօժարութեամբ, զի մի տրտնջելովն՝ ապականիցեմք զգործն։ Յորժամ առնիցեն ձեռք զողորմութիւնն՝ լռեսցէ բերանն, զի մի պտուղն 'ի դերև ելանիցէ, և քաղցրն դառն լինիցի։ Տրտնջե՞ս, ով մարդ, ընդ ժտութիւն կարօտելոյն. զի թէ չէր կարօտ, և ոչ ժտէր. և վասն այնորիկ իսկ պարտ է ողորմել, զի առ կարօտութեանն ժտի առ կոտորոյ հացի, առ պատառոյ միոջ կապերտի։ Այլ հանապազ, ասէ, ձանձրացուցանէ, և բազում անգամ կագեցայ, և ոչ գտի հնարս։ Եւ զայն ո՞չ գիտես եթէ աղքատութիւնն չտայ դուլ 'ի հարկէ, և ոչ աղէտք քաղցին.

չյաղթէ սաստ՝ կարօտութեան, և ոչ ա՞հ աղքատութեան, և ուտէ 'ի ներքոյ զփորն: Եւ մեք իսկ յորժամ ժտիմք առ Աստուած վասն միոյ ինչ խնդրուածոյ, և ոչ ցամնու. այլ յայնժամ ցամնու, յորժամ ոչ ժտիցիմք. Տէրն քո ընդ այն ցամնու՝ յորժամ ոչ ստէպ Թախանձիցես, և դու իշխե՞ս ցամնու՝ յորժամ Թախանձիցես:

« Եւ տայցես քաղցելոյ զհաց քո սրտի մտօք »: Այն իսկ է, եթէ Զտուրս զուարթառատս սիրէ Աստուած. զի որ տայցէ՝ այնպէս համարիցի՝ Թէ առնուցու. և արդարև առնու իսկ, զի սակաւ ինչ տայ, և բ...րգևս.. ունու յԱստուածոյ: « Եւ զանձն կա... ուցես [1] »:

« Յայնժամ ծագեսցէ 'ի խաւարի լոյս քո »: Զի՞նչ իցէ 'ի խաւարի լոյս ծագել. զի Թէպէտ իբրև զխաւար իսկ մածեալ իցեն վիշտքն և փորձութիւնք, կամ զի՞նչ պէտք և իցեն, բաւական է ողորմածութեանն զօրութիւն զամենայն մէգն փարատել. զոր օրինակ ճառագայթք արեգական յորժամ ծագեսցեն՝ պատառեն զօդն Թանձրամած, նոյնպէս ողորմածութիւնն ըղմութս վշտաց ինչ և տրտմութեանց. և զի՞նչ ասիցեմ Թէ զխաւար, այլ և զտապ հրոյ շիջուցանէ. ըստ այնմ, եթէ Զհուր բորբոքեալ՝ ջուր շիջուցանէ, և զմեղս քաւեն ողորմութիւնք բազումք:

« Եւ եղիցի Աստուած քո ընդ քեզ յամենայն ժամ. և լցցիս որպէս և ցանկանայցէ անձն քո, և ոսկերք քո պարարեսցին »: Տեսանե՞ս զհատուցումն և զփոխարէն. զի և զմեղսն ջնջեն, և բարութիւնս յաճախեն, և զոր ինչ կամին՝ զայն առնուն: Եւ բարւոք իսկ սերմն կոչեաց Աստուած զողորմութիւնն, քանզի իբրև զսերմն երկրի սերմանի և բազմապատիկ յաճախէ: Եւ ընդէ՞ր, ասեն, բազում անգամ զբազում տունս տեսանեմք, Թէպէտ և ողորմութիւնս առնէին, սակայն կործանեցան և 'ի պէսպէս փորձութիւնս անկան: Այլ մի՛ զդուն ինչ և զանօսր 'ի մէջ բերեր, այլ զայն որ միշտ ինչ գործիցի՝ ած զմտաւ. ապա եթէ

1 Յոր. Ցեղծմանէ Թղթոյն բառք ինչ անընթեռնլիք են. Թուի լինել. Եւ բազում պտուղս տանես յԱստուածոյ: « Եւ զանձն կարօտելոյ յագեցուցես »:

զայնպիսեացն չկամիցիս լսել, ածեալ 'ի մէջ օրինակ զՅովբ. քանզի այսու՝ յառաւել մեծութիւն իմն հանէ զայնպիսիսն Աստուած. ածէ 'ի վերայ փորձութիւնս ինչ, զի 'ի փորձութեանն եւս առաւելագոյն երանեցին. իսկ սակայն որ չլիցին այնպիսի հասու մտօք, վաղվաղակի դարձուցանէ այսրէն զփոխարէնս Աստուած. իբրեւ ըղլացող ոմն մանկտոյ՝ յորժամ հանիցէ ոք ինչ 'ի ձեռաց՝ զլալ հարկանեն, զկական բառնան. իսկ իմաստնոցն և գիտնոց ոչ այնպիսի ինչ. քանզի առաւել յուսովքն պարարեն զոգիս իւրեանց օր ըստ օրէ, և չհամարին եթէ աստ կորնչին ինչ 'ի նոցանէն, զի անդ ուր եդեալ է գանձել գանձս։

« Եւ եղիցի իբրեւ զպարտէզ արբուցեալ ջրալից, և իբրեւ զաղբիւր՝ ուստի ջուր ոչ պակասիցէ »։ Տեսանես, որչափ ինչ բարութիւն է ողորմութիւնն։ Այսպիսի էր և Յովբ՝ որ ասէրն, եթէ Ոռոգանէին կաթամբ լերինք իմ. որում ամենայն ուստէք բազում բարութիւնք էին. Եւ գործք ձեռաց նորա, ասէ, բազում էին յերկրի, և շինուածք և ամենայն ինչ։ Միթէ առ ագահութեան և վատամտութեան տուաւ նմա այնպիսի բարութիւնք. ո՛չ ապաքէն վասն առատութեան և մարդասիրութեանն։

Եւ քանզի միւսանգամ յառաջին բարութիւնսն հաստատելոց էր զնոսա Աստուած, և վերստին շնորհէր նոցա զքաղաքն, զի մի ապաստան յԱստուծոյ ողորմութիւնն՝ անփոյթ առնիցեն զգործոց բարեաց. մանաւանդ յորժամ լսիցեն, եթէ « Շինեսցին աւերակքն քո յաւիտենից, և եղիցին հիմունք մշտնջենաւորք ». վասն այնորիկ յաճախէ և զպատուէրսն. « Եթէ դարձուսցես, ասէ, զոտս քո 'ի շաբաթուց ոչ առնել զկամս քո յաւուրն սրբում, և ոչ փոխիցես դու զոտն քո 'ի գործել. և ոչ խօսեսցիս բան ինչ 'ի սրտմտութիւն բերանոյ քո »։ Տեսանես, զի և այն գործ է, և չար իսկ գործ, և քան զամենայն դժնդակ։ Եւ արդ ո՞ւր իցեն Հրեայք՝ որ դատարկութեամբն միայն պարծին, և այլովք իրօք պղծեն զբերանն և աղտեղեն զլեզուս։

« Եւ հանցէ զքեզ 'ի բարութիւնս երկրին, և ջամբիցէ քեզ զժառանգութիւն Յակոբայ հօր քո »։

Զհանդերձեալ առաքինութիւնսն յիշեցուցանէ նոցա. և զի մի կասկածիցեն՝ եթէ չլինիցին իւրքն հաւատարիմք, ասէ. « Զի բերան Տեառն խօսեցաւ զայս »։

## ԳԼՈՒԽ ԾԹ

« Միթէ չիցէ՞ ձեռն Տեառն կարող փրկել, կամ ծանրացուցէ՞ զունկն իւր՝ զի մի լուիցէ. այլ մեղք ձեր որոշեն 'ի մէջ ձեր և 'ի մէջ Աստուծոյ »։ Տե՛ս, զի ոչ կամի եթէ 'ի մի արդարութիւնն միայն յուսացեալք ակն ունիցին փրկութեան, այլ զի և զգործոց և զկարգաց փոյթ ցուցանել յանձին։ Միթէ առ իմն ինչ տկարութեան. կարող էի և յայնժամ փրկել զձեզ 'ի վշտաց. այլ չարիքն ձեր մատնեցին զձեզ, և մեղքն ձեր եղեն այնմ ամենայնի պատճառք. վասն այնորիկ, ասէ, և այժմ պատուիրեմ զգուշանալ 'ի մեղաց։ Ապա թուէ զմեղսն. « Զի ձեռք ձեր թաթաւեալ[1] են յարեան »։ Այնու բամբասեն զնոսա ամենայն մարգարէքն, եթէ սպանութեամբ լի են ձեռք նոցա։ Ինձ այսպէս թուի, եթէ վասն առաջնոցն զղջացուցանել կամիցի, և 'ի հանդերձելոցն կարճել. քանզի հանդերձեալ էին սպանութիւն գործել, որ քան զամենայն սպանութիւնս անօրէն և դառն էր նոցա։ Յառաջագոյն 'ի բացուստ կամէին ցածուցանել զնոսա. զի թէ յառաջագոյն 'ի սկզբանն ասաց մարգարէս, եթէ Ձեռք ձեր լի են արեամբ. զոր և Աստուած յառաջագոյն իսկ պատուիրեաց, քանզի յայն իմն միտեալ էին, և նոյն, առաւել քան զամենայն մեղսն, էր պատճառք կորստեան նոցա։ Ասէ. Մի՛ սպանանիցես. զի մի համարեսցին եթէ բնաւ յակամայ իցէ սպանանել, ասէ յայտնագոյն, եթէ Զարդարն և զանպարտն մի՛ սպանանիցես. վասն այնորիկ զպէտս երկաթոյ և 'ի գործոյ խափանել հրամայէ, զի 'ի սպանութեանցն ցածուսցէ զնոսա. Երկաթ ինչ, ասէ, մի՛ հուպ առնիցես 'ի շինուածս տաճարին. զի թէպէտ և զենուին քահա-

1 Յոր. Թաթաւել։

նայքն արջառս և ոչխարս, այլ զարիւն՝ Աստուծոյ մատուցանէին. զի թէ յանասնոցն արեանէ 'ի բաց պարտ էր լինել իբրև 'ի նուիրելոյ, որչափ ևս առաւել 'ի մարդկան արեանէն. այնչափ՝ որչափ ինչ պատուական և ընդանի է քան զկենդանանին:

« Եւ մատունք ձեր 'ի մեղս, շրթունք ձեր խօսեցան զանօրէնութիւն և լեզուք ձեր զանիրաւութիւն »: Ձեռք և մատունք, շրթունք և լեզու, և զիւրաքանչիւր անդամոցն 'ի կարգին թուէ զչարիսն. և այնու գիւրաւ մերժեսցէ զնոսա 'ի մեղացն: Եւ ասէ, զի խորհրդիւ իմն զչարիսն գործէին և հնարիւք սպանութեան, և ոչ առ ցասման ինչ, և ոչ 'ի սրտէն յանդրգնութեան. այլ խորհելով իբրև մեղանչականութեամբ 'ի նոյն կրթեալք էին և 'ի նոյն խոտացեալք [1]:

« Եւ ոչ ոք է որ խօսի զարդարութիւն »: Եւ այսու ամենայնիւ ուրեք մեղադիր լինի եթէ յանդգնութեամբ և ունայնութեամբ գործեն. զնոյն և աստ բամբասէ, թէ « Ոչ գոյ որ խօսի զարդարութիւն, և ոչ գոն իրաւունք ճշմարտութեան. յուսացեալ են 'ի սնոտիս ». այսինքն՝ 'ի կուռսն: « Եւ խօսին զունայնութիւն ». Զի ամենայն որ անօգուտ իցէ՝ ունայնութիւն իցէ. կամ չարախօսութիւն ինչ և բամբասանք: « Զի յղենան զցաւս, և ծնանին զանօրէնութիւն »:

« Զձուս քարբից բեկին, և զոստայն սարդից անկանեն. և որ ուտելոցն էր 'ի ձուոյն, եբաց՝ և եգիտ ջուր, և ընդ նմին քարբ »: Զխարդախութիւնս նոցա ակնարկէ այսոքիւք, եթէ « Զձուս իժից բեկին, և զոստայն սարդից անկանեն ». զխորհուրդս նոցա զոր ծնանին, և զգործսն զոր գործեն, զնենգութիւնսն, զանմտութիւնսն. զի այնպիսի իմն են չարիքն՝ թշուառականացն. զի 'ի զուր և 'ի վնաս անձանցն ևեթ ընթանան:

« Ոստայնք նոցա ոչ ձորձեսցին, և ոչ զգեցցին նոքա 'ի գործոց ձեռաց իւրեանց »: Այսինքն, գործք նոցա յանկ ինչ ոչ ելանիցեն. և զի այս այսպէս է, վկայեսցէ յաջորդն. « Զի գործք նոցա՝ գործք անօրէնու-

1 Այսպէս յօրինակին. Թերևս խոտացեալք կամ ախտացեալք:

թեան են »։ Այնպիսի ինչ գործս պարտ էր գործել՝ որք կամ անձանց...մ ըն... ր ... ինչ աւգ... կ նացայն [1] վնասակարք են և անօգուտք։

« Եւ ոտք նոցա 'ի չարիս ընթանան. արագ են 'ի հեղուլ զարիւն ամբիծ »։ Տեսանե՞ս, որ չարիք են, զի արիւն, և ամբիծ ևս արիւն հեղուլն. զի թէ և ամբիծ ևս չէր, սակայն բազում երկեղիւ սոսկալ պարտ էր. քանզի խաղաղութիւն իմն տնկեաց Աստուած 'ի բնութեանս մերում. ոչ միայն զգործն անօրէն չգործել, այլ և ոչ տեսանել իսկ ախորժել։ Եւ քանզի գիտէր իսկ Աստուած եթէ չեն միայն միտքն բաւական, վասն այնորիկ յուրմէ բնութենէն ետ օգնականութիւն։

« Խորհուրդք նոցա՝ խորհուրդք անզգամութեան. բեկումն և թշուառութիւն 'ի ճանապարհս նոցա, և զճանապարհս խաղաղութեան ոչ ծանեան. և ոչ գոն իրաւունք 'ի ճանապարհս նոցա, զի շաւիղք նոցա մոլորեալք են՝ յորս գնանն, և ոչ խօսեցան զխաղաղութիւն »։ Վասն այսորիկ և Դաւիթ մեղադիր լինի։ « Վասն այսորիկ իրաւունք վերացան 'ի նոցանէ, և մի հասցէ 'ի նոսա արդարութիւն. մինչդեռ ակն ունէին լուսոյ՝ խաւարեցի նոցա »։ Տեսանե՞ս զԱստուծոյ բժշկութիւնն, զի ոչ եթող առանց պատժոց զայսպիսի չարիս, և եցոյց՝ զիարդ որոշէին մեղքն 'ի մէջ նոցա, և 'ի մէջ Աստուծոյ։ Որպիսի՞ ինչ խաւար չէր մածեալ զսրտիւք նոցա՝ որք զայսպիսի չարիս գործէին. որ մութ կամ մէգ չկայր զնոքօք։ « Գլորեցին 'ի մէջօրէի իբրև 'ի հասարակ գիշերի »։ Զի քան զխաւար ևս չար մածեալ ունէին չարիքն զոգիս։ Եւ քանզի ոչ զգային զթանձրամած խաւար վշտացն, յարէ 'ի նոյն, եթէ « Ակն կալաք իրաւանց՝ և ոչ գոյր, և փրկութիւն հեռացաւ 'ի մէնջ »։

Մարգարէն ընդ նոսա պաղատի և զղջանայ. « Զի բազում են, ասէ, անօրէնութիւնք մեր առաջի քո, և մեղքն մեր հակառակ կացին մեզ »։ Տեսանե՞ս, զի ոչ դոյզն ինչ մեղք, այլ բազում մեղքն զարթուցանեն

1 Յօր. Բառք ինչ անընթեռնլիք. թուի լինել. Կամ ընկերաց ինչ օգտիցէն. խոյ նոցայն, և այլն։

զԱստուած. քանզի ներել գիտէ այնոցիկ՝ որ ոչ անչափն մեղանչիցեն, որպէս զՔանանացւոյն ասէր, թէ Չև ևս են կատարեալ մեղք նոցա. և զՓարաւոնէ, թէ Վասն այսորիկ գրգռեցի զքեզ՝ զի 'ի քեզ ցուցից զզօրութիւն իմ. սոյնպէս և առ Հրէութիւնն. որպէս և Պաւղոս իսկ ասէր, եթէ Երկնչիմ՝ գուցէ գայցեմ սուգ առնուլ 'ի վերայ բազմաց՝ որոց յառաջագոյն մեղուցեալ իցէ և չիցէ ապաշխարեալ. որպէս և զայլս բազումս: Իսկ զԱնանիա և զՍափիրա՝ ընդէ՞ր, ասեն, անդէն յառաջին մեղսն սատակեաց Աստուած: Եւ զայսպիսի ինչ իրս բազում անգամ յօգուտ և 'ի դէպ առնէ Աստուած. և ուսցուք իսկ թէ և նոցա ո՞չ ևս ներեաց. նախ զի գողացան, ապա և զՍուրբ Հոգին փորձեցին. զի ոչ գողութիւն ևեթ Աստուծոյ նախրելոցն էր, այլ և փորձութիւն, զի փորձեցին զՍուրբ Հոգին. զի և եհարց ևս Պետրոս, և յայնմանէ ոչ ականածեաց կինն, եթէ Ա՞յսչափ ևեթ գնոց վաճառեցաւ ագարակն: Ընդէ՞ր հարցանէր. ո՞չ ապաքէն զի խոստովան լինիցին և գտանիցեն տեղի ապաշխարութեան: Քանզի և Աստուած յայն սակս հարցանէր զԱդամ, զի յապաշխարութիւն կոչեսցէ. և զԿայէն, թէ Ո՞ւր է Աբէլ եղբայր քո. զի զղջանայցէ զմեղսն: Մինթէ չկարէ՞ր յառաջնումն իսկ յանդիմանել. այլ թէ յանդիմանեալ էր՝ չթողուր պատճառ 'ի միջի յիւրմէ խոստովանութենէն բժշկել. ո՞չ վասն այնորիկ ասէ, եթէ Ասա՛ դու նախ զմեղս քո՝ զի արդարասցիս. պատուիրէ չմեղանչել. բայց թէ մեղանչիցեն՝ չհարկանէ ընդ վայր, այլ դարձեալ յայց ելանէ՝ զի յախտիցն ապրեցուսցէ:

« Բազում են անօրէնութիւնք մեր առաջի քո »: Յորժամ առաջի Աստուծոյ բազում իցէ անօրէնութիւնն, զի՞նչ չիցէ առաջի նորա բազում զղջումն զղջացելոյն, որ ոչ հաւաստեան խնդրէ, և ներելով կամի լսել. զի թէ առաջի հօր յորժամ յանցանք որդւոյն յայտնեսցին, ծածկել կամի, և ոչ հաւաստեաւ քննել զամենայն, ո՞րչափ ևս առաւել Աստուած, որ ևս անչափ առաւել գիտէ խնամով հայել յանցանս յանցաւորին:

Մեղք ձեր, ասէ, որոշեցին 'ի մէջ ձեր և 'ի մէջ

Աստուծոյ։ Վասն այսորիկ և մարգարէն պաղատի ընդ-նոսա, եթէ « Անօրէնութիւնք մեր հակառակ կացին մեզ, և անիրաւութիւնք մեր 'ի մեզ են »։ Զիք ինչ քան զայն չար յորժամ մեղանչիցէ ոք, և անդէն յանձին ունիցի պահել զմեղսն։ Է մարթ մեղանչել, և 'ի բաց ընկենուլ զմեղսն. մարթի յանցանել, և 'ի բաց ընկենուլ զյանցանսն. այլ այն չար է՝ յորժամ անդէն յանձին ոք տարեալ ունիցի զմեղսն։ Քանզի և Սոդոմայեցւոցն յորժամ 'ի գլուխ ելին չարիքն, յայնժամ ասէ. Աղաղակ Սոդոմայեցւոց յաճախեաց առ իս։ Տեսանես, յորժամ յաճախեցին չարիքն, յայնժամ էջ՝ առնուլ վրէժս։ Եւ զԵգիպտացւոցն զչարիս ակնարկեալ, Տեսանելով, ասէ, տեսի զչարչարանս ժողովրդեան՝ որ յԵգիպտացւոցն է, և հեծութեան նոցա լուայ. և առ Նոյիւ, եթէ Ապականեաց ամենայն մարմին զճանապարհ իւր։ Քանզի ոչ վաղվաղակի հատանէ, եթէ ոչ նախ տեսանիցէ զվէրսն յամենայն կողմանց ճարակեալ, կամ թէ զի յապաշխարութիւն ածցէ, կամ զի նախ կատարեսցին չարիքն։ Զոր օրինակ բժիշկ մի իմաստուն որ գիտիցէ զժամանակն՝ յորում պարտ իցէ զցաւն հատանել, տեսէ բաւէ զի յայնժամ հատանիցէ՝ յորժամ դեղն իցէ, և օգտակար դեղովք բժշկեսցէ. նոյնպէս և Աստուած գիտէ եթէ բազում պատժոց արժանի եմք. կամի զի ապաշխարութեամբն ապրեցուցանիցէ և 'ի վերայ այնչափ չարեաց։

Զի այնչափ զայրացեալ էին ցաւքն, զի որք զչարիսն ատէին, պէսպէս կտտանօք կտտէին զնոսա. Ետես, ասէ, Տէր, և ոչ հաճեցաւ. զի ոչ գոյին իրաւունք. և ետես՝ զի ոչ գոյր մարդ, և ոչ որ դառնայր յօգնականութիւն »։ Զի և ոչ միտք ուրուք յօժարէին յարդարութիւն, չառնոյր այնուհետև Աստուած յանձն, եթէ յայնչափ չարիս մաշեսցին մարդիկ. այց առնէր, 'ի խնդիր ելանէր. վասն որոյ և ասէր իսկ, եթէ «Հատոյց նոցա բազկաւ իւրով, և ողորմութեամբ իւրով հաստատեաց »։ Եւ չթուիցի՞ իսկ քեզ եթէ յոյժ մարդասիրութեան է գործդ. սոյնպիսի ախտ 'ի միջոյ բառնալ՝ կրկին ողորմութիւն է, և՛ առ չարչարեալսն և առ չարչարիչսն. զի զնոսա 'ի չարեաց փրկեսցէ, և զչարչարիչսն 'ի չարչարելոյն ցածուսցէ. և այն ոչ

եթէ չարչարելոց ինչ երախտիք իցեն, այլ չարչարւ-չացն։ Քանզի և արտաքին օրէնք բազում անգամ զմիոյն ուրուք յանցանք՝ հասարակաց համարին. և զչնացելոյն՝ որ զընկերին կին խայտառակիցէ՝ չտան ապրել. թէ և որում մեղուցեալն իցէ՝ շնորհել զյան-ցանսն կամիցի, չառնեն զնա իշխան պատժոց, այլ ան-ձանց իմն համարին զանարգանսն. և այն՝ զի և զնա պատուեսցեն։

Ապա վառէ զԱստուած զինուք՝ որ նմա պատշաճա-կան իցէ. «Եւ զգեցաւ, ասէ, իբրև զզրահ՝ զարդա-րութիւնն իւր, և եդ 'ի գլուխ, ասէ, իբրև զսաղա-ւարտ՝ զփրկութիւն»։ Եւ մեք զայնպիսի զէնս զգեց-ցուք՝ զարդարութեանն, զուժգինն, զզօրաւորն, յո-րում ոչ կարիցէ գամագիտ լինել թշնամին. որ ոչ 'ի պղնձոյ և յերկաթոյ կազմիցի, այլ յառաքինու-թեանց քուրայից։

«Եւ երկիցեն որ յարևմուտս իցեն յանուանէ Տեառն, և որ յարևելս իցեն՝ 'ի փառաւորեալ յանուանէ նորա. զի եկեսցէ որպէս զգետ բռնութեամբ՝ բարկութիւն 'ի Տեառնէ. եկեսցէ բարկութիւն հանդերձ սրտմը-տութեամբ։ Եկեսցէ 'ի Սիօնէ փրկիչ, և դարձուսցէ զամբարշտութիւնսն Յակոբայ. և այս իցէ որ յինէն ուխտ, ասէ Տէր. Հոգին իմ՝ որ է 'ի վերայ քո, և բանքն իմ՝ զոր ետու 'ի բերան քո, մի պակասեսցեն 'ի բերանոյ քումմէ և 'ի բերանոյ զաւակի քո, ասէ Տէր. յայսմհետէ մինչև յաւիտեան»։ Այսինքն՝ աւետիքն իմ և խոստմունք ճշմարիտ լինիցին և հաստատունք, և հանապազ կացցեն մնայցեն։

## ԳԼՈՒԽ Կ

«Լոյս առ, լոյս առ, Երուսաղէմ, զի հասեալ է լոյս քո»։ Ակիւղաս և այլքն ասեն. Արի և լուսաւորեաց։ Եւ զի՞նչ ինչ շնորհս յայտ առնիցէ պատուէրս. զի եթէ եկեալ հասեալ է լոյսն, ապա որք կամեսցին և որք չկամեսցին՝ հարկ է լուսաւորել։ Եւ ոչ ուրեք.

զոր օրինակ լուսոյ արեգական ոչ ըստ բնութեան ձառագայթիցն է լուսաւորելն, այլ ըստ աչացն առողջութեան, նոյնպէս և առ այն լոյս՝ մարդկան պէտք են որ ընդունիցին զշնորհսն, ոչ մերժիցեն զերախտիսն յանձանց։ Քանզի սովոր են միշտ բարութիւնքն ծուլացուցանել զմեզ. և անարժանաւորս առնել 'ի պարգևացն. զի մի այսպիսի ինչ լինիցին, յառաջագոյն խըրատէ պատշաճական գտանել առ լոյսն. վասն այնորիկ իսկ և կրկնէ, եթէ « Լոյս առ, լոյս առ ». և « Եկեալ է լոյս քո »։ Այլ իմն լոյս յայտ առնէ, զգիտութեանն։ Եւ արդարև չիք ինչ լաւ և առաւել քան զայն լոյս՝ որ զուրախութիւնն պարգևէ, և զտրտմութիւնն հալածէ։

« Եւ փառք Տեառն 'ի վերայ քո ծագեսցեն »։ Տե՛ս, զորպիսի՛ լուսոյ ճառէ. ընդ որում փառք Աստուծոյ ուղեկից իցեն. զի յԱստուծոյ փառսն այն վայելէ՝ որ 'ի կարգս ուղիղս իցէ և 'ի վարս հաստատունս։ Եւ արդ ընդէ՞ր ոչ ասաց՝ եթէ լիցին, այլ թէ ծագեսցեն. զի զնորոգութիւնն որ 'ի նոսա լինելոց իցէ՝ յայտ արասցէ. զի որ էին Աստուծոյ փառքն, և 'ի նոցանէ հեռացեալ էին, յայնժամ ծագելոց էին 'ի նոսա փառքն Տեառն, և՛ 'ի պատիժսն և 'ի յարութիւնսն։

« Զի ահաւասիկ խաւար ծածկեաց զերկիր և մառախուղ զհեթանոսս. բայց 'ի քեզ Տէր յայտնեսցի »։ Զի յորժամ այս լոյս ծագեսցէ, հարկ է ամենայն տեղեաց լուսաւորել. իսկ այն ոչ 'ի հարկէ, քանզի ըստ կամացն է, և ոչ ըստ բռնութեանն։ « Եւ գնասցեն թագաւորք 'ի լոյս քո, և հեթանոսք 'ի ծագել լուսոյ քո »։ Տեսանե՞ս զառաւելութիւն լուսոյն. զի չքնաղ իմն է, և զթագաւորս լուսաւորէ։ « Ամբարձ դու շուրջ զքև զաչս քո, և տե՛ս դու ժողովեալ 'ի քեզ զամենայն որդիս քո »։ Այս ամենայն որ ինչ աւետիք 'ի բնաւ ընթերցուածին են՝ խոստացեալ էին նոցա յետ դարձին. և եթէ է ինչ՝ որ ոչ եղև, վասն նոցա անարժանութեան չեղև։ Իսկ այլք յեկեղեցի առնուն, և ոմանք յարութիւն։

« Վասն բարկութեան իմոյ, ասէ, հարի զքեզ »։ Այսինքն, ոչ թէ առ տկարութեան իմում վարեցար գերի. ապա թէ այս այսպէս իցէ, կարող է ապրեցու-

ցանել. քանզի և ասէ, եթէ «Վասն ողորմութեան իմոյ սիրեցի զքեզ»։ Ոչ վասն քո ինչ ուղղութեան. պատիժք վասն քոց մեղաց եղեն, և ողորմութիւնն[1] ոչ՚ի քոց ինչ ուղղութեանց։ «Բացցին դրունք քո հանապազ՚ի տուէ և՚ի գիշերի, և ոչ փակեսցին»։ Այս իբրև ըստ առաւելութեան իմն ասացեալ է վասն ժողովրդեանն, այսպիսի բանիւք յորդորեսցին և եկեսցեն՚ի գերեացն. իսկ յեկեղեցին Ճշմարտութեամբն իսկ կատարեցաւ, զի բացան դրունք եկեղեցւոյ և ոչ փակեցան։

«Եւ ոչ լիցի քեզ արեգակն՚ի լոյս տուընջեան, և ոչ ծագեսցէ լուսինն լուսաւոր լինել՚ի գիշերի. այլ եղիցի քեզ Տէր լոյս յաւիտենից, և փառք քո՝ Աստուած լիցի. զի ոչ մտցէ քեզ արեգակն, և լուսինն՚ի քէն մի պակասեսցէ»։ Զիա՞րդ ոչ լինիցի լոյս տուընջեան արեգակն, կամ զիա՞րդ դարձեալ ոչ մտանիցէ, կամ զիա՞րդ ծագեսցէ լուսինն և ոչ ծագեսցէ։ Ոչ եթէ լուսաւորութիւնք լուսաւորացն պակասեսցեն, այլ թէ ոչ այնչափ լուսաւորեսցեն՝ որչափ և Տէրն լուսաւորեսցէ. զի լուսաւորացն լոյս՝ ժամանակաւ զմարմինս եւեթ լուսաւորեն, իսկ Աստուծոյ լոյսն՝ զմարմինս և զհոգիս։

Տեսանե՞ս զսքանչելիսն. զի զբարութիւնս ժողովրդեանն՝ որ յետ դարձին լինելոց էին՝ ակնարկէ, և զշնորհացն մեծամեծս, որ՚ի նորումն լինելոց էին՝ գուշակէ։ Զի ոչ միայն լուսաւորացն լոյսն լուսաւորեսցէ, այլ առաւել Աստուծոյ լոյսն զմիտս և զխորհուրդս, յորմէ զրկելոց էր ժողովուրդն. քանզի և յայտ իսկ առնէ յաջորդաւն. զի ոչ հոգևոր ինչ խոստանայ նոցա պարգևս, այլ ոսկի և արծաթ, պղինձ և երկաթ, և խոյս Նաբէութայ, և նոճ և սարդ։ Եւ միտ դիր, Հրեայդ, և մի ինչ աւելի ակն ունիցիս քան զմարմնաւորս. զի թէպէտ և նուազեսցի լոյս լուսնի կամ արեգական ընդ ժամանակս ժամանակս, ոչ յիւրեանց ինչ բնութենէ, այլ վասն չարեաց այնոցիկ՝ որ ընդ սոքօք մեղանչէին. վասն այնորիկ ասէ Աստուած,

1 Յոր. Ի մաշմանէ Թղթոյն բառք ինչ անընթեռնլիք. ըստ պահանջելոյ կարգի բանիցն եդաք. Եղէն, և ողորմութիւնն։

եթէ յայնժամ համարձակ գնայցես 'ի լոյս լուսաւորացն. և դարձեալ, եթէ բարձցին 'ի քէն տրտմութիւնք ամենայն։

« Եւ լցցին աւուրք սգոյ քո »։ Վասն տարաժամ մահուցն ասէ, եթէ այս ոչ ևս լինիցին։ « Եւ ժողովուրդք քո արդար յաւիտենից, և ժառանգիցեն զերկիրն »։ Եւ այս ոչ եթէ յԱստուծոյ եղև, այլ 'ի նոցանէ. զի Տէր ած 'ի յերկինս, նոքա իւրեանց չարեօքն ընկեցիկ եղեն։ « Պահիցեն զնորատունկ գործ ձեռաց իմոց 'ի փառս »։ Զի զոր եսն տնկեցի, ասէ, կամիմ՝ զի կացցէ մնասցէ յաւիտեան 'ի փառս իմ։ « Զի սակաւաւորն հազարաւոր եղիցի և կրտսերն յազգ մեծ »։

## ԳԼՈՒԽ ԿԱ.

« Հոգի Տեառն 'ի վերայ իմ, վասն այսորիկ իսկ օծ զիս »։ Եւ այն իսկ իցեն պատճառք. նա այլուր այլ իմն պատճառս յայտ առնէ, եթէ Յորոյ վերայ տեսանիցես զՀոգին՝ զի իջանիցէ և հանգչիցի, նա է որ մկրտեսցէ 'ի Հոգին։ Տե՛ս, զի և աստ իսկ առանց վերադրի ասէ, եթէ « Հոգի Տեառն 'ի վերայ իմ », և ոչ եթէ Հոգին Տեառնն. այն իսկ է, Եթէ որ զՀոգի Քրիստոսի ոչ ունի, նա չէ նորա։ Եւ յայտ է՝ եթէ ոչ 'ի կարօտութիւն առ Յիսուս զՀոգին, այլ միայն 'ի վկայութիւն. զի ոչ եթէ զնուրն [1] 'ի կարօտութիւն առնուցու. զի որպէս աստուածութեամբն եցոյց ըզզօրութիւն, նոյնպէս և Հոգւովն. զի ցուցցէ, եթէ 'ի նորին բնութենէ՝ յորմէ ինքն է՝ և Հոգին է։ Քանզի և ասաց ինքն, եթէ Կատարեալ է ամենայն ինչ։ Ո՞ւր են Հրեայք, ո՞ւր հերձուածողք. յորժամ Աստուած ասիցէ, թէ Ամենայն ինչ կատարեալ է, չիք ոք որ ընդդէմ այլ ինչ կարիցէ ասել։ Աստ ասէ. « Հոգի Տեառն 'ի վերայ իմ, վասն այնորիկ իսկ օծ զիս ». և այլուր ասէ, եթէ Օծ զնա Աստուած Հոգւովն և զօ-

1 Յօր. Զի ոչ եթէ զոր 'ի կարօտութիւնն առնուցու։

բութեամբ։ Աստուած, ասէ, և ոչ մարդ էր. ոչ իւղով, այլ Հոգւով և զօրութեամբ. զի եթէ իւղով 'ի մարդկանէ էր օծեալ, ոչ առաւել էր քան զայլ օծեալսն։ Այլ զոր օրինակ մկրտեցաւ, և չէր կարօտ մկրտութեան, քանզի յառաջ քան զմկրտութիւնն էր 'ի նմա Հոգին. ըստ այնմ, եթէ Հոգին Սուրբ եկեսցէ, և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի 'ի վերայ քո. նոյնպէս և 'ի մկրտութեանն եկն 'ի վերայ նորա Հոգին, ոչ զի սըրբեսցէ, քանզի սուրբ իսկ էր և սրբիչ ամենայնի. և ոչ զի զօրութիւնս ինչ կատարեսցէ, զոր ինքն իւրով աստուածութեամբն կարէր կատարել. այլ զի վկայեսցէ միայն. ըստ այնմ, զոր Յովհաննէս ասէր, եթէ Ես ոչ գիտէի զնա, այլ որ առաքեացն զիս ջրով մկրտել, նա ասաց ցիս, թէ յոր վերայ տեսանիցես զՀոգին Սուրբ՝ զի իջանիցէ և հանգչիցի՝ նա է։ Եւ զի յայտ արասցէ, եթէ վասն վկայութեան երևէր Հոգին, և ոչ վասն կարօտութեան ինչ, ասէ. Ես տեսի և վկայեմ՝ եթէ նա է Որդին Աստուծոյ։ Եւ յայտ է եթէ Աստուծոյ Որդին՝ Աստուած է. որպէս ինքն Հայր իսկ վկայեաց, եթէ Դա է իմ Որդի սիրելի, դմա լուիջիք։ Եւ զի ասէ, եթէ Հոգւովն հանեմ զդևս [1]. և դարձեալ, եթէ Վարեցաւ Հոգւովն զի փորձեսցի 'ի սատանայէ. այսպիսի բանիւք զմի կամսն և զմի հաւասարութիւն զոր ունէր ընդ Հոգւոյն՝ իմանամք տեսչութեամբ։ Այլ տեսցուք եթէ շնորհս ինչ ասիցէ, եթէ զՀոգին Սուրբ. «Հոգի Տեառն», ասէ, և ոչ շնորհք Տեառն։ Եւ այն իսկ է զարմանք, զի Հոգի Տեառն 'ի վերայ Աստուծոյն երևէր։ Այնպէս պարտ իսկ էր երևել Հոգւոյ Սրբոյ 'ի վերայ մարմնաւորութեանն Աստուծոյ. և զի 'ի մեզ շնորհք Հոգւոյն՝ նորա մարմնովն հաստատեսցին. զի որպէս 'ի նորա վերայ երևեցաւ Հոգին 'ի վկայութիւն, և ոչ 'ի կարօտութիւն, նոյնպէս 'ի վկայութիւն 'ի մեր վերայ և 'ի ընուլ զկարօտութիւն. ըստ այնմ, եթէ ինքն Հոգին վկայէ հա

1 Յօր. Հարբն հանէմ զդևս, որ թէ չիցէ ուղիղ. Թուի յանձնագրութենէ գաղափարողին եղեալ. զի 'ի Մատթէոսէ առեալ է վըկայութիւնդ. «Ապա եթէ Հոգւով Աստուծոյ հանեմ ես զդևս» և այլն. (Մատթ. ժբ. 28)։

գուցա մերում՝ զի եմք որդիք Աստուծոյ։ Եւ զի նորա Որդի էր բնութեամբ՝ ըստ աստուածութեանն, վկայեաց և յայտնեաց մեզ. և զի մեք չեմք որդիք բնութեամբ, սրբէ և առնէ զմեզ որդիս շնորհաց։

« Աւետարանել աղքատաց առաքեաց զիս »։ Առաքելութիւն զյայտնութիւնն իմացուք. քանզի ուստի՞ յով առաքեցի, որ յամենայնին բնութեամբ էր ըստ աստուածութեանն։ Աղքատաց, ասէ. միթէ կուսակալք և աշխարհակալք աղքատք իցեն, և կամ մեծատունք ամենայն՝ որոց քարոզէր։ Այլ, ասէ, և կարի քաջ աղքատք. և են բազում մեծատունք ըստ աշխարհիս կենաց, և աղքատք ըստ հանդերձելոցն։ Դարձեալ և այլազգ ես. աղքատս՝ զխոնարհս կոչէ որ զիսկզբանն զաւետիսն ընկալան։

« Բժշկել զբեկեալս սրտիւք »։ Որոց սիրտքն համապազ մաշեալ էին 'ի մեղացն կասկածանաց։ Հրեայք հպարտացեալ՝ չեղեն արժանի ընդունել զաւետիսն. և Տեառն սկսեալ զերանութիւնս՝ նախ աղքատաց տայր երանիս [1], եթէ Երանի՜ իցէ աղքատաց, զի նոցա է արքայութիւն երկնից։ Աղքատք բացաւ գուան արքայութեանն ։ Ամենայն բարեաց պատճառ խոնարհութիւն է, որպէս զի ամենայն չարեաց պատճառ հպարտութիւն։

« Հոգւոյն, ասէ, օծ զիս »։ Այսինքն է վկայեաց. զի մի՛ իբրև զայլ մարգարէս օծեալ ինչ լոկ կարծիցեն, թէ աւետարանել միայն առաքեալ իցէ, յարէ 'ի նոյն, թէ և « Բժշկել զբեկեալս սրտիւք ». կամ 'ի մեղաց կամ 'ի տրտմութեանց։ Եւ զի իւր է բժշկութիւնն, և չէ իբրև զմարգարէ ոք անկեալ, թէ նախ առնուցու և ապա տացէ, ասէ իսկ յԱւետարանին, եթէ Եկայք առ իս, վաստակեալք և ծանրաբեռինքդ, և ես հանգուցից զձեզ. եւն ասելով զձրիութեան իշխանութիւնն յայտ առնէ։ Տեսանե՞ս, զի առաջին բարութիւնքն երևելիք էին, և այս իմանալիք. առաջինքն մարմնականք, և վերջինքս ոգւոց դարմանու-

1 Յոր. Ընդունել զաւետիսն... եւս զերանութ... նախ աղքաց... եթէ երանի՜ իցէ. փոխանակ եղծեալ բառից ինչ, ըստ պահանջելոյ իմաստիցն եդաք. և Տեառն սկսեալ... տայր երանիս։

թիւնք. ոչ զմտաւորացս ինչ, և ոչ զաստէն ինչ զաշխարհականացս, այլ զհանդերձելոցն և զերկնաւորացն ձաւէ: Եւ յիրաւի իսկ կոչէ աղքատս. քանզի զրկեալ էին յայնպիսի բարութեանց. և որպէս ոչ եթէ ընդունելոյն միայն պիտոյ իցէ զաւետիսն, այլ զի յետ ընդունելոյն չզղջանայցեմք:

« Բժշկել զբեկեալս սրտիւք »: Զի կէսք առ ցաւս բեկեալ էին սրտիւք, և կէսք 'ի մեղաց, և այլք 'ի մեղաց և 'ի ցաւոց. որպէս անդամալուծին. ասաց Տէրն, եթէ Ողջացար աւադիկ, Երթ, մի ևս մեղանչիցես: Այլ առնի բեկումն սրտի և վասն արդարութեան և վասն մեղաց. ըստ արդարութեան, ըստ այնմ, եթէ Զսիրտ բեկեալ և զխոնարհ Աստուած ոչ արհամարհեաց. և վասն մեղաց, ըստ այնմ, եթէ Բժշկեա զհարուածս սորա՝ զի սասանեցաւ: Բեկանէ և սատանայ, որպէս զկինն կարկամեալ. և մեղք, զի Անօրէնութիւնք իմ բարձրացան քան զգլուխ իմ, նեխեցան և փտեցան վէրք իմ: Զի բեկեալ ինչ յորժամ ոչ դարմանեսցի, փուտն 'ի ներքս գործէ: Եւ դարձեալ ասէ, եթէ Բեկումն և թշուառութիւն 'ի ճանապարհս նոցա: Ոչ այնչափ մարմնոյն ցաւքն կարեն բեկանել զոյժ մարմնոյն, որպէս մեղացն ցաւք՝ զոգւոյն զօրութիւն խորտակեն:

Դարձեալ այլ իմն իմանալի բարիք. « Քարոզել գերեաց զթողութիւն »: Որոց ոգիքն գերեալ էին. և ուստի՞ յայտ իցէ՝ եթէ զինչ ասիցէ. յայնմանէ՝ զի ոչ ասաց տալ թողութիւն, այլ եթէ քարոզել թողութիւն, զի ցուցցէ եթէ ըստ կամաց առողացն են բարիքն. եկն տալ աւետիս, զի առնիցէ ախորժական զբարեացն ցանկութիւն: « Եւ կուրաց տեսանել »: Եւ ո՞րք կոյրք էին 'ի Բաբելոնէ. Թէպէտ և յառաջ քան զիջանելն անդր կոյրք էին, ըստ այնմ, եթէ Ո՞վ իցէ կոյրն, եթէ ոչ ծառայքն իմ. այլ ոչ եթէ յետ գերութեանն:

« Կոչել տարեկան Տեառն ընդունելի »: Ակիւղաս և Սիմաքոս՝ հաճութեան, ասեն: « Եւ օր հատուցման Աստուծոյ մերոյ »: Եւ բարւոք ասէ հատուցման. զի մի յաւետիսս բարեացն կեղծ ապաստան լինիցին, և ծուլանայցեն: Եկեալ կայ առ դուրս դատաստանն՝

հատուցանել ըստ իւրաքանչիւր բարեաց գործոցն...[1]։ Զի ոչ վասն այնորիկ միայն եղև, ասէ, գալուստն, զի զմեղսն միայն թողուցու, և պարգևս շնորհեսցէ, և դու զայն 'ի պատճառս մեղաց առնուցուս, և ևս յաճախիցես զմեղանչելն։

« Կոչել զամենայն սգաւորս »։ Կամ որք վասն մեր, ճնաւորաց ինչ՚ի սուգ էին, կամ վասն հոգևորացն։ Իսկ Սիմաքոս՝ Փոփոխել, ասէ։ « Տալ սգաւորաց Սիովնի զփառս. փոխանակ մոխրոյն՝ օծումն ուրախութեան, և սգաւորացն հանդերձ փառաց՝ փոխանակ ոգւոյն ձանձրութեան »։ Իսկ այլք՝ ափշութեան ասեն՝ փոխանակ ձանձրութեան։ Տեսանես, որ ուրախութեան Աստուած է, նոյն եկեալ բառնայ զտրտմութիւնս. ոչ մարդ ոք 'ի մարդկանէ, և ոչ հրեշտակ 'ի հրեշտակաց. չիք ինչ աստ մարմնաւոր, այլ ամենայն ինչ հոգևոր։

« Եւ կոչեսցին, ասէ, ազգ Տեառն, և տունկ Տեառն 'ի փառս »։ Տեսանես, զի Տեառն տունկ են, և ոչ մարդոյ ուրուք. և ոչ ասէ եթէ ազգ, այլ եթէ « Ազգ արդարութեան »։ Եւ արդ, առ ո՞վ կատարեսցի այս. առ մե՞զ եթէ առ նոսա. այլ յայտնի իսկ է՝ զի տունկ Տեառն 'ի փառս՝ եկեղեցի է։

« Եւ շինեսցեն զաւերակսն յաւիտենից »։ Եւ արդարև աւերակք էին քաղաքք. ոչ կործանեալ ինչ պարսպովք և աւերեալ ապարանիւք, այլ 'ի մարդկանէ՝ որոց զԱստուած պարտ էր ճանաչել և ոչ ճանաչէին։ Եւ արդ շինեցան քաղաքք, զի գտանին 'ի նոսա մարդք աստուածագէտք։ Եւ բարւոք իսկ ասաց աւերակք յաւիտենից։

« Քաղաքք՝ որ յառաջագոյն աւերեալքն իսկ էին՝ կանգնեսցին. և նորոգեսցեն զքաղաքս աւերեալս ազգաց յազգս »։ Եւ եկեսցեն օտարածինք հովիւք խաշանց քոց, և այլազգիք մաճկալք և այգեգործք քո »։ Եւ այս իսկ է զարմանալի, զի յայտնի իսկ զիշխանաց եկեղեցւոյ ասէ, եթէ « Դուք քահանայք Տեառն կոչեսջիք, պաշտօնեայք Աստուծոյ »։ Զայս ամենայն իսկ

1 Յոր. Բառք ինչ իսպառ եղծեալք. առ 'ի լրումն իմաստիցն յաւելաք գուշակօրէն 'ի տեղի նոցին զբառսն՝ բարեաց, հատուցանէ։

քրիստոնէից ասէ, եթէ դուք եղիջիք ինձ 'ի թագաւորութիւն և 'ի քահանայութիւն և յազգ սուրբ : Տեսանե՞ս, զի յաւազանի իսկ առնի այս, զի ամենեքեան օծանին :

« Զզօրութիւն հեթանոսաց կերիջիք, և մեծութեամբ նոցա սքանչելի լիջիք. վասն այսորիկ զերկիր իւրեանց յերկրորդումն ժառանգեսցեն » : Տեսցուք յո՞ կատարեսցի այս, ե՞րբ ժառանգեսցեն յերկրորդումն. զի այն երկրորդ էր, թէպէտ և ոչ կատարեցաւ. իսկ սա աւասիկ ասէ, եթէ « Երկրորդում ժառանգեսցեն » : Եւ յայտ է եթէ ազգն՝ որ եկին վասն նոցա՝ անդրէն միւսանգամ ժառանգեսցեն զերկիրն : Եւ յայտ յաջորդաւն է՝ որ ասէ, եթէ « Ուրախութիւն յաւիտենից. զի ուրախութիւն յաւիտենից եղիցի 'ի վերայ գլխոյ նոցա » : Եւ արդ, ո՞ւր իցէ զի յաւիտենից ուրախ լինիցին հրեայք յերկրին :

« Զի ես եմ Տէր որ սիրեմ զարդարութիւն և ատեմ զյափշտակութիւն անիրաւութեան. և տաց զվաստակս նոցա արդարոց, և ուխտ յաւիտենից ուխտեցից նոցա, և յայտ լիցի 'ի հեթանոսս ծնունդք նոցա » : Այս՝ յառաքելոյն կատարեցաւ, որոց ետ ուխտ յաւիտենից. զի զաւակ նոցա ևս և ճանաչի 'ի մէջ հեթանոսաց : « Ամենեքեան որ տեսանիցեն՝ ճանաչիցեն զնոսա » : Եւ ո՞ր ազգ է՝ որ ոչ ճանաչիցէ զնոսա : « Եւ կոչեսցին զաւակ օրհնեալ 'ի Տեառնէ. և ուրախութեամբ ցնծասցեն 'ի Տէր » : Վասն բազմութեան աշակերտելոց և վասն հանդերձելոց պարգևացն :

« Ցնծասցէ հոգի իմ 'ի Տէր, զի զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան և պատմուճան ուրախութեան » : Տեսանե՞ս .զոգւոցն ևեթ ուրախութիւն. և չիք ինչ մարմնաւոր, այլ ամենայն հոգևոր. քանզի ասէ իսկ, եթէ « Ցնծասցէ հոգի իմ 'ի Տէր » : Զի յորժամ ընդունիցիմք շնորհս ինչ հոգևորս, ուրախ լինիմք 'ի Տէր. զի ամենայն ոք յիւրաքանչիւր ստացուածս ուրախ լինի, յորդիս, 'ի ստացուածս. թէպէտ 'ի սրտմտութիւնս իցէ, և տեսանիցէ կին ցանկալի, կամ որդիս անձկալիս, վիշտքն նմա այնուհետև չեն վիշտք. նոյնպէս և որ յԱստուածն ուրախ լինիցի, և մանաւանդ գիտիցէ ստոյգ եթէ հաշտ է ընդ նմա Աստուած,

ոչ վիշտքն վիշտք են նմա այնուհետեւ, և ոչ նեղութիւնքն նեղութիւնք. որպէս առաքեալքն ուրախ լինէին հանապազ յԱստուած, և զայլոյն յորդորէին, թէ Ուրախ՛ լերուք ՚ի Տէր յամենայն ժամ: Եւ այն իսկ հաստատուն և անմահ ուրախութիւն. իսկ եթէ յինչս ոք ուրախ լինիցի՝ առ ժամանակ մի են ուրախութիւնքն [1], զի յորժամ ինչքն վատնեսցին, ընդունայն է ուրախութիւնն. որպէս ծաղիկ գարնայնոյ, մինչդեռ կկչեն՝ ուրախ առնեն զտեսիլ երեսաց, իսկ յորժամ անցանիցեն, բառնան զբերկրութիւն յաչաց, նոյնպէս և ինչքն հանեն զուրախութիւն ՚ի մտաց. և թերեւս նոքա նախ թողուցուն զմեզ, և կամ եթէ մեք զնոսա: Եւ դարձեալ ուրա՞խ ոք իցէ ընդ կին գեղեցիկ. սակաւ ժամանակաց ստացուած, առ ժամանակ մի բերկրութիւն, դիւրածախ ուրախութիւն, ընդ բազում կարեաց, ընդ ազգի ազգի կասկածանօք. և վասն այնորիկ հարկ է թէ ժամանակեան իցէ ուրախութիւն. իսկ եթէ զԱստուած սիրեսցես՝ անմահ է գութն, հանապազ նորոգի սէրն, միշտ բորբոքի անձուկն, ոչ ծերանայ, ոչ հնանայ, քանզի և ոչ նա իսկ՝ ընդ որում խնամարկիցես. այլ կայ մնայ միշտ նորոգ, ցանկալի և անձկալի: Եւ եթէ ասիցես թէ չտեսանեմ զնա, տես զերկինս, զիարդ գեղեցիկ են և որչափ մեծ, զիարդ քաղցր և ախորժական աչաց և պիտանացու առ ամենայն պէտս. իսկ երկինքդ՝ այնր զոր սիրեսցեսն՝ են գործք, և գործ դոյզն ինչ և սակաւ՝ մատանց նորա. և այտի իմանաս զնորա գեղն՝ որչափ հնար իցէ քեզ իմանալ: Ո՞չ տեսանիցես զնա. եթէ կամիս՝ տեսանես. զտեա՛ զմիտսդ, սրբեա՛ զսիրտդ. Երանի՜ իցէ, ասէ, որ սուրբքն իցեն սրտիւք, զի նոքա զԱստուած տեսցեն: Նա և եթ լիցի մեզ... կարեւոր գութ և անձուկ... [2] խոստան համարէ:

« Զի զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան »: Զո՞ր հանդերձ. զայս հանդերձ զոր զգենուցումք՝ չէ փըր-

1 Յօր. Բառք ինչ ամենեւին անընթեռնլիք ՚ի մաշմանէ թղթոյն. ՚ի լրումն իմաստիցն կարեւոր թուեցաւ մեզ յաւելուլ ՚ի տեղի նոցին՝ յինչս ոք ուրախ լինիցի, ուրախութիւնքն:
2 Յօր. Բառք ինչ ջնջադիր անընթեռնլիք:

կութեան. այլ գիտեմ զի գիտէն խորհրդոյն խորհրդականք. բայց սակայն ասասցէ և Պաւղոս. Որ միանգամ, ասէ, 'ի Քրիստոս մկրտեցայք, զՔրիստոս էք զգեցեալ. զի Նա իսկ է փրկութեան հանդերձ։ Զգեցար զհանդերձն, ոչ զի զմերկութիւն մարմնոյդ ծածկիցես, այլ զի 'ի բռնութենէ մահու անըմբռնելի լինիս։ Եւ բարւոք ասաց հանդերձ. քանզի մերկք և ծանակք էաք, անհնազանդք, անմիտք, մոլորեալք. ծառայէաք պէսպէս ցանկութեանց. քանզի մերկ արարին զմեզ մեղքն, և յամօթ արար սատանայ. որում մեք մեղէն տեղի տուաք 'ի մեզ. եկն Քրիստոս զգեցոյց զմեզ, և եցոյց թէ որպէս դիւրին է մերկանալ զհին մարդն ցանկութեամբքն հանդերձ, և զգենուլ զնորն՝ որ ըստ Աստուծոյ հաստատեցաւ. և քանզի է մարթ և մերկանալ, վասն այնորիկ պատուիրէ թէ զգեցարուք, զի հանապազ ընդ մեզ իցէ։

« Եւ պատմուճան ուրախութեան »։ Է ինչ փրկութիւն և կարեօք գտանել, կամ 'ի բժշկաց, կամ 'ի գանէ խրատուաց. իսկ սա ոչ այնպիսի ինչ է, այլ ուրախութեամբ և բիւրապատիկ բարութեամբք. ոչ տայ թոյլ յամօթ լինել։ « Իբրև փեսայի եդ ինձ միտր »։ Ակիւղաս, Իբրև զփեսայ վայելուչ պսակաւ։ « Իբրև զհարսն զարդարեաց զիս »։ Միտրն պսակ ինչ բոլորեալ նարօտ ակնակուռ, զոր դնեն 'ի գլուխ փեսայք 'ի հարսանիս։ « Իբրև զհարսն զարդարեաց զիս » ասէ։ Զի հարսանիք եղեն, և հոգևոր հարսանիք. քանզի հոգիքն ընդ Աստուծոյ եղեն հաղորդակիցք[1]։ Տես զաղքատութիւն հարսինն, զի և զհանդերձն և զզարդն 'ի փեսայէն առնու. քանզի չգոյր ոք որ այսպիսի հանդերձս կարէր զգեցուցանել. որպիսի, աղախին որ յորժամ առն թագաւորի հաճոյ լինիցի 'ի հարսնութիւն, և չգտանիցէ հանդերձս արժանիս հարսնութեան՝ յիւրմէ ուրոյն կազմել, և թագաւորն տայցէ նմա զամենայն և զարդարեսցէ. նոյնպէս և ե-

1 Յօր. Միտրն պսակ ինչ բոլորեալ նա... ռոտ ... ակն ... ուռ փեսայք 'ի հար... զիս ասէ. զի հարսանիք է... հարսանիք, քանզի հոգիք ... ոյ եղ հաղոր ակիցք. փես ղող ... որսնն։ Յապականեալոյ թղթոյն՝ այսպէս թերանգամ մնային բառքն. առ 'ի բովանդակել զիմաստն, զպակասութիւն եղծեալ բառիցն՝ գուշակօրէն լնուլ ջանացաք։

կեղեցւոյ՝ Քրիստոս ետ զամենայն զարդս և զարդարեաց: «Եւ իբրև զերկիր մի՝ որ աճեցուցանէ զծաղիկս իւր»: Զբազմապատիկ պտուղ առաքինութեանն ակնարկէ: «Այնպէս ծագեցուսցէ Տէր զարդարութիւն և զցնծութիւն առաջի ամենայն հեթանոսաց»: Վասն այսորիկ առաջի հեթանոսաց՝ զի տեսանիցեն և վկայեսցեն, և նմին նմանող եղիցին:

## ԳԼՈՒԽ ԿԲ

«Վասն Սիովնի ոչ լռեցից, և վասն Երուսաղեմի ոչ ներեցից»: Ինձ այսպէս թուի թէ վասն այնորիկ ասէ զայս՝ զի մի հպարտանայցեն ինչ: «Մինչև ծագեսցէ իբրև զլոյս արդարութիւն իմ, և փրկութիւն իմ իբրև զփայլակն վառեսցի. և տեսցեն հեթանոսք զարդարութիւն իմ, և թագաւորք զփառս իմ. և կոչեսցի քեզ անուն քո նոր, զոր Տէր ինքնին անուանեսցէ քեզ. և եղիցես դու պսակ վայելչութեան ՚ի ձեռին Տեառն, և թագ արքայութեան ՚ի ձեռին Աստուծոյ քո. և երկրին քում շինութիւն բնակութեան լինիցի»: Այսինքն՝ ՚ի զգուշութեան և յամրութեան[1]: «Եւ անուանեսջիր դու կամք իմ»: Եւ ե՞րբ կոչեցաւ անուն քաղաքին կամք Աստուծոյ:

«Զոր օրինակ ուրախ լինիցի փեսայն առ հարսին, այնպէս ուրախ լինիցի Տէր ՚ի քեզ»: Տեսանես նորագեալ ՚ի սէրն, զարթուցեալ զանձուկն: «Ի վերայ պարսպացն Երուսաղեմի պահապանս կացուցից հանապազորդ»: Եւ չկալա՞ն ինչ արդեւք պահապանս ՚ի վերայ պարսպացն Երուսաղեմի. այլ կացին և կարի իսկ ստէպ. և զի՞նչ օգտեցան. և զի հալածեցին և.: Պահապանս աստ՝ կամ զիշխանս ասէ, կամ զքահանայսն:

«Զի չիք ոք նման ձեզ՝ որ ուղղեսցէ և արասցէ զըն-

1 Յօր. Աստուծոյ քո.... լինիցի. [illegible]... [illegible]... [illegible]: Զայլ ամենայն բառս առ՚ի լրացուցանել զիմաստ բանին եդաք կարծեօք փոխանակ եղծելոցն:

ծութիւն Երուսաղէմի, և պարծանս յերկրի »։ Տե-
սանե՞ս, զի զնոսա առնէ պատճառս ամենայն ուրեք, և առնել զուղղութիւնս և չառնել։ Զի մի՛ ապաստան 'ի կանխասացեալսն լինիցին, և չպատրաստիցեն լինել զանձինս արժանիս, վասն այսորիկ ասէ, եթէ « Ոչ ոք գոյ նման ձեզ՝ որ ուղղեսցէ և արասցէ ցնծութիւն »։ Զի եթէ գայցէք յուղղութիւն, ցնծութիւն լինելոց էք Երուսաղեմի, և պարծանք երկրի. ապա թէ ոչ, սակայն կանխասացեալքն 'ի ձեր որդիսն՝ յառաջեալսն կատարելոց են, որ լինիցին ցնծութիւն վերին Երուսաղեմի, և պարծանք ամենայն երկրի։

« Երդուաւ Տէր 'ի փառս իւր և 'ի զօրութիւն բազկի իւրոյ »։ Տեսանե՞ս զերկդունակ երդմանն, զի 'ի փառս և 'ի զօրութիւն բազկի իւրոյ երդնուին։ « Եթէ ոչ ես տացէ զցորեան քո և զկերակուր քո թշնամեաց քոց »։ Եւ չե՞տ արդեւք. յայտ է թէ ես։ Միթէ անու ինչ առնէր զերդումնն։ Այլ վասն պատժոցն նմանադէպս շրջէր զերդումնն [1], իսկ զբարեաց երդումնն ընդէ՞ր շրջեսցէ։ Ոչ եթէ նա ինչ շրջեաց, այլ նոքա շրջեցին զուխտն, զի չկացին 'ի պատուէրսն։ Ոչ վասն այնորիկ ժողովեաց զնոսա, զի դարձեալ ևս աւելի ամբարշտեսցին։

« Եւ ոչ ևս արբցեն որդիք օտարաց զգինի քո, այլ որ ողորմեսցինն՝ կերիցեն և արբցեն 'ի սրահս իմ սուրբս »։ Տեսանե՞ս, զի ամենայն բարիք նոցա՝ երևելիք են. և միտ դիր, զի յորժամ իմանալիս ինչ պարգևք խոստանայցէ, յայնմանէ օտար են Հրեայքն։

« Երթայք գնացէ՛ք ընդ դրունս իմ, և հորդեցէ՛ք ճանապարհս ժողովրդեան իմոյ, և զքարինս 'ի ճանապարհէն 'ի բաց ընկեցէք. առէ՛ք նշան 'ի վերայ հեթանոսաց, զի ահաւասիկ Տէր լսելի արար մինչև 'ի ծագս երկրի »։ Ինձ այսպէս թուի թէ այս իմանալի իմն իցէ։ « Հորդեցէ՛ք ճանապարհ ժողովրդեան Տեառըն »։ Տե՛ս, որչափ անուանս դնէ նմա. քարինս ընտրեալս, ասէ, կոչեսցի անուն նորա կամք իմ, պա-

1 Յօր. Ն.... էփ ար.... էփ. Մինչ տոփ.... րդ.... ան պարծոցն նմանագոյնս շրջ....նն։ Գուշակութեամբ լրացուցաք զթերավանկ բառսդ՝ եղծեալս յապականութենէ թղթոյն։

րհապք դրոշմեալք։ Եւ ուր կոչեցան նմա այնպիսի անուանք. և ոչ իմանան թէ այլ ինչ յայտ առնէ այսոքիւք. զի վարս ինչ պարկեշտս խնդրէ. և եթէ չզգտանի 'ի նոսա, 'ի նոցա ծուլութենէ լինի։

## ԳԼՈՒԽ ԿԳ

« Իսկ այս ով է որ դիմեալ գայ յԵդովմայ, կարմրութիւն ձորձոց իւրոց 'ի Բոսորայ »։ Զի սովորութիւն է մարգարէից՝ յորժամ զսքանչելի իրաց ճառէ՝ հարցանելով ճառէ. զի ցուցցէ թէ ոչ ինքն միայն զարմանայ [1], այլ և զայլս զարմացուցանել կամի. որպէս յորժամ վերագոյնն ասիցէ, թէ Ո՞վ են սոքա որ իբրև զամպս թռուցեալ գան։ Զի յորժամ հաւատարիմ կամիցի առնել զպատգամս Աստուած, ոչ միայն 'ի մարգարէսն ցուցանէ զօրինակ իրացն որ լինելոցն իցեն, այլ այլ ինչ վարս հնարի ցուցանել. որպէս Ամովսն ասէր զԱստուծոյ, թէ Տեսի զՏէր, զի կայր 'ի վերայ անդամանդեայ պարսպի. և Դանիէլ յայլ կերպարանս. և Միքիա ասէր. Տեսանէի զԻսրայէլ ցրուեալ։ Տես և աստ. « Իսկ այս ով է որ դիմեալ գայ յԵդովմայ »։ Վասն... [2] 'ի վերագոյնս ճառէ, որ հանդերձեալ էին սատակել. և մանաւանդ այնպիսի դրացեաց՝ որ վիշտս և չարչարանս անցուցանէին ընդ ժողովուրդն։

« Տեսանէի այր և հանդերձ թաթաւեալ. գօտի ընդ մէջ՝ իբրև հնձանահարի, որոյ հնձան կոխեալ իցէ. և կարմրութիւն ձորձոց 'ի Բոսորայ »։ Վասն այնորիկ անտի երևէր, զի և տեղեօքն ցուցանէ զհարուածսն. որպէս յորժամ ասիցէ, թէ Տեսանէի սան մի 'ի հրատի, և երեսք նորա 'ի կողմանց հիւսիւսոյ. որպէս Զաքարիա զձիսն տեսանէր։

1 Զարմանան թէ ոչ ինքն միայն զարմանայ, այլ և, փոխանակ եղեալ քառից ինչ օրինակին կարգեցաք կարծեօք առ. 'ի լրումն իմաստիցն։
2 Յօր. Բառ մի եղծեալ. թուի լինել Եդովմայ կամ այլոց։

« Գեղեցիկ պատմուճանաւ »։ Եւ զիա՞րդ լիցի գեղեցիկ այնպիսի թաթաւեալ պատմուճանաւ. զի գեղեցիկ յայնժամ է պատմուճան, յորժամ ներկիցի։ Այլ ընդ այն իսկ են զարմանք, զի թէ չէր այնպիսի ինչ, և ոչ զմարգարէն զարմացուցեալ էր. զի յորժամ Աստուած զարմանալիս ինչ գործիցէ, դիւրութիւն պատերազմին ցուցանէր [1]. և յարենէն՝ թէ ոչ գինի էր՝ որ կոխէր, այլ արիւն. և ոչ դոյզն հնձան, այլ զնէ կոխէր. և ոչ սակաւ ինչ ցայտեալ, այլ քաջ թաթաւեալ։

« Հնձան հարի, ասէ, միայն, և 'ի հեթանոսաց ոչ ոք էր ընդ իս »։ Այսինքն՝ չեղէ կարօտ օգնականութեան, չկոչեցի զոք զօտար ինձ 'ի թիկունս։ Զի ոչ զհնձանէ ինչ բանք էին, այնու յայտ է, եթէ « Ի հեթանոսաց ոչ ոք էր ընդ իս »։

« Կոխեցի զնոսա սրտմտութեամբ իմով, և ճմլեցի զնոսա, և իջուցի զարիւն նոցա յերկիր »։ Եւ ընդ էր արդեւք. « Զի հասեալ էր, ասէ, օր հատուցման նոցա, և տարեկան փրկութեան »։ Զի 'ի նոցանէն հատու-

1 Այսպէս յօրինակին. ուր յայտնապէս խառնակութիւն է. մտաւորից երեւի. և պատճառք, զի յանմտագրութենէ գաղափարողին քանի մի տողք 'ի բաց թողեալ են. ուր Գէորգ Սկեւռացի և Դաւիթ քահանայ 'ի քաղուածոյ մեկնութեանս իւրեանց Եսայեայ, առ սոյն բնաբան մարգարէին, յՍոկրեբերանէ առեալ ասեն. « Զի յորժամ Աստուած զարմանալիս ինչ գործիցէ, զզարմանսն մի հարցուքննեացուք։ Ես բասան է ղըրաբէնաժ. որ է հզօր և հանճար. զի այնպիսի ինչ էր երևումն երկուցն։ Այս պատասխանի առնէ առ հարցանելն. Ես խօսիմ զարդարութիւն և իրաւունս փրկութեան. այսինքն՝ առնեմ. զի խօսելն այն՝ զգործն իսկ յայտ առնէ. քանզի Հզօր են գործք պատերազմաց նորա, ասէ Յովէլ։ Իսկ ընդէր կարմիր են յօդք քո։ Ոչ արիւն միայն էր և ոչ գինի սուրբ, այլ 'ի մէջ երկոցունց գունոցն. որ և յորդորէ զմարգարէն 'ի հարցանել. զի 'ի հնձանահարացն ձեռն զդիւրութիւն պատերազմին ցուցանէր, և այլն » (Գէորգ Սկեւռացի)։— « Եւ երբ Աստուած զարմանս գործէ, զզարմանսն 'ի բաց պարտ է ընկենուլ։ Ես բասան, ասէ, ղըրաբէնաժ. այսինքն՝ հզօր և հանճար. այնպէս երևէր երկուսցն, սաստիկ և հանգարտ։ Իսկ նա հարցմանն տայ պատասխանի, եթէ Ես խօսիմ զարդարութիւն և իրաւունս փրկութեան. այսինքն է՝ առնեմ. զի խօսքն Աստուծոյ՝ գործ է յայտնեալ։ Հզօր են, ասէ, գործք պատերազմաց նորա։ Իսկ ընդէր, ասէ, կարմիր են յօդք քո իբրև ճմլօղի։ Ինքն ցինքն հարցանէ, և պատասխանի տայ ինքեան. զի ոչ արիւն միայն էր և ոչ գինի սուրբ, այլ 'ի մէջ իւր երկոցունցն գունոց. որ յորդորէր քննել և հարցանել. զի 'ի հնձանահարացն ձեռոյ՝ և զդիւրութիւն յաղթութեան ցուցանէր, և այլն » (Դաւիթ քահանայ)։

ցումն առնոյր, և զորս նեղէինն՝ նոցա փրկութիւն առնէր։ Տեսանեմս, զի ինքեանք եղեն անձանց պատճառք։ Եւ զի մի յորժամ ցասումն լսիցես, կարծիս ինչ անհանճարականս կարծիցես Աստուծոյ, յարէ 'ի նոյն զուղիղ, զարդար դատաստան, թէ և յերկարեաց ածել զպատուհասն. ասէ. « Ցի հասեալ է օր հատուցման նոցա »։ Եւ զի ցուցցէ եթէ վասն Հրէից պատժին, ասէ. « Եւ տարեկան փրկութեան »։ Զոր օրինակ և 'ի դատաստանին՝ թշնամւոյն պատիժքն և մերս արութիւնք միանգամայն յայտնին, նոյնպէս և անդ զոմանս հարկանէր և զոմանս կեցուցանէր. զի ծանիցեն եթէ առ երկոսին զօրաւոր է. և ոչ որպէս արտաքին Յունաց չիմաստուն իմաստունքն դևս իմն համբաւեն, թէ կէսքն բարի ևեթ գիտեն առնել, և չար ինչ ոչ. և կէսքն չար ևեթ գիտեն առնել, և բնաւ ինչ բարի. թէ կէս իմն զօրութիւն ունիցին երկոքեան կողմանքն, նա և ոչ զկէսն։ Իսկ ես « Հնձան հարի միայն, և կոխեցի սրտմտութեամբ և բարկութեամբ »։ Ցիրաւի իսկ անուանի ցասումն և բարկութիւն. ցասումն՝ զոր ունէր 'ի վերայ Հրէից. նաև լաւ ևս է՝ զի լինիցի նոցա այն 'ի խրատ, ըստ առաքելական բանին, թէ Մի հպարտանար, այլ երկիր. զի այլոց չարչարանօքն նոքա զգաստանայցեն. քանզի բարութիւնք միշտ սովոր են յուլացուցանել զվայելուչսն, և 'ի ստահակութիւն ածել։ Իբրև սանձս ինչ 'ի բերան դնէր զդրացեացն նեղութիւնս. քանզի սովոր են վիշտք դրացեաց՝ ցածուցանել 'ի չարեաց և զայնոսիկ՝ որ 'ի կարի դիւրութեան իցեն. որպէս և ասեն իսկ բազումք 'ի բանից կարգի, թէ պարտ է երկնչել՝ յորժամ զդրացեաց ինչ չար տեսանիցեմք։

Միտ դիցուք և այլասացիկ բանիցն. « Իսկ այս ո՞վ է որ դիմեալ գայ յԵդովմայ »։ Կրկին է մարգարէութիւնն. արիւնազոյն երևէր նոցա Քրիստոս. քանզի և ասէ իսկ, եթէ Ոչ ոք կապիցէ զհզօրն, եթէ ոչ նախ զկազմածն նորա հանիցէ 'ի նմանէ. և դարձեալ, եթէ Քաջալերեցարուք, ես յաղթեցի աշխարհի. և այլուր, եթէ Քարոզել գերեաց զթողութիւն, և հանել 'ի բանդէ զկապեալս. և այլուր, թէ Դրունս պղնձիս և զնիգս երկաթիս խորտակեաց. և այլ ևս ինչ սոյնպի-

սիք, որ ցուցանեն զյաղթութիւն նորա, որ ցուցանեն զնա արիւնագոյն. որպէս և մարգարէն Յակոբ ասէր, թէ Լուասցէ 'ի գինի զպատմուճան իւր, և յարիւն խաղողոյ զձորձս իւր։ Եւ քահանայն Շմաւոն բազում ինչ ակնարկէ վասն պատերազմացն, եթէ Դա կայ 'ի գլորումն և 'ի կանգնումն բազմաց. և աստ այնպէս իմն երևի թէ զբազումս կոտորեալ՝ ելանիցէ յԵդովմայ. քանզի Բեթղահէմ յԵդովմայեցւոց կողմանէն կայ։ Եւ միւսն իբրև զինեալ իմն ցուցանէ, թէ Ա՛ծ զսուր քո ընդ մէջ քո հզօր՝ վայելչութեամբ և գեղով քով. զի մի այնպէս գծուծ ինչ համարեսցիս, որպէս մարգարէն վերագոյն ասէ, եթէ Նուաղ է տեսիլ նորա քան զորդւոց մարդկան։ Զի ոչ մի ազգ երևէր ամենեցուն, այլ այլազգ Հրէից երևեցաւ, և այլազգ առաքելոցն, և այլազգ մարգարէիցն. այլազգ Յակովբեանց 'ի լերինն, և այլազգ Կղէոպեանց, և այլազգ Պետրոսեանց, որ ասէրն Յոհան. Տէր է այն. և այլազգ Թովմայի, և այլազգ յառաջագոյն Մարիամայ և այլազգ յետ յարութեանն. զոր մերթ պարտիզպան կարծէր, և մերթ ռաբունի կոչէր. և նա ասէր. Մի մերձենար առ իս. իւրաքանչիւր ըստ անցնիւրոյ հաւատոյ չափէր զանձն։ Որպէս և Հայր նորա, զի մերթ հրով երևէր, և մերթ իբրև զծեր հինաւուրց, ըստ պատշաճից իրացն՝ որ առաջի կային. ոչ թէ զբնութիւն ինչ փոխէին, քաւ լիցի. այլ նոյն տեսիլ Տեառնըն էին [1], և այլազգ երևէին. նոյնպէս և աստ ըստ պատշաճի տեսողացն փոխէր զկերպարանս։

« Իբրև՛ զի գեղեցիկ է, ասէ, պատմուճանաւ իւրով »։ Մարթի և այլազգ իմանալ զպատմուճանն, այսինքն՝ զեկեղեցի, որ գեղեցկացաւ մարդասիրութեամբ նորա. ըստ այնմ, եթէ Զամենեսին զնոսա զգեցջիր դու. քանզի մեք նմա հանդերձ եմք, և նա մեր. չհամարի բաւական զմի օրինակ, այլ որ ինչ նայն՝ մեր է, զնոյն և զմեզ իւր կամի. Հանդերձ ձեր եմ, ասէ, այլ և դուք իմ հանդերձ. զգեցայց, ասէ, զձեզ, որպէս ոք զի ածիցէ միջապատ զմիջով. և դար-

1 Զբառսն՝ փոխէ Տեառնն էին, գուշակօրէն եդաք 'ի տեղի եղծեալ ինչ բառից օրինակին։

ձեալ ասէ. Մարմին էք 'ի մարմնոյ նորա և ոսկր յոս-կերաց նորա։ Ես, ասէ, գլուխ եմ, և դուք այլ ևս անդամք։ Նա և այլազգ ևս, եթէ ես տուն ձեր եմ, և դուք իմ տաճար. եթէ Որ յիս բնակէ, և ես 'ի նմա բնակեմ. դուք զիս ուտէք՝ և ես զձեզ. Իմ կերակուր և եթէ այն է, ասէ, զի արարից զկամս Հօր իմոյ. և Բարեխօս լինի վասն մեր։

« Բուռն է զօրութեամբ »։ Ոչ զբռնութիւն ինչ ասէ, այլ զզօրութիւնն։ Զուղղութիւն իրայն յայտ առնէ. եթէ զիրսն որք քննեսցէ՝ բռնութեամբ են. բայց զօրութիւն այնր՝ որ զիրսն 'ի գլուխ եհան, ոչ եթէ բռնութիւն ինչ իցէ [1]։

« Ես, ասէ, խօսիմ զարդարութիւն և զիրաւունս փրկութեան »։ Եւ ոչ ասաց թէ ժիլ իցէ։ Ամաչեսցեն հերձուածողք, որ զէութիւնն քննեն ։ « Ես, ասէ, խօսիմ զարդարութիւն և զիրաւունս »։ Զի ցուցցէ եթէ էութիւնն առանց քննելոյ է։ « Ես խօսիմ զարդարու-թիւն »։ Այսինքն՝ առնեմ դատաստան փրկութեան. և դատաստան նորա ոչ դատապարտութեան ինչ է, այլ փրկութիւն. 'ի մեղաւորաց, ասէ, արդարս առ-նեմ. և կիսոց դատաստան 'ի փրկութիւն է, և այլոց 'ի դատապարտութիւն։

« Ընդէ՞ր իսկ կարմիր են ձորձք քո։ Հնձան, ասէ, հարի միայն »։ Գիտէք իսկ խորհրդոյն միջամուխք։ Ասէ. «Հարի հնձան »։ Եւ արդարև միայն Աստուծոյ է այսպիսի գործ, և ոչ այլ ուրուք, ոչ մարդոյ և ոչ հրեշտակի։ « Սրտմտութեամբ իմով », ասէ։ Սրտմ-տութիւն առ թշնամիսն, առ սատանայ և առ մահ։ Եւ արդ տե՛ս, մարգարէն զխմրդ գոհանայ վասն հա-րուածոյ թշնամեացն, եթէ լինի արժանի այնմ ա-մենայնի, և աղաչէ զի պատիժքն բառնայցեն 'ի ժո-ղովրդենէն, որպէս Երեմիա և Դանիէլ և այլքն ամե-նեքեան։

« Զի զողորմութիւն Տեառն յիշեցի », ասէ։ Եւ երբեք զի մոռանա՞յր արդեւք մարգարէն. և ոչ ու-րեք. այլ զմոռացելոցն յիշեցուցանէ, եթէ մօտաւոր իրքս ազգական են առաջնոցն, զի գիտեն իսկ զյետին

1 Յօր. Բռնութիւն չիցէ։

երախտիս և զաւաշինան յիշեցուցանել. ինքն, ասէ, տայ ինձ իշխանութիւն և պետութիւն՝ պատմել զսքանչելիս նորա։

« Եւ զքաղցրութիւնս Տեառն յուշ արարից, զօրհնութիւնս Տեառն 'ի վերայ ամենայնի զոր հատուցանէ մեզ. Տէր դատաւոր բարերար 'ի վերայ տանն Իսրայէլի »։ Եւ ո՞չ միայն արդեւք. այլ զի և այսուիկ [1] աւելի իցէ. ոչ միայն այսուիկ, այլ և ամենայն իրօք, և յաճախագոյն սովաւ, զի ըստ մարդասիրութեանն դատի. քանզի և ասէ իսկ, թէ Հատուցանէ մեզ ըստ ողորմութեան իւրում, և ըստ բազում մարդասիրութեան իւրոյ ածէ 'ի վերայ զչարիս և զբարիս, ոչ առ չարութեան ինչ, այլ զերկոսեան 'ի բարերարութենէ. զի որպէս յարքայութենէ բարերարութիւնն երևի, նոյնպէս և 'ի գեհենէ. և ուր և խնդրեսցես՝ 'ի բարերարութենէն Աստուծոյ գտանի։ Եւ չթուիցի՞ քեզ թէ առ բարերարութեանն արար զԱդամ, և պարգևեաց նմա զդրախտն, և արար արժանի ընդ իւր խօսելոյ. և ոչ միայն այնչափ, այլ և հանելն յականէ, և 'ի դրախտէն մերժելն՝ և այն ըստ բարերարութեան էր. զի թէ իրքն հակառակ իցեն, այլ իւրաքանչիւր ըստ իւրաքանչիւր վախճանի վճարեցան։ Զի Հրէից ոչ միայն 'ի գերոյն դառնալ, այլ և գերին երթալ ըստ բարերարութեան էր։ Մեք երբեմն բարիք և երբեմն չարք լինիմք, քանզի ընդ բազում փոփոխմամբք կամք, և ոչ ուղիղ միտք գործեմք զամենայն. իսկ նա հանապազ բարերար է, զի բնութեամբ իսկ ունի զբարերարութիւնն, զի և 'ի տանջանսն և 'ի պատկերն նոյն բարերարութիւն երևի. զի թէ և հակառակ ինչ իրքն՝ որ երևեսցին՝ գործեսցին, այլ ոչ 'ի նորա ինչ մարդասիրութենէն, այլ յայնցանէ՝ որք ան. . . . . այնպիսի . . . . . . . որպէս արեգակն զի զկէս . . . . եցուցանէ [2]. և հուր 'ի խոնաւ նիւթոյ և 'ի կակղոյ՝ ցամաքս

1 [illegible]. այլ զի և այսուիկ՝ գուշակօրէն կարգեցաք փոխանակ անընթեռնլի բառից օրինակին։

2 Ցոր. Արկին տողք խաղաղ անընթեռնլիք յապականութենէ թղթոյն. ամբողջութիւն իմաստիցն թերևս այսպէս կազմիցի. Այլ յայնցանէ՝ որք անխորափ գտանին, և առնեն զանձինս այնպիսի իրաց արժանիս. որպէս արեգակն զի զկէս լուսաւորէ, և զկէսն այլ ցամաքեցուցանէ։

և խիստ առնէ. զի է ինչ՝ զոր խեցի առնէ, և է ինչ՝ զոր Թանձր, և է ինչ՝ զոր կակուղ. որպէս զոսկի՝ զի հալէ, և զկաւ խեցեցուցանէ, և երկոքին ըստ ջերմուԹեան գործէ։ Նոյնպէս և Տէր արար զգեհենն և զարքայուԹիւնն նովին միով մարդասիրուԹեամբ։ Եւ զի՞նչ իսկ ասիցեմ. դիւրագոյն է հրոյ զջերմուԹիւնն մերկանալ, և ոչ Աստուծոյ զբարերարուԹիւնն։ Զարարածոցս զիա՛րդ և իցէ խօսիմք՝ Աստուծոյ կամօք, իսկ զԱստուծոյ ոչ բանիւք և ոչ մտօք զհանգամանս ինչ կարեմք առնուլ. և յիրաւի ասէ, Թէ Ես նոյն եմ. ոչ զբնուԹենէն ինչ ասէ, այլ զբարերարուԹենէ և զխնամոց։ Եւ արդ, ո՞ւմ նմանեցուցանեմ զսէրն. Որպէս ուրախ լինիցին փեսայ ընդ հարսին, նոյնպէս ուրախ լինիցին 'ի ձեզ։ Իսկ զհօր և զմօր ասիցես. այլ չնմանէ ինչ. Մարմինք էք, ասէ, 'ի մարմնոց իմոց և ոսկր յոսկերաց իմոց։

« Եւ ասէ. Ժողովուրդ իմ էք և որդեակք, և ոչ անարգեսցեն զիս »։ Իսկ այլքն ասեն, Թէ ոչ անարգեցից։ Այսինքն, պարտ իսկ է իբրև որդւոց՝ բարիս գտանել յինէն. կամ որպէս այլք ասեն, եԹէ ոչ անարգեսցեն զիս։ Չասեմ, ասէ, եԹէ բարիս ինչ գտին յինէն, այլ զի որդիք էին, չէր պարտ Թողուլ նոցա զհայրն « Եւ եղև նոցա փրկուԹիւն յամենայն նեղուԹենէ »։ Ոչ եԹէ 'ի կէս նեղուԹեանցն փրկեաց, և 'ի կիսոյն ոչ. զի յորժամ կարեն և կամին 'ի միասին իցեն, չիք ինչ որ արգելուլ կարիցէ։

Արդ տես, զիա՛րդ [1] 'ի դէպ վարկանի զերախտիսն։ « Զի ոչ առաքեալ ոք, ասէ, և ոչ հրեշտակ, այլ ինքնին Տէր փրկեաց զնոսա »։ Մեծ է փրկել, այլ աւելի յայնժամ՝ յորժամ ինքնին փրկեսցէ. զոր օրինակ և Պաւղոս ասէր. Ոչ միայն այսչափ, այլ և պարծիմք ևս 'ի Տէր։ Ոչ միայն Պաւղոս, այլ և Մովսէս ասէր. Թէ ոչ երԹիցես ընդ մեզ, մի հաներ զմեզ աստի. զի Թէպէտ և փրկուԹեանն հաստատ խոստանայր, սակայն պատիւն ոչ այնպէս ինչ էր։ Տես, որպիսի համարձակուԹեան արար զնոսա արժանի.

1 Յօր. Զի յորժամ կ . . . ուն իշեն, չէ + ինչ որ արգելու . . ցէ . . . ք 'ի դեպ։ Ըստ պահանջելոյ կարգի բանիցն զԹերին լրացուցաք։

« Այլ ինքն Տէր, ասէ, փրկեաց զնոսա »: Եւ զպատճառն ասէ, թէ « Վասն սիրոյ և վասն խնամելոյն իւրոյ ». զի ցուցցէ եթէ ոչ նոքա արժանի ինչ էին, այլ « Ինքն փրկեաց զնոսա և ընկալաւ զնոսա և բարձրացոյց »: Եւ ոչ միայն փրկեաց, որ խնամոցն երևէր, այլ և բարձրացոյց [1], այսինքն՝ փառաւորեաց զամենայն աւուրս յաւիտենից:

Եւ նոքա զմինչ ընդ այսր. որոց և առանց այսր իսկ իբրև որդւոց զհայր պարտ էր պատուել. « Նոքա, ասէ, հեստեցան, և բարկացուցին զՀոգին Սուրբ նորա »: Եւ արդ, զՀոգւոյն ասիցէ, եթէ զարբանեկէ ումեք, որպէս հերձուածողքն հայհոյեն: Եւ յիրաւի իսկ կոչէ Հոգին Սուրբ, զի Հոգւոյն եղև ամենայն ինչ, և վասն նորին մարգարէքն և Մովսէս:

« Եւ դարձաւ նոցա 'ի թշնամութիւն [2] »: Տե՛ս, զիարդ ինքեանք իսկ եղեն պատճառք թշնամութեան: « Ինքն Տէր ետ ընդ նոսա պատերազմ »: Եւ այս յոյժ իսկ սիրոյ և առաւել գթոյ էր. զի թէ մինչ չարքն էին՝ ներէր նոցա ածել 'ի խրատ, զի թէ չէր անսացեալ՝ վաղուց կորուսեալ և եղծեալ էին. և յայտ է զի թշնամին լինել՝ չէր ինչ ընդհատ 'ի սիրելոյ [3] փրկութեան աղագաւ. վասն այնորիկ եղև թշնամի, զի մի հանապազ թշնամի կացցէ. վասն այնորիկ մեկնեաց, զի դարձեալ միւսանգամ նորոգեսցէ:

« Եւ յիշեաց զաւուրսն յաւիտենից »: Աւուրս յաւիտենից զնախկին աւուրսն կոչէ, զՄովսէսի և զժողովրդեանն: Եւ այն իսկ առաւել ած զնոսա 'ի թշնամութիւն և 'ի պատերազմ, եթէ ուր են երախտիքն՝ զոր արար ընդ հարսն ձեր և առ ձեզ: « Ո՞ւր է, ասէ, որ եհան յերկրէն զհովիւն խաշանց. ո՞ւր է, ասէ, որ ետ 'ի նոսա զՀոգին Սուրբ »: Այսինքն 'ի Մովսէսի և յիւթանասունն ծերսն: Եւ կամ զօրութիւնս ինչ հոգևորս 'ի ժողովուրդն գործէին, ասիցէ: Եւ բարուք ասիցէ զհովիւն եհան. զի նովաւ իսկ եհան զամե-

1 Յօր. Եւ ոչ միայն փրկեաց, որ խնամոցն երևէր, այլ և բարձրացոյց. յօտար գրչէ:

2 Յօր. Թշնամութիւն:

3 Յօր. Զի թէ մինչ ... ն էին ... րաս, զի թէ չէր ... եալ ... րուսեալ և եղծե ... զի թէ ... լինել չէր ինչ ընդ ... իրելոյ:

նեսին. և քանզի փախեաւ նա 'ի Մադիամ, ասէ՝ եթէ Աստուած եհան զնա անտի։ Եւ դարձեալ քանզի կարծէին եթէ Մովսէս եհան զնոսա անտի և ոչ Աստուած, զի և ասէին իսկ, եթէ Մովսէսն այն՝ որ եհան զմեզ յերկրէն Եգիպտացւոց. զի մի 'ի նոյն միտս հաստատեալ կայցեն՝ եթէ յԵգիպտոսէ Մովսէս եհան և 'ի Բաբելոնէ Յեսու Յովսեդեկեանց, ցուցանէ եթէ այնչափ հեռի էր Մովսէս 'ի հանելոյն, զի ինքն իսկ Աստուծով ել անտի։

«Որ եդ 'ի նոսա զՀոգին»։ Եւ տեսանեմք զի ոչ ինչ հաղորդեցան ընդ Սուրբ Հոգւոյն. բայց սակայն 'ի նոսա էր, քանզի 'ի գլխաւոր նոցա 'ի Մովսէս էր Հոգին Սուրբ, և յիւթան[1] . . . . . . Հոգին Սուրբ . . . . . . . . շահք 'ի պէտս նոցա։ «Որ եհան աջով իւրով զՄովսէս»։ Եւ ոչ վայրապար ինչ կրկնէ դարձեալ զՄովսիսի հանելն, այլ զի զպիղծ բարբառ նոցա կարճեսցէ. և ամենայն ուրեք ճառէ թէ ես հանի զնոսա։ Պատմէ և զգործսն որ ինչ գործեցան յանապատին. «Բազում փառաց նորա, ասէ, յաղթահարեաց զջուրսն առաջի երեսաց նոցա, և արար անուն յաւիտենից. անցոյց զնոսա ընդ անդունդս՝ որպէս ձի մի ընդ անապատս. էջ Հոգի Տեառն և առաջնորդեաց նոցա»։ Այլ և զՄովսէս հոգևոր իմն կոչէ։ «Այսպէս, ասէ, ածեր զժողովուրդն քո առնել քեզ անուն փառաց»։ Զի թէպէտ և նոքա անարժանք էին, սակայն վասն քո, ասէ, արարից. քանզի և նոքա վասն նորա փրկեցան։

«Դարձ յերկնից, և տես 'ի բնակութենէ սրբոյ փառաց քոց»։ Զառնեմք ինչ, ասէ, ապաստան 'ի տաճարն, չմտանեմք 'ի յայտնութեանցն տեղի, 'ի յերկնից կոչեմք զքեզ, զի այն է տաճար և անդ բնակութիւն քո։ Եւ վասն այնորիկ ասեն մարգարէքն յերկնից, զի ցուցցեն եթէ ոչ 'ի տաճարին միայն փակեալ կայր։

«Ո՞ւր է նախանձ քո և զօրութիւն և բազում ողորմութիւն»։ Զսոյն և Դաւիթ ասէր, եթէ Ո՞ւր են ողորմութիւնք քո, Տէր, առաջինք. զի մի յանձանց

[1] Յօր. Կրկին տողք խոլաւ անհետացեալք։

ինչ ուղղութիւնս ապաստան լինիցին, այլ յԱստուծոյ ողորմութիւնն։ Բայց և զայն գիտել պարտ է, զի թէպէտ և բազում ողորմութիւն է Աստուծոյ, այլ ընտրութիւնք կան յողորմութիւնսն[1] . . . . . . ողորմելոց . . . . . խնդրել եթէ որ . . . . . երկայնամիտ լինէր և արդ. այլ չներեմ այժմ, քանզի մինչև ցայժմ ներեցի, և չառէք 'ի միտ։ «Ի ժամանակին, ասէ, զի ներէիր մեզ». և մեք ինչ ոչ օգտեցաք։

«Զի դու Տէր ես մեր և հայր. զի Աբրահամ ոչ ինչ գիտաց զմեզ, և Իսրայէլ ոչ ծանեաւ զմեզ»։ Տեսանես, որչափ շահ եղև 'ի չպարծելոյ ազգականութեամբն. 'ի նմանէ եմք, ասէ, այլ ոչ ինչ ծանեաւ զմեզ։ «Եւ դու Տէր ես, ասէ, և հայր մեր, փրկեա զմեզ. 'ի սկզբանէ անուն քո 'ի վերայ մեր». որպէս ծառայ մի գնեալ վաղուց կոչեսցի յանուն տեառն իւրոյ։ Եւ ոչ ասաց եթէ զանուն քո կոչեմք, այլ թէ է եւս 'ի մեզ անուն քո. նա այն իսկ է պատճառք պատժոցն, զի էր 'ի նոսա անունն, և անարգէին։

«Զի՞ մոլորեցուցեր զմեզ, Տէր, 'ի ճանապարհէ քումմէ, և խստացուցեր զսիրտս մեր չերկնչել 'ի քէն»։ Կամ վասն երկմտութեանն ասէ, կամ վասն պատժոցն. որպէս և այլուր, եթէ Խոտորեցուցեր զշաւեղս մեր 'ի ճանապարհէդ քումմէ. այսինքն՝ մերժեցեր, յօտար յերկիր ընկեցեր, զրկեցեր զմեզ յօրինացն, և 'ի հրամանացն օգտից, խոտեցեր զծառայութիւն մեր, չկամիս առնուլ 'ի մէնջ պաշտօն։

«Դարձ վասն ծառայիցն քոց»։ Վասն արդարոցն և հեզոցն։ «Զի սակաւիկ ինչ և մեք ժառանգեսցուք զլեառն քո սուրբ»։ Տե՛ս, որչափ կարօտէին վայրացն Երուսաղեմի, զի թէ ոչ զամէնն, գոնեա սակաւ ինչ ժառանգեսցեն[2]։

«Հակառակորդք մեր նեղեցին զմեզ, կոխեցին ըզսրբութիւնս քո»։ Զի թէպէտ և մեք անարժանք իցեմք, այլ վասն նոցա խոստմանացն արա ողորմու-

1 Յօր. Երեք տող ջնջագիր անընթեռնլի։
2 Յօր. Վայց . . . էն, գոնեա սակաւ . . . Հակառակորդք։ Զանացեալն ըստ պահանջելոյ կարգի բանիցն եդաք։

թիւն։ «Եղեաք մեք իբրեւ զառաջինն, յորժամ ոչն տիրէիր մեզ, և ոչ կոչեցաւ անուն քո 'ի վերայ մեր»։ Ոչ միայն վասն մեղաց, այլ և վասն 'ի ձեռաց թողլոյ։

## ԳԼՈՒԽ ԿԴ

«Եթէ բացցես զերկինս՝ դողումն կալցէ 'ի քէն զերկիր»։ Տե՛ս, զիարդ ամենայն ուրեք զզօրութիւնէն ճառէ, եթէ մեծ է և զօրաւոր, և զամենայն զոր և կամի՝ կարող է առնել։ «Եթէ բացցես զերկինս՝ դողումն կալցէ 'ի քէն զլերինս, և հալեսցին իբրեւ զմոմ առաջի հրոյ։ Յաւիտենից ոչ լուաք, և ոչ աչք մեր տեսին այլ Աստուած բաց 'ի քէն»։ Եւ ո՞չ տեսին արդեւք. ոչ, ասէ. զի թէպէտ և մոլորեցաք և երկիր պագաք օտարոտի աստուածոց, այլ ոչ տեսաք ինչ այնպիսի Աստուած։

«Զի գործք քո ճշմարտութեամբ են, զոր առնիցես որոց համբերեն քեզ»։ Ողորմութիւն ճշմարիտ են վերակացութիւնք, և մանաւանդ այնոցիկ՝ որ համբերիցեն. թէպէտ և ոչ առժամայն, սակայն առ յապա։ «Եւ ընդ առաջ լիցի ողորմութիւն այնոցիկ՝ որ առնիցեն զիրաւունս, և յուշ լիցի նոցա ճանապարհքն քո»։ Տեսանե՞ս, զի ոչ վայրապար ումեք, այլ այնոցիկ՝ որ յիրաւունսն հայիցին։

«Արդ ահա դու բարկացար, և մեք մեղաք. վասն այնորիկ իսկ և մոլորեցաք»։ Այսինքն՝ զի դու բարկացար մեզ, և մատնեցաք 'ի գերութիւն . . . . . հանդերձ ծնելոց . . . . . բնութեամբ մերով զաւ . . . . . պահանջումն առնէ . . . . . չիք ոք որ արդար գտանիցի . . . .[1]։ «Դու բարկացար, և մեք մեղաք»։ Եթէ կամիցիս հաստուցանել ըստ մեղացն, պարտական իսկ եմք։

«Ոչ ոք իցէ որ օգնական լինիցի կարդալ առ քեզ, և ո՛չ որ կարդայցէ զանուն քո, և ո՛չ որ յիշեսցէ ապաստան լինել առ քեզ. զի դարձուցեր զերեսս քո 'ի մէնջ»։ Եւ զոր ասէն՝ այսպիսի ինչ է, եթէ 'ի բարկանալն

1 Յօր. Չորք տողք ջնջագիր, անընթեռնլի։

քում զարհուրեցուցեր զմեզ, և ևս յետս տարար, զի չիշխեմք մօտ գալ: «Մատնեցեր զմեզ վասն մեղաց մերոց»։ Այս ոչ յերեսաց մարգարէին է, այլ յերեսաց ժողովրդեանն. զոր 'ի դէպ էր ասել, եթէ վասն զի բարկացաւ՝ ևս առաւել մեղաք. ընդ վայր եհար, չառնէ ինչ փոյթ։

«Եւ արդ, Տէր, հայր մեր դու ես. մեք կաւ եմք»։ Զոր ինչ 'ի դէպն էր ասել՝ չիշխեաց ասել, եթէ դու հայր ես և մեք որդիք. այլ քանզի զդարմանման կամեցաւ հնարիւք յանձն ձգել, ասէ. «Դու, Տէր, հայր մեր ես»։ Եւ զի զակնածութիւնն և զհնազանդութիւնն ցուցանիցէ, ասէ. «Մեք կաւ եմք, և գործք ձեռաց քոց ամենեքեան». որպէս և քեզ կամ իցէ՝ զայն արա։ «Մի բարկանար մեզ յոյժ, և մի 'ի ժամանակի յիշեր զմեղս մեր»։

Այսպէս ապաստան լինէին 'ի տաճարն և 'ի տեղին սուրբ. «Քանզի փառք մեծամեծք, ասէ, վերացան 'ի մէնջ, և դու ան [1] . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

1 Մինչև ցայս վայր օրինակս մեր (Գլ. ԿԴ. 10–12). Պացեալքն պակասին. այն է մեկնութիւն երկուց վերջին գլխոց մարգարէութեանն Եսայեայ։

ԱՅԼ ԵՒ ԱՅԼ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՔ

## ՀԱՏՈՒԱԾՈՅ

# ՄԵԿՆՈՒԹԵԱՆՆ ԵՍԱՅԵԱՅ

ԳՏԵԼՈՅ Ի ՃԱՌԸՆՏԻՐՍ ՎԱՆԱՑՍ, ԲԱՂԴԱՏԵԱԼ ԸՆԴ ՕՐԻՆԱԿԻ ՏՊԱԳՐԻՆ ՄԵՐՈՅ

---

## Ա. ՀԱՏՈՒԱԾ

*Զի եղիցի յաւուրս յետինս յայտնի լեառն Տեառն: — Ես. Բ. 2:*

Տպագիրն էջ 1-6

*Գտանի հատուածս յերկս ճառընտիրս, այն է 'ի ճառընտիրսն Գ. ԺԹ. ԻԹ. որպէս հաւանական երևի զաղափարեալս 'ի միոջէ ևեթ աղբերէ. զնշանաւոր տարաձայնութիւնս նոցին ընդ օրինակի տպագրութեանս՝ կարգեսցուք 'ի ստորև, նշանակելով զիւրաքանչիւր ճառընտիրսն նշանագրով իւրեանց և զհամաձայնութիւն երեցունցն՝ տարաձայն 'ի մերմէ օրինակէս՝ տառիւքն ճճ: — Ի ճառ. ԺԹ. յանուն Միքիայ մարգարէի ընծայի պատառիկս. և զի բնաբանս այս «Զի եղիցի յաւուրս յետինս յայտնի լեառն Տեառն» գոյ յԵսայի և 'ի Միքիա (Դ. 1-3), վասն այնորիկ թերևս և գրչին շփոթեալ զանուանսն:*

*Ի սկզբանէ երկքին ևս ճառընտիրք քանի մի տողս աւելի ունին քան զտպագիր մեր, այսպէս.*

*« Զի եղիցի, ասէ, յաւուրս յետինս յայտնի լեառն » Տեառն »: Տեսանես զստուգութիւն մարգարէին, » զի ոչ միայն զիրսն ասէ, այլ և զժամանակն նշանա-*

» կէ. զոր և Պաւղոս ասէ, թէ ցորժամ եկն լրումն ժա-
» մանակաց. և 'ի միւսում վայրի, թէ Տնաչութիւն կա-
» տարման (ժամանակաց ». — աստի սկսանի օրինակ
տպագրիս)։

| ՏՊԱԳԻՐՆ | | |
|---|---|---|
| Եզ | տող | |
| 1 | 5 | 'ի Գ. և ՃԹ. չիք աղեղունս լարիցեն, և 'ի Գ. չիք գեղարդունս շողացուցանիցեն։ |
| | 8 | ԻԹ. լերինն ոչինչ կարիցեն առնել։ |
| | 10 | ՃԹ. և նոցա ոչինչ վնասիցեն։ |
| | 13 | ԻԹ. հիւանդացան, զամենայն հնարս հնարեցան. քանզի նոր իսկ և չքնաղ են յաղթութեանս կերպարանք. այլ միայն միայնոյ Աստուծոյ մեծի և հզօրի։ — Գ. հիւանդացան, զամենայն հնարս հնարեցան, և 'ի չարչարելոցն յաղթահարեցան։ — ՃԹ. այլ միայն մարդասիրին Աստուծոյ։ |
| | 17 | ԻԹ. ոչ զի յաղթեաց, հալածեալ մերժեալ, և ոչ նուազեալ. այլ ևս քան զևս աճէ և բազմանայ։ — ՃԹ. և ոչ միայն չնուազեցաւ, այլ ևս քան զևս աճէ և զօրանայ։ |
| 2 | 4 | ՃՃ. որպէս և անդամանդ առ երկաթ ցուցանէ զհանդէս։ |
| | 9 | Գ. առնու յանձն հաւանել Հրեայն, անդստին անձամբն յանձին առցէ զյանդիմանութիւն։ — ՃԹ. առնու յանձն հաւանել Հրեայն 'ի միւսաշրջիկ այլակերպ յորջորջմանէս, և անդստին։ — ԻԹ. առնու յանձն Հրեայն հաւանել, 'ի մի միւսաշրջիկ յորջորջմանէս՝ անդստին։ |
| | 13–29 | Պակասին 'ի ՃՃ։ |
| | 30 | Գ. ՃԹ. այլ անուամբք նշանակեցան։ — ԻԹ. այս ամենայն անուամբք միայն նշանակեցան։ |
| | 32 | ՃՃ. զանշարժութիւնն, զանմեղութիւնն, զբարձրութիւնն յորջորջմամբ։ |
| | 36 | Գ. ոչ եթէ բանից ինչ կամ մեկնութեանց պէտք են։ — ՃԹ. ոչ բանից մեկնութեան պէտք են։ — ԻԹ. ոչ բանից ինչ յայտնութեան պէտք են։ |
| 3 | 2 | ԻԹ. գիրք եկեղեցւոյ պայծառազոյն և լուսաւորագոյն։ |

| ՏՊԱԳԻՐՆ | | |
|---|---|---|
| էջ | տող | |
| 3 | 8 | ԾԾ. և որպէս տաճար մի… և սա յայտնի եղև։ |
| | 17 | ԾԾ. ետ 'ի ձեռս։ |
| | 18 | ԻԹ. և առաւելագոյն գտաւ։ |
| | 19 | ԾԾ. գնդիւք, հաւատացելոցն բանակօքն։ |
| | 22 | Գ. քան զերկինս երկնից։ |
| | 29 | ԻԹ. քան զսպանողսն հզօրագոյն գտան։ |
| | 33 | ԻԹ. և ես յայտնագոյնս ասէ զմարգարէութիւնն։ |
| | | (էջ 3, տող 38 — էջ 4, տող 6, պակասին 'ի ԾԾ.)։ |
| 4 | 10 | Գ. ԺԹ. առին հրաման 'ի Միածնէն։ — ԻԹ. առին հրաման 'ի Նմանէ։ |
| | | (էջ 4, տող 12 — էջ 5, տող 10. պակասին 'ի ԾԾ.)։ |
| 5 | 13 | ԻԹ. զի ցնծան, խնդան, միանգամայն և ժողովին։ |
| | 15 | ԾԾ. իրերաց լինին վարդապետք։ |
| | 16 | Գ. ԻԹ. խառնեալք։ |
| | 18–22 | Պակասին 'ի ԾԾ։ |
| | 22 | ԻԹ. իսկ կայ և մնայ ես տակաւին յայլասացին յորջորջմունս մարգարէս, ընդ այն մի ինչ զարմանայցես։ |
| | 26 | Գ. մերթ խփէ զմարգարէութիւնն։ — ԺԹ. մերթ խափանէ զմարգարէութիւնն։ |
| | 28 | Գ. և միւսոյն վճարեսցէ զօրինական յանդգնութիւն։ — ԺԹ. և միւսոյն կարճեսցէ զանօրինակ յանդգնութիւն։ — ԻԹ. և միւսոյն կարճեսցէ զօրինակացն յանդգնութիւն։ |
| | 38 | ԾԾ. զոր հաստատեցի։ |
| 6 | 1 | Գ. թէ ըստ երկոցունց օրինացն ինքն է օրէնսդիր. որում լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս, ամէն։ — ԻԹ. և ինքն է որ եհան զնոսա յԵգիպտոսէ, ետ զօրէնսն, Քրիստոս Աստուած մեր. նմա փառք յաւիտեանս, ամէն։ |

# Բ. ՀԱՏՈՒԱԾ

*Տէր ողորմեաց մեզ, զի մեք 'ի քեզ յուսացեալ եմք: — Եսա. ԼԳ. 2:*

**Տպագիրն էջ 200-208**

| ՏՊԱԳԻՐՆ | | |
|---|---|---|
| էջ | տող | |
| | | Գտանի հատուածս 'ի ձեռընտիրսն Է. և ԻԹ: |
| 200 | 32 | 'ի Է. պակասի և ճգունք: |
| 201 | 3 | ԻԹ. ոչ առ յանձն: |
| | 15 | ՃՃ. ըստ մարդասիրութեանն լինիցի: |
| | 27 | ԻԹ. պարտ էր փրկութեան պատիւ գտանել: |
| 202 | 1 | ԻԹ. զիարդ իմանայցէ զփրկութիւն, և ով ոք: |
| | 8 | Է. հարքն ապրել: |
| | 13 | Է. կամիցի զողորմութիւն... միթէ ուղղութիւնք խնդրիցես և չկարիցես բաւական լինել: |
| | 25 | ԻԹ. եթէ զքեզ մոտեցուսցէ և զնա մերժեսցէ, և զքեզ մերժեսցէ և զնա մոտեցուսցէ: — Է. և զնա մոտիցէ: |
| | 34 | 'ի ՃՃ. չիք կամիս: |
| 203 | 15 | 'ի ԻԹ. չիք դոյն իսկ այդ եղև չահ մաքսաւորին: |
| | 22 | ՃՃ. ոչ ունէր 'ի մտի: |
| 204 | 9 | ԻԹ. և զանաստուածս արար իւր որդիս, և զօտարացեալս աշխարհիս՝ յաստուածային խըրնամոցն արար իւր ժառանգ և հաղորդս և ժառանգակից իւրոյ Միածնին: |
| | 18 | Է. անաղտ զտել: |
| | 32 | ԻԹ. այլ կազմ են դեղքն. և չիք ինչ որ զանցանել կարիցէ և կամ յաղթել նորա մարդասիրութեանն: |
| | 33 | Է. անցանել զանցանել... որ ասէ: |
| 205 | 5 | ԻԹ. որդին օծտեալ: |
| | 8 | ՃՃ. ւրշմտութեամբ: |
| | 19 | ԻԹ. առ վշտի կամ ակամայ: |
| 206 | 26 | Է. (աստ վերջանայ հատուածն. յետ այսորիկ անցանէ յէջ 285. ԽԲ. Գլ. Եսայեայ): |
| | 30 | ԻԹ. այլ զաստիկ և զմեծ զօրութեանն ասէ, զդիւրադոյն յաղթութեանն ասէ, 'ի ձայնէ որոտալոյ քո անուի շարժեսցի երկիր: |
| | 30-36 | Պակասի 'ի ԻԹ: |

| ՏՊԱԳԻՐՆ | | |
|---|---|---|
| եր | տող | |
| 208 | 4 | Իթ. զկարեաց ճգնութիւնս, զոր կատարեսցուք անուամբն Քրիստոսի, որում փառք յաւիտեանս, ամէն: |
| 285 | 4 | Է. մերթ թաքնու, մերթ յառնու: |
| 286 | 23 | Է. (առա վերջանայ հատուածն, յետ որոյ անցանէ յէջ 367, վերջին տող. վասն որոյ և ասէ, և այլն): |
| 369 | 19 | Է. զի՞նչ ինչ օգուտ 'ի գզրելոցն: |

# Գ. ՀԱՏՈՒԱԾ

*Ես եղև յամին յորում մեռաւ Ոզիա արքայ: — Եսա. Զ. 1:*

Տպագիրն էջ 60–69

| ՏՊԱԳԻՐՆ | | |
|---|---|---|
| եր | տող | Գտանի հատուածս 'ի ճառընտիրսն Ժթ. և Իթ: |
| 60 | 26 | ՃՃ. և ընդ քահանային արգելուլն՝ ասէ, չէ օրէն քեզ մտանել 'ի սրբութիւն սրբոցն, և դժկամակ: |
| 61 | 21 | Ժթ. հակառակ ինչ իցեն որ այս՝ այսմ որ 'ի Քրիստոսէն ասացան: |
| 62 | 13 | Ժթ. կարէք հաստուցանել զպարտսն, այնմ նմանեցայ: |
| | 17 | ՃՃ. վառեալ, և երբեմն արիւնացայտ երևեսցի, երբ՚ մն 'ի հուր, և երբեմն 'ի թիկանց: |
| | 21 | Ժթ. մարմնաւոր տեսլեանս: |
| 63 | 6 | Ժթ. մինն նստէր: |
| | 8 | Իթ. զի և այն որ աստ ասին, այնմ նման է: |
| | 24 | Ժթ. իսկ լոկ նստելն, այլ իմն նշանակէ մարգարէս: |
| | 34 | Ժթ. վասն այսորիկ տեսանէ յաթոռ նստեալ և վերացելոյ. կամ՝ թէ այլ իմն զսա և այլ իմն զնա ակնարկէ. զի բարձր աթոռն, կամ թէ պատմութիւն է, զի ասէ զբարձրացելոյ և վերացելոյ, այսինքն է մեծ և վերացեալ յերկինս, զի յայնչափ բարձրութեան երևէր: |

| ՏՊԱԳԻՐՆ | | |
|---|---|---|
| էջ | տող | |
| 64 | 10 | ԺԹ. զորոց զառաքինութիւնսն և զզօրութիւնսն: |
| | 23 | ԻԹ. զի այն իսկ մեծ է նոցա: |
| | 25 | ԻԹ. զոր օրինակ առաջի երկրաւոր թագաւորաց, որ մնծամեծ պատիւս ինչ ունիցին՝ նոքա են մօտակացք աթոռոյ թագաւորաց, նոյնպէս, և այլն: |
| 66 | 13–16 | Պակասին 'ի ՃՃ: |
| | 30 | ԺԹ. էջ յերկնից: |
| 67 | 29 | ՃՃ. զմտացն խոնարհութիւն յայտնէ: |
| | 32 | ԻԹ. բոցեղէն անձանց սրբոց: |
| 68 | 5 | ՃՃ. յայնպիսի ահեղ պաշտօն կոչեցեալ իւր, վասն այսորիկ յայս միտս զիւր չրթունսն պիղծ կոչէր, իսկ զժողովրդեանն ոչ յայն միտս: |
| | 14–17 | Պակասին 'ի ՃՃ: |
| 69 | 13 | ՃՃ. և ազգումն հրոյ ինչ ոչ գործեաց: |
| | 17 | ՃՃ. և ոչ այրեաց հուրն զօրութեամբն Քրիստոսի, որում փառք յաւիտեանս, ամէն: |

## Դ. ՀԱՏՈՒԱԾ

*Զազգ նորա, ասէ, ո՞ պատմեսցէ: – Եսա. ԾԳ. 8:*

*Տպագիրն էջ 400-401*

| ՏՊԱԳԻՐՆ | | |
|---|---|---|
| էջ | տող | |
| | | Գտանի հատուածիկս 'ի ձառընտիրն Է: |
| 400 | 21–22 | Պակասի 'ի Է. մի ինձ զվերին ծննդեանէն ոք ասիցէ: |
| | 35 | Է. և զի՞նչ Հոգին Սուրբ, ասեն, արար: |
| 401 | 10 | Է. զայն խոստանամ: |
| | 15–17 | Պակասի 'ի Է: |
| | 19 | Պակասի 'ի Է. Որ ժամանակաւն եղև: |

# Ե· ՀԱՏՈՒԱԾ

Զի ասաց Տէր այսպէս. հաշտեալ եմ ընդ քեզ : — Ես. ԾԴ. 11 :

Տպագիրն էջ 409-413, 372-375, 340-343

| ՏՊԱԳԻՐՆ | | |
|---|---|---|
| էջ | տող | |
| | | Գտանի քաղուածոյ հատուածս 'ի ճառընտիրն ԻԹ : |
| 411 | 1 | ԻԹ. զոսկին Սոփիրայ : |
| | 18–25 | Պակասի 'ի ԻԹ : |
| | 38 | ԻԹ. և Թէպէտ և զուր ինչ 'ի վերայ գայցէ և ունիցի և տանջեսցեն : |
| 413 | 29 | ԻԹ. (աստ վերջանայ հատուածն. յետ այսորիկ անցանէ յէջ 372. Ես. Գլ. ԾԱ.) : |
| 375 | 3 | ԻԹ. զի զամենայնն և զամենեսեան : |
| | 33 | ԻԹ. (աստ դադարէ հատուածն. և անցանէ յէջ 340. ԽԸ. Գլ. Եսայեայ) : |
| 341 | 1–3 | Պակասի 'ի ԻԹ : |
| | 4 | ԻԹ. արդ եբրայեցին սաղմոսէ : |
| 343 | 19 | ԻԹ. յորժամ և անդ տեսանիցեմք, և այնու սփոփիցեմք : |
| | 26 | ԻԹ. որ նորա իցէ գործեալ. սակայն խոցեալ երկիւղիւ չար սրոյն որ ունիցի յոգւոջ իւրում բունեալ՝ միշտ զնա խոցոտելով : Վասն որոյ աղաչեմ զի զերծուսցուք զանձինս մեր 'ի մեղացն խողխողմանէ, 'ի մշտնջենաւոր և յանբժշկելի մահուանէն, սրբեալք 'ի խղճէ մտացն, ապաշխարութեանն մատակարարութեամբն ընծայեալք Քրիստոսի, որպէս զանուշահոտ պատարագս լուսաւոր և կենդանի վարուք առաքինութեան. զի այնպէս արժանի լիցուք հասանել խոստացելոց բարութեանցն 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս, ամէն : |

# Զ. ՀԱՏՈՒԱԾ

Գոչեա զօրութեամբ և մի խնայեար։ — Եսա. ԾԸ. 1։

Տպագիրն էջ 435–442

Գտանի հատուածս ՚ի ձեռընտիրսն ԺԵ. ԻԳ. և ԻԹ. երկոքին առաջինքն բառ առ բառ համաձայնք են միմեանց, այլ յոլով ուրեք տարաձայնին յօրինակէ տըպագրութեանս, եթէ ըստ շարագրութեանն ոճոյ և եթէ ըստ ամբողջութեան հատուածոյն, զորոց զկարի կարևորսն ևեթ նշանակելով, զանց առնեմք զայլովք տարբերութեամբք. իսկ ԻԹ, բաց ՚ի սակաւ տարբերութեանց, զորս նշանակեսցուք ՚ի ստորև, յամենայնի համաձայն ունի զբանսն ընդ մերումս օրինակի։

| ՏՊԱԳԻՐՆ | | |
|---|---|---|
| էջ | տող | |
| 435 | 30 | ԺԵ. ԻԳ. ՚ի տէրունական պահոցն էին։ |
| 436 | 9–14 | Պակասին ՚ի ԺԵ. և ՚ի ԻԳ.։ |
| | 23–25 | Պակասին ՚ի ԺԵ. և ՚ի ԻԳ.։ |
| | 25 | ԻԹ. եթէ ՚ի դատապարտութիւնս և ՚ի դատաստանս։ |
| | 34 | ԺԵ. և կամ որպէս ՚ի մարտիկն կռիւն մերժիցի։ Զի՞նչ պիտոյ են։ — ԻԳ. և կամ որպէս ՚ի մարտիկն կռիւն և կրթութիւնն. սոյնպէս և աստ զի կռիւն մերժիցի։ Զի՞նչ պիտոյ են։ |
| | 34–38 | Պակասին ՚ի ԺԵ. և ՚ի ԻԳ.։ |
| | 35 | ԻԹ. կռիւն և երկեւղն և կրթութիւնն։ |
| 437 | 4 | ԺԵ. մեղացն հեռանալ, այլ և ընկերացն առնել պահօքն պահս։ |
| | 4–7 | Պակասին ՚ի ԺԵ. և ՚ի ԻԳ.։ |
| | 13 | ԻԹ. և ծանր քան զպահս։ |
| | 16–39 | Պակասին ՚ի ԺԵ. և ՚ի ԻԳ.։ |
| 438 | 1–8 | » » » » |
| | 21–25 | » » » » |
| | 29–39 | » » » » |
| 439 | 1–12 | » » » » |
| | 26–32 | » » » » |

| ՏՊԱԳԻՐՆ | | |
|---|---|---|
| էջ | տող | |
| 439 | 33 | ԻԹ. որ Թագաւոր և կամ որ Թագաւորութեանց իշխանութիւնք, կամ որպիսի պատմութեան իցէ հանգոյն այնմ հանդերձեալ զարգարուն։ |
| | 36 | ԺԵ. ԻԳ. զոր նահապետն Յոբ։ |
| 440 | 8–39 | Պակասին 'ի ԺԵ. և 'ի ԻԳ.։ |
| | 18–21 | Պակասին 'ի ԻԹ.։ |
| 441 | 1 | Պակասին 'ի ԺԵ. և 'ի ԻԳ.։ |
| | 2 | ԾԶ. գազան չար է աղքատութիւն և ուտէ 'ի ներքոյ զփորն։ |
| | 3 | ԻԹ. վասն մերոց ինչ խնդրուածոց։ |
| | 29–39 | Պակասին. 'ի ԺԵ. և 'ի ԻԳ.։ |
| 442 | 1–12 | » » » |
| | 21 | ԺԵ. ԻԳ. նմին և մեք նախանձաւոր լիցուք, զի երկնից արքայութեանն հասցուք 'ի Քրիստոս Յիսուս, ամէն։ — ԻԹ. վասն առատութեան և մարդասիրութեան որ առ ամենեսեան, որում նմանող լինել առաքինութեանն առաք հրաման. զի այնպէս մեծացեալք յաստի կենանս, և հանդերձելոց բարութեանցն հասցուք և փառացն 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս, ամէն։ |

## Է. ՀԱՏՈՒԱԾ

Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր. ահաւասիկ ես արկանեմ։
Ես. ԻԸ. 16։

Գտանի հատուածս 'ի ճառընտիրն ԻԹ. գաղափարեալ զկնի Բ. և Ա. հատուածոցն՝ խորագրաւս «Նորին 'ի նոյն գրոց՝ յեկեղեցւոյ խորհուրդ». այսինքն է, Նորին Յովհաննու Ոսկեբերանի 'ի մեկնութենէ մարգարէին Եսայեայ. որպէս եդեալ է 'ի գլուխս նախընթաց հատուածոցն։ Այլ զի հատուածս արդարև 'ի Մեկնութենէն Եսայեայ իցէ, ոչ միայն 'ի վերնագրէ աստի է յայտ, այլ և յոճոյ մեկնութեանն և չարագրու-

թեան, թէպէտ և ԻԸ. Գլուխն Եսայեայ հանդերձ այլովքն պակասի 'ի յոյնն և 'ի հայումս ։ Դարձեալ և առ Սկևռացւոյն և Դաւթի քահանայի 'ի քաղուածոյ մեկնութիւնս իւրեանց յառաջ բերին կտորակք ինչ այսր հատուածոյ՝ իբրև 'ի Մեկնութենէն Եսայեայ՝ յանուն Ոսկեբերանի ։

«Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր. ահաւասիկ ես արկանեմ 'ի դրունս Սիովնի վէմ բազմակատար, ընտիր, ծայր անկեան, պատուական, 'ի հիմունս գորա»։ Տեսանեմս, զի վասն այնորիկ իսկ կարևոր էր գալուստն Քրիստոսի. տեսանեմս, որչափ ինչ պէտք էին տեսչութեանն ։ «Ես, ասէ, արկից», և ոչ եթէ մարգարէ ոք ։ «Ի հիմունս Սիովնի». և քանզի ապականեալ էր շինուածն՝ վասն այնորիկ իսկ 'ի ներքուստ 'ի հիմանցն ուղղէ ։ Զոր օրինակ որմ ինչ խախտիցի և կամիցի նորոգել՝ 'ի հիմանն իսկ դնէ վէմս մեծամեծս ։ Եւ զի ոչ վասն միմի ինչ է ճառս և ոչ վասն անշունչ ինչ նիւթոյ, յայտ յայնմանէ է, եթէ «Որ հաւատասցէ 'ի նա՝ մի ամաչեսցէ»։ Քանզի ոչ եթէ 'ի քարանց ինչ վճարեսցի մեզ փրկութիւն, և ոչ եթէ քարանց ինչ հրամայեսցէ մեզ հաւատալ. այլ յայտ է եթէ զԿենարարէն ասէ. որպէս և Պաւղոս ասէ, եթէ Հիմն եգեալ է ։ Եւ այս ոչ զայն ինչ յայտ առնէ՝ եթէ արարած իցէ Որդի, քաւ լիցի. այլ եթէ որ էրն 'ի բնէ, նոյն եղև և հիմն քարոզութեան՝ Յիսուս Քրիստոս, յորոյ վերայ շինի եկեղեցի. զի որպէս 'ի հիման վերայ՝ նոյնպէս և 'ի վերայ նորա հաստատեցաւ և կայ ամենայն ինչ. վասն որոյ և ասէ իսկ, եթէ Ես եմ արմատ և դուք էք շառաւեղք ։ Որ յայնմ արմատոյ էր, որում ոչ էր ազգականութիւն մարմնաւորաց՝ կամեցաւ մարդասիրութեամբ լինել ըստ մարմնաւորացս, և արմատ մարմնաւորացս շինուածոց, զի 'ի նմանէ արձակեսցան շառաւեղք հաւատացեալք ։

Եւ վասն էր կոչեսցի հիմն. զի ոք որ յայնր հիման վերայ չշինիցէ, չմտանէ 'ի շինուածն. և որ 'ի նմա ոչ առնէ սկիզբըն՝ կործանելոց իցէ ։ Իսկ վէմ հաստատութեան և անշարժութեանն, և զի զամենեսեան որ 'ի նա յենուցուն՝ ունիցի հաստատութեամբ ։ Բազմակատար, պատուական, զորոց զպատիւն ոչ ոք ըստ արժանեացն կարէ պատուել, և ոչ զգինս կշռել ։ Ամենայն ինչ, ասէ, զոր ունի Հայր, այն իմ է. և արդ զիարդ ոչ իցէ բազմակատար, որ զկենաց և զմահու իշխանութիւն ունի 'ի ձեռս. որ այնպիսի ինչ պարգևս կարէ շնորհել, ոչ միայն մեծատուն փոխանակ աղքատաց կարէ առնել զաղքատն, այլ հրեշտակս փոխանակ մարդկան. ոչ

ինչս կամ հանդերձս վայրապարս պարգեւէ, այլ զբնութիւնս իսկ յայլ նորոգութիւնս փոխէ։ Զիա՞րդ չիցէ բազմակատար, որ ոչ զոսկի և զարծաթ միայն տայ պարգեւս, այլ զանմահութիւն մարմնոյ, զերկնից արքայութիւն, զյաւիտենականն իշխանութիւն։ Զիա՞րդ չիցէ բազմակատար, որում ամենայն ինչ իբրեւ զմէտ մի 'ի կշռոց համարեալ է։ Եւ արդ ո՞ կարիցէ ճառել զմեծութիւնս նորա, որ և Պաւղոսի սակաւ մի նայեցեալ աղաղակէ, թէ Ո՜վ խորք մեծութեան և իմաստութեան Աստուծոյ. որպէս զի առանց քննելոյ են դատաստանք նորա, և առանց զննելոյ են ճանապարհք նորա։ Եւ դարձեալ, եթէ Դատաստանք քո 'ի խորս բազումս։ Եւ դարձեալ, եթէ Ո՞ զզօրութիւնս Տեառն խօսեսցի։ Զիա՞րդ չիցէ բազմակատար՝ զորոյ զպարգեւսն և զարդարութիւնս չեն բաւական բանք ճառել, զի անցանեն ըստ մտաց և ըստ լեզուաց զօրութիւն և ըստ խորհրդոյ բարձրութիւն։ Վէմ ընտիր՝ զանզուգական հաւասարութիւնն նշանակէ, թէ չիք ինչ հանգոյն և հաւասար նմա։ Յորժամ ասիցէ թէ Ընտրեաց զԴաւիթ ծառայ իւր, զայն ինչ յայտ առնէ եթէ քան զամենեսեան զնա ընտիր եգիտ 'ի ժամանակին. և անդ իբրեւ զմարդոյ ումեքէ. զի թէպէտ և ընտիր է, սակայն մարդ է։ Իսկ աստ զանհամեմատ զուգականութենէն նշանակէ, զի չիք ոք նմա հաւասար, բայց միայն ինքն Հօր հաւասար։ Զի մի՛ յորժամ կոչիցի Որդի կամ Քրիստոս, զմի ոք 'ի բազմացն կարծիցէք, ասէ, սա է ընտրեալն՝ որում ոչ գոյ զայլ ոք հաւասար գտանել։ Զոր օրինակ զՀօրէ ասէ, թէ Զիք ոք նման քեզ յաստուածս, Տէր. նոյնպէս և զՈրդւոյ ասի, թէ Զիք ոք որ նմանէ Տեառն յորդիսն Աստուծոյ. թէպէտ և իցեն բազում, այլ նա միայն նմանէ Հօր։ Տեսանես, զի նա միայն ունի զժառանգութիւն ընդ Հօր, և զանզուգականութիւն ընդ այլ որդիս. զի որո՛յն՝ 'ի վերայ երկոցունց կայ, և զնոյն զմի ինչ զզօրութիւնն յայտ առնէ։ Եւ դարձեալ, թէ Ոչ ոք նման քեզ յաստուածս, և ոչ ոք է որպէս զգործս քո։ Զի մի՛ կարծիցի եթէ պաշտօն ինչ առնելով ասիցէ ոք զնմանէ, 'ի գործոց անտի նորա ցուցանի հանդէսն. Հաւատացէ՛ք յիս, ասէ, և քննեցէ՛ք զգործս. եթէ իցեն համեմատ Հօր գործոցն՝ հաւատասջի՛ք յիս իբրեւ յարարիչ. որպէս և ասէր իսկ Քրիստոս. Եթէ յիս ոչ հաւատայք, գոնէ վասն գործոցն հաւատացէք։

«Ծայր անկեան»։ Տեսանես, զիա՞րդ վաղվաղակի յայտնեաց զխորհուրդն. զի ոչ վայրապար վէմ կոչեաց, այլ ծայր անկեան։ Որք տեղեակ իցեն շինուածոյ՝ գիտեն զի՛նչ ասացաւ, և որ ոք չիցեն տեղեակ՝ հարկ է զի 'ի մէնջ ուսանիցին։ Քան զամենայն վէմս որ 'ի շինուածսն մատուցանիցի՝ անկիւնակալքն հաստատուն պարտին լինել. զի որ զամենայն վէմսն կապիցեն և ընդ միմեանս պնդիցեն՝ նոքա մա-

Նուաւանդ լաւագոյն պարտին լինել քան զայլսն. զի զերկոսեան ճակատս իբրև երկու ձեռօք բուռն հարեալ ունիցի պինդ, և ամենայն բռնութեանցն՝ որ 'ի դիմի հարկանիցի շինուածոյն, նոյն ինքն նոքա կայցեն ընդդէմ. այսպիսի ինչ է գործ անկիւնակալն վիմաց. զի և հողմոցն բռնութեանց նոքա ունիցին զդէմ, և զայլ ամենայն շինուածն զգուշութեամբ պահեն։ Եւ այս ամենայն 'ի Քրիստոս կատարեցաւ. զի և զանէծն յիւր անձն ընկալաւ և զմահ և զայլ ևս չարչարանան ամենայն, զի զմեր բնութիւնս 'ի զգուշութեան պահեսցէ. և կապեաց պնդեաց 'ի միմեանս զերկուս որմսն քակեալս 'ի միմեանց, զհեթանոսական և զհրէական ժողովուրդն. և ինքնին հաստատեցաւ 'ի միջի՝ զի զերկուս ճեղքեալսն 'ի մի վայր ժողովեսցէ. զորմսն անջատեալս՝ յօդեաց պնդեաց 'ի միմեանս, զհրեշտակաց բնութիւնս և զմարդկան։ Տեառնեմս զչորեսին որմսն որ շինեցաւ 'ի մի տաճար, 'ի միում մարմնին Քրիստոսի. զի 'ի նոյն պնդիցաք և կապեցաք և յարեցաք՝ անջատեալքն և որոշեալքն։ Թլփատեաց և պահեաց զօրէնսն, զի և զտուչութիւն օրինացն կատարեալ չօտարացուցանիցէ. և մերձեցոյց զհեթանոսս, զի մուտ նորոյ շնորհացս ընծայեցուցանիցէ։ Զի մինչ կրճիմն և միջնորմն ցանկոյն կայր 'ի միջի, ոչ իշխէր մերձենալ, իսկ յորժամ այն 'ի միջոյ բարձաւ՝ համարձակեցաւ գալ և միաւորիլ։ Այլ և հրեշտակք ևս կագէին[1] ընդ մարդկան, քանզի Տէրն նոցա թշնամանէր 'ի մարդկանէ. և վասն այսորիկ սպառնացեալ էին առնուլ զվրէժ թշնամանացն. այլ և զնոսա հաշտեցոյց, զի արժանի արար և հանդերձ մարմնովն՝ առնուլ 'ի նոցանէ երկրպագութիւն, որպէս և յառաջ քան զգալուստն՝ աստուածութեամբն միայն։ Եւ արդ, ո՞վ իցէ ոք այնպիսի անմիտ և թշուառական, որ տեսանիցէ զտէր իւր զգեցեալ զատելեացն մարմինս, և իշխեսցէ մարտնչել ընդ բնութեանն, և ոչ վաղվաղակի գալ 'ի հաշտութիւն. զի եթէ զհանդերձն մեր արժանի արար զգենուլ, զիա՞րդ իցէ զի զմեզ ատիցէ, զի այս կարի իմն սիրելեաց է, յորժամ զհանդերձ ինչ զայնոցիկ որ սիրիցենն՝ զգենուցուն, թէպէտ և կարի յոռի իցէ. և ոչ աստ միայն զգեցաւ, այլ և անդ 'ի վեր առ Հօրն՝ 'ի նստելն ընդ աջմէ ոչ ինչ ամօթ համարի զգձուձ հանդերձսն զոր զգեցաւն. զի սէր ամենայն խիղճ յաղթէ, և ոչ ամօթ համարի։ Բարւոք ասաց և «Պատուական». զի թէպէտ և ապտակեցաւ, ընկալաւ թուք յերեսս, և բազում չարչարանս կրեաց, և զմահ նախատանաց և զանիծից ընկալաւ յանձին, այլ մի՛ ինչ անիրաւութիւն զայն համարիցիս. զի թէպէտ և յայսպիսի անարգանս եկն, սակայն զպատիւն իւր ոչ կորոյս։

1 Յօր. Կարգէին։

Եւ զի հիմն ասի, մի ինչ անարգ համարիցիս. զի հիմն ոչ 'ի ծածուկ ինչ է, այլ յայտնի, որ զամենայն ունի հաստատուն։ Զի հիմն այս՝ և այլուր՝ գտանի գլուխ անկեան. զի անդ 'ի վեր ունի հաստատուն զամենայնն, և աստ 'ի խոնարհս անշարժ զամենայնս. զի ամենայն 'ի նա հաստատեցան. և թէ թոյլ տացէ՝ քակտի ամենայնն։ Վասն այսորիկ և ասէ իսկ, եթէ ի ձեռին քում ամենայն ծագք երկրի։ Տեսանես, զի որ ինչ զհօրէ վասն երկրի ասէ, նոյնպէս և զՈրդւոյ վասն ամենայն աշխարհի. զի ոչ միայն երկիր, այլ և հրեշտակք և հրեշտակապետաց բնութիւնք և ամենայն ինչ 'ի ձեռին նորա են. և որ ինչ մեծն և լաւ համարիմք ասացեալ զհօրէ վասն երկրի, նոյնպէս և վասն Որդւոյ. ըստ այնմ, եթէ Ամենայն ինչ նովաւ հաստատեցաւ. ոչ միայն երկինք և երկիր, այլ և հրեշտակք և հրեշտակապետք, աթոռք և պետութիւնք և տէրութիւնք և իշխանութիւնք, և ամենայն ինչ նովաւ են և կացին միանգամայն։ Եւ թէ զիա՞րդ նովաւ՝ ասէ և զկերպարանսն, եթէ նա է գլուխ ամենայնի. որպէս և առանց գլխոյ և առանց զօրութեանն՝ որ 'ի նմանէ առաքիցի յանդամսն, ոչ կարէ կեալ կենդանի ինչ, նոյնպէս և առանց Քրիստոսի ոչ կարէ կեալ ինչ յարարածոցս. Հանես դու, ասէ, զոգի քո 'ի նոցանէ և պակասին։ Զի հիմն հիմանց ամենայնի Քրիստոս է, և չէ ումեք արժան յանձնապաստան լինել և ոչ 'ի նախնիս. և մանաւանդ Հրէիցն՝ որ նախնեօքն պարծէին. և թէպէտ և իցեն ուրուք վաստակք, սակայն նորա զօրութեամբն կատարին։

«Եւ որ հաւատասցէ 'ի նա՝ մի ամաչեսցէ»։ Բարւոք ասաց թէ որ հաւատասցէ 'ի նա՝ մի ամաչեսցէ։ Տեսանես, զիա՞րդ ակնարկէ զգալուստն, որչափ փառաւորութեամբ ինչ եղև. այլ հաւատոյ պէտք էին. զի 'ի փառաւորեալն գալստեան ոչ այն պէտք էին հաւատոյ, այլ ինքն աչաւորութիւնն է փոխանակ հաւատոյ։ Տեսանես, զի ամենայն սուրբք հաւատք պիտոյ են. «Որ հաւատասցէ, ասէ, 'ի նա», և ոչ եթէ որ քննեսցէ. և հաւատասցէ, ասէ, և ոչ որ 'ի հարց և 'ի փորձ անկանիցի. որ հաւատասցէ, ասէ, և ոչ որ խոյզ արկեալ հետաքրքիր լինիցին։ Ամաչեսցեն այնպիսիք որ զանհասականն անձանց իւրեանց՝ խնդրեն լինել ճառելի։ Տեսանես, զի ամենայն սուրբք հաւատոյ պէտք են. և ծննդեանն և յաշխարհի շրջելն, և չարչարանօքն կատարել և խաչիւն ազատել զամենայն տիեզերս. զի բազում և մեծ հաւատոյ պէտք են, եթէ 'ի խաչէ՝ որ մահու է գործի՝ ազատութիւն տարածեցաւ, և 'ի մահուանէ կեանք բղխեցին և լցին զտիեզերս. որպէս և գրեալ է, եթէ Լցցի երկիր ճանաչելովն զՏէրն, իբրև ջուր բազում ծածկեալ զծովս։ Եւ դարձեալ, եթէ Ոչ ասիցեն այր ցընկեր իւր՝ եթէ ծանիր զտէր. զի ամենեքին ծանիցեն զիս 'ի փոքրկանց մինչև 'ի

մեծամեծս նոցա. և Ցարեւելից մինչև 'ի մուտս արևու օրհնեալ է անուն քո։ Եւ արդ, զի՞նչ ևս աւելի կամիցի ոք եթէ լինիցի քան զայս։ Եւ դու տես զառատութիւնն Աստուծոյ զօրութեանն, զի անդ բանական նիշ կանգնեաց, և աստ զնշանն յաղթութեան։ Զի՞նչ ինչ իցէ քան զխաչ անիծագոյն. այլ ամենայն ուրեք փայտիւ տեսանեմք զփրկութիւն կատարեալ։

Ո՛ լուաւ, ո՛ ետես. անիծիցն պատիժք՝ մահու լուծանելոյ եղեն նշանակ և մեղաց քակտումն. ամենևին իբրև հակառակ ընդդէմ իմն էին իրքն։ Եւ զիա՞րդ ոչ սքանչանայցեմք. զի զդահիճ ոք թերևս և տեսանել չկամիցիմք և ոչ մօտ երթալ, և սոսկամք և փախչիմք, իսկ մեք զնշան խաչին 'ի թագս և 'ի զարդս թագաւորաց և զօրաց հաստատեմք, և 'ի պատուական անդամս մարմնոյ՝ 'ի գլուխ և 'ի լանջս և 'ի սրտի վերայ, առ սեղան և 'ի մահիճս։ Եւ եթէ զդեւս ուրեք պատշաճ իցէ հալածել, զխաչն 'ի մէջ բերեմք. և առ ցաւոց բժշկութիւնս նոյն է պիտանացու։ Ո՞րչափ մարդիկ յառաջ քան զայս ժամանակս խաչեցան. և ոչ ուրեք յոք երևեցաւ այսպիսի զօրութիւնն։ Եւ երկիր պագցեն, ասէ Սոփոնիա, իւրաքանչիւր 'ի տեղւոջէ իւրեանց Տեառն։ Մի՛ իմոց բանիցս հաւատար, ո՛վ Հրեայ, այլ 'ի հնոյն վիճիմ ընդ քեզ. զի՞ հակառակիս հէքդ և թշուառականդ, և առ քո փրկութեանդ մարտ եդեալ կռուիս. զի՞ ընթանաս հակառակ քում գլխոյդ, զի՞ կից ածես ընդդէմ խթանի. չտեսանիցես զգերեզմանն, չհայիցես 'ի տեղի խաչին. ո՞չ ապաքէն իբրև արձանք իմն կանգնեցան։

Եթէ ոք հարցանիցէ՝ եթէ զի՞նչ մեծամեծս արար Քրիստոս, թողում ասել զերկնից և զերկրէ և զծովէ և զբազում մեռելոցն յարութենէ, և զայլ ևս զբազում նշանսն զոր արար, զհացին բազմացուցանելն, զջրոյն գինի առնելն. զխաչն նեթ 'ի մէջ բերեմ, որ բազում և քան զամենայն լուսաւորագոյն է. խաչեցաւ, ասեմ, և թուք յերեսս ընկալաւ և ապտակեցաւ. և այնպէս ինչ աւելի երախտիս առարար մերում բնութեանս։ Եւ այս Աստուծոյ գործ է, վասն այնորիկ և ինքն իսկ՝ զիրսն փառս կոչէ. Հայր, ասէ, եհաս ժամ, փառաւորեա զՈրդի քո. և Պաւղոս, եթէ Ինձ քաւ լիցի պարծել, բայց միայն 'ի խաչն։ Եւ վասն այսորիկ ետ մեզ զօրինակ այսորիկ նշանին, զի ունիցիմք հանապազ առ 'ի յիշատակ՝ թէ չարչարեցաւ վասն մեր Քրիստոս մեծամեծ երախտեօք. երախտիք այս են, այլ այնպիսի կերպարանօք՝ զի և խաչիւ՝ կատարեաց զխաչ և զմահ։ Կարի իմն մեծ և անչափ սիրոյ նշանակ է և սերտ գթոյ մարդասիրութեան նորա առ մեզ։ Վասն այսորիկ և Պաւղոս զսոյն զայս վեր 'ի վայր յեղյեղու, եթէ Սէր նորա սփռեալ է. և Յովհաննէս, եթէ Այնպէս սիրեաց Աստուած զաշխարհ, մինչև զՈրդին

իւր միածին ետ. զի զմին միայն զոր ունէր՝ ետ մեզ. իսկ նո-
րա եկեալ՝ խաչին մահու գործէ զփրկութիւն մեզ. զոր կա-
մաւ և ոչ 'ի հարկէ կատարեալ զխորհուրդ սուրբ խաչին.
զոր կանգնեալ 'ի մէջ տիեզերաց, աստուածագործ և հրա-
շափառ լուսով մարտակռուեալ, և զէն յաղթութեան ընդ-
դէմ թշնամւոյն առեալ հաւատացելոց, 'ի պարծանս յուսոյ
յաւուրն մեծի. զի նմա վայելեն փառք յաւիտեանս յաւի-
տենից, ամէն:

# ԲՆԱԲԱՆՔ Ս. ԳՐՈՑ

# Ի ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ԱԾԵԱԼՔ

## Ի ՄԱՏԵՆԻՍ

---

## ԾՆՈՒՆԴՔ

## ԵԼՔ



## ԹԻՒՔ



## Բ. ՕՐԷՆՔ

## ՅԵՍՈՒ



## ԴԱՏԱՒՈՐՔ



## Ա. ԹԱԳԱՒՈՐՔ



## Բ. ԹԱԳԱՒՈՐՔ



## Գ. ԹԱԳԱՒՈՐՔ



## Դ. ԹԱԳԱՒՈՐՔ

## Ա· ՄՆԱՑՈՐԴՔ



## Բ· ՄՆԱՑՈՐԴՔ



## ՍԱՂՄՈՍՔ

## ԱՌԱԿՔ

## ԺՈՂՈՎՈՂ



## ԻՄԱՍՏՈՒԹԻՒՆ



## ՍԻՐԱՔ

## ՅՈՎԲ



## ԵՍԱՅԻ

## ՈՎՍԷԷ



## ԱՄՈՎՍ



## ՄԻՔԻԷ

## ՅՈՎԷԼ



## ՅՈՎՆԱՆ



## ԱՄԲԱԿՈՒՄ



## ՍՈՓՈՆԻԱ



## ԶԱՔԱՐԻԱ



## ՄԱՂԱՔԻԱ



## ԵՐԵՄԻԱ

## ԲԱՐՈՒՔ



## ԴԱՆԻԷԼ



## ԵԶԵԿԻԷԼ



## ՄԱՏԹԷՈՍ

## ՄԱՐԿՈՍ

## ՂՈՒԿԱՍ

## ՅՈՎՀԱՆՆԷՍ

## ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

## ՅԱԿՈՎԲՈՍ



## Ա. ՊԵՏՐՈՍ



## ԹՈՒՂԹ ԱՌ ՀՌՈՎՄԱՅԵՑԻՍ

## Ա. ԹՈՒՂԹ ԱՌ ԿՈՐՆԹԱՑԻՍ

## Բ. ԹՈՒՂԹ ԱՌ ԿՈՐՆԹԱՑԻՍ



## ԹՈՒՂԹ ԱՌ ԳԱՂԱՏԱՑԻՍ

## ԹՈՒՂԹ ԱՌ ԵՓԵՍԱՑԻՍ



## ԹՈՒՂԹ ԱՌ ՓԻԼԻՊՊԵՑԻՍ



## ԹՈՒՂԹ ԱՌ ԿՈՂՈՍԱՑԻՍ



## Ա· ԹՈՒՂԹ ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ



## Բ· ԹՈՒՂԹ ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ

## ԹՈՒՂԹ ԱՌ ԵԲՐԱՅԵՑԻՍ



## Ա. ԹՈՒՂԹ ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ



## ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ

# ՑՈՒՑԱԿ ԿԱՐԵՒՈՐ ԻՐԱՑ ՄԱՏԵՆԻՍ

---

# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

---

# ՎՐԻՊԱԿՔ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ

| Էջ | տող |  ՎՐԷՊ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|---|
| 8 | 35 | Սոլփրոնիսկեանց | Սովփրոնիսկեանց |
| 36 | 6 | բամբասէ և, զայս | բամբասէ, և զայս |
| » | 13 | յերգ արկեալ մրմնջէ․ Զխուր զրոյխ և զհանգերձսն | յերգ արկեալ մրմնջէ զխուր զրոյխ․ Եւ զհանգերձսն |
| 105 | 3 | այլ այս է խնայելն 'ի Նոսա | այլ Աստուծոյ է խնայելն 'ի Նոսա |
| 136 | 10 | զոր չէ հնար 'ի գաղանս հանել, եթէ ոչ 'ի մարդիկ տեսանես զգալստեանն շահս։ Գայլք ընդ գառինս | զոր չէ հնար 'ի գաղանս հանել, եթէ ոչ 'ի մարդիկ։ Տեսանե՞ս զգալստեանն շահս․ գայլք ընդ գառինս |
| 243 | 34 | չուայլօրէն | չուայլօրէն |
| 332 | 14 | Ստեփաննոս | Ստեփանոս |
| 366 | 23 | Նոնպէս | Նոյնպէս |
| 373 | 29 | սահման սաէ | սահման սա է |
| » | 31 | զքեզ, սա է Տէր | զքեզ, սաէ Տէր |
| 438 | 10 | Պաւղոս ասէր, եթէ Ջամբիցեմ | Պաւղոս ասէր․ Եթէ ջամբեցեմ |
| 465 | 5 | Իմ կերակուր և եթէ այն է, ասէ, զի արարից զկամս Հօր իմոյ․ և Բարեխօս | Իմ կերակուր այն է, ասէ, զի արարից զկամս Հօր իմոյ․ և եթէ Բարեխօս |

